ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1906 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 13 ՅՈՒՆՈՒԱՐ 2022 — ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. — عدد رقم ١٩٠٦ الخميس ١٣ يناير ٢٠٢٢


# ՏԱՐԻՆ ՈՐ ԵԿԱՒ

## ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ

*Մեծատաղանդ գրող ու մտածող Վահան Թէքէեանի Նոր Տարուայ այս խմբագրականը աւելի քան 90 տարուայ հնութիւն ունի: Իմաստները՝ անկախ դէպքերէն, ոչ միայն անփոփոխ կը մնան այսօր, այլեւ կը գտնուին ալ աւելի սրուած ու վտանգաւոր վիճակի մէջ:*

*Ջահակիր*

1929-ի առաջին օրը՝ երէկ, ըստ սովորութեան լսեց անթիւ անհամար շնորհաւորութեան եւ մաղթանքի խօսքեր:

Աշխարհի ամէն կողմը, ուր ճերմակ ցեղին պատկանող մարդկութիւնը կը բնակի, մարդիկ հանդիսաւորապէս շնորհաւորեցին իրար Նոր տարի մը թեւակոխելնուն համար եւ ոմանք լրջօրէն, շատեր առանց համոզումի, իրարու մաղթեցին որ այդ տարին բախտ եւ երջանկութիւն բերէ իրեն հետ:

Թողո՛ւնք անհատները, որոնց խաբելու եւ խաբուիլ ուզելու պահանջին է՛ն անվնաս մէկ արտայայտութիւնն է Նոր Տարւոյ մաղթանքը, հաւաքական մարմիններն ալ, սկսելով պզտիկ ընկերութիւններէն մինչեւ մեծ Պետութիւնները, չթերացան իրենք իրենց մէջ եւ իրարու հանդէպ օրուան մը համար մէկդի դնելու իրենց պաստած կերպարանքը եւ բերանացի կամ հեռագիրներով միմեանց ուղղեցին բառարանին ամէնէն յուսադրիչ եւ հաճելի բառերը՝ տարեթիւին մէկ միութիւն եւս առաջ երթալուն առթիւ:

Այս մաղթանքներէն մենք Հայերս ալ, իբրեւ հաւաքական մարմնի, անշուշտ մեր բաժինը ունեցանք պաշտօնապէս՝ այնտեղ Երեւանի մէջ: Միմիայն Ս.Խ.Հ.Մ.-ի պատկանող եւ զայն ճանչցող կամ անոր բարեկամ երկիրներէն գալուն համար՝ անոնք ոչ-պակաս ազդեցիկ են, կը յուսանք...:

Մաղթանքներ՝ մենք ալ ունինք Հայաստանի եւ Հայութեան համար, 1929-ի ներկայ սեմին վրայ՝ ուրկէ մենք չէ որ անցանք այլ ժամանակը մեզ ամէնքս քշեց եւ անցուց, ինչպէս ըրած էր ասկէ առաջ...: Իսկ մեր մաղթանքները, նոյնքան անօգուտ որքան միւսները, գոնէ *գիտակցական* ըլլալու առաւելութիւնն ունին...:

Հայաստանի, որ է ըսել երկրին եւ հոն ապրող ժողովուրդին համար, մեր ջերմ եւ անկեղծ մաղթանքն է՝ որ 1929-ը իր էական գիծերուն մէջ չտարբերի 1928-էն: Թո՛ղ շարունակուի խաղաղութիւնը՝ որ երկնային բարիք է, եւ թո՛ղ խաղաղութեան մէջ երկիրն ու ժողովուրդը վերագտնեն իրենց առողջութիւնը, թո՛ղ երկիրը ժողովուրդին եւ ժողովուրդը երկրին կենդանութիւն պարգեւեն:

Ասոր հետ միասին, կը մաղթենք որ Հայաստանի մէջ հայ ժողովուրդը կառավարողները՝ առանց կռնակ դարձնելու Խորհրդային Միութեան – ինչ որ կարելի չէ եւ ըստ մեզ փափաքելի ալ չէ – նայուածքնին դարձնեն դէպի հայ ժողովուրդը եւ անոր ներքին խաղաղութեան, անոր ֆիզիքական զօրացման, մանաւանդ անոր ազնուացման եւ զարգացման անհուն կարօտութիւնը գոհացնեն՝ համաձայն անոր առանձնայատուկ կարելիութիւններուն, արդարութեամբ, սիրտով եւ իմաստութեամբ...:

Կը մաղթենք, յետոյ, որ ինքը, հայ ժողովուրդը, Հայաստանի թէ արտասահմանի մէջ, ամբողջովին վերագտնէ ապագային վրայ իր հաւատքը եւ ըստ այնմ՝ ազգի եւ ոչ թէ հօտի նման ապրի: Թո՛ղ ներկայ պզտիկ Հայաստանը իրեն թողուած ա՛յն կեդրոնը ըլլայ՝ ուրկէ երկարող ճառագայթները պիտի հասնին մինչեւ հոն ուր որ կրնայ հայ սրտին եւ հայ խելքին միացած ուժը հասնիլ...:

Շատ եւ շատ են հայ ժողովուրդին հասցէին մեր ուղղելիք մաղթանքները: Բայց երկրորդը՝ վերը յիշատակուած հայրենասիրութեան մաղթանքէն ետք – եթէ մեզի մնար՝ պիտի ըսէինք առաջի՛նը – աւելի որոշ եւ աւելի յաճախ բանավարութեան ձայնը լսելու համար մեր ի խորոց սրտի իրեն ուղղած մեծ մաղթանքն է: Կը մաղթենք, այո՛, որ բանավարութիւնը յայտնէ մեր ժողովուրդին՝ թէ մեր ներկայ վիճակին մէջ բոլոր ներքին կռիւները ազգասպանութիւն են մեզի համար, եւ անոնց հանդէպ իր զուարճացող կամ անտարբեր կեցուածքը՝ պարզապէս մեղսակցիլ է այդ ոճիրին: Թո՛ղ, ուրեմն, բանավարութիւնը այնքան զօրանայ իր մէջ՝ որ զօրացնէ զոհողութեան ոգին, ա՛յն զոհողութիւնը՝ որ մէկ կողմէ բարեգործութեան համար դրամ եւ աշխատութիւն ու միւս կողմէ չարիք մը խափանելու համար սիրտ եւ ջանք նուիրել կը պահանջէ իրմէ...:

Ուրիշ է մեր մաղթանքը՝ ժողովուրդի այն հատուածներուն համար որոնք պատասխանատուներն են թէ՛ ներքին ազգասպան կռիւներուն եւ թէ հայ ժողովուրդին հանրային շահու գիտակցութենէ հետզհետէ զրկուելուն: Անո՛նց՝ մենք կը մաղթենք մերթ ընդ մերթ յիշել իրենց գաղափարակից հին ընկերներու մահուան վայրկեանը, ազգային ազատագրական պայքարին կամ թրքական համատարած սպանդին մէջ, զերծ ամէն հատուածական ատելութենէ եւ լեցուն համահայկական եղբայրական զգացումներով միայն...:

Մեր երիտասարդութեա՛ն՝ իրապէս երիտասարդ ըլլալ, այսինքն յղանալ եւ գործադրել, հինէն դժգոհ՝ նորը փնտռել, եւ միշտ արթուն, միշտ եռանդուն մնալ կը մաղթենք՝ ինքզինքին եւ իր պատկանած ազգին համար:

Ուսուցչութեա՛ն՝ ըլլալ այնքան խղճամիտ, որ իրեն յանձնուած նուիրական գործին համար իր անբաւարարութիւնը գիտնալով, աշխատի զայն դարմանել՝ սորվելով եւ խորհրդածելով, ու միշտ աչքի առջեւ ունենայ սա՛ ճշմարտութիւնը՝ թէ հայ ժողովուրդը եթէ իր կորուստներուն մէկ-քառորդը չար բախտին կը պարտի, մնացեալ երեք-քառորդն ալ կը պարտի իր թերի եւ յիմար կրթութեան:

Եկեղեցականութեա՛ն՝ պահպանել այն ամենամեծ հարստութիւնը – հայ լեզուին հետ – որ Հայաստանեայց եկեղեցին է, զայն անեղծ պահել եւ այդ նպատակին համար վերանորոգուիլ թէ՛ ինքն իր մէջ եւ թէ նոր առողջ տարրերու իր վրայ յաւելումով:

Նոյնպէս գրողներո՛ւն՝ հայ լեզուին եւ գիրին համար խղճմտանք եւ գուրգուրանք, նախ. յետոյ, երկիւղ գրիչէն, որ կրնայ հազարաւորներ թունաւորել՝ եթէ գործածողին միտքն ու սիրտը զայն խիստ հակակշռի մը չենթարկեն. եւ ի վերջոյ ոմանց – որոնք անսրբագրելի են – օր մը յանկարծ, ներկայ տարուան ընթացքին եւ անոր սկի՛զբը մանաւանդ, ինքնամարտիրոսացման, այսինքն տպագրուած հայ գիրէն իսպառ ձեռք քաշելու որոշում...:

Կը մաղթենք...: Կը մաղթե՛նք ի մի բան, որ մեր մէջէն ոմանց բարոյական քստմնելի չարաշահութիւնը չյաւերժանայ շատերու ողբալի տկարամտութեամբը...:

***Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 2 Յունուար 1929, ԺԵ. տարի, թիւ 3013**

## ՀԱՅԱՍՏԱՆ

### ՓԱՇԻՆԵԱՆԸ ԵՒ ՊՈՒՏԻՆԸ ՔՆՆԱՐԿԵԼ ԵՆ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ՇՈՒՐՋ ԱՌԿԱՅ ԻՐԱՎԻՃԱԿԸ

Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանը Յունուարի 12-ին հեռախօսազրոյց է ունեցել Ռուսաստանի նախագահ Վլադիմիր Պուտինի հետ: *Արմենպրէս*ի փոխանցմամբ՝ այս մասին յայտնում է Կրեմլի պաշտօնական կայքը:

Նշւում է, որ, հաշուի առնելով ՀԱՊԿ-ում Հայաստանի նախագահութիւնը, մտքեր են փոխանակուել Ղազախստանում ՀԱՊԿ խաղաղապահ առաքելութեան ընթացքի վերաբերեալ: Ընդգծուել է խաղաղապահ կոնտինգենտի գործողութիւնների արդիւնաւէտ համակարգումը, ինչը նպաստել է Ղազախստանում իրավիճակի նորմալացմանը:

Քննարկուել են նաեւ Լեռնային Ղարաբաղի շուրջ առկայ իրավիճակը եւ Հայաստանի, Ռուսաստանի եւ Ադրբէջանի ղեկավարների 2020 թուականի Նոյեմբերի 9-ի, 2021 թուականի Յունուարի 11-ի եւ 2021 թուականի Նոյեմբերի 26-ի ընդունած յայտարարութիւններում ֆիքսուած պայմանաւորուածութիւնների կատարման շուրջ որոշ հարցեր:

Երկու երկրների ղեկավարները պայմանաւորուել են շարունակել շփումները տարբեր մակարդակներում:

### ՔՊ-Ի ՊԱՏԳԱՄԱՒՈՐՆԵՐԸ ԿԸ ՀԱՆԴԻՊԻՆ ԺԻՐԱՅՐ ԼԻՊԱՐԻՏԵԱՆԻ ՀԵՏ

Հայաստանի Ազգային Ժողովի Քաղաքացիական Պայմանագիր խմբակցութեան պատգամաւորները Դեկտեմբեր 14-ին խորհրդարանին մէջ հանդիպեցան պատմաբան, դիւանագէտ Ժիրայր Լիպարիտեանի հետ, լսեցին իր կարծիքը տարբեր հարցերու վերաբերեալ: *Արմենպրէս*ի հաղորդումով՝ այս մասին ըսաւ ՔՊ անդամ, ԱԺ արտաքին յարաբերութիւններու մշտական յանձնաժողովի նախագահ Էդուարդ Աղաջանեան, հանդիպումէն ետք լրագրողներու հետ ունեցած զրոյցի ընթացքին:

Ժիրայր Լիպարիտեան

«Լիպարիտեանն այս օրերին գտնըւում էր Հայաստանում: Մենք տեղեկացանք այդ մասին, եւ իմ նախաձեռնութեամբ կազմակերպուեց հանդիպում վերջինիս հետ՝ հաշուի առնելով արտաքին քաղաքականութեան ոլորտում Լիպարիտեանի հարուստ փորձը եւ խորը գիտելիքները՝ բանակցային գործընթացի բոլոր մանրամասների վերաբերեալ», - ըսաւ պատգամաւորը:

Աղաջանեան հրաւիրած է Լիպարիտեանը որպէս փորձագէտ: Պատգամաւորները անոր յղած են զանազան հարցումներ: Քննարկումի բուն նիւթը Լիպարիտեանի համահեղինակութեամբ լոյս տեսած *Սպիտակ Թուղթ* գիրքն էր, ուր անդրադարձ կատարուած է Ղարաբաղեան հիմնախնդիրին, պատերազմի պատճառներուն ու հետեւանքներուն, Հայաստանի հնարաւոր դիւանագիտական քայլերուն եւ մարտավարութեան:

Հանդիպումէն ետք, լրագրողներու հետ զրոյցի ընթացքին, անդրադառնալով Հայաստանի եւ Թուրքիոյ միջեւ երկխօսութեան հարցին, Լիպարիտեան նշեց՝ որ ինք միշտ համաձայն եղած է մեր բոլոր դրացիներուն հետ յարաբերութիւնները դարձնել բնականոն:

Լրագրողներէն մէկը կը յիշեցնէ Արծուիկ Մինասեանի առարկութիւնը, թէ ի՞նչ բարիդրացիութեան մասին է խօսքը՝ երբ դրացիդ կ՚ուզէ քեզի մորթել, Լիպարիտեան կը պատասխանէ. «Արծուիկ Մինասեանը ապրած է Հայաստանի մէջ, երեսուն տարի է կ՚ըսէ որ պիտի մորթուինք՝ մորթուա՞ծ է: Ես ձեզի խորհուրդ կու տամ նախքան ուրիշ բան հարցնելը կարդալ վերջին գիրքս՝ *Հայաստան-Թուրքիա*, այնտեղ են պատասխանները, եւ կարող էք յետոյ գալ յաւելեալ հարցումներ ընել»:

↳ 2

# ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ
## (Մահուան 50-ամեակին առիթով)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

**ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ ԵՒ ԱՐՁԱԿ**

Ստեղծագործական առաջին շրջանին կը պատկանի Թաշեանի գրականութեան սակաւաթիւ, բայց ուշագրաւ արտադրութիւնը՝ հիմնականապէս կազմուած բանաստեղծութիւններէ եւ նորավէպերէ:

**Բանաստեղծութիւն**

Աֆիոն Գարահիսարի աքսորական կեանքէն նոր վերադարձած Պոլիս, 25-ամեայ երիտասարդի 1921 թուականի առաջին երկու բանաստեղծութիւնները՝ *Հարսնութիւն*(19) եւ *Յոյսին համար*(20), կը ներկայացնեն անցումի ճամբան ցաւէն դէպի լոյսը, տխրութենէն դէպի հարսնութիւնը, հոգիի մութ լճակէն դէպի յոյսի առագաստը:

Յաջորդը՝ *Յուսալքում*(21), կը մնայ տժգունութեան ոլորտին մէջ: Բանաստեղծը հանդարտ կը զգայ այնտեղ. «Ծերացեր եմ, ա՛լ յոյս չկայ»:

Անցում դէպի տոգորիչ, բայց ոչ-տառապեալ սէրը՝ *Եարի կարօտներ*(22), կազմուած չորս մասերէ՝ «Ծովափին», «Ես ու դուն (Անահիտ Պարթեւին)», «Սէրը» եւ «Համբոյրը (Ն. Կ.ին)»:

1922-ը կը նշանաւորուի երկու բանաստեղծութիւններով՝ *Ցամքա՛ծ աղբիւր*...(23) եւ *Կարօտ*(24), առաջինը՝ ցամքած աղբիւրէն նոր բխումներ կարկառելու տենչ մը, երկրորդը՝ կարօտալի սիրոյ ապրում մը:

1923-ին՝ չորս բանաստեղծութիւններ Եգիպտոսի *Նոր շարժում*ին մէջ:

*Մահուան երգերու* ընդհանուր խորագիրին տակ կը գտնուին երկու բանաստեղծութիւններ՝ հրատարակուած չորս ամիս հեռաւորութեան վրայ: Առաջինը՝ *Առ ցաւ*(25), իբրեւ բնաբան ընդունած է Ալֆրէտ տը Միւսէի *Tristesse*-ի վերջին երկտողը, երկրորդը՝ *Առ մահ*, Շարլ Պօտլէրի *La Mort des pauvres*-ի առաջին տողը, երկուքը միասին ներկայացնելով մելամաղձութեան կատար մը Թաշեանի գրական արտադրութեան մէջ:

*Ցամքա՛ծ աղբիւր*...ը(27) ճիշդ նոյնն է ինչ որ մէկ տարի առաջ հրատարակած էր Պոլսոյ մէջ: Մէկ տարբերութեամբ: Առաջին տպագրութեան մէջ ձօն չկայ: Երկրորդը ձօնուած է Եղիշէ Արք. Դուրեանին: Շատ հաւանական է, որ Պոլսոյ *Ժակատամարտը* դիտաւորեալ կամ անգիտակցաբար դուրս ձգած ըլլայ ձօնը եւ Թաշեան զայն վերատպելով ուզած է բանաստեղծութիւնը դնել իր նախատեսած հունին մէջ: Արդ, իր նոր ձօնով, բանաստեղծութիւնը կրնայ ստանալ անձնական մարմնաւորում՝ Դուրեանին վերագրուելով ցամքած աղբիւրէն նոր բխումներ կարկառելու տենչացող անձնաւորութեան դերակատարութիւնը:

*Հեռուի սէր*ին(28) մէջ սէրը կը գտնուի երազի ծովէն անդին:

Բանաստեղծութիւն մը եւս *Հայ կինի* մէջ՝ *Ջութակի խորհուրդ*(29), ուր ջութակի նուագին փախչող խորհուրդը, ջութակին հեծքը անբաւ, ինչպէս նաեւ նուագող աղջկան ակնարկը ի զուր կը ճգնին որոնել սիրտի ճամբան:

Ահաւասիկ, ընդամէնը քանի բանաստեղծութիւններ, որոնց քնարական հեզասահութիւնը եւ ոտանաւորի ներքին երաժշտականութիւնը՝ իրենց բառային խաղաոճերով հանդերձ, ընթերցումի եւ ընկալումի մտաւոր պահեր կրնան շնորհել:

**Արձակ՝ նորավէպ եւ պատմուածք**

Արձակ գործերը գրուած են Եգիպտոսի շրջանի սկզբնաւորութեան: Բոլորն ալ՝ առաջին դէմքով:

1910-ականներու երկրորդ կէսին ու 1920-ականներուն ինչ կար աւելի ազդեցիկ իրականութիւն քան որբերուն անընդհատ յետաձգուող խնդիրը: Սիմա անունով որբուհիի մը սիրոյ երեք փուլերուն մասին է *Ժակատագիրը* նորավէպը(30):

Առաջին փուլը արգիլուած սիրոյ տարփանքն է՝ որբանոցի փակ պատերուն մէջ: Փակ՝ ոչ միայն տարածութեան իմաստով:

«Եթէ գրուած է որ սէրը մեղք է եւ սիրելը՝ ոճիր, ուրեմն մեղաւոր եւ ոճրագործներ էք դո՛ւք ալ, ուրիշնե՛րն ալ, ամբո՛ղջ աշխարհն ալ: Ես չեմ ճանչնար օրէնք մը, որ սրտին վրայ իշխէ եւ կանոն մը, որ կապ դնէ հոգիին», ինքզինքին համար կը պատմէ առաջին դէմքը: Գաղափարը նաեւ արտացոլումն է որբուհիի չարտայայտած ապրումին: Որբուհին իրաւունք չունի կարծիքներ յայտնել: Փոխարէնը հեղինակն է գաղափարներ արտադրողը: Եւ հակառակ ասոր, հակառակ այս մասնայատուկ համոզումին եւ հակառակ երկկողմանի փոխադարձ տարփանքի բոցին, առաջին դէմքը ինքն է որ կը խուսափի «մեղաւոր եւ ոճրագործ» ճանչցուելու վախէն եւ ընդմիշտ կը հեռանայ որբուհիէն: Հակառակ իրենց միջեւ յետագային մշակուած նամակագրական կապին, առաջին դէմքը իր մէջ չի գտներ անհրաժեշտ կամքը՝ տարփանքը վերածելու օրինական սիրոյ: Կէտ մը՝ որ արժանի է ուշադրութեան:

Երկրորդ փուլը Սիմայի ութ օր տեւած ամուսնութիւնն է՝ «բարձրագոյն կամք»-ի ստիպողականութեան տակ: Ձախողած տարփանքային սէրէն դէպի ձախողած կնոջական-օրինական սէր:

Վերջապէս, կարճ ու կտրուկ՝ «կնոջ սէրէն եաքը, մօր սէրը խեղդեր էին իր մէջ»:

Ժակատագիր: Որբի ճակատագիր: Կատարուածը կրնայ պատահիլ ոեւէ մէկուն: Ոչ միայն որբի: Բայց որբանոցի պայմանները առաւել եւս կը շեշտադրեն կատարուածը: Ամերիկեան Նպաստամատոյցի հոգատարութեան յանձնուած Սիմային եւ որբերուն երեք ստիպողական փոխադրութիւններ՝ Պոլիս, Կորնթոսի ափունքին վրայ փոքր գիւղ մը, Ադրիականի կղզիներէն մէկը, հետեւաբար՝ ձգտումը տեղավայրի անորոշութիւնը փոխարինելու ամուսնական ենթադրական կայունութեամբ:

Մինչ այդ, Սիմային հուչակը որբանոցին մէջ իբրեւ կրակոտ բայց չփացած աղջիկ: Չփացած՝ որբանոցի չափանիշերով: Անձնական ազատամտութիւն՝ թարգմանուած իբրեւ չփացածութեան:

Եւ այս բոլորէն եաք, արագօրէն կարգադրուած կնոջական սէր՝ ամուսնութեան միջոցով, իբրեւ միջավայրի ազատագրութիւն, որ շուտով պիտի առաջնորդէր դէպի ալ աւելի ազատագրկութիւն՝ ներքին հոգեկան ապրումներու տեսանկիւնէն, աւելի ուժեղ՝ քան որբանոցային արգելափակումը:

Թէեւ նորավէպը կառուցուած է վերոյիշեալ երեք փուլերուն վրայ, բայց ամենէն երկարն ու մանրամասնը առաջինն է՝ արգիլուած տարփանքը:

*Աշխարհի լեզուն* նորավէպը(31) կարելի է կոչել՝ գինիի իմաստութիւն:

Սառա՝ Աղեքսանդրիոյ Ալհամպրա թատրոնի պարուհին, «մեղքերու թագուհին»՝ ինչպէս Սառա կ՚անուանէ ինքզինքը եւ կը հաստատէ առաջին դէմք հեղինակը, նորավէպի գլխաւոր գաղափարի ներկայացուցիչն է: Ի տարբերութիւն *Ժակատագիրը* նորավէպի որբուհիէն՝ որ ձայն չունի, այստեղ Սառա կը հանդիսանայ գլխաւոր ձայնը: Ան կը գովերգէ գինին.

«Բարձրացո՛ւր բաժակը, խմէ՛ բոլոր մեղքերուն կենացը, մարդկային թշուառութեան կենացը: Թող փրփրի՛ գինին, ինչպէս արիւնը՝ երակներուն մէջ»:

Ի սկզբանէ կը միախառնուին գինին, մեղքն ու թշուառութիւնը:

Թշուառութիւնը կրնայ սրբուիլ գինիով.

«Մարդկային թշուառութիւնը ստուեր մըն է. գինիին լոյսը միայն կրնայ ջնջել զայն: Կ՚ուզե՞ս թշուառութիւնը ջնջել առանց գինիի, պէտք է որ ամբողջ մարդկութիւնը ջնջես. մէկը հոգին է, միւսը՝ մարմինը»:

Իսկ մեղքը յատուկ է ամէն մարդու: Զայն կարելի է մեղմել՝ եթէ գինիի տրամադրութեան տակ մարդիկ խոստովանութիւն կատարեն.

«Դուն կը կարծես թէ մեղք չունի՞ս. սուտ կը խօսիս: Ամէնէն քիչ մեղաւորը անոնք են, որոնք ամէնէն բարձր ձայնով կը խոստովանին իրենց մեղքը», կ՚աղաղակէ Սառա:

Խօսքեր՝ զորս արտասանելու համար պէտք է անձը անկեղծանայ ինքն իր հետ: Գինին այդ անկեղծութեան տանող միջոցն է, այնպիսի աշխարհի մը մէջ՝ ուր մարդու համերաշխութիւնը ինքն իր հետ պարուրուած կը մնայ արտաքին արհեստաստեղծ պատկերներու յորձանքով:

Նորավէպի առաջին դէմք հեղինակը՝ որ ունկնդիրն է Սառայի խօսքերուն եւ մասնակիցը գինիի հաճոյքին, կը փորձէ տարածութիւն մը ստեղծել ինքզինքին եւ Սառայի միջեւ: Նորավէպին խորագիրը՝ *Աշխարհի լեզուն*, կարծէք ըսել կ՚ուզէ՝ որ ըսուածը անպայմանօրէն առաջին դէմքին սեփական լեզուն չէ: Այլ՝ այսպէս է աշխարհը, այսպէս է աշխարհի մէջ յարատեւելու անհրաժեշտ լեզուն:

Կան նաեւ առաջին դէմքի միջանկեալ պատմողականութիւնները, որոնք երբեմն կարճ ու կտրուկ կը հակաճառեն Սառային: Օրինակ՝ «Ես կը մերժեմ, ինչ որ գինիին խռովքը տուաւ անոր [իմա՝ Սառային, Հ.Ա.]. ես չեմ բաժներ իր դատաստանները»:

Բայց եւ այնպէս, հեղինակը կը խմէ գինին եւ կը լսէ Սառային: Կ՚ուզէ իյնալ Սառայի մեղքին մէջ, բայց կը դիմադրէ: Միաժամանակ, նորավէպի կորիզէն եւ տիրող գաղափարէն չի կրնար հեռացնել գինիի իմաստութիւնը, արտայայտուած շատ գեղեցիկ լեզուական եւ ոճական հնարքներու ընդմէջէն, լեզու մը՝ որ սէր կը յառաջացնէ գինիին նկատմամբ, գինի մը՝ որուն հանդէպ առաջին դէմքին տածած սէրը լոկ կրնար յառաջացնել նորավէպի գեղեցկագոյն լեզուն:

Գինիի իմաստութիւնը բազմաչարչար նիւթ մըն է՝ արեւելեան ու արեւմտեան գրական-մշակութային հնաւանդութիւն ունի: Բայց անոր ներգրաւումը եգիպտահայ պահպանողական մամուլի մէջ՝ փորձ մըն է ուրուագծելու առնչութիւնները այդ մշակոյթներուն հետ:

Թօթափուած բեռի մասին է *Ուրուական*(32) նորավէպը: ↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

Վարչապետ Նիկոլ Փաշինեանը Դեկտեմբերի 11-ին գրառում է արել.

Ոմանց կողմից գեներացւող «դաւաճան իշխանութեան» ռիտորիկան ամենեւին էլ կորսուած հայրենիքի ցաւի ձայնարկումը չէ: Դա շատ լրջօրէն մտածուած եւ երկա՛ր տարիներ նախապատրաստըւած հիբրիդային պատերազմի դրուագ է:

2018 թուականին վարչապետի կարգավիճակում չէի էլ հասցրել կարդալ ԼՂ հարցի կարգաւորման բանակցային թղթերը, այդ նոյն ուժերը փսփսում էին, թէ մեր իշխանութիւնը պատրաստւում է յանձնել հողերը: Այդ միտքը կամաց-կամաց, քայլ առ քայլ, ականջ առ ականջ շրջանառութեան մէջ էր դրւում:

Նպատակը մէկն էր, որ եթէ/երբ գայ Արցախի ու Հայաստանի շահերը զէնքով պաշտպանելու ժամանակը՝ արժանահաւատ հնչի միտքը, թէ կռիւն ու պայքարն անիմաստ են, ամէն ինչ վերեւներում պայմանաւորուած է, «հողերը յանձնած են» եւ այս թէզերի միջոցով երկրի դիմադրողականութիւնը, զինւորի մոտիւացիան ու կամքը կոտրուի: Իսկ մինչ հնարաւոր պատերազմը՝ թուլանայ երկրի դիրքը բանակցային սեղանի շուրջ:

Նման կոմբինացիաները, իհարկէ, կառուցւում են դրսի եւ ներսի ուժերի սերտ համագործակցութեամբ, եւ ներսում նմանատիպ խօսոյթները ձեւաւորողները շատ յաճախ չեն էլ կռահում ինչին են մասնակցում, որովհետեւ ամէնը մատուցւում է բարձր «հայրենասիրական» սօուսով: Բայց վերնախաւային նեղ շրջանակը չի կարող չիմանալ սեփական առաքելութիւնը, որ հիմնուած է արտաքին ուժերի հետ փոխշահաւէտ համագործակցութեան վրայ: Արտաքին ուժերը՝ տարածքներ, ներքին ուժերը՝ իշխանութիւն:

2020-2021 թուականներին առաջին մասը ստացուեց, ↳ 3

## ՔՊ-Ի ՊԱՏԳԱՄԱՒՈՐՆԵՐԸ ԿԸ ՀԱՆԴԻՊԻՆ...

1 ↳

Հարցումին՝ թէ *Սպիտակ Թուղթը* կը քննադատուի իբրեւ սեւ թուղթ, Լիպարիտեան կը պատասխանէ. «Ի՞նչ կ՚ակնկալէիք: Մարդիկ որոնք իրատեսութեամբ չեն ուզեր մօտենալ եւ ցնորքներով կ՚ուզեն ապրիլ, իրենց երազներով, ի՞նչ պիտի մտածէին այդ *Սպիտակ Թուղթի* մասին, որ հրաւէր է մտածելու, մտածելով քաղաքականութիւն վարելու»:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍՏԻՊԵՑԻՔ, ԵՐԲ ՆԱԽԿԻՆ ԲՈՂՈՔԻ ՕՐԻՆԱԿԱՆ ԱԿՑԻԱՆԵՐԸ ԽԵՂԴՈՒՄ ԷԻՔ ԱՐԵԱՆ ԵՒ ԲՌՆՈՒԹԵԱՆ ՄԷՋ. ԱՐՄԷՆ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆԸ ՀԱԿԱԴԱՐՁՈՒՄ Է ՍԵՐԺ ՍԱՐԳՍԵԱՆԻՆ

Ժառանգութիւն Կուսակցութեան նախկին նախագահ Արմէն Մարտիրոսեանը ֆէյսբուքեան իր էջում գրել է.

«Ես ձեզ չեմ ստիպել մասնակիցը դառնալ այս արկածախնդրութեանը, յետոյ գնալ եւ նախրի միջից պաչել ամենաբարձր զռացողի՝ էշի ճակատը» (Սերժ Սարգսեանի յայտարարութիւնը ՀՀԿ 17-րդ համագումարի ժամանակ, 18 Դեկտեմբեր 2021)։

Ստիպել էք։ Վկայ 2008 եւ 2013 թուականները։ Լեւոն Տէր-Պետրոսեան եւ Ռաֆֆի Յովհաննիսեան։ Երկու չափազանց հրաշալի թեկնածուներ երկրի առաջնորդութեան համար։ Ջկեղծէիք ընտրութիւնները ձայնագողութեամբ, ընտրակաշառքով, բռնութեամբ, արիւնով։ Թողէիք Երկրին՝ առաջ շարժուէր։

Ստիպել էք, երբ իրական ընդդիմադիրներին զուգահեռ սկսեցիք կեղծ ընդդիմութիւններ բուծել, երբ ընդդիմադիր դաշտի որոշ ներկայացուցիչների՝ տարբեր առաջարկներով, դարձրեցիք իշխանութեան կամակատարներ։

Ստիպեցիք, երբ նախկին բողոքի օրինական ակցիաները խեղդում էիք արեան եւ բռնութեան մէջ, երբ մեր ↳ 4

3 ↳ ### ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

երկրորդ մասը՝ ոչ։ Բայց ինչպէս տեսնում էք, ներքին «հայրենասէրները» չեն հանդարտւում, որովհետեւ նրանց արտաքին գործընկերները առաքելութիւնը աւարտուած չեն համարում։

Այստեղ տեղին է քննադատութիւնը կառավարութեան եւ պետական մարմինների հասցէին։ Իսկ ինչո՞ւ չէք կանխում. իհարկէ, կան տասնեակ գործօններ, դրանցից առանցքայինը պետական ինստիտուտների կայացածութեան աստիճանն է։

Այս է պատճառը, որ համարում եմ, որ մեր առանցքային խնդիրը պետականութեան եւ պետական ինստիտուտների կայացածութեան ցածր մակարդակն է, եւ հիմնական անելիքը պետականութեան եւ պետական ինստիտուտների զարգացումը, որ մեր ապագայի միակ երաշխիքն է իմ խորին համոզմամբ։

Թերեւս՝ շարունակելի...

# ԳՐԻԳՈՐ ՕԳՈՍՏԻՆՈՍ ԳՈՒՍԱՆ՝ ԵՊԻՍԿՈՊՈՍԸ ՈՐ ԿԸ ՊԱՇՏԷ ՀԱՅԱՍՏԱՆԸ

ՆԵԻԻՆ ԼԱՄԷՅ

*Ծնած Սուրիա, ծագումով հայ եւ քաղաքացիութեամբ եգիպտացի, Արհիապատիւ Տէր Գրիգոր Օգոստինոս Եպս. Գուսան առաջնորդն է Աղեքսանդրիոյ կաթողիկէ հայոց։ Կատարելապէս միաձուլուած Եգիպտոսի միջավայրին մէջ, ան կը պաշտէ իր նախնիներուն մշակոյթը։*

Հելիոպոլսոյ Հայ Կաթողիկէ եկեղեցւոյ թեմական սրահին մէջ, գեղեցիկ տօնածառ մը եւ մսուր մը արդէն պատրաստ են դիմաւորելու Սուրբ Ծնունդը։ Եւ ասիկա՝ ամենօրեայ պատարագներու, ինչպէս նաեւ բարեգործական, նուիրատուական եւ կարեկցական գործողութիւններու միջոցով... Կը նշանակէ՝ Եգիպտոսի, Սուտանի եւ ամբողջ Ափրիկէի հայ կաթողիկէներու Աղեքսանդրիոյ առաջնորդը՝ Արհիապատիւ Տէր Գրիգոր Օգոստինոս Եպս. Գուսան, խիստ զբաղած է։

Սուրբ Ծնունդը կոչ մըն է սիրոյ, խաղաղութեան, հանդուրժողականութեան, հաշտութեան եւ եղբայրութեան, կոչ մը՝ միասին անցընելու Յիսնակի ժամանակը։ Յիսնակը՝ վկայակոչուած Գուսան Եպիսկոպոսի բոլոր քարոզներուն մէջ, կը նշանակէ տօնը նշելու համար պատրաստել Եգիպտոսի երեք հայ կաթողիկէ եկեղեցիները, այսինքն՝ Գահիրէի կեդրոնը գտնուող Աւետումն Սուրբ Աստուածածին եկեղեցին, Հելիոպոլսոյ Ս. Թերեզա եկեղեցին եւ Աղեքսանդրիոյ Ս. Աստուածածնի Անարատ Յղութեան եկեղեցին։ Այս վերջինին մէջ է որ 2004 Մայիս 20-ին կատարուեցաւ Տէր Գրիգոր Օգոստինոս Գուսանի գահակալութեան արարողութիւնը, որուն նախորդած էր՝ 2004 Մայիս 9-ին, Հալէպի մէջ, անոր եպիսկոպոսական ձեռնադրութիւնը Տանն Կիլիկիոյ Կաթողիկէ Հայոց Պատրիարքին կողմէ։ Քանզի ծագումով հայ մըն է ան (Կիլիկիայէն), ծնունդով սուրիացի եւ քաղաքացիութեամբ եգիպտացի։ Եգիպտական քաղաքացիութիւնը իրեն շնորհուեցաւ ճիշդ գահակալութեան օրը։

«Յիսնակը կամ Փոքր Պահքը կը հանդիսանայ ողջ մարդկային պատմութեան ամենամեծ տօներէն մէկուն՝ Աստուածայայտնութեան, կամ զարթնումի եւ լոյսի տօնին, կարեւոր եկեղեցական ժամանակը։ Դեկտեմբեր 24-ի գիշերը կամ Խթումը հայ կաթողիկէ համայնքին համար յաւելեալ առիթ մըն է ընտանեօք միաւորուելու հայկական համեղ ճաշերով յարդարուած սեղանին շուրջ, կարկանդակները լուսաւորող մոմերով։ Կ'երգենք Յիսուսի ծննդեան նուիրուած հայերէն մեղեդիներ։ Յիսնակը մեզի կը հրաւիրէ խոկալու եւ խորհրդածելու Քրիստոսի մարդեղութեան խորհուրդին շուրջ, զգալ Աստուծոյ շնորհքը, պատրաստուիլ աղօթքի եւ աշխատանքի, որպէսզի հասնինք սիրտերու իրական դարձի», կ'ընդգծէ Տէր Գուսան։

Պարզ հանդերձանքով, ժպիտը դէմքին, ան ամենայն համեստութեամբ նստած է եկեղեցիին փոքր հիւրասենեակը։ Այստեղ է ուր կ'ընդունի իր հիւրերը։ Իր սեւ սքեմը՝ միակտոր կերպասով, նշանն է Աստուծոյ նուիրագործութեան եւ սուգի։ Բացի այդ, հանդիսաւոր տօներուն եւ կրօնական պաշտօններուն, Տէր Գուսան փառաւորապէս կը կրէ եպիսկոպոսական հանդերձանքը՝ շքեղազարդ զգեստ մը բաց սրճագոյն ոսկեզօծ գոյնով, հովուական մատանի մը՝ ցուցանիշը կղերական արժանաւորութեան, վեղար մը (գլանաձեւ գլխադիր)՝ ծածկուած մինչեւ ուսերը հասնող սեւ քօղով, կիսագնդաձեւ խոյր մը՝ զարդարուած խաչով եւ Սուրբ Աստուածածնի լանջաձեւ սրբապատկերով։ «Կ'աղօթեմ անընդհատ եկեղեցւոյ մօր՝ Սուրբ Կոյսին բարեխօսութեան համար, կապուած փրկութեան խորհուրդին հետ։ Գաբրիէլ հրեշտակին ուղղած Այո-էն ի վեր իր դերը եղած է այնպէս՝ որ Փրկութիւնը մարմնաւորուի իր մէջ։ Մարիամի պաշտամունքը իսկական հաւատքն է», կը հաստատէ Տէր Գուսան։

Քահանայ կը ձեռնադրուի 1980 Դեկտեմբեր 24-ին, իր ծննդավայր Հալէպի մէջ, Սուրիա։ Հայրը հայ մըն էր՝ տնօրէնը Սուրիոյ Երկաթուղիի Ընկերութեան։ Զաւակն է Գուսաններուն՝ մէկը այն 40 ամենամեծ հայ ընտանիքներէն, որոնք 1640-ին թողած են Կիլիկիան եւ եկած Հալէպ ու բնակութիւն հաստատած Զոքաք Ալ-Արպա'ինի եւ Սիսիի նրբանցքները։ Տէր Գուսան կը խոստովանի. «Կարեւոր առաջադրանք մըն է ճանչնալ 1915-ին Օսմանեան Կայսրութեան մէջ կատարուած Հայոց Ցեղասպանութիւնը, անոր տեղահանութեան քաղաքականութիւնը եւ կոտորածները՝ որոնք պատճառ հանդիսացան բազմաթիւ հայերու աքսորին ամենուր աշխարհի մէջ։ Կարեւոր է նաեւ կենդանի պահել անոր յիշողութիւնը։ Սփիւռքի մէջ կը գտնուին բազմաթիւ հայեր՝ որոնք իրենց մէջ արժանապատուութեամբ կը կրեն տառապանքն ու յիշողութիւնը։ Տրտմութենէ եւ ատելութենէ ելլելով, հայերը չափազանց ազդուած են իրենց հետ կատարուածէն։ Բայց եւ այնպէս, հակառակ ամէն տեսակ զոհաբերութեան, շնորհիւ իրենց իմաստուն ու դիմացկուն բնաւորութեան՝ հայերը կը պահեն իրենց յոյսը եւ կառչած կը մնան իրենց երազներուն։ Անոնք հեղինակաւոր պաշտօններ կը գրաւեն Թուրքիոյ, Հալէպի եւ ողջ աշխարհի մէջ։ Հայերը մասնագէտ են ոսկերչութեան, պղինձի արհեստի, առեւտուրի, ատաղձագործութեան, բժշկութեան, իրաւաբանութեան մէջ... Եգիպտոսի մէջ, վերցնենք մեծն Նուպար փաշայի օրինակը, կամ Եագուպ Արթինը, որոնք կարեւոր դեր խաղացած են երկիրի պատմութեան մէջ»։



*Արհիապատիւ Տէր Գրիգոր Օգոստինոս Եպս. Գուսան*

Տէր Գուսանը մեծ ուշադրութիւն կը դարձնէ Եգիպտոսի մէջ հայկական կրթութեան վրայ, որ առիթ կ'ընձեռնէ հայերուն աւելի կառչիլ իրենց մշակոյթին։ Ընդ որում, իր հեղինակութեան տակ կը գտնուի Հելիոպոլսոյ կաթողիկէ հայերու Անարատ Յղութեան Քոյրերու դպրոցը։ «Դպրոցները, եկեղեցիները եւ ակումբները հայկական ոգին պահպանող վայրեր են, եւ այստեղ է ուր կը հաւաքուի Եգիպտոսի հայ համայնքը։ Մեր ծնողքներն ու մեծ ծնողքները անընդհատ մեզի կը պատմէին Հայաստանի պատմութիւնը, կարծէք կ'ուզէին որ ան դրոշմուած մնար մեր յիշողութիւններուն մէջ, եւ այս է որ կ'ամրապնդէ կապը հայերուն միջեւ։ Եթէ եգիպտահայութեան մեծամասնութիւնը՝ որ ծնած է իրեն ապաստան տուած երկիրին մէջ, յաջողած է համգրաւուիլ (intégrer), հայերը երբեք չեն մոռցած իրենց պարտականութիւնը նախնիներու հողին նկատմամբ։ Անոնք կ'աշխատին եւ կը սպասեն այն օրը՝ երբ աշխարհի բոլոր երկիրները, ներառեալ Թուրքիան, կը ճանաչեն այս մոռցուած ցեղասպանութիւնը՝ ուր զոհուած է մէկ ու կէս միլիոն մարդ։ Անոնք քաջ արժանի են ներողութիւն լսելու։ Եգիպտական պետութիւնը իր աջակցութիւնը կը ցուցաբերէ մեր եկեղեցւոյ եւ հայ ժողովուրդին», կը ճշդէ Տէր Գուսան եւ կը շարունակէ. «Քանի որ Յիսուս տէրն է բացարձակ ներումի, մենք կը հաւատանք ներումի հնարաւորութեան։ Յիսուս մեզ կը հրաւիրէ օրական եօթն անգամ ներել մեր եղբօրը՝ եթէ ան եօթն անգամ գայ եւ ըսէ. «Կը զղջամ ես» (Ղուկաս 17/3)»։ Եպիսկոպոսը կը սիրէ կարդալ Վոլթէր եւ Շէքսփիր, յատկապէս այն գործերը որոնք կապուած են գոյաբանական հարցերու եւ մարդկային ողբերգութիւններու հետ։ «Բոլորին հասանելի գրիչի մէկ սուր հարուածով Վոլթէր կը գրէ. «Եւ եթէ գոյութիւն չունի Աստուած, զայն պէտք է ստեղծել»», կը նշէ Տէր Գուսան, որ իր դպրոցական ուսումը ստացած է Հալէպի Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ դպրոցը, ապա յաճախած Մարիստ Եղբայրներուն։

Համեստ, հանդարտ եւ քրիստոնէական վարդապետութեան դասընթացքներու հետեւորդ, սկաուտի եւ դպրոցական երգչախումբի անդամ, փոքրիկ Գրիգորը նաեւ սիրահար մըն էր բոլոր լեզուներու գեղագրութիւններուն, յատկապէս հայերէնի եւ արաբերէնի։ Երգչախումբի տղայ, նոյնիսկ ժամանակ առ ժամանակ կամաւորապէս ծառայած եկեղեցւոյ եւ հաւատացեալներուն, Գրիգոր Գուսանի կոչումը սկիզբ կ'առնէ Հալէպի հայ կաթողիկէներու Մայր Օգնութեանց եկեղեցւոյ մէջ։ «Երգչախումբի փոքրիկ անդամ, ես անհամբեր կը սպասէի Դեկտեմբեր ամիսը որպէսզի մասնակցէի եկեղեցւոյս տօնածառի յարդարանքին, ինչպէս նաեւ իմ ծառայութիւնս մատուցանէի չքաւորներուն։ Կը քաջալերեմ քրիստոնեայ ընտանիքները՝ որ իրենց երեխաները արմատաւորեն կրօնական կեանքի մէջ։ Այսօր ամբողջ աշխարհի մէջ կը դիմագրաւենք քահանաներու եւ միանձնուհիներու պակասը, հոգիներու կորուստը», ըսաւ ան։ Անձնելով ձեռնադրութեան երեք աստիճանները՝ նախ սարկաւագ, ապա քահանայ եւ վերջապէս եպիսկոպոս, ան ընտրեց իր կրօնական անունը՝ Օգոստինոս։ «Իմ հոգեւոր բարեխօսս կը հանդիսանայ Սուրբ Օգոստինոս։ Փիլիսոփայ, աստուածաբան, հովիւ եւ բանաստեղծ, Ս. Օգոստինոս՝ Հիպպոնի յայտնի եպիսկոպոսը, մարդկութեան այս հանճարը, ամենէն յաճախ ներկայացուած է իբրեւ ուսումնասիրութեան մէջ թաղուած, բռնկուն կամ նետահար սիրտով անձ», կը նկարագրէ Տէր Գուսան։

Այս վերջինը հարազատ է Ս. Օգոստինոսին՝ անցած ըլլալով մանուածապատ զանազան ուղիներ, որոնք կերտած են իր էութիւնն ու անհատականութիւնը։ Բացի այդ, հայերէն լեզուով Գրիգոր կը նշանակէ միշտ արթուն, ուշադիր եւ գործունեայ անձ։ «Իր փիլիսոփայական իմաստութեան համար ճանչցուած իբրեւ Հայաստանի առաքեալը՝ Գրիգոր Լուսաւորիչ միշտ կը տեսնուի իր հաւատարիմ ընկերներով շրջապատուած։ Ես անձամբ կը սիրեմ բարեկամութիւններ պահել ամենուր եւ բոլորի հետ հաստատել լաւ յարաբերութիւններ», կը ↳ 4




## ՍՏԻՊԵՑԻՔ, ԵՐԲ ՆԱԽԿԻՆ ԲՈՂՈՔԻ ՕՐԻՆԱԿԱՆ ԱԿՑԻԱՆԵՐԸ ԽԵՂԴՈՒՄ ԷԻՔ ԱՐԵԱՆ ՄԷՋ....

3

օրինական պայքարը ու գործողութիւնները կասեցնում էիք անօրինական քայլերով, բայց 2018 թուականին, նոյնիսկ ամենակոպիտ, քրէօրէն պատժելի արարքները, որոնք կապ չունէին քաղաքացիական խաղաղ անհնազանդութեան հետ, չպատժուեցին:

Յ.Գ. Միայն 2018 թուականին չէին կանայք ու երեխաներ մասնակցում: 2008, 2013, 2016-ի հզօր հանրահաւաքների եւ այլ բողոքի ակցիաների ժամանակ եւս կանայք ու երեխաներ էին մասնակցում: Վկայ՝ նախագահական նստավայրի առջեւ բողոքի խաղաղ ակցիա իրականացնող՝ բանակում սպանուած զինուորների մայրերի նկատմամբ ոստիկանական բռնութիւնը:

Ստիպել էք եւ օժանդակել:



## ԳՐԻԳՈՐ ՕԳՈՍՏԻՆՈՍ ԳՈՒՍԱՆ՝ ԵՊԻՍԿՈՊՈՍԸ ՈՐ ԿԸ ՊԱՇՏԷ ՀԱՅԱՍՏԱՆԸ

3

վստահեցնէ ան:

Դժուար է զսպել իր ուղեգնացութիւնները, քանզի ան միշտ կը ձգտի բացայայտել ուրիշ մշակոյթներ, ուրիշ ժողովուրդներ: Ուր որ ալ երթայ, ան շրջապատուած է հաւատացեալներով, իր ընդարձակ մշակութային գիտելիքի հիացողներով, նկատի առնելով իր կրթութիւնը Հայ կաթողիկէ Զմմառի Սուրբ Տիրամօր աթոռանիստ վանքի հոգեւոր դպրեվանքին մէջ: Ապա, 1975-ին, Հռոմի Սուրբ Թովմա Աքվինացիի (Angelicum) եւ Գրիգորեան (Gregoriana) պապական համալսարաններուն մէջ երկու տարի կը շարունակէ փիլիսոփայութեան եւ աստուածաբանութեան իր ուսումը: Այնտեղ, համատեղաբար իր պաշտօնին իբրեւ Թոլենթինօ քաղաքի Սուրբ Նիքոլաս տաճարի հայ կաթողիկէ համայնքի ծխական քահանայ, ան կը պատրաստէ իր տոքթորական թէզը մարիաբանութեան եւ քրիստոսաբանութեան մասին:

1983-ին, Հռոմէն վերադառնալով Հալէպ, Գրիգոր Գուսան կը նշանակուի տեղւոյն Հայ կաթողիկէ Տիրամօր եկեղեցւոյ ծխական քահանայ, 1993-ին՝ Ս. Խաչ եկեղեցւոյ, եւ ապա Ս. Գրիգոր Լուսաւորիչ Ճեմարանի տնօրէն: Միեւնոյն ժամանակ ծխական քահանան էր Ռաքքայի (Սուրիա) Նահատակաց եկեղեցւոյ, որմէ ետք՝ Հալէպի դատարանի եկեղեցական դատաւորը: 2015-2020-ին կը նշանակուի Երուսաղէմի եւ Ամմանի հայ կաթողիկէներու հայրապետական էկզարք:

2009-ին, Արհիապատիւ հայրը իր ներդրումը կ'ունենայ Ափրիկէի եպիսկոպոսներու Սինոդին, իսկ 2010-ին՝ Միջին Արեւելքի Սինոդին: Անդամ է Եգիպտոսի կրօնքներու երկխօսութեան յանձնախումբին, մամուլի յօդուածներ կը ստորագրէ *Ալ-Ահրամի*, *Ալ-Ուաթանի*, *Ուաթանիի*, *Ալ-Եոմ Ալ-Սապէ*'ի մէջ, գլխաւորապէս արծարծելով միջկրօնական երկխօսութեան, հայոց ցեղասպանութեան եւ աւետարանական խոկումներու հետ կապուած հարցեր:

*Al-Ahram Hebdo* (շաբաթաթերթ, Գահիրէ)

22-28 Դեկտեմբեր 2021

Ֆրանսերէնէ թարգմանեց՝ Հ. Ա.



## ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

2

Հեղինակը պառկած է հիւանդանոցը: Յարկաբաժինի գլխաւոր հիւանդապահուհին է 24-ամեայ Իտալուհի Մառիա, որ երբեք չի ժպտիր: Անյայտ բեռ մը թաքնուած է իր խորքը:

Կը մահանայ քովի անկողինը պառկած տղան: Հայ որբ մըն էր: Իր վրան լացող չունեցող որբ մը: Ստուեր մըն էր, որ հիմա շուք մը անգամ չէ:

Ի՞նչ կը պատահի հիւանդանոցի մը մէջ. «Կին մը մայրութեան երկունքը կ'ապրի հոս, ծերունի մը՝ կեանքին դատարկութիւնը եւ տղայ մը, պզտիկ դեղնած տղայ մը՝ ծնած ըլլալու պատրանքը... Ապրի՛լ. ինչո՞ւ. – օր մը մեռնելու համար. ահա՛ Աստուծոյ զօրութիւնը...»: Կը փարատուի կեանքի եւ մահուան սահմանը:

Գնդակահարուած մահամերձ մարդ մը կը բերեն ու կը տեղաւորեն քովի դատարկուած անկողինը: «Ուրուակա՛ն», սարսափահար կը բարձրաձայնէ Մառիա: Այս ուրուականին մէջ Մառիա կը ճանչնայ իր սեփական հայրը՝ որ ինը տարի առաջ հրաժարած էր հայրութենէն: Աւելի ստոյգ՝ քսան եւ չորս տարի առաջ կը հանդիսանար Մառիայի հայրը, ինը տարի առաջ (երբ Մառիա տասնըհինգ տարեկան էր) կը դառնար անոր ամուսինը, իսկ այսօր կը վերածուէր անոր ուրուականին:

«Եւ, առաջին անգամ ըլլալով, քոյր Մառիա տխրօրէն ժպտեցաւ»: Թօթափուած էր բեռը:

*Շքեղ պատրանք* նորավէպին մէջ կը հիւսուի սիրոյ տառապանքը(33):

Մուրալ՝ պահանջելու հաճոյքին համար: Մուրացողը երիտասարդ սինեօռ Բիէթրօն է, որ ամէն օր կէս գիշերէն ետք, սինեօրինա Իզապէլլայի պատուհանին առջեւ ջութակով սերենատ կը նուագէ: Եթէ աղջիկը դուրս գայ պատշգամ եւ հաւանութիւն տայ՝ կ'ամուսնանան: Այդպէս է եղեր տեղական սովորութիւնը: Բայց աղջիկը ծիծաղով կ'ընդունի այս ամէնը: Սինեօռ Բիէթրօյի նման խղճուկի մը հե՞տ ամուսնանայ: Երեք օրէն պիտի ամուսնանայ եւ ընդմիշտ մեկնի Հռոմ:

Տառապանքի քնարերգութիւն մըն է այս սերենատը, ապրող ժողովուրդի շրթունքն է ան: Բայց մարդիկ կը սիրեն ծաղրել այս սերենատը եւ խեղդել սիրտին ձայնը: Երանի յետմահու թողուած հետքը կրէր կնիքը սիրտին:

Սինեօրինայի մեկնելէն ետք դրացիները գտան ջախջախուած ջութակ մը, մինչ Բիէթրօ «կ'աղօթէ՛ր՝ շքեղ պատրանքի մը ծնցուցած յիմարութիւնովը...»:

Թաշեան ուզած է իբրեւ կաղանդի պատմութիւն ներկայացնել *Աժան սէրը*(34): Կրնայ որեւէ ժամանակի պատմութիւն մը ըլլալ:

Առաջին դէմք հեղինակը կը յիշէ իր ապրած գիւղական հին օրերը, երբ պատանի մըն էր տակաւին. «Քաղաքներու փոթորկայոյզ պոռնկութիւնն էր որ եղծեց, քանդե՛ց հին երազներու սրբազան խաղաղութիւնը»: Քանդեց գիւղի երազներուն չքեղութիւնն ու հոգիին միամտութիւնը: Հիմա կեանքի հեւքն է տիրակալը: «Եւ ի՛նչ լաւ էր, երբ պատանի էինք, երբ գեղը մե՛րն էր ու մենք՝ գեղինը»:

Այդ երազներուն մաս կը կազմէր գիւղական դրացուհի Վարդուկի հանդէպ ունեցած պատանեկան սէրը. «Գիւղացիները սիրտով կը սիրեն, քաղաքացիները՝ հաշիւով»: Սէրը, սակայն, փափաքեցաւ պահել պղատոնեան մակարդակի վրայ, վախնալով որ խոստովանութեան պարագային կորսնցնէ անոր քնարերգութիւնը: Մեր հերոսը սորված էր տառապիլ «չպատմուող բաներու համար»: Թէեւ երկուքին միջեւ սէրը հասունցաւ լռութեան մէջ՝ առանց խօսքի:

Նոր տարուայ առաւօտը, առանձին Վարդուկի մօտ, աղջիկը կ'ուզէր համբոյր մը ստանալ իրմէ: Բայց ինք կը մերժէ ու դուրս կը վազէ. «Ես կ'ուզէի տառապիլ ու չկրնալ դպչիլ իրեն...»:

Գիւղական երազանք:

Ուրիշ կաղանդի պատմութիւն մը եւս՝ *Արքայութի՞ւն թէ դժոխք*(35): Այս անգամ մանկութեան վերապրումներ:

Կայ գլխաւոր հարցադրումը՝ արդեօք պէ՞տք է սիրել վարժապետը, որ կ'ախորժի մինչեւ ոսկորները ծեծել աշակերտները: «Բայց, գիւղին մէջ ամէն մարդ յարգանք ունի վարժապետներուն հանդէպ. ա՛յս է պատճառը, եթէ ամէն բան կը ներուի անոնց, մինչեւ իսկ «դժոխքի հոտը»»:

Դպրոցին վարժապետը տարին մէկ անգամ կը խնդար՝ կաղանդի առտուն: Նուէրներ պիտի ստանար աշակերտներէն: Այլապէս, կը սիրէր ծեծել, միսերը կապուտցնել: Պատմուածքին մանուկը չսիրեց զինքը: Ինչպէ՞ս սիրէր: Բայց տակաւին, ըստ գիւղի օրէնքներուն, պէտք էր յարգել զինքը:

Կաղանդի առտուն կը մահանայ վարժապետը: Այլեւս պիտի չծեծէ մանուկները: Բայց մեր մանուկը չկրցաւ զսպել իր լացը: Եւ յարեց Սիմոն ընկերոջ.

- Սիմոն, մեր վարժապետին հոգին ո՞ւր գնաց արդեօք, արքայութի՞ւն թէ դժոխք...:

* * *

Յետագային, Բենիամին Թաշեան չծանրացաւ գրականութեան արտադրութեան վրայ: Փոխարէնը՝ գրականութիւն կիրարկեց ընդարձակ վէպերու հայերէն թարգմանութիւններու ընդմէջէն: 1933-էն սկսեալ *Յուսաբերի* մէջ իբրեւ թերթօն հրատարակեց նշանակալի քանակութեամբ գործեր, որոնցմէ կարելի է յիշել.

1. Տոսթոյեվսկի, *Նեթոչքա*, 1933:
2. Կնուտ Համսուն, *Վիկտորիա*, 1935:
3. Մարք Թուէյն, *Թոմ Սոյըրի արկածները*, 1936:
4. Ֆլորանս Պարգլէյ, *Վարդարանը*, 1936:
5. Անտրէ Թէօրիէ, *Վանապետուհին*, 1937:
6. Հանրի Պորտոյ, *Պարկեշտ կին մը*, 1937:
7. Կապրիէլէ Տ'Անունցիոյ, *Անմեղ կինը*, 1938:
8. Փրոսփէր Մերիմէ, *Քաւարանի հոգիները*, 1948:

Թարգմանութիւնը՝ իբրեւ ինքնատեղծ գրականութեան փոխարինում, այլեւ իբրեւ *ինքնին* գրականութիւն, գզալի տեղ կը գրաւէ եգիպտահայ մշակոյթին մէջ: Եգիպտահայ մամուլին մէջ տարածուած մեծաքանակ ու այլազան գրական թարգմանութիւնները արժանի են ուշադրութեան:

(Շար. 2)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

19. Բ. Թաշեան, «Հարսնութիւն», *Հայ կին*, կիսամսեայ հանդէս, Կ. Պոլիս, 16 Յունուար 1921, Բ. տարի, թիւ 6, էջ 490:

20. Բ. Թաշեան, «Յոյսին համար (Վահրամ Թաթուլին)», *Հայ կին*, 1 Փետրուար 1921, Բ. տարի, թիւ 7, էջ 505:

21. Բ. Թաշեան, «Յուսալքում», *Ճակատամարտ*, օրաթերթ, Կ. Պոլիս, 8 Մայիս 1921, նոր շրջան, թիւ 750-2571, էջ 1:

22. Բ. Թաշեան, «Եարի կարօտներ», *Հայ կին*, 16 Մայիս 1921, Բ. տարի, թիւ 14, էջ 618:

23. Բ. Թաշեան, «Ցամքա՛ծ աղբիւր...», *Ճակատամարտ*, 9 Յուլիս 1922, նոր շրջան, թիւ 1111, ԺԲ. տարի, թիւ 2932, էջ 1:

24. Բ. Թաշեան, «Կարօտ», *Ճակատամարտ*, 10 Սեպտեմբեր 1922, նոր շրջան, թիւ 1164, ԺԲ. տարի, թիւ 2985, էջ 1:

25. Բ. Թաշեան, «Մահուան երգեր. առ ցաւ», *Նոր չարժում*, գրական-գեղարուեստական ու գիտական, Գահիրէ, 14 Ապրիլ 1923, Ա. տարի, պրակ 5-6, էջ 79:

26. Բ. Թաշեան, «Մահուան երգեր. առ մահ», *Նոր չարժում*, 25 Օգոստոս 1923, Ա. տարի, պրակ 25, էջ 380:

27. Բ. Թաշեան, «Ցամքա՛ծ աղբիւր...» (Եղիշէ Արքեպիսկ. Դուրեանին), *Նոր չարժում*, 12 Մայիս 1923, Ա. տարի, պրակ 10, էջ 143:

28. Բ. Թաշեան (Գահիրէ), «Հեռուի սէր», *Նոր չարժում*, 9 Յունիս 1923, Ա. տարի, պրակ 14, էջ 202:

29. Բ. Թաշեան, «Ջութակի խորհուրդ» (Օր. Զ.ին որ Արուեստին յիմարութիւնը ապրեցաւ), *Հայ կին*, 1 Մայիս 1923, Դ. տարի, թիւ 10, էջ 1318:

30. Բ. Թաշեան, «Ճակատագիրը (նորավէպ)», *Նոր չարժում*, 18 Օգոստոս 1923, Ա. տարի, պրակ 24, էջ 361-365:

31. Բ. Թաշեան, «Աշխարհի լեզուն (նորավէպ)», *Նոր չարժում*, 1 Սեպտեմբեր 1923, Ա. տարի, պրակ 26, էջ 401-403:

32. Բ. Թաշեան, «Ուրուական (նորավէպ)», *Նոր չարժում*, 22 Սեպտեմբեր 1923, Ա. տարի, պրակ 29, էջ 445-447:

33. Բ. Թաշեան, «Շքեղ պատրանք (նորավէպ)», *Նոր չարժում*, 17 Նոյեմբեր 1923, Ա. տարի, պրակ 37, էջ 571-573:

34. Բ. Թաշեան, «Աժան սէր (Կաղանդի պատմութիւն)», *Նոր չարժում*, 17 Փետրուար 1924, Ա. տարի, պրակ 46-47, էջ 695-696:

35. Բ. Թաշեան, «Արքայութի՞ւն թէ դժոխք (Կաղանդի պատմութիւն)», *Յուսաբեր*, 3 Յունուար 1925, նոր շրջան, Ժ. տարի, թիւ 118, էջ 5:

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1907 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 27 ՅՈՒՆՈՒԱՐ 2022 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٠٧ الخميس ٢٧ يناير ٢٠٢٢

# ՀՐԱԺԱՐԱԿԱՆ՝ ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ՅՈՒՑԱԴՐՈՒԹԵԱՄԲ

Յունուար 23-ին Հայաստանի նախագահ Արմէն Սարգսեան կը հրաժարի իր պաշտօնէն: Ան հանդէս կու գայ հայրենասիրական յայտարարութեամբ, որուն քանի մը կարեւոր կէտերուն վրայէն կարելի չէ աննկատ անցնիլ:

**Բացառիկ միտքեր**

Կը սկսի ըսելով, որ ինք 2018-ին ընդունած էր նախագահի պաշտօնը՝ նախագահական հիմնարկը կայունացնելու, ներքին ու արտաքին քաղաքականութեան վրայ ազդելու, Սփիւռքի հետ յարաբերութիւններ մշակելու, միջազգային մակարդակով համազգային շահերը առաջ տանելու, բարձր թեքնոլոժիք միջավայր ձեւաւորելու համար: Այս բոլորը պիտի ընէր ինքը: Թէեւ ասոնց մէկ փոքրիկ մասնիկը անգամ չէր փորձած ընել Միացեալ Թագաւորութեան մէջ Հայաստանի դեսպանի պաշտօնի սահմաններուն մէջ: Դեսպան մը շատ բան կրնայ ընել արտաքին քաղաքականութեան եւ տեղւոյն Սփիւռքին հետ յարաբերութիւններ զարգացնելու առնչութեամբ:

**Ոչ-յեղափոխութիւն**

Այս հրաշալի ցանկութիւններէն ետք կ՚աւելցնէ. «Որոշ ժամանակ անց տեղի ունեցան 2018թ. ապրիլ-մայիսեան իրադարձութիւնները...»:

Ճիշդ այդպէս՝ կախման կէտով:

Կատարուածը անկասկած իրադարձութիւն էր, բայց այդ իրադարձութիւնը յատուկ անուն ունի՝ Թաւշեայ Յեղափոխութիւն, իսկ քաղաքագիտութեան մէջ անուանում՝ յեղափոխութիւն: Յեղափոխութիւն էր կատարուածը՝ անկախ նախագահի ցանկութենէն:

**Համազգային ճգնաժամ**

Սարգսեան կը շարունակէ. «Կարող է հարց առաջանալ, թէ ինչո՞ւ Նախագահը չկարողացաւ ազդել այն քաղաքական իրադարձութիւնների վրայ, որոնք մեզ հասցրել են ներկայիս համազգային ճգնաժամի»:

«Համազգային ճգնաժամ»: Չափազանց մեծ հասկացողութիւն է համազգայինը եւ չափազանց անհոգաբար մենք հայերս կը գործածենք այս բառը: Սփիւռքի մէջ, սփիւռքահայերուն միջեւ ամենաշատ մասնատում մտցնողները ամենաշատ գործածողներն են այդ բառին: Բայց եկէք պահ մը մնանք համազգային ճգնաժամի Սարգսեանի արտայայտութեան վրայ եւ հարցնենք՝ թէ ովքե՞ր են այդ «ճգնաժամ»-ը ստեղծողները: Աւելի ստոյգ՝ *արհեստական* ճգնաժամ ստեղծողները: Հաստատապէս, Հայաստանի եւ Սփիւռքի բոլոր այն յետադիմական ուժերը, որոնք տուժեցին Թաւշեայ Յեղափոխութենէն, Հայաստանի եւ Սփիւռքի մտաւորական վերնախաւի պուրժուա զանգուածը՝ որ հրաշալիօրէն գիտէր օգտուիլ նախկին օլիկարքական համակարգէն եւ որ նոյնքան կենդանի է նաեւ այսօր, Սփիւռքի հիմնահոսանքը՝ որ հետեւողականօրէն աշխատեցաւ սպաննելու յեղափոխութիւնը, ամբողջապէս անտեսելով ժողովրդային յեղափոխութեան մը կարելիութիւնը իբրեւ Հայաստանի ժողովուրդի բարելաւումի, կենսամակարդակի բարձրացումի, աւազակապետութեան դէմ պայքարի, օրինական արդարադատութեան վերականգնումի դուռ: Սփիւռքը մինչեւ անգամ 2018-ի յեղափոխութիւնը համարեց յեղաշրջում, յեղաշրջում՝ պարզապէս որովհետեւ քանի մը պատեհապաշտներ դուրս մնացին իշխանական համակարգէն: Ասոնք են արհեստական ճգնաժամ ստեղծողները, ճգնաժամ՝ որ մէկ պահու մէջ պիտի լուծուի երբ հինները կամ անոնց յաջորդները վերադառնան իշխանութեան: Երբ վերադառնան, եւ շատ հաւանական է որ վերադառնան, յաջորդ օրն իսկ «ճգնաժամ» պիտի չգտնենք: Ամէն բան իրենց ձեռքն է՝ քրէաօլիկարքական դրամէն մինչեւ լրատուամիջոցները, եւ լաւ գիտեն յարաբերակցիլ ու իրենց մէջ ընդգրկել Սփիւռքահայ կազմակերպութիւններու ամենամեծ գլուխները: Այս յետադիմական ուժերուն առաջին օրէն իսկ թիկունք կանգնեցաւ նախագահը:

**Սահմանադրութիւնը եւ նախագահի իրաւասութիւններու սահմանափակութիւնը**

«Մենք ունենք պարադոքսալ իրավիճակ, երբ Նախագահը ստիպուած է պետականութեան երաշխաւոր լինել՝ փաստացի չունենալով որեւէ իրական գործիք»:

Երբ նախագահ կը նշանակուէր, Սարգսեան քաջ գիտէր այդ Սահմանադրութեան իրեն շնորհած սահմանները: Չէր կրնար չգիտնալ: Ճիշդ այդ նոյն Սահմանադրութեան շնորհիւ էր որ նախագահ նշանակուեցաւ եւ ճիշդ այդ նոյն Սահմանադրութիւնն է որ կը գործէ այսօր: Յեղափոխութենէն առաջ խնդիր չունէր այդ Սահմանադրութեան հետ, հիմա՝ ունի:

«Սահմանադրութիւնը նաեւ ենթադրում է մէկ ինստիտուտի գերակայութիւն միւսի նկատմամբ, Սփիւռքի յայտնի մասնագէտների համար ստեղծում է խոչընդոտներ՝ պատմական Հայրենիքի պետական ինստիտուտների կառավարմանը մասնակցելու համար, եւ այլն»:

Այդպէս էր Սահմանադրութիւնը՝ երբ Սարգսեան կ՚ընդունէր նախագահ ըլլալ Սերժ Սարգսեանի օրօք:

**Համերաշխութիւն եւ օլիկարքութիւն**

«Մենք խորհրդարանական հանրապետութիւն ենք ձեւով, բայց ոչ բովանդակութեամբ: Իմ առաջարկութեան իմաստը եւ նպատակը եղել է ոչ թէ կառավարման մի ձեւից միւսին (խորհրդարանականից կիսանախագահականի կամ նախագահականի) անցնելը, այլ՝ զսպումների եւ հակակշիռների վրայ հիմնուած պետական համակարգ ստեղծելը: Առանց դրա դժուար է խօսել նշանակալից ձեռքբերումների մասին, քանի որ առաջընթացի եւ յաջողութեան հնարաւոր է հասնել միայն կանխատեսելի եւ ներդաշնակ համակարգի պայմաններում»:

Բայց ընդունելով նախահական պաշտօնը՝ ան ընդունած պիտի ըլլար աշխատիլ իր իսկ նշած ոչ-ներդաշնակ համակարգին մէջ, ըստ Սահմանադրութեան կէտերուն: Միայն 2018-ի «իրադարձութիւններ»-էն ետք նկատեց այդ ոչ-համերաշխութիւնը:

Յետոյ՝ բուն համերաշխութեան հարցը: Ինչպէ՞ս կարելի է օլիկարքական հիմքով նշանակուած նախագահը ներդաշնակ ըլլալ յեղափոխութեան հիմքով ընտրուած նոր համակարգի մը հետ: Ինչպէ՞ս կրնայ քրէաօլիկարքական անարդարութիւնը համերաշխութիւն յառաջացնել ժողովուրդի խաւերուն միջեւ: Եկէք կրկին անգամ վերյիշենք Արմէն Սարգսեանի օլիկարքութիւնը:

*Հետքը* մանրամասն փաստագրութեամբ եւ վաւերաթուղթերով ներկայացուցած է Սարգսեանի պիզնէսները երկու ուշագրաւ հետախուզութիւն-յօդուածներու մէջ.

1. Քրիստինէ Աղալարեան եւ Էդիկ Բաղդասարեան, «Հայաստանի նախագահ Արմէն Սարգսեանը գործարար է. բիզնէսներ Եւրոպայում, Ռուսաստանում, ԱՄՆ-ում, Չինաստանում, Հնդկաստանում, ԱՊՀ երկրներում եւ օֆշորային գօտիներում», *Հետք*, 9 Ապրիլ 2018, https://hetq.am/hy/article/87243:

2. Վահէ Սարուխանեան, «Նախագահ Սարգսեանին փոխկապակցուած ընկերութիւնը 7,5 մլն եւրոյով գոյք է գնել Փարիզի Ելիսէյեան դաշտերի մօտ. նա չի յայտարարագրել տնօրէնի պաշտօնը», *Հետք*, 8 Նոյեմբեր 2021, https://hetq.am/hy/article/137496:

Տեղի խնայողութեան համար այստեղ կը բերեմ հետախուզութիւններուն լոկ արդիւնքները:

Առաջին յօդուածը Աղալարեան եւ Բաղդասարեան կը սկսին այսպէս.

«Իրականութիւնն այն է, որ Հայաստանը Մեծ Բրիտանիայում ներկայացնող դեսպանը տարիներ շարունակ պաշտօնն օգտագործել է իր եւ իր ընտանիքի բիզնէսները զարգացնելու համար: Իսկ երբ նրան ազատել են դեսպանի պաշտօնից, նա միանգամից հրաժարուել է Հայաստանի քաղաքացիութիւնից ու դարձել Մեծ Բրիտանիայի քաղաքացի, որովհետեւ Հայաստանի Հանրապետութեան սովորական անձնագիրն այլեւս «պիտանի» չէր, դրանով դժուարութիւններ կ՚ունենար այդ բիզնէսներն անելիս:

«Արմէն Սարգսեանի անունը կարելի է հանդիպել զանազան խոշոր կորպորացիաների, ընկերութիւնների, միութիւնների ղեկավարների կամ ներդրողների ցանկում: Որպէս կանոն՝ նա ներկայացել է Բրիտանիայի քաղաքացի: Մի քանի ընկերութիւններում մինչեւ 2015 թուականը նա այդպէս է ներկայացել»:

Աւստրիա: 2014 Յունուարէն սկսեալ Արմէն Սարգսեան աւստրիական Inalca Eurasia Holding GmbH հոլտինկային ընկերութեան տնօրէններու խորհուրդի անդամ է: Նոյն թուականէն մինչեւ այսօր խորհուրդի անդամ է նաեւ իր որդին՝ Հայկ Սարգըսեան: Ընկերութիւնը իր դուստր ձեռնարկութիւններուն

↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԱԼԷՆ ՍԻՄՈՆԵԱՆԸ ԿԸ ԿԱՏԱՐԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՆԱԽԱԳԱՀԻ ԼԻԱԶՕՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Արմէն Սարգսեանը Յունուարի 23-ին հրաժարական է տուել Հանրապետութեան նախագահի պաշտօնից: Ինչպէս հաղորդում է



*Արմենպրէսը*, Սահմանադրութեան 5-րդ գլուխը նախատեսում է նման դէպքերում նախագահի լիազօրութիւնների ժամանակաւոր կատարման եւ նոր նախագահի արտահերթ ընտրութեան կարգը:

Մասնաւորապէս, ըստ Հայաստանի Սահմանադրութեան 2015թ. խմբագրութեան 126-րդ յօդուածի՝ Հանրապետութեան նախագահի պաշտօնանկութեան, լիազօրութիւնների կատարման անհնարինութեան, հրաժարականի կամ մահուան դէպքերում Հանրապետութեան նախագահի պաշտօնը թափուր մնալուց ոչ շուտ, քան 25, եւ ոչ ուշ, քան 35 օր յետոյ անցկացւում է Հանրապետութեան նախագահի արտահերթ ընտրութիւն:

Սահմանադրութեան 144-րդ յօդուածի համաձայն՝ մինչեւ նորընտիր նախագահի կողմից պաշտօնի ստանձնումը Հանրապետութեան նախագահի լիազօրութիւնները կատարում է Ազգային Ժողովի նախագահը:

Այսպիսով, ըստ Սահմանադրութեան՝ Հանրապետութեան նախագահի լիազօրութիւնները կը կատարէ Հայաստանի Ազգային Ժողովի նախագահ Ալէն Սիմոնեանը:

Հանրապետութեան նախագահը, ինչպէս 123-րդ յօդուածն է սահմանում, պետութեան գլուխն է, որը հետեւում է Սահմանադրութեան պահպանմանը:

Արմէն Սարգսեանը Հանրապետութեան նախագահ էր ընտրուել Ազգային Ժողովի կողմից 2018թ. Ապրիլին՝ եօթ տարի ժամկէտով:

# ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ
## (Մահուան 50-ամեակին առիթով)

Հ. ԱԻԱԳԵԱՆ

### ԿԱՐԵԼԻ՞ Է ՏՈՀՄԻԿ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ ՄԸ

1923 Հոկտեմբերին, Գահիրէի մէջ իր հիմնադրած ու խմբագրած *Նոր շարժում* հանդէսին մէջ, Գուրգէն Մխիթարեան կը ստորագրէ երեք շարունակական յօդուածներ հայ գրականութեան եւ ժողովուրդի կապի մասին: Երրորդը դուռ պիտի բանար Թաշեանին սկսելու բանավէճ մը:

Բանավէճը պիտի ընդգրկէր Մխիթարեանի եւ Թաշեանի յօդուածները *Նոր շարժում*ի, Թաշեանի մէկ յօդուածը Նիւ Եորքի *Հայաստանի կոչնակ*ի եւ վիճաբանական ասուլիս մը Աղեքսանդրիոյ Յառաջդիմասէրի սրահին մէջ: Անոնց պիտի միանային նաեւ ոչ-եգիպտահայեր՝ դուրսի մամուլին մէջ, ինչպէս Փարիզէն Զապէլ Եսայեանի յօդուածը *Հայաստանի կոչնակ*ին մէջ(36):

Այստեղ պիտի ներկայացնեմ լոկ եգիպտահայ Մխիթարեանի եւ Թաշեանի բանավէճին ամփոփումը, վերջաւորութեան անդրադառնալով նաեւ ասուլիսի կարծիքներուն: Բանավէճի յօդուածներն են.

1. Գուրգէն Մխիթարեան, «Հայ գրականութիւնը եւ հասարակութիւնը», *Նոր շարժում*, 6 Հոկտեմբեր 1923, Ա. տարի, պրակ 31, էջ 482-484:

2. Գուրգէն Մխիթարեան, «Ժողովուրդը դէպի գրականութիւն պէտք է տանիլ», *Նոր շարժում*, 13 Հոկտեմբեր 1923, Ա. տարի, պրակ 32, էջ 497-500:

3. Գուրգէն Մխիթարեան, «Գրականութիւնը ժողովուրդին պէտք է տանիլ», *Նոր շարժում*, 27 Հոկտեմբեր 1923, Ա. տարի, պրակ 34, էջ 526-529:

4. Բ. Թաշեան, «Գրականութիւնը ժողովուրդին հետ», *Նոր շարժում*, 3 Նոյեմբեր 1923, Ա. տարի, պրակ 35, էջ 541-543:

5. Գուրգէն Մխիթարեան, «Տոհմիկ գրականութիւն մը կարելի՞ է», *Նոր շարժում*, 2 Դեկտեմբեր 1923, Ա. տարի, պրակ 38-39, էջ 597-600:

6. Բ. Թաշեան, «Դէպի տոհմիկ գրականութիւնը», *Նոր շարժում*, 3 Մարտ 1924, Ա. տարի, պրակ 48-49, էջ 715-716:

7. Բ. Թաշեան, «Դէպի տոհմիկ գրականութիւնը. Բ.», *Նոր շարժում*, 22 Մարտ 1924, Ա. տարի, պրակ 50-51, էջ 746-748:

8. Գուրգէն Մխիթարեան, «Ազգային գրականութեան հարցը (ճշդումներ)», *Նոր շարժում*, 22 Մարտ 1924, Ա. տարի, պրակ 50-51, էջ 756-758:

9. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Դէպի ազգային գրականութիւն», *Հայաստանի կոչնակ*, 26 Յուլիս 1924, ԻԴ. տարի, թիւ 30, էջ 943-944:

**Տոհմիկ, հայեցի եւ ազգային**

Բանավէճի ընթացքին փոխադարձաբար օգտագործուած են «տոհմիկ», «հայեցի» եւ «ազգային» բառերը միեւնոյն իմաստը արտայայտելու համար: Թէեւ երեքն ալ իմաստային տարբերութիւններ ունին, բայց անոնք գործածուած են այսօրուայ ազգայինի տարածուած իմաստով: Երբեմն տոհմիկ-ազգայինը նոյնացած է գաւառականին հետ: Բառերուն իմաստային զանազանումները չեն հետաքրքրած բանավիճողներուն:

**Դրդապատճառ բանավէճի**

Գուրգէն Մխիթարեան բացառիկ դեր կը յատկացնէ գրականութեան, զայն համարելով հայ ցեղի փրկութեան, պահպանութեան եւ զարգացումին *միակ* ընկերային երեւոյթը: Ան ասիկա ճիշդ կը համարէ յատկապէս իր ապրած օրերուն՝ երբ հայ ժողովուրդի փրկութեան հարցը դարձած էր առաւելագոյն չափով այժմէական:

Մխիթարեան օրինակներով կը ճշդէ հայ գրականութեան տեսակի իր ընտրութիւնը, կանգ առնելով ազնըւական գրականութեան վրայ՝ *Ցեղին սիրտը*, *Հեթանոս երգեր*, *Ցայգալոյս*, *Կարմիր ժամուց*, եւ այլն, ի դէմս անարուեստ գրականութեան, ինչպէս՝ Հայերէնի թարգմանուած ու հայերուն մէջ տարածում ստացած *Թափառական հրեան* կամ *Նիք Քարթըր*, որոնք, իր բառերով, խայտառակ, ախտաւոր, ախտաշունչ, ոճրաբոյր, հասարակ, անճիգ ու անարուեստ գործեր են՝ սահմանուած միայն ժամանակ անցընելու համար: Ազնուական գրականութիւնը հայերուն մէջ «սեղմ կալուածի մը միայն տէրն է», քանի որ «ժողովուրդին մեծագոյն մասը զուրկ է դեռ անոր մտերիմ շունչէն»: Հետեւաբար, տակաւին անկարող դառնալու ցեղի փրկութեան գործօնը:

Լուծումը ունի երկու ճամբայ՝ ժողովուրդը գրականութեան տանող եւ գրականութիւնը ժողովուրդին:

Առաջինին համար պէտք է ժողովուրդը ազատել անարուեստ գրականութենէն, որուն դէմ պէտք է պայքարին անհատ գրողները, գրական հանդէսները՝ իրենց գրականութեամբ եւ քննադատութեամբ:

Կրնան պայքարիլ նաեւ գրական ընկերակցութիւնները՝ դասախօսութիւններու եւ գրական ասուլիսներու միջոցով, օգտագործելով կենդանի խօսքի ազդեցութիւնը:

Աւելի արդիւնաւոր է դպրոցը, ուր, հայերէն լեզուի եւ գրականութեան դասընթացքը կը գտնուի ողբալի վիճակի մէջ: «Քանի՞ ուսուցիչ կարելի է համրել, Գրականութեա՛ն ուսուցիչ, որոնք տողերէն վեր բարձրանալ գիտնան»:

Երկրորդ ճամբան գրականութիւնը տանիլն է դէպի ժողովուրդը: Ասոր համար անհրաժեշտ է տոհմիկ-ազգային գրականութիւն, որուն պակասը կայ:

Մխիթարեանի այս կէտէն է որ կը սկսի բանավէճը իր եւ Թաշեանի միջեւ: Երկուքն ալ համաձայն են ազգային գրականութեան անհրաժեշտութեան մասին: Մինչդեռ Մխիթարեան համոզուած է որ կարելի է զայն ստեղծել արտերկրի մէջ (այսօրուայ բառապաշարով՝ Սփիւռքի), Թաշեան կտրականապէս կը հերքէ անոր կարելիութիւնը հայրենիքէն դուրս:

Տեսնենք թէ ինչպէս երկու հեղինակները մօտեցած են հարցին:

**Ոչ-ազգային գրականութիւն**

Մխիթարեան կը գրէ՝ որ յատկապէս թրքահայ գրականութիւնը անջրպետով մը բաժնուած է հաւաքականութենէն, ապրելով մեկուսի եւ անջատ կեանք մը, ի տարբերութիւն արեւելահայ գրականութենէն.

«Թերեւս, առանց մեծ անիրաւութիւն մը ըրած ըլլալու, կրնանք պնդել, թէ մեր ազգայնութիւնը յատկանշող գրականութիւն չունինք: Այս տեսակէտէն աւելի բախտաւոր է արեւելահայ հատուածը, իր Րաֆֆիովն ու Թումանեանովը, միայն երկուքը յիշելու համար: Թրքահայ-Պոլսահայ-գրականութիւնը մասնաւորաբար, հեռու հայրենի հողէն, հայրենի գանգուածի շունչէն, ջլատուած իր ստեղծագործութեան մէջ ու բռնակալ ռէժիմի տակ կքած, չէր կրնար ինքնուրոյն ըլլալ, ազգային գոյն ունենալ: Անիկա ճակատագրուած էր ապրիլ ուրիշին ներկովը, օտարին կեանքովը, ուրիշին շունչովն ու շրջազգեստովը: Մակաբոյծի կեանքը ապրեցաւ երկար տարիներ: Հայ գրողը հայերէն գրեց, բայց կրկնեց, ընդօրինակեց օտար գրողին գրածը, հետեւեցաւ անոր, շուքի մը պէս, որ զուրկ է սեփական կեանքէ»:

Մխիթարեանի համար նուազ ազգային կամ ոչ-ազգային գրականութեան կրողներն են, օրինակ, պոլսահայեր Գրիգոր Զօհրապ եւ Օննիկ Չիֆթէ-Սարաֆ՝ անոնց միանալով նաեւ արեւելահայ Շիրվանզադէ, որոնց տիպարները գերծ չեն օտար ազդեցութենէ, հոգեբանութեամբ եւ ձգտումներով քիչ անգամ հայ են, ստացած են ֆրանսական եւ ռուսական դէմքեր: Զօհրապի պարագային, «իր տաղա՛նդը միայն փրկած է զինքը Մօբասանի հետեւակն ըլլալէ»:

Թաշեան միանշանակ է ու անզիջող իր կարծիքին մէջ՝ արտերկրի մէջ խորքով ու ձեւով *հայ* գրականութիւն չունինք: Գրողներուն մօտ պարզապէս պակսեր է «թռիչքը դէպի առոյգ, մշտանորոգ, «ազգայնակա՛ն» գրականութեան»: Եթէ եղած է, ան «աւելի շատ պատահականութեան մը բաժինն է եղեր քան թէ կազմակերպուած, մտածուած ճիգի արդիւնք»:

**Ազգային գրականութիւն**

Մխիթարեան կը յիշատակէ իրեն համար ընդունելի ազգային գրականութեան հեղինակներու անուններ՝ Րաֆֆի, Յովհաննէս Թումանեան, Ռուբէն Զարդարեան, Աւետիս Ահարոնեան, Սիամանթօ, Դանիէլ Վարուժան: Այս բոլորին գրականութիւնը «կապուած է հայ զանգուածներու կեանքին, պատմութեան, աւանդութեան, անոնց ցաւին, ուրախութեան, անձկութիւններուն եւ խանդավառութիւններուն: Առոյգ գրականութիւն մը՝ հայ ցեղին արիւնովը եւ հայ հայրենիքին արեւովը շնչաւորուած»:

Թաշեան իբրեւ ազգային գրականութեան կրողի նմուշներ կը յիշատակէ Ռուբէն Զարդարեան, Յովհաննէս Թումանեան, Թլկատինցի եւ Գարեգին Սրուանձտեանց: Անոնք կրցած են «հայ շունչը, հայ ոգին, հայ երազանքը խառնել գրական ստեղծագործութիւններուն»:

**Ինչպէ՞ս գրականութիւնը տանիլ ժողովուրդին**

Համաձայն Մխիթարեանին, գրականութիւնը ժողովուրդին կարելի է տանիլ՝ եթէ ան մաքրուի օտարաբանութիւններէն.

«Եւ այսպէս, երբ մեր գրականութիւնը ազատագրուի օտար էջերու բեռէն, երբ մեր գրողները դադրին թափառումներէ ու թարթափումներէ, ու խորասուզուին իրենց հարազատ աշխարհին մէջ, այն ատեն ճամբան հարթուած կ՚ըլլայ դէպի բարձրագոյն գրականութիւն մը: Այն ատեն ժողովուրդը կը կրէ անոր ազդեցութիւնը, որովհետեւ անոր մէջ կը գտնէ իր սեփական կեանքը, իր խտէալը, իր երազը, իր մտածումը, իր վիշտը, մխիթարութեան, վերելքի ու ստեղծագործութեան իր ճանապարհը: Այն ատե՛ն միայն ժողովուրդը կը ձուլուի իր գրականութեան հետ որ կը տանի զայն դէպի իր ճակատագիրը:

«Հայ Գրականութիւնը մինչեւ այս ճամբայէն չքալէ, պիտի մնայ տժգոյն ու ճամբուն եզերքը, աչքը սեւեռած անցնող գացող անտարբեր սերունդներուն»:

Թաշեան եւս տոհմիկը կը կապէ գրականութիւնը ժողովուրդին եւ ժողովուրդը գրականութեան մօտեցնելու գաղափարին հետ: Գրականութիւնն ու ժողովուրդը ծանօթ չեն իրարու եւ չեն հասկնար զիրար: Համաձայն է նաեւ, որ հայ գրականութիւնը պէտք է ազատել օտար էջերու բեռէն:

(Շար. 3)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

36. Զապէլ Եսայեան (Բարիզ), «Գրական ուղին», *Հայաստանի կոչնակ*, 9 Փետրուար 1924, ԻԴ. տարի, թիւ 6, էջ 168-170:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՔԱՐՏԷԶԻ ՎՐԱՅ ՄԻԱՅՆ ՄԵՆՔ, ԱՐՑԱԽՆ ՈՒ ԱԴՐԲԷՋԱՆԸ ՉԵՆՔ, ՀԶՕՐ ՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐ ԿԱՆ, ՈՐՈՆՔ ՇԱՀԵՐ ՈՒՆԵՆ, ՈՐ ՀԱԿԱԴՐՒՈՒՄ ԵՆ ԻՐԱՐ. ԱՐԱՐԱՏ ՄԻՐԶՈՅԵԱՆ

Յունուարի 19-ի Ազգային Ժողով - կառավարութիւն հարց ու պատասխանի ժամանակ Հայաստան խմբակցութեան պատգամաւոր Աննա Գրիգորեանը հարցրեց Արտաքին Գործերի նախարար Արարատ Միրզոյեանին. «Սոչիի հանդիպումից յետոյ Ռուսաստանի նախագահն ասում էր, որ մինչեւ 2021 թուականի վերջ արդէն պէտք է հրապարակուէին դելիմիտացիայի մեխանիզմները: Տարին աւարտուել է, 2022 թուականն է սկսուել, դեռեւս հրապարակուած չեն այդ մեխանիզմները: Պէտք է հասկանալ, թէ ի՞նչն է խոչընդոտել, որ նախորդ տարուայ վերջին չեն հրապարակուել այդ մեխանիզմները: Նոր առաջարկը սկզբունքային առումով ի՞նչ կէտեր է իր մէջ պարունակում, կոնկրէտ ի՞նչ քարտէզներ են դրուած սեղանին, ո՞ր թուականի քարտէզներ, եւ արդեօք այդ առաջարկի մէջ ներառուա՞ծ է Ադրբէջանի տարածքային ամբողջականութեան ճանաչման կէտը»:

Արարատ Միրզոյեանն ի պատասխան ասաց. «Ես այսօր ասացի, որ մենք ներկայացրել ենք առաջարկներ, դրանք որոշակիօրէն նոր առաջարկներ են: Իսկ թէ ինչով են տարբերւում հին առաջարկներից, թոյլ տուէք այս պահին չասեմ: Եւ ընդհանրապէս ուզում եմ մի այսպիսի դիտարկում անել, որովհետեւ դատողութիւններ են հնչում, օրինակ, այլ երկրների անուններ էք տալիս, կազմակերպութիւնների՝ այս կամ այն երկրներում միջամտութեան հարցեր էք քննարկում: Ես ուզում եմ առաջարկել այսպիսի իրավիճակներում շատ սեւ-սպիտակ չդատել, որովհետեւ քարտէզի վրայ

4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱՐՄԷՆ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՍՈՒՏԵՐՈՒՆ ԲՈՒՐԳԸ ՓԼԱՒ. ՆԱԽԱԳԱՀԸ ՍՏԻՊՈՒԱԾ ՀՐԱԺԱՐԱԿԱՆ ՏՈՒԱԾ Է

**ՍԱՄՍՈՆ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ ԵՒ ԷԴԻԿ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆ**

Նախագահ Արմէն Սարգսեան հրաժարականի դիմումին մէջ նշած է քանի մը պատճառներ, սակայն կը կարծենք՝ որ անոնք քիչ առնչութիւն ունին իր հրաժարականին հետ: Մեր կարծիքով, հրաժարականի մէկ պատճառ կայ. Հայաստանի քաղաքացի ըլլալէն բացի, ան նաեւ այլ երկիրի քաղաքացի էր, առնուազն մինչեւ նախագահ դառնալը:

Երբ Կազմակերպուած Յանցագործութեան եւ Փտածութեան Լուսաբանումի Նախագիծը (OCCRP) նախագահ Արմէն Սարգըսեանին հարցում ուղարկեց այլ երկիրի քաղաքացի ըլլալու մասին, Սարգսեան ապացոյցներ ուզեց: Նշենք, որ այդ երկիրը Միացեալ Թագաւորութիւնը չէ՝ որուն քաղաքացին էր Արմէն Սարգսեան եւ որ յայտնի դարձաւ իր ընտրուելէն առաջ:

Արմէն Սարգսեան եղած է Քարիպեան ծովուն վրայ գտնուող Սենթ Քիթս եւ Նեւիս փոքր երկիրի քաղաքացի:

Մենք տեղեկութիւն ունէինք նախագահի Սենթ Քիթս եւ Նեւիսի անձնագիր ունենալուն մասին, որ հաստատուեցաւ Սարգսեանի հետ նամակագրութեան ընթացքին: Հետաքննութեան մանրամասնութիւնները այս փուլին չենք կրող ներկայացնել, քանի որ անիկա անդրսահմանային հետաքննութիւն է եւ տակաւին չէ աւարտած:

Յունուար 23-ին Հայաստանի նախագահը հրաժարականի մասին յայտարարութիւն տարածեց: Ուշագրաւ փաստ մը կայ. այդ յայտարարութենէն առաջ ան պատասխանած էր Սենթ Քիթս եւ Նեւիսի իր քաղաքացիութեան մասին մեր շարք մը հարցումներուն: Այդ ժամանակ ան պաշտօնական այցելութեամբ կը գտնուէր Արաբական Միացեալ Էմիրութիւններ: Այնտեղէն առողջական խնդիրներու պատճառով մեկնեցաւ արձակուրդի: Իսկ հրաժարական տուաւ եւ չվերադարձաւ Հայաստան:

Երբ ապացոյցներ տրամադրելու իր խնդրանքին ի պատասխան մենք փոխանցեցինք մեր ձեռքի տակ եղած իր անձնագրային տուեալները, Արմէն Սարգսեան առաջ քաշեց իր վարկածը:

Վարկածին մէջ ան կը նշէ՝ որ տարիներ առաջ ներդրումներ ըրած էր այդ երկիրը: Նամակագրութեան մէջ նախագահը կը խոստովանի՝ որ մասնաբաժին ունեցած է Սենթ Քիթս եւ Նեւիսի պանդոկներէն մէկուն մէջ: Ըստ իր պնդումին, ան մասնաբաժինը փոխանցած է ընտանիքի անդամներէն մէկուն՝ նախքան 2013-ին Միացեալ Թագաւորութեան մէջ Հայաստանի դեսպան դառնալը:

Սենթ Քիթս եւ Նեւիսի մէջ ներդրումներուն դիմաց քաղաքացիութիւն ստանալու ծրագիր եղած է, եւ Սարգսեան կ՚ըսէ՝ թէ առանց իր իմացութեան է որ ինքը այդ ծրագիրի միջոցով դարձած է քաղաքացի: Մեզի յղած իր պատասխանին մէջ ան կը նշէ. «...իմ շարժառիթը ներդրումներ անելն էր, իսկ անձնագիրն ինձ ընդհանրապէս չէր հետաքրքրում»:

Ըստ Սարգսեանի պնդումին, 2013-ին Միացեալ Թագաւորութեան մէջ Հայաստանի դեսպան նշանակուելէն առաջ, ան յանձնարարած է իր իրաւաբանին Սենթ Քիթս եւ Նեւիսի անձնագիրը վերադարձնել պետութեան:

Շարունակելով վարկածը, Սարգսեան կը նշէ՝ թէ 2017-ին, երբ իրեն առաջարկուեցաւ դառնալ Հայաստանի նախագահ, պարզած է՝ որ վերոնշեալ յանձնարարութիւնը չէ կատարուած: Պարզուած է նաեւ, որ այն անձը (ոչ իր իրաւաբանը)՝ որ պէտք է զբաղուէր Սարգսեանի քաղաքացիութեան հարցերով, մահացած է: Ասկէ ետք Սարգսեան նամակ գրած է հանգուցեալի որդիին՝ որ աշխատած է նոյն ընկերութեան մէջ, բացատրած է իրավիճակը եւ կրկնած իր խնդրանքը:

Փաստը այն է՝ որ Արմէն Սարգսեան Սենթ Քիթս եւ Նեւիսի քաղաքացիութենէն հրաժարելու պաշտօնական գործընթացքը սկսած է 2018 Մարտին՝ նախագահ ընտրուելէն ոչ շատ առաջ:

Այս պարագային, ան չէր կրնար Սահմանադրութեամբ նախագահ ընտրուիլ: Իր ստորագրած բոլոր հրամանագիրները՝ ներառեալ օրէնքները, պաշտօնեաներու նշանակումները, ընտրութիւնները, նոյնիսկ վարչապետ նշանակումը հակաօրինական են:

Սարգսեան մեզի կը յայտնէ, թէ ինքզինք Սենթ Քիթս եւ Նեւիսի քաղաքացի չի համարեր այն պահէն սկսեալ՝ երբ ներդրումներուն դիմաց քաղաքացիութիւն ստանալէն ետք խնդրած է սառեցնել զայն:

Նախագահ Արմէն Սարգսեան հաւանաբար Հայաստան չվերադառնայ, քանի որ կրնայ քրէական պատասխանատուութեան ենթարկուիլ փաստաթուղթ կեղծելու հիմքով:

*Հետք*, 24 Յունուար 2022

Արեւմտահայերէնի փոխադրութիւն՝ Զ.

## ԱՒԵՏԻՍԵԱՆ ՎԵՐԱԿԵՆԴԱՆԱՑԱԾ

**ՄԱՅ ՍԵԼԻՄ**

*ArtTalks պատկերասրահի Երգ եգիպտական (Chant Egyptien) ցուցահանդէսը (21 Դեկտեմբեր 2021 – 15 Յունուար 2022) յարգանքի տուրք մատուցեց եգիպտահայ գեղանկարիչ Շանթ Աւետիսեանին, վկայ դառնալով անոր գործերուն մեծ բազմազանութեան:*

ArtTalks պատկերասրահին մէջ կը բացայայտուի եգիպտահայ արուեստագէտ Շանթ Աւետիսեանի (1951-2018) աշխարհը: Իւղաներկ, ջրաներկ, սթենսիլ նկարներ, բաց նամակներ, զգեստներ եւ հիւսուածոներ... այս արուեստագէտը վերակենդանացած է: Գործերը ցոյց կու տան իր սերտ յարաբերութիւնը ծննդավայր Եգիպտոսի հետ: Նոյն ինքը ցուցահանդէսին խորագիրը՝ *Chant Egyptien* [ֆրանսերէն Chant կը թարգմանուի Երգ, միաժամանակ մատնանշելով Շանթ անունը, Հ.Ա.], կը ներառնէ ենթիմաստ մը՝ որ կը համառօտագրէ իր գործերու ամբողջականութեան յղացումը, արտացոլելով այն փաստը՝ որ ինք կ՚երգէ Եգիպտոսը: Ջգտելով փաստագրել արուեստագէտները եւ լայն հանրութեան առջեւ ցուցադրել անոնց գործերը, ArtTalks պատկերասրահը ի պատիւ Աւետիսեանին (1951-2018) կը կազմակերպէ այս ցուցահանդէսը: Ցուցադրուած գործերը փոխ առնուած են Ժորժ Միքայէլեան հայ ընտանիքի անձնական հաւաքածոյէն:

Ցուցասրահին մէջտեղը, մեծ սեղանի մը վրայ տարածուած զանազան գիրքերն ու հանդէսները կ՚ոգեկոչեն նկարիչին ծնունդը, իր առաջին ցուցահանդէսները Եգիպտոսի մէջ, իր ընտանեկան հայ արմատները, եւ այլն: Սթենսիլի եւ ջրաներկի գեղանկարներու շարքի մը մէջ, Աւետիսեան կը վերարտադրէ եգիպտական սինեմայի խորհրդանշական դէմքերը՝ Հենտ Ռոսթոմ, Եուսէֆ Ուահպի, Ասմահան, Թահէյա Քարիոքա, Նակիպ Ալ-Ռիհանի, Սամիա Կամալ, Օմմ Քալսում եւ Ֆաթէն Համամա: Իր սթենսիլի թեքնիքը եւ ջրաներկի գոյները ներշնչուած են 1950-1960-ական թուականներու եգիպտական հանդէսներու կողքերէն: Աւետիսեան այս կողքերուն վրայ կ՚աւելցնէ չափազանցուած մանրամասնութիւններ՝ գոյներ, դիմագիծեր, եւ այլն: Ներկուած եւ վերարտադրուած սրբանկարները աւելի շուտ կը ներկայացնեն քարոզչութեան խաղերը: Սթենսիլի թեքնիքով եւ գոյներու ներկապնակով կը խարանէ եգիպտացի աստղերու ծանուցումները եւ մեծափայլ պատկերները: «Մամուլի պատկերը իրական չէ որովհետեւ մարդիկ ինքզինքնին այդպէս չեն պահեր եւ այդպէս չեն երեւար... Կեղծ է ամէն բան», նշած է արուեստագէտը 2008-ին *Tresholds* հանդէսին տուած հարցազրոյցին:

Այս նկարչութիւնը ազդարարութեան գործիք մըն էր, բայց նաեւ արժէքի ստեղծագործում՝ շնորհիւ իր թեքնիքին, գոյներուն եւ անցեալի հանդէսներու առաջին էջերուն հնարուեստ տեսքին:

**Բնանկարներ Նեղոսի ափով**

Շանթ Աւետիսեան մեծապէս ազդուած է Նեղոսի ափի գիւղական աշխարհէն եւ գիւղացիներու առօրեայէն: Առագաստանաւերը խոր ներշնչումի աղբիւր հանդիսացած են թուղթի վրայ ջրաներկի գործերուն համար: Աւետիսեանի մօտ Նեղոսը ընդունած է արեւի շարժումէն արտացոլուած գոյները: Ջուրին մակերեսը երբեմն մոխրագոյն է՝ ցոյց տալու համար լուսաբացի արեւին բացակայութիւնը, երբեմն վառ նարնջագոյն՝ մութ սրճագոյն նրբերանգներով, արտացոլելու համար մայրամուտի արեւը: Կտաւով եւ քաթանով իւղաներկ նկարներուն վրայ ընդգծուած է Եգիպտոսի գիւղերու ճարտարապետութեան պարզութիւնը: Ազդըւած ըլլալով իր ընկեր եւ դաստիարակ Հասան Ֆաթհիէն, Աւետիսեան տուները կը նկարէ կամարներով եւ գմբէթներով: Եգիպտական ինքնութիւնը կրող գործեր:




**Կինը ուրախութեան եւ տխրութեան միջեւ**

Փոքր ձեւաչափով դիմանկարներու ուրիշ շարքի մը մէջ, Շանթ Աւետիսեան ներշնչուած է գիւղացի կիներէն եւ անոնց առօրեայէն: Այս կիներուն ջրաներկ դիմանկարները ցոյց կու տան անոնց սովորութիւնները դաշտին վրայ կամ տան մէջ: Շեշտադրուած են դիմային մանրամասնութիւնները: Կը տեսնենք կինը՝ որ կը քալէ դաշտերուն վրայ, կը պարէ, կը սպասէ արմաւենիի մը կամ ծառի մը տակ: Այս գիւղացի կիները երջանիկ մարդիկ են՝ աշխուժութեամբ տոգորուած: Որոշ իւղաներկ նկարներ խօսք կու տան այս երջանկութենէն եւ փոխարէնը կ՚արտացոլեն անոնց կնոջական էութիւնները եւ հոգեկան տրամադրութիւնները: Զգաստ ներկապնակով, սեւ մարմինները կը կորսուին տարածութեան մէջ: Այստեղ Աւետիսեանին տիպարները աւելի մօտ են վերացական ուրուագիծեր ըլլալու: Ընդամէնը աչքերը եւ մեծ սեւ շղարշ մը բաւարար են սահմանելու այս տխուր կիներուն քալուածքը: Իբրեւ նիւթ ունենալով կինը, Աւետիսեան կը խորհրդանշէ կեանքի յաւերժական հակադրութիւնները (ուրախութիւն եւ տխրութիւն, առաւօտ եւ գիշեր, պայծառութիւն եւ ժուժկալութիւն)՝ խաղալով կերպարային արուեստի եւ վերացականութեան հետ:



Այս եգիպտացի հայը, իր բազմազան գեղարուեստական արտադրութեան հետ միասին, ձեռնամուխ եղած էր հիւսուածոյի եւ զգեստներու ձեւաւորումի արկածախնդրութեան մէջ: Ցուցասրահին մէջ կնոջ մը մօտէլը կը կրէ ասեղնագործ եւ թաւիշէ հայկական աւանդական հագուստ: Մօտէլին քով տեղադրուած են քանի մը նախագծային (design) էսքիզներ:

Ֆրանսական գրականութեան եւ յատկապէս բանաստեղծութեան սիրահար, 1970-ականներուն Ֆրանսայի մէջ երկար կեցութենէ ետք, ջրաներկ նկարներու մէջ Աւետիսեան կը ներշընչուի Պօտլէրի եւ Ռեմպոյի բանաստեղծութիւններէն, արտացոլելով երեւակայական հորիզոններ եւ տարածութիւններ: Ան կը խաղայ այս հեղինակներու բանաստեղծութիւններէն կատարած քաղուածքներու ընդօրինակութեան եւ նկարի սթենսիլի գոյներու հակադրութեան միջեւ: Եգիպտոսի, Հայաստանի եւ Ֆրանսայի միջեւ, Շանթ Աւետիսեանի գործերը կը բացայայտեն բազմամշակութային հարուստ փորձառութիւն եւ ստեղծագործական այլազանութիւն:

*Al-Ahram Hebdo* (շաբաթաթերթ, Գահիրէ)
12-18 Յունուար 2022, թիւ 1406, էջ 16
Ֆրանսերէնէ թարգմանեց՝ Հ. Ա.




## 2 ☞ ՔԱՐՏԷԶԻ ՎՐԱՅ ՄԻԱՅՆ ՄԵՆՔ, ԱՐՑԱԽՆ ՈՒ ԱԴՐԲԷՋԱՆԸ ՉԵՆՔ...

միայն մենք, Արցախն ու Ադրբէջանը չենք: Կան բազմաթիւ շատ մեծ քանակով պետութիւններ, որոնց մի մասն ունենն շատ հզօր տնտեսութիւն եւ հզօր բանակներ: Դրանք բոլորն ունենն շահեր, մի մասն ունեն շահեր, որոնք հակադրւում են իրար, մի մասն ունեն շահեր, որոնք ինչ-որ հանգամանքներում զուգակցւում են կամ համընկնում են: Եւ որեւէ աշխարհաքաղաքական իրողութիւն պէտք է հաշուի առնել այդ մեծ զարգացումների համատեքստում, յատկապէս, որ այդ զարգացումները ոչ միայն շատ սրընթաց են, այլ նաեւ վտանգաւոր ոչ միայն մեր, այլ շատ աւելի լայն տարածաշրջանի ու աշխարհի համար»:

## 1 ☞ ՀՐԱԺԱՐԱԿԱՆ՝ ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ՑՈՒՑԱԴՐՈՒԹԵԱՄԲ

միջոցով սննդամթերք կը բաշխէ եւրասիական շուկային մէջ: Inalca Eurasia Holding GmbH-ի բաժնետոմսերուն 40%-ի սեփականատէրը աւստրիական Cascade International Holding GesmbH ենթահոլդինկային ընկերութիւնն է, հիմնադրուած 2014-ին, եւ ստեղծուած իտալական պետական գրանցումէն սննդամթերք արտադրող Inalca S.P.A.-ի եւ ներդրող Արմէն Սարգսեանի հետ գործընկերութեամբ՝ Եւրասիոյ մէջ համատեղ գործունէութիւն ծաւալելու նպատակով: Cascade-ը իր դուստր ընկերութիւններուն միջոցով ուժեղօրէն մուտք գործած է Ղազախստանի եւ Ռուսաստանի շուկաները:

Երեւակայեցէք, երբ 2017 Ապրիլ 25-ին, այսինքն՝ այն ժամանակ, երբ Արմէն Սարգսեան Միացեալ Թագաւորութեան մէջ Հայաստանի արտակարգ եւ լիազօր դեսպան էր, Ղազախստանի մէջ հանդիպի երկիրի բռնակալ վարչապետ Պաքիթժան Սակինթաեւի հետ՝ իբրեւ Inalca Eurasia Holding GmbH տնօրէններու խորհուրդի նախագահ: Իբրեւ օլիկարք-գործարար՝ այլ ոչ իբրեւ դիւանագիտական գործիչ:

Աւստրիայէն Մեծն Բրիտանիա: Արմէն Սարգսեան գրանցուած է Թեմզայի ափին, Լոնտոնի ամենասուղ թաղամասերէն մէկը գտնուող հասցէն՝ 11 Cheyne Walk, London:

2002-էն մինչեւ ընկերութեան լուծարումը, եղած է բրիտանական Eurasia House International ընկերութեան տնօրէնը: 2002-2005-ին, նոյն ընկերութեան մէջ Սարգսեանի գործընկերը եղած է Ղազախստանի նախագահի դուստրը՝ Տարիկա Նազարպաեւա:

Իր հիմնադրութեան թուականէն՝ 2003-էն մինչեւ 2008, եղած է դեղագործական ապրանքներու մեծածախ վաճառքով զբաղող Cambridge Pharmaceuticals Limited-ի տնօրէն:

Բացի այդ, Արմէն Սարգսեանի քոյրը՝ բժշկուհի Կարինէ Սարգսեան 2008-2014-ին եղած է նորզելանտական Bromsgrove Limited-ի դուստր ընկերութեան՝ Foxton Limited-ի տնօրէնը:

Գացինք Ֆրանսա: 2010-ին, Կարինէ Սարգսեան եւ իր դուստրը Տաթեւիկ կը հիմնեն Փարիզի VH Estate անունով ընկերութիւնը: 99 տոկոսը կը գրանցուի Կարինէ Սարգսեանի անունով, իսկ 1 տոկոսը՝ Տաթեւիկի: Ընկերութեան մասնակից չհանդիսացող տնօրէնը (gérant non associé) 2010-2019-ին եղած է Արմէն Սարգսեան, որ Հայաստանի նախագահի պաշտօնը ստանձնած է 2018 Ապրիլին: Ա. Սարգսեան երկու որդի ունի՝ Վարդան եւ Հայկ, որոնց անուններն սկզբնատառերը, ինչպէս կը տեսնենք, կը համընկնին ընկերութեան անունին: 2010-ին, VH Estate-ը 7,510,000 եւրոյով երկու միաւոր անշարժ գոյք ձեռք բերած է Փարիզի հարուստ թաղամասերէն մէկուն մէջ՝ 8-րդ շրջան, Ելիսէյեան Դաշտերուն մերձակայքը:

Գործարքի շրջանակներուն մէջ, VH Estate-ը 7,510,000 եւ 240,000 եւրօ չափերով երկու վարկ կը վերցնէ SG Private Banking-ի Մոնաքոյի մասնաճիւղէն՝ գրաւ դնելով ամբողջ գոյքը: 2017-ի աշնան տեղի կ'ունենայ փոխանորդութիւն (subrogation)՝ SG Private Banking (Monaco)-ի փոխարէն ընդհանուր 7,750,000 եւրօ վարկի վարկատու (creditor) կը ձեւակերպուի զուիցերիական Union Bancaire Privee (UBP) պանքի Մոնաքոյի մասնաճիւղը: Բացի գրաւադրուած երկու միաւոր գոյքերէն՝ 2017 Դեկտեմբերին Կարինէ Սարգսեան յօգուտ UBP-ի կը գրաւադրէ VH Estate-ին մէջ իր ունեցած 99% բաժնեմասը՝ իբրեւ 7,750,000 եւրօ ընդհանուր վարկի վճարումի երաշխիք:

2013-2018-ին Արմէն Սարգսեան Հայաստանի դեսպանն էր Միացեալ Թագաւորութեան մէջ: Ըստ «Դիւանագիտական ծառայութեան մասին» օրէնքին, բացի գիտական, կրթական եւ ստեղծագործական աշխատանքէն, դիւանագէտը իրաւունք չունի կատարել այլ վճարովի աշխատանք: Եթէ հաւատանք Սարգսեանի յայտարարագիրներուն, ան նման աշխատանք չէ կատարած, ուրիշ խօսքով՝ VH Estate-էն վարձատրութիւն չէ ստացած: Հայաստանի Սահմանադրութեան 124-րդ յօդուածի 4-րդ մասը կը սահմանէ. «Հանրապետութեան նախագահը չի կարող զբաղեցնել որեւէ այլ պաշտօն, զբաղուել ձեռնարկատիրական գործունէութեամբ, կատարել վճարովի այլ աշխատանք»: Բայց նոյնիսկ եթէ դեսպան ու նախագահ եղած ժամանակ Արմէն Սարգսեան VH Estate-ի համար վճարովի աշխատանք չէ կատարած ու չէ վարձատրուած, փաստ է, որ 2010-2019-ին ան զբաղած է տնօրէնի պաշտօն:

Հասանք Հայաստան: Սարգսեան կը ղեկավարէ Բրիտանական Վիրճինեան Կղզիները գրանցուած Highbury Group ընկերութիւններու խումբը: 2017-էն սկսեալ, այդ խումբի ընկերութիւններէն մէկը՝ Էյլաու Ինք ՍՊԸ-ն, դարձեալ գրանցուած Վիրճինեան Կղզիները, ամբողջապէս կը պատկանի Սարգսեաններուն: Ան կը զբաղի Հայաստանի մէջ Փեփսիի եւ այլ խմիչքներու արտադրութեամբ:

Սարգսեան նաեւ Knightsbridge ընկերութիւններու խումբի ղեկավարն է՝ գրանցուած օֆշորային գօտիները: Խումբը կը գործէ ուժանիւթէն մինչեւ նորագոյն թեքնոլոժիի ոլորտներուն մէջ: Այդ խումբի ընկերութիւններէն մէկն է՝ Knightsbridge Natural Resources (Armenia) հոլտինկը, որ բազմաթիւ ներդրումներ ունի Ղազախստանի եւ Ռուսաստանի մէջ: Մասնաւորապէս՝ Լենինկրատի շրջանի ջրամատակարարումի Նովոլատոժսքի ջրագիծի նախագիծի քննարկումի նպատակով Արմէն Սարգսեան 2012-ին հանդիպած է Լենինկրատի մարզի ՏԻՄ ղեկավարներուն հետ եւ յուշագիր ստորագրած:

Վերջ *Հետքի* համառօտագրութեան:

Ասոնք միայն պաշտօնապէս յայտնաբերուածներն են: Ամուլսարի հանքի հետ իր առնչութեան մասին ժամանակին գրած էր *Ջահակիր* (Թիւ 1812):

**Հրաժարականին պատճառը**

Իսկ ինչո՞ւ հրաժարեցաւ: Նախադէպը կը հաստատէ ներկան: Վերը *Հետքի* հեղինակները արձանագրած էին՝ թէ ինչպէս ան հրաժարած էր Հայաստանի քաղաքացիութենէն, երբ արդէն քաղաքացիութիւնը դարձած էր անպէտք: Հիմա նոյնը կը կրկնուի: Հայաստանի մէջ այլեւս անկարող ըլլալով պաշտօնի ազդեցութեամբ զարգացնել սեփական պիզնէսները, կը հրաժարի նախագահի պաշտօնէն, ազատ ըլլալու համար սեփական միջոցներով շարունակել գործարքները Բրիտանիոյ մէջ: Կը բաւէ որ չյաջողեցաւ Ամուլսարի հանքը կեանքի կոչել: Եթէ յետյեղափոխական միջավայրը կրցաւ արգիլել մեծ օլիկարքի մը ծաւալումը, ասիկա կրնայ նկատուիլ յեղափոխութեան յաջողութիւններէն մէկը: Թէեւ յեղափոխութիւնը ընդհանրապէս ձախողեցաւ օլիկարքութեան դէմ իր պայքարին մէջ:

**Հրաժարում արտասահմանէն**

Նախկին նախագահի արտասանած վերադիր հայրենասիրութիւնը կ'ենթադրէ՝ որ պիտի ապրի Հայաստանի մէջ եւ պիտի պայքարի իբրեւ ընդդիմութիւն: Բայց իր դրամական շահերը կ'ըսեն՝ որ պիտի ապրի իր ֆինանսական հայրենիք Մեծն Բրիտանիոյ մէջ: Արդէն Յունուար 18-ին նախագահական աշխատակազմը պաշտօնապէս յայտարարած էր՝ որ բուժուելու համար (եթէ հաւատանք) մեկնած էր Հայաստանէն, առանց յիշատակելու վայրը: Շատ հաւանական է Լոնտոն գացած ըլլայ: Ամէն պարագայի, արդէն հաստատուեցաւ՝ որ հրաժարականը ղրկուած է դուրսէն: Ասիկա պետութեան ներկայացուցիչի մը խոր արհամարհանքն է իր տնօրինած պետութեան նկատմամբ: Հանրայինօրէն եւ ուղղակիօրէն իր ժողովուրդին դիմելու ցանկութեան բացակայութիւն:

Տեսա՞ծ էք Ֆրանսայի ֆրանսացի նախագահ մը՝ որ նախագահ ըլլալու համար կանչուի Գերմանիայէն, շրջան մը ետք վերադառնայ Գերմանիա եւ այնտեղէն հրաժարական ղրկէ, եւ ապա բնակութեան համար վերահաստատուի Գերմանիա: Եւ տակաւին կ'ուզենք խօսիլ պետականութեան հիմքերու մասին:

**Այլ կէտեր**

Տակաւին երկար կարելի է անդրադառնալ նախկին նախագահին մասին: Օրինակ, թէ ինչպէս ի տես վերջին պատերազմի պարտութեան փորձեց իր ձեռքը կեդրոնացնել իշխանութիւնը եւ կատարել հակաիշխանական արշաւ՝ համերաշխութեան անունին տակ: Թէ որքան անհաղորդ ու միամիտ էին պատերազմին ժամանակ եւ անկէ ետք իր կատարած լայնատարած հարցազրոյցները միջազգային մամուլին եւ հեռատեսիլին հետ, ներառեալ Եգիպտոսի TenTV-ին տուած տարօրինակ պատասխանները: Թէ ինչպէս պարտութիւնը օգտագործեց իր կողմը գրաւելու համար Սփիւռքը՝ սփիւռքեան միայն մէկ կազմակերպութեան մը տասնեակ մասնաճիւղերուն հետ իր ունեցած հեռաձայնային խօսակցութիւններուն արդիւնքները ներկայացնելով իբրեւ ԱՄԲՈՂՋ Սփիւռքի կարծիք, չհասկնալով՝ որ Սփիւռքն էր որ զինք կ'օգտագործէր յաւելեալ ձայն մը վաստակելու համար: Այդ Սփիւռքը երբեք իրեն չտուաւ ակնկալած անձնական-եսական աջակցութիւնը, թէեւ Թաւշեայ Յեղափոխութենէն ետք յաճախակի օգտագործեց իր անունը (յիշենք տակաւին վերջերս սփիւռքեան գերկուսակցական օլիկարք գրողի մը հարցազրոյցը անոր հետ՝ զոր կարդալով պարզապէս կարելի է ժպտիլ): Նախագահը չէր հասկցած՝ որ Սփիւռքը իր կողմը գրաւելու համար անհրաժեշտ են գործնապաշտ քայլեր, օրինակ՝ իր պիզնէսներուն մէջ ներգրաւել անոր կեդրոնական քանի մը գլուխները, կամ անոնց առիթ ընձեռնել Հայաստանի մէջ տիրանալու կարեւոր բաժնետոմսերու, կամ ասպարէզ բանալ սեփական պիզնէզի ծաւալումի, ինչպէս վարպետօրէն ըրած էին իր նախորդները (անունները կան, դարձեալ *Հետքն* է զանոնք յայտնաբերողը): Այդ քանի մը գլուխները ունին Սփիւռքին վրայ ազդելու մեքանիզմները: *Իրենք* են Սփիւռքը: Նախագահը չհասկցաւ ասիկա: Լաւ է որ չհասկցաւ:

Հետաքրքրական է, որ ներկայ խորհրդարանական ընդդիմադիրները՝ որոնք օլիկարքութեան ներկայացուցիչներն են եւ կը գտնուին Սարգսեանի գաղափարախօսութեան նոյն գիծին վրայ, երբեք կարեւորութիւն չտուին անոր, թիկունք չկանգնեցան անոր: Նոյնպէս, պատերազմէն ետք յայտնուած յեղաշրջական շարժումը՝ յայտնի 17-ի ձեւաչափին տակ, անտեսեց անոր: Նախագահը մնաց մինակ:

Լաւ կ'ըլլար եթէ հրաժարէր՝ առանց հայրենասիրական մեծաշուինդ յայտարարութիւններու: Պարզապէս՝ հրաժարէր:

Հիմա «ընդդիմադիր»-ները քիչ մը պիտի շահագործեն այս հրաժարականը, քանի մը օղբ պիտի կարդան Հայաստանի գլխուն եւ Սարգսեան պիտի անցնի մոռացութեան գիրկը:

Բարի ճանապարհ Արմէն Սարգսեանին իբրեւ բրիտանահայ գործարար:

Ա.

Յ.Գ. Այս գրութիւնը աւարտած էր՝ երբ *Հետքը* հրապարակեց նոր կարեւոր հետաքննութիւն մը նախագահի մասին, զոր կը հրատարակենք այս թիւով (էջ3):

دار شمشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1908 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 10 ՓԵՏՐՈՒԱՐ 2022 — *ՀԱՏԸ ՁԵՌ.ՔԷ 75 Ե. Դհկ.* — عدد رقم ١٩٠٨ الخميس ١٠ فبراير ٢٠٢٢


## *ՍՊԻՏԱԿ ԹՈՒՂԹԸ ԵՒ ՓՈՐՁ ՄԸ ՔՆՆԱԿԱՆԱՑՆԵԼՈՒ ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԱՐՑԸ*

2021 Յուլիսին լոյս տեսաւ երեք համահեղինակներու զեկոյց-նախագիծը՝ *Սպիտակ Թուղթ*, մատչելի նաեւ առցանց տարբերակով (139 էջ):

Ունի ենթախորագիր՝ *2020 թ. Ղարաբաղեան պատերազմը եւ Հայաստանի ապագայ արտաքին ու անվտանգութեան քաղաքականութիւնները*:

Հեղինակներն են՝ միջուկային ճարտարագէտ՝ Ռոբերտ Այդաբիրեան (Փարիզ), պատմաբան եւ դիւանագէտ՝ Ժիրայր Լիպարիտեան (Պոսթըն) եւ քաղաքագէտ՝ Թալին Փափազեան (Էքս ան Փրովանս):

Նախագիծը անկախ նախաձեռնութիւն մըն է՝ երեք համախոհ ու կարող մտաւորականներու սերտ ու արդիւնաւոր համագործութեամբ:

Հեղինակները կը բացատրեն՝ թէ նախագիծը կը փորձէ պատասխանել 2020 թուականի Ղարաբաղեան պատերազմի հետեւանքներուն հետ կապուած երեք հարցեր. «Ինչպէ՞ս է Հայաստանը հասել իր պատմութեան այս շատ ցածր եւ վտանգաւոր կէտին, ի՞նչ կարելի է եւ ինչ պէտք է արուի, ինչի՞ հիման վրայ պէտք է կառավարութիւնը եւ, ընդհանրապէս, իշխանութիւնները կատարեն այս որոշումները» (էջ 3):

Զեկոյցը բաղկացած է չորս մասերէ: Առաջին մասը մասնակիցներու կողմէ հարցաշարին տրուած պատասխաններուն ամփոփումն է: Երկրորդ մասը երեք համահեղինակներուն դիտարկումները, առաջարկութիւններն ու եզրակացութիւններն են: Երրորդ եւ չորրորդ մասերը առնչուող փաստաթուղթեր են եւ քանի մը Յաւելուածներ:

Չորս մասերուն ողջ շարադրանքը ներկայացուած է կէտերու բաժանումներով (1, 2, 3 եւ Ա., Բ., Գ.), որ ինքնին կը բացատրէ զեկոյցին բնոյթը:

Ոճը յաճախ վճռական է՝ «պէտք է», «չպէտք է»:

Ստորեւ՝ մտորումներ առաջին երկու մասերուն մասին:

**ԱՌԱՋԻՆ ՄԱՍ**

Առաջին մասը հարցաթերթիկի պատասխաններու դասակարգում-ամփոփումն է: Ովքե՞ր են հարցաթերթիկին ընտրեալ պատասխանողները: Ըստ երեք համահեղինակներու ընտրութեան, անոնք «ողջ հայոց աշխարհի» բազմաթիւ փորձագէտներ եւ մտաւորականներն են, եւ անոնց պատասխաններն ու կարծիքները կ՚ընդգրկեն «ներկայիս հայկական մտածողութեան ողջ պատկերը» (էջ 3): Դժուար է համաձայնիլ «ողջ»-ի հետ: Ոչ թէ որովհետեւ անոնք «ողջ» չեն, այլ պարզապէս որովհետեւ չեն կրնար «ողջ» ըլլալ: «Ողջ» կը նշանակէ պարփակել մտաւորականն ու ոչ-մտաւորականը, կինն ու տղամարդը (25 յիշատակուած անուններէն ընդամէնը երեքն են կին), աղքատն ու հարուստը, քաղքենին ու գիւղացին, *բոլոր* մասնագիտութիւններէն ներկայացուցիչներ, բան մը՝ որ անկարելի է: Հարցաթերթիկի պատասխանները կը ներկայացնեն խումբ մը գիտակից, նուիրուած, բանիմաց եւ շրջահայեաց մտաւորականներու կարծիքներուն ամբողջականութիւնը:

Համահեղինակները կը բացատրեն փորձագէտներու ընտրութեան իրենց չափանիշը. «Ընտրութեան չափանիշներն էին պրոֆեսիոնալիզմը, հանրային խօսոյթին մասնակցութեան փաստը, մտաւոր պարկեշտութեան զգացման արտայայտումը եւ անկեղծ մտահոգութիւնը՝ կապուած այն հարցերի հետ, որոնք պէտք է քննարկուեն» (էջ 11):

Վերջաւորութեան կան հարցաթերթիկի 45 պատասխանողներէն 25-ին անունները (էջ 112-113): 45-էն 20-ը նախընտրած է չյայտնել իր ինքնութիւնը: Կը պարզուի նաեւ, որ 28 այլ հրաւիրեալներ մերժած են պատասխանել: Յայտարարուած անունները բոլորն ալ կարեւոր դէմքեր են, անկասկած: Ոմանց փորձագէտ ըլլալու հանգամանքին մասին կ՚իրազեկուէի առաջին անգամ: Բացայայտ դէմքեր են՝ «հանրային խօսոյթին» մասնակցողներ, ըստ համահեղինակներուն: Քանի մը հատը՝ մետիաթիք դէմքեր, եւ իբրեւ այդ՝ հանրային խօսոյթին մասնակցողներ:

Անձամբ ինծի՝ չհամոզեց, յատկապէս մտաւոր պարկեշտութիւնն ու անկեղծ մտահոգութիւնը: Կը գտնուի հսկայական դրամական աղբիւրի տէր կազմակերպութեան մը տնօրէնը՝ որուն խօսքին եւ գործին միջեւ խզումը արդէն դարձած է աւելի քան բացայայտ: Երկրորդ մը հեղինակն է միութեան մը պատմութեան՝ ֆինանսաւորուած նոյն այդ միութեան կողմէ, մեզի ներկայացնելով բիւրեղացած ու գեղեցկացած պատմութիւն մը՝ առանց խնդրական հարցերու, որոնք գոյութիւն ունին այդ միութեան մէջ: Երրորդ մը կարծիք կը փոխէ ըստ զանգուածայնացած տրամադրութիւններուն, չհաշուած իր սիրախաղերը սփիւռքեան ֆաշական մտածողութեամբ խմբակի մը հետ: Արդ, ո՞րն է սահմանը մտաւոր պարկեշտութեան եւ անկեղծ մտահոգութեան:

Արդարեւ, համահեղինակներու պարկեշտութեան եւ անկեղծութեան չափանշումը կարելի է դիտել ուրիշ տեսանկիւնէ՝ ուշադրութեամբ կարդալէ ետք հրապարակուած անունները: Գոնէ սփիւռքեան անուններուն մէջ կան բացայայտ բացականեր: Կրնայ ըլլալ անոնք մերժողներու ցանկին մէջ ըլլան: Կամ գտնուին 20 չյայտարարուած անուններուն մէջ: Ամէն պարագայի, այս բացակաները այն անձերն ու խումբերն են՝ որոնք իրենց գիտելիքային տիրակալութիւնը կը քօղարկեն վերադիր հայրենասիրութեամբ, եւ կրնան ըլլալ գաղութային ղեկավարներ՝ որոնք իրենց դիրքերը կը շահագործեն սեփական եսին համար, կամ այդ միութիւն-կուսակցութիւններուն ընդմէջէն արտայայտուող եւ անոնց ծառայող մտաւորականներ՝ որոնց թիւը բաւական շատ է: Տիրական, հուչակաւոր ու ինքնապարտադրող անձեր ու խումբեր են սփիւռքեան հիմնահոսանքին մէջ: Անոնք՝ բացականերն են *Սպիտակ Թուղթի* հարցաթերթիկի յայտարարուած անուններուն, քանզի իրօք հարցականի տակ է անոնց պարկեշտութիւնն ու անկեղծութիւնը:

Կը կարծեմ, որ ընտրեալ փորձագէտներու կարծիքներուն արդիւնքն է հարցաշարը, այլ ոչ «ողջ» հայութեան: Եւ այս ծիրին մէջ, ինքնին շատ կարեւոր աշխատանք մըն է՝ ուր խնդիրները երեք համահեղինակներուն կողմէ ներկայացուած են բծախնդիր դասաւորութեամբ եւ յստակ բաժանումներով:

Ընտրեալներուն պատասխանները այլազան են, յաճախ հակասական, ինչպէս կարելի է սպասել: Հակասութիւնն ինքնին կը ցուցադրէ պատասխաններուն դժուարութիւնը, երբեմն նաեւ անկարելիութիւնը: Անկարելի պատասխաններ՝ Ղարաբաղեան հարցերու նկատմամբ: Եթէ այդպէս է, ո՞ւր կը գտնուի պատասխանատուութիւնը: Ո՞վ է պատասխանատուն Ղարաբաղեան հարցի ներկայ կացութեան:

Իւրաքանչիւր պատասխանի քով փորձագէտ-պատասխանողներուն անունները չեն նշանակուած: Ընդհանրապէս այդպէս կ՚ըլլայ հարցադրումներու եւ վիճակագրութիւններու արդիւնքներուն ներկայացումը: Թէեւ համահեղինակները ի սկզբանէ յստակ շարադրած են գիրքին մեթոտաբանութիւնը, բնոյթը եւ նպատակը, բայց, միեւնոյնն է, որոշ ընթերցողներու համար դժուար պիտի ըլլայ ամբարուած տեղեկութիւններուն առատութիւնը կարդալ առանց ուղղութիւններու իրազեկութեան: Իւրաքանչիւր հարցումի այլազան ու այլամերժ պատասխանները կը կարդացուին իբրեւ իրենք իրենց մէջ ւարտած խնդիրներ: Դժուար է իմանալ՝ թէ տարբեր հարցումներուն ո՞ր պատասխանները համարժէք են

↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԿԱՅԱՑԱՒ ՓԱՇԻՆԵԱՆԻ ԵՒ ԱԼԻԵՒԻ ՀԵՌԱՎԱՐ ՔՆՆԱՐԿՈՒՄԸ՝ ՄԱՔՐՈՆԻ ԵՒ ՄԻՇԷԼԻ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ



Փետրուար 4-ին, ԵԱՀԿ Մինսքի Խումբի համանախագահ երկիրի՝ Ֆրանսայի նախագահ Էմանուէլ Մաքրոնի եւ Եւրոպական Խորհուրդի նախագահ Շարլ Միշէլի միջնորդութեամբ եւ մասնակցութեամբ տեղի ունեցաւ Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի եւ Ազրպէյճանի նախագահ Իլհամ Ալիեւի հեռավար հանդիպումը, կը հաղորդէ Հայաստանի վարչապետի մամուլի ծառայութիւնը:

«Կողմերը մտքեր են փոխանակել առկայ հումանիտար խնդիրների լուծման, երկու երկրների ինքնիշխանութեան եւ իրաւազօրութեան ներքոյ տարածաշրջանային ենթակառուցուածքների ապաշրջափակման, Հայաստան-Ազրբէջանի սահմանագօտում լարուածութեան նուազեցման եւ սահմանազատման, Լեռնային Ղարաբաղ միջազգային կազմակերպութիւնների ելումուտի, ինչպէս նաեւ հարցերի լայն շրջանակի

↳ 4

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԹՈՒՐՔԻՈՅ ԲԱՆԱԳՆԱՑՆԵՐՈՒՆ ԵՐԿՐՈՐԴ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ԿԸ ԿԱՅԱՆԱՅ ՓԵՏՐՈՒԱՐ 24-ԻՆ

Հայաստան-Թուրքիա կարգաւորումի գործընթացքի շրջանակներուն մէջ, երկու երկիրներու յատուկ ներկայացուցիչներուն յաջորդ հանդիպումը տեղի պիտի ունենայ Փետրուար 24-ին, Վիեննայի մէջ: Այս մասին Ֆէյսպուքի իր էջին վրայ կը գրէ Հայաստանի Արտաքին Գործերու Նախարարութեան խօսնակ Վահան Յունանեան:

Յունուար 14-ին Մոսկուայի մէջ կայացաւ Հայաստանի եւ Թուրքիոյ բանագնացներ Ռուբէն Ռուբինեանի եւ Սերտար Քըլըչի առաջին հանդիպումը: Հայաստանի ԱԳՆ-ն նշած էր, որ Թուրքիոյ հետ բանակցութիւնները անցած են կառուցողական մթնոլորտի մէջ:

Թուրքիան նաեւ Հայաստանին հրաւիրած է մասնակցելու Անթալիոյ դիւանագիտական ֆորումին, որ տեղի պիտի ունենայ Մարտ 11-13-ին: Հայաստանի Արտաքին Գործերու Նախարարութիւնը Անթալիոյ դիւանագիտական ֆորումին մասնակցելու որոշում տակաւին չէ կայացուցած, բայց կարող է մասնակցել:

# ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ
## (Մահուան 50-ամեակին առիթով)

**Հ. ԱՒԱԳԵԱՆ**

**Տոհմիկ գրականութիւն կարելի՞ է**

Թաշեան վճռականապէս համոզուած է, որ հայրենիքէն դուրս կարելի չէ ստեղծել ազգային գրականութիւն: Կը յստակեցնէ՝ որ ինք անտեղեակ ըլլալով ներկայի Խորհրդային Հայաստանի սահմաններէն ներս գործադրուող մշակոյթին, իր խօսքը կը սահմանափակէ միայն արտասահմանի հայութեամբ:

Ան կը հարցնէ. «Ինչո՞վ կարելի է հասնիլ առաջադրըուած նպատակին, *ճշմարտօրէն տոհմիկ հայ գրականութեան մը ստեղծումին*»:

Կը պատասխանէ՝ ճանաչելով հայրենիքի լեռներուն, լիճերուն, գետերուն ու ծովերուն քնարերգութիւնը, ճանաչելով ժողովուրդի հոգիին ու սիրտին միջեւ ձգուող եւ անցեալին, ներկային ու ապագային երկարող հորիզոնը, ճանաչելով ժողովուրդին ցաւերը, վայելքները, անդոհները, յոյսերը, արցունքը եւ ժպիտը: Եւ քանի որ չենք ճանչնար այս բոլորը, տոհմիկ գրականութիւն մը կը դառնայ անկարելի:

Իսկ ճանաչել կարելի է միայն ապրելով հայրենիքի մէջ. «Ժողովուրդ մը իր հայրենիքին մէջն է որ կը շինէ իր երգն ու աղօթքը, անէծքն ու հարսներգութիւնը. օտար երկնքի ներքեւ՝ օտար լարեր պիտի ունենայ հայ քնարը եւ ասիկա անխուսափելի՛օրէն»:

Բայց քանի որ առայժմ դժուար է «հայրենի կենցաղն ու հայրենի երգը ապրիլ հայրենի հողին վրայ», պէտք է «ո՛րքան կարելի է խորացնել մեր ազգայնութիւնը՝ ամէն թեւի վրայ, մանաւանդ գրականութեան մէջ», քիչ մը յետաձգելով հայրենի հողի վրայ ապրելու կարելիութիւնը:

ԺԹ. դարու եւ յետագայի պոլսահայ գրականութիւնը տոհմիկ չէ, որովհետեւ «հեռու՝ հայրենի հողէն, հայրենիք զանգուածի շունչէն, ջլատուած իր ստեղծագործութեան մէջ ու բռնակալ ռէժիմի տակ կքած, չի կրցաւ ինքնուրոյն ըլլալ, ազգային գոյն ունենալ, որովհետեւ անիկա ճակատագրուած էր ապրիլ ուրիշին ներկովը, օտարին կեանքովը, ուրիշին շունչովն ու շրջազգեստովը: Մակաբոյծի կեանքը ապրեցաւ երկար տարիներ»:

Ազգային գրականութիւնը միայն իր հարազատ միջավայրին մէջ կը զարգանայ.

«Ժողովուրդի մը գրականութիւնը իր միջավայրին մէջ միայն կրնայ զարգանալ: Որքան ատեն որ իրական կեանքէն եւ կենդանի միջավայրէն չի ստանար ան իր սնունդը, անատակ կը դառնայ կատարելու իր դերը եւ դնելու իր ստեղծագործական դրոշմը՝ գալիք սերունդներուն վրայ: Կեանքէն եւ ժողովուրդէն դուրս, անկարելի է գրականութեան տալ այն իրական ուժը, որ կոչուած է իրարու կապել, նոյն յոյսերով ու նոյն պատրանքներով սնուցանել պատահականութեան թողուած մեր թափառական բազմութիւնները»:

Ուրեմն, համաձայն Թաշեանին, հայրենիքէն դուրս ազգային գրականութիւն փնտռելը պատրանք մըն է:

Բայց «ըլլանք իրատես եւ իրապաշտ», կ՚առարկէ Մխիթարեան, եւ կ՚աւելցնէ՝ թէ հաւանաբար տակաւին երկար ժամանակ հայ ժողովուրդին մէկ մասը ապրի հայրենիքէն դուրս. «Դեռ երկար ատեն, գուցէ, հայ ժողովուրդը իր բոլոր զանգուածներովը, չի կրնար ամփոփուիլ իր հայրենիքին մէջ»:

Ուրեմն, այդ զանգուածը պիտի չարտադրէ՞ տոհմիկ-ազգային գրականութիւն:

Մխիթարեան համաձայն չէ Թաշեանի հետ: Ան համոզուած է՝ որ հայրենիքէն դուրս գտնուող գրողները կրնան արտադրել տոհմիկ գրականութիւն:

Ըստ անոր, ճիշդ է որ Պոլիսը չունեցաւ տոհմիկ կամ գաւառի գրականութիւն եւ «շարունակեց լայնարձակ հորիզոններու իր չափչփումը, արհամարհանքի եւ թերեւս արգահատանքի հայացք մը պտըտցնելով Գաւառի շարժման վրայ»: Ճիշդ է որ չունեցանք հայեցի եւ ազգային գրականութիւն, «բայց ունեցանք գրական հզօր երակ մը, ունեցանք գէթ մէկ քանի «հայեցի» գրողներ, որոնք մեր վերջի գրական երեսնամեակին փառքը կը կազմեն»: Ուրեմն, «կարելի՛ է տոհմիկ գրականութիւնը, եւ մանաւանդ, կարելի՛ է արդիւնաւորել անհատին կամ քանի մը հոգիի կողմէ փորձուած ճիգը», կ՚եզրակացնէ Մխիթարեան:

Մխիթարեան կը շարունակէ: Թէեւ թրքահայ գրողներուն մեծամասնութիւնը ներկայ Հայաստանը չէ տեսած, բայց անոնց մեծ մասը որ այսօր կը գտնուի Պալքաններ, Յունաստան, Եգիպտոս, Եւրոպա եւ Ամերիկա՝ սերած է հայկական գաւառներէն, «այսինքն՝ հայ ժողովուրդին, հայ բազմութեան մէջէն»: Հետեւաբար, սխալ է յայտարարել թէ «մեզմէ ո՞վ կը ճանչնայ մանաւանդ իր ժողովուրդը»: Ան գիտակցաբար կանգ կ՚առնէ միայն իր ժամանակուայ իրականութեան եւ գրական սերունդին վրայ, քանի որ գալիք սերունդներուն «քաղաքական ճակատագիրը չգիտնեք թէ ի՛նչ պիտի ըլլայ»:

Մխիթարեան ուրիշ առարկութիւն մը եւս կը բերէ: Մենք աւելի լաւ ու խոր կը ճանչնանք մեր ժողովուրդն ու մեր երկիրը քան ներկայիս մեր ապրած երկիրներուն ժողովուրդն ու հողը: Հետեւաբար, Եգիպտոսի կամ Ֆրանսայի մէջ ապրելով, «հնարաւո՛ր է հայ ժողովուրդին հոգիէն, անոր կեանքէն, անոր երկրէն – ապրած միջավայրէն – ներշնչուիլ»:

Ուրեմն, արտերկրի մէջ ազգային գրականութիւն մը կարելի է:

Ներշնչում կարելի չէ, կը միջամտէ Թաշեան. «[Ա]րդար չէ որ մենք ուրանանք [...] կեանքին տուած փորձառութիւնը՝ մեր թափառական բազմութիւններու մասին, որոնց կը պակսի ոչ միայն ներշնչումը՝ հայրենի «սրբութիւններուն», այլ նաեւ հաւատքը՝ վաղուան վերածնունդի հանդէպ»: Հիմա մենք «ողորմուկ, կքոտ, հիւանդագին կեցուածքով» ժողովուրդ մըն ենք, «որուն կէսը յուղարկաւորն է միւս կէսին»: Այսպիսի ժողովուրդը չի կրնար տոհմիկ գրականութիւն տալ: «Տոհմիկ գրականութիւն մը ստեղծել *կարելի չէ*»: Կարելի չէ որովհետեւ հայրենիքը մշուշի տակ է, հայութիւնը աւերակներու մէջ: Սեփական հայրենիք «ունի՞նք. ես չեմ գիտեր»: Իսկ «սեփական գրականութիւն ունենալու համար, սեփական հայրենիք պէտք էր ունենալ»:

Թաշեան համաձայն չէ նաեւ, որ Եգիպտոս կամ Ֆրանսա հաստատուած հայութիւնը աւելի լաւ գիտէ հայ մշակոյթը քան տեղականը.

«[Մ]ենք կը պնդենք, թէ ֆրանսական, գերմանական եւ օտար մտածումը, լեզուն, կեանքը, արուեստը աւելի ծանօթ են մեզի, քան հայկականը [...]: Քի՞չ էին եւ քի՞չ են դեռ մէջ ընթերցողներ, գրողներ, մտաւորականներ, որոնք հայերէն բան չեն հասկնար, հայ պատմութեան ծանօթ չեն (թէեւ ֆրանս. յեղափոխութեան պատմութիւնը շատ լաւ սերտած են) եւ հայ կեանքը թաղած են, վաղո՛ւց, եօթը թիզ հողի տակ: Քի՞չ էին եւ քի՞չ են դեռ մեր մէջ երաժիշտներ, արուեստագէտներ, որոնք հայ ժողովրդական երգերը Կոմիտաս վրդ.-ի բերնէն լսեցին միայն, բայց Շօբէնը կամ Պէթովէնը գոց գիտէին: Եւ ինչո՞ւ, վերջապէս, յամառութիւն մը՝ ա՛նպայման ուրանալու ռուսական, ֆրանսական, թրքական եւն. խորունկ թափանցումը ընկերային երեւոյթներու եւ մանաւանդ մեր գրականութեան մէջ»:

Ուրեմն, արտերկրի մէջ ազգային գրականութիւն մը կարելի չէ:

Մխիթարեանի համար քանի մը հայեցի տաղանդաւոր գրողներու գոյութիւնը բաւական է գրական սերունդ մը արժեցնելու համար: «Քուչակ մը, Սայաթ Նօվա մը առանձինն ամբողջ սերունդ մը կ՚արժեն»:

Ան կը շեշտէ. «Բայց կարելի՞ է ուրանալ որ, մեր պատմութեան մէջ, հայ հոծ զանգուած մը ապրած է միշտ իր սահմաններէն դուրս, եւ հոն ստեղծած է հայ գրականութիւն եւ արուեստ»: Կը հարցնէ՝ կարելի՞ է կասկածի ենթարկել Թլկատինցիի, Ռուբէն Զարդարեանի, Մելքոն Կիւրճեանի, Արտաշէս Յարութիւնեանի, Դանիէլ Վարուժանի, Սիամանթօի եւ Մխիթարեան հայրերու հայեցիութիւնը: «Ասոնք Մասիսի ստորո՞տը ապրած էին արդեօք: Բռնադատեցի՞ն իրենց տաղանդն ու ներշնչումը, երբ հայ էջեր տուին, որոնց մէջ գրական թելադրանքը, աշխարհահայացքը իրենց բաժինը ունեցան: Գիտէ՞ք ուր է գաղտնիքը: Նախ անոնց չպակսեցաւ տաղանդը, եւ յետոյ, առանց անօգուտ թափառումներու, անոնք ունկնդրել սորվեցան իրենց սեփական ժողովուրդին հոգիին, իրենց ժամանակակից հայուն սրտին եւ անոր եւ բոլոր հայերուն հին ու նոր պատմութեան»:

Ուրեմն, արտերկրի մէջ ազգային գրականութիւն մը կարելի է:

Թաշեան համաձայն չէ՝ որ մատի վրայ համրուող քանի մը հայեցի գրողներու գոյութիւնը բաւարար է տոհմիկ գրականութեան համար: «Մէկ վարդով գարուն չի գար», կը գրէ: Համաձայն չէ նաեւ դատողութիւնը սահմանափակել միայն ներկայ գրողներով՝ որոնք արդէն կերտած են իրենց ճամբան, անտեսելով գալիքը:

Թաշեան կը շարունակէ իր առարկութիւնը.

«Ժողովուրդի մը այն մասը, որ մեր ըմբռնումով (մեր ըմբռնումը քիչ մը լայնօրէն կ՚ընդգրկէ այդ մասը), «մտաւորական» պիտակը կը հագնի, ողբալիօրէն ապազգայնացած է, մանաւանդ 1914-էն ասդին»: Իսկ «Երկրէն դուրս ուսում ստացող մեր մտաւորականներէն շատեր ո՛չ միայն հայերէն չգրեցին, այլ նոյնիսկ չուզեցին կամ չկրցան հայերէն մտածել եւ հիմնովին անհաղորդ մնացին հայ մտածումին, հայ կեանքին ու հայ գրականութեան»:

Ուրեմն, արտերկրի մէջ ազգային գրականութիւն մը կարելի չէ:

1914-էն ասդին մտաւորականութիւնը ապազգայնացա՞ծ է: Ոչ, կը հակաճառէ Մխիթարեան: Ըստ անոր, ապազգայնացում կայ, բայց մոլորութիւն է 1914-էն անդին տիրական դիրք մը տալ անոր: Աւելի ճիշդ պիտի ըլլար ըսել թէ 1914-էն ասդին ցնցուած են ապազգայնացումի հիմքերը: Ընդհակառակը, «այս օրուան հայը, ո՛ր երկրէն, ո՛ր դասակարգէն կ՚ուզէք վերցուցէք, աւելի՛ հայ է քան տասը տարի առաջուան հայը»: Այս «աւելի»-ն կը կապէ 1918-ի Հանրապետութեան ստեղծումին հետ՝ իբրեւ ազատագրական պայքարի արդիւնք, ուր համայնքը բարձրացաւ ազգութեան աստիճանին:

Մխիթարեանի վերջին առարկութիւնը պըզտիկ շփոթ մը կրնայ յառաջացնել, քանի որ ցարդ խօսակցութիւնը արտերկրի գրողներուն մասին էր: Եթէ Հայաստանը համայնքէ բարձրացաւ պետութեան (ազգութեան) աստիճանին, արտերկրի հայութիւնը մնաց իբրեւ համայնք, բացի եթէ Մխիթարեան ըսել կ՚ուզէ պետութեան գաղափարի ներշնչումի կարելիութիւնը, ներշնչում՝ որուն համաձայն չէ Թաշեան:

(Շար. 4)

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԼԻՏԻԱՆ ՋԻ ՀԱՆԴԱՐՏԻՐ

Հայկական Բնապահպանական Ճակատ (ՀԲՃ) կամաւորական քաղաքացիական նախաձեռնութիւնը Յունուար 27-ին հանդէս եկաւ յայտարարութեամբ, որուն մէջ, ի միջի այլոց, նշած է.

«Շուրջ մէկ տարուայ ընդմիջումից յետոյ Լիտիան Արմենիա ընկերութիւնն Ամուլսարի ծրագրի «վերակենդանացման» ուղղուած գործընթացներ է նախաձեռնում: Յունուարի 24-ին Շրջակայ Միջավայրի Նախարարութիւնում հերթական անգամ քննարկւում էր այդ ընկերութեան յայտը՝ Արփայ գետից արդիւնաբերական նպատակով նոր ծաւալներով ջրառ կատարելու թոյլտուութեան մասին: Նշենք, որ ընկերութեան՝ գրեթէ նոյնաբովանդակ յայտերն արդէն մերժուել են 2019 եւ 2021 թուականներին: Այդ մերժումներն ընկերութիւնը վիճարկում է Վարչական Դատարանում: Նման իրավիճակում Ամուլսարի ծրագրի վերակտիւացման գործընթացներով Լիդիանը, մեր կարծիքով, հերթական անգամ փորձում է ճնշումներ բանեցնել Հայաստանի կառավարութեան վրայ»:

ՀԲՃ-ն կ՚որոշէ շարունակել իր պայքարը:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՆԱԽԱԳԱՀԻ ԼԻԱԶՕՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԻՐԱԿԱՆԱՑՆՈՂ ԱԼԷՆ ՍԻՄՈՆԵԱՆ ԿԸ ՀԱՆԴԻՊԻ ՆԱԽԱԳԱՀԻ ԱՇԽԱՏԱԿԱԶՄԻՆ

Սահմանադրութեան համաձայն՝ Հանրապետութեան նախագահի լիազօրութիւնները ստանձնած Ազգային Ժողովի նախագահ Ալէն Սիմոնեան նախագահական նստավայրին մէջ Փետրուար 1-ին կը հանդիպի Հանրապետութեան նախագահի աշխատակազմին:

Ըստ աշխատակազմի տարածած հաղորդագրութեան՝ Ալէն Սիմոնեան կը կարեւորէ նախագահական հիմնարկի գործունէութեան յետագայ բնականոն ընթացքը՝ ակնկալելով, որ մինչ Հանրապետութեան նոր նախագահի ընտրութիւնը նախագահի աշխատակազմը կը շարունակէ պատասխանատուութեամբ կատարել իր պարտականութիւնները:

Հանդիպումէն ետք Ալէն Սիմոնեան շրջայց կը կատարէ նախագահական նստավայրը, կը ծանօթանայ աշխատակազմի գործունէութեան:

## ԸՆԴԴԻՄԱԴԻՐ 6 ՊԱՏԳԱՄԱՒՈՐ՝ ԱՊՕՐԻՆԻ ԳՈՅՔԻ ԲՌՆԱԳԱՆՁՄԱՆ ՕՐԷՆՔԻ ԹԻՐԱԽՈՒՄ. ԱԺ 1/5-Ը ԴԻՄԵԼ Է ՍԴ

**ՆԱՆԷ ՄԱՆԱՍԵԱՆ**

Ազգային Ժողովի ընդդիմադիր Պատիւ Ունեմ եւ Հայաստան խմբակցութիւնների 6 պատգամաւորների պատկանող գոյքի ծագման օրինականութիւնն ուսումնասիրւում է Հայաստանի դատախազութեան՝ ապօրինի ծագում ունեցող գոյքի բռնագանձման գործերով վարչութիւնում:

Այս մասին, մեր հարցմանն ի պատասխան, յայտնում են Հայաստանի դատախազութիւնից:

Միեւնոյն ժամանակ, *Փաստերի ստուգման հարթակի* մէկ այլ հարցմանն ի պատասխան, Սահմանադրական Դատարանից յայտնեցին, որ ԱԺ երկու ընդդիմադիր խմբակցութիւններից 26 պատգամաւորներ՝ խորհրդարանի մէկ հինգերորդը, դիմել են Սահմանադրական Դատարան՝ «Ապօրինի ծագում ունեցող գոյքի բռնագանձման մասին» օրէնքը հակասահմանադրական ճանաչելու հայցով:

ՍԴ-ից պարզաբանեցին, որ յայտը դեռեւս վարոյթ չի ընդունուել եւ նախնական ուսումնասիրութեան փուլում է:

Դատարան դիմած պատգամաւորների անուններն ի յայտ կը գան հայցի վարոյթ ընդունուելու դէպքում: Մինչ այդ փաստենք, որ Հայաստան եւ Պատիւ Ունեմ խմբակցութիւնների պատգամաւորների մեծ մասը վիճարկում է մի օրէնքի սահմանադրականութիւնը, որն անմիջապէս վերաբերում է իրենց պատգամաւոր գործընկերների անձնական շահերին:

«Ապօրինի ծագում ունեցող գոյքի բռնագանձման մասին» օրէնքն ընդունուել է 2020 թուականի Ապրիլի 16-ին: Ըստ օրէնսդրական փաթեթի հիմնաւորման, «առանց մեղադրական դատավճռի ակտիւների բռնագանձման մեխանիզմը... թոյլ է տալիս անօրինական ճանապարհով ստացուած գոյքի վրայ արգելանք կիրառել եւ այն բռնագանձել առանց անձի նկատմամբ մեղադրական դատավճռի կայացման: Սա յատկապէս կարեւոր գործիք է, այն դէպքերի համար, երբ քրէական հետապնդումն իրականացնելն անհնար է օբիեկտիւ պատճառներով»:

***Փաստերի ստուգման հարթակ***

## ՀԱՄԱՐԵԱՅ ՅԻՍՈՒՆ ՏԱՐԻ Է ԱՆՑԵԼ, ԲԱՅՑ ԳԻՐՔԸ ԲԱՑՈՒՄ ԵՄ՝ ՈՒՍՈՒՑՉԻ ՎԵՐԱՐԿՈՒՆ ԴԵՌ ԿԱԽՈՒԱԾ Է ՊԱՏԻՑ

Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի փոխնախարար Ժաննա Անդրէասեանը ֆէյսբուքեան իր էջում գրում է.

«Տաւուշում հայոց լեզուի ուսուցիչներից մէկը մի օրինակ բերեց՝ ուսումնական նիւթերի եւ դասագրքերի խնդիրները շատ խօսուն նկարագրող: Ասում է՝ երբ ես սովորում էի եօթանասունականներին, հայոց լեզուի գրքում հոլովները բացատրելու համար գրուած օրինակներից էր՝ ուսուցչի վերարկուն կախուած է պատից: Համարեայ յիսուն տարի է անցել, բայց գիրքը բացում ես՝ ուսուցչի վերարկուն դեռ կախուած է պատից»:

**ԱՐՑԱԽ**

## ԱՐՑԱԽԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ԿԱՌՈՒՑՈՒԱԾՔՈՒՄ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՆ ԿԱՏԱՐՈՒԵԼ

Արցախի նախագահ Արայիկ Յարութիւնեանը Փետրուարի 9-ին ստորագրել է հրամանագիր 2020 թուականի Դեկտեմբերի 17-ի «Արցախի Հանրապետութեան կառավարութեան կառուցուածքի մասին» իր հրամանագրում փոփոխութիւններ եւ լրացումներ կատարելու մասին:

Համաձայն հրամանագրի՝ Աշխատանքի, Սոցիալական եւ Միգրացիայի Հարցերի Նախարարութիւնը վերանուանուել է Սոցիալական Զարգացման եւ Միգրացիայի Նախարարութեան, Էկոնոմիկայի եւ Գիւղատնտեսութեան Նախարարութիւնից առանձնացուել է էկոնոմիկայի մասը եւ միացուել Ֆինանսների Նախարարութեանը, պետական կառավարման մարմինների կառուցուածքում աւելացել են Պետական Վերահսկողական Ծառայութիւնը (ներկայումս գործող նախագահի վերահսկողական ծառայութեան իրաւայաջորդը) եւ նորաստեղծ Նիւթական Վնասների Հարցերի Կոմիտէն, հաղորդում է Արցախի նախագահի աշխատակազմի տեղեկատուութեան գլխաւոր վարչութիւնը:

## ԹԱՓՕՐԻ ՄԻՋԱՆՑՔԻՆ ՄԱՍ ԿԱԶՄՈՂ ԵՐԿՈՒ ՍՖԻՆՔՍՆԵՐՈՒ ՅԱՅՏՆԱԳՈՐԾՈՒԹԻՒՆԸ ԼՈՒՔՍՈՐԻ ՄԷՋ

**ՆԱՍՄԱ ՌԵՏԱ**

*Եգիպտա-գերմանական առաքելութեան կողմէ Լուքսորի մէջ յայտնագործուեցան սֆինքսի ձեւով Ամենհոտեպ Գ.-ի երկու արձաններ: Ըստ հնագէտներուն, անոնք կ'եզերէին մեծ թափօրի միջանցքը:*



Ամենհոտեպ Գ.-ի հիւսիսային սֆինքսը վերականգնումէն ետք

Յայտնագործութիւնը տեղի ունեցաւ Լուքսորի մէջ, Նեղոսի արեւմտեան ափը գտնուող Հին Եգիպտոսի ամենամեծ յուղարկաւորական համալիրի՝ Ամենհոտեպ Գ.-ի տարեկան խնամքի եւ վերանորոգումի աշխատանքներու ծիրին մէջ: Սֆինքսի ձեւով փարաւոնին երկու արձանները յայտնագործուեցան Հուրիկ Սուրուզեանի ղեկավարած եգիպտա-գերմանական առաքելութեան կողմէ:

«2021 թուականը յաջող աւարտ ունեցաւ. երրորդ աւագ դրան ետեւը յայտնաբերեցինք սֆինքսը ներկայացնող ութ մեթր երկարութեամբ կրաքարէ երկու արձաններ: Մեր կարծիքով, անոնք կ'եզերէին մեծ թափօրի միջանցք մը՝ որ երրորդ աւագ դռնէն կ'առաջնորդէր դէպի սիւնազարդ գաւիթը», կը յայտարարէ Հուրիկ Սուրուզեան: Առաքելութեան ղեկավարը կը բացատրէ՝ թէ հնագէտները նախընթաց ուսումնասիրութիւններու մէջ եզրակացուցած էին միջանցքի մը գոյութիւնը սակայն առանց կարենալու հաստատել եթէ ան եզերուած էր սֆինքսով թէ ոչ: Ժամանակին, տարեկան տօնակատարութիւններուն ընթացքին, արքայական թափօրը կը հատէր արեւելեան ափի Նեղոսը, սկսելով Քարնաքի տաճարէն եւ հասնելով արեւմտեան ափը՝ Ամենհոտեպ Գ.-ի տաճարը: Ապա կ'անցնէր երեք աւագ դռներէն, երթալու համար սիւնազարդ գաւիթը: «Այս նոյն գաւիթին մէջ կը տօնէին նաեւ Ամենհոտեպ Գ.-ի երեք յոբելեանները», կ'ընդգծէ Հուրիկ Սուրուզեան:



Սեխմետ աստուածուհիին արձանը

Սուրուզեան կը շարունակէ. «Պեղումները դժուար էին: Այս երկու կտորներուն հասնելու համար գործաւորները ստիպուած եղան բաւական պինդ տիղմի մը մէջ շուրջ երեք մեթր փորել»: Յայտնագործուած սֆինքսները կը գտնուէին վատ վիճակի մէջ: Աւելի չվատթարանալու եւ չփշրուելու համար, պէտք էր զանոնք ամրացնել կաղապարելով գաճի մէջ եւ ապա հանելով իբրեւ մէկ կոյտ: «Ապա պէտք էր մանրակրկիտ կերպով այս փխրուն կրաքարը մաքրել տիղմէն եւ բոյսերու բեկորներէն՝ որոնք կը լեցնէին բոլոր ճեղքըւածքները», կ'աւելցնէ առաքելութեան ղեկավարը:

Պեղումներուն սկիզբը, հնագիտական առաքելութիւնը ամբողջ գաւիթը ստուգեց ռատարով: Կատարուեցան երկրամագնիսական (géomagnétique) եւ երկրաելեքտրական (géoélectrique) հետախուզութիւններ բայց առանց արդիւնքի. կրաքարը առկայ էր շատ փոքր քանակութեամբ: Այսուհանդերձ, պեղումները շարունակուեցան շուրջ երեսուն եգիպտացի եւ օտար մասնագէտներու ղեկավարութեամբ, որոնք պատասխանատու էին 300 հոգիէ բաղկացած խումբի մը՝ բաղկացած պեղումներու, վերանորոգումներու եւ քարերու փոխադրութեան մասնագէտներէ:

**Ուրիշ գանձեր...**

Հիփոսթիլ սրահին մէջ յայտնագործուեցան շատ գեղեցիկ կրաքարէ խորաքանդակներ: Հաւանաբար Ք.Ա.1200 թուականի երկրաշարժին ժամանակ ինկած ըլլան Ամենհոտեպ Գ.-ի տաճարի պատերէն: Տաճարի սիւնազարդ գաւիթին եւ հիփոսթիլ սրահին միջեւ յայտնաբերուեցան նաեւ Ամենհոտեպ Գ.-ը ներկայացնող երկու մեծ ալապաստրէ կիսանդրիներ, աստուածուհի Սեխմետի երկու գաւարզէ (quartzite) արձաններու ստորին մասեր եւ երեք կիսանդրիներ:

Կարեւոր է նշել՝ որ Սեխմետ աստուածուհիի կերպարանքով հարիւրաւոր արձաններ յայտնաբերուած են վերջին քսան տարիները սիւնազարդ գաւիթին մէջ, Մեմնոնի վիթխարի արձաններուն (colosses de Memnon) շուրջ եւ հիփոսթիլ սրահին մէջ: «Մենք վերականգնեցինք եւ տեղւոյն վրայ ցուցադրեցինք Սեխմետի արձաններուն մեծ մասը: Ո՞վ գիտէ, կրնայ ըլլալ անոնք տեղադրուած էին սֆինքսներուն ետեւը», կը հարցադրէ Հուրիկ Սուրուզեան: Ան նաեւ կ'ընդգծէ՝ որ այս գաւիթը շատ մեծ է եւ տակաւին շատ պեղումներ պէտք է իրագործուին: Ասիկա պիտի ըլլայ յետագայ սերունդներուն աշխատանքը:

Եւ տեղեկացնել՝ թէ հիփոսթիլ սրահին հիւսիսը յայտնաբերուեցան սիւներու նոր պատուանդաններ: «Մենք իրազեկ էինք հինգ սիւներու գոյութեան մասին, բայց անակնկալի եկանք հիմքերու ամբողջ շարքի մը յայտնագործութեամբ: Իսկ սիւներէն մէկը տապալած է, հաւանաբար Ք.Ա.1200 թուականի երկրաշարժին հետեւանքով: Բազմաթիւ մասեր անջատուած են, անկասկա՛ծ վերստին օգտագործուելու համար», կը բացատրէ ան:

«Յունուար 15-էն սկսեալ վերսկսան աշխատանքները», կը հաստատէ առաքելութեան ղեկավարը: «Մենք տակաւին սկիզբն ենք, թերեւս ապագան մեզի համար գեղեցիկ անակնկալներ պահած է, ուրիշ սֆինքսներ...», կ'եզրակացնէ խանդավառութեամբ:

*Al-Ahram Hebdo* (շաբաթաթերթ, Գահիրէ)
19-25 Յունուար 2022, թիւ 1407, էջ 25
Թարգմանեց՝ Հ.Ա.

ԶԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ-ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅՈՑ ԹԵՄ
### 2021-Ի ՎԻՃԱԿԱԳՐԱԿԱՆ ՏՈՒԵԱԼՆԵՐ

**ԳԱՀԻՐԷԻ ՀԱՄԱՅՆՔ**

| | |
|---|---|
| Մկրտութիւն | 9 |
| Պսակադրութիւն | 2 |
| Թաղում | 30 |

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՀԱՄԱՅՆՔ**

| | |
|---|---|
| Մկրտութիւն | 2 |
| Պսակադրութիւն | 2 |
| Թաղում | 6 |

**ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆ**

## ԿԱՑԱՑԱՒ ՓԱՇԻՆԵԱՆԻ ԵՒ ԱԼԻԵՒԻ ՀԵՌԱՎԱՐ ՔՆՆԱՐԿՈՒՄԸ՝ ՄԱՔՐՈՆԻ ԵՒ ՄԻՇԷԼԻ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ



վերաբերեալ:

«Վարչապետ Փաշինեանն ընդգծել է ԵԱՀԿ Մինսկի համանախագահութեան ներքոյ Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան երկարաժամկէտ կարգաւորման եւ խաղաղութեան համաձայնագրի կնքման անհրաժեշտութիւնը», - կը նշուի Հայաստանի վարչապետի գրասենեակի հաղորդագրութեան մէջ:

Փետրուար 5-ին, Էմանուէլ Մաքրոն եւ Շարլ Միշէլ հանդիպումի մասին կը տարածեն յայտարարութիւն.

«Նախագահ Միշէլ եւ Նախագահ Մաքրոն վերահաստատեցին իրենց լիակատար յանձնառութիւնը՝ աջակցելու տարածաշրջանի լարուածութեան նուազեցումին եւ վստահութեան ձեւաւորումին ուղղուած ջանքերուն:

«Անոնք ամփոփեցին Արեւելեան Գործընկերութեան գագաթնաժողովի շրջանակին մէջ տեղի ունեցած հանդիպումներէն ետք ձեռք բերուած յառաջընթացը, մասնաւորապէս՝ ձերբակալուած անձերու վերջին ազատարձակումները, անյայտ կորսուածներու որոնումի համատեղ ջանքերը, ինչպէս նաեւ երկաթուղային հաղորդակցութեան յառաջիկայ վերականգնումը:

«Պետութիւններուն եւ կառավարութիւններուն ղեկավարները համակարծիք էին, որ այս հանդիպումը արժէքաւոր հնարաւորութիւն մըն է քննարկելու հարցերու լայն շրջանակ:

«ԵՄ եւ Ֆրանսա հաւատարիմ կը մնան աշխատելու այլ գործընկերներու հետ, ներառեալ ԵԱՀԿ-ի, կառուցելու համար բարգաւաճ, ապահով եւ կայուն Հարաւային Կովկաս»:



## ՍՊԻՏԱԿ ԹՈՒՂԹԸ ԵՒ ՓՈՐՁ ՄԸ ՔՆՆԱԿԱՆԱՑՆԵԼՈՒ ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԱՐՑԸ

իրարու եւ միասին կը կազմեն գաղափարական հորիզոնական գիծ: Այս առումով, իւրաքանչիւր պատասխանի համար անունի յիշատակութիւնը կրնար օգնութիւն մատուցանել: Կարեւոր չէ անձը՝ իբրեւ եսականութիւն: Անձը կարեւոր է այնքան՝ որքան կարելի է իմանալ անոր ուղղութիւնը եւ զանազան հարցումներու պատասխանները կապել իրար:

Բացի այդ, անձի անունին իրազեկութիւնը կարեւոր է նաեւ այն չափով՝ որքան ընթերցողը *ինքը* անոր մէջ կրնայ ճանչնալ պարկեշտութիւնն ու անկեղծութիւնը, փոխանակ համահեղինակներու թելադրութեան, այնպէս ինչպէս համահեղինակները *իրենք* իրենց համար չափորոշած են պարկեշտութեան եւ անկեղծութեան սահմանները:

Առաջին մասը ունի երեք բաժիններ՝ «Հայաստանը 2020 թ. ղարաբաղեան պատերազմում», «Մասնակիցները ինչպէ՞ս են ընկալում քաղաքականութիւնն ու ապագայ տարբերակները» եւ «Արտաքին եւ անվտանգութեան քաղաքականութիւնների գործօնների գնահատում», իւրաքանչիւրը բազմաթիւ ենթաբաժիններով:

Դիտարկումի արժանի շատ կէտեր կան: Օրինակ՝ «Հակամարտութիւնը լուծելու կամքի բացակայութիւն» ենթաբաժինը (էջ 20-21), որուն պատասխանները համառօտագրուած են 9 կէտերու մէջ:

Է. կէտը այսպէս կը բացատրէ. «Պատերազմը կանխել այն սկսուելուց առաջ եւ դադարեցնել առաջին իսկ հնարաւորութեան դէպքում (օրինակ, Հոկտեմբերի 19-ին): Այս առումով, պատասխանատւութիւն է վերագրւում նաեւ Ազգային Ժողովին եւ մեծամասնութիւն կազմող կուսակցութեանը. սահմանադրական լիազօրութեամբ այն միակ հաստատութեանը, որը կարող էր վարչապետին ստիպել աւելի վաղ եւ աւելի քիչ կորուստներով ընդունել հրադադարը եւ կամ նրան ստիպել հեռանալ»:

Ընտրեալ մտաւորականներու բաւական միամիտ կարծիք մը: Ի՞նչ հրադադար է՝ զոր վարչապետը մերժած է անձամբ: Ինչո՞ւ պիտի մերժէր հրադադարը՝ եթէ առաջարկը իրական էր: Ինչո՞ւ յաղթականօրէն յառաջ ընթացող Ազըրպէյճանը հրադադար պիտի առաջարկէր, բացի եթէ մետիաթիք սովորական խաղ մը ըլլար ան՝ ինքզինքի պատկերը բարելաւող, կամ առիթ մը ինքզինքը ռազմապէս վերակազմաւորելու: Այս կէտ-պատասխանին մէջ ընտրեալ-պատասխանողներու պարկեշտութիւն եւ անկեղծութիւն դժուար է գտնել:

Միւս կողմէն, նոյն հարցումին Ը. պատասխանն է հետեւեալը. «Հայաստանում մտաւոր եւ ակադեմիական վերնախաւերի բացասական դերը. վերնախաւեր, որոնք չկարողացան լուրջ բանավէճ ծաւալել Ղարաբաղեան հակամարտութեան հնարաւոր տարբերակների ու զարգացումների շուրջ, ինչպէս նաեւ եղած տարբերակներին հետեւելիք հաւանական սցենարների շուրջ: Քննադատական մտածողութիւնը խաթարուել էր նաեւ Սփիւռքում, որտեղ մտաւոր եւ ակադեմիական վերնախաւերը չկարողացան խիզախութիւն ցուցաբերել, նոյնիսկ երբ նրանք աւելի տարբերակուած մօտեցում ունէին, եւ պայքարել նրանց դէմ, ովքեր Հայաստանի օրինակով անհնարին էին դարձնում քննարկումները»:

Ասիկա մտաւորականութեան անկեղծացումն է ինքն իր հետ: Կարելի է երկար խօսիլ մտաւորական վերնախաւին մասին:

Հայաստանի մէջ՝ ակադեմականներէն եւ ամենայն հայոց պատմաբաններէն անդին, գտնուած են ու կը գտնուին մտաւորականներ եւ մտաւորական խումբեր՝ որոնք «եղած տարբերակներ»-էն անդին կը մտածեն ու կ՚արտայայտուին: Անոնք համախմբուած են զանազան հասարակական կազմակերպութիւններու, միութիւններու, ակումբներու եւ առցանց հեռատեսիլի ընկերութիւններու շուրջ՝ Արտերիա, Սոցիոսկոպ, Բուն TV, ACTV, Եւրասիա Համագործակցութիւն Հիմնադրամ, եւ շատ ու շատ ուրիշներ: Անոնք կը մնան այլընտրանքային հարթակի վրայ, կը գործեն անջատաբար եւ, բնականաբար, անկարող են յառաջացնել հանրային բանավէճ: Ակադեմական վերնախաւը, միւս կողմէ, միտուած չէ բանավէճի՝ գիտելիքի տիրակալութեան եւ հայրենասիրական մրցակցութեան պայմաններուն տակ: Համալսարանական-մտաւորական վերնախաւ մըն ալ կայ՝ որ ծառայած է քրէաօլիկարքութեան, ինչպէս դիտել տուած է Հրայր Մանուկեան (*Զահակիր*, թիւ թիւ 1901), որմէ բանավէճ ակնկալելը պատրանք մըն է պարզապէս:

Սփիւռքի մէջ ցանցառ, անջատ ու զանազան օտար համալսարաններու մէջ գործող անհատներն ու հայագիտական կեդրոնները չեն կրնար համակեցային շերտ մը կազմել՝ քանի որ իւրաքանչիւրը ուղղահայեացօրէն կը յարի կեդրոնի մը, կազմակերպութեան մը կամ համալսարանի մը: Մինչդեռ հիմնահոսանք կուսակցութիւններէն իւրաքանչիւրը ունի ինքն իր մէջ համակեցային դառնալու կարողութիւն՝ իր համանման միաւորներուն ընդմէջէն եւ ոչ-համանմաններէն խզուելու գինով, որմէ՝ բարձրաձայնութեան եւ կարծիք պարտադրելու կարողութիւնը: Երբ *Սպիտակ Թուղթի* պատասխանողները կը նշեն՝ թէ Սփիւռքի «մտաւոր եւ ակադեմիական վերնախաւերը չկարողացան խիզախութիւն ցուցաբերել, նոյնիսկ երբ նրանք աւելի տարբերակուած մօտեցում ունէին, եւ պայքարել նրանց դէմ, ովքեր Հայաստանի օրինակով անհնարին էին դարձնում քննարկումները», նկատի ունին, կը կարծեմ, առաջինի պայքարին անկարողութիւնը, բացակայութիւնը կամ անազդեցիկութիւնը երկրորդին դէմ: Կամ՝ վախը: Վախը՝ դառնալու դաւաճան:

Հարցաթերթիկի ուրիշ հարցում մըն է՝ «Ի՞նչ այլ ռեսուրսներ կամ գործընկերներ կարող էր ապահովել Հայաստանը» (էջ 62), որուն պատասխանները համահեղինակները կ՚ամփոփեն վեց կէտերու մէջ: Փորձագէտի ոչ-փորձագիտական պատասխաններէն մէկն է. «Զգտել ՆԱՏՕ-ի հետ աւելի սերտ համագործակցութեան»: Դիւրին է ըսել: Փոխարէնը՝ Հայաստանը որքա՞ն պատրաստ է հեռանալ Ռուսաստանէն: Որքա՞ն կրնայ հեռանալ: Ինչպէ՞ս կրնայ հեռանալ: Հապա Հայաստանի սահմանները պաշտօնապէս պաշտպանող ռուսական զօրքե՞րը:

Ցեղասպանութեան ճանաչումի հարցին ուշագրաւ պատասխաններէն մէկն է. «Ցեղասպանութեան ճանաչումը չպէտք է շփոթել Հայաստանի զարգացմանն ու յաջողութեանն ուղղուած ընդհանուր աջակցութեան հետ: Որեւէ երկրի կամ քաղաքական գործչի կողմից Ցեղասպանութեան ճանաչումը չի նշանակում այլ հարցերում աջակցութիւն Հայաստանի դիրքորոշմանը» (էջ 60): Ինչպէս համոզուեցանք վերջին պատերազմի ընթացքին: Ցեղասպանութիւնը ճանչցած երկիրներէն ոչ մէկը թիկունք կանգնեցաւ Հայաստանին: Եւ տակաւին Ցեղասպանութեան ընդունումներու շնորհիւ Արեւմտահայաստան պիտի ստանանք...:

«Որո՞նք են Ադրբէջանի երկարաժամկէտ մտադրութիւնները» հարցումին պատասխաններէն մէկը կրկնակի հարցում մըն է. «Ինչո՞ւ ադրբէջանական ուժերը կանգ առան Շուշիի մօտ եւ չշարունակեցին իրենց երթն ու չգրաւեցին ամբողջ Ղարաբաղը, երբ դա կարող էին անել առանց մեծ դժուարութեան» (էջ 52): Ճշգրիտ պատասխանը չկայ, բայց հարցում մըն է՝ որ մենք երբեք չենք հարցուցած: Բայց գիտենք որ այդ հարցումը կայ ու խիստ այժմէական է:

Պատասխաններու դասակարգումներուն միջեւ համահեղինակները յաճախ կը կատարեն միջամտութիւններ, յաւելեալ յստակութիւն մտցնելու համար: Օրինակ, «Զափանիշներ եւ արժէքներ՝ արտաքին քաղաքական նպատակների որոշման համար» բաժինին մէջ, հիմնուելով պատասխաններուն վրայ, անոնք դիտել կու տան. «Այն ժամանակ, երբ մարդը հասնում է զգալի որոշակիութեան, հասկանում է, որ գործ ունի ոչ թէ պարզապէս տարաձայնութիւնների կամ նոյնիսկ իրարամերժ քաղաքական ծրագրերի, այլ արժեհամակարգերի եւ ապագայի պատկերացման հիմնաւոր տարբերութիւնների հետ» (էջ 33):

*Սպիտակ Թուղթը* հրաւէր մըն է մտածելու այդ տարբերութիւններուն մասին: Մտածելու՝ իրատեսութեամբ, իրապաշտութեամբ եւ իրազեկութեամբ: Իրազեկութեամբ՝ կարելիութիւններու բազմազանութեան ըմբռնումով: Բազմազանութիւն՝ որ առկայ է առաջին մասին մէջ: Բազմազանութիւն՝ որուն պարփակած տարբերութիւններուն միջեւ տիալեքթիքը կը բացակայի հիմնականապէս:

Ա.

(Շար. 1)

# ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1909 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 24 ՓԵՏՐՈՒԱՐ 2022 | *ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՃկ.* | عدد رقم ١٩٠٩ الخميس ٢٤ فبراير ٢٠٢٢


## *ՍՊԻՏԱԿ ԹՈՒՂԹԸ ԵՒ ՓՈՐՁ ՄԸ ՔՆՆԱԿԱՆԱՑՆԵԼՈՒ ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԱՐՑԸ*

**ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ**

*Սպիտակ Թուղթ*ին երկրորդ մասը երեք համահեղինակներուն կարծիքն է՝ անոնց դիտարկումները, առաջարկութիւնները եւ եզրակացութիւնները: Ի տարբերութիւն առաջին մասէն, այստեղ արդէն ընթերցողը կրնայ գտնել յաջորդականութիւն մը սահուն միտքերու՝ որոնք ընդհանուր ուղղութեան մը հարթակին վրայ, կը տրամադրեն իմաստային շերտեր, փոխանակ առաջինի իմաստային բախումներուն:

Բաղկացած է երեք բաժիններէ՝ «Դիտարկումներ եւ նկատառումներ երկարաժամկէտ քաղաքականութիւնների համար», «Առաջարկութիւններ» եւ «Եզրակացութիւններ», իւրաքանչիւրի բազմաթիւ ենթաբաժիններով: Նիւթերու առարկայական կէտադրական բաժանումներէն անդին, կարելի է երկրորդ մասը վերադասաւորել քանի մը ենթախմաստներու շուրջ (ստորեւ բերուած վերտառութիւնները իմս են).

**Պատրանք եւ առաւելապաշտութիւն՝ իրականութեան փոխարէն**

Դիւանագիտութիւն կը նշանակէ առնչուիլ իրականութիւններու հետ՝ բարդ, խճճուած, փոխկապակցուած, շահամէտ, շահամոլ իրականութիւններու, փոխզիջումներու հնարաւորութեամբ: Հայրենասիրութեան անունին տակ եղած առաւելապաշտ պահանջն ու անգործադրելի պատրանքը կը սպաննեն դիւանագիտութիւնը: Համահեղինակները կը յայտնեն իրենց մտահոգութիւնը զանազան կէտերու առնչութեամբ.

«Այժմ, աւելի քան երբեւէ, Հայաստանի արտաքին քաղաքականութիւնն անհրաժեշտ է մշակել տարածաշրջանային եւ միջազգային զարգացումների համատեքստում, եւ այն չի կարող հիմնուել ցանկալին իրականութեան փոխարէն ընդունելու մտածողութեան ու հայրենասիրական խանդավառութեան վրայ» (էջ 68-69):

«Պատրանքները պէտք չէ ներկայացնել որպէս տեսլական: Տեսլականները, ի տարբերութիւն պատրանքների, պէտք է համապատասխանեն այն ակտիւներին, որոնք կա՛մ ներկայումս առկայ են, կա՛մ կարելի է դրանք ձեռք բերել պատշաճ ու խելացի ռազմավարութիւններով եւ ներդրումների միջոցով» (էջ 83):

«Կոշտ հռետորաբանութիւնն ու առաւելապաշտութիւնը չեն վերացնի անհաւասարակշռութիւնը, բացառութեամբ ներքին քաղաքական սպառման համար» (էջ 83):

«Կառավարութիւնը եւ քաղաքական առաջնորդները չպէտք է պատրանքայնութիւնը շփոթեն քաղաքական երեւակայութեան կամ հեռանկարային ծրագրի հետ: Առաջինը բնորոշւում է իրականութեան հետ որեւէ առնչութեան բացակայութեամբ, երկրորդը հիմնուած է հասանելի, իրատեսական նպատակների եւ այնպիսի մեթոդների վրայ, որոնք դեռեւս չեն օգտագործուել կամ դրանց մասին չեն մտածել» (էջ 88-89):

«Հայ քաղաքական կուսակցութիւններն ու առաջնորդները պէտք է առաջարկեն Հայաստանի ու Ղարաբաղի վրայ ներկայումս ազդող՝ ներքին ու միջազգային ծանր ճգնաժամերի իրենց լուծումները: Այս կուսակցութիւններից ու առաջնորդներից շատերը որոշակի պատասխանատուութիւն են կրում այդ ճգնաժամերի համար, իրենց իրականացրած՝ անիրատեսական, յաճախ պատրանքների վրայ հիմնուած քաղաքականութիւնների համար, ինչպէս նաեւ ակտիւօրէն այնպիսի քաղաքականութիւններ խրախուսելու կամ դրանց հետ համաձայնելու համար, որոնք յանգեցրին պատերազմի եւ այնուհետեւ պարտութեան» (էջ 101):

Բայց սափկա շատ աւելի լայն հասկացողութիւն մըն է՝ քան Ղարաբաղեան հարցին քաղաքականութիւնը: Պատրանքային առաւելապաշտութիւնը մտած է հայկական մտաւորական վերնախաւային միտքի ամէն ոլորտ՝ պատմութիւն, գրականութիւն, երաժշտութիւն, եւ այլն, երբ Տիգրան Մեծ, Խորենացի, Զուհաճեան, Կոմիտաս, Զարենց, Սարեան կը մեկնաբանուին առաւելապաշտական ազգայնականութեամբ եւ կը նշուին երեւոյթներ՝ որոնք ընդհանրապէս բացակայ են իրենց գործողութիւններուն եւ գրութիւններուն մէջ:

**Հայաստանը աշխարհի կեդրոնը չէ**

Կարծեցինք՝ որ պատերազմի պարագային ամբողջ «քաղաքակիրթ» աշխարհը պիտի թիկունք կանգնէր Հայաստանի, որ ամբողջ «բարեպաշտ» քրիստոնեայ աշխարհը պիտի աջակցէր Հայաստանին՝ ի դէմս իսլամական Ազրպէյճանին: Պատերազմը եկաւ, ՈՉ մէկ պետութիւն համակրութիւն ցուցաբերեց մեզի.

«[Ո]րեւէ երկիր, օտարերկրեայ առաջնորդ, ոչ էլ տարածաշրջանային կամ միջազգային որեւէ կազմակերպութիւն չի դատապարտել Ադրբէջանին՝ նոր պատերազմ սկսելու եւ ոչ միայն եօթ գրաւեալ տարածքները, այլեւ նախկին ԼՂԻՄ հարաւային մասն ու Շուշին յետ վերցնելու համար: Դատապարտումներ չկային [...]» (էջ 80):

Զհասկցանք՝ որ Հայաստանը աշխարհի կեդրոնը չէ.

«Այսպիսով, պէտք է պարզ լինի, որ Հայաստանն ու Ղարաբաղը համապատասխան երկրներից որեւէ մէկի՝ ներառեալ Ռուսաստանի, Թուրքիայի եւ Իրանի համար հիմնական մտահոգութիւններ չեն: Երբ մեծ պետութիւններն սկսում են իրենց սակարկութիւնները՝ հիմնուած իրենց ազգային շահերի վրայ, աւելի հաւանական է, որ փոքր պետութիւնները դառնան մեծերի շախմատային զինուորներ, եւ ոչ փղեր կամ ձիեր. այն խաղերում, ուր խաղում են խոշոր դերակատարները: Աւելի հաւանական է, որ խոշոր խաղացողները փոքրերի համար դերեր սահմանեն, ոչ թէ հակառակը:

«Ուստի, քաղաքականութիւն ու կարծիք ձեւաւորողները պէտք է սկսեն այն յստակ ըմբռնումից, որ Երեւանն աշխարհի կենտրոնը չէ, եւ Ղարաբաղն աշխարհի շատ երկրների օրակարգի թիւ մէկ հարցը չէ: Քաղաքականութիւն մշակելիս, լինի արտաքին, թէ անվտանգութեան քաղաքականութիւն, նրանք երբեք չպէտք է մոռանան այն միջավայրը, որում իրենք եւ բոլոր միւսները գործում են» (էջ 70):

**Բանալին՝ փոխանակ աղմուկի**

Ինչ որ այսօր կը տեսնենք աղմուկ է ↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՀԻՒՍԻՍ-ՀԱՐԱՒ, ԱՐԵՒԵԼՔ-ԱՐԵՒՄՈՒՏՔ ՆԱԽԱԳԻԾ ԿԱՄ ՀԱՅԿԱԿԱՆ ԽԱՉՄԵՐՈՒԿ. ՓԱՇԻՆԵԱՆԸ ՄԱՆՐԱՄԱՍՆԵՐ ՆԵՐԿԱՅԱՑՐԵՑ

ԵՐԵՒԱՆ, 17 ՓԵՏՐՈՒԱՐԻ, ԱՐՄԵՆՊՐԷՍ: Տարածաշրջանային կոմունիկացիաների բացման հարցի կոնտեքստում Հայաստանի կառավարութիւնը Հիւսիս-Հարաւ նախագիծը վերաձեւակերպել եւ դարձրել է Հիւսիս-Հարաւ, Արեւելք-Արեւմուտք նախագիծ կամ աւելի կարճ՝ հայկական խաչմերուկ: *Արմենպրէսի* փոխանցմամբ՝ այս մասին կառավարութեան նիստի ընթացքում յայտարարեց Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանը:

«Վերջին շրջանի մեր քննարկումների արդիւնքում, նկատի ունեմ տարածաշրջանային կոմունիկացիաների բացման թեման, Հիւսիս-Հարաւ նախագիծը, ըստ էութեան, մենք վերաձեւակերպել ենք եւ դարձրել ենք Հիւսիս-Հարաւ, Արեւելք-Արեւմուտք նախագիծ: Յոյս ունենք, որ մեծ տեմպերով այս նախագիծը կ'իրականացնենք: Ըստ էութեան, սա նշանակում է, որ այդ ճանապարհի ճիւղերից մէկը, նկատի ունեմ Հիւսիս-Հարաւ, Արեւելք-Արեւմուտք, կամ եթէ կարճ ասենք՝ հայկական խաչմերուկի ճիւղերից մէկը, կը կապի հիւսիսը հարաւին, այսինքն, ըստ էութեան, Հայաստանի Հանրապետութիւնից դէպի Իրանի Իսլամական Հանրապետութիւն, միւս ճիւղը, ըստ էութեան, Ադրբէջան, Հայաստան եւ յետագայում՝ դէպի Նախիջեւան, Թուրքիա: Եւ մենք այս նախագիծը տեղաւորում ենք ահա այս ընդհանուր կոնտեքստում», - ասաց Փաշինեանը՝ անդրադառնալով Հիւսիս-Հարաւ նախագծի Սիսիան-Քաջարան հատուածի կառուցմանը, որի համար նախաորակաւորման մրցոյթը յայտարարուել է Փետրուարի 17-ին:

Նա յաւելեց, որ Արեւելք-Արեւմուտքի նախագծային հատուածն արուած չէ, բայց յընթացս քաղաքական պայմանաւորուածութիւնների եւ համաձայնութիւնների ձեռքբերման համատեքստում շատ արագ կ'իրականացնեն նաեւ այդ հատուածը:

**ԱՐՑԱԽ**

## ԱՐՑԱԽԻ ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎՆ ԱՐՏԱՀԵՐԹ ՆԻՍՏ Է ԳՈՒՄԱՐԵԼ

Արցախի Ազգային Ժողովի հանրային կապերի բաժինը յայտնում է, որ Փետրուարի 18-ին գումարուել է արտահերթ նիստ:

«Օրակարգում ընդգրկուած էին առաջին ընթերցմամբ ընդունուած «Արցախի Հանրապետութեան բռնազաւթուած տարածքների մասին», «Քաղաքացիական օրէնսգրքում լրացում կատարելու մասին» օրէնքների նախագծերի փաթեթի եւ Ազգային Ժողովի խմբակցութիւնների նախաձեռնութեամբ ներկայացուած Արցախի Ազգային Ժողովի յայտարարութիւնը՝ Արցախի վերածննդի օրուայ կապակցութեամբ:

Հիմնական զեկուցող պատգամաւոր Արթուր Յարութիւնեանը նշել է, որ սահմանուած ժամկէտներում «Արցախի Հանրապետութեան բռնազաւթուած տարածքների մասին», «Քաղաքացիական օրէնսգրքում լրացում կատարելու մասին» օրէնքների նախագծերի փաթեթի վերաբերեալ առաջարկութիւններ չեն եղել:

Յարակից զեկոյցով հանդէս է եկել ԱԺ պետական-իրաւական մշտական յանձնաժողովի նախագահ Սեւակ Աղաջանեանը, ով ներկայացրել է յանձնաժողովի եզրակացութիւնը նախագիծը երկրորդ ընթերցմամբ ընդունելու մասին:

Այնուհետեւ Ազգային Ժողովը միաձայն ընդունել է օրէնքը: Յաջորդիւ Արցախի Ազգային Ժողովի յայտարարութիւնն էր՝ Արցախի վերածննդի օրուայ կապակցութեամբ:

Գլխադասային յանձնաժողովը ներկայացրել է նախագծի վերաբերեալ յանձնաժողովի դրական եզրակացութիւնը:

30 կողմ ձայնով խորհրդարանն ընդունել է յայտարարութիւնը», - ասուած է հաղորդագրութեան մէջ:

# ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ
## (Մահուան 50-ամեակին առիթով)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

**Ազգայինը ձեւի՞ թէ խորքի մէջ**

Ո՞ւր պէտք է փնտռել տոհմիկութիւնը՝ գրուածքի մը ձեւի՞ն թէ խորքին մէջ, գործածած ըլլալու համար իրենց բառերը:

Ըստ Թաշեանին, տոհմիկութիւնը պիտի որոնել ձեւին մէջ, այսինքն՝ ոճին, որ «նոյնինքն մարդն է»:

Թաշեան կը բերէ օրինակներ: Սէրն ու վիշտը տիեզերական զգացումներ են եւ կը ներկայացնեն գրականութեան խորքը, բայց զանոնք արտայայտելու ձեւը տարբեր է ֆրանսացիին եւ հայուն մէջ: Վերլէնն ու Պօտլէրը եւ հայկական Անտունիները կ՛երգեն սէրն ու վիշտը (խորքը), բայց տարբեր են երկու կողմերուն հանգադիտութիւնները (ձեւը):

Ժողովուրդներու պարերը իրարմէ կը տարբերին իրենց ձեւով, անոնց չափն ու եղանակը տարբեր են: Ֆրանսացին ունի Թանկօ, իտալացին՝ Օ՛ պաեատէրա, հայը՝ Հօյնար եւ Թամզարա:

Թաշեան կ՛եզրակացնէ՝ թէ հայ շինականը իր գութանի եւ արօրի երգը կը շինէր հայրենիքին եւ դաշտերուն մէջ, սարերուն եւ լեռներուն կատարին: Հիմա հայ շինականը ուրկէ՞ պիտի առնէ իր ներշնչումը՝ Եգիպտոսի բուրգերէ՞ն թէ Եւրոպայի այլասերող միջավայրէն: Վարուժան *Հացին երգը* բանաստեղծական շարքին ատաղձը առնելու համար գաւառ գնաց եւ տեսաւ այնտեղի կեանքը:

Մխիթարեանի համար, սակայն, չկայ գրականութեան խորքի եւ ձեւի սահմանազատում, հետեւաբար՝ չկայ խնդիր: Մէկը միւսին զարգացումն է: «Ամէն ազգի գրականութեան նման, հայ գրականութիւնն ալ արժէք կ՛ունենայ այն չափով, ինչ չափով որ կու տայ ան ազգային նկարագիրը, ժամանակին ու միջոցին մէջ զայն յատկանշող տեւական ու էական գծերը, որոնք ինքնայատուկ են եւ հայը կը զատեն միւս ազգերէն: Եւ հոս խորքի ու ձեւի խնդիր չի կրնար ըլլալ. անոնք նոյնն են, իսկապէս, «մէկը միւսին զարգացումը», ինչպէս Շօփէնհաուէր ալ կ՛ըսէ»:

**Ասուլիս**

1924 Յունուար 12-ին, Աղեքսանդրիոյ Յառաջդիմասէրի սրահին մէջ տեղի կ՛ունենայ գրական ասուլիս՝ *Տոհմիկ գրականութիւն մը կարելի՞ է ստեղծել*: Ասուլիսը արդիւնքն էր ընթացող բանավէճին: Խօսք կ՛առնեն չորս բանախօսներ՝ Գ. Թագւորեան, Բ. Թաշեան, Ս. Պետրոսեան եւ Ս. Կէօնճեան: Բացի Թաշեանէն, որուն գաղափարները տեսանք վերը, միւս երեքը թեր կ՛արտայայտուին տոհմիկ գրականութիւն ստեղծելու կարելիութեան(37):

Զուննենալով բանախօսներու խօսքին բուն բնագիրները, անոնց կարծիքներուն մասին կը տեղեկանանք անստորագիր քննախօսի համառօտագրութենէն:

Սերովբէ Պետրոսեան նախ կ՛ըսէ, որ ունեցած ենք տոհմիկ գրականութիւն՝ կապուած գաւառէն եկած գրողներուն հետ.

«Ամէն ազգի նման հայն ալ ունի իր ուրոյն գրականութիւնը: Տոհմիկ գրականութեան ամէնէն հարազատ եւ լաւագոյն ներկայացուցիչներն եղած են ոչ սակաւ գաւառացի գրողներ»:

Այս տոհմիկ գրականութեան շունչը տակաւին կենդանի է արտասահմանի մէջ: Ան տարբեր ձեւեր ստանալով պիտի ունենայ իր շարունակութիւնը, տարապանքի գրականութեան փոխարինելով բողոքի գրականութիւնը, իսկ վերջինիս՝ վերածնունդի գրականութիւնը.

«Հակառակ մեր կորուստներուն, յուետես ըլլալու պէտք չկայ, քանի կան արտասահմանի մէջ իմացական լոյսի կեդրոններ, որոնց մէջ հայութեան հոծ զանգուածները կ՛ապրին, ուր տոհմիկ գրականութեան շունչը կայ ու կը մնայ տակաւին: 30-35 տարիներ՝ տառապանքի տոհմիկ գրականութիւնը կերտեցինք: Հիմա ունինք բանակ մը որբերու, որոնք պիտի դարբնեն բողոքի գրականութիւնը. իսկ անոնց յաջորդող սերունդը պիտի կերտէ վերածնունդի եւ փառքի հոյակապ գրականութիւնը»:

Քննախօսը այնքան ալ յստակութեամբ չի կրնար ներկայացնել Ս. Կէօնճեանի առարկութիւնը: Խօսքը ո՛ր տարածութեան մասին է՝ արեւելահա՞յ թէ արեւմտահայ: Անցում մը կ՛ուրուագծուի մէկէն միւսը՝ զոր տակաւին պէտք է հասկնալ.

«Պ. Ս. Կէօնճեան խօսք առնելով ըսաւ.

«Ինձ այնպէս կը թուի, թէ մեր հայրենիքին մէջ, այս հարցը իր ներկայ ձեւով չէր դրուեր: Անիկա ձեւով երկու եզրակացութեան կը տանի մեզ.

1. Այն որ տոհմիկ գրականութիւն ցարդ գոյութիւն չէ ունեցած.

2. Որ շատ ցանկալի էր ունենալ զայն:

«Բայց հոս՝ արդէն կասկածը. — Հնարաւո՞ր է արդեօք: Եւ ահա իմ աչքիս կը ներկայանայ հայ գիրքերու ամբողջութիւնը: Աբովեանէն մինչեւ Թումանեան: Այս ամբողջ գրականութիւնը տոհմիկ է. ոմանք՝ նիւթով, իսկ միւսները՝ իրենց ձեւին, իրենց մտածելակերպին մէջ: Նոյնիսկ մեծամասնական գրագէտները, իրենց գրականութեան մէջ հայ են, տոհմիկ են. օրինակ՝ Տէրեան: Տաղանդին թելադրանք չ՛ըլլար. թողունք զայն իր ներշնչումին, որ հայկական գոյն պիտի տայ իր գրուածքին»:

Գաբրիէլ Թագւորեան կը ներկայացնէ Պոլիսը՝ որ ձախողեցաւ տոհմիկ գրականութիւն ստեղծել, ապա գաւառը՝ որ փորձ մը կատարեց, մնալով, սակայն, առանց ուղղութեան.

«Ազգային ինքնագիտակցութիւնը կը ստեղծէ տոհմիկ ըլլալու ձգտումը: Ուրիշ ազգեր յաջողած են տոհմիկ ըլլալու իրենց ճիգերուն մէջ. իսկ հայութիւնը դեռ կը խարխափէ այդ ճամբուն վրայ: Պոլիսը փորձեց ազգ. գրականութիւն մը ստեղծել, բայց ձախողերաւ: Պոլսահայութեան ոգիին արտայայտութի՛ւնը միայն կրնար ըլլալ. գաւառը փորձ մը ըրաւ, սակայն պակսեցան իրեն ուղղութիւնն ու միջոցները»:

Հակառակ ասոր, հիմա կարելի է հայեցի գրականութիւն ստեղծել՝ եթէ պահենք հայկական ոգին.

«Այժմ կարելի կ՛ըլլայ ստեղծել զուտ հայեցի գրականութիւն, եթէ անեղծ պահուի հայկական ոգին եւ զայն զարգացնելու բանաւոր եղանակները մշակուին: Օտար մշակոյթը պէտք չէ նպատակ ըլլայ, այլ միջոց մը՝ մեր ազգային անհատականութեան ուռճացման: Այլապէս հայ բառեր կը թոթովենք, առանց հայկական գրականութիւն ունեցած ըլլալու»:

**Ամփոփում**

Ընդհանուր առմամբ, բարդ հարցի մը պարզ ներկայացումն է որ եղած է բանավէճին ընդմէջէն: Ամէն բան կը դառնայ ազգայինի շուրջ, առանց մեկնաբանելու, քննարկելու կամ խնդրականացնելու ազգայինը՝ իբրեւ այդպիսին: Ազգայինը կ՛ընդունուի իբրեւ լուծուած իրողութիւն, մինչդեռ ազգայինն ինքը յարափոփոխ, զարգացող, շերտաւորուող կացութիւն մըն է: Նոյն իրենց առաջարկած «հայեցի» գրողներու անուններուն միջեւ ազգայինի շատ մեծ տարբերութիւններ կան: Սայեաթ-Նովայի, Թումանեանի եւ Վարուժանի ազգային շերտերը անհունօրէն տարբեր են իրարմէ: Իսկ ազգայինը ոչ թէ պատմականօրէն տրուած ճշմարտութիւն մըն է, այլ պատմական շարժումին ընդմէջէն կազմաւորուող ու անընդհատ վերակազմաւորուող իրականութիւն(ներ):

Բանավէճին ընթացքին երբեմն կը նոյնանան հայեցի ու ազնուական գրականութիւնները, հայկական եւ բարձրագոյն գրականութիւնները, ապազգային եւ անարուեստ գրականութիւնները, ինչպէս նաեւ հայեցի գրողն ու գրական փառքը, որով ազգայինը կը ներկայացուի իբրեւ անառարկելի որակ:

Յաճախ ազգայինը ներկայացուած է վերացական բառերով՝ ներշնչում, շունչ, ոգի, երազանք, ցեղի արիւն, հայրենիքի արեւ:

Շատ անգամ ազգային գրականութեան տիպար օրինակ ներկայացուած է գաւառական գրականութիւնը: Պէտք չէ մոռնալ՝ որ Մխիթարեան եւ Թաշեան նախկին պոլսեցիներ են, եւ ժամանակին այնտեղ ուժեղօրէն դրուած էր գրականութեան գաւառականի եւ պոլսականի տարբերութիւնը, վէճեր յառաջացած մէկուն կամ միւսին գերակայութեան գաղափարին շուրջ: Արդ, գաւառականի եւ պոլսականի տարբերակումը ներկայ բանավէճին մէջ նորութիւն մը չի ներկայացներ: Ի տարբերութիւն, սակայն, այս բանավէճին մէջ գերադասութեան հարց չկայ: Բայց եթէ Թաշեանի հայեցիութեան տիպարը գաւառականն է՝ ինչպէս որ կայ, Մխիթարեանի համար գաւառականը փոխադրելի է: Փոխադրելի՝ ներշնչումով: Ներշնչում՝ երկիրէն եկած հայ ժողովուրդին հոգիէն ու կեանքէն: Մինչդեռ Թաշեանի համար ներշնչումը առարկայական իրականութիւն մըն է՝ կիրարկելի միայն այդ իրականութեան մէջ, Մխիթարեանի համար այդ իրականութիւնը փոխադրելի է՝ անոր ներշնչումին միջոցով:

Բանավէճին ընթացքին պոլսական ամբողջ գրական սերունդ մը դնել ոչ-ազգայինի բնաբանին մէջ, հարցական մօտեցում մըն է: Ազգայինը կապել *միայն* հայրենիքի հետ (ուղղակի կամ փոխադրելի), ուրիշ հարցական մը: Ուրեմն, ինչո՞ւ *Նոր շարժումը*, *Յուսաբերը*: Ոչ-ազգային գրականութի՞ւն արտադրելու համար, թէ քանի մը «հայեցի» գրական գործեր գտնել-հրատարակելով ազգային գրականութիւն յառաջացնելու համար:

Բանավէճը ոչ մէկ կերպով դուրս կու գայ աւանդական կուսակցութեան մը ընդունուած սահմաններէն, այլ ընդհակառակը, ազգայինի՝ եւ *միայն* ազգայինի, անվիճարկելի ընդունումը կը հաստատէ կուսակցութեան չյայտարարուած պարտադրանքը:

Բանավէճին մէջ ակամայ դրուած է ժողովուրդի եւ շինականի տարբերութիւնը: Շինականն է գրական ազգայնութեան ակունքը՝ իր երգ երաժշտութեամբ: Բայց ազգային գրականութեան մասին վերոյիշեալ ամբողջ գրոյցը նկատի ունի հայ ժողովուրդը՝ ժողովուրդը տանիլ դէպի գրականութիւն եւ գրականութիւնը տանիլ դէպի ժողովուրդ: Հասկնալի է, այս պարագային շինականը հայ ժողովուրդի դասակարգին մէջ պիտի չմտնէ: Գրականութիւն մըն է՝ որուն ներշնչումը եկած է շինականէն, առանց որ շինականը իր մասնակցութիւնը ունենայ բուն գրականութեան ստեղծումին մէջ, եւ ապա վերադարձուած ժողովուրդի մը՝ որ ակունքին ստեղծիչը չէ:

Գրականութեան եւ ազգայնականութեան խնդիրը նորութիւն մը չէր հայութեան համար: Նորութիւն մըն էր՝ եգիպտահայութեան համար, արծարծուած մտաւորականներու կողմէ՝ որոնք տակաւին նոր գաղթած ու հաստատուած էին Եգիպտոս, իրենց հետ բերելով յատկապէս պոլսական մշակոյթի գաղափարաբանութիւնները:

Մշակոյթի ազգայնականութեան հարցը, եգիպտահայութեան մօտ, յետագային եւս պարբերաբար պիտի արծարծուէր: Յաջորդ ենթամասը հապճէպ ու ընտրովի ակնարկ մըն է յետագայ երկու եգիպտահայ նմոյշներու, պարզապէս ցոյց տալու համար՝ որ բանավէճին խնդիրները մեկուսացած արտածորումներ չէին բնաւ եգիպտահայութեան համար:

(Շար. 5)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

37. «Գրական ասուլիս մը Աղեքսանդրիոյ մէջ», *Նոր շարժում*, 17 Փետրուար 1924, Ա. տարի, թիւ 46-47, էջ 709-710:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՓՈԽՎԱՐՉԱՊԵՏԸ ԽՕՍԵԼ Է ԵՌԱԿՈՂՄ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԽՄԲԻ ԱՌԱՋԻԿԱՅ ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Հայաստանի, Ադրբէջանի եւ Ռուսաստանի փոխվարչապետերի համատեղ նախագահութեամբ գործող տարածաշրջանի բոլոր տնտեսական եւ տրանսպորտային կապերի ապաշրջափակման հարցերով եռակողմ աշխատանքային խմբի աշխատանքները կը շարունակուեն այդ հարթակում, *Արմենպրէսի* թղթակցի հաղորդմամբ լրագրողներին յայտնել է փոխվարչապետ Մհեր Գրիգորեանը՝ պատասխանելով հարցին, թէ առաջիկայում եռակողմ աշխատանքային խմբի հանդիպումներ նախատեսուո՞ւմ են:

«Այս պահին ես կոնկրէտ ամսաթուի մասին բան չեմ ասի, բայց ենթադրաբար, այո՛, աշխատանքները կը շարունակուեն այդ հարթակում», - պատասխանել է փոխվարչապետը:

Մհեր Գրիգորեանը նաեւ դրական պատասխան է տուել Ռուսական Երկաթուղիների հետ համագործակցութեանը վերաբերող հարցին:

«Ռուսական Երկաթուղիների ԲԲԸ-ի հետ, այո՛, համագործակցութիւն կայ, որովհետեւ անկախ եռակողմ հարթակի աշխատանք- 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԹՈՒՐՔԱԿԱՆ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ 139 ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ Է ԳՐԱՆՑՈՒԵԼ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆԻՑ Ի ՎԵՐ

**ՆԱՆԷ ՄԱՆԱՍԵԱՆ ԵՒ ՆԱՐԵԿ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ**

Էկոնոմիկայի նախարար Վահան Քերոբեանը վերջերս կայացած ճեպազրոյցում, լրագրողի դիտարկմանն ի պատասխան, թէ Թուրքերը Հայաստանում կապիտալ երբեւէ չեն ձեռք բերել, հակադարձեց, որ նրանք մշտապէս մեր երկրում անշարժ գոյք են գնել եւ տնտեսական գործունէութիւն են ծաւալել:

«Դուք հիմա պնդում էք անում, ձեր պնդումը սխալ է: Եթէ ուզում էք ճիշտ թուեր իմանալ, պէտք է դիմէք Կադաստր, որպէսզի իմանաք, թէ Թուրքիայի քաղաքացիները ինչ ներդրումներ ունեն Հայաստանում», - պատասխանել է նախարարը լրագրողին:

*Փաստերի ստուգման հարթակն* ամփոփել է Հայաստանում գործող, թուրքական կապիտալի մասնակցութեամբ ընկերութիւնների թիւը՝ Հայաստանի չորս ղեկավարների օրօք, ինչպէս նաեւ պարզել է Թուրքիայի քաղաքացիներին Հայաստանում սեփականութեան իրաւունքով պատկանող անշարժ գոյքի ծաւալները:

**Թուրքիայի քաղաքացիների անշարժ գոյքը Հայաստանում**

Կադաստրի կոմիտէից *Փաստերի ստուգման հարթակի* հարցմանն ի պատասխան տեղեկացրեցին, որ Հայաստանում Թուրքիայի քաղաքացիներին (ֆիզիկական անձանց) սեփականութեան իրաւունքով պատկանող 77 միաւոր անշարժ գոյք կայ: Ըստ կոմիտէի՝ այդ թւում առկայ են 7176 քմ. շինութիւն եւ 2.21 հա. հողատարածք:

Թուրքիայի քաղաքացիներին պատկանող անշարժ գոյքի պայմանագրային գների հանրագումարը կազմում է մօտ մէկ մլրդ. 833 մլն. դրամ:

**Թուրքական ընկերութիւնները Հայաստանում**

Կադաստրի կոմիտէից յայտնում են նաեւ, որ Թուրքիայում գրանցուած իրաւաբանական անձանց սեփականութեան իրաւունքով պատկանող անշարժ գոյք Հայաստանում առկայ չէ:

Միեւնոյն ժամանակ, *Փաստերի ստուգման հարթակի* հարցմանն ի պատասխան Էկոնոմիկայի Նախարարութիւնից յայտնեցին, որ պետական միասնական գրանցամատեանի տուեալների համաձայն՝ մեր երկրում գրանցուած է 72 ՍՊԸ, որոնց հիմնադիր կամ մասնակից են Թուրքիայի քաղաքացիները:

Իրաւաբանական անձանց պետական ռեգիստրի ↳ 4

## ԹԵԹԵՒԱՑՆԵԼ ՀԱՅՐԵՆԱԴԱՐՁՆԵՐԻ ՀՈԳՍԸ. ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԳՈՐԾԵԼՈՒ Է ԻՆՏԵԳՐՄԱՆ ԿԵՆՏՐՈՆ

ԵՐԵՒԱՆ, 15 ՓԵՏՐՈՒԱՐԻ, ԱՐՄԵՆՊՐԷՍ: Սպասարկում՝ մէկ պատուհանից, աւելի շատ ծառայութիւնների հասանելիութիւն. Սփիւռքի գործերի գլխաւոր յանձնակատարի գրասենեակը բարձրացնում է հայրենադարձների հետ աշխատանքի արդիւնաւէտութիւնը: Այդ նպատակով յանձնակատարի գրասենեակը ձեռնամուխ է եղել Հայաստանում բացելու Հայրենադարձների Ինտեգրման Կենտրոն: *Արմենպրէսի* մամուլի սրահում հրաւիրուած ասուլիսում Հայրենադարձների Ինտեգրման Կենտրոնի ստեղծման ծրագրի համակարգող Մարգարիտա Բաղդասարեանը նշեց, որ ոչ միայն մէկ աղբիւրից է աշխատանք տարուելու հայրենադարձների հետ, այլեւ ծառայութիւնների շրջանակն է ընդլայնուելու:

«Ուսումնասիրել ենք միջազգային, յատկապէս Իսրայէլի փորձը: Իրենք շատ յաջողուած նման ծրագիր ունեն: Իրենց փորձի հիման վրայ մենք ստեղծեցինք մեր ծրագիրը: Բոլոր այն հարցերը, որոնք կապուած են լինելու հայրենադարձութեան հետ, ինտեգրման կենտրոնը պէտք է լուծում տայ, գործնական աջակցութիւն ցուցաբերի՝ փաստաթղթաւորում, կացութեան կարգավիճակ, քաղաքացիութեան ստացում, անձնական բեռի տեղափոխում, կրթութիւն եւ այլն», - ասաց Մարգարիտա Բաղդասարեանը:

Ըստ էութեան՝ Սփիւռքի գործերի գլխաւոր յանձնակատարի գրասենեակն այսօր էլ կատարում է նման գործառոյթ: Ինչո՞վ է տարբերուելու Հայրենադարձների Ինտեգրման Կենտրոնը: Մարգարիտա Բաղդասարեանի խօսքով, նախ կենտրոնի միջոցով հնարաւոր է լինելու ընդլայնել աշխատանքի ծաւալը, նոր ծառայութիւններ են աւելանալու, անվճար դասընթացներ, ֆորումներ են կազմակերպուելու, որ կարողանան հայրենադարձներն աշխատանք գտնել: Այսինքն՝ կենտրոնի աշխատակիցը Հայաստան տեղափոխուող անձի հետ աշխատելու է, նրա գործը վարելու է, խնդիրները կարգաւորելու է մինչեւ նրա գալը:

Կենտրոնը կատարելու է նաեւ հայրենադարձների ↳ 4

ԽՈՀԵՐ

## ՊԱՅՔԱՐ ԼԱՅՆԱԽՈՀՈՒԹԵԱՆ ԴԷՄ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Ներկայ զանգուայնացած եւ համաշխարհայնացած (globalized) աշխարհին մէջ կը թուի որ մարդիկ լայնախոհ են՝ տեղեկութիւն-գիտելիքի առատութեան եւ մատչելիութեան շնորհիւ: Տեղեկութիւններ՝ որոնք լիովին վերահսկուած են եւ կը հասնին մաղուած եւ ուղղորդուած:

Կարելի է տեղեկութիւն-գիտելիքը բաժնել երկու մասի:

Առաջինը այն է՝ որ կը ձգտի մեզի: Ան մեզի կը հասնի առանց մեր կողմէ գործադրուած ճիգի: Լրատուամիջոցներու բոլոր տեսակները կը պատկանին այս տեսակին: Լրագիրը եւ հեռատեսիլը մեզի կու տան իրենց կողմէ պատրաստուած տեղեկութիւն, ուրեմն՝ լիովին վերահսկուած, մաղուած եւ ուղղորդուած է իրենց կողմէ: Այստեղ ընկալողին ճիգը սահմանափակուած է լրագիրը կարդալու եւ հեռատեսիլը դիտելու մէջ: Զանգուածային տեղեկատուութեան վրայ հիմա աւելցան նաեւ Ֆէյսպուքն ու այլ միջոցներ: Ո՞վ ըսաւ՝ որ Ֆէյսպուքի տեղեկութիւն մը՝ մանաւանդ երբ անիկա տարածուած է անսահման ընդարձակութեամբ, մղուած չէ մէկ տեղէ մը: Շատ դիւրին է Ֆէյսպուքով կեղծ լուր տարածելը:

Իսկ ինչո՞ւ մարդիկ կ՚ընդունին այն՝ ինչ որ տրուած է իրենց: Դպրոցը հիմքն է ամէն բանի: Դպրոցին մէջ չկայ գիտելիք ԸՆՏՐԵԼՈՒ կարելիութիւն: Կայ ՏՐՈՒԱԾ գիտելիքը վերարտադրելու պարտադրանք, վերարտադրելու ընթացքին աշակերտին թուացնել տալով՝ որ այդ գիտելիքը կը կազմէ իր սեփական կերտուածքի մասը: Մեքենայական վերարտադրութիւն՝ իբրեւ անհատական ինքնուրոյնութեան պատկեր:

Երկրորդը այն տեղեկութիւն-գիտելիքն է՝ որուն մենք կը ձգտինք: Առցանց, ինչպէս նաեւ յատուկ գիրքերու եւ հրատարակութիւններու մէջ, մատչելի է ամէն բան: Բայց այդ ամէն բանին հասնելու համար գիտակցութիւն է պէտք: Ան ինքն ըստ ինքեան չի հասնիր մեզի: Անոր ձգտելու համար առ նուազն անհրաժեշտ է գիտակցիլ տեղեկութեան առաջին տեսակի իշխանամէտ սահմանափակութիւնը: Սեփական կամքի օգտագործումը կարեւոր դեր կը խաղայ այստեղ: Սեփական կամք՝ հասնելու, հասկնալու, մեկնաբանելու, վերլուծելու եւ իմաստ ստեղծելու, փոխանակ դիմելու անիրազեկ վերարտադրութեան: Դպրոցներու մէջ սեփական կամք չեն մշակեր: Այլ կը սպաննեն զայն:

Տարօրինակօրէն, տեղեկութիւն-գիտելիքի առաջին տեսակին տիրապետողը հասարակութիւններու մէջ կը նկատուի լայնախոհ, երկրորդինը՝ նեղմիտ:

Երբ ըսես՝ որ հայոց Ցեղասպանութեան պատճառները բազում են, այնտեղ կը մտնեն Առաջին Համաշխարհային Պատերազմի միջոցով վերադասաւորուող դրամատիրական ազդեցութեան տարածքները՝ ներառեալ Թուրքիոյ մէջ քարիւղի շահագործումը արեւմտեան անդրազգային ընկերութիւններուն կողմէ, ԺԹ. դարու ազգային պետութեան արտադրած ազգային ատելութեան գործօնները, իշխանական շերտերուն կողմէ ազգերու բնական ու սովորական տարբերութիւններուն դիտաւորեալ վերածումն ու վերաճումը ազգային բացառականութեան եւ անհանդուրժողականութեան, հայերուն հակադիւանագիտական արկածախնդրութիւնները, կը դառնաս նեղմիտ: Եթէ ըսես մէկ բան՝ թէ Թուրքը ամբողջութեամբ եւ առանց բացառութեան աղտոտ ազգ է եւ հայը ամբողջութեամբ եւ առանց բացառութեան մաքուր, եւ այս է Ցեղասպանութեան *միակ* պատճառը, կը դառնաս լայնախոհ: Բազումը հաւասար է նեղմտութեան, միակը՝ լայնախոհութեան:

Երբ ըսես՝ որ ցեղասպանական հասկացողութիւնը անհատական ու հաւաքական յիշողութիւն է, աղէտ, վնասուածք, ան ականատեսութիւն է, ճանաչողութիւն, փոխներթափանցում, վարքագիծ, իր մէջ կը պարունակէ փրկութեան փորձեր՝ նոյն ինքը գործադրող ազգի անդամներուն կողմէ, երբ ըսես՝ որ ան կը պատկանի պատմութեան, մարդաբանութեան, հոգեվերլուծութեան եւ այլ բնագաւառներու, այսինքն՝ երբ ցեղասպանութիւնը ընդունիս իբրեւ բաց հասկացողութիւն, կը դառնաս նեղմիտ, մինչդեռ երբ ըսես՝ որ Ցեղասպանութիւնը ոչ այլ է, ինչ ՄԱԿ-ի պարտադրած հինգ կէտերը, այսինքն՝ զայն փակես հինգ վերջակէտեալ պարբերութիւններու մէջ, կը դառնաս լայնախոհ: Բացը ներկայացնելու համար կը դառնաս նեղմիտ, գոցը չեշտադրելու համար՝ լայնախոհ:

Երբ ըսես՝ որ վերջին 44-օրեայ պատերազմի պարտութեան պատճառները բազում են՝ հաւասարապէս եւ փոխադարձաբար ներքին ու արտաքին, որ այդ պատճառները արդիւնքն են աւելի քան 20 տարուայ քաղաքական սխալներու աստիճանական կուտակումներու, կը դառնաս նեղմիտ, երբ ըսես՝ որ պարտութեան *միակ* պատճառը Փաշինեանն է եւ անոր դաւաճանութիւնը, կը դառնաս լայնախոհ:

Երբ ըսես՝ որ Քովիտ-19-ը կամ քորոնաժահրը արդիւնքն է դրամատիրութեան արտադրած մահաբեր նիւթերուն, մաս կը կազմէ արդի աշխարհի հիւանդութիւններու զանգուայնացումի գործողութեան, անբաժան մասնիկն է դրամատիրութեան պարբերական ճգնաժամերուն՝ ընդ որում ճգնաժամը սկսած է ժահրէն առաջ, երբ ըսես՝ որ դեղագործական հսկայ ընկերութիւնները՝ իրենց արտադրած խիստ կասկածելի պատուաստումներուն շնորհիւ ձեռք կը բերեն ու տակաւին պիտի բերեն անհաւատալի գերշահոյթներ, երբ գանգատիս՝ որ պատուաստում ստացած անձերու մահացութեան թիւին մասին դիտաւորեալ ոչ մէկ վիճակագրութիւն կը յայտարարուի, կը դառնաս նեղմիտ, մինչդեռ եթէ ըսես՝ որ Քովիտ-19-ը ինքն իր մէջ յայտնուած ու այնտեղ վերջացող մահացու ժահր մըն է, կը դառնաս լայնախոհ:

Երբ ըսես՝ որ բազում են կրօնքները՝ հրէականութիւն, քրիստոնէութիւն, իսլամ, պուտտիզմ, հինտուիզմ, եւ այլն, եւ թէ հետաքրքրուած ես բոլորով եւ համոզումով կը կարդաս բոլորը, կը դառնաս նեղմիտ, երբ ըսես՝ որ հետաքրքրուած ես *միայն* քու կրօնքովդ, առաւել եւս՝ կ՚ատես միւս կրօնքները, կը դառնաս լայնախոհ:

Երբ երաժշտական «փրոֆեսիոնէլ» շրջանակներու մէջ ըսես՝ որ կը սիրես դասականը, ճազը, փոփը, ռոքը, ռապիզը, եւ փորձ կը կատարես դրականապէս հասկնալ ռապիզի արմատներն ու ընկերային դրսեւորումները, կը դառնաս անճաշակ ու նեղմիտ, երբ ըսես՝ որ *միայն* դասականն է գերադասը, կը դառնաս բարձրաճաշակ ու լայնախոհ:

Երբ ըսես՝ որ չկայ հայոց (եւ ոչ-հայոց) մէկ պատմութիւն, այլ կան պատմութիւններ եւ մեկնաբանելի իրադարձութիւններ, կը դառնաս նեղմիտ, երբ ըսես, ինչպէս հայոց պատմութեան դասագիրքերը, որ հայ ժողովուրդը բացառիկ յաղթանակներ տարած է շնորհիւ իր հանճարեղ ցեղային բնազդին եւ պարտութիւններ կրած դաւաճաններու պատճառով, այլեւ հազարամեակներու պատմութիւնը դիտես այս ակնոցով, կը դառնաս լայնախոհ: Վկայ Վարդանանց Պատերազմը՝ հերոս Վարդանի եւ դաւաճան Վասակի կեղծ ներկայացումներով, երբ կը մերժենք զայն դիտել եկեղեցի-իշխանութիւն բարդ ու լարուած յարաբերութիւններու եւ աւատատիրական մրցակցութիւններու բնաբաններուն ընդմէջէն: Վկայ Ղարաբաղի առաջին պատերազմը՝ որուն յաղթանակը եւ անոր պատճառները չուզեցինք վերլուծել, այնքան վստահ ըլլալով մեր բացառիկութեան վրայ: Վարդանանց Պատերազմը եւ Ղարաբաղի առաջին պատերազմը կազմալուծողը կը դառնայ նեղմիտ, զանոնք անվիճարկելի դարձնողը՝ լայնախոհ:

Եւ այսպէս՝ ամէն բնագաւառ, ամէն երեւոյթ:

Իսկ մեր հայ աւանդականները երբեք ↳ 4

ԶԱՐԹՕՆՔ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՊԱՅՔԱՐ ԼԱՅՆԱԽՈՀՈՒԹԵԱՆ ԴԷՄ

3

թող չձեւացնեն ասկէ դուրս ըլլալ:

Մեկնաբանական այլազանութիւնը դարձած է նեղմտութեան համարժէք, միակ կէտի ֆեթիշականութիւնը՝ լայնախոհութեան: Լայնախոհութիւնն ու նեղմտութիւնը իրենց իմաստները կը ստանան ոչ թէ գործողութիւններու եւ գործադրութիւններու իրական փորձառութիւններէն, այլ կանխապէս պարտադրուած կեթթոյացած կէտերու ընդունելի-չընդունելիութենէն, կէտեր՝ որոնք կը ծառայեն իշխանական նեղ վերնախաւի մը գոյութեան եւ վերարտադրութեան համար:

Նիւթի մը եւ երեւոյթի մը բազմաշերտութեան ձգտիլը ենթադրուած է ըլլալ կիրք ու հաճոյք: Այդ կիրքն ու հաճոյքը չե՞ն որոնք կը սպաննուին դպրոցական կրթութեան ընթացքին՝ յանուն մէկ անսխալական պատասխանի: Դպրոցն ու համալսարանը կը սորվեցնեն մէկն ու միակը: Մէկ հատն է ճիշդը: Տոքթորականներ կը գրուին միակ ճշմարտութիւններու վրայ:

Լայնախոհութեան դէմ պայքարը համատարած է:

## ԹՈՒՐՔԱԿԱՆ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ 139 ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ Է ԳՐԱՆՑՈՒԵԼ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆԻՑ Ի ՎԵՐ

3

տուեալների ուսումնասիրութիւնից պարզ դարձաւ նաեւ, որ Թուրքիայի քաղաքացիները 1991-2022 թթ. մասնակցութիւն են ունեցել Հայաստանում գործող 139 կազմակերպութիւնում: Ընկերութիւնների մի մասը դադարեցրել է գործունէութիւնը: Մնացած 91-ը շարունակում են գործել, սակայն, ամենայն հաւանականութեամբ, դրանց մի մասից Թուրքական կապիտալը հեռացել է, եւ այժմ Հայաստանում Թուրքական կապիտալի մասնակցութեամբ գործող 72 ընկերութիւն է մնացել:

Ընդհանուր առմամբ, այս տարիների ընթացքում Թուրքիայի քաղաքացիների մասնակցութեամբ Հայաստանում ամենաշատ ընկերութիւններ բացուել են Ռոբերտ Քոչարեանի կառավարման տարիներին՝ 54-ը, եւ նոյն տարիներին էլ ամենաշատ թուով դադարել են գործել՝ 30:

Ստորեւ բերուած ինֆոգրաֆիկայում ներկայացուած են Հայաստանի չորս ղեկավարների կառավարման տարիներին Հայաստանում գործունէութիւն սկսած, Թուրքական կապիտալի մասնակցութեամբ ընկերութիւնների թուերը՝ ըստ կարգավիճակի:




## ԹԵԹԵՒԱՑՆԵԼ ՀԱՅՐԵՆԱԴԱՐՁՆԵՐԻ ՀՈԳՍԸ. ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԳՈՐԾԵԼՈՒ Է ԻՆՏԵԳՐՄԱՆ...

3

տուեալների թուայնացում: Գոյքագրուելու են բոլոր խնդիրները, դրանցից ելնելով ներկայացուելու են առաջարկութիւններ տարբեր գործընթացները դիւրացնելու, հայրենադարձներին հասանելի դարձնելու համար:

Մօտակայ ժամանակահատուածում կը յստակեցուեն կենտրոնի եւ միւս գերատեսչութիւնների հետ աշխատանքը: Կենտրոնը գործելու է Երեւանի Կենտրոն վարչական շրջանում, տարածքի հարցն արդէն յստակեցուած է: Առաջիկայում նախատեսուած են վերանորոգման, կահաւորման աշխատանքներ: Նախնական տուեալներով մի քանի ամսից այն լիարժէք կը սկսի գործել:

Մարգարիտա Բաղդասարեանը նկատեց, որ շատ են Հայաստան տեղափոխուելու հարցերով հետաքրքրուողները: Վերջին տարիներին նրանք հիմնականում Լիբանանից են, Իրանից, Վրաստանից, ԱՄՆ-ից, Ֆրանսիայից, Արգենտինայից: Տարեկան երեք հազար դիմում է լինում:

## ՍՊԻՏԱԿ ԹՈՒՂԹԸ ԵՒ ՓՈՐՁ ՄԸ ՔՆՆԱԿԱՆԱՑՆԵԼՈՒ ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԱՐՑԸ

1

վասն աղմուկի, որ ոչ մէկ ձեւով կ՚օգնէ կառուցելու առողջ պետութիւն.

«Մի երկրի համար, որի ընտրութեան հնարաւորութիւններն արդէն սահմանափակ են, առողջ քննարկման ու բանավէճի անհրաժեշտութիւնը՝ ի տարբերութիւն բանաւոր վիրաւորանքների ու հիստերիկ աղմուկի, որոնք քննարկումն անհնար են դարձնում, խիստ կարեւոր են» (էջ 82):

**Ազգայինն ու պետականը**

Վտանգաւոր է երբ ազգային գաղափարախօսութիւնը կը փոխարինէ պետութեան գաղափարին.

«Երկիրը բախւում է մեծ մարտահրաւէրների, այդ թւում՝ ազգայնական գաղափարախօսութեան, որը յարմար չէ անկայուն պետականութեան խնդիրները մեղմելու համար» (էջ 100):

Խառնաշփոթութիւն կայ ազգային եւ պետական օրակարգներուն միջեւ.

«Նմանապէս, կառավարութիւնը եւ քաղաքական ուժերը չպէտք է ազգային օրակարգը շփոթեն պետութեան օրակարգի հետ: «Ազգը» ներառում է բոլոր հայերին, անկախ նրանից, թէ որտեղ են նրանք գտնւում, ինչ վարչակարգերի ու կառավարութիւնների ներքոյ են ապրում: Պետութիւնը տարածքայնօրէն սահմանուած միաւորում է՝ յստակ սահմանուած բնակչութեամբ, որի անվտանգութեան ու բարեկեցութեան համար պետութիւնը պատասխանատու է միջազգային իրաւունքներով ու պարտականութիւններով: Պետութիւնն ունի կառավարութիւն, որը պատասխանատու է իր ժողովրդի առջեւ եւ նրա համար: Պետութեան ու ժողովրդի, որի համար այդ պետութիւնը պատասխանատու է, կենսական շահերը չպէտք է թուլացուեն, նոյնիսկ՝ տապալուեն, փորձելով դա հաճելի դարձնել սփիւռքեան համայնքներին» (էջ 88):

Շատ կարեւոր կէտ է սփիւռքեան համայնքներուն հաճելի դառնալու հարցը: Բայց գոնէ երկու առաջնորդներու պարագային տեսանք, թէ ինչ կը նշանակէ այդ համայնքներուն հաճելի չդառնալ...:

**Լարուածութեան թուլացում եւ յարաբերութիւններու կանոնաւորում Ազրպէյճանի եւ Թուրքիոյ հետ**

Ատելութիւնը չի կրնար ռազմավարութիւն ըլլալ.

«Երբ սպառնալիքները չափազանցւում եւ մեծացւում են, երկիրը կորցնում է այդ հարցերը դիւանագիտօրէն լուծելու հնարաւորութիւնները, ինչպիսին, թերեւս, Թուրքիայի հետ յարաբերութիւնների դէպքում է. երբ սպառնալիքները թերագնահատւում են, երկիրը կորցնում է պատերազմներ, ինչպիսին Ադրբէջանի դէպքում էր՝ վերջին 20 կամ աւելի տարիներին: Երկու հարեւաններին ատելը լաւ հայի էութիւնը չէ, եւ ո՛չ էլ այն կարող է ռազմավարութիւն լինել» (էջ 77):

Ատելութեան փոխարէն կարեւոր է առարկայականօրէն գնահատել սպառնալիքները.

«Սակայն թիւ մէկ խնդիրը մնում է այս սպառնալիքների պատշաճ եւ առարկայական գնահատումը: Թուրքիան Ադրբէջանին օգնեց նրա ռազմական արշաւում, սակայն չնայած բարձրագոչ եւ յամառ ահազանգերին ու նախազգուշացումներին, Թուրքիան չսպանեց ՀՀ ոչ մի քաղաքացու եւ ոչ էլ որեւէ թիզ տարածք վերցրեց» (էջ 77):

Լարուածութիւնը թուլացնելով, կարեւոր է ուղղակի յարաբերութիւններու մէջ մտնել Ազըրպէյճանի եւ Թուրքիոյ հետ.

«Կառավարութիւնը պէտք է նուազեցնի լարուածութիւնը Ադրբէջանի եւ Թուրքիայի հետ, եւ նրանց հետ բացի խօսոյթի ուղիներ՝ խորհրդապահական կամ այլ կերպ, հասկանալու համար նրանց քաղաքականութիւնները՝ ուղղակի ճանապարհով ու սառնասրտօրէն» (էջ 87):

Յատկապէս Ազըրպէյճանի հետ յարաբերութիւնները անխուսափելի են Հայաստանի ապահովութեան (անվտանգութեան) համար.

«Այնուամենայնիւ, Հայաստանը կարող է եւ պէտք է եզրակացնի, որ իր սեփական երկարաժամկէտ անվտանգութիւնը, կայունութիւնն ու բարեկեցութիւնը պահանջում են Ադրբէջանի հետ յարաբերութիւնների կարգաւորում» (էջ 92):

**Փտածութեան մերժումը Հայաստանի ընտրողներուն կողմէ**

2021-ի խորհրդարանական արտահերթ ընտրութիւններուն ժողովուրդը մերժեց նախորդ երկու վարչակարգներուն փտածութիւնը՝ ձախողանքի մատնելով պատերազմի պարտութիւնը պատրուակ բռնելով իշխանութեան վերադառնալու անոնց նկրտումը.

«Հայաստանի թաւշեայ յեղափոխութիւնը արտաքին քաղաքականութեան, պաշտպանութեան կամ անվտանգութեան ոլորտներում շահաբաժիններ չապահովեց. այն նոյնիսկ արժէք չունեցաւ դիւանագիտական դաշտում ո՛չ պատերազմի ժամանակ, ո՛չ էլ պարտութիւնից յետոյ: Չնայած դրան, Հայաստանի քաղաքացիները եւս մէկ անգամ մերժեցին միահեծան եւ հիմնականում կոռումպացուած նախորդ երկու վարչակարգերը՝ այդպիսով հիասթափեցնելով շատերին, ովքեր յոյս ունէին, որ միահեծան վարչակարգին պարտութեան կ՚ամրացնէր իշխանութեան վերադառնալու իրենց խաղաքարտերը» (էջ 76-77):

Ա.

(Շար. 2)

## ՓՈԽՎԱՐՉԱՊԵՏԸ ԽՕՍԵԼ Է ԵՌԱԿՈՂՄ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԽՄԲԻ ԱՌԱՋԻԿԱՅ

2

ներից՝ երկկողմ յարաբերութիւնների ներքոյ բազմաթիւ քննարկումների կարիք ունենք, որովհետեւ, ինչպէս դուք գիտէք, անկախ ապաշրջափակման հանգամանքներից՝ Ռուսական Երկաթուղիների դուստր ձեռնարկութիւնը մեր օպերատորն է եւ կոնցեսիոնէրը: Դա նշանակում է, որ բոլոր տեսակի տեխնիկական փաստաթղթերը՝ նախագծային, յետագայ շահագործման հետ կապուած, իհարկէ, ճիշտ է քննարկել գործընկերների հետ: Ի վերջոյ, իրենք են լինելու շահագործողը», - պարզաբանել է Հայաստանի փոխվարչապետը:

Հայաստանի Հանրապետութեան, Ռուսաստանի Դաշնութեան եւ Ադրբէջանի Հանրապետութեան փոխվարչապետների համատեղ նախագահութեամբ եռակողմ աշխատանքային խումբ ստեղծուել է Ռուսաստանի Դաշնութեան նախագահ Վլադիմիր Պուտինի առաջարկով եւ այդ մասին յայտարարուել է 2021 թ. Յունուարի 11-ին Մոսկուայում կայացած Փաշինեան-Պուտին-Ալիեւ եռակողմ հանդիպման արդիւնքներով՝ 2020 թ. Նոյեմբերի 9-ի յայտարարութեան՝ տարածաշրջանում բոլոր տնտեսական եւ տրանսպորտային կապերն ապաշրջափակելու մասին 9-րդ կէտի իրականացման նպատակով: Փոխվարչապետ Մհեր Գրիգորեանը աշխատանքային խմբի համանախագահն է Հայաստանի կողմից: Դեկտեմբերի 14-ին եւրոպական կողմի միջնորդութեամբ Բրիւսէլում տեղի ունեցած Փաշինեան-Միշէլ-Ալիեւ եռակողմ հանդիպումից յետոյ Հայաստանի վարչապետը տեղեկացրեց, որ հանդիպման ընթացքում կողմերը վերահաստատել են երկաթուղու վերագործարկման մասին պայմանաւորուածութիւնը: Վարչապետ Նիկոլ Փաշինեանը Հայաստանի կառավարութեան Փետրուարի 17-ի նիստում յոյս է յայտնել, որ Երասխ-Ջուլֆա-Օրդուբադ-Մեղրի-Հորադիզ երկաթուղու վերաբերեալ ձեռք բերուած պայմանաւորուածութիւնները կ՚արձանագրուեն որեւէ փաստաթղթի տեսքով, եւ դէ իւրէ գործընթացն արդէն ամբողջ թափով կը ծաւալուի:

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1910 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 10 ՄԱՐՏ 2022 | *ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.* | عدد رقم ١٩١٠ الخميس ١٠ مارس ٢٠٢٢

# ՍՊԻՏԱԿ ԹՈՒՂԹԸ ԵՒ ՓՈՐՁ ՄԸ ՔՆՆԱԿԱՆԱՑՆԵԼՈՒ ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԱՐՑԸ

**ՍՓԻՒՌՔ**

*Սպիտակ Թուղթին* թէ՛ առաջին եւ թէ երկրորդ մասերուն մէջ յատուկ ենթաբաժիններ յատկացուած է Սփիւռքին:

Սփիւռքը ներկայացուած է իբրեւ Հայ ժողովուրդի երեք բաղկացուցիչներէն մէկը՝ Հայաստանի եւ Արցախի հետ միասին, գիտակցելով անոր բազմաբնոյթ էութիւնը իբրեւ սփիւռքներ:

Հարցերը կեդրոնացած են օգնութեան գաղափարին շուրջ՝ Սփիւռքէն դէպի Հայաստան:

**Առաջին մաս**

Առաջին մասը՝ ինչպէս տեսանք, կը ներկայացնէ փորձագէտներու տարամերժ կարծիքները, հիմնուած հարցաթերթիկներու իրենց պատասխաններուն վրայ:

Սփիւռքի վերաբերեալ անոնց պատասխանները համահեղինակները ամփոփած են հինգ կէտերու մէջ՝ երկու գլխաւոր խմբաւորումներով:

Առաջին խմբաւորումը (էջ 58) սովորապաշտ թէզերն են՝ թէ Սփիւռքը պէտք է իր ամբողջ եռանդով օգնէ Հայաստանին ու Ղարաբաղին, պէտք է լոպպինկ կատարէ հասնելու համար Ազրպէյճանի դէմ պատժամիջոցներու, կանգնեցնելու զէնքի վաճառումը Ազրպէյճանին եւ Թուրքիոյ, ինչպէս նաեւ շեշտադրելու հայկական մշակոյթի եւրոպական արմատները:

Բացի հայկական մշակոյթի եւրոպական արմատներու անհասկնալի հարցէն, մնացածը ամէն օր կրկնուող կարծիքներն են: Այո՛, պէտք է: Բայց ինչպէ՞ս:

Երկրորդ խմբաւորումին երեք կէտերը (էջ 58-59) աստիճանաբար աճող քննադատութիւններ են Սփիւռքին, սկսելով անոր կարողութիւններու սահմանէն՝ մինչեւ անոր հասցուցած վնասը Հայաստանին:

Առաջին կէտին շուրջ ամփոփուած կարծիքները կը հերքեն Սփիւռքի կարողութեան բացարձակումը.

«[Սփիւռքը] չպէտք է ակնկալի, որ Փրկիչ է լինելու: Ամէն անգամ, երբ հայերը ձախողում են ունեցել կամ նոր կառավարութիւն են կազմել, անցել են այս գործընթացով. Սփիւռքից աւելին են ակնկալել, քան նա կարող է տալ»:

Արդ, Սփիւռքի կարողութիւնները սահմանափակ են: Բայց ինչպէ՞ս կրնան այդպէս ըլլալ: Յաջորդ կէտը ըսել կ՚ուզէ՝ որ ինչպէ՞ս կրնան այդպէս չըլլալ, երբ Սփիւռքի կազմակերպութիւններն ու հաստատութիւնները կտրականապէս կը մերժեն ինքնաքննադատութիւնն ու հաշուետուութիւնը եւ կը գործեն իրենց սեփական շահերէն ելլելով: Ահաւասիկ փորձագէտներու ուրիշ խումբի մը կարծիքը.

«[Սփիւռքը] ինքնաքննադատութեան չի դիմել՝ հասկանալու համար, թէ ինչու իր ներուժին համապատասխան ներդրում չի կատարել: Առանձին անհատների կողմից եղել են վերլուծութիւններ, եղել են նաեւ ողբասացութիւններ: Սակայն Սփիւռքը կենտրոնացուած բանավէճի համար չի կազմաւորուած եւ չի ստեղծել մի ատեան, որտեղ հնարաւոր լինէր դա անել: Սփիւռքի կազմակերպութիւններն ու հաստատութիւնները նպատակաուղղուած կերպով բացառում են քննադատութեան ու հաշուետուողականութեան մեխանիզմները: Նրանք գործում են իրենց իսկ ինստիտուցիոնալ շահերից ելնելով, այլ ոչ թէ սահմանելով ու ենթարկուելով գերակայ ազգային ու պետական շահերի»:

Ասոր աւելցնելով հիմնարկային տարազը հագուած ղեկավար անձերուն համատարածութիւնը՝ որոնք հաստատութիւնը կ՚ենթարկեն իրենց անձի սեփական շահերուն, կարողանալով իրենց անձի շուրջ ստեղծել ֆեթիշական անձեռնմխելիութիւն, դիտաւորեալ խոչընդոտելով բանավէճն ու ինքնաքննադատութիւնը, այլեւ Հայաստանի օգնութիւնը դարձնելով իրենց անձնական քմահաճոյքի առարկայ եւ «օգնելով» միայն այն պարագային՝ երբ իրենց անձին տրուի յատուկ լրատուային-պատկերային առաջնութիւն:

Փորձագէտ պատասխանողներու երրորդ խումբ մը շատ աւելի արմատական է իր վճիռին մէջ, շեշտելով Սփիւռքի առաւելապաշտական ազգայնականութիւնը՝ որ ազդեցիկ դարձած է Հայաստանի մէջ եւ խանգարած իրատես դիւանագիտական գործադրութիւնը.

«Սփիւռքի կազմակերպութիւններն աջակցել են Հայաստանում ազգայնական եւ առաւելապաշտական պատումին ու քաղաքական ծրագրին: Այդպիսով նրանք խոտորել են քաղաքական բանավէճը եւ դժուարացրել հակամարտութեան փոխզիջումային լուծումը»:

Առաւելապաշտութիւն (maximalism)՝ բացառապաշտութեան (absolutism) հետ, գերհայրենասիրական կամ վերհայրենասիրական հռետորաբանութեան բնաբանին մէջ:

Այստեղ կը վերջանայ փորձագէտներուն պատասխանները:

Զհարցադրուած կամ չպատասխանուած երրորդ խմբաւորումի մը պակասը կը զգացուի: Այն է՝ Հայաստանի ընկալողականութեան պատրաստութեան աստիճանը օգնութեան: Ատեն մը հիմնուեցաւ Սփիւռքի Նախարարութիւն: Շուտով պարզուեցաւ, որ իր միակ նպատակն էր Սփիւռքի ազդեցիկ հաստատութիւններու եւ անհատներու հնազանդութեան ենթարկումը իշխանութիւններուն՝ պարգեւներու, շքանշաններու եւ այլ պատկերային շահագրգռութեան միջոցներու շնորհիւ, կողմնակցական ակնառու մօտեցումներով: Ոչ մէկ մեքանիզմ մշակուեցաւ իրական Սփիւռքի հետ առնչուելու համար: Թաւշեայ Յեղափոխութիւնը իր ուսերէն թօթափեց այս անգործ Նախարարութեան բեռը՝ վերացնելով Սփիւռքի հանդէպ քմահաճ ու նեղ ընտրական վերաբերմունքը, բայց անոր փոխարինող Սփիւռքի յանձնակատարը նպատակ չդրաւ նոր մեքանիզմներ ստեղծելու:

Գլխաւոր գործող մեքանիզմը Համահայկական Հիմնադրամն է՝ հիմք ունենալով դրամը եւ *միայն* դրամը, Սփիւռքը պաշտօնապէս վերածելով նուիրատուութեան կեդրոնի:

Տակաւին խօսք չկայ օլիկարքներուն յարուցած արգելքներուն մասին սփիւռքեան ներդրումներուն առնչութեամբ:

Արդարեւ, Սփիւռքէն դէպի Հայաստան ընթացող վերոյիշեալ ողջ յարաբերութեան մէջ կեղծ բան մը կայ:

 4

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՎԱՀԱԳՆ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԻՆԳԵՐՈՐԴ ՆԱԽԱԳԱՀ

Հայաստանի Ազգային Ժողովի կատարած Մարտ 3-ի ընտրութիւններու երկրորդ փուլին, ձայներու 71 կողմ եւ 0 դէմ յարաբերակցութեամբ Վահագն Խաչատուրեան ընտրուեցաւ Հայաստանի հինգերորդ նախագահ:

Ազգային Ժողովի 107 պատգամաւորներէն քուէարկութեան մասնակցեցան 71-ը: Անվաւեր քուէաթերթիկներ չկային: Ընդդիմադիր խմբակցութիւնները պոյքոթեցին քուէարկութիւնը:

Վահագն Խաչատուրեան
Հայաստանի Նախագահ

Խորհրդարանը առաջին փուլին չէր յաջողած նախագահ ընտրել, քանի որ Խաչատուրեանի թեկնածութեան կողմ քուէարկած էին ընդամէնը 69 պատգամաւորներ, սահմանադրականօրէն անհրաժեշտ 80-ի փոխարէն: Երկրորդ փուլին նախագահի թեկնածուի համար կը պահանջուէր 65 ձայն:

Իր ելոյթին ընթացքին, Խաչատուրեան անդրադարձաւ յետպատերազմական խնդիրներուն, շեշտելով՝ որ Հայաստանը տնտեսական յաջողութիւններու կրնայ հասնիլ միայն այն պարագային, երբ գործէ ապահովութեան (անվտանգութեան) համակարգը.

«Երբ մենք մեզ ապահով զգանք, երբ տարածաշրջանում պատերազմի վտանգ չլինի, երբ սահմանները բացուեն:

«Մեր մէջից վախերը պէտք է հանել, մենք պէտք է կարողանանք հասկանալ, որ այս տարածաշրջանը պէտք է դառնայ համագործակցութեան հարթակ: Այսինքն, բոլոր երկրները, ում հետ մենք հարեւաններ ենք, պէտք է բարի դրացիական յարաբերութիւններ հաստատենք իրենց հետ: Այլ ճանապարհ չունենք եւ պէտք չէ մտածել, որ մէկը պէտք է գայ, մեզ օգնի, մեզ դժուարութիւններից հանի:

«Մենք ունենք հարեւաններ եւ հարեւանների հետ պէտք է կարողանանք խաղաղ ապրել: Խօսելը, բանակցելը, համագործակցելն աւելի ճիշտ ճանապարհ է, քան որեւիցէ մէկի հետ վիճելը, կռուելը, ուժ ցոյց տալը: Հակառակ մտածողութիւնը նշանակում է, որ մենք երկիրը տանում ենք կործանման:

«Մեր քաղաքացիների, բոլորի հետ պէտք է համարձակ խօսենք ու բացատրենք՝ ինչ է նշանակում այս տարածաշրջանում ապրելը: Եթէ մեկուսացւում ես, եթէ սահմանները փակ են, եթէ տնտեսական համագործակցութիւն չկայ... Մենք 90-ականների սկզբին այդպիսի մի վիճակում եղել ենք, շատ մեծ դժուարութիւններով ու զրկանքով ենք կարողացել յաղթահարել այդ շրջափակման մի մասը», – նշեց Խաչատուրեան:

Վահագն Խաչատուրեանի համառօտ կենսագրութիւնը.

1992-1996՝ Երեւանի քաղաքապետ
1996-1999՝ ԱԺ պատգամաւոր
1996-1998՝ Նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանի խորհրդական
2019-2021՝ Հայէկոնոմ պանքի տնօրէններու խորհուրդի անդամ
2021՝ Հայաստանի Բարձր Տեխնոլոգիական Արդիւնաբերութեան նախագահ

# ՓՈՒԹԻՆ ԿԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԷ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆԻՆ

Ռուսաստանի նախագահ Վլատիմիր Փութին շնորհաւորական հեռագիր կը յղէ Վահագն Խաչատուրեանին՝ Հայաստանի նախագահ ընտրուելուն առիթով:

«Համոզուած եմ, որ ստանձնելով այս բարձր պաշտօնը, Ձեր գործունէութիւնը պիտի նպաստէ ռուս-հայկական դաշնակցային յարաբերութիւններու յետագայ զարգացումին եւ փոխշահաւէտ եւրասիական սերտաճումի գործընթացքներու յառաջխաղացումին՝ ի նպաստ մեր եղբայրական ժողովուրդներուն, ի շահ տարածաշրջանային ապահովութեան եւ կայունութեան», – կը նշէ Ռուսաստանի նախագահը:

# ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ
## (Մահուան 50-ամեակին առիթով)

**Հ. ԱՒԱԳԵԱՆ**

**Վահան Թէքէեան**

*Արեւի* չորս յաջորդական (1928-1929) եւ մէկ առանձին (1931) խմբագրականներու ընդմէջէն, Վահան Թէքէեան կ'արտայայտէ իր կարծիքը ազգային գրականութեան կարելիութեան մասին.

1. Խմբագրական. «Հայկ. մշակոյթը Հայաստանի մէջ», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 21 Դեկտեմբեր 1928, ԺԵ. տարի, թիւ 3004, էջ 1:

2. Խմբագրական. «Հայաստան եւ գաղութները մշակոյթի տեսակէտէն», *Արեւ*, 22 Դեկտեմբեր 1928, ԺԵ. տարի, թիւ 3005, էջ 1:

3. Խմբագրական. ««Հայկական մշակոյթ»», *Արեւ*, 10 Յունուար 1929, ԺԵ. տարի, թիւ 3019, էջ 1:

4. Խմբագրական. «Մշակոյթի հիմերը», *Արեւ*, 12 Յունուար 1929, ԺԵ. տարի, թիւ 3021, էջ 1:

5. Խմբագրական. «Ցեղային դրոշմը», *Արեւ*, 28 Փետրուար 1931, ԺԶ. տարի, թիւ 3676, էջ 1:

Առաջին չորս խմբագրականներուն դրդապատճառը Փարիզի մէջ Դրաստամատ Սիմոնեանի ճառն էր հայկական մշակոյթի մասին, որուն ամփոփումը երեւցաւ *Ապագայի* մէջ եւ որմէ օգտուեցաւ Թէքէեան:

1928-ին, Դրաստամատ Սիմոնեան, իբրեւ Խորհրդային Հայաստանի համայնավար ներկայացուցիչ, Փարիզի մէջ կը ճառախօսէ հայկական մշակոյթի մասին: Ըսելէ ետք՝ որ «ազգային մշակոյթը զարգացած է եւ կրնայ զարգանալ միայն այն ժողովուրդներուն մէջ, որոնք ունին սեփական երկիր եւ պետութիւն», կ'աւելցնէ՝ որ նախքան Խորհրդային Հայաստանը, հայ ժողովուրդը չունէր ազգային մշակոյթ.

«Հայ ժողովուրդը մինչեւ վերջին պատերազմը չունէր ազգային մշակոյթ, որովհետեւ հայ գրականութեան, գեղարուեստի եւ առ հասարակ մտաւոր մշակոյթի համար թափուած ջանքերը կը ցանցնուէին Հայաստանի սահմաններէն դուրս՝ Թիֆլիս, Պաքու, Բեդրոկրատ, Պոլիս, Վենետիկ, եւլն., իսկ այսօր բուն երկրին մէջ է որ կը զարգանայ ազգային մշակոյթը աննախընթաց թափով»:

Համայնավար ներկայացուցիչը կ'ըսէր ճիշդ նոյնը՝ ինչ Դաշնակցական Բենիամին Թաշեան: Տարբեր էր, սակայն, դրդապատճառը: Սիմոնեանի համար կարեւոր էր շեշտել իր ներկայացուցած համայնավար նոր պետութեան կեդրոնականութիւնը եւ բացառիկութիւնը:

Մէջբերելէ ետք վերոյիշեալ քաղուածքները, Թէքէեան կը ներկայացնէ իր առարկութիւնները:

Սկսելով առաջին քաղուածքէն, կ'ուզէ զանազանել երկիրը պետութենէն, նշելով՝ որ երկիրին մէջ կարելի է ազգային մշակոյթ մշակել, իսկ պետութիւնը անպայմանօրէն անհրաժեշտ չէ ազգային մշակոյթի կերտումին համար.

««Սեփական երկիր»-ը կը հասկնանք, եւ ամէն ժողովուրդ զայն ունի անշուշտ, նոյն իսկ երբ օտարը կ'իշխէ հոն: «Սեփական պետութիւնը», սակայն, անհրաժեշտ չէ ազգային մշակոյթ մը շարունակելու կամ վերստեղծելու համար: Ասոր ապացոյցները բազմաթիւ են, Հնդկաստանէն եւ Անթիլեան կղզիներէն սկսեալ մինչեւ Պալքանեան ազգերն ու այսօրուան ֆինլանտացիները, չեխերը, սլովաքներն ու լեհերը՝ օտար տիրապետութիւններու տակ, մինչեւ մենք հայերս՝ թուրք, պարսիկ եւ ռուս լուծերուն ներքեւ»:

Թէքէեան համոզուած է՝ որ ԺԹ. դարուն հայ ազգը ունէր սեփական հողամաս, բայց ամբողջութեամբ չէր տնօրիներ անոր.

«Սխալ է թէ ԺԹ. դարուն հայ ազգը սեփական հողամաս չունէր: Ինչպէս առաջ ալ ըսած էինք, ունէր զայն, բայց ինք չէր տիրեր հոն, ինքը ամբողջովին չէր օգտուեր անկէ: Անցեալին մէջ՝ ան հոն տիրած էր եւ կը ձգտէր ապագային վերստին հոն տիրել: Եւ անցեալի յիշատակին ու ապագայի ցանկութեան մէջտեղ սեղմուած ներկան, այն ատեն, զօրութենաբար (*վիրթիւէլըման*) ունէր նոյնիսկ աւելի շատ հող՝ քան ունի մեր այսօրուան ներկան, տեսակէտով մը աւելի ուժ եւ ներշնչում կը ստանար անկէ՝ քան ինչ որ կը ստանանք այսօր: Ասոր հակառակը ըսել՝ պիտի ըլլար ուրանալ յիշատակին եւ յոյսին շարժիչ, արգասաւորիչ կարողութիւնը ինչպէս անհատին նոյնպէս ազգի մը հոգիին մէջ: Իսկ արգասիքը ազգի մը հոգիին՝ իր մշակոյթն է անշուշտ»:

Ապա անցնելով երկրորդ քաղուածքին, կը համառօտագրէ.

«Մենք ուրախ պիտի ըլլայինք գիտնալով՝ թէ մեր մշակոյթը այսօր Խորհրդային Հայաստանի մէջ այնքան ազգային է որքան անիկա էր երէկ, յիշուած տեղերուն մէջ», այսինքն՝ Թիֆլիսի, Պաքուի, Բեդրոկրատի, Պոլսոյ, Վենետիկի մէջ եւ այլուր: Կը բաւէ ըսել՝ որ ԺԹ. դարուն, հայ ժողովուրդը յիշեալ քաղաքներուն մէջ կերտած է «հայ ժամանակակից աշխարհաբարը – երկո՛ւ աշխարհաբարերը –»:

Ասոնք՝ ԺԹ. դարուն: Իսկ ի՞նչ կրնայ ըլլալ կացութիւնը ներկայ գաղութներուն՝ Սփիւռքին: Բնականաբար, Սիմոնեան պիտի հերքէ անոնց կարողութիւնը ազգային մշակոյթի ասպարէզին մէջ.

«Անկարելի է հայ գաղութներու մէջ ազգային մշակոյթը զարգացնել, որովհետեւ օտար կեանքը եւ մթնոլորտը ատոր հող չեն տար: Հայաստանն է որ պիտի տայ այդ սնունդը, զոր ստանալու համար գաղութները պէտք է կապուին Հայաստանի հետ»: Նման Թաշեանի հերքողականութեան՝ դարձեալ տարբեր դրդապատճառով:

Թէքէեան կը մեկնաբանէ: Թէեւ այսօրուայ գաղութները անցեալի Պոլիսն ու Վենետիկը չեն՝ անոնք շատ աւելի տկար են, բայց անցեալի ներշնչումն ու ներկայ Հայաստանի կապը բաւարար են ստեղծելու ազգային մշակոյթ.

«Սկզբունքով հակառակ չենք այս կարծիքին. գաղութները այն չեն այսօր՝ ինչ որ ասկէ առաջ եղած են Պոլիսը եւ Իզմիրը, Թիֆլիսը եւ Պաքուն. բացի թիւի, ժամանակի եւ պայմաններու տարբերութենէն՝ կայ եւ սա՛ որ հիմա Հայաստան մը գոյութիւն ունի որ առաջ չունէր եւ ասիկա գաղութները կը դնէ բարոյապէս Հայաստանի ենթակայ, անկէ կախում ունեցող դիրքի մը մէջ:

«Համաձայն ենք, բայց կը խորհինք թէ հայութիւնը ո եւ է շահ չունի ինքզինք այդ բանին համոզելու: Քանի որ այսօր մեր ժողովուրդին կէսէն աւելի գաղութներու մէջ կ'ապրի *ի հարկէ ստիպեալ*, պէտք է ընդհակառակն աշխատիլ որ ան ըստ կարելւոյն ունենայ կամ շարունակէ ազգային մշակոյթ մը՝ թէ՛ անցեալի ներշնչումներով եւ թէ ներկայ Հայաստանի հետ կապուելով»:

Սփիւռքի մէջ ազգային գրականութեան կարելիութեան առումով, Թէքէեան աւելի մօտ է Գուրգէն Մխիթարեանի տեսակէտին: Բայց եթէ Մխիթարեան ԺԹ. դարու արեւմտահայ գրականութեան մէջ մատի վրայ համրուող հայեցի գրողներ կը գտնէ՝ որոնցմէ պէտք է ներշնչուիլ, Թէքէեան անոնց ամբողջականութիւնը կը գտնէ հայեցի: Բացի այդ, եթէ Մխիթարեանի համար 1924-ի Հայաստանը աղօտ իրականութիւն մըն էր՝ անկէ ներշնչուիլ կարենալու համար, Թէքէեանի համար 1929-ի Խորհրդային Հայաստանը կարեւոր ակունք մըն էր:

Չորս յաջորդական խմբագրականներու մէջ արտայայտուած այս կարծիքներէն ետք, 1931-ի խմբագրականի մը մէջ Թէքէեան կը հարցնէ. «Գրականութիւնը պէ՞տք է թէ ոչ ցեղային դրոշմ ունենայ»: Թէքէեան կը շարունակէր քանի մը տարի առաջ Փարիզի երիտասարդ հայ գրողներու շրջանակին մէջ դրուած նոյն հարցը:

Ազգային բառը փոխուած է ցեղայինով: Ազգային գգացումը «ցեղային դրոշմին ամենէն շօշափելի պատկերը» կը հանդիսանայ, իբրեւ միջանկեալ բացատրութիւն Թէքէեան կը փորձէ ներկայացնել ազգայինի եւ ցեղայինի տարբերութիւնը:

Խմբագրականը կը դառնայ էական հարցի մը շուրջ, թէ գրողը պէտք է ցեղայինը կամ ազգայինը փնտռէ իր մէջ, այլ ոչ դուրսը:

Թէքէեան կը հարցնէ՝ նի՞ւթը, տե՞ղը, անձնաւորութիւննե՞րն են որոնք գրուածքի մը կու տան ցեղային դրոշմ, թէ հեղինակը: «Հեղինա՛կը անշուշտ», կը պատասխանէ վստահօրէն, աւելցնելով. «Ցեղային դրոշմը՝ գրողը ինքն է որ կը կրէ եւ կը զարնէ նիւթին»: Կը հասկնանք, ուրեմն, որ ան շարժում մըն է ներսէն դէպի դուրս:

Գրողը ցեղային դրոշմը կը դնէ ինքնաբերաբար՝ առանց այդ առաջադրանքը իր առջեւ դնելու. «Առանց ցեղային յատկանիշ դնել ուզելու՝ գրողը զայն կը դնէ արդէն, ո՛ւր որ ալ ըլլայ եւ ի՛նչ նիւթի վրայ ալ որ գրէ»: Կը հասկնանք, որ ցեղային դրոշմը ներքին մղում մը եւ համոզում մըն է:

Չկայ ցեղային դրոշմ կրող եւ չկրող գրականութիւն, կայ լաւ եւ գէշ գրականութիւն, կ'ըսէ Թէքէեան: Լաւ գրականութիւնը կը կրէ ցեղային դրոշմ, գէշը՝ կրնայ կրել, բայց կարեւոր չէ՝ գէշ ըլլալուն համար: Դարձեալ կը հասկնանք, որ լաւն ու ցեղայինը կապուած են իրարու, իսկ շարժումը կ'ընթանայ լաւէն դէպի ցեղայինը: Գրականն ու ցեղագրականը կարելի չէ անջատել իրարմէ:

Բայց բազմաթիւ են այն մարդիկ, դիտել կու տայ Թէքէեան, որոնք կը զանազանեն գրականն ու ցեղագրականը, այն պարզ պատճառով՝ որ անկարող ըլլալով ճանչնալ ու վայելել հարազատ, նոր եւ ինքնատիպ գրականութիւնը, անոնց համար ապահովութիւն մը կ'ըլլայ «հանդիպիլ ազգային զգացման (ցեղային դրոշմին ամենէն շօշափելի պատկերը), անոր մէջ գոհացում գտնել իրենց սահմանափակ պահանջին եւ անոր շնորհիւ, ուրեմն, ստուգել ու վաւերացընել գրուածքին արժէքը»: Այսինքն, այս մարդիկ ցեղագրականէն կը շարժին դէպի գրականը, քանի որ անընդունակ են ճանչնալ վերջինին արժէքը:

Թէքէեան կը շարունակէ՝ թէ հայկականութիւնը կը գտնուի գրողին զգացումներուն եւ մտածողութեան մէջ, որոնք գեղեցիկ գործի մը միակ ստեղծիչներն են: Այս է պատճառը, կ'ըսէ, որ հայ գրող մը նուազ հայկական գրականութիւն ըրած պիտի ըլլայ եթէ արտայայտէ Եւրոպայի, Ափրիկէի կամ Ամերիկայի ոչ-հայ բնիկներուն մտորումները: Ուշադրութիւն պէտք է դարձնել որ այստեղ Թէքէեան նկատի ունի ոչ միայն հայ գրողը, այլ հայերէն լեզուով հայ գրողը եւ ըսել կ'ուզէ՝ կարելի չէ տիրապետել լաւ գրական մակարդակի հայերէն լեզուին՝ առանց այդ լեզուով մտածելու: Բացառութիւնները՝ մէկ կողմ, խօսքը ընդհանուր երեւոյթին մասին է:

Հայրենիքէն դուրս, ուրեմն, հայ գրականութիւն կարելի է, կ'եզրակացնէ Թէքէեան.

«Հայ գրական նոր սերունդը, որ յայտնուած է գաղութներու մէջ քիչ մը ամէն տեղ եւ կը փորձէ խմբուիլ ու կարգի դնել իր ճիգերը, լսելու չէ ոմանց այն գուժկան ազդարարութիւնը թէ հայ գրականութիւն չկայ հայ երկրէն դուրս: Ցեղային դրոշմը, զոր գրականութեան դուրսի գոյնէն աւելի՝ անոր ներսի էութիւնը կու տայ, պէտք է գտնուի գրողին մէջ, եւ եթէ մեր նոր գրողները զայն ունին, ունին նաեւ տաղանդ, փրկուած են…»:

Այսպէս, Թէքէեան նախ մերժած կ'ըլլայ ազգայնականութեան գոյութիւնը իբրեւ բացարձակ արժէք՝ գրական արժէքային համակարգէն անկախ: Լաւ գրականութիւնը չի կրնար ազգային չըլլալ, քանի որ անիկա արդիւնքն է գրողի փորձառութեան՝ իր սիրտին ու միտքին, հիմնուած լեզուի քաջ տիրապետութեան վրայ: Զգացողութիւնն ու մտածողութիւնը բնազդաբար կը տանին դէպի ցեղագրութիւն, քանի որ արդիւնքն են մարդու փորձառութեան, ինքնին (self):

Ցեղային դրոշմը գրողի ներսէն դուրս ընթացող շարժում մըն, այլ ոչ թէ դուրսը, տեղ մը գտնուող միաւոր մը: Անիկա արտաքին ազդակ մը չէ, եւ այս առումով ցեղայինը ոչ թէ պէտքականութիւն մըն է գրականութեան համար, այսինքն՝ արդիւնքն է որոշումի կայացումի եւ պարտադրանքի, այլ տաղանդաւոր հայ գրողի եւ լաւ գրականութեան բնական բաղադրիչը: Հայ գրողի ինքն է որ պիտի շարժէ զայն: Եւ քանի որ լաւ գրականութիւնը կը հանդիսանայ գրողին ներդաշնակութիւնն ու հարազատութիւնը սեփական ինքնին հետ, ուրեմն բնականաբար արտադրուած կ'ըլլայ ցեղայնութիւնը: Գրողի ինքնութիւնն է ան՝ բնական ու հարազատ, որ չի կրնար պարտադրուիլ: Նաեւ ներքին կամքի հարցն է զոր Թէքէեան կը բարձրացնէ այստեղ:

Այս գրութեամբ Թէքէեան բաւական կը հեռանայ Գուրգէն Մխիթարեանէն: Մխիթարեան յիշած էր գրողի տաղանդին կարեւորութիւնը բայց տաղանդի եւ ազգայինի կապի կարելիութիւնը չէր մտներ իր խնդիրներուն մէջ, կամ պարզապէս խնդիր չէր տեսած այնտեղ: Ալ աւելի կը հեռանայ Բենիամին Թաշեանէն, որուն համար արտաքին ազդակը կարեւոր տեղ կը գրաւէ:

(Շար. 6)

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՀԱՅԱՍՏԱՆ ՁԵՌՆՊԱՀ ԿԸ ՔՈՒԷԱՐԿԷ ՈՒՔՐԱԻՆԱՅԻ ՀԱՐՑՈՎ

Միաւորուած Ազգերու Կազմակերպութեան (ՄԱԿ) Մարդու Իրաւունքներու Խորհուրդը Մարտ 4-ին որոշում կը կայացնէ հետաքննութիւն սկսիլ Ուքրաինա ներխուժելու ժամանակ Ռուսաստանի կատարած մարդու իրաւունքներու խախտումներուն առնչութեամբ: Պիտի ձեւաւորուի յատուկ յանձնախումբ, ուր երեք փորձագէտներ մէկ տարի պիտի հետազօտեն բոլոր դէպքերը: Բանաձեւի ընդունումին կողմ կը քուէրակեն 32 պետութիւններ, դէմ կ՚արտայայտուին Ռուսաստանն ու Էրիթրէան: Հայաստան, Չինաստան, Հնդկաստան եւ մէկ տասնեակ այլ երկիրներ կը քուէարկեն ձեռնպահ: Ուքրաինայի պատերազմի սկզբնաւորութենէն ի վեր, ասիկա ՄԱԿ-ի մէջ Հայաստանի երրորդ ձեռնպահ քուէարկութիւնն է:

## ԴԱՏԱԽԱԶՈՒԹԻՒՆԸ ՍՏՈՒԳՈՒՄ Է ԱՐՄԷՆ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ ՆՈՐ ՀԵՏԱՔՆՆՈՒԹԻՒՆԸ. ԱԱԾ-Ն ՀԱՐՑԱՔՆՆԵԼ Է *ՀԵՏՔԻ* ԳԼԽԱՒՈՐ ԽՄԲԱԳՐԻՆ

### ՍԱՄՍՈՆ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ

Գլխաւոր դատախազութիւնը սկսել է ուսումնասիրել նախկին նախագահ Արմէն Սարգսեանի վերաբերեալ *Հետքի* նոր հետաքննութիւնը: Այս մասին *Ազատութիւն ռադիոկայանին* տուած հարցազրոյցում ասել է գլխաւոր դատախազի խորհրդական Գոռ Աբրահամեանը:

«Հրապարակումը լոյս տեսնելուց յետոյ անմիջապէս մեր տեսադաշտում յայտնուել է եւ աշխատանքային առաջին իսկ օրուայ սկզբում մուտքագրուել է դատախազութիւնում եւ դրանով նախաձեռնուել է ուսումնասիրութիւն՝ նկատի ունենալով, որ հրապարակումը պարունակում էր կոնկրէտութիւն պարունակող տուեալներ այն մասին, որ նախկին նախագահը բանկային հաշիւներում ունեցել է գումարներ, որոնք չի յայտարարագրել: Ինչպէս գիտէք, չյայտարարագրելը կամ յայտարարագրմամբ սխալ տեղեկութիւններ, տուեալներ ներառելը քրէական օրէնքով արգելուած գործողութիւն է, հետեւաբար այդ իմաստով պարտադիր ուսումնասիրութեան ենթակայ է», - նշել է նա:

Յիշեցնենք, որ Արմէն Սարգսեանը եւ իր քոյրը՝ Կարինէ Սարգսեանը, շուէյցարական Credit Suisse բանկի իրենց համատեղ հաշուեհամարին ունեցել են աւելի քան 10 միլիոն շուէյցարական ֆրանկ, որն Արմէն Սարգսեանը չի յայտարարագրել Միացեալ Թագաւորութիւնում որպէս դեսպան ծառայութեան ընթացքում:

**Շուէյցարական գաղտնիքներ. Արմէն Սարգսեանը չի յայտարարագրել Credit Suisse բանկում ունեցած գումարը**

Բացայայտումն արուել է #SuisseSecrets միջազգային լրագրողական հետաքննական նախագծի շրջանակներում, որին Հայաստանից մասնակցել է *Հետքը*:

**Ի՞նչ է Credit Suisse-ը**

Յիշեցնենք, որ Յունուարի 24-ին, մենք հրապարակել էինք Հայաստանի նախկին նախագահ Արմէն Սարգսեանի՝ Սենթ Քիթս եւ Նեւիսի քաղաքացիութեան վերաբերեալ մեր հետաքննութեան առաջին մասը, որը Գլխաւոր Դատախազութիւնը յաջորդ օրն ուղարկել էր ԱԱԾ՝ ուսումնասիրելու:

Օրերս գրաւոր հարցմամբ դիմել էինք ԱԱԾ-ին եւ խնդրել էինք տեղեկացնել, թէ ինչ փուլում է Արմէն Սարգսեանի երկքաղաքացիութեան վերաբերեալ քրգործը եւ արդեօք Արմէն Սարգսեանը հարցաքննուել է այս գործի շրջանակներում, որեւէ պարզաբանում տուե՞լ է, թէ ոչ:

**Արմէն Սարգսեանի ստերի բուրգը փլուեց. նախագահը ստիպուած է հրաժարական տուել**

Յիշեցնենք, որ դեռեւս 2021 թ.-ից ԱԱԾ-ում քննւում է Արմէն Սարգսեանի՝ Մեծ Բրիտանիայի քաղաքացիութիւն ունենալու վերաբերեալ Փաստաբանների Պալատի նախկին նախագահ Արա Զօհրաբեանի ներկայացրած հաղորդման հիման վրայ յարուցուած քրէական գործը: Արմէն Սարգըսեանի կողմից Սենթ Քիթս եւ Նեւիսի քաղաքացիութիւնը թաքցնելու հանգամանքը ԱԱԾ-ն ուսումնասիրելու էր հէնց այս գործի շրջանակներում:

ԱԱԾ-ից մեզ յայտնել են, որ Արմէն Սարգսեանի կողմից պաշտօնական փաստաթուղթ կեղծելու եւ օգտագործելու դէպքի առիթով յարուցուած քրգործը գտնւում է նախաքննութեան փուլում: Մեր հրապարակումը դարձել է յարուցուած քրգործով քննութեան առարկայ: Միւս հարցերին ԱԱԾ-ն չի պատասխանել, քանի որ, ըստ ԱԱԾ-ի, դրանք վերաբերում են նախնական քննութեան տուեալներին եւ հրապարակման ենթակայ չեն:

Այս գործի շրջանակներում էլ ԱԱԾ-ի քննչական դեպարտամենտը հարցաքննել է *Հետքի* գլխաւոր խմբագիր Էդիկ Բաղդասարեանին:

***Հետք*, 25 Փետրուար 2022**

**ԽՈՀԵՐ**

## ՕՏԱՐԱՑՈՒՄԸ՝ ԻԲՐԵՒ ԱՊՐԵԼԱՌՃ

### ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Օտարացումը դարաշրջանի գլխաւոր յատկանիշն է՝ ընդունուած, փայփայուած ու մեծապէս քաջալերուած: Որմէ՝ եսականութեան ընդունումը իբրեւ յարաբերութիւններու հիմք:

Օտարացումը, բայց ոչ համակեցութիւնը, ապրելակերպն է այսօրուայ, ան նաեւ ապրելաոճ է, եղանակ, կնիք, այլեւ հրաման: Ամբողջ աշխարհի մէջ՝ բոլոր ժողովուրդներուն համար:

Պարզապէս նայեցէք ձեր շուրջը:

Տեսէ՛ք հայկական մշակութային միութիւնները՝ որոնցմով լեցուն է Սփիւռքը: Մէկը միւսին արտադրութենէն անտեղեակ է: Իւրաքանչիւրը ստեղծած է իր մշակութային արտադրութեան սահմանափակ եւ խստօրէն վերահսկուած միջավայրը՝ որուն արժէքային տարողութիւնը ծանուցողական եւ հայրենասիրական գերպատումներու միջոցով հարիւրապատկած է: Արժէքային ինքնաբազմապատկումը միութիւնը օտարացուցած է նոյն գործողութիւնը կատարող միւս միութենէն, որ իր կարգին կը կատարէ նոյն բանը:

Մամուլը՝ հայկական եւ ոչ-հայկական: Անկապ լուրերու տարափ, լուրերու ահռելի խճողում, եւ ամենակարեւորը՝ լուրերու օտարացում իրենց բնաբաններէն: Ուղղահայեաց, կտրուկ, վերջնականացուած լուրեր՝ բոլորովին անջատուած իրադարձութենէն, պատմական շարժումէն եւ իրական իմաստէն: Իր բնաբանին վերադարձնելու ճիգ մը՝ գրաւոր թէ բանաւոր, կ՚ընկալուի անսովոր ու կը դառնայ անընդունելի:

Տեսէ՛ք ինչպէ՞ս Հայաստան կը կառավարէր Սփիւռքը՝ երկրորդ եւ երրորդ նախագահներուն ժամանակ: Կը կառավարէր՝ գրգռելով անհատներու եսապաշտութիւնը: Երկու ուղղութեամբ: Մէկը՝ Սփիւռքի միութիւններու վրայ ազդեցութիւն ունեցող ղեկավարներուն արտօնելով տիրանալ շատ կարեւոր ու շահութաբեր ձեռնարկութիւններու բաժնեմասերու: Ձեռնարկութիւններ՝ որոնք կը կոչուին Հայաստանի ապահովութիւնը (անվտանգութիւնը) երաշխաւորող միաւորներ: Երկրորդ՝ Սփիւռքի հռչակաւոր նախարարուհիին եւ այլ սակաւաթիւ հիմնարկներու կողմէ՝ երբեմն ակադեմական օլիկարքներու աջակցութեամբ, Սփիւռքահայ խիստ ընտրեալ անհատներու շնորհելով շքանշաններ, անհատներ՝ որոնք ձայն ունին Սփիւռքի մէջ: Ի՞նչ կը նշանակէ այս ամէնը: Կը նշանակէ՝ որ տուեալ ձայնաւորները ինքզինքնին պիտի օտարացնեն Հայաստանի ժողովուրդէն՝ անոր յոյզերէն, մտահոգութիւններէն, առօրեայ կեանքի պայքարէն, այլեւ Հայաստանի չքաւորներէն ու կարօտեալներէն, հաճոյ դառնալու օլիկարքական փոքրաթիւ համայնքին: Միաժամանակ, անջատուելով իրականութիւններէն՝ պիտի խօսին բարձր հայրենասիրութեան եւ ազգասիրութեան մասին, իբրեւ քօղարկում օտարացումի եւ անջատողականութեան: Այլապէս բաժնեմաս եւ շքանշան պիտի չհասնի իրենց: Այս օտարացումը բնաւ չի խանգարեր հասարակական միտքի անդորրութիւնը, քանի որ առաջինը կը դրուի պիգնէսի տրամաբանութեան մէջ, երկրորդը՝ արժանիքի գնահատութեան: Պիզնէս եւ արժանիք՝ օտարացած իրենց գործող միջավայրերէն եւ բուն դրդապատճառներէն:

Կայ «հայը հայուն դէմ» արտայայտութիւնը՝ որ կեղծօրէն մտած է առօրեայ խօսակցութեան մէջ: Կեղծ՝ որովհետեւ ան ենթադրուած է հերքել ու մերժել «հայը հայուն դէմ» երեւոյթը հայկական մակարդակով: Կուսակցութիւնները *իրապէս* ունեցած են «հայը հայուն դէմ» գործողութիւններ՝ կազմակերպուած կամ ինքնաբուխ, բայց երբեք այդ գործողութիւններուն արտօնուած չէ անուանել՝ «հայը հայուն դէմ»: Հիմա նայեցէք անհատին: Երբ անհատ մը անձնապէս ինքզինքը վնասուած կը նկատէ հայկական կազմակերպութենէ մը կամ հայ անհատէ մը՝ որեւէ փոքր պատճառով, յատկապէս կապուած աթոռի եւ նիւթականի հետ, կատարուածը կը համարէ «հայը հայուն դէմ»: Խօսակցութեան մէջ շատ տարածուած է այս խօսքը՝ անձնական յենակէտէ ելլելով: Արդ, դադրելով համակեցային մերժում մը ըլլալէ, կը վերածուի անձնական զոհուածութեան արտացոլումի: Իսկ այն անձը՝ որ մերժելով այս արտայայտութեան իմաստին օտարացումը ինքն իրմէ, կ՚ուզէ իրապէս «հայը հայուն դէմ»-ի հարցը տանիլ դէպի ոչ-անձնական պայքարի հարթակ, այլեւ զայն տեսնել «մարդը մարդուն դէմ» լայն հասկացողութեան մէջ, կ՚օտարացուի հասարակութենէն եւ պայքարի սլաքը կ՚ուղղուի իր դէմ, քանզի հանրայնացուցած պիտի ըլլայ «հայը հայուն դէմ»-ի իրական կազմակերպիչները:

Տասնամեակներ կը շարունակուի թրքատեացութեան գաղափարախօսութիւնը: Նոյնը թուրքերը կ՚ընեն հայերուն հանդէպ: Մնանք հայկական կողմը: Վստա՞հ էք, որ թրքատեացութիւն քարոզողները թուրքերու հետ պիտի չհամագործակցին, եթէ հարցը գայ ԴՐԱՄին, այսինքն՝ թուրքին ապրանք, իր կամ հայկական գեղանկար ծախելու: Վստա՞հ էք, որ թրքատեացութիւն քարոզողը՝ երբ իրազեկ դառնայ թուրքի հետ ապրանքային համագործակցութիւն ունեցող անհատի մը կամ կազմակերպութեան մը մասին, պիտի պայքարի դադրեցնելու գործարքը (անուններ շատ կան): Վստա՞հ էք, որ թրքատեացութիւն քարոզողները լրտեսական գործողութիւններ պիտի չկատարեն թուրքերուն հետ՝ ի նպաստ թուրքերուն, անշուշտ անձնական գրպանները մտած հսկայական դրամներու փոխարէն, ինչպէս ցոյց տուին 2020 թուականին հրապարակուած փաստաթուղթեր: Այս բոլորը կարելի է միայն այն պարագային՝ երբ լաւագոյն մակարդակով գործէ օտարացումը պատումի եւ գործողութեան միջեւ: Ոչ ոք կը մտածէ հարցերը կապել իրարու: Կապողը կը դառնայ անբաղձալի անձ:

Համահայկական համագումարներ: Կը մասնակցին զեկուցողներ՝ որոնք շատ քիչ բան գիտեն իրենց նիւթէն անդին: Քանի մը տասնեակ զեկուցողներ՝ որոնք համահայկականութեան անունին տակ կը մրցին իրենց նիւթը աւելի ազդեցիկ դարձնել: Զեկուցողներ՝ որոնց միակ համահայկականութիւնը այդ անունին տակ ելոյթ ունենալն է: Համահայկականութեան կազմակերպիչներ՝ որոնք գիտեն ընտրել զեկուցողներ, որոնք երբեք հարցականի տակ պիտի չդնեն համահայկականութիւնը եւ անոր ներկայ անգործադրելիութիւնը: Անգործադրելի, ի միջի այլոց, նոյն ինքը համահայկականութիւն քարոզողներու եւ զեկուցողներու մէկ ազդեցիկ մասի անջատողական քաղաքականութիւններուն շնորհիւ: Օտարացում՝ զեկուցողներուն միջեւ, օտարացում՝ բառային վերտառութեան եւ իրական գործողութեան միջեւ: Այս օտարացումը երբեք անհանգստութիւն չի պատճառեր հասարակութեան: Այնքան բնական է եւ ընդունելի:

Օտարացումի ուժեղ կրողն է փրոֆեսիոնալիզմը եւ առանձին մասնաճիւղերու աւելի ու աւելի խորացումը: Փրոֆեսիոնալիզմը կը հերքէ իրերը տեսնել իրմէ դուրս, միախառնել բնագաւառները, ներգրաւուիլ կեանքի փորձառութեան հետ, ի տարբերութիւն յետ-փրոֆեսիոնալ հասկացողութեան, որուն բնաբանն է բազմակեցութիւնն ու մերձաւորութիւնը: Փրոֆեսիոնալիզմը՝ իբրեւ օտարացումի կրող, ընդունուած է եւ յարգուած, յետ-փրոֆեսիոնալիզմը՝ հազուագիւտ քաջալերուած: Ամբողջ համալսարանական-ակադեմական համակարգները հիմնուած են ճիւղերու անջատումի սկզբունքին վրայ:

Եւ ահաւասիկ Ցեղասպանութիւնը: Հայերուս համար արդէն կարեւոր չէ այդ բառը արտասանողի անկեղծութիւնը կամ մաքուր եւ ոչ-ոճրային կենսագրութիւնը, կարեւորը՝ բառի հնչեցումն է: Ֆրանսա՝ յայտնի իր ափրիկեան ոճրագործութիւններով եւ Ռուանտայի Ցեղասպանութեամբ, իրաւունք ունի՞ ընդունիլ ↳ 4




## 3 ՕՏԱՐԱՑՈՒՄԸ՝ ԻԲՐԵՒ ԱՊՐԵԼԱՌՃ

Հայոց Ցեղասպանութիւնը: Միացեալ Նահանգներ՝ որ ցեղասպանած է անյիշարժան դարերէ ի վեր այնտեղ ապրած բնիկները, իրաւունք ունի՞ ընդունիլ Հայոց Ցեղասպանութիւնը: Այլեւ կարեւոր անձեր՝ որոնք գրգռած են պատերազմներ, հրահրած զանգուածային սպանութիւններ, քօղարկած ոճրագործութիւններ, իրաւունք ունի՞ն խօսիլ Հայոց Ցեղասպանութեան մասին՝ իբրեւ մարդկային ոճիր: Միանշանակօրէն՝ ո՛չ: Բայց այս բոլորին ցեղասպանական խօսքը դոյզն իսկ անհանդստութիւն չի պատճառեր հասարակութիւններու մօտ: Ասիկա կարելի է միայն համատարած օտարացումի շնորհիւ, երբ սեփական ոճիրը կը մոռցուի՝ ուրիշին ոճիրը դատապարտելու ժամանակ: Երկու նմանատիպ ոճիրներ կ՚օտարանան իրարմէ: Օտարացումով՝ կարելի կը դառնայ յետագայ այլ զանգուածային սպանութիւններ: Խաղամոլութիւն՝ մարդկային կեանքի հետ, օտարացած յարաբերութիւններու ընդմէջէն:

Օտարացումը մերժող անձերուն պայքարները անպայմանօրէն կը ներկայացուին իբրեւ անձնական հակառակութիւններ եւ ամէն ճիգ կը գործադրուի պայքարը փոխադրել դէպի այդ հարթակը: Քանզի օտարացումի վերացումը կրնայ բացայայտել ամէն բան՝ իշխանական մակարդակի անարդարութիւնները, վերնախաւային շողոքորթութեան ցանցային կապերը, հասարակութեան շահագործութեան մակարդակները, որոշումներու կայացումներու ոչ-ժողովրդավարական սկզբունքները, որոնք բոլորն ալ այս կամ այն չափով առկայ են Սփիւռքի մէջ: Այս բացայայտումները կարելի կը դառնան երբ վերանայ օտարացումը եւ ամէն մարդ ինքզինքը տեսնէ ամէն բանի մէջ, փոխանակ տեսնելու մէկ-երկու անջատուած երեւոյթներու մէջ: Ամէն բանը դարձած է անսովոր, մէկը՝ սովորական:

Բացի այդ, օտարացումի վերացումով եւ մերձաւորութեան, մտաւոր մասնակցողականութեան եւ ներգրաւուածութեան տարածումով, պիտի սկսին խախտիլ հիմնարկներուն իշխանական տիրապետութեան հիմքերը, քանի որ վերահսկողութեան եւ վերիշխանութեան համար անխուսափելի է հսկել մասնատուած միտքերու եւ բնագաւառներու վրայ՝ որոնք իրենք իրենց մէջ թաւալուելով կրնան հասնիլ ֆեթիշական ինքնաբաւարարութեան: Միայն մասնատուած ֆեթիշական միաւորներու վրայ կարելի է տարածել կատարեալ վերահսկողութիւն, իսկ նման միաւորներու համատարածութեամբ՝ հասարակութեան վրայ վերահսկողութիւնը կը հասնի իր լրումին:

Օտարացումի վերացումը կը տանի դէպի համայնքայնութիւն, որ ամենամեծ վտանգն է իշխանութեան մը:

Օտարացումը ամէն տեղ է: Հայաստանի հիմնադրամին նուիրատուութիւն ըրած բարեկեցիկը չի վարանիր աշխատանքի փոխարէն դրամ կորզել չքաւոր հայրենակիցէն: Ազգայնականութեամբ տոգորուած ազգայինը չի վարանիր իր յարաբերութիւնները բարդացնել հայ գործընկերոջ հետ՝ երբ վերջինս սկսի իրմէ աւելի յաջողութեան արժանանալ: Հայրենասիրութիւն սորվեցուցած ուսուցիչը չի վարանիր անտեսել եւ նոյնիսկ հարուածել իր աշակերտին՝ երբ անոր յաջողութիւնը գերազանցէ իրը: Նուիրատուութիւն, ազգայնականութիւն, հայրենասիրութիւն ենթադրուած են ըլլալ համակեցային գործընթացքներ, մինչդեռ անոնք կը վերածուին իրականութենէն օտարացած գործողութիւններու՝ յանուն վերադիր պատումի մը: Ընդունուածը՝ օտարացումն է: Եր ք փորձես գործողութիւնները միաւորել իրարու, կը դառնաս անբաղձալի անդամը հասարակութեան: Միաւորում, տիալեքթիք, տրամասացութիւն, համակեցութիւն, ներգրաւուածութիւն՝ որոնք բոլորն ալ նոյն իմաստի շերտերն են, լոկ պատումնային արժէք կը ներկայացնեն: Անոնց գործադրութիւնը իրական գետինի վրայ կը յառաջացնէ ընդվզում եւ արհամարհանք:

Հակա-օտարացնողը ենթարկուած է հասարակական օտարացումի: Օտարացումը վաւերացուած է:

## 1 ՍՊԻՏԱԿ ԹՈՒՂԹԸ ԵՒ ՓՈՐՁ ՄԸ ՔՆՆԱԿԱՆԱՑՆԵԼՈՒ ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԱՐՑԸ

Նախ, այնտեղ դրոշմուած է օգնութեան գաղափարը: Օգնութիւն՝ Սփիւռքէն Հայաստան: Ուրեմն, անկախ այն հանգամանքէն թէ Սփիւռքը իրապէս կ՚օգնէ թէ ոչ, այս տրամաբանութեան մէջ ինկած է Սփիւռքը՝ իբրեւ կարող ու տուող, եւ Հայաստանը՝ իբրեւ նուազ կարող ու ընդունող:

Մինչդեռ իրական յարաբերութիւնները լաւ կ՚ըլլար դիտել օգնութենէն անդին երկկողմանի ուղղութեամբ՝ Սփիւռքէն Հայաստան եւ Հայաստանէն Սփիւռք, աւելի ճիշդ՝ փոխներգրաւուածութեան հիմքի վրայ, հաւասար կարողականութեան բայց կարիքներու տարբեր աստիճաններու եւ տեսակներու առկայութեան գիտակցութեամբ:

**Երկրորդ մաս**

*Սպիտակ Թուղթին* երկրորդ մասը համահեղինակներուն կարծիքն է:

Սփիւռքի ենթաբաժինը (էջ 99-100) կը մտնէ «Անվտանգութեան եւ պաշտպանութեան մասին» բաժինին մէջ: Կազմուած է եօթը կէտերէ՝ ներկայացուած «պէտք է» եւ «չպէտք է» վճռական սկզբունքով, զորս կարելի է համառօտագրել այսպէս.

*Կառավարութիւնը պէտք չէ չափէն աւելի ապաւինի Սփիւռքի կազմակերպութիւններու դիւանագիտական հնարաւորութիւններուն վրայ:*

*Կառավարութիւնը պէտք չէ գերագնահատէ Սփիւռքի ֆինանսական եւ ներդրումային կարողութիւնները:*

*Սփիւռքը կրնայ աւելին տալ քան մարդասիրական եւ յարակից ոլորտները, ներառնելով գաղափարներ, վերլուծութիւններ, տեսակէտներ եւ հետազօտութիւններ:*

*Ներդրումներու համար կառավարութիւնը պէտք է մշակէ գործարարական ոճի ցուցադրութիւններ եւ չապաւինի միայն ազգայնական ու հայրենասիրական հռետորաբանութեան վրայ:*

*Հասկնալու համար Սփիւռքի կարողութիւնները պէտք է գոյքագրուին Սփիւռքի մարդկային աղբիւրները:*

*Կառավարութիւնը պէտք է թափանցիկ եւ հաշուետու ըլլայ Սփիւռքէն եկած դրամական օգնութիւններուն առնչութեամբ:*

*Կառավարութիւնն ու Սփիւռքը պէտք է համատեղեն լոպպինկի աշխատանքները, պայմանով որ Հայաստանի կառավարութիւնը խուսափի Սփիւռքի պառանքներու ազդեցութենէն:*

Ինչպէս այլուր *Սպիտակ Թուղթին* մէջ, Սփիւռքի հետ կապուած հարցերը եւս անչափելի են եւ կրնան կերպարանք ստանալ բանավէճերու միջոցով:

**ՔԱՆԻ ՄԸ ԽՕՍՔ**

*Սպիտակ Թուղթը* հրաւէր մըն է մտածելու, միջավայրի մը մէջ՝ ուր մտածելու փոխարէն կը տիրէ գաղափարախօսութիւնը, հռետորաբանութիւնը եւ կարծրատիպը: Հակառակ ասոր, ան արդէն քանիցս ենթարկուեցաւ գաղափարախօսային, հռետորաբանական եւ կարծրատիպային յարձակումի, պարզելով չմտածելու հրաւէրներ. դիւրին, անճիգ, թմրեցնող հրաւէրներ:

*Սպիտակ Թուղթը* հրաւէր մըն է մտածելու, եւ մտածելու ընդմէջէն Ղարաբաղեան հարցին տալու լուծումի հնարաւորութիւններ:

Զեկոյց-նախագիծը գրուած է առաջնային ու տեսանելի երեւոյթներու իրատեսական դիտարկութեան ըմբռնումով եւ հասկացողութեամբ: Ան ձգտում մըն է, ի միջի այլոց, դիւանագիտութիւնը օգտագործելու իր լաւագոյն եւ ամենալայն կարելիութեամբ:

Տեսանելի երեւոյթներէն անդին, արդարեւ, կը գտնուին քաղաքականութիւնը, տնտեսութիւնը, պատերազմը որոշող քուլիսային իրականութիւններ, որոնք յաճախ աւելի ազդեցիկ կ՚ըլլան քան երեւութային տարրերը: Ղարաբաղի հարցի առնչութեամբ՝ անոնցմէ մէկն է ռազմարդինաբերութիւնը:

Ղարաբաղի հարցը՝ իր վերջին երկու տասնեակ տարիներու զարգացումով, սերտօրէն կապուած է աշխարհի երեք հզօրագոյն զէնք արտադրող պետութիւններու հետ՝ Իսրայէլ, Թուրքիա եւ Ռուսաստան: Պետութիւնները եւ անոնց յարող ընկերութիւնները զէնք չեն արտադրեր պաշտպանուելու համար: Զէնքը եղած է կենդանի գործածութեան համար: Զէնքի վաճառքէն եկած դրամական գերշահոյթը կը հասնի անհաւանական չափերու, չհաշուելու համար քաղաքական եւ տնտեսական այլ շահերը: Ներկայ դարաշրջանը այն ժամանակն է՝ երբ զէնք կ՚արտադրուի ոչ թէ պէտքական գործածութեան համար, այլ սպառողական շուկայի, որուն համար կը ստեղծուին այդ շուկաները: Ռազմամթերքի շուկաներէն մէկը՝ ամենակարեւորը, պատերազմի դաշտն է:

Զէնքը եւ անկէ եկած դրամը կը հերքեն դիւանագիտութիւնը կամ դիտաւորեալ կը խափանեն զայն: Զինավաճառքի համար կարելի է սպաննել դիւանագիտութիւնը: Եթէ Ազրպէյճան քսան տարի առաջ գիտէր՝ որ զինային տեսանկիւնէն աստիճանաբար հզօրանալով, կրնար մինչեւ Շուշի գրաւել, ինչո՞ւ փոխզիջումներու պիտի դիմէր դիւանագիտութեան միջոցով: Փոխզիջումները առաւելագոյնը Ազրպէյճանին պիտի ապահովէին եօթը շրջանները, բայց ո՛չ Շուշին:

Աւելին, եթէ զինավաճառքը հրաշալիօրէն կը գործէ Ղարաբաղի հարցին առիթով, ինչպէ՞ս կրնան հայերը ներկայիս կամ յետագային դիւանագիտութեամբ եւ բանակցութեամբ լուծել հարցը: Հարցը լուծել՝ կը նշանակէ ապառազմականացնել տարածքը: Ռուսաստանի, Թուրքիոյ եւ Իսրայէլի համար սպառողական շուկայ մըն է որ պիտի պակսի:

Եւ արդեօք մեծ տէրութիւններու հրամանով չէ՞ր՝ որ Ազրպէյճան հասաւ մինչեւ Շուշի՝ առանց յաւելեալ արշաւի, քանզի հարցը տակաւին երկար ժամանակ մնալով բռնկուն՝ տարածքը պիտի շարունակէ ապրիլ գերռազմականացուած վիճակի մէջ, հասոյթ ապահովելով յիշեալ երկիրներուն: Շուշիէն անդին չանցնելու հարցը արծարծուած է *Սպիտակ Թուղթին* մէջ, սակայն առանց խնդիրը կապելու ռազմարդինաբերութեան հետ:

Արդ, ինչպէ՞ս կարելի է դիւանագիտութեան միջոցով դիմագրաւել նոյն ինքը դիւանագիտութեան կայացումին դէմ կատարուած արշաւը: Հայկական դիւանագիտութիւնը ի՞նչ լծակներ ունի որպէսզի ռազմապէս այդ հսկայ պետութիւնները ընդունին քիչ մը նուազեցնել զէնքէն եկած իրենց գերշահոյթը:

Բաց աստի, կայ անդրազգային ընկերութիւններուն հարցը՝ որոնք արդէն շուրջ կէս դար է ամբողջ աշխարհի մէջ սկսած են փոխարինել պետութիւնները: Ահաւասիկ Anglo Mining Company-ն՝ Միացեալ Թագաւորութեան մէջ հիմնուած հանքարդինաբերական ընկերութիւնը, որ պատերազմէն ետք անմիջապէս մուտք գործեց Ազրպէյճանին անցած տարածքները: Որքանո՞վ նման ընկերութիւն մը կրնայ ազդել Միացեալ Թագաւորութեան վրայ՝ Ազրպէյճանին պատերազմ հրահրելու համար, եւ ինչպէ՞ս կարելի է առնչուիլ անոնց հետ՝ զերծելու համար անոնց վտանգը:

Հարցումներ՝ որոնց պատասխանները չկան տակաւին: Բայց հարցումներ՝ որոնք աւելի քան այժմէական կը հնչեն:

Այս եւ նման խնդիրներ պիտի փափաքէի արծարծուած տեսնել *Սպիտակ Թուղթին* մէջ: Զուտ անձնական ցանկութիւն մը:

Ա.

(Վերջ 3)

ԶԱՀԱԿԻՐ

# ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ
## (Մահուան 50-ամեակին առիթով)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

**Հայ Գեղարուեստասիրաց Միութիւն**

*Կարելի՞ է Սփիւռքի մէջ հայկական արուեստ մշակել կամ ոչ* խորագիրով ասուլիս մը տեղի կ՚ունենայ 1987 Մայիս 3-ին, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Թէքէեան Սրահին մէջ:

Շնորհիւ Արաքսի Տէօվլէթեանի մանրամասն յօդուած-քննախօսութեան, կարելի կ՚ըլլայ հաղորդակցիլ արտայայտուած կարծիքներուն(38):

Ատենավար Պերճ Թէրզեան կը բացատրէ ասուլիսին դրդապատճառը, նշելով որ իրենց նպատակն է ծանօթանալ հայրենի հողէն հեռու ծնած եւ օտար միջավայրի մէջ մեծցած Սփիւռքի երրորդ սերունդի երիտասարդ ներկայացուցիչներուն ձայնը:

Ատենախօսելու հրաւիրուած էին չորս երիտասարդներ, չորս մասնագիտութիւններով, Նայիրի Համբիկեան՝ ճարտարապետութիւն, Ռաֆֆի Ջէչճէնեան՝ նկարչութիւն, Հայկ Սարգիսեան՝ երաժշտութիւն եւ Վարուժան Գազանճեան՝ գրականութիւն:

Առաջին երեքը կտրուկ կերպով կը հերքեն Սփիւռքի մէջ հայկական արուեստի եւ մշակոյթի կարելիութիւնը:

Առաջինին եզրակացութիւնն է՝ թէ «Ճարտարապետութիւն մշակել կարելի է միայն Սովետական Հայաստանի մէջ, ուր կայ հողը, ժողովուրդը, պատմականը եւ խաղաղութիւնը»:

Երկրորդը հայկական արուեստի համար անհրաժեշտ կը նկատէ հողն ու ժողովուրդը եւ քանի որ «Սփիւռքի մէջ չունինք հող եւ ժողովուրդ, չենք կրնար հայկական արուեստ մշակել»:

Երրորդին համար «Հայկական ազգային արուեստ կարելի չէ մշակել Սփիւռքի մէջ», որովհետեւ չկայ ազգայինի միակ աղբիւրը՝ հայկական գիւղը. «Հայկական ազգային երաժշտութեան մշակման անհրաժեշտ աղբիւրը, հայկական ժողովրդական, հայկական գեղջկական, գիւղական երաժշտութիւնն է եւ այդ երաժշտութեան ակունքը, գիւղն է: Մեր պարագային, հայկական գիւղը: Սփիւռքի մէջ հայկական գիւղ կա՞յ»:

Գազանճեան միակն է որ կ՚ընդունի՝ թէ «Սփիւռքի մէջ հայկական գրականութիւն կարելի է ստեղծել»: Եւ կը բացատրէ:

Գազանճեանի բացատրութիւնները կ՚երկարին: Բայց քաղուածքներ կատարելով, կարելի է ըսել, որ իր հայկականութեան թէզերէն մէկն է գաղութը ընդունիլ ինչպէս որ կայ եւ այնտեղ փնտռել ինքնութիւնը. «Եգիպտահայ գրողէն պահանջուածը հայաստանեան գրականութիւն չէ, այլ իր գրական վկայութիւնը իր գաղութին մասին», տալով գաղութին «իրավիճակին պատկերը», ինչ որ ալ ըլլայ այդ իրավիճակը: Գաղութը՝ նիւթն է, հայերէն լեզուն՝ միջոցը: Քանի որ կայ նիւթը, «ուրեմն անպայման չէ, ըսենք՝ Վանի մէջ ըլլալ, գրականութիւն մշակելու համար»:

Յետոյ ներկաները կ՚արտայայտեն իրենց կարծիքը, ընդհանուր համոզումով՝ որ Սփիւռքի մէջ հայկական մշակոյթ մշակել կարելի է: Մէկ բացառութեամբ, ըստ որուն Սփիւռքի մէջ կարելի է հայկական արուեստ ստեղծել, բայց զայն մշակել կարելի չէ, առանց յաւելեալ բացատրութեան՝ թէ ինչպէս այդպէս կրնայ ըլլալ:

Համաձայն ներկաներուն ան կարելի է՝ որովհետեւ վառ է հայկական ոգին, կայ հայրենիքին կապուած ըլլալու տագնապը, կայ հիմքն ու ժառանգը, կայ անցեալի պատմական փորձը՝ որուն վրայ կարելի է ստեղծել սեփականը, իսկ արուեստը գետմըն է՝ որուն առուակներով կարելի է հարստանալ:

Արդ, իրականութեան մէջ, ասուլիսին մէջ կը գտնուին ոչ թէ երկու, այլ երեք կարծիքներ:

Կարծիքներէն երկուքը անմիջականօրէն կ՚արձագանգեն Մխիթարեան-Թաշեան բանավէճը:

Առաջին երեք ատենախօսները, կարելի է ըսել, թաշեանական են: Վճռականօրէն՝ հայրենիքէն դուրս ազգային մշակոյթ կարելի չէ:

Ներկաներու կարծիքներուն ամբողջականութիւնը մխիթարեանական է: Հայրենիքը՝ իր պատմութեամբ, ոգիով եւ տրամադրութեամբ, կարելի է ներշնչումով փոխադրել Սփիւռք եւ ստեղծել ազգային մշակոյթ: Բայց ներկաները բանավիճային տրամադրութեամբ չէր որ յայտնեցին իրենց կարծիքը՝ այլ արտաքին բորբոքումով: Ովքե՞ր են այդ ներկաները եւ ինչպէ՞ս արտայայտուեցան: Այս հարցումներուն պատասխանը կը գտնուի Աւետիս Եափուճեանի համառօտ քննախօսականին մէջ, որ կեդրոնացած է տրամադրութիւններուն վրայ(39):

Սկսելով «ինչպէս»-էն, Եափուճեան կ՚արձանագրէ.

«[Փ]ոթորիկ պիտի պայթէր Թէքէեան Սրահին մէջ, ուր հաւաքուած հոծ բազմութիւնը պիտի յուզուէր, պիտի բորբոքուէր, տեսակէտները շառաչիւնով յաճախ իրարու պիտի բախէին»: «Փոթորիկը փրթաւ» չորս ատենախօսութիւններէն ետք:

Ովքե՞ր են անոնք: «Փոթորիկը պայթեցնողները երէցներն էին, որոնք համաձայն չեղան [երեք] ատենախօսներուն, թէ […] կարելի չէ ազգային արուեստ մշակել սփիւռքի մէջ: Հատուկենտ խօսողներ միայն համաձայն եղան ատենախօսներուն»:

Ուրեմն՝ գաղութի երէցներն են: Ասիկա շատ բան կը պարզէ: Կասկած չունիմ, որ կուսակցական ակումբի մը երէցները գաղութի ներկայացուցիչներն են: Ակումբ-կուսակցութեան երէցը միշտ ինքզինքին տուած է հայն ու ազգայինը պահպանելու իրաւասութիւնը, համոզուած ըլլալով՝ որ ինքն է ճամբայ բացողը սփիւռքեան ազգայնականութեան եւ երիտասարդութեան: Եթէ ազգայինը կարելի չէ՝ ուրեմն հարցականի տակ կը դրուի անոնց ինքնամեծար առաքելութիւնը: Ունինք ակումբի երէցներ՝ ընդդէմ երեք երիտասարդ ատենախօսներու:

Երրորդ կարծիքը իւրայատուկ կը մնայ սփիւռքեան բնաբանին մէջ: Խօսքը Գազանճեանի մասին է: Ան կ՚ուզէ Սփիւռքը տեսնել ինչպէս որ կայ: Սփիւռքի փորձառութեան կենդանի ապրումը՝ անոր հեղինականացումը կամ ողբերգականացումը, կը համարուի հայկական մշակոյթ: Սփիւռքի միջավայրի իրական փորձառութիւնը, ուրեմն, ազգային է: Միաժամանակ, Սփիւռքի ինքնուրոյնացումով, բնաւ չի հերքուիր սփիւռքեան հայկականի կապը, յարաբերութիւնը, առնչութիւնը Հայաստանի հետ:

Կարծիք մը՝ որ կ՚ապակառուցէ ազգայինի հարցը՝ զայն փորձելով դիտել իր այլազան բաղադրիչներուն ընդմէջէն:

**Եզրակացութիւն**

Ազգայինի քննարկութիւնը հայ մշակոյթի մէջ եզակի երեւոյթ չէ: Ազգայինը՝ ընդհանրապէս, Սփիւռքի հիմնահոսանքի առօրեայ խօսոյթն է: Գաղութներու յաջողութիւն-ձախողութիւնները կը չափուին նախորոշուած ազգային սահմանագիծի կաղապարներուն մէջ:

Ընդհանուր չերտով մը, Գուրգէն Մխիթարեան, Բենիամին Թաշեան, Գաբրիէլ Թագւորեան, Թէքէեանի առաջին չորս խմբագրականները եւ Գեղարուեստասիրացի երեք երիտասարդներն ու երէցները կ՚ընթանան նոյն հունով՝ ազգայինի գերակայութեան անհրաժեշտութեան շեշտադրութեամբ հայ մշակոյթի մէջ, կամայ թէ ակամայ ազգայինը դարձնելով արժէք ու որակ ինքն իր մէջ: Հայրենիքէն դուրս ազգայինի կարելի ըլլալ-չըլլալու հարցը կը ներկայացնէ լոկ երկրորդ չերտ մը՝ գլխաւորին ներքեւ:

Կաղապարը քիչ մը կը կոտրէ Թէքէեանի 1931-ի խմբագրականը՝ որ ազգայինի արժէքը կ՚ուզէ վերցնել լաւ գրականութենէն, չեշտելով ազգայինի ամենուր կարելիութիւնը հայ գրողի արտադրութեան մէջ, շնորհիւ գրողի կամքին:

Կաղապարը շատ աւելի կը կոտրէ Վարուժան Գազանճեան՝ երբ նոյն ինքը Սփիւռքը կը դիտէ իբրեւ ազգայնականութեան կարելիութիւն գրականութեան համար: Առանց մոռնալու՝ որ Թաշեանէն մինչեւ Թէքէեան տակաւին Սփիւռքի հասկացողութիւն իբրեւ միաւոր տակաւին չէր կազմաւորուած:

Ազգայինի հարցը չի կրնար սպառիլ: Հարցադրումները անվերջ են:

Ազգայի՞ն է՝ եթէ արձակագիրը կամ բանաստեղծը արտայայտուի համամարդկային խնդիրներու, զգացումներու եւ գաղափարներու մասին՝ սէր, մահ, խաղաղութիւն, աղքատութիւն, մտաւոր ազատագրութիւն, եւլն., եւլն.:

Ազգայի՞ն է արդեօք գրական թարգմանութիւնը: Գրական թարգմանութիւնը՝ *գրականութիւն* է: Թաշեանի հրաշալի թարգմանութիւնները ֆրանսական, անգլիական եւ ռուսական վէպերու ազգայի՞ն պէտք է նկատուին: Ազգային՝ իբրեւ թարգմանութիւն ինքն իր մէջ, այլ ոչ թէ իբրեւ թարգմանութիւն՝ որ կրնայ իրմէ դուրս նպաստել հայերէն լեզուի զարգացումին, մշակումին եւ հարստացումին: Ազգայի՞ն են Թէքէեանի եւ Գազանճեանի Շէքսփիրի թարգմանութիւնները:

Յաջորդ ենթաբաժինը ցոյց պիտի տայ ազգայինի դժուարութիւնը, երբեմն անկարելիութիւնը, մեկնաբանելով Վազգէն Շուշանեանի եւ Բենիամին Թաշեանի վէճը ընկերվարութիւն-մարքսիզմի եւ ազգայնականութեան մասին:

(Շար. 7)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

38. Արաքսի Տէօվլէթեան, «Սփիւռքի մէջ հայկական արուեստ կարելի՞ է մշակել», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 8 Յունիս 1987, 72-րդ տարի, թիւ 20627, էջ 2: 9 Յունիս 1987, 72-րդ տարի, թիւ 20628, էջ 2: 10 Յունիս 1987, 72-րդ տարի, թիւ 20629, էջ 2:

39. Ա. Ե., «Փոթորիկ… Թէքէեան Սրահին մէջ», *Արեւ*, 4 Մայիս 1987, 71-րդ տարի, թիւ 20600, էջ 1:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՀԱՆՐԱՅԱՅՏ ԵՐԳԻՉ ԳԱՐՈՒՆ ՄԵՆԱՀԱՄԵՐԳՆԵՐՈՎ ՀԱՆԴԷՍ ԿԸ ԳԱՅ ԵՐԵՒԱՆՈՒՄ

Հանրաճանաչ երգիչ, երաժիշտ եւ դերասան Գարուն, որին ամբողջ աշխարհում լայն ճանաչում բերեց Վիկտոր Հիւգոյի *Փարիզի Աստուածամօր տաճարը* ստեղծագործութեան համանուն միւզիքլում Քվազիմոդոյի դերը, մենահամերգներով կը ներկայանայ Երեւանում:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ համերգային ծրագրերը տեղի կ՚ունենան Ապրիլի 21, 22-ին Կարէն Դէմիրճեանի անուան մարզահամերգային համալիրում:

Համերգները կազմակերպւում են Ֆրանկոֆոնիայի Հայաստանի լիիրաւ անդամակցութեան 10-ամեակի կապակցութեամբ:

Գարուն Հայաստանում ելոյթ է ունեցել նաեւ 2009 թուականին: Լրագրողների հետ հանդիպմանը երգիչը նշել է, որ իր համար մեծ պատիւ է Հայաստանում համերգով հանդէս գալը: Նա հնարաւորութիւն է ունեցել այցելելու Հայաստանի պատմութեան թանգարան, սակայն խոստովանել է, որ իրեն յատկապէս տպաւորել է Խոր Վիրապը:

Երգչի անունը Պիէռ է, ազգանունը՝ Գարան, սակայն նրան վաղուց են դիմում Գարու կեղծանուամբ:

Երգեր գրելուց, կատարելուց զատ Գարուն նաեւ ֆիլմերում է նկարահանւում: Նա նկարահանուել է ֆրանսահայ ռեժիսոր Էրիկ Կիւանեանի *Սիրոյ վերադարձ* ֆիլմի գլխաւոր դերում: Մի առիթով նշել է, որ սիրով է համագործակցում հայ ռեժիսորների հետ:

## ԲԱՆՏԱՅԻՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ-ՎԱՃԱՌՔ

Մարտի 11-ին Անի Գրանդ հիւրանոցում տեղի է ունեցել ազատազրկուած անձանց ստեղծագործական աշխատանքների ցուցահանդէս-վաճառք: Միջոցառումը կազմակերպել էր Իրաւական Նախաձեռնութիւնների Կենտրոնը:

Ցուցահանդէսին ներկայացուած էին 23 դատապարտեալների (որոնցից 3-ը՝ կին, 10-ը՝ ցմահ ազատազրկուած) եւ կալանաւորուած 3 մարդու (որոնցից 2-ը՝ կին, 1-ը՝ անչափահաս) գեղանկարչական, փայտից, կաւից եւ այլ նիւթերից պատրաստուած աշխատանքները զարդատուփեր, գրչամաններ, գրքեր, գործուած թաշկինակներ, գուլպաներ, անկողնային պարագաներ, թզբեխներ եւ այլ յուշանուէրներ:

Միջոցառմանը ներկայ էին նաեւ ազատազրկուածների հարազատներն ու ընկերները: Ցմահ բանտարկեալ Աշոտ Կիրակոսեանի մայրը պատմում է, որ որդին նկարել սկսել է բանտում: Նա պարզաբանեց, որ բանտարկեալները ստեղծագործական աշխատանք կատարելու համար հաւաքում են միաւորներ, որոնք կրճատում են ազատազրկման տարիները:

Ցմահ բանտարկեալ Մհեր Ենոքեանի կինը՝ իրաւապաշտպան-լրագրող Զարուհի Մէջլումեանը, ով ծանօթացել է Մհերի հետ բանտում, ներկայացնում էր ամուսնու կաւէ աշխատանքները:

«Ամէն աշխատանքը իւրովի է, ոչ միայն Մհերինը: Եթէ նայէք՝ խաւարում միշտ լոյսը կայ: ↳ 3

ՀԱՅԱՍՏԱՆ

## «ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱՌՄԱՄԲ, ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՆԱԿՉՈՒԹԻՒՆԸ ՑԱՆԿԱՆՈՒՄ Է ԿԱՐԳԱՒՈՐԵԼ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԹՈՒՐՔԻԱՅԻ ՀԵՏ». ԱՐԱՐԱՏ ՄԻՐԶՈՅԵԱՆ

*Անթալիայի դիւանագիտական փորումի շրջանակներում ԱԳ նախարար Արարատ Միրզոյեանը հարցազրոյց է տուել Անադոլու գործակալութեանը, որը ներկայացուած է ստորեւ.*

**Հարց - Ի՞նչ կը ցանկանայիք նշել Անթալիայի դիւանագիտական փորումին Ձեր մասնակցութեան մասին:**

Պատասխան - Նախ, ցանկանում եմ յիշեցնել նախորդ ամիսների ընթացքում Հայաստանի եւ Թուրքիայի միջեւ տեղի ունեցած զարգացումների կարեւոր դրուագները: Երկու երկրների ղեկավարները՝ վարչապետ Փաշինեանը եւ նախագահ Էրդողանը, հրապարակային յայտարարութիւններ էին փոխանակել՝ երկու երկրների միջեւ բանակցութիւններ սկսելու պատրաստակամութիւն յայտնելով:

Աւելի ուշ Հայաստանի եւ Թուրքիայի միջեւ երկխօսութեան գործընթացի յատուկ ներկայացուցիչներ նշանակուեցին: Նրանք արդէն երկու հանդիպում են ունեցել, համապատասխանաբար՝ Մոսկուայում եւ Վիեննայում, որոնց ընթացքում պայմանաւորուել են շարունակել առանց նախապայմանների բանակցութիւնները՝ միտուած յարաբերութիւնների լիարժէք կարգաւորմանը:

Ես Անթալիա այցելեցի եւ մասնակցեցի Անթալիայի դիւանագիտական փորումին՝ եւս մէկ անգամ վերահաստատելու Հայաստանի Հանրապետութեան կառավարութեան քաղաքական կամքը՝ Թուրքիայի հետ յարաբերութիւնների լիարժէք կարգաւորման հասնելու եւ տարածաշրջանում խաղաղ եւ կայուն զարգացման դարաշրջան բացելու վերաբերեալ:

**Հարց - Ինչպէ՞ս կը գնահատէք Թուրքիայի եւ Հայաստանի միջեւ ընթացող կարգաւորման գործընթացը:**

Պատասխան - Ընդհանուր առմամբ, մենք այն դրական ենք գնահատում: Հայաստանը պատրաստ է Թուրքիայի հետ դիւանագիտական յարաբերութիւնների հաստատմանն ու սահմանների բացմանը: Ուրախ էի իմ թուրք գործընկերոջից լսել, որ իրենց կողմից նոյնպէս կայ քաղաքական կամք՝ գործընթացը տանելու այդ նպատակին: Կարծում եմ՝ հիմա, երբ իրադարձութիւններն աշխարհում շատ արագ են զարգանում, մենք չպէտք է վարանենք կոնկրէտ քայլեր ձեռնարկել:

**Հարց - Որո՞նք են կարգաւորման գործընթացի օգուտները հայ եւ թուրք ժողովուրդների համար:**

Պատասխան - Մարդիկ արդէն իսկ օգտւում են Երեւան-Ստամբուլ ուղիղ չվերթերից: Սահմանների բացումն իր դրական ազդեցութիւնը կ'ունենայ երկու երկրների միջեւ կոմունիկացիոն հաղորդակցութեան, առեւտրատնտեսական յարաբերութիւնների, մարդկանց միջեւ շփումների եւ, ընդհանրապէս, տարածաշրջանում կայունութեան վրայ:

**Հարց - Թուրքիայի եւ Հայաստանի միջեւ փոխադարձ պաշտօնական այցեր կը լինե՞ն: Դուք թուրք պաշտօնեաներին Հայաստան այցելելու հրաւէր ուղարկե՞լ էք կամ հրաւէր ստացե՞լ էք այցելելու Թուրքիա:**

Պատասխան - Ընդգծեմ, որ սա Հայաստանի բարձրաստիճան պաշտօնեայի առաջին այցն է Թուրքիա վերջին տասնամեակում: Աւելորդ է նշել, որ եթէ կարգաւորման գործընթացը հարթ ընթանայ եւ մենք հասնենք դրական արդիւնքների, կարող են փոխայցելութիւններ լինել:

**Հարց - Ի՞նչ կարող էք ասել մեզ կարգաւորման գործընթացի վերաբերեալ հայ ժողովրդի մօտեցման մասին:**

Պատասխան - Ընդհանուր առմամբ, Հայաստանի բնակչութիւնը ցանկանում է կարգաւորել յարաբերութիւնները Թուրքիայի հետ: Դա արտացոլուած է նաեւ հասարակական կարծիքի վերաբերեալ հարցումներում: Իհարկէ, ե՛ւ հայկական, ե՛ւ թուրքական հասարակութիւններում կան խմբեր, որոնք, այսպէս ասեմ, թերահաւատօրէն են վերաբերւում այս գործընթացին:

Երկու կողմերի պաշտօնեաները պէտք է քաղաքական առաջնորդութիւն ստանձնեն այս խնդիրները հասցէագրելու ուղղութեամբ: Նախարար Չաւուշօղլուի հետ իմ հանդիպման ընթացքում մենք կարծիքներ ենք փոխանակել որոշակի զգայուն կէտերի վերաբերեալ, եւ ես յոյս ունեմ, որ դրանք հաշուի կ'առնուեն:

1 ➩ ՎԱՐՉԱՊԵՏՆ ԸՆԴՈՒՆԵԼ Է ՀԱՐԱՒԱՅԻՆ ԿՈՎԿԱՍԻ...

գծման եւ սահմանազատման, հաղորդակցութեան ուղիների ապաշրջափակման, Հայաստան-Թուրքիա երկխօսութեան ընթացքի շուրջ:

Հայաստանի վարչապետը բարձր է գնահատել Եւրոպական Խորհրդի նախագահ Շառլ Միշէլի՝ տարածաշրջանային կայունութեան ամրապնդմանը միտուած ջանքերը: Այս համատեքստում Նիկոլ Փաշինեանը կարեւորել է Բրիւսէլում ԵԽ նախագահի եւ Ֆրանսիայի նախագահի, Սոչիում Ռուսաստանի նախագահի միջնորդութեամբ կայացած հանդիպումները եւ դրանց շրջանակում ձեռք բերուած պայմանաւորուածութիւնների իրականացումը:

Երկուստեք ընդգծուել է ԵԱՀԿ Մինսկի խմբի համանախագահութեան հովանու ներքոյ Լեռնային Ղարաբաղի հիմնախնդրի համապարփակ կարգաւորման անհրաժեշտութիւնը:

Կողմերը պայմանաւորուածութիւն են ձեռք բերել շարունակել ակտիւ շփումները:

2 ➩ ԲԱՆՏԱՅԻՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ-ՎԱՃԱՌՔ

Բանտարկեալների գործերին շատ բնորոշ է դա», – մեկնաբանել է Մէջլումեանը:

Ցուցահանդէսի կազմակերպիչ Նարէ Յովհաննիսեանը կարեւորում է նման միջոցառումների ազդեցութիւնը հասարակութեան՝ բանտարկեալների մասին ձեւաւորուած կարծիքի վրայ:

«Միջոցառման նպատակը ազատազրկուած անձանց եւ հասարակութեան միջեւ կապը ամրապնդելն է եւ կարծում եմ՝ ստեղծագործութիւնների միջոցով դա կարող է լաւագոյնս արուել», – ասել է Նարէ Յովհաննիսեանը:

Իրաւապաշտպանը նշել է նաեւ, որ կազմակերպութիւնը շահոյթ չի հետապնդում եւ գնուած աշխատանքների գումարները փոխանցուելու են դրանց հեղինակներին:

ԽՈՀԵՐ

## ՍՓԻՒՌՔԻ ԻՆՔՆՕՏԱՐԱՑՈՒՄԸ

### ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Սփիւռքի օտարացում, կամ օտարացում ինքն իրմէ, կամ ինքնօտարացում:

Անցեալ «Խոհեր»-ը բնականաբար պիտի առաջնորդէր դէպի Սփիւռքը՝ ուր կ'ապրինք:

Սփիւռքի ինքնօտարացումը իբրեւ սփիւռքներ, արդէն ընդունուած հարց մըն է: Այսինքն, ընդունուած է խօսիլ Սփիւռքի տարբեր գաղութներու միջեւ եղած օտարութեան մասին, որ արդիւնքն է մէկ կողմէ՝ տեղական մշակոյթներու ազդեցութեան, միւս կողմէ՝ գաղութներու միջեւ եղած աշխարհագրական հեռաւորութիւններուն: Կարելի է ըսել՝ այստեղ խօսքը հորիզոնական օտարացումի մասին է: Գրեթէ չի խօսուիր ուղղահայեաց օտարացումի մասին, այսինքն, օտարացումը՝ անկախ աշխարհագրական վայրէն, իբրեւ ինքնօտարացումի բարձրագոյն կարելիութիւն:

Սփիւռքը շատ քիչ կը գտնուի Սփիւռքի մէջ: Օրինակները բազմազան են:

**Սփիւռք՝ առանց իր մշակոյթի**

Քանի՞ սփիւռքահայ բանաստեղծութիւն կը հնչէ ձեռնարկներու բեմերէն, եթէ չհաշուենք քանի մը կուսակցականապէս արմատացած բանաստեղծներ, որոնց արտադրութիւններուն մէկ մասն ալ զերծուած է իր իրական բովանդակութենէն:

Քանի՞ սփիւռքահայ երաժշտահանի գործ կը լսուի սփիւռքահայ բեմերուն վրայէն:

Քանի՞ սփիւռքահայ նկարիչի գործ կը ցուցադրուի հայկական հիմնարկներէն ներս:

Պատասխանը միանշանակ է՝ շատ քիչ:

Օտարացում ինքն իր հետ՝ ինքնօտարացում:

**Սփիւռքներու պատմութիւններ**

Սփիւռքահայ իւրաքանչիւր գաղութ ունի իր պատմութիւնը: Գաղութները իրենց դպրոցներուն մէջ սեփական պատմութիւնները չեն սորվեցներ: Ոչ միայն չեն սորվեցներ, այլ սեփական գաղութի պատմութեան մը կարելիութեան մասին ակնարկ անգամ չըլլար: Քանի՞ սփիւռքահայ գիտէ իր գաղութին պատմութիւնը, այն գաղութին՝ որուն մէջ կ'ապրի, որուն ակումբները կը յաճախէ եւ թերթերը կը կարդայ: Կամ այն գաղութին՝ որուն հետ չ'ուզեր գործ ունենալ, առանց անոր պատմական շարժումին իրազեկ ըլլալու: Օտարացում իր գոյութենէն:

**Գրախօսութիւն**

Գրախօսութիւնը՝ մանաւանդ եթէ ան շարունակէ գրախօսուող գիրքին միտքերը, նշան մըն է մերձեցումի: Սփիւռքեան հայագիր գիրքերը չեն գրախօսուիր սփիւռքահայերու կողմէ, բացի եթէ ամէն բան լուծուի կուսակցական սահմաններէն ներս, չմոռնալով նաեւ կուսակցութիւններու տիրապետութեան տակ գտնուող, բայց անկախ ձեւացնող հրատարակութիւնները: Սփիւռքը չի սիրեր ինքն իրեն գրախօսել:

**Ինքնաքննադատութիւն**

Սփիւռքի հայախօս հիմնահոսանքին մէջ արգիլուած է ոչ միայն ինքնաքննադատութիւնը՝ իբրեւ ուղղակի միջոց, այլ խնդրականացումը՝ իբրեւ այլազան ու աւելի լայն միջոց: Արգիլուած՝ իրական իմաստով: Տարածուած է լոկ միութիւններու ինքնագոյութեան պատումը ամրացնող կեղծ քննադատութիւնը՝ հիմնուելով ազգայինի մը բաղադրիչներու անվնաս տարրերու ընտրութեան վրայ, այդ նոյն անիրական ազգայինը հաստատելու միջոցով սեփական գոյութիւնը պահպանելու համար: Քննադատութիւն-խնդրականացումի պակասը, առաւել եւս անոր արգելումը, ամէն բան կը հեռացնէ իրարմէ: Լրագիրը կը դադրի իրականութեան մաս կազմելէ, ղեկավարութիւնը կ'անջատուի հասարակութենէն, բանաստեղծը կը դառնայ եսական տարրերու կրողը, արուեստագէտը հետաքրքրուած չըլլար երեւոյթները դիտելու իրենց ընաբաններուն մէջ: Յանուն որոշ խաւի մը գոյատեւումին, Սփիւռքը կ'ինքնօտարացնէ ինքզինքը իրականութիւններէն:

**Անգլիագիր հայագիտութիւն**

Կայ անգլիագիր հայագիտութեան խնդիրը՝ որ բաւական լուրջ է: Անգլիախօս հայագէտներուն լոկ փոքր մասն է՝ որ հետաքրքրուած է հայագիր Սփիւռքով: Մեծամասնութիւնը ոչ մէկ հետաքրքրութիւն ունի գաղութներու ներքին մեքանիզմներուն եւ գործող ծալքերուն մասին: Անգլիագիրները կրնան հրաշալիօրէն եւ բարձր մասնագիտականութեամբ գրել հայկական պատմութիւններ, ցեղասպանական հատորներ, կազմել ընդհանրացած տեսութիւններ ու փիլիսոփայել Սփիւռքի մասին, առանց, սակայն, տիրապետելու առարկային՝ մշակութային, կուսակցական, գաղափարական հայերէն տարրերու բազմազանութեան եւ անոնց բազմաբնոյթ ներթափանցումներուն, այլեւ գաղութահայ ապրող ենթակային՝ կենդանի հայախօս մարդուն:

Կլոր սեղան՝ հայերէն չիմացող անգլիախօս սփիւռքագէտներու կողմէ, քննարկելու համար հայախօս Սփիւռքի խնդիրները: Արեւմտահայաստանի յատկացուած անգլերէն կայքէջ՝ հայախօս արեւմտահայութեան մտահոգութիւնները ներկայացնող: Սփիւռքահայ անգլիագիր բանաստեղծները քաջալերող հիմնադրամ՝ ստորադասելով անտէր մնացած հայագիրը:

Անլիագիրները կրցած են նաեւ իրենց համար ստեղծել «սփիւռքագէտ» տիտղոսը, մինչդեռ հայագիր ամենախոր սփիւռքագէտը իրաւունք չունի նման տիտղոսի արժանանալու:

Խնդիրը անգլիագիրը կամ անգլիախօսը չէ: Որեւէ լեզուով կարելի է գրել որեւէ ազգի մասին: Ընդհակառակը, ազգի մը մասին տարբեր ➩ 4




3➩

## ՍՓԻՒՌՔԻ ԻՆՔՆՕՏԱՐԱՑՈՒՄԸ

լեզուներով արտայայտուիլը վկայութիւն մըն է տուեալ ազգի ոչ-կեթթոյականութեան: Խնդիրը այն է, ինչպէս բազմիցս գրած եմ, երբ երեւոյթը կը դառնայ գրեթէ օրէնք, սովորութիւն, այլեւ պարտադրանք: Խնդիրը այն է՝ երբ անգլիագիր կեդրոնները երբեք չպատուեն Հայագիր մտաւորականը, մինչդեռ Հայագիր կեդրոնները զանոնք կարմիր գորգերու վրայ հիւրընկալեն իրենց միութիւններէն ներս: Օտարագիրի եւ Հայագիրի յարաբերութիւնը կը դառնայ դասակարգային՝ նոյն ինքը Հայագիրի ինքնստորացումի միջոցով:

Ես չեմ կրնար երեւակայել Ֆրանսայի պատմութիւնը գրող անգլիացի մը՝ որ ֆրանսերէն չի կարդար: Պայման չէ տիրապետէ ֆրանսերէնին, պայման է *անձամբ* կարդայ այդ լեզուն: Հայոց պատմութիւնը գրող անգլիագիր Հայ պատմաբաններ կան՝ որոնք Հայերէն չեն կարդար, հակառակ որ Հայոց պատմութեան աղբիւրներուն ջախջախիչ մեծամասնութիւնը Հայերէն լեզուով է: Եւ ասիկա՝ առանց տագնապ յառաջացնելու թէ՛ իրենց մէջ, եւ թէ՛ իրենց շուրջ: Ազգային գաղափարախօսութեան հարց մը չէ ասիկա, այլ աղբիւրները կարդալու եւ գգալու անհրաժեշտութիւն մը: Դաւաճանական հարց մըն ալ չէ՝ ինչպէս 1990-ականներու վերջերը տգեղօրէն մէջտեղ նետուեցաւ, այլ իրերը իրենց տեղը տեսնելու եւ հասկնալու կարելիութիւն մը: Կարելիութիւններ կը սպաննուին՝ բնօրինակի եւ բնօրրանի շրջանցումով: Սփիւռքեան արդէն արմատացած օտարացում՝ աղբիւրի եւ պատմագրութեան միջեւ: Անգլիագիրի եւ Հայագիրի օտարացում՝ սփիւռքեան ինքնօտարացում:

**Ղեկավարական Հայերէն**

Հայերէն լեզուն խնդիր մը դարձած է Հայ ղեկավարական որոշ, բայց ազդեցիկ շրջանակներու մէջ: Կարեւոր ղեկավարներ՝ որոնք պաշտօնի բերումով ամէն օր Հայապահպանում կը քարոզեն, հազիւ կը խօսին Հայերէն: Ասիկա նոր սովորութիւն մը չէ: Կայ Հայատրոփ կազմակերպութիւն մը, որուն ղեկավարները աւանդապէս Հայերէն չեն կրնար կարդալ, ալ ուր մնաց գրեն: Բայց պիտակաւորուած են իբրեւ հայասէր, հայրենասէր, ազգազոհ անձեր՝ շնորհիւ իրենց հարստութեան եւ հաշուարկուած նուիրատուութիւններուն: Հայապահպանումի քարոզ՝ առանց անձնապէս Հայապահպանուելու: Ինքնօտարացո՞ւմ:

**Ժողովրդավարութիւն**

Կայ Սփիւռքի ժողովրդավարութեան հարցը: Ճիշդ է, ղեկավարներու ընտրութիւնները չեն կեղծուիր: Կեղծուելու պէտք չունին՝ ամէն բան այնքան հրաշալիօրէն կը գտնուի լիակատար հսկողութեան տակ: Ընդունուած չափանիշները աւելի ազդեցիկ են քան կեղծելու անհրաժեշտութիւնը: Իրենց գումարած նիստերուն մէջ, այդ ընտրուողները կրնայ ըլլալ շատ լաւ որոշումներ կայացնեն՝ այստեղ խօսքը լաւի կամ վատի մասին չէ: Բայց որոշումները կը կայացուին առանց հասարակութեան մասնակցութեան եւ գիտակցութեան: Հոս է ժողովրդավարութեան հասկացողութիւնը: Եթէ գաղութի մը անդամը ոչ միայն զերծուած է վճռական որոշումներու վերաբերեալ իր ձայնը տեղ հասցնելու միջոցէ, այլ նոյնիսկ անիրազեկ կը մնայ որոշումի արդիւնքներէն, լուրջ հարցականի տակ կը յայտնուի ժողովրդավարութիւնը: Երբ այս իմաստով կը նահանջէ ժողովրդավարութիւնը, կ՚անջատուին գաղութին բաղկացուցիչ տարրերը՝ միանձնեայ որոշումներու հմայքին տակ: Սփիւռքը կ՚օտարանայ ինքն իրմէ:

**Օտարը**

Սփիւռքի արմատացած գաղափարներէն մէկն է օտարը: Օտարը՝ Սփիւռքի համար: Օտարի պատրաստութեամբ հայութեան մասին ներկայացուող մակերեսային պատմագրութիւններ, յօդուածներ, հրատարակութիւններ եւ վաւերագրականներ շատ աւելի արձագանգ կը գտնեն քան Սփիւռքի մէջ՝ Սփիւռքի համար պատրաստուած որակաւոր աշխատութիւններ: Օտարի հմայքը կայ, մենք մեզի չգնահատելու եւ չիմանալու անտարբերութեան հետ միասին: Լաւ ալ կը վճարուին այս օտարները հայերուն կողմէ: Անկարողութիւն մը սեփական ինքնութիւնը ներսէն դիտելու: Օտարացում մը ինքնէն: Ինքնօտարացում:

1➩

## ԿԱՌԱՎԱՐԱԿԱՆ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹԻՒՆ

դիրքը, Մոսթոն Ինժինըրինգ ընկերութեան սեփականատիրոջ հետ նախնական համաձայնութեամբ, Նեյտրոն ԳԱՄ եւ Բագաւան ՓԲ ընկերութիւններու մասնաւորեցումին հետեւանքով ընկերութեան կողմէ Պաշտպանութեան Նախարարութեան հանդէպ ունեցած պարտաւորութիւնը մարելու նպատակով, 2018-ին ընկերութենէն ընդունած՝ ձեռք բերած են 4232 հատ ժամկէտանց, թեքնիքական պահանջքներուն չհամապատասխանելու պատճառով նախապէս չընդունուած եւ ՊՆ-ի մէջ պահեստաւորուած ռազմամթերքը: Կը պարզուի նաեւ, որ վերը նշուած անձերը ռազմամթերքի ձեռքբերումի պայմանագիրի կնքումին համար գոյութիւն ունեցող խոչընդոտները վերացնելու եւ իրենց գործողութիւններուն օրինական տեսք տալու համար, պայմանագիրի մաս կազմող թեքնիքական բնութագիրը համապատասխանեցուցած են փաստացի ՊՆ-ի մէջ ի պահ յանձնուած ապրանքի տուեալ տեսակին՝ անոր մէջ նշելով ռազմամթերքը գործարանային արկղերով ՊՆ զօրամասի կեդրոնական պահեստ մատակարարելու վերաբերեալ իրականութեան չհամապատասխանող տուեալներ: Ընդ որում՝ նշուած ռազմաթերքը ձեռք բերուած է նոյն խմբաքանակէն ռազմամթերքի նախապէս ձեռքբերումի արժէքէն գրեթէ կրկնակի թանկ գինով՝ կատարելով առանձնապէս խոշոր չափերով՝ 2,277,323,840 դրամին համարժէք՝ 4,655,200 ԱՄՆ տոլլարի յափշտակութիւն:

Մեղադրեալներու անուններուն մէջ կը գտնուէին նաեւ ԶՈւ գլխաւոր շտաբի պետ Արտակ Դաւթեան եւ տեղակալ Ստեփան Գալստեան:

Եւ այսպէս Հայաստան պատերազմեցաւ Ազըրպէյճանի դէմ 44-օրեայ ընթացքին...:

2020 Նոյեմբեր 20-ին Տոնոյեան կը հրաժարի-հեռացուի պաշտօնէն: Որոշ տատանումներէ ետք, 2021 Նոյեմբեր 15-ին Պաշտպանութեան նախարար կը նշանակուի Սուրէն Պապիկեան: Առ այժմ, նախարարութեան հետ կապուած ցնցումներ չբացայայտուեցան: Թէեւ Գլխաւոր Շտաբի խնդիրը մնաց առկախ:

**Զինուած Ուժերու Գլխաւոր Շտաբ**

Հայաստանի Զինուած Ուժերու Գլխաւոր Շտաբը Պաշտպանութեան Նախարարութեան կառավարումի ոլորտին մէջ գործող պետական մարմին մըն է:

2021 Փետրուարին, Գլխաւոր Շտաբի պետ Օնիկ Գասպարեան հանդէս եկաւ պետական յեղաշրջումի կոչով՝ օգտուելով այդ ժամանակ գոյութիւն ունեցող, բայց արդէն դէպի ձախողութիւն ընթացող 17+-ի յայտնի գործողութիւններէն: Բանակը թիկունք չկանգնեցաւ անոր: Եթէ կանգնէր՝ այսօր Հայաստանի մէջ պիտի ունենայինք զինուորական բռնապետութիւն:

2021 Մարտ 10-ին Գասպարեան կը հեռացուի աշխատանքէ:

Մարտ 22-ին, Փաշինեան Հայաստանի Գլխաւոր Շտաբի պետ կը նշանակէ Արտակ Դաւթեան: Ընդամէնը 10 ամիս ետք՝ 2022 Յունուարին, ինչպէս տեսանք վերը, ան կը դառնայ մեղադրեալ, նոյն շտաբի տեղակալ Ստեփան Գալստեանի եւ այլ կարեւոր պաշտօնատարներու հետ:

2022 Փետրուար 24-ին Արտակ Դաւթեան կը հեռացուի պաշտօնէն: Պաշտօնը մինչեւ այսօր կը մնայ թափուր, կառավարուելով Գլխաւոր Շտաբի պետի պաշտօնակատար Կամօ Քոչունցի կողմէ: Թափուր մնալով՝ ցնցումները կը դադրին ցարդ, բայց կառուցուածքային հարցը կը մնայ չլուծուած:

Պաշտպանութեան Նախարարութեան մէջ Զինուած Ուժերու Գլխաւոր Շտաբը՝ իր ինքնավար իրաւասութիւններով, խնդրական միաւոր մըն՝ ներբախումներ յառաջացնելու ընդունակ: Ներբախումներ՝ նոյն ինքը Պաշտպանութեան Նախարարութեան ընդմէջէն, այն իմաստով՝ որ միեւնոյն նախարարական ուժին մէջ գործող երկրորդ ուժ մըն է: Լաւագոյն լուծումը Զինուած Ուժերու ընդգրկումն է Նախարարութեան մէջ՝ իբրեւ ենթակայ այլ ոչ ինքնավար միաւոր: Որքան ժամանակ որ գոյութիւն ունի ուժերու երկուութիւն, բանակաշինութեան այնքան արծարծուած հարցը պիտի բախուի դժուարութիւններու: Նախարարի հարցի համերաշխ լուծումէն ետք, Փաշինեանին կը մնայ կարգաւորել նաեւ Զինուած Ուժերը: Դժուար է: Զէնք ու զինամթերք կան ԶՈւ-ի տնօրինութեան տակ:

**Նախագահութիւն**

Նախկին նախագահ Արմէն Սարգսեանի մասին *Ջահակիր* շատ ու շատ գրած է՝ նոյնիսկ Թաւշեայ Յեղափոխութենէն առաջ զայն համարելով օլիկարքական փտածութեան կրողներէն մէկը: Պիտի չկրկնենք:

Միայն յիշեցնենք՝ որ Արմէն Սարգսեան աշխոյժօրէն մասնակցեցաւ յետպատերազմեան իշխանական յեղաշրջումի ձախողած փորձերուն՝ կատարուած ընդդէմ վարչապետի, այլազան միջոցներով կարողանալով յառաջացնել ցնցում ցնցումի ետեւէ: Նախագահ՝ վարչապետի դէմ:

Տակաւին նոր նշանակուած յաջորդը՝ Վահագն Խաչատուրեան, այն մարդն է՝ որ, եթէ մեր դիտարկումները ճիշդ են, սահմանադրական իրաւասութիւններու շրջանակին մէջ պիտի երկրորդէ վարչապետին եւ նպաստէ իշխանական վերնախաւի համերաշխ գործընթացքին: Վերջին 25 տարիներու առաջին նախագահն է՝ Լեւոն Տէր-Պետրոսեանէն ետք, որ ունի քաղաքական մտածողութիւն, քաղաքական լեզու եւ քաղաքական գործունէութեան փորձ: Գոնէ առ այժմ այդպէս կը թուի ըլլալ:

**Գնահատութիւն**

Փաշինեանի իշխանութիւն հասնելէն ի վեր առաջին անգամն է, որ կառավարական գլխաւոր կեդրոնները՝ ԱԱԾ, Արտաքին Գործերու Նախարարութիւն, Պաշտպանութեան Նախարարութիւն եւ Նախագահութիւն, ունին համերաշխ առաջնորդներ: Կրնայ մէկ պահէն միւսը փոխուիլ կացութիւնը՝ նոր տուեալներու եւ յայտնաբերումներու լոյսին տակ, բայց, գոնէ այսօրուայ համար, առաջին անգամ ըլլալով այդ հիմնարկները միաբան են ներկայ վարչակարգին հետ:

Ասիկա չի նշանակեր որ անպայմանօրէն փայլուն նուաճումներ պիտի իրականացուին, պիտի վերականգնուի բանակը, ոչ ալ կը նշանակէ պիտի բարելաւուի ժողովուրդի կենսամակարդակը: Օլիկարքները տակաւին կան ու պիտի մնան՝ իրենց ձեռքի տակ եղած հուժկու միջոցներով: Այստեղ խօսքը պարզապէս վարչակարգի մը ներքին համերաշխութեան մասին է՝ զերծ ցնցումներէ, որ մէկն է կառավարական գործընթացքի հիմքերէն:

Ա.

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1912 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 7 ԱՊՐԻԼ 2022 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩١٢ الخميس ٧ أبريل ٢٠٢٢


## ԱԶԳ ՓԱԿԵԼՈՎ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱՆՑԵԱԼԻ ՄՈՒԹ ԷՋԵՐԻ ՎՐԱՅ՝ ՆԱՅԵԼ ԱՊԱԳԱՅԻՆ

**ԴԱՒԻԹ ՍՏԵՓԱՆԵԱՆ**

**Նախաբան**

Հարեւան Թուրքիայի հետ յարաբերութիւնների կարգաւորումը շարունակում է մնալ հայկական հանրութեան եւ քաղաքական դաշտի ներքին օրակարգը: Իսկ որոշ ընդդիմադիր քաղաքական գործիչների եւ ուժերի համար, իհարկէ, նաեւ՝ երկրի ներսում շահաբաժիններ քաղելու նպատակով ընդգրկուն քաղաքական շահարկումների առարկայ: Սոյն համառօտ հետազօտութիւնը Հայաստանի եւ Թուրքիայի միջեւ դիւանագիտական յարաբերութիւններ հաստատելու եւ ընթացիկ աշխարհաքաղաքական իրողութիւնների միջեւ համապատասխանութիւն ստեղծելուն կողմ եւ դէմ պնդումների համառօտ վերլուծութեան փորձ է: Մասնաւորապէս, հաշուի առնելով դրանց կտրուկ փոփոխութիւնները՝ 2020-ի աշնանն ու Ուկրաինայում ընթացող պատերազմով...

**Նախապատմութիւն**

Երկու երկրների միջեւ յարաբերութիւնները կարգաւորելու անհրաժեշտութեան մասին խօսք գնաց դեռ անցեալ տարուայ երկրորդ կէսից սկսած: Ընդ որում՝ սկզբում Անկարայում, յետոյ արդէն՝ Երեւանում: Բարիդրացիական յարաբերութիւններ հաստատելու մտադրութիւնները յայտարարութիւնների մակարդակով պաշտպանեցին ինչպէս Ռուսաստանը, այնպէս էլ ԱՄՆ-ն՝ Եւրամիութեան հետ: Գործընթացն ակտիւ փուլ մտաւ ընթացիկ տարուայ Յունուարի 14-ին՝ Հայաստան-Թուրքիա երկխօսութեան յատուկ ներկայացուցիչներ Ռուբէն Ռուբինեանի եւ Սերդար Քըլըչի՝ Մոսկուայում կայացած առաջին հանդիպմամբ: Դրա արդիւնքների մասին Հայաստանի ԱԳՆ-ն յայտարարութիւն տարածեց, որում նշւում էր բանակցութիւնների դրական եւ կառուցողական մթնոլորտը: Գործնականում համանման յայտարարութիւն տարածեց նաեւ Թուրքական ԱԳՆ-ն: Ռուբինեան-Քըլըչ երկրորդ հանդիպումը տեղի ունեցաւ Փետրուարի 24-ին, Վիեննայում: Դրանից յետոյ յատուկ ներկայացուցիչները հաստատեցին, որ բանակցութիւնների վերջնական նպատակը երկու երկրների միջեւ յարաբերութիւնների լիարժէք կարգաւորումն է: Դրական գնահատելով երկրորդ հանդիպումը՝ Հայաստանի արտաքին գործերի նախարար Արարատ Միրզոյեանը Մարտի 2-ին՝ ԱԺ-ում հարցուպատասխանի ժամանակ, ընդգծեց. «Քննարկումը շատ աւելի կոնկրէտ է եղել, քան ենթադրաբար եւ արդարացիօրէն կարող էր լինել առաջին հանդիպմանը»: Նա նաեւ տեղեկացրեց, որ ըստ բանակցողների՝ գործընթացը տեղի է ունենում առանց նախապայմանների, եւ դրա վերջնարդիւնքը յարաբերութիւնների կարգաւորումն է, իսկ մեզ համար՝ նաեւ սահմանի բացումը:

Թուրքիան առաջիններից մէկը՝ 1991 թուականի Դեկտեմբերի 24-ին ճանաչեց Հայաստանի Հանրապետութիւնը: Սակայն առայսօր Անկարան հրաժարւում է Երեւանի հետ դիւանագիտական յարաբերութիւններ հաստատել: Աւելին, 1993 թուականին փակեց Հայաստանի հետ օդային եւ ցամաքային սահմանները: 1995 թուականին օդային սահմանը բացուեց, սակայն ցամաքային սահմանի բացման եւ դիւանագիտական յարաբերութիւնների հաստատման համար Անկարան անցած բոլոր տարիներին մի քանի նախապայմաններ էր առաջ քաշում: Այդ թւում՝ հրաժարում Հայոց Ցեղասպանութեան միջազգային ճանաչումից, Կարսի պայմանագրի, Թուրքիայի եւ Ադրբէջանի ներկայ սահմանների ճանաչում: Անցեալ դարի 90-ական թուականներից յարաբերութիւնների կարգաւորման առնուազն երկու փորձ է եղել, սակայն երկուսն էլ տապալուել են Անկարայի առաջ քաշած նախապայմանների պատճառով: Վերջին անգամ Թուրքիայի հետ յարաբերութիւնների կարգաւորման գործընթաց նախաձեռնեց Հայաստանի նախագահ Սերժ Սարգսեանը՝ 2008 թուականի աշնանը: «Ֆուտբոլային դիւանագիտութիւն» անուանումը ստացած գործընթացն աւարտուեց 2009 թուականի Հոկտեմբերի 10-ին՝ Ցիւրիխում Հայաստանի եւ Թուրքիայի արտգործնախարարների ստորագրած «Հայաստանի Հանրապետութեան եւ Թուրքիայի Հանրապետութեան միջեւ դիւանագիտական յարաբերութիւններ հաստատելու մասին», «Հայաստանի Հանրապետութեան եւ Թուրքիայի Հանրապետութեան միջեւ յարաբերութիւնների զարգացման մասին» արձանագրութիւնների ստորագրմամբ: Արձանագրութիւնները հաստատման համար շրջանառութեան մէջ դրուեցին երկու երկրների խորհրդարաններում, սակայն գործընթացն այդտեղ էլ կանգ առաւ:

**Յետպատերազմական իրողութիւններ**

Կարեւոր է նշել, որ Հայաստանի եւ Թուրքիայի միջեւ յարաբերութիւնները կարգաւորելու երրորդ փորձը նախաձեռնուեց արդէն բացարձակապէս նոր տարածաշրջանային աշխարհաքաղաքական պայմաններում: Արցախի եւ Հայաստանի դէմ Ադրբէջանի եւ Թուրքիայի իրականացրած 44-օրեայ ագրեսիան ոչ միայն յանգեցրեց հազարաւոր զոհերի, այլեւ խաթարեց առաջին պատերազմից յետոյ՝ 1994 թուականից Արցախի շուրջ ձեւաւորուած ստատուս քվոն: Ադրբէջանը, Իլհամ Ալիեւի խօսքերով՝ «վերականգնել է տարածքային ամբողջականութիւնն ու լուծել է ղարաբաղեան հակամարտութիւնը»: Ինչը հնարաւորութիւն է տալիս ասելու, թէ առնուազն սահմանների ապաշրջափակումը ղարաբաղեան հիմնախնդրի կարգաւորման հետ կապող Թուրքական մի նախապայմանը վերացել է: Վերջինս էլ նշանակում է, որ Ալիեւը 2008 թուականի հայ-Թուրքական գործընթացը տորպեդահարելու իր պատճառը հիմա, ըստ էութեան, այլեւս չի կարող ներկայացնել: Սակայն, կայ եւս մէկ, կարծես թէ աւելի կարեւոր հանգամանք: Մինչեւ 44-օրեայ պատերազմի հետեւանքով Հարաւային Կովկասում ձեւաւորուած նոր ստատուս քվոն, Հայաստանի հետ յարաբերութիւնները նորմալացնելու յատուկ ձգտում, մեծ հաշուով, չունէր ինքը՝ Թուրքիան: Սակայն Հայաստանի, Ռուսաստանի եւ Ադրբէջանի 2020 թուականի Նոյեմբերի 9-ի եւ 2021 թուականի Յունուարի 11-ի յայտարարութիւնների ստորագրմամբ տարածաշրջանը իւրացնելու «ռուսական պլանի» գործողութեան դրուելն առնուազն նպաստեց նման ցանկութեան առաջացմանը:

Առանց Թուրքիայի մասնակցութեան «տարածաշրջանային հաղորդակցութեան բոլոր ուղիների» ապաշրջափակում հնարաւոր չէ: Իսկ դիւանագիտական յարաբերութիւնների բացակայութեան, Հայաստանի հետ փակ սահմանների պայմաններում հաղորդակցական ծրագրերին մասնակցել Անկարան պարզապէս չի կարող: Եւ դա այն պայմաններում, երբ Թուրքերը, ըստ էութեան, Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ հերթական սպանդի գլխաւոր նախաձեռնողն էին: Բնականաբար՝ զուտ իրենց անձնական նպատակներով: Որոնցից գլխաւորը Հայաստանի տարածքով իրենց համար բաղձալի «Զանգեզուրի միջանցքն» է: Ահա այստեղ հարկ է արձանագրել, որ ինքնին Հայաստանի տարածքով նման ուղու գաղափարը կարող է նախապայման դառնալ արդէն Երեւանի գինանոցում: Այլ խօսքով՝ Հայաստանը կարող է համաձայնել իր տարածքով Թուրքիայի եւ Ադրբէջանի համար ցամաքային կապ ապահովել միայն յարաբերութիւնների կարգաւորման եւ Անկարայի կողմից սահմանների ապաշրջափակման պայմանով: Այսպիսով, յետպատերազմական նոր իրողութիւնները յանգում են ոչ միայն Հայաստանի թուլացման, ինչպէս դա պնդում են Թուրքիայի հետ յարաբերութիւնները կարգաւորելու հակառակորդները, այլեւ Երեւանի հետ յարաբերութիւնները լաւացնելու Անկարայի շահագրգռուածութեան նշանակալի աճի:

**Փոփոխուող աշխարհի աշխարհաքաղաքական իրողութիւնները**

Աշխարհաքաղաքական կոօրդինատների ժամանակակից ☞ 4

## «ԳԵՐԱԶԱՆՑ ԵՒ ՇԱՏ ԱՐԴԻՒՆԱՒԷՏ». ԲՐԻՒՍԷԼՈՒՄ ԱՒԱՐՏՈՒԵՑ ՓԱՇԻՆԵԱՆ-ԱԼԻԵՒ-ՄԻՇԷԼ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ



«Գերազանց եւ շատ արդիւնաւէտ». - այսպէս է գնահատել Եւրոպական Խորհրդի նախագահ Շառլ Միշէլը իր միջնորդութեամբ ու մասնակցութեամբ Ապրիլի 6-ին Բրիւսէլում տեղի ունեցած Հայաստանի եւ Ադրբէջանի առաջնորդների հանդիպումը:

Աւելի քան չորս ժամ տեւած բանակցութիւնների արդիւնքներով Նիկոլ Փաշինեանն ու Իլհամ Ալիեւը պայմանաւորուել են մինչեւ Ապրիլի վերջ Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ սահմանների դելիմիտացիայի հարցերով երկկողմ յանձնաժողով ստեղծել, որը օժտուած կը լինի նաեւ սահմանի երկայնքով անվտանգութիւն եւ կայունութիւն ապահովելու հարցերով:

Հայաստանի եւ Ադրբէջանի առաջնորդները նաեւ արտգործնախարարներին յանձնարարել են սկսել երկու երկրների միջեւ խաղաղութեան բանակցութիւնների նախապատրաստական աշխատանքները:

Բանակցութիւնների աւարտին հրապարակած իր ծաւալուն յայտարարութիւնում անդրադառնալով երկու երկրների միջեւ սահմանազատման եւ սահմանագծման կարեւորութեանը, նախագահ Միշէլը շեշտել է՝ միջադէպերի կանխարգելման եւ լարուածութեան նուազեցման համար էական տարր է ուժերի միջեւ համապատասխան հեռաւորութեան ապահովումը:

Եւրամիութեան պաշտօնական հաղորդագրութեան համաձայն՝ եռակողմ հանդիպմանը քննարկուել է նաեւ Ադրբէջանի եւ Հայաստանի միջեւ, ինչպէս նաեւ ընդհանուր առմամբ Հարաւային Կովկասում հաղորդակցութիւնների եւ տրանսպորտային կապերի վերականգնումը:

Շառլ Միշէլը նաեւ ընդգծել է երկու կողմերի մարդասիրական ժեստերի կարեւորութիւնը վստահութեան եւ խաղաղ գոյակցութեան խթանման համար, շեշտել, որ անհրաժեշտ է արագ լուծել բոլոր հումանիտար խնդիրները, այդ թւում՝ գերիների ազատ արձակումը, անյայտ կորածների հիմնախնդրի հա- ☞ 4

# ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ
## (Մահուան 50-ամեակին առիթով)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

**ԲԱՆՈՒՈՐԱԿԱՆ ԵՒ ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԻՋԵՒ**

Բանուորական եւ ազգային գրականութեան միջեւ ընտրութեան եւ անոր յարակից ազգային – ոչ-ազգային գրականութեան մասին վիճաբանութիւնը Փարիզի մէջ եղած է տարածուն, բայց ներկայ գրութիւնս, յատկացուած ըլլալով Բենիամին Թաշեանին, եւ քիչ մը աւելի լայն ընդգրկումով՝ եգիպտահայութեան, պիտի կեդրոնանայ եգիպտահայ *Յուսաբեր*ին վրայ, քանի մը անհրաժեշտ լրացումներ կատարելով Փարիզի *Յառաջ*էն, հիմնուելով հետեւեալ աղբիւրներուն վրայ.

1. Շ. Նարդունի, «Դէպի գրականութեան քաղաքականութիւն. Ա.», *Յուսաբեր*, 2 Նոյեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 182, էջ 1-2:

2. Շ. Նարդունի, «Մեր գրական մարգադաշտը եւ լեզուական հրապարակը. Բ.», *Յուսաբեր*, 9 Նոյեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 188, էջ 1:

3. Շ. Նարդունի, «Գրական նոր հաւատամք. Գ.», *Յուսաբեր*, 16 Նոյեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 194, էջ 1:

4. Շ. Նարդունի, «Ազգայի՞ն թէ միջազգային. Դ.», *Յուսաբեր*, 23 Նոյեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 200, էջ 1:

5. Ունկնդիր, «Վիճաբանութիւն Հայաստանի գրականութեան մասին», *Յառաջ*, 14 Դեկտեմբեր 1929, Ե. տարի, թիւ 1136, էջ 3 (քննախօսական 1929 Դեկտեմբեր 6-ի Փարիզի Հայ Ակումբի վիճաբանական հաւաքոյթին):

6. Վազգէն Շուշանեան, «Քաղքենի գրականութիւնը դատապարտուած է ստոյգ մահուան...», *Յառաջ*, 19 Դեկտեմբեր 1929, Ե. տարի, թիւ 1140, էջ 2:

7. Շ. Նարդունի, «Պրոլետարական գրականութիւն», *Յառաջ*, 29 Դեկտեմբեր 1929, Ե. տարի, թիւ 1148, էջ 3:

8. Շ. Նարդունի, «Գրականութիւնը Հայաստանի մէջ», *Յառաջ*, 5 Յունուար 1930, Զ. տարի, թիւ 1153, էջ 2:

9. Վէմունի [Բենիամին Թաշեան], «Գրականութիւն եւ արուեստ. քաղքենի գրականութիւն», *Յուսաբեր*, 1 Փետրուար 1930, ԺԵ. տարի, թիւ 257, էջ 2:

10. Վէմունի [Բենիամին Թաշեան], «Գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 3 Փետրուար 1930, ԺԵ. տարի, թիւ 258, էջ 2:

11. Վազգէն Շուշանեան, «Թուղթ առ Եգիպտացիս, Վէմունի», *Յուսաբեր*, 1 Մարտ 1930, ԺԵ. տարի, թիւ 281, էջ 2. 4 Մարտ 1930, ԺԵ. տարի, թիւ 282, էջ 1-2. 5 Մարտ 1930, ԺԵ. տարի, թիւ 283, էջ 1-2. 6 Մարտ 1930, ԺԵ. տարի, թիւ 284, էջ 1-2. 7 Մարտ 1930, ԺԵ. տարի, թիւ 285, էջ 1-2:

12. Վէմունի [Բենիամին Թաշեան], «Գրականութիւն եւ արուեստ. հոգեշահ զրոյց Ընկ. Վ. Շուշանեանի հետ», *Յուսաբեր*, 15 Մարտ 1930, ԺԵ. տարի, թիւ 292, էջ 2:

Ստորեւ կատարուած մէջբերումները եւ արտայայտուած հեղինակային կարծիքները քաղուած են յիշեալ յօդուածներէն:

Կարեւոր է դիտել տալ, որ այս բոլորը տեղի ունեցած է Դաշնակցական մամուլի ծիրէն ներս՝ ամբողջութեամբ կուսակցութեան գաղափարախօսութեան բնաբանին մէջ, իսկ փոխադարձ պատասխաններու համար գործածելով «ընկեր» դիմելաձեւը:

Բանավէճին հիմքը Վազգէն Շուշանեանի դրոյթներն են՝ որոնց հերքումով հանդէս կու գան Բենիամին Թաշեան եւ Շաւարշ Նարդունի:

Շուշանեան եւ Նարդունի կը գրէին Փարիզէն՝ անոնց Գահիրէի յօդուածները յատուկ գրուած են *Յուսաբեր*ի համար:

**Քաղքենիութիւնը՝ յառաջապահ դիրքերէ մինչեւ դրամատիրական շահերու պաշտպան**

Քաղքենիութիւնը յառաջապահ տարրն էր՝ երբ կը պայքարէր աւատատիրութեան (feudalism) դէմ, հաստատելով դրամատիրութիւնը, կը նախաբանէ Վազգէն Շուշանեան. «[Ք]աղքենիութիւնը՝ կրթնած նորագարթ չորրորդ դասակարգին եւ գիւղացիութեան վրայ, յեղափոխական ու անկարեկիր պայքար մղեց յետաշրջական աւատականութեան եւ սեւ կղերին դէմ»:

Բայց դրամատիրութեան համատեղ ի յայտ եկած եւ իշխանութիւնը իր ձեռքը վերցուցած քաղքենի դասակարգը՝ իր բոլոր մշակութային դրսեւորումներով, սպառած է արդէն, կ՚եզրակացնէ ան. «Յաղթական քաղքենիութեան զուգընթաց՝ մեծցաւ ու հասակ նետեց՝ դասական ու ազնուական դպրոցին դէմ, յեղափոխական ու յառաջընթաց դրական վարդապետութիւն մը, որուն հետքերուն վրայ է միշտ եւ բեղուն մնացորդներուն՝ որ ուրիշ դպրոցներ կանգնեցան: Այլ սակայն անցած է քաղքենի դասակարգին հերոսական շրջանը»:

26-ամեայ Շուշանեան համոզումով ձախակողմեայ մըն էր, *Յառաջ*ի մէջ ունէր կայուն սիւնակ մը «Ընկերվարութիւն եւ աշխատանք» վերտառութեամբ:

Այս նախամուտքը կարեւոր է՝ հասկնալու համար գրական քաղքենիութեան շուրջ ծաւալուած բանավէճը:

**Շուշանեան եւ բանուորական գրականութիւնը**

Իբրեւ ձախ, Շուշանեան կը ներկայանայ բանուորական (պրոլետարական) գրականութեան պաշտպանի դիրքով:

Ան կը ներկայացնէ իր մտածողութեան կորիզը. «[Հ]այ յառաջացող գրական սերունդը ո՛չ մէկ շահ ունի պաշտպանելու քաղքենի գրականութիւնը որ դատապարտուած է ստոյգ մահուան ու ընդհակառակն, պարտաւոր է միջազգային գրականութեան յառաջապահ ու ձախ տարրերուն հետ, քալել ճակատէն ու արտայայտել մեր վերածնող ժողովուրդին հոգեկան ապրումներն ու վերանորոգ մարդկութեան, բանուորներու եւ գիւղացիներու արդար ձգտումները»:

Այս առումով, ան դրականօրէն կը գնահատէ խորհրդային-բանուորական գրականութիւնը՝ իբրեւ քաղքենի գրականութեան հակադրութիւն, երկու հիմնական պատճառներով.

1. Յետագային տեղի պիտի ունենայ միջազգային յեղափոխութիւն, որուն շնորհիւ պիտի վերանայ բարձր դրամատիրութիւնը եւ զայն ներկայացնող քաղքենի դասակարգը՝ իր բոլոր արտայայտութիւններով: Բնականաբար, անոր հետ կապուած, պիտի վերանայ քաղքենի գրականութիւնը՝ իբրեւ այդ դասակարգի գաղափարախօսութեան բաղկացուցիչ: Ուրեմն, հայ գրականութիւնը «պարտաւոր է միջազգային գրականութեան յառաջապահ ու ձախ տարրերուն հետ, քալել ճակատէն ու արտայայտել մեր վերածնող ժողովուրդին հոգեկան ապրումներն ու վերանորոգ մարդկութեան, բանուորներու եւ գիւղացիներու արդար ձգտումները»:

2. Գրականութիւնը մաս կը կազմէ դրամատիրական գերութենէն ազատելու գործընթացքին: Եւ քանի որ դրամատիրութենէն ձերբազատուելու առաջին քայլը բանուորական դասակարգի գերակայութիւնն է, նոյնպէս, բանուորական գրականութիւնը պիտի ըլլայ նոր գրականութեան առաջին քայլը. «[Ջ]երմօրէն կուսակից ենք, […] ամբողջովին ազատագրուած ու ամէն գերութենէ ձերբազատ, յառաջապահ, մարդկային գրականութեան մը՝ որ կրողը պիտի ըլլայ մարդկութեան յաւերժ ու անհանգիստ ձգտումին դէպի անկարելի կատարելութիւն մը: Այդ գրականութեան ճամբուն վրայ առաջին հանգրուանը մեզ կը թուի ընչազուրկներու, դասակարգային գրականութիւնը (la littérature prolétarienne), որովհետեւ ան պիտի կռուի՝ քսաներորդ դարը արեան մէջ խեղդող ու մարդկութիւնը իր կրունկին տակ շնչահեղձ պահող դրամատիրութեան դէմ, աղբիւր՝ ամէն գերութեանց ու բռնութիւններու եւ պիտի ձգտի իրաւակարգի մը, ուր չկա՛ն դասակարգեր, դասակարգային պայքար, պատերազմ, արիւնահեղութիւն եւ կոտորած»:

Շուշանեանի համար մեծ կարեւորութիւն ունի գրողներուն մասնակցութիւնը քաղքենիութեան դէմ պայքարին: Անտրէ Ժիտ «անտանելի արհամարհանք մը ունի դէպի իշխանաւորներն ու զօրաւորները»՝ «այպանելով դրամատիրութիւնն ու իր սեփական երկիրը», իսկ իր *Դրամանենգներ* վէպին մէջ «կարգաւ դատի կը կանչէ քաղքենի բարոյականն ու ընտանիքը»: Կամ Ժորժ Տիւհամէլ՝ որ «անկեղծ աջակից է մեր պայքարին», քննադատը քաղքենի քաղաքակրթութեան:

Միւս կողմէ, Շարլ Պօտլէռ չի կրնար այդ պայքարին մաս կազմել: Ան փակուղիի մէջ է, «անընդունակ նորոգութեան որեւէ ճիգ փորձելու ու մարդկութեան ժառանգ ձգելով կեանքի հիւանդ ըմբռնում մը, «գեղեցկութեան» ախտագին կերպ մը ու երգեր, որ հալածուեցան ու դատաստանի կանչուեցան քաղքենիութեան կողմէ: Ահա՛ թէ ինչպէս կը վարուի դրամատիրութիւնը իր գրականութեան լաւագոյն ներկայացուցիչներուն հետ»: Պօտլէռ «չի կրնար վերածնող մարդկութեան, բազմամիլիոն աշխատաւորութեան եւ գերի ազգերու ճակատագրին առջեւ դնել որպէս հեռաւոր լոյս»: Ասիկա, հակառակ իր արուեստի «աներկբայելի արժէքին»: Ուրեմն, Շուշանեան ↪ 3

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՓԱՇԻՆԵԱՆՆ ՈՒ ՊՈՒՏԻՆԸ ԿՐԿԻՆ ՔՆՆԱՐԿԵԼ ԵՆ ԻՐԱՎԻՃԱԿԸ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ՇՈՒՐՋ

Ռուսաստանի նախագահ Վլադիմիր Պուտինը Ապրիլի 1-ին հեռախօսազրոյց է ունեցել Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի հետ՝ շարունակելով քննարկել Լեռնային Ղարաբաղի թեման, հաղորդում է Կրեմլի մամուլի ծառայութիւնը:

«Շարունակուել է մտքերի փոխանակումը Լեռնային Ղարաբաղի շրջանում կայունութեանը աջակցելու հարցերի շուրջ: Հաստատուել է Հայաստանի, Ադրբէջանի եւ Ռուսաստանի առաջնորդների 2020 թ. Նոյեմբերի 9-ի, 2021 թ. Յունուարի 11-ի եւ Նոյեմբերի 26-ի եռակողմ համաձայնութիւններին անշեղօրէն հետեւելու անհրաժեշտութիւնը», - նշուած է հաղորդագրութիւնում:

Ըստ Հայաստանի կառավարութեան՝ երկու երկրների ղեկավարները հեռախօսազրոյցի ընթացքում քննարկել են ադրբէջանական ստորաբաժանումների՝ Լեռնային Ղարաբաղում ռուս խաղաղապահ զօրախմբի պատասխանատուութեան գօտի ներխուժման հետեւանքով ստեղծուած լարուած իրավիճակին վերաբերող հարցեր:

Նախօրէին Պուտինը հեռախօսազրոյցներ է ունեցել Փաշինեանի եւ Ադրբէջանի նախագահ Իլհամ Ալիեւի հետ, քննարկուել է նաեւ Լեռնային Ղարաբաղի շուրջ իրավիճակի զարգացումը:

*Իրադրութիւնը Ասկերանի շրջանի Փառուխ եւ Խրամորթ գիւղերում կտրուկ սրուել է Մարտի 24-ից, երբ ադրբէջանական զինուժը խախտեց շփման գիծը Փառուխի ուղղութեամբ: Ադրբէջանական կողմի գործողութիւնների հետեւանքով պաշտպանութեան բանակի երեք զինծառայող զոհուեց, 15-ը՝ վիրաւորուեց:* ↪ 4

## ՍԵՊՏԵՄԲԵՐԻ 27-ԻՑ ԱՅՍ ԿՈՂՄ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀԱՒԱՆԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ՇԱՏ ԲԱՐՁՐ Է ԵՂԵԼ. ԱԺ ՆԱԽԱԳԱՀ

Ազգային Ժողովի նախագահ Ալէն Սիմոնեանը յայտարարեց, որ քանի դեռ պետութեան անվտանգութեան հարցը լուծուած չէ, այդ հարցը լինելու է առաջնային, բայց դա չի նշանակում, որ պետութիւնը չպէտք է գործի: Ինչպէս տեղեկացնում է *Արմենպրէս*ը, Ալէն Սիմոնեանն այս մասին ասաց Ազգային Ժողովի արտահերթ նիստի ժամանակ՝ արձագանքելով Հայաստան խմբակցութեան պատգամաւորների այն յայտարարութիւններին, թէ ինչո՞ւ է «Տեղական ինքնակառավարման մասին օրէնքում լրացում կատարելու մասին» օրէնքի նախագիծը հրատապ ռեժիմով քննարկւում, երբ երկրում կան աւելի առաջնային խնդիրներ, մասնաւորապէս՝ անվտանգութեան հետ կապուած խնդիրը:

«Ասում էք աւելի կարեւոր հարց չկայ: Միշտ էլ աւելի կարեւոր հարցեր կան, մեր պատմութեան առաջին օրուանից ունեցել ենք անվտանգութեան խնդիր: Սեպտեմբերի 27-ից այս կողմ պատերազմի հաւանականութիւնը միշտ գրեթէ նոյն է եղել, այսինքն՝ շատ բարձր է եղել: Իսկ ի՞նչ էք արել դուք, ի՞նչ օրէնսդրական նախաձեռնութիւններ էք ներկայացրել: Դուք հիմա ինչ-որ այլընտրանքային օրէնսդրական նախաձեռնութիւն ունէ՞ք, որը մերժել ենք եւ ՏԻՄ օրէնք ենք բերել: Այսինքն, Աստուած մի արասցէ, եթէ պատերազմ է սկսւում, Վանաձորում պէտք է ՏԻՄ չլինի՞ կամ որեւէ համայնքում տեղական ↪ 4

ԳԱՀԻՐԷ

## ԵՐԵԿՈՅԹ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՀԱՅ-ԵԳԻՊՏԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ 30-ԱՄԵԱԿԻՆ

2022 Մարտ 22-ին, Գահիրէի Օփերայի Փոքր Սրահը տեղի ունեցաւ երեկոյթ՝ նուիրուած Հայ-եգիպտական դիւանագիտական յարաբերութիւններու հաստատումի 30-ամեակին:

Ելոյթ ունեցան Հայաստանէն հրաւիրուած Կադանս համոյթը՝ Յակոբ Ջաղացպանեան (կիթառ), Վարդգատ Խաչումեան (ջութակ), Մերուժան Եգանեան (աքորտէոն), Սոֆի Միքայէլեան (դաշնակ), Գուրգէն Ամիրեան (քոնթրպաս) եւ Արշակ Սահակեան (դուդուկ): Համոյթը կատարեց Սայեաթ-Նովա, Կոմիտաս վարդապետ, Խաչատուր Աւետիսեան, Էդուարդ Բաղդասարեան, Աստոր Փիածծոլլա, Ուալթըր Ռիոս, Ռիչարտ Կալիանօ: Ընտրած էր նաեւ եգիպտացի երաժշտահան Օմար Խայրաթի *Ֆաթման*:

Մենապարերով եւ զուգապարերով մասնակցեցան Գահիրէի Օփերայի Պալէի Խումբի անդամներ Մարիամ Կարապետեան եւ Մահմուտ Հասան, ներկայացնելով Արամ Խաչատուրեան՝ *Սպարտակի* Ատաճիոն եւ *Գայեանէի* Լեզկինքան, եւ Սայեաթ-Նովա՝ *Աշխարհում իմն դուն իս*:




Բացումի խօսքով ելոյթ ունեցան Եգիպտոսի մէջ Հայաստանի դեսպան Ն.Վ. Հրաչեայ Փօլատեան եւ Եգիպտոսի Արտաքին Գործոց Նախարարութեան ներկայացուցիչը, ինչպէս նաեւ ցուցադրուեցաւ կարճ վաւերագրական մը հայ-եգիպտական դիւանագիտական յարաբերութիւններուն մասին:

## ԴՐՈՇՄԱԹՈՒՂԹ՝ ԵԳԻՊՏՈՍ-ՀԱՅԱՍՏԱՆ ԴԻՒԱՆԱԳԻՏՈՒԹԵԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ 30-ԱՄԵԱԿԻՆ ԱՌԻԹՈՎ

Մարտ 20-ին, Եգիպտոսի մէջ հրապարակ իջաւ Եգիպտական Փոսթի (Ալ-Պարիտ Ալ-Մասրի) դրոշմաթուղթը՝ նուիրուած Եգիպտոս-Հայաստան դիւանագիտութեան յարաբերութիւններու 30-ամեակին:

Յիշեցնենք՝ որ 2012-ին Եգիպտական Փոսթը արտադրած էր նման դրոշմաթուղթ՝ Եգիպտոս-Ազըրպէյճան դիւանագիտական յարաբերութիւններու 20-ամեակին առիթով, որ կը պարունակէր եգիպտական բուրգերուն եւ Սֆինքսին լուսանկարները:

Տակաւին երկու ամիս առաջ, նման դրոշմաթուղթ տպագրած էր Եգիպտոսի եւ Քոլոմպիայի դիւանագիտական յարաբերութիւններու 65-ամեակին առիթով:




Եգիպտոս՝ յարգելու համար տարիներու ընթացքին հիմնադրուած դիւանագիտական յարաբերութիւնները, գեղեցիկ սովորութիւն ունի նման դրոշմաթուղթերով յիշատակել զանոնք:

## 2 ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

կը զանազանէ արուեստի հասարակական ներգրաւուածութիւնը՝ անոր ներսը գտնուող զուտ գեղագիտական արժէքէն, զոր գիտէ գնահատել:

Փօլ Վերլէն, Մարսէլ Փրուսթ՝ «պահապան հաւատարիմ քաղքենի կարգերու, ակադեմական...»:

Պօտլէռի, Վերլէնի եւ Փրուսթի գրականութեան մէջ հիւանդ տխրութիւն, թշուառ մթնոլորտ եւ ախտագին կացութիւն կայ՝ որոնք կը ժխտեն կեանքը, յեղափոխութիւնը եւ արկածը: Իսկ հայ գրողներէն կը նախընտրէ Չարենցը Զօպանեանէն. «[Ե]ս կ՚ըսեմ որ երբեք գիս չպիտի գտնէք Զօպանեանի հետ, այլ իրեն դէմ՝ վերջին Եղիշէ Չարենցին հետ», հակառակ բոլոր գեղեցկագիտական կանոններուն, քանի որ Չարենցի հետ Շուշանեան ունի նոյն երգը՝ հայ աշխատաւորութեան երգը:

Շուշանեան՝ երբ 1922-ին Պոլիսէն կու գար հաստատուիլ Փարիզ, շրջան մը հասարակ բանուոր աշխատած է Ռընոյի եւ Մոնրուժի գործարաններու մէջ, սեփական անձին վրայ զգալով բանուորական ստորադասութիւնը: «Ու եղած եմ բանուոր անտէր / Հըլու-ըստրուկ աշխատանքի», երգած է ան 1924-ին(40):

Կենսագրական այս գիծը շատ բան կրնայ ըսել իր համոզումներուն մասին:

**Տեսութիւնն ու գործադրութիւնը Շուշանեանի մօտ**

Շաւարշ Նարդունի առաջ կը բերէ տեսութեան եւ գործադրութեան հարցը, առարկելով՝ որ հակառակ պրոլետարական գրականութեան տեսականացումին, Շուշանեան իր արձակ գրութիւններուն մէջ չի կիրարկեր զայն, այլ կը դիմէ նէօ-ռոմանթիք դպրոցին: Այսինքն՝ հակասութիւն կայ Շուշանեանի տեսութեան եւ գործադրութեան միջեւ. «Հարկ չկայ անկեղծութեան հարց դնել, առարկելով որ Շուշանեան իր գրականութիւնովը néo-romantique կ՚ընէ, եւ իր վարդապետութեամբը պրոլետարական գրականութիւն կը քարոզէ: Գրողները չեն կրնար տալ այն, զոր կը պահանջեն: Ուստի պէտք է քննութեան առնել իրենց պահանջն ու գրականութիւնը՝ անկախաբար: Փափաքելի էր, անշուշտ, որ գրողները ջանային ընել ինչ որ կը պահանջեն: Վասնզի, մասնաւորապէս Շուշանեան, հիներն ամբաստանած ըլլալով թէ իրենց գրականութեամբ կը ծառայեն քաղքենիներուն, անոնք ալ, իրենց կարգին, կրնան հարցընել թէ որո՛ւ կը ծառայէ Շուշանեանի այժմեան գրականութիւնը, - քաղքենիներո՞ւն թէ պրոլետարներուն»:

Թերեւս Շուշանեան այս քննադատութեան պատասխանէր քիչ մը վերացական հարցումով. «Ո՞վ ըսաւ ձեզ, որ պէտք է բանուոր ու գիւղացի փնտռել այնտեղ՝ ուրտեղ չկան եւ ընդհակառակն փնտռել հոն՝ ուր կարելի է զանոնք գտնել»:

(Շար. 8)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

40. Վազգէն Շուշանեան, «Վաղուց արդէն...», *Ամերիկահայ հանրագիտակ տարեգիրք 1925*, Պոսթըն, Հայրենիքի Տպարան, 1924, էջ 247:

ԽՈՀԵՐ

## ՎՐԻՊԱԾ ԻՄԱՍՏՆԵՐ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

1922 Յունիսին, *Արեւ* լրագիրը իր առաջին էջին վրայ կը հրատարակէ հետեւեալ լուրը.

«Զակազիկէն կը գրեն մեզ.

«Յունիս 11ի Կիրակի օրը սուգի օր մը եղաւ տեղւոյս հայութեան համար:

«Կամսարական Ֆապրիգայի դռնապանները ժամը 1ի միջոցները Ֆապրիգային քով գտնուող ջրանցքը կ՚երթան լողալու եւ լուացուելու համար:

«Դռնապաններէն Վանեցի Հայկ Գրիգորեան երեսնամեայ կորիճ եւ առողջ երիտասարդը պահ մը կը հեռանայ իր ընկերներէն եւ կը փորձէ դիմացի կողմը անցնիլ, սակայն չյաջողելով, գլխիվայր կը մխրճուի աւազախրոյտին մէջ եւ խեղդամահ կ՚ըլլայ:

«Ժամուկէս յետոյ կը դիտուի իր բացակայութիւնը ընկերներուն կողմէ եւ քիչ յետոյ տարաբախտ երիտասարդին անշնչացած դիակը կը հանուի ջրուղիէն:

«Ողբացեալ Հայկ խոստմնալից երիտասարդ մըն էր. իբր զինուոր Զօրավար Անդրանիկի խումբին մէջ մասնակցած է շարք մը կռիւներու:

«Յուղարկաւորութեան տխուր հանդէսը կատարուեցաւ Երկուշաբթի օր եւ մարմինը ամփոփուեցաւ Զակազիկի ազգային գերեզմանատունը»(1):

Կատարեալ լուր մը՝ ողբի ու կարեկցութեան անհրաժեշտ մեկնաբանութեամբ:

Վրիպած իմաստ մը կայ, սակայն: Յարաբերութիւնը Անդրանիկի զինուորին եւ դռնապանին միջեւ:

Ի՞նչ կը նշանակէ ըլլալ Անդրանիկի զինուոր ազգային պատումին մէջ: Կը նշանակէ ըլլալ ամենէն աւելի հայրենասէր, ազգանուէր, անձնուրաց, ինքնազոհ, եւ շարեցէք ինչ բառ որ կը փափաքիք:

Եթէ այդպէս է, ուրեմն այս պատումը բարձրաձայնողները՝ որոնք կը ներկայացնեն հայութեան ամենաբարձր ձայն ունեցող հատուածը, բայց ոչ քանակապէս ամենամեծը, պարտաւոր էին այդ զինուորին տալ ամենաբարձր դիրք՝ դարձնել տնօրէն, ապահովել դրամով եւ երաշխաւորել ցկեանս բարեկեցիկ կեանք: Ան պատրաստ եղած է ինքզինք զոհել հայրենիքին համար, ինչպէս ընդունուած է ըսել:

Բայց, ահաւասիկ, ան դարձած է ընդամէնը դռնապան: Պատուաւոր աշխատանք է, քրտինքով կը վաստակի իր ապրուստը. հասկըցանք: Բայց անհամապատասխան է պատումի աստիճանին: Դռնապանը, ազգային պատումը կրող քաղքենի հասարակութեան համար, ՑԱԾ աստիճանի աշխատանք է: Հայրենազոհութիւնը՝ ԲԱՐՁՐ գործողութիւն է:

Ասիկա կը փաստէ նաեւ «ազգային» բառի ստացած անիրական իմաստը: Անդրանիկի զինուորը ազգային հասկացողութիւն է, մինչդեռ դռնապանը՝ ո՛չ: Դռնապանութիւնը չի կրնար մտնել ազգային գաղափարախօսութեան մէջ: Մինչդեռ ազգայինը՝ իր անեղծ իմաստով, ենթադրուած է ներկայացնել ազգի մը գաղափարը ընդհանրապէս՝ աղքատ ու մեծահարուստ, բանուոր ու տնօրէն հաւասարապէս:

2014-ին, Երեւանի մէջ տուած դասախօսութեան մէջ, յայտնի պատմաբան ու դիւանագէտ Ժիրայր Լիպարիտեան կը պատմէ անձնական կեանքէն հետեւեալ ուշագրաւ դրուագը, կապուած ուրիշ դռնապանի մը հետ.

Շաբաթ օրերը Ժիրայր եւ ընկերները կ՚երթային Բաբկէն Սիւնի ակումբը, որուն պատերուն վրայ կախուած էին ֆէտայիներու լուսանկարներ: Կանուխ կ՚երթային, որպէսզի փինկ-փոնկ խաղային եւ կապարէ փամփուշտներով զինավարժութիւն ընէին: Դուռն ու պատուհանը կը թակէին, որպէսզի ծերունի դռնապանը բանայ դուռը: Դռնապանի լռողութիւնը տկար էր եւ միշտ գանգատելով կը բանար դուռը: Տղաքը բնաւ կարեւորութիւն չէիր տար անոր եւ կը բարկանային անոր վրայ՝ երբ դուռը չէր ուզեր բանալ: Կը մահանայ ծերունին եւ կը պարզուի որ ան Վարդան Շահպազ ֆէտային էր՝ որուն լուսանկարը կախուած է պատէն: Տղաքը կը պաշտէին լուսանկարը, առանց իմանալու իրական մարդուն գոյութիւնը իրենց դիմաց:

Լիպարիտեան կ՚աւելցնէ. «Այդ կտրուածութիւնը ինձ պարտադրում էր որ մտածեմ իրականութեան եւ պատմութեան միջեւ կապի մասին»(2):

Պատկեր՝ նուիրական, սրբազան, որ նաեւ կը հերոսանայ ու պաշտամունքի առարկայ կը դառնայ, պատկերի իրականը՝ մարդը, որ կը ծաղրուի ու կ՚անտեսուի:

Պատկերը՝ ազգային, իրական մարդը՝ ոչ: Պատկերային ազգայնապաշտութիւն:

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

1. «Յաւալի արկած մը ի Զակազիկ», *Արեւ*, 16 Յունիս 1922, Ը. տարի, թիւ 21 (1084), էջ 1:

2. «Պատահական դիւանագէտ. պատմաբան, յետոյ դիւանագէտ, եւ կրկին պատմաբան. Ժիրայր Լիպարիտեան», *Բուն TV*, 7 Մայիս 2014, http://boon.am/azat-forum-liparityan/






## ՓԱՇԻՆԵԱՆՆ ՈՒ ՊՈՒՏԻՆԸ ԿՐԿԻՆ ՔՆՆԱՐԿԵԼ ԵՆ ԻՐԱՎԻՃԱԿԸ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ՇՈՒՐՋ

*Քարագլխի հիմնական բարձունքը, ամենաբարձր կէտը, գտնւում է հայկական կողմի վերահսկողութեան տակ, սակայն որոշ կարեւոր բարձունքներ գտնւում են Ադրբէջանի զինուած ուժերի վերահսկողութեան տակ, յայտարարել է Արցախի ղեկավարը:*

*Մարտի 26-ին Ռուսաստանի պաշտպանութեան նախարարութիւնը հաղորդել էր, որ ադրբէջանական զօրքը մտել է ռուս խաղաղապահների պատասխանատուութեան գօտի Լեռնային Ղարաբաղի տարածքում: Մարտի 27-ի երեկոյեան Ռուսաստանի ՊՆ-ն յայտնեց, որ Ադրբէջանը յետ է քաշել զօրքերը Փառուխ բնակավայրից:*

**ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՌԱԴԻՕԿԱԵԱՆ**



## ՍԵՊՏԵՄԲԵՐԻ 27-ԻՑ ԱՅՍ ԿՈՂՄ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀԱՒԱՆԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ՇԱՏ ԲԱՐՁՐ Է ԵՂԵԼ. ԱԺ ՆԱԽԱԳԱՀ

ինքնակառավարման մարմին չլինի՞, բա ենթադրեալ պաշտպանութիւնը ինչպէ՞ս ենք կազմակերպելու», - ընդգծեց Սիմոնեանը:

Ալէն Սիմոնեանի խօսքով՝ Հայաստան խմբակցութեան օրակարգն այն է, թէ ինչպէս կարողանան Ռոբերտ Քոչարեանի դատավարութեան հետ կապուած Ազգային Ժողովում քաղաքական շահարկում անել:

«Ընդդիմադիր Թեւի գերակշիռ մասի խօսքը ինչ-որ զուգադիպութեամբ համընկնում է Ադրբէջանի բանակի գործողութիւնների հետ: Բացառութեամբ մի քանի հոգու, պատգամաւորները օրէնսդրական նախաձեռնութեամբ հանդէս չեն գալիս: Կարո՞ղ է պատահել, որ Ազգային Ժողովի սենեակները պէտք չեն ձեզ, եթէ այդպէս է, կարող ենք այդ սենեակներն աւելի լաւ նպատակի տրամադրել», - ասաց Սիմոնեանը:



## «ԳԵՐԱԶԱՆՑ ԵՒ ՇԱՏ ԱՐԴԻՒՆԱՒԷՏ» ...

մակողմանի լուծումը: Նա հաւաստիացրել է, որ ԵՄ-ը կ՚աջակցի այդ, ինչպէս նաեւ փոխադարձ վստահութեան վերականգնմանն ուղղուած նախաձեռնութիւններին, ականազերծման ջանքերին:

Հաղորդագրութեան համաձայն՝ Եւրոպական դաշինքը պատրաստ է օգնութիւն տրամադրել նաեւ աւելի քան մէկուկէս տարի առաջ տեղի ունեցած պատերազմի հետեւանքով տուժած բնակչութեանը:

Քննարկումների վերաբերեալ Եւրամիութեան գործադիր մարմնի ղեկավարի ծաւալուն յայտարարութիւնում Լեռնային Ղարաբաղի մասին որեւէ յիշատակում չկայ: Հայկական կողմի պաշտօնական հաղորդագրութիւնում է միայն ասւում՝ «Նիկոլ Փաշինեանն անդրադարձել է ադրբէջանական ստորաբաժանումների վերջին գործողութիւնների հետեւանքով Արցախում ստեղծուած իրավիճակին, հումանիտար խնդիրներին»:

**ԱԶԱՏՈՒԹԻՒՆ ՌԱԴԻՕԿԱՅԱՆ**

## ԱՋՔ ՓԱԿԵԼՈՎ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱՆՑԵԱԼԻ ՄՈՒԹ ԷՋԵՐԻ ՎՐԱՅ՝ ՆԱՅԵԼ ԱՊԱԳԱՅԻՆ

համակարգում ամբողջ աշխարհը, միջազգային յարաբերութիւնները կապակցուած են միասնական շղթայով: Գլոբալացուող աշխարհն այդ առումով միանգամայն նման է հաղորդակից անօթների, եւ մի տեղում ալեկոծումն անմիջապէս խախտում է անդորրը մի այլ տեղում: Ուկրաինայում, եւ ամենագլխաւորը՝ Ուկրաինայի շուրջ ընթացիկ իրադարձութիւնները թոյլ են տալիս արձանագրել, որ հայ-թուրքական երկխօսութիւնն սկսուել է մի իրավիճակում, երբ Ռուսաստանը եւ նոյն Թուրքիան այդ համակարգում այլ դիրք ունէին: Իսկ Ռուսաստանի հետ Արեւմուտքի եւ առաջին հերթին ԱՄՆ-ի յարաբերութիւնները՝ բոլորովին այլ բնոյթ: Նաեւ հարկ է արձանագրել, որ սկզբնապէս էլ ոչ լաւագոյն բովանդակութիւն ունեցող այդ յարաբերութիւններն օրեցօր աւելի են վատանում: Այստեղ անհրաժեշտ է յիշեցնել հայ-թուրքական յարաբերութիւնների նորմալացման հարցում Ռուսաստանի, ԱՄՆ-ի եւ ԵՄ-ի միջեւ նախապէս առկայ կոնսենսուսի մասին: Ինչի առնչութեամբ օրինական հարց է առաջանում. արդեօ՞ք այս կոնսենսուսը կենսունակ կը լինի ներկայ «ուկրաինական» աշխարհաքաղաքական իրողութիւնների պայմաններում: Եւ ուկրաինական պատերազմն ի՞նչ նոր հնարաւորութիւններ եւ ռիսկեր է ստեղծում հայ-թուրքական կարգաւորման ճանապարհին:

Այդ հարցերի պատասխաններն ամբողջովին կախուած են ընդդէմ Ուկրաինայի ռուսական ագրեսիայի արդիւնքներից: Հնարաւոր է ենթադրել, որ Մոսկուայի կողմից իր նպատակներին հասնելու, այսինքն Ուկրաինայի՝ ռազմական դաշինքներից դուրս կարգավիճակին համաձայնելու կամ ձախափնեայ Ուկրաինան այս կամ այն պատրուակով գրաւելու դէպքում Թուրքիան Հայաստանի հետ դիւանագիտական յարաբերութիւններ հաստատելու քաղաքականութեան վեկտորը չի փոխի: Զուգահեռաբար, Մոսկուայի հետ համագործակցութեամբ Անկարան կը շարունակի Հարաւային Կովկասում հաղորդակցութեան ճանապարհների ապաշրջափակման աշխատանքը, այսինքն՝ Հայաստանի հետ յարաբերութիւնները նորմալացնելուն առնչուող գործընթացը: Այն դէպքում, երբ Ուկրաինայում ռազմական գործողութեան տապալման, արեւմտեան ուղղութեամբ ռուսական քաղաքականութեան ձախողման դէպքում Թուրքիան կարող է ակնթարթօրէն փոխել Հայաստանի հետ յարաբերութիւնները կարգաւորելու իր այսօրուայ պայմանները: Ինչը պայմանաւորուած կը լինի ոչ միայն եւ ոչ այնքան հայկական գործօնով, որքան ռուսական: Թուրքիան կայծակնային արագութեամբ Ուկրաինայում Ռուսաստանի պարտութիւնը կ՚երեւակի Հարաւային Կովկասում՝ իր համար նոր առաւելութիւններ ստանալու նպատակով: Օրինակ, Ադրբէջանում իր ռազմական ներկայութիւնը մեծացնելու կամ ցանկալի «Զանգեզուրի միջանցքին» անդրտարածքային կարգավիճակ տալու համար: Այսպիսով, հնարաւոր է արձանագրել, որ Արեւմուտքի եւ Ռուսաստանի միջեւ աշխարհաքաղաքական իրողութիւնների փոփոխութիւնները նոր ռիսկեր են առաջացնում հայ-թուրքական յարաբերութիւնների կարգաւորման գործընթացի համար: Ինչն, ի դէպ, Հայաստանի համար այդ գործընթացն աւելի գրաւիչ է դարձնում:

**«Եթէ սահմանները բացենք՝ թուրքերը մեզ կ՚ուտեն»**

Այստեղ հարկ է անդրադառնալ Հայաստանում, առաջին հերթին ռուսական քարոզչութեամբ լայնօրէն տարածուող այն միֆին, որ «եթէ ռուսները չլինեն՝ թուրքերը մեզ կ՚ուտեն»: Թուրքիայի հետ յարաբերութիւնները լաւացնելու մտադրութեան մասին առաջին տեղեկութիւնների յայտնուելուց յետոյ այդ քարոզչական դրոյթը նոր տեսք ստացաւ. «եթէ սահմանները բացենք՝ թուրքերը մեզ կ՚ուտեն»: Այս մռայլ կանխատեսման կողմնակիցների թեզիսներն անփոփոխ յանգում են նրան, թէ Թուրքիայի հետ սահմանների բացումը կը յանգեցնի Հայաստանի «աջարացման»: Այսինքն, տեղական արդիւնաբերութեան վերացման՝ թուրքական էժան ապրանքներով Հայաստանի շուկան ողողելու միջոցով, Հայաստանում թուրքերի կողմից անշարժ գոյքի զանգուածային գնման, Սիւնիքից հայերին դուրս մղելու եւ այլ աշխարհացունց հետեւանքների: Յիշենք, որ ժամանակին նմանատիպ «փաստարկներ» հնչում էին նաեւ Հայաստանի հետ առեւտուր անող եւ մեր երկիր այցելող իրանցիների «ներխուժման» առիթով: Ընդ որում, նման աշխարհացունց սցենարի կողմնակիցները համեստօրէն լռում են, որ իրականում թուրքական կապիտալը նոյն Աջարիայում չի գերազանցում 15 տոկոսը: Իսկ համաձայն Հայաստանում գործող օրէնսդրութեան, նոյն թուրքերին ոչինչ չի խանգարում մեր երկրում ազատօրէն անշարժ գոյք ձեռք բերել նաեւ այսօր՝ հէնց փակ սահմանների պայմաններում:

Եւ ըստ հերթականութեան, բայց բոլորովին էլ ոչ իր կարեւորութեամբ, վերջինը: Ո՛չ փակ սահմանները, ո՛չ դիւանագիտական յարաբերութիւնների բացակայութիւնը բացարձակապէս չխանգարեցին թուրքերին «ուտել» մեզ: 2020-ի աշնանը նախաձեռնելով եւ բոլոր հնարաւոր միջոցներով բացայայտ աջակցելով Արցախի եւ Հայաստանի դէմ ադրբէջանական ագրեսիան, էրդողանական Թուրքիան անհնարինը հնարաւոր դարձրեց: Այսինքն՝ խախտեց Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ ուժերի յարաբերակցութեան տարիներով ձեւաւորուած հաւասարակշռութիւնը, ինչը լայնածաւալ ադրբէջանական ագրեսիան խոչընդոտող գործօն էր: Հէնց այդ հաւասարակշռութեան խախտումը յանգեցրեց Ադրբէջանի դէմ պատերազմում հայկական պետութիւնների պարտութեանը: Հայաստանը եւ Արցախը պատերազմում էին միայնակ, առանց միակ դաշնակից Ռուսաստանի աջակցութեան: Ադրբէջանի թիկունքում կանգնած էին Թուրքիան, Իսրայէլը, Պակիստանը: Էլ չենք խօսում դարձեալ Թուրքիայի կողմից Արցախ տեղափոխուող հազարաւոր միջազգային ահաբեկիչների մասին: Այսպիսով, պէտք է արձանագրել, որ հէնց Թուրքիան վճռորոշ դեր ունեցաւ 44-օրեայ պատերազմի արդիւնքներում:

Եւ դա տեղի ունեցաւ Հայաստանի հետ դիւանագիտական յարաբերութիւնների բացակայութեան ու փակ սահմանների պայմաններում: Հասկանալի է, որ այսօր արդէն ուշ է խօսել այն մասին, թէ ինչպէս կը փոխուէր իրավիճակը, եթէ 2020 թուականին Հայաստանն ու Թուրքիան դիւանագիտական յարաբերութիւններ ունենային: Սակայն գրեթէ ճշգրիտ կարելի է ասել, որ Հայաստանի հետ փակ սահմանները բոլորովին չխանգարեցին Թուրքիային հայ ժողովրդի դէմ հերթական անթաքոյց ագրեսիան իրականացնելու:

**Ամփոփում**

Անկասկած է, որ Թուրքիայի հետ յարաբերութիւնների կարգաւորումը Հայաստանի համար ե՛ւ վտանգներ է պարունակում, ե՛ւ հնարաւորութիւններ բացում: Աւելին, վտանգներով է լեցուն բուն գործընթացը՝ բաց սահմանների եւ դիւանագիտական յարաբերութիւնների հաստատման ուղին: Այսուհանդերձ, հարկ է նշել, որ ինչպէս բանակցութիւնների գործընթացի, այնպէս էլ բաց սահմանների պայմաններում ապագայ դիւանագիտական յարաբերութիւնների ճիշտ կազմակերպմամբ Հայաստանում թուրքական տնտեսական, քաղաքական եւ մշակութային էքսպանսիայի սպառնալիքները հնարաւոր է չէզոքացնել: Թուրքիայի հետ դիւանագիտական յարաբերութիւնները, սահմանների բացումը Հայաստանի համար ոչ մի դէպքում չպէտք է դառնան ինքնանպատակ: Եւ Երեւանը ոչ մի դէպքում չպէտք է յանուն յարաբերութիւնների նորմալացման համաձայնի թուրքական առանց բացառութեան բոլոր նախապայմաններին: Գլոբալ եւ տարածաշրջանային մակարդակներում աշխարհաքաղաքական իրողութիւնները սրընթաց փոխւում են՝ մեզ համար մշտապէս ե՛ւ նոր վտանգներ, ե՛ւ նոր հնարաւորութիւններ ստեղծելով: Եւ այդ հնարաւորութիւններից հարկ է ակտիւօրէն օգտուել: Պայմանականօրէն ասած՝ Թուրքիայի հետ յարաբերութիւնները կարգաւորելու նպատակով Հայաստանը կարող է աչք փակել ընդհանուր անցեալի մութ էջերի վրայ եւ նայել բացառապէս ապագային: Իսկ ընթացիկ աշխարհաքաղաքական եւ աշխարհագրական իրողութիւններն այդ հեռանկարը դարձնում են անայլընտրանք:

*Անալիտիկոն*

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),

Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1913 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 21 ԱՊՐԻԼ 2022 | ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. | عدد رقم ١٩١٣ الخميس ٢١ أبريل ٢٠٢٢


## ՈՒՔՐԱԻՆԱՅԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԵՒ ՏԱՌԱՊԱՆՔԻ ԱՊՐԱՆՔԱՅՆԱՑՈՒՄԸ

2022 Փետրուար 22-ին Ռուսաստան արշաւեց Ուքրաինայի վրայ: Սկսաւ պատերազմ՝ որ կը շարունակուի մինչեւ այսօր:

Նմանութիւններ կան Աֆղանստանի պատերազմի հետ: Ամերիկայի գաղտնի գործակալութիւնը իսլամական ծայրայեղական տարրեր ստեղծելով եւ զինելով Աֆղանստանի մէջ, Խորհրդային Միութիւնը ներքաշած էր ստիպողական պատերազմի մէջ՝ որուն ո՛չ կը ձգտէր, ո՛չ ալ պատրաստ էր: Աֆղանստանի պատերազմը Խորհրդային Միութիւնը յաջողապէս տկարացնելու գործիքներէն մէկն էր: Դրամատիրական արեւմուտքը կ՚ուզէր այդ պատերազմը:

Ուքրաինայի մէջ, քաղաքականապէս անգրագէտ արեւմըտամէտ օլիկարքներու իշխանութեան գլուխ անցնելէն ետք, նաթոյապաշտ արեւմուտքը՝ ԱՄՆ-ի գլխաւորութեամբ եւ հովանաւորութեամբ, բաց դաշտ գտաւ խաղալու այնտեղ: Ռուսաստանը մէյ մը զգուշացուց բոլորին՝ 2014-ին շատ դիւրութեամբ գրաւելով Ղրիմը, կամ, ինչպէս Ռուսաստան կ՚ըսէ՝ իրեն վերադարձնելով Խրուշչեւի տուած նուէրը ուքրաինացիներուն:

ԱՄՆ-ը հրահրեց, առանց վերջնականապէս զինելու Ուքրաինան, առանց զայն դարձնելու Ռուսաստանէն պաշտպանուելու ընդունակ: Ուժային տարածութիւն ձգեց ռուսական յարձակումի համար:

Աֆղանստանի նման, այստեղ եւս հրահրեց անջատողական խումբեր: Բայց, ինչպէս այս պատերազմը ցոյց տուաւ, այդ խումբերը չունէին կրօնքի կամ դատի մը համար զոհուելու փափաքը, բան մը՝ որ զիրենք մեծապէս կը տարբերէր ծայրայեղ իսլամականներէն: Եւ ի զուր չէր որ արեւմուտքը անընդհատ կը դիմէր ծայրայեղ կրօնապաշտ իսլամականներուն, քանի որ դատ մը ունէին պաշտպանելու՝ անիրական, երեւակայական, ցնորական, հակամարդկային, եւ որուն համար պատրաստ էին զոհուելու: Դիւրին ճամբան էր: Սուրիոյ կործանումը տեղի ունեցաւ ոչ թէ ինքնաբուխ իսլամականներու ձեռքով, այլ արեւմտեան գործակալութիւններու կողմէ յատուկ ստեղծուած ու ֆինանսաւորուած ծայրայեղականներու դաշտային առաջնորդութեամբ:

Ռուսաստան՝ տարածաշրջանի հզօրագոյն երկիրը, ոչ մէկ զիջում պիտի կատարէ իր սեփական ապահովութեան (անվտանգութեան) համար: Ուքրաինան իր ապահովութեան գլխաւոր երաշխիքներէն մէկն է՝ իր պետական տարածութեան շարունակութիւնը: Ռուսաստանը կորսնցուց Խորհրդային Միութիւնը, Պալթեան երկիրները: Ուքրաինան եւս՝ քիչ մը շատ է:

Ուքրաինայի նախագահ Զելենսքին վստահ էր՝ որ պատերազմի ժամանակ ՆԱԹՕ պիտի պաշտպանէ իրեն: ՆԱԹՕ յայտարարեց՝ մենք պիտի չմասնակցինք, եւ Զելենսքի չուշացաւ իր յուսախաբութիւնը յայտնել: Ի՞նչ կը կարծէր: ԱՄՆ-ը համաշխարհային պատերազմի մէ՞ջ պիտի մտնէր Ուքրաինայի համար: Ուքրաինական խաղը հասցէագրուած էր Ռուսաստանին:

Քաղաքական արդիւնքներուն մասին տակաւին վաղ է խօսիլ: Ռազմական առումով, անիկա պիտի նոր շուկաներ բանայ զինարտադրական ընկերութիւններուն համար, Ռուսաստանը վստահաբար իր նոր արտադրած զէնքերը արդէն կը փորձարկէ դաշտի վրայ՝ որմէ պիտի բարձրանայ ռուսական զէնքին արժէքը: Ելքը՝ Ռուսաստանի համար, հաւանաբար Աֆղանստանէն շատ տարբեր ըլլայ:

Պատերազմ, զէնք, դրամ, ապա անդրազգային ընկերութիւններ՝ որոնք պիտի վերականգնեն Քիեւը, Ուքրաինայի փլատակները:

Արեւմտեան լրատուամիջոցներուն համար պատերազմը դարձաւ հոլլիուուտեան ֆիլմի ասպարէզ՝ բացարձակ բարիի եւ չարի կտրուկ հակադրութեամբ, Զելենսքի՝ ընդդէմ Փութինի:

Իսկ մա՞րդը: Որո՞ւն կը հետաքրքրէ մարդը՝ պատերազմէն տուժածը: Բայց եւ այնպէս, մարդուն ալ չմոռցան: Աւելի ճիշդ՝ չմոռցան մարդն ալ դարձնել քաղաքական խաղի առարկայ:

Այսպէս: Արեւմտեան զանգուածային լրատուամիջոցները անընդհատ կը խօսին ուքրաինացի գաղթականներուն եւ պատերազմէն տուժածներուն մասին, ցոյց տալով անոնց ողբն ու տառապանքը: Մինչեւ այստեղ՝ հրաշալի: Բայց երբուընէ՞ արեւմուտքը մտահոգուած է գաղթականներով եւ տառապեալներով, երբուընէ՞ մտահոգուած է... մարդով: Ուքրաինացի գաղթականութիւնը այդ լրատուամիջոցներուն մէջ կը ներկայացուի իբրեւ զոհեալ մերինները. «մեզի նման եւրոպացիներ են անոնք», «մեզի նման են անոնք», «մեզի նման սպիտակ մաշկ ունին, չէկ մազեր», «մեզի նման քաղաքակիրթ են», «մեզի նման կը կենցաղավարեն»: Ոչ միայն այս բոլորը անընդհատ կը կրկնուի, այլեւ հեռատեսիլի պաստառներուն վրայ կազմակերպուած պատկերախաղերով կ՚ապրանքայնացուի տառապանքը՝ դիտորդին դնելով հեշտասահ դիւրագրգռութեան եւ անկայուն զգացական հոգեվիճակի մէջ, փոխանակ զայն դարձնելու կայունօրէն բանական, իրատեսօրէն դատողական եւ արթունօրէն գիտակցական, զգօն՝ տառապանքի բուն պատճառներուն նկատմամբ, ուրեմն՝ պատրաստ պայքարելու պատճառները վերացնելու համար: Տառապանքը դառնալով փոխանակային արժէք՝ ան կը սպառի ինքն իր մէջ, անկարող կարեկցանքէն անդին մղելու իրական գործօղութեան՝ ընդդէմ պատճառներուն:

Լաւ, բարի ու եւրոպացի մարդոց տառապանքի ցուցադրութեամբ, ցուցադրողը՝ կարեկից արեւմուտքը, կը դառնայ նոյնպէս լաւ, բարի ու մարդասէր: Բարի կողմը՝ արեւմուտքը, ընդդէմ չար կողմին՝ Փութին-Ռուսաստանին:

Բայց մեր յիշողութիւնը շատ կարճ է: Տակաւին նոր էր Իրաքէն եւ Սուրիայէն արեւմուտք գաղթած տառապեալներուն բազմութիւնը, որ արեւմտեան լրատուամիջոցներուն մէջ հազիւ ներկայացուեցաւ, իսկ երբ ներկայացուեցաւ՝ անոր տիպարը երեւցաւ յետամնաց, թափթփած, կռուազան, անդաստիարակ, անքաղաքակիրթ: Ան պէտք չունէր կարեկցանքի: Ինչպէ՞ս կրնար արեւմուտքը իրեն թոյլատրել արաբներուն եւ իսլամներուն դրական տիպարը ստեղծել, տառապեալ, ընչազուրկ, անտէր ու անտիրական այդ գաղթականներուն՝ որոնց կացութիւնը ոչ մէկ բանով կը զիջէր ուքրաինացիներուն:

Եկանք հայերուն: Մենք՝ որ երբեք չէինք հետաքըրքրուած արաբ գաղթականներով, յանկարծ նախանձութեան նշոյլներ ցուցաբերեցինք ուքրաինացի գաղթականներուն հանդէպ արեւմուտքի տածած համատարած կարեկցանքին նկատմամբ: Ըսինք՝ միջազգային համայնքը մեծ ուշադրութիւն կը դարձնէ ուքրաինացի գաղթականներուն նկատմամբ, բայց ոչ մէկ անգամ արտայայտուած է 44-օրեայի հայ գաղթականներուն մասին: Չկրցանք հասկնալ՝ որ արեւմուտքի հետաքրքրութիւնը ուքրաինացիներուն նկատմամբ կապ չունի մարդկային գործօնին հետ: Ուքրաինացի գաղթականը եւ տառապեալը կարեւոր են՝ այնքան ժամանակ որ անոնք կը ծառայեն լրատուամիջոցներուն իբրեւ ապրանքային ծանուցում:

Լաւ է որ արեւմուտքը չհետաքրքրուեցաւ հայ գաղթականներով, լաւ է որ հայ գաղթականը չվերածուեցաւ առեւտրական առարկայի:

Ա.

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԻՆՁ ՊԷՏՔ Է ՄԵՂԱԴՐԵԼ ՈՉ ԹԷ ՀՈՂԵՐ ՅԱՆՁՆԵԼՈՒ, ԱՅԼ ՀՈՂԵՐ ՉՅԱՆՁՆԵԼՈՒ ՄԷՋ. ՓԱՇԻՆԵԱՆ

*Ես մեղաւոր եմ, որ 2018-19 թուականներին մեր հանրութեան առաջ չեմ կանգնել ու չեմ բարձրաձայնել, որ մեր բոլոր, կրկնում եմ՝ բոլոր հեռու եւ մօտիկ բարեկամները մեզնից ակնկալում են, որ մենք Ադրբէջանին յանձնենք 7 յայտնի շրջանները եւ իջեցնենք Արցախի կարգավիճակի համար մեր սահմանած նշաձողը՝ յայտարարել է Նիկոլ Փաշինեանը:*

*Ապրիլի 13-ին խորհրդարանում ունեցած նրա ելոյթի՝ Ղարաբաղեան խնդրին, 2020 թուականի պատերազմին եւ յետպատերազմական զարգացումներին, հայ-ադրբէջանական ընթացիկ բանակցութիւններին վերաբերող հատուածները՝ ստորեւ.*

- Ես ի սկզբանէ ընդունել եմ իմ մեղքն ու պատասխանատուութիւնը թէ՛ պատերազմի եւ թէ՛ պարտութեան համար: Բայց չեմ ընդունել ու չեմ ընդունում այն մեղադրանքները, որ ինձ հասցէագրում են ընդդիմադիրները 2020թ.-ի Նոյեմբերի 9-ից յետոյ՝ հողեր յանձնելու եւ դաւաճանութեան մէջ:

- Ինձ պէտք է մեղադրել ոչ թէ հողեր յանձնելու, այլ հողեր չյանձնելու մէջ: Յանձնելով գուցէ փրկէի հազարաւոր կեանքեր, իսկ չյանձնելով, փաստօրէն, հազարաւոր զոհերի յանգեցրած որոշումների հեղինակ դարձայ:

Սրանով պատմութիւնը չի աւարտւում: Որովհետեւ մի հարց է՝ ժամանակին հանրութեան, ժողովրդի հետ խօսելը, երկրորդ հարցն է՝ զիջումների անհրաժեշտութեան մէջ ժողովրդին համոզելը, երրորդ հարցն է այդ ամէնը կեանքի կոչելը:

- Այսօր միջազգային հանրութիւնը մեզ յստակ ասում է՝ լինել աշխարհի միակ երկիրը, որը երկկողմ մակարդակով չի ճանաչում Թուրքիայի դաշնակից Ադրբէջանի տարածքային ամբողջականութիւնը, վտանգ է ոչ միայն Արցախի, այլեւ Հայաստանի համար: Միջազգային հանրութիւնն ասում է՝ մի փոքր իջեցրէք ԼՂ կարգավիճակի հարցում ձեր նշաձողը, հակառակ դէպքում մեզ վրայ յոյս չդնէք:

- Հայաստանը երբեք Ադրբէջանից տարածքային պահանջներ չի ունեցել Ղարաբաղի հարցը ոչ թէ տարածքի, այլ իրաւունքի հարց է:

Եթէ նախկինում մենք հիմքում դնում էինք ԼՂ կարգավիճակը՝ դրանից բխեցնելով անվտանգութեան երաշխիքներն ու իրաւունքները, այժմ հիմքում դնում ենք անվտանգութեան երաշխիքներն ու իրաւունքները՝ դրանից բխեցնելով կարգավիճակը: Այլ կերպ ասած՝ մենք արձանագրում ենք, որ կարգավիճակը տուեալ իրադրութեան մէջ ոչ թէ նպատակ է, այլ միջոց՝ ապահովելու ԼՂ հայութեան անվտանգութիւնն ու իրաւունքները:

- Այստեղ, իհարկէ, հարց է առաջանում նաեւ ԼՂ-ում ՌԴ խաղաղապահ զօրախմբի գործունէութեան հետ կապուած: Տարակուսանքի տեղիք է տալիս այն փաստը, որ երէկ Ռուսաստանի խաղաղապահ զօրախումբը չի թոյլատրել Հայաստանի Ազգային Ժողովի մի

☞ 4

# ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ
## (Մահուան 50-ամեակին առիթով)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

**Թաշեան եւ ազգային գրականութիւնը**

Բենիամին Թաշեան կը հակախօսէ Շուշանեանին՝ թէ «Հայ գրական սերունդը պիտի պաշտպանէ «քաղքենի» գրականութիւնը, այն միակ պատճառով որ անիկա իր ստեղծագործութիւնն է մասամբ, իր հայրերուն ժառանգութիւնը՝ ամբողջութեամբ, եւ անոնց կեանքի հարազատ ցոլացումը»: Հայութեան սեփականութեան եւ հայրերու ժառանգութեան հասկացողութիւններու առաջ մղումով՝ ազգայինն ու զգացական անցեալը Թաշեանի մօտ կը միախառնուին իրարու, հերքելով դասակարգային շերտերու գոյութեան կարեւորութիւնը գրականութեան մէջ:

Զգացականութեան չափը քիչ մը եւս կ՚աւելնայ յաջորդ նախադասութեան մէջ. «Մենք պէտք չունինք ուրանալու մեր քրտինքով ու մեր հոգեկան երկունքով ստեղծուած գրականութիւնը եւ այն սերունդները, որոնք մեզմէ առաջ եւ մեզմէ աւելի տառապեցան այդ երկունքով»: Մեր քրտինքն ու հոգեկան երկունքը կը դառնան մեկնաբանական վերջնագիր բառեր՝ դարձեալ ազգային սեփականութեան տարրի («մեր») վերադասութեամբ:

Վերջապէս, Թաշեան կը հիմնուի այն ընդունուած դրոյթին վրայ՝ թէ «պէտք չունինք, դարձեա՛լ, *արխիւ* նետելու ի՛նչ որ մեզի կը մնայ հինէն, ի՛նչ որ կը մնայ Շէյքսփիրէն ու Կէօթէէն (երկու անուն գոնէ յիշած ըլլալու համար), որոնց կերտած գրականութիւնն է, որ Շուշանեան կ՚որակէ սնանկ ու յետընթաց, անպատասխանատու լրջութեամբ»:

Գալով գրողներուն, անոնք չեն կրնար դասակարգի մը շահերուն ծառայել, առաւել եւս պայքարիլ դասակարգի մը դէմ. «[Ի]նչո՞վ արդեօք Վալէրին կամ Բրուսթը, Պօտլէռը կամ Վէրլէնը, Անտրէ Ժիտը կամ Ժօրժ Տիւհամէլը, իրենց արուեստով ու գրական վաստակով, կը ծառայեն դրամատէր ու քաղքենի դասակարգերուն կամ անոնց շահերուն: Ի՞նչ կարելի է գտնել անոնց գործերուն մէջ, որ իբրեւ զէնք ծառայէ տիրող դասակարգին ձեռքը»:

Թաշեանի վերագրումներով պիտի հասկնալ՝ որ ազգայինը գործ չունի դասակարգերու հետ: Ազգային գրողն է առաջնայինը, փոխանակ պրոլետար գրողին. «Ամէն գրականութիւն պէտք է բխի ցեղին հոգիէն: Գրականութիւնը, վերջապէս, ռէժիմ չէ որ փոխուի «հարուածային կարգեր»ով: Կեանքի բնաշրջական ձեւափոխութենէն անկախ, ո՛չ մէկ գրականութիւն կը դիմանայ»:

**Նարդունի եւ միջազգային գրականութեան հերքումը**

Միջազգային գրականութեան հերքում պիտի նշանակէ ազգային գրականութեան հաստատում: Նարդունի կը բռնէ հերքումի, այլ ոչ հաստատումի ճամբան՝ թերեւս հակադրուելու համար Շուշանեանի (եւ իր նմաններուն) վերը յիշատակած միջազգային գրականութեան:

Նախ կը գրէ՝ որ անիմաստ բան մըն է միջազգային գրականութիւն յորջորջումը: «[Ծ]իծաղելի է հարցնել գրողի մը թէ լաւագոյն ներշնչումը միջազգայի՞ն է թէ ազգային: Խնդիրը լաւ գրելն է»:

Առաջին հայեացքէն «չէզոք» թուացող արտայայտութիւնը, արդարեւ, շրջապատուած է միջազգային գրականութեան գաղափարի անզիջող բացասումով. «[Ա]յս հարցը բռնազբօսիկ է: Գրականութեան մէջ նման հարց գոյութիւն չունի: Գրողի մը համար, հակադրական հարց մըն է ան: Փուճ, անիմաստ ու ծիծաղելի խնդիր մը: […] Ու հիմա անկեղծ, համարձակ, բարեւենք «միջազգային գրականութեան»… խրտուիլակը»: Անզիջողական հերքումը կը վերաբերի միջազգայինին՝ բայց ոչ ազգայինին: Ուրեմն, ազգայինը ընդունուած է իբրեւ լաւ գրելու գլխաւոր ազդակ:

«Ազգ» բառը կը նշանակէ քաղաքակրթութիւն, կ՚աւարկէ Նարդունի, իսկ քաղաքակրթութիւն կը նշանակէ ժողովուրդի ոճ, շրջանի եւս եւ երկիրի արտադրութիւն: Ուրեմն, չես կրնար միջազգային ըլլալ, չես կրնար դուն ինքդ չըլլալ:

Ան նոյնիսկ աւելի հեռուն կ՚երթայ: Համոզուած է՝ որ միջազգային գրականութիւն անունին տակ գաղութատիրական երկիրները կը պարտադրեն *իրենց* գրականութիւնը. «Եւրոպական գաղթային քաղաքականութիւնը, որ շատ հին չէ, ծնունդ տուաւ «գրական աշխարհակալութեան» մը անհրաժեշտութեան: Կարելի է անուանել զայն ուրիշ անունով մը, ի պատիւ ֆրանսացիներուն «գրական նափոլէոնիսմ»: Կարելի է այս շարժման ծագումը տանիլ մինչեւ Հելլէնները, որոնք նախ քան Մեծն Աղեքսանդր, իրենց հոմերական երգերով կը հելլէնացնէին ասիական եզերքներու ժողովուրդներու ճաշակը: Տարբեր չեն շարժիր հիմա անոնք, որ «միջազգային գրականութեան» կամ «գրական աշխարհակալութեան» զէնքերով կը թափանցեն օտար ժողովուրդներու սիրտը, կը թմրեցնեն զայն, կը ներարկեն իրենց ճաշակը, կը պատուաստեն իրենց արուեստը, եւ տկար ու յաղթուած ժողովուրդը իր ուժը կու տայ՝ վեր բռնելու համար աշխարհակալին պատուաստը: Ռուսիա, հիմա, իր գրականութիւնը կը պատուաստէ դողահար Հայաստանիկին վրայ. եւ Ֆրանսա իր արուեստը՝ հպատակ գաղութներուն մէջ»:

Արդ, միջազգային գրականութեան նկատմամբ Նարդունին իր արհամարհանքը կը յայտնէ յաջորդական փուլերով, որոնց պարզ կորիզը այն է՝ ոչ չի կրնար գոյութիւն ունենալ միջազգային գրականութիւն, քանի որ ազգերը կը տարբերին իրարմէ, իսկ միջազգային գրականութիւն հասկացողութիւնը ուժեղ պետութիւններու կողմէ տկարներուն շահագործելու միջոց մըն է:

Հարցը վերացական տարողութիւն կը ստանայ Նարդունիի մօտ, երբ վերջապէս կը պնդէ՝ որ համաշխարհային խաղաղութիւնը օտարամոլ ու սնանկ հասկացողութիւն մըն է, հետեւաբար, մաս չի կրնար կազմել ազգային գրականութեան մտածողութեան. «Իսկ երբ ձգենք, որ եւրոպական գիրքերու […] յիմար տեսութիւններով թունաւորուած մեր տղեկները, համաշխարհային խաղաղութիւն կոչուած միտքի սնանկանութենէն տառապող մեր երիտասարդները բարբաջեն գիշեր ցորեկ, ապահովաբար կը մնանք նորէն կախկախ ժողովուրդը»: Համաշխարհային խաղաղութիւնը ուրիշինն է: Արդէն ուղղակի խուսափում մը միջազգային-համաշխարհային բառէն՝ ընդհանրապէս:

**Արտաքին օժանդակութիւն**

Շուշանեան պէտք զգացած է իր կարծիքը հաստատել ուրիշ գրողներու կարծիքներու թուարկումով:

Կը յիշատակէ Էմմանուէլ Պէրլի անունը՝ որ «վերջերս լուրջ ամսագրի մը մէջ լոյս ընծայեց յօդուածներու շատ բուռն ու շատ արդար շարք մը, […] նոյն հեղինակին մէկ ուրիշ գրքին հետ *Մահ քաղքենի մտածման*»:

Օսքար Ուայլտ «մարդ մըն էր որ լաւ կը ճանչնար բարձր դրամատիրութիւնը, տառապած ըլլալով իսկ, յանուն «գեղարուեստի», իր մարմնին վրայ: Ան ունի «արուեստի եւ ընկերվարութեան մասին այնպիսի խորհրդածութիւններ որ անտարակոյս զարմացում պիտի պատճառէին ձեզ»: «Ձեզ»-ը ուղղուած է Թաշեանին, որ նախապէս քննադատած էր Շուշանեանի բանուորական գրականութեան տեսութիւնը:

Թաշեան եւ Նարդունի, միւս կողմէ, պէտք չեն ունեցած իրենց ազգայինին համար բերել արտաքին օրինակներ: Իբրեւ գաղափարախօսութիւն, ազգայինը շատ աւելի ուժեղ էր, ընդունուած եւ ազդեցիկ քան ընկերվարութիւնը, աւելի ամրացած՝ արտաքին հաստատումի կարիքը ունենալու համար:

**Ներգրաւուած գրականութիւն ընդդէմ ինքնավար գրականութեան**

Կամ՝ Բանուորական գրականութիւն ընդդէմ գեղեցկագիտական գրականութեան:

Երբ Շուշանեան կը խօսի հասարակութեան փոփոխութեան գործընթացքին մասնակցելու գրականութեան կարողութեան մասին, ան ընդունած կ՚ըլլայ գրականութեան ներգրաւուածութիւնը:

Թաշեան կողմնակից է գրականութեան ինքնավարութեան՝ գրականութիւն գրականութեան սկզբունքին:

Ի տարբերութիւն Շուշանեանէն, Թաշեանի համար ընկերվարական (socialist) ըլլալը քննարկումի նիւթ չէ՝ «[մ]ենք ուզենք-չուզենք ընկերվարական ենք, դատիարակութեա՛մբ ալ, խառնուածքո՛վ ալ»: Արդարեւ, ըստ իրեն, գրականութիւնը պէտք չէ խառնել ընկերաբանութեան (sociology) հետ. «Բայց գրականութիւնը ընկերաբանութիւն չէ: Եւ զտարիւն գրող ըլլալու համար անհրաժեշտ չէ ընկերվարականի վկայական ունենալ»:

Թաշեան կ՚աւելցնէ. «Հարկ կա՞յ յիշեցնելու, գէթ մէկ անգամ, թէ գրականութիւնը գերազանցօրէն ազատ ստեղծագործութեան դաշտ է եւ թէ ազատութիւնը, այս նահատակուած աստուածը, ամէնէն աւելի եւ ամէնէն շատ արուեստի ու գրականութեան մէջ է, որ կը յարգուի ու կը մեծարուի»: Ըսել կ՚ուզէ՝ որ գրականութեան

⇘ 4

## ՀԱՅԱՍՏԱՆ

### ՄԱՐՏԱԿԵՐՏԻ ՀԱՏՈՒԱԾՈՒՄ ՇՓՄԱՆ ԳԻԾԸ ԽԱԽՏԱԾ ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ ԶՕՐՔԵՐԸ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԻՑ ՅԵՏՈՅ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԵԼ ԵՆ ՎԵՐԱԴԱՌՆԱԼ ԵԼՄԱՆ ԴԻՐՔԵՐ

Ապրիլի 15-ին Մարտակերտի շրջանի Սեյսուլան բնակավայրի մօտակայքում Ադրբեջանի զինուած ուժերը շփման գծի միջդիրքային տարածքի չէզոք գօտու հատուածում խախտում են կատարել:

*Արմենպրէսի* փոխանցմամբ՝ Արցախի տեղեկատուական շտաբը տեղեկացնում է, որ Արցախում ռուսական խաղաղապահ զօրակազմի կողմից ձեռնարկուած բանակցութիւնների արդիւնքում ադրբեջանական զօրքերը համաձայնուել են վերադառնալ ելման դիրքեր:

*Աւելի վաղ Մարտակերտի հատուածում ադրբեջանցիների կողմից շփման գիծը խախտելու մասին յայտնել էր Ռուսաստանի պաշտպանութեան նախարարութիւնը՝ յաւելելով, որ միջոցներ են ձեռնարկւում միջադէպը կարգաւորելու ուղղութեամբ:*

## ԱՐՑԱԽ

### ՂԱՐԱԲԱՂԻ ՆԱԽԱԳԱՀԸ ՍԱՀՄԱՆԱՓԱԿՈՒՄ Է ՄԱՄՈՒԼԸ

Ղարաբաղի նախագահի հրամանագրով՝ սահմանուել են ԼՂ տարածքում ռազմական դրութեան պայմաններում տեղեկութիւնների հրապարակման կամ տարածման կանոնները:

Ըստ հրամանագրի՝ ռազմական բնոյթի, պետական անվտանգութեանը վերաբերող ոչ ռազմական բնոյթի տեղեկութիւնները, Ղարաբաղի սահմանային իրավիճակին վերաբերող տեղեկատուութիւնն եւ հրապարակումները, մարտական տեխնիկայի, զինուած ուժերի եւ այլ զօրքերի վերաբերեալ հրապարակումները կատարւում են բացառապէս պետական մարմինների կողմից տրամադրուած կամ հրապարակուած պաշտօնական յղումով՝ ամբողջութեամբ արտացոլելով պաշտօնական տեղեկատուութիւնն՝ առանց խմբագրման:

Արգելւում է «Արցախի պաշտպանունակութեան ու անվտանգութեան դէմ ուղղուած քարոզչութիւնը»: Հաղորդումների հետ կապուած պաշտօնական յայտարարութիւններով հանդէս են գալիս Ղարաբաղի նախագահը, Ղարաբաղի համապատասխան ոլորտի պետական լիազօրուած մարմինները, իսկ այլ անձինք կարող են դա անել Ղարաբաղի նախագահի յանձնարարութեամբ:

Ըստ հրամանագրի՝ պաշտօնատար անձինք եւ պետական կառավարման մարմինների ներկայացուցիչներն, իրենց լիազօրութիւնների շրջանակներում, կարող են հանդէս գալ հաղորդումների վերաբերեալ յայտարարութիւններով եւ մեկնաբանութիւններով միայն նախագահի աշխատակազմի տեղեկատուութեան գլխաւոր վարչութեան հետ համաձայնեցուած դիրքորոշումներին համապատասխան:

Կանոնների պահպանման նկատմամբ հսկողութիւն է իրականացնում Ղարաբաղի ոստիկանութիւնը: Սահմանուած կանոնների խախտումը ենթադրում է ե՛ւ վարչական, ե՛ւ քրէական պատասխանատուութիւն:



ՀԱՅԱՍՏԱՆ

## ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՕՐԱԿԱՐԳԸ ՈՒՆԻ ՇԱՏ ԼԱՅՆ ՀԱՆՐԱՅԻՆ ԿՈՆՍԵՆՍՈՒՍ. ԼԵՆԱ ՆԱԶԱՐԵԱՆ

Ազգային Ժողովում Քաղաքացիական Պայմանագիր խմբակցութեան պատգամաւոր Լենա Նազարեանը յայտարարել է, որ քաղաքացիների եւ զոհուած զինծառայողների հարազատների հետ հանդիպումների ժամանակ տեսնում է, որ խաղաղութեան օրակարգը ունի շատ լայն հանրային կոնսենսուս: Ինչպէս տեղեկացնում է *Արմենպրէսը*,


Լենա Նազարեան

Լենա Նազարեանն իր ելոյթում նշեց, որ խորհրդարանական ընդդիմութիւնը շարունակաբար մերժում է հանդիպելու եւ բոլոր հարցերի պատասխանները ստանալու վերաբերեալ Կառավարութեան առաջարկները:

«Իրականում, կարծում եմ, շատ բան չի էլ կորցնում, որովհետեւ ամէն ինչ ժամանակի ընթացքում ասուել է եւ հիմա էլ ասւում է բաւականին բաց եւ հրապարակային: Կարծում եմ՝ իրենց էլ պէտք է ճիշտ հասկանալ: Հօ չե՞ն կարող սեղանի շուրջ առանց փակագծերի խօսակցութիւնից յետոյ դուրս գալ եւ շարունակել ձեւանալ անտեղեակ: Իսկ այսպէս, իբր, անիրազեկ են, հետեւաբար անպատասխանատու: Շատ յարմար կարգավիճակ են ընտրել իրենց համար: Սա պսեւդօ ընդդիմութեան կարգավիճակ է, եւ երեւի պէտք է իրենց ընդունենք այդպիսին», - ասաց Նազարեանը:

Պատգամաւորի համար, սակայն, զարմանալի է քաղաքացիական հանրութեան կեցուածքը.

«Երկու ամիս առաջ էր, որ քաղաքացիական հանրութեան ներկայացուցիչներ՝ մեծամասամբ կանայք, շատ արդարացի զայրոյթով հաւաքուել էին Կառավարութեան շէնքի դիմաց (նախօրէին սահմանին ↳ 4

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԳՈՐԾԸՆԿԵՐՆԵՐԸ ԱՋԱԿՑՈՒՄ ԵՆ ՀԱՅ-ԹՈՒՐՔԱԿԱՆ ԿԱՐԳԱՒՈՐՄԱՆ ԳՈՐԾԸՆԹԱՑԻՆ

Թուրքիան Հայաստանի հետ յարաբերութիւնների կարգաւորման գործընթացը շարունակում է պայմանաւորել Հայաստանի ու Ադրբէջանի միջեւ յարաբերութիւններով, եւ դա արտայայտւում է հրապարակային յայտարարութիւններում. այս մասին Ապրիլի 13-ին, ԱԺ-ում կառավարութեան ծրագրի՝ 2021-ի կատարման ընթացքի եւ արդիւնքների զեկոյցի քննարկման ժամանակ իր ելոյթում ասաց վարչապետ Նիկոլ Փաշինեանը:

«Հայաստանի ու Թուրքիայի յատուկ ներկայացուցիչները պայմանաւորուել են, որ գործընթացը պիտի լինի առանց նախապայմանների, ու մենք այդպէս էլ ընկալում ենք ու այս տրամաբանութեամբ ենք շարժւում», - պատասխանելով Քաղաքացիական Պայմանագրի պատգամաւոր Սարգիս Խանդանեանի հարցին՝ յայտարարեց վարչապետ Նիկոլ Փաշինեանը:

Վարչապետի խօսքով՝ Հայաստանի ու Թուրքիայի միջեւ յարաբերութիւնների կարգաւորման գործընթացը կարող է արագ արդիւնքներ չունենալ, բայց միւս կողմից, եթէ արագ արդիւնքներ չլինեն, ըստ նրա, գործընթացը կարող է լճանալ:

Նիկոլ Փաշինեանը նաեւ յայտարարեց, որ Հայաստանի միջազգային գործընկերները աջակցում են կարգաւորման գործընթացին եւ այս դաշտում դիմադրութիւն չկայ:

Մարտի 12-ին Անթալիայի Դիւանագիտական ֆորումի շրջանակում կայացել է Հայաստանի ու Թուրքիայի արտաքին գործերի նախարարներ Արարատ Միրզոյեանի ու Մեւլութ Չաւուշօղլուի հանդիպումը:

Հայաստանի ԱԳՆ-ն հանդիպման արդիւնքներով տարածած հաղորդագրութիւնում նշել է. «Արտգործնախարարները վերահաստատել են իրենց պատրաստակամութիւնը՝ իրականացնելու Հայաստանի եւ Թուրքիայի միջեւ յարաբերութիւնների լիարժէք կարգաւորմանն ու բարիդրացիական յարաբերութիւնների հաստատմանն ուղղուած գործընթացն առանց նախապայմանների»:

## ՀԱՐՑԱԶՐՈՅՑ ԱՐԱԲԱԳԻՐ ԹԱՐԳՄԱՆԻՉ ԿԱՐՕ ԹԱՊԱՔԵԱՆԻ ՀԵՏ

**Հարցազրուցավար՝ Հ. ԱՒԱԳԵԱՆ**

Կարօ Թապաքեան ծնած է 1968-ին, Գահիրէ:

1988-ին աւարտած է ֆրանսական Collège des Frères դպրոցը:

1990-ին շրջանաւարտ եղած է Գահիրէի Համալսարանի ֆրանսական գրականութեան բաժանմունքէն:

1992-ին ստացած է օդագնացութեան եւ զբօսաշրջիկութեան (aviation and tourism) վկայական Գահիրէի Ամերիկեան Համալսարանէն:

1998-ին հետեւած է համակարգիչի ծրագիրներու դասընթացքներու եւ ստացած վկայական:

Վերջապէս, Գահիրէի Ֆրանսական Մշակութային Կեդրոնը ուսանած է ֆրանսական գրականութիւն՝ հեռակայ կարգով ստանալով Փարիզի Սորպոնի վկայական:

Վարած է զանազան պաշտօններ, մինչեւ հասած տնօրէնի օգնականի աստիճանին Հարաւսլաւիոյ օդանաւային ընկերութեան մէջ (2004-2006):

2006-էն սկսեալ քարտուղարն է National Actuarial Consultancy ընկերութեան Ահմատ Մոհարրամի գրասենեակին:

**Հարցում – 1998-ին Գահիրէի մէջ սկսաւ հրատարակուիլ *Արեւ* արաբերէն ամսագիրը՝ իբրեւ համանուն հայերէն օրաթերթի յաւելուած: 2010-ին, վարչական փոփոխութեան հետեւանքով ան փոխուեցաւ *Արեգի* եւ անջատուեցաւ *Արեւ*էն: Թէ՛ *Արեւի* եւ թէ՛ *Արեգի* մէջ թարգմանած ես մեծ քանակութեամբ յօդուածներ արաբերէն լեզուի, լեզու մը՝ զոր կը տիրապետես կատարելապէս: Կրնա՞ս գաղափար տալ այդ յօդուածներուն մօտաւոր քանակին մասին եւ նկարագրել անոնց բովանդակութիւնը եւ ուղղութիւնը: Եւ արդեօ՞ք *Արեւը* եղած է գրական մասնագիտական գործունէութեանդ սկիզբը:**

Պատասխան – Իրօք, *Արեւ* ամսագիրին մէջ կատարած եմ առաջին քայլերս թարգմանական բնագաւառին մէջ: Թարգմանութիւնները կը ներկայացնէին մեծ այլազանութիւն մը, բայց բոլորը կը գտնուէին պատմական թարգմանութեան ոլորտին մէջ (հին, միջին, արդի եւ ժամանակակից շրջաններ), մեծ մասամբ ընդգրկելով եգիպտահայութեան պատմութիւնը, ինչպէս նաեւ Եգիպտոսի պատմութեան մէջ իրենց արժանի շնորհքը ունեցած հայ դէմքերու կենսագրութիւնները:

Ծանապարհիս սկիզբը՝ տակաւին կանգնած լուրջ մարտահրաւէրներու առջեւ, կատարեցի առաջին քայլերս *Արեւի* մէջ, հրատարակելով իմ երբեւէ առաջին թարգմանութիւնս (Յուլիս 1999 եւ յաջորդող թիւերը): Անիկա ֆրանսահայ հետազօտող Անժէլ Գաբոյեան-Գույումճեանի *Եգիպտոսը հայերու աչքով. ԺԱ.-ԺԷ. դարեր* (L'Egypte vue par des Arméniens: XIe-XVIIe siècles) գիրքին (Լիմոժ, 1988) համառօտ ներածութիւնն էր եւ հատուածական թարգմանութիւնը: Գիրքը կ'անդրադառնար Եգիպտոսի եւ Հայաստանի մշակութային եւ պատմական յարաբերութիւններուն մասին՝ հիմնուած հայ ճանապարհորդներու Եգիպտոս կատարած այցելութիւններու նկարագրութիւններուն վրայ: Անոնք այցելած են Հարաւային եւ Հիւսիսային Եգիպտոսի վանքերը եւ, ի միջի այլոց, մասնակցած սրբապատկերներու ստեղծումի աշխատանքներուն՝ որոնք կը պահպանուին մինչեւ այսօր: Գիրքը կը պատմէ նաեւ Գրիգոր Բ. Վկայասէրի այցելութիւնը Եգիպտոս ԺԱ. դարուն՝ հիմնելու եկեղեցի եւ վանք: Յօդուածը գտաւ մեծ արձագանգ:

Ասոր յաջորդեցին այլ թարգմանութիւններ *Արեւի* մէջ, օրինակ՝ լիբանանահայ ճարտարապետ Մարտիրոս Ալթունեանի կենսագրութիւնը (*Արեւ*, Նոյեմբեր 2000), եգիպտահայ ոսկերիչ Միհրան Պազըճեանի կենսագրութիւնը (*Արեւ*, Յունուար եւ Փետրուար 2004), Եդուարդ Արշարունիի ֆրանսերէն աշխատութիւնը քոլերայի մասին, տպուած Փոր-Սայիտ, 1915 (*Արեւ*, Դեկտեմբեր 2004, Յունուար, Փետրուար 2005), յօդուածներ Օննիկ Աւետիսեանի, Բիւզանդ Կոճամանեանի եւ Աշոտ Զօրեանի մասին (*Արեւ*, Հոկտեմբեր 1999), Նուպար Փաշայի նուիրուած յօդուածներու շարք (*Արեւ*, 2000-էն սկսեալ), յօդուածներ *The Armenian Mirror-Spectator*-էն, եւ այլն: Անոնց թիւը հասաւ շուրջ 70-ի: Առաջին ինքնագիր յօդուածս եղաւ Արցախի վերջին պատերազմի մասին (*Արեգ*, Ապրիլ 2021):



**Հ. – Ե՞րբ սկսած ես թարգմանել եւ ի՞նչ լեզուներու հետ առնչուած ես:**

Պ. – Թարգմանութիւններ սկսայ կատարել դպրոցի բարձրագոյն դասարանի (սանաուէյա) աշակերտական տարիներուն, յատկապէս երբ ընտրեցի գրականութեան բաժինը, ուր կը հետեւէինք նաեւ ֆրանսերէնէ արաբերէն թարգմանութեան դասընթացքներու՝ ֆրանսացի եւ եգիպտացի բարձրակարգ ուսուցիչներու հսկողութեամբ: Ապա հեռակայ ուսումով ստացայ Սորպոնի համալսարանի թարգմանութեան վկայական: Համալսարանական ուսումի տարիներուս ուժեղցան թարգմանութեան նկատմամբ ունեցած սէրս՝ գրաւելով ուշադրութիւնս եւ միտքս:

Կը տիրապետեմ ֆրանսերէն, անգլերէն, հայերէն եւ անշուշտ արաբերէն խօսակցական լեզուներուն: Ասոնք նաեւ այն լեզուներն են՝ որոնց կրնամ դիմել թէ՛ իբրեւ սկզբնաղբիւր եւ թէ վերջնական թարգմանական լեզու:

**Հ. – 1983-ին, Պէյրութի մէջ կը հրատարակուէր Նուպար Փաշայի ֆրանսերէն անտիպ յուշերը: Քու ինքնակամ որոշումովդ զայն կը թարգմանես արաբերէնի, որ կը հրատարակուի 2009-ին, Տար Ալ-Շուրուք եգիպտական յայտնի հրատարակչատան կողմէ: Կատարածդ կոթողային աշխատանք մըն էր՝ ընդամէնը 724 էջ: Իրազեկ եմ՝ որ Տար Ալ-Շուրուքէն առաջ հայերը մերժեցին զայն տպագրել, թէեւ Նուպար Փաշան եգիպտացիներուն ներկայացնելու հայկական պատումը կը գտնուի գագաթնակէտային վիճակի մէջ: Պէտք չկայ այս կէտին մասին աւելի անդրադառնալ: Կը փափաքէի տեղեկացնես՝ թէ թարգմանութիւնը լեզուական եւ իմաստային առումով ինչպիսի՞ մարտահրաւէրներ բացաւ առջեւդ, ինչպէս նաեւ ինչպէ՞ս յաջողեցար հասնիլ Տար Ալ-Շուրուքին եւ ի՞նչ էր անոր գնահատանքը:**

Պ. – Այո, Նուպար Փաշայի յուշերուն տպագրութիւնը մերժեցին որոշ հայեր, այլ ոչ բոլոր հայութիւնը: Բայց ասիկա աւելի լաւ եղաւ թէ՛ ինծի եւ թէ գործին համար: Աշխատութիւնը գնահատուեցաւ իբրեւ 2010 թուականի տասը լաւագոյն գրական գործերէն մէկը:

Նուպար Փաշայի յուշերու թարգմանութեան ընտրութիւնս եւս մարտահրաւէր մը եղաւ ինծի համար, բայց այս անգամ արդէն իբրեւ մասնագէտ թարգմանիչ՝ որ առաջին անգամ մուտք կը գործէր գիրքերու եւ գրական գործերու թարգմանութեան բնագաւառը, կապուած Եգիպտոսի արդի եւ ժամանակակից պատմութեան հետ:

Նուպար Փաշայի գործածած լեզուն եւ քաղաքական իմաստները ոչ մէկ դժուարութիւն յառաջացուցին ինծի համար, հակառակ որ իր նման անհատականութիւն մը անշուշտ պիտի մտածէր ու գրէր ամենայն խելացութեամբ, զգուշաւորութեամբ, այլեւ խորամանկութեամբ: Թարգմանութիւնը դժուար չեղաւ ինծի համար, պարզապէս որովհետեւ ապրեցայ տիպարը եւ օգտագործեցի տիպարներու վերլուծութեան կերպի մասին գիտութիւնս՝ զոր սորված էի ֆրանսական գրականութեան եւ պատմութեան դասընթացքներուն շնորհիւ: Ասիկա նպաստեց ուսումնասիրելու եւ բացայայտելու Նուպարի անհատականութիւնը եւ խորանալու անոր մէջ, մեծապէս դիւրացնելով բնագիրի ըմբռնումը:

Թէ ինչպէս հասայ Տար Ալ-Շուրուքին, իրականութեան մէջ, այնքան ալ դժուար չեղաւ: Պահանջեց ո՛չ միջնորդութիւն եւ ո՛չ ալ ոտնձգութիւն: Առաջին պահէն աշխատանքը ինքը պարտադրեց ինքզինք՝ երբ զայն ներկայացուցի Տար Ալ-Շուրուքին, շնորհիւ ուսուցիչիս եւ դաստիարակիս՝ ողբ. Տոքթ. Եունան Լապիպ Ռեզքին, որուն հոգատարութեան տակ անցուցած եմ ութ տարիներ՝ սորվելով թէ ի՞նչ կը նշանակէ գիտական հետազօտութիւն եւ թէ ի՞նչ բաներ են արդի Եգիպտոսի փիլիսոփայութիւնն ու պատմութիւնը: ↳ 4




## 1 ԻՆՉ ՊԻՏԻ Է ՄԵՂԱԴՐԵԼ ՈՉ ԹԷ ՀՈՂԵՐ ՅԱՆՁՆԵԼՈՒ, ԱՅԼ ՀՈՂԵՐ ՉՅԱՆՁՆԵԼՈՒ ՄԷՋ...

խումբ պատգամաւորների մուտքը Արցախ: Ինչու է տարակուսանքի տեղիք տալիս, որովհետեւ այդ գործելակերպը հակասում է Նոյեմբերի 9-ի եռակողմ յայտարարութեան այն դրոյթին, որ Լաչինի միջանցքը նախատեսուած է Հայաստանի եւ ԼՂ կապը պահելու համար: Միջանցքում որեւէ կարգի ստուգման գործառոյթ նախատեսուած չէ, առաւել եւս ԱԺ պատգամաւորների շարժը արգելելու կամ արգելափակելու...

- Ուկրաինայի իրադարձութիւնների բերումով Մինսկի Խմբի համանախագահութեան ներսում յարաբերութիւնները ծայրաստիճան լարուած են. սա սկիզբ է առել դեռ 2011թ. Սիրիայի իրադարձութիւններից, ինչը անխուսափելիօրէն ազդեցութիւն ունեցաւ մեր տարածաշրջանային զարգացումների վրայ:

- Բանակի երկարամեայ քաղաքականացումը, նրա լիարժէք ներգրաւումը կոռուպցիոն շղթաներում դարձան այն համակարգային խոցերից, որոնք կանգնեցրին մեզ աղէտի առաջ:

Սոթք-Խոզնավար հատուածում տեղի ունեցածը [2021-ի Մայիսի 12-ին ադրբէջանական զօրքերի ներխուժումը], անշուշտ, զինուած ուժերի եւ կառավարութեան բացթողումն է: Բայց այն, թէ ինչպէս տեղի ունեցածին արձագանքեց ՀԱՊԿ-ը, կարծում եմ՝ ձախողում էր նաեւ կազմակերպութեան համար:

Ի հեճուկս գոյութիւն ունեցող ընթացակարգերի՝ ՀԱՊԿ-ը մինչ օրս խնդրոյ առարկայ հատուածում մոնիթորինգ իրականացնելու որոշում չի կայացրել՝ արդարացնելով երկար տարիներ Հայ հանրութեան շրջանում առկայ մտավախութիւնը, թէ Հայաստանի անվտանգութեան համակարգի համար կարեւորագոյն դեր ունեցող այդ կազմակերպութիւնը անհրաժեշտ պահին ոչինչ չի ձեռնարկի՝ մնալով դիտորդի կարգավիճակում: Փաստն այն է, որ ՀԱՊԿ-ը մինչ օրս նոյնիսկ դիտորդի կարգավիճակով որեւէ ձեւով այս իրավիճակը չի հաւաստագրել:

- 44-օրեայ պատերազմի հայկական կողմի զոհերի թիւն այսօրուայ դրութեամբ 3825 է:

*Epress.am*

## 3 ՀԱՐՑԱԶՐՈՅՑ ԱՐԱԲԱԳԻՐ ԹԱՐԳՄԱՆԻՉ ԿԱՐՕ ԹԱՊԱՔԵԱՆԻ ՀԵՏ

**Հ. – Նուպար Փաշան կարծես տարերքի նման բան մը եղաւ քեզի համար: ֆրանսերէնէ արաբերէն թարգմանեցիր նաեւ Ալեքսանդր Հոլինսքիի *Նուպար փաշա պատմութեան առջեւ* հատորը (առաջին անգամ տպագրուած Փարիզ, 1886), զոր 2009-ին հրատարակեց Գահիրէի համալսարանի Հայագիտութեան կեդրոնը, իսկ այժմ կը թարգմանես Վիքթորիա Արշարունիի *Նուպար փաշա՝ Եգիպտոսի ականաւոր ծառան* ֆրանսերէն գիրքը: Արդեօ՞ք յատուկ նախասիրութիւն մը կը կապէ քեզ Նուպար Փաշայի հետ:**

Պ. – Այո, Նուպար Փաշայի անունը կապուեցաւ անունիս հետ եւ դարձաւ թարգմանութիւններուս ընդհանուր յայտարարը: Թերեւս ճակատագիրն էր որ գիս կապեց այս մեծ եգիպտահայուն, թէեւ չեմ կարծեր որեւէ յատուկ հետաքրքրութիւն ունենալ անոր անձին հանդէպ:

**Հ. – Կրնա՞ս մեզի ներկայացնել քու միւս թարգմանութիւններդ՝ ըլլան անոնք տպագրուած թէ անտիպ:**

Պ. – Բացի վերը նշուած *Նուպար փաշա պատմութեան առջեւ*էն, Հայագիտութեան Կեդրոնը հրատարակած է նաեւ *Անգլիան եւ հայերը* գիրքը՝ թարգմանուած անգլերէնէ:

Հրատարակած եմ յայտնի ոսկերիչ Onnig of Cairo-ի (Օննիկ Ալեքսանեան) կենսագրութիւնը:

Տար Ալ-Շուրուքի հրատարակութեամբ լոյս տեսած է ՄԱԿ-ի նախկին քարտուղար՝ ողբ. Պուտրոս Ղալիի կենսագրութիւնը, որուն մասնակցած եմ թարգմանական աշխատանքով:

**Հ. – Եւ վերջը՝ աւանդական հարցումը: Ի՞նչ ծրագիրներ ունիս:**

Պ. – Փափաքս է աւելի յառաջդիմել թարգմանութեան ասպարէզին մէջ եւ նոր գործեր թարգմանել հայերէնէ արաբերէն, անգլերէն եւ ֆրանսերէն: Կը համագործակցիմ նաեւ Տար Ալ-Շուրուքի հետ հրատարակելու թարգմանական գործեր, որոնց մասին առ այժմ չեմ կրնար յիշատակել՝ պահելու համար գաղտնապահութիւնը եւ հեղինակային իրաւունքը:

## 3 ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՕՐԱԿԱՐԳԸ ՈՒՆԻ ՇԱՏ ԼԱՅՆ ՀԱՆՐԱՅԻՆ

նորից զոհեր էին եղել), եւ նրանք պահանջներ ունէին Կառավարութեանը հասցէագրուած: Պահանջում էին աւելի խորը խրամատներ փորել, պահանջում էին սահմանին ամրաշինական աշխատանքներ անել, պահանջում էին նորակոչիկներին հեռացնել սահմանից, փոխարէնը պայմանագրային զինծառայողներին տանել սահման՝ կարծես պայմանագրայինների կեանքը պակաս կարեւոր է: Եւ, ի զարմանս ինձ, այդ յարգարժան կանայք՝ քաղաքացիական հանրութեան ներկայացուցիչները, չասացին վճռական եւ աներկբայ պահանջ Կառավարութեանը ուղղուած, որ գնացէք եւ կնքէք խաղաղութեան պայմանագիր Ադրբէջանի հետ, փակէք պատերազմի էջը, գնացէք լուծումների», - ընդգծեց Նազարեանը:

Պատգամաւորը չի ձգտում ձեւաւորել ընդդիմութեան եւ քաղաքացիական հանրութեան օրակարգերը, բայց իր համար պարզ է մի բան՝ փաստօրէն այս Կառավարութիւնը, որը առաջ է տանում խաղաղութեան օրակարգը, բոլորից առաջադիմական է:

«Սա շատ աննորմալ եւ տարօրինակ երեւոյթ է: Որպէս կանոն հակառակն է լինում, որպէս կանոն աւելի առաջադիմական լինում են ընդդիմութիւնը եւ քաղաքացիական հանրութիւնը: Բայց ինձ միշտ յուսադրում է այն, որ քաղաքացիների, զոհուած զինծառայողների հարազատների հետ հանդիպումների ժամանակ ես տեսնում եմ, որ խաղաղութեան օրակարգը ունի շատ լայն հանրային կոնսենսուս: Եւ ես նոյնպէս միանում եմ այդ հանրային կոնսենսուսին, յայտնում եմ իմ աջակցութիւնը վարչապետին, արտաքին գործերի նախարարին եւ իր աշխատակազմին եւ ամբողջ Կառավարութեանը՝ խաղաղութեան օրակարգը կեանքի կոչելու վճռական եւ աներկբայ պահանջով», - եզրափակեց Նազարեանը:

## 2 ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

արժէքը կարելի չէ կապել քաղքենի ըլլալ-չըլլալու հետ:

Հետեւեալ երկու պարբերութիւններուն միջոցով Թաշեան բազմաթիւ չդասաւորուած հարցեր կ՚արծարծէ միաժամանակ.

Աշխարհի բոլոր գրողները «ուրիշ աստուած չեն ճանչցած գեղեցկութենէն բացի, անոնց մտահոգութիւնը եղած է ո՛չ թէ դրօշակիրն ըլլալ այս կամ այն դասակարգի շահերուն, այլ վերստեղծել կեանքը, արտայայտել իրենց դարու ընդհանուր ոգին կամ յուզումի եւ զգացումի ջերմութեամբ լեցնել մեր հոգեկան աշխարհը:

«Գրականութիւնը յայտարարել պայքարի զէնք, այսինքն անոր կեդրոնը փոխադրել քաղաքական գետնի վրայ, ուրիշ ձեւի մոլորանք մըն է, կրկնապէս մեղադրելի բանաստեղծ ու գեղեցկապաշտ Շուշանեանի համար: Այսպիսի ձեւակերպում մը իր դատապարտութեան հիմքերը իր մէջ ունի: Օգտապաշտ (utilitaire) գրականութիւն մը չի տոկար ժամանակի աւերումներուն: Մենք բնական կերպով կը դիմենք դէպի գեղարուեստականութիւն. հրապարակախօս շեշտը, շերտային կամ հատուածային շունչը, արտագեղարուեստական բախումները պէտք է փոխադրել գրականութենէն դուրս, քաղաքական եւ հրապարակագրական ճակատի վրայ եւ ընդունիլ, վերջապէս, որ ամէն *գրուած* բան գրականութիւն չէ: Արուեստը, պայքարի զէնք դառնալով, կը դադրի իր նպատակին ծառայելէ, կը դադրի նաեւ ըլլալէ գեղեցկութեան պաշտամունք»:

Արժէ երկու պարբերութիւնները կազմալուծելով փնտռել մեկնաբանութիւններ.

1. Ըստ Թաշեանին, գրողներուն առաջին պարտականութիւնն է «արտայայտել իրենց դարու ընդհանուր ոգին», առանց պաշտպանը ըլլալու այս կամ այն դասակարգին: Կը նշանակէ, որ գրականութիւնը «չէզոք» կողմի արտայայտութիւն է եւ չ՚ընդունիր գրողի ենթակայական միակցութիւնը հասարակական շերտի մը հետ՝ որուն ինք կը զգայ առաւել մօտիկ: Բայց չէ՞ որ հասարակութիւն մը կազմուած է շերտերէ՝ անհամար շերտերէ, որուն մաս կը կազմեն դասակարգերը:

2. Ծիշդ առաջինին հակառակը, Թաշեանի համար գրականութեան պարտականութիւնն է «զգացումի ջերմութեամբ լեցնել մեր հոգեկան աշխարհը»: Անձնականացուած գրականութիւն մըն է սակայն, անձնական ապրումներու եւ զգացումներու՝ անկախ շրջապատէն:

Առաջինն ու երկրորդը կը նոյնանան՝ գրականութիւնը դուրս հանելով մասնակցողական կարողականութենէն եւ դնելով ընդհանրացուած վերարտադրութեան կամ արտացոլումի ծիրին մէջ:

3. Մերժելով գրականութիւնը մասնակից դարձնել քաղաքականութեան, Թաշեան երիցս հերքած կ՚ըլլայ անոր մասնակցողականութեան, ուրեմն՝ ներգրաւուածութեան, կարելիութիւնը: Բայց միշտ կու գան առաջ մղուիլ բառերը: «Մասնակցողականութիւն» բառին փոխարէն կը գործածէ «օգտապաշտութիւն», որ բնականաբար գրականութիւնը պիտի իջեցնէ առօրեական կարիքներու գոհացումի անհրապոյր մակարդակին: Եւ անշուշտ, գրականութիւն մը պէտք չէ ըլլայ օգտապաշտ:

4. Օգտապաշտութեան վերածումով, քաղաքական գրականութեան արժէքային համակարգին մէջ Թաշեան կը տեսնէ ընդամէնը «հրապարակախօս շեշտ» եւ «շերտային կամ հատուածային շունչ»: Իսկ քաղաքականութիւնն ու դասակարգերը «արտագեղարուեստական» միաւորներ են, որոնք չեն կրնար մաս կազմել գրականութեան:

5. Թաշեանի համար գրականութեան միակ ճանաչողական կեցութիւնը գեղեցկութիւնն է, իբրեւ յաւերժական յատկանիշ: Իսկ ի՞նչ բան է գեղեցկութիւնը: Ո՞ւր կը գտնուի ան եւ ինչպէ՞ս կարելի է զայն հասկնալ: Շուշանեան ընդվզած է այդ գեղեցկագիտական կայուն անխռովութենէն. «Կարծես թէ կարելի ըլլա՛ր «գեղեցկութիւն»ը մնայուն կերպով սահմանել, թանձրացնել ու բաղդատելով այդ վերացական բանին հետ այս կամ այն գրական երկը՝ ըսել թէ «գեղեցկապա՛շտ» է թէ ոչ: Կարծե՛ս թէ կարելի ըլլար գեղեցկութեան «միաւոր» մը գտնել, կշիռ մը ու չափելատով ամէն գեղարուեստական գործ: Օ՜ ոչ, յամի շնորհաց 1930ին, աւելի հրատապ խնդիրներ կան քան բնազանցական այս հարցերը»:

Շուշանեանի եւ Թաշեանի գիրքերով, արուեստի ներգրաւուածութեան եւ ինքնավարութեան միջեւ բախումը իրականացուած է:

(Շար. 9)

دار شوشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1914 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 5 ՄԱՅԻՍ 2022 | *ՀԱՏԸ ՉՍՈՒՔԷ 75 Ե. ԴՃկ.* | عدد رقم ١٩١٤ الخميس ٥ مايو ٢٠٢٢


## ԱՋ ՓՈՓԻՒԼԻԶՄԸ՝ ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ՍՓԻՒՌՔ

2021 Մայիսին, քաղաքագէտ եւ քաղաքագիտական վերլուծաբան Էդգար Վարդանեան լոյս կ՚ընծայէ *Պոպուլիզմը Հայաստանում* աշխատութիւնը, հրատարակիչ՝ Հայաստանի Քաղաքական Երկխօսութիւն հասարակական կազմակերպութիւն, համատեղութեամբ Ֆրիդրիխ Էբերտ հիմնադրամի հայաստանեան մասնաճիւղին:

Վարդանեան կը վերլուծէ ու կը գնահատէ Հայաստանի 10 քաղաքական ուժերու ղեկավարներու 2019-2020 թուականներուն արտասանած ու ստեղծած բնագիրներուն փոփիւլիսթական աստիճանը՝ Քաղաքացիական Պայմանագիր (Նիկոլ Փաշինեան), Բարգաւաճ Հայաստան (Գագիկ Ծառուկեան), Լուսաւոր Հայաստան (Էդմոն Մարուքեան), Հայաստանի Հանրապետական Կուսակցութիւն (փոխնախագահ՝ Արմէն Աշոտեան), ՀՅԴ (Իշխան Սաղաթելեան), Սասնայ Ծռեր (Ժիրայր Սէֆիլեան), Ժառանգութիւն (Նարինէ Դիլբարեան), Քաղաքացու Որոշում ՍԴԿ (Միքայէլ Նահապետեան), Հայ Ազգային Կոնգրէս (փոխնախագահ՝ Լեւոն Զուրաբեան) եւ Հայրենիքի Փրկութեան Շարժում (Վազգէն Մանուկեան):

Յատուկ մեթոտով կը կազմէ հարցաթերթիկներ, որոնց արդիւնքները կը ներկայացնէ.

1. Որոշ չափով փոփիւլիսթական՝ Միքայէլ Նահապետեան, Լեւոն Զուրաբեան եւ Էդմոն Մարուքեան:
2. Միջին մակարդակով փոփիւլիսթական՝ Նիկոլ Փաշինեան, Նարինէ Դիլբարեան եւ Ժիրայր Սէֆիլեան:
3. Խիստ փոփիւլիսթական՝ Գագիկ Ծառուկեան, Իշխան Սաղաթելեան, Արմէն Աշոտեան եւ Վազգէն Մանուկեան:

Այս դիտարկումներէն ետք, Վարդանեան կ՚աւելցնէ. «Հարկ է նշել, որ քաղաքական գործիչների մեծ մասի տեքստերը աւելի պոպուլիստական են դարձել 44-օրեայ պատերազմից յետոյ»:

Հրապարակումէն մէկ տարի ետք՝ 2022 Ապրիլ 2-ին, Բուն TV-ի դասախօսութեան մէջ, Վարդանեան արդէն աւելի վստահօրէն կը ներկայացնէ յետպատերազմեան պատումը իբրեւ աջ փոփիւլիզմ («Ծայրայեղ աջ պոպուլիզմը յետպատերազմեան Հայաստանում», http://boon.am/right-wing-populism-in-post-war-armenia/):

Ան յատկապէս կը նշէ. «Ինչպէս ցոյց են տալիս յետյեղափոխական եւ յատկապէս յետպատերազմեան գործընթացները, ծայրայեղ աջ պոպուլիզմը խորութեամբ ամրապնդուել է նաեւ Հայաստանում՝ դառնալով մի շարք խոշոր եւ փոքր քաղաքական շրջանակների հիմնական հռետորաբանութիւն (գաղափարախօսութիւնը): Մասնաւորապէս այդպիսի հռետորաբանութիւն էին որդեգրել 44-օրեայ պատերազմից յետոյ ձեւաւորուած Հայրենիքի Փրկութեան Շարժում կոչուող նախաձեռնութեան ակտիւիստների զգալի մասը, 2021-ի արտահերթ ընտրութիւնների մասնակից ուժերի մի շարք ներկայացուցիչներ, որոնցից շատերն այսօր խորհրդարանական ընդդիմութիւն են: Այսպիսով աջ ծայրայեղական պոպուլիստական հռետորաբանութիւնը Հայաստանում ամրապնդուել է ոչ միայն մարգինալ շրջանակներում, այլեւ հանդիսանում է խոշոր ընդդիմադիր ուժերից շատերի հիմնական հռետորաբանութիւնը»:

Իսկ ի՞նչ բան է փոփիւլիզմը:

Վարդանեան իր 2021-ի գիրքին մէջ կը ներկայացնէ փոփիւլիզմի տեսութիւնները, որոնք կրնան համառօտագրուիլ այսպէս.

1. Գաղափարախօսութիւն որ կը պնդէ հասարակութեան վերջնական բաժանումը երկու միատարր եւ հակընդդէմ ուժերու՝ մաքուր ժողովուրդի եւ փճացած վերնախաւի (Քաս Մուտէ):
2. Շարքային մարդիկ իմաստուն են եւ առաքինի՝ իբրեւ երկատում միատարր եւ լաւ ժողովուրդի եւ փտած վերնախաւի միջեւ (Ինկլհարթ եւ Նորիս):
3. Մենատիրութիւն՝ ուժեղ եւ հմայիչ առաջնորդներու ընդմէջէն, որոնք կ՚արտայայտեն ժողովուրդին կամքը (Ինկլհարթ եւ Նորիս):
4. Մեծամասնական բայց ոչ ներկայացուցչական ժողովրդավարութիւն զսպումներու եւ հակակշիռներու հիման վրայ (Ինկլհարթ եւ Նորիս):
5. Հակակրանք փոքրամասնութիւններու իրաւունքներու նկատմամբ (Ինկլհարթ եւ Նորիս):
6. Բազմամշակութայնութեան փոխարէն միամշակութայնութիւն, փակ սահմաններ, պահպանողական արժէքներ (Ինկլհարթ եւ Նորիս):
7. Ժողովուրդի կազմի մէջ կը ներառնէ միայն անոնք՝ որոնք ըստ այդ գաղափարախօսութեան, կը համապատասխանեն որոշակի չափանիշերու:
8. Ոչ օրինական են բոլոր անոնք՝ որոնք չեն համապատասխաներ «ժողովուրդի» «ճիշդ» ներկայացուցիչ ըլլալու համար փոփիւլիսթներու առաջ քաշած չափանիշերուն:
9. Այն անձը որ չի սատարեր փոփիւլիսթական կուսակցութեան, չի հանդիսանար իրական ժողովուրդի մասը (Եան-Վերնէր Միւլլէր):
10. Փոփիւլիսթական հռետորաբանութեան հիմնական պատումն է՝ «մենք» եւ «անոնք», «ճիշդ ժողովուրդ» եւ «սխալ ժողովուրդ», անկախ քանակական գերակշռութենէն:

Իսկ ի՞նչ է «աջ»-ը՝ աջ փոփիւլիզմը: Միացումը աջ ծայրայեղականութեան եւ փոփիւլիզմին:

Բուն TV-ի դասախօսութեան մէջ Վարդանեան աջ ծայրայեղականութիւնը կը բնորոշէ իբրեւ էթնո-ազգայնականութիւն եւ/կամ ռասիզմ, ազգայինի եւ ընդհանրապէս պետականի գերակայութիւն անհատի նկատմամբ, ուժեղ, կեդրոնացած եւ խիստ օրէնքներ ունեցող պետութեան գաղափար, ուժեղ անհատներու եւ առաջնորդներու պաշտամունք, «աւանդական» արժէքներ, խիստ ստորակարգութիւն (hierarchy):

Աջ փոփիւլիզմը միացումն է այս եւ վերոյիշեալ յատկանիշներուն, ուժեղ մարտահրաւէր մը ժողովրդավարութեան եւ ազատ խօսքի:

Ուշագրաւ եւ բացատրիչ են ներկայ իշխանական վերնախաւի աջ փոփիւլիսթական ասոյթները, զորս կը ներկայացնէ Վարդանեան.

«Դու, ժեխ, քո թրքաբարոյ վիժուածքի հետ միասին, արժանի չես պետութիւն ունենալու, արժանի չես ոչ անձնագրի, ոչ եռագոյնի, ոչ եռաբլուրի»:

«Ստահակ ընդդէմ ժողովուրդ իրական դիխոտոմիա»:

«Հայ ժողովուրդը իր հայրենիքում կ՚ունենայ ապագայ եթէ դաւաճան ստահակը օր առաջ հեռանայ»:

Երկիրի ղեկավարի եւ իր առաջնորդած քաղաքական ուժի կողմնակիցները՝ որոնք ըստ վերջին ընտրութիւններուն կը ներկայացնեն քուէարկողներուն մեծամասնութիւնը, դուրս կը մնան ժողովուրդի կազմէն: Կը ստացուի, որ գոյութիւն ունի ծայրայեղ բացասական յատկութիւններով օժտուած զանգուած (քուէարկող մեծամասնութիւն), նոյն յատկանիշներով օժտուած քաղաքական ղեկավարութիւն՝ որ դուրս եկած է բարոյական յատկանիշներով օժտուած իրական ժողովուրդի դէմ, եւ այդ իրական ժողովուրդի ներկայացուցիչները՝ տուեալ խօսքերը արտասանողները:

Աջ փոփիւլիզմի յատկանիշն է նաեւ դաւադրութիւններու տեսութիւնը: Օրինակ, ընդդիմադիրի մը հետեւեալ խօսքը. «Այսինքն, արտաքին ուժերի կողմից երկու խնդիր էր դրուած, պոկել Հայաստանը Ռուսաստանից եւ տրոհել մեր ժողովուրդի միասնութիւնը ազգային

↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՓԱՇԻՆԵԱՆԻ ԶԵԿՈՅՑԸ ՄՈՍԿՈՒԱ ԿԱՏԱՐԱԾ ԱՅՑԵԼՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

Ապրիլ 22-ին, Ազգային Ժողովին առջեւ Նիկոլ Փաշինեան իր հաշուետուութիւնը կու տայ Ապրիլ 19-20-ին Մոսկուա կատարած այցելութեան եւ Վլատիմիր Փութինի հետ ունեցած հանդիպումին մասին:

Կը խօսի արեւելք-արեւմուտք երթեւեկութեան ապաշրջափակումի մասին եւ այս առումով Հայաստանի եւ Ռուսաստանի ունեցած համաձայնութեան Հայաստանի տարածքով կառուցելու երկաթուղի եւ ճանապարհ:

Հիմնաւորուած չեն Մինսքի Խումբի համանախագահութեան լուծարումի մասին գնահատականները, կ՚ըսէ, թէեւ ռուս-ուքրաինական պատերազմը դժուարութիւններ յառաջացուց համանախագահներու համատեղ գործունէութեան համար:

Որոշ պարագաներու անհրաժեշտութիւն կայ բարձրացնելու ռուս խաղաղապահներու գործունէութեան արդիւնաւէտութիւնը: Անհանգստացնող փաստ է Ազըրպէյճանի ներխուժումը խաղաղապահ զօրախումբի պատասխանատուութեան տակ գտնուող Փառուխի հատուածը:

Ղարաբաղեան հիմնախնդիրի կարգաւորումին առնչուող Մոսկուայի բանակցութիւններու բովանդակութեան մասին Փաշինեանը «աշխատանքային կարգով» տեղեակ պահած է նաեւ Արցախի նախագահ Արայիկ Յարութիւնեանին: Գալով խորհրդարանական ընդդիմութեան, վերջինս միշտ հրաժարած է նմանօրինակ քննարկումներէ, «որպէսզի այլազան դաւադրութեան տեսութիւնների մասին լեգենդներ ստեղծեն եւ դրանք դնեն իրենց գործունէութեան հիմքում»:

Ղարաբաղի հարցի կարգաւորումի ոչ մէկ նախագիծ կայ տակաւին: «Ինչ վերաբերում է Արցախը յանձնելուն. Արցախը իր չէ, առարկայ չէ, որ յանձնես կամ չյանձնես, Արցախն առաջին հերթին այնտեղ ապրող մարդն է»:

Ղարաբաղի հարցին կապակցութեան նշաձողը իջեցնելու մասին միջազգային յորդորներու հարցը (տես «Խոհեր»-ը)՝ որ շահարկումներու տեղի տուաւ, Փաշինեան կը մեկնաբանէ.

«ԼՂ կարգաւորման վերաբերեալ 2016 թուականին Մինսկի Խմբի համանախագահութեան ներկայացրած առաջարկութիւններ ոչ այլ ինչ էին, քան նշաձողը իջեցնելու փաստաթուղթ. այդ փաստաթղթի առանցքային իմաստը ԼՂ կարգավիճակի հարցի յետաձգումն էր անորոշ ժամանակով՝ տասնամեակներով, եթէ ոչ աւել: 2016 թուականի առաջարկութիւններում նշաձողի այդպիսի իջեցում էր նաեւ ԼՂ կարգավիճակի որոշման հարցը միջազգային ատեաններին արտապատուիրակելու առաջարկը, ընդ որում՝ այնպիսի ատեաններին, որոնք նախկինում արդէն դիրքորոշում արտայայտել էին՝ Ադրբէջանի տարածքային ամբողջականութեան շրջանակներում:

«Նշաձողը իջեցնելու այդպիսի յորդոր էր նաեւ ԵԱՀԿ 1996 թուականի Լիսաբոնեան գագաթաժողովը: Այդպիսի յորդոր էր

↳ 2

# ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

## (Մահուան 50-ամեակին առիթով)

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**Խորհրդային գրականութիւն**

Խորհրդային գրականութիւնը «գերութեան մէջ է», կ՚աղաղակէ Թաշեան: Հայաստանի պրոլետ-գրականութիւնը ստացաւ այնպիսի պատկեր մը, «որ ո՛չ միայն մխիթարական չէ հայկական գոնէաւորումի տեսակէտէն, այլ եւ ծաղրանկարային է, իբրեւ դասակարգային արտայայտութիւն: Հոգեբանութեամբ, նկարագրով ու մտայնութեամբ ո՛չ բանուոր կայ այդ գրականութեան մէջ, ո՛չ գիւղացի: Եղածն ալ կեղծ ներկ մըն է, լենինեան փորմիւլներով ջրուած»:

Եւ ապա. «Ահա համայնավարութիւնը, այս վրիպած յեղափոխութիւնը, որ amorphe, անդիմագիծ գրականութիւն մը բերաւ իրեն հետ»:

Շուշանեան պիտի հակաճառէր. «Խորհրդային արդի գրականութեան մասին լուրջ չէ գրածնիդ: Ի՞նչպէս կրնաք ուրանալ նորերու այն սքանչելի փաղանգը որ կրնայ քաջութեամբ մրցիլ որեւէ քաղքենի «արդի» գրականութեան կրթուած «դաս»ին հետ: Միթէ պէ՞տք է յիշել B. Pilniakի *L'Année nue*ն, Babelի *Cavalerie rouge*ը, Démidovի *Le Tourbillon*ը, A. Fadéevի *La Défaite*ը, Gladkovի *Le Ciment*ը»:

Երկուքն ալ խորհրդային գրականութեան մէկ, տարբեր շերտի մը վրայ կը հիմնուին իրենց կարծիքները հաստատելու համար: Երկուքն ալ ճիշդ են՝ մասնակիօրէն: Մասնակիօրէն ճիշդ ըլլալով՝ անոնք կը մնան անկատար:

Շաւարշ Նարդունի կը փորձէ քիչ մը տարբերակել խորհրդահայ գրողները՝ ըստ տեղավայրերու: «Մէկ եւ անբաժանելի չէ Հայաստանի այժմեան գրականութիւնը», կը յայտարարէ ան արդարօրէն:

Երեւանի մէջ, ըստ իրեն, պրոլետարական գրականութեան ոլորտէն ներս գրողները «ոչինչ կրցան նետել, հակառակ իրենց ջնարակուած լեզուին, չմշկող բառերուն, polichinelle ոտանաւորին եւ յեղափոխական հարալ-հուրային – *փոթորիկ, մուռճ, մուրճ, Լէնին*»:

Թիֆլիսի մէջ «հայ գրողները աւելի զօրաւոր են: Զպիտի յիշեմ Սուրխաթեանն ու Աղասի Վարդանեանը, որոնք պրոլետ գրող կնքուած են: Անոնց հովանաւորութեան տակ կը գտնուի երիտասարդութիւն մը, որ ամէն առաւելութիւն ունի: Վրացական եւ ռուսական արուեստի շարժումներուն աւելի մօտիկէն կը հետեւի [...]: Թիֆլիսի մէջ կը տեսնուին նոր ուժեր եւ կը ծաղկին տաղանդներ»: Օրինակ՝ Գէորգ Գրիգ, Ռուբէն Ալաքեաբ:

Նարդունի դիտել կու տայ, որ Թիֆլիսը կը գտնուի արտասահմանի մէջ՝ Հայաստանի նկատմամբ, եւ ափսոփանք կը յայտնէ՝ որ հայ գրականութեան լաւ հատուածը կը մշակուի Հայաստանէն դուրս:

Գալով Պաքուին՝ զոր նոյնպէս արտասահման կը համարէ, «Հայ պրոլետ-գրողները շատ խեղճուկրակ կը մնան»:

Կը պարզուի, որ Նարդունիի համար հայ պրոլետ-գրողները ամբողջութեամբ կը դառնան անմակարդակ, մինչ անոնցմէ դուրս գտնուողները՝ ծաղկուն եւ յուսալից: Ունայնութիւն է պրոլետարական գրականութիւնը իր ամբողջութեան մէջ, կ՚եզրակացնէ ան.

«Հայաստանի մէջ [...] «պրոլետարական գրականութիւն» կը քարոզեն խումբ մը ոչ-գրագէտներ: Երբեմն, սադին անդին, միամիտ տղաք, «քաղքենի գրականութեանց» դէմ փրփրելով, «աշխատաւորական կամ ընկերվարական գրականութի՛ւն» կ՚աղաղակեն:

«Զրաբանութի՛ւն, բոլորը»:

Ըստ Նարդունիի, պրոլետարական գրականութի՞ւնն է ինքնին գրաբանութիւն, թէ անոր ստացած վիճակը: Այսինքն, կարելի՞ է ստեղծել բարձր մակարդակով պրոլետարական գրականութիւն: Վերջինին պատասխանն է՝ ո՛չ:

**Երկկողմանի ինքնասահմանափակումներ**

Շուշանեան կ՚ընդունի Պօլէռի աներկբայելի արժէքը բայց զայն անկարող կը տեսնէ նոր հասարակութեան կազմաւորումին համար: Կը հետեւցնենք՝ որ նոր հասարակութեան կազմաւորումի ընթացքին առ նուազն պիտի անտեսուի նման գրականութիւնը: Նոր հասարակութեան մը կազմաւորումի գործընթացքը արմատական (radical) գործողութիւն է՝ որ յառաջ կը մղէ արմատական լուծումներ: Որքա՞ն պիտի տեւէ արմատականութիւնը: Մինչեւ նորին հաստատումը: Նորը ենթադրուած է դառնալ բոլորի սեփականութիւնը՝ անդասակարգ գոյութեան մը մէջ, վերականգնելով հինը՝ Պօլէռ, Վերլէն, Փրուսթ, նոր արժէքային համակարգի բնաբանին մէջ: Բայց ո՞ւր կը գտնուի ժամանակաւորի եւ մշտականի սահմանը: Խորհրդային Միութիւնը իր գոյութեան ամբողջ տեւողութեան ինքզինքը կը համարէր ժամանակաւոր հասարակարգ՝ մինչեւ լրիւ համայնավարութեան հաստատումը: Քայքայուեցաւ՝ ժամանակաւորութեան մէջ: Թերեւս ժամանակաւորութեան յաւերժականացումն էր որ քանդեց զայն, ի տարբերութիւն դրամատիրութենէն՝ որ ի սկզբանէ ինքզինք կրցած էր պարտադրել իբրեւ վերջնական լուծում:

Շուշանեան նոր հասարակարգ ստեղծելու կողմնակից էր՝ նորահաստատ համայնավարութեան օրինակով, բայց ոչ-անպայման անոր հետեւողականութեամբ, ընդունելով ընկերվարութեան գաղափարը՝ որ փոփիւլիսթական դրսեւորումներով տարածուած էր այդ ժամանակ Խորհրդային Միութեան սահմաններէն դուրս դէպի Արեւմուտք եւ նոյնիսկ մաս կազմած Դաշնակցութեան ծրագիրին, ինչպէս պիտի տեսնենք ստորեւ:

Պօլէռ, Վերլէն, Փրուսթ կարելի չէ մասնակից դարձնել նոր պայքարին: Իսկ կարելի՞ է արդեօք կարդալ այդ «աներկբայելի արժէք»ները՝ իբրեւ արժէքներ իրենք իրենց մէջ, կամ իբրեւ Թաշեանի գեղեցկութիւններ, պայքարի անցումային շրջանին: Հարցը ներկայացնեմ հայերուս համար զգացական տեսանկիւնէն. կարելի՞ է արդեօք շրջան մը չլսել Կոմիտասը, չկարդալ Աբովեանը: Հեռու հռետորականութենէ եւ աւանդութեան պանծացումի սովորապաշտութենէն, հայ մշակոյթը պարզապէս դժուար է պատկերացնել առանց անոնց, քանզի անոնք ներքնականացած են համատարած մտածողութեան մէջ եւ դարձած կենդանի յիշողութեան բաղկացուցիչը: Վտանգաւոր է ներքնականացուած հարազատ տարրերէն ձերբազատուիլ ժամանակաւորութեան անունին տակ, ժամանակաւորութեան հասկացողութիւն մը՝ որ ձեւակերպումն է անկատար ժամանակի մը: Ներքնականացումի եւ արմատական փոփոխութեան տիալեքթիքը տակաւին պէտք է լուծուի:

Պայքար հինի դէմ, իսկ նոյնպիսի պայքար մղող աւան-կարտիսթական տատաիզմը անընդունելի է Շուշանեանի համար: Բայց ան անընդունելի է նաեւ հիմնահոսանք ընկերվարականներուն համար, ներառեալ համայնավարութեան:

Տատաիզմը արուեստի շարժում մըն էր, որ իր գործերուն մէջ կ՚արտայայտէր յստակ հակաքաղքենի պայքար, կը հերքէր արդի դրամատիրական հասարակութեան տրամաբանութիւնը, բանականութիւնն ու գեղագիտութիւնը, դժկամ էր ազգայնականութեան, պատերազմի եւ բռնութեան նկատմամբ: Քաղաքականապէս կը մերձենար արմատական ձախին եւ ծայրագոյն ձախին: Առ նուազն հակաքաղքենիական պայքարի եւ գեղեցկագիտական մեկուսացումի դիմադրութեան առումներով տատաիզմը չէր տարբերեր Շուշանեանի ⤷ 4



# ԼԷՊԼԷՊԱ ԵՒ ԱՆՈՒՇՔԱ՝ ՌԱՄԱՏԱՆ ԱՄՍՈՒԱՅ ՍԵՐԻԱԼՆԵՐՈՒ ՄԷՋ

Ռամատան ամիսը, կարելի է ըսել, նաեւ հեռատեսիլի սերիալներու ամիսն է: Եգիպտացի արտադրիչներն ու բեմադրիչները կը մրցին իրենց սերիալները ցուցադրել այդ ամիսը: Շուկայական պահանջ կայ այդպէս վարուելու: Արաբական փեթրոլի շէյխերուն պատկանող հեռատեսիլի կայանները հսկայական գումարներ կը վճարեն զանոնք գնելու համար, փոխարէնը ապահովելով տարուայ ամենաշատ ազդերը: Շահերու շրջանառութիւն մըն է որ տեղի կ՚ունենայ, միաժամանակ ապահովելով տարուայ ամենաշատ դիտարկութիւնը:

Այս տարուայ սերիալներուն մէջ կը հանդիպինք յայտնի Լէպլէպային (Նունիա-Նինոշքա Մանուկ Քիւփէլեան)՝ *Տայման ՚ամէր* (Միշտ շէն) սերիալի հերոսուհիի տիպարին մէջ, գլխաւոր



Լէպլէպա *Տայման ՚ամէր* սերիալին մէջ: Աջին՝ Մուսթաֆա Շա՚պան:

խաղընկեր ունենալով Մուսթաֆա Շա՚պան: Լէպլէպա ստանձնած է International դպրոցի տնօրինուհի Միս Զահրայի դերը: Բեմադրիչն է Մակտի Ալ-Հաուարի:




Անուշքա *Ռակ՚ին եա հաուա* սերիալին մէջ:

Անշուշքա (Անուշքա Զատըրճեան) վերջին շրջանին մեծ յաջողութիւններ ձեռք բերաւ յաջորդական սերիալներու մէջ: Ներկայ Ռամատանին կը խաղայ *Ռակ՚ին եա հաուա* (Սիրոյ վերադարձը) սերիալին մէջ, ստանձնելով Շերիֆայի կարեւոր դերը, իր հետ համահաւասար դերակատարութեամբ ունենալով խումբ մը եգիպտացի աստղեր: Բեմադրիչ՝ Մոհամմատ Սալամա:

## ՓԱՇԻՆԵԱՆԻ ԶԵԿՈՅՑԸ ՄՈՍԿՈՒԱ ԿԱՏԱՐԱԾ ԱՅՑԵԼՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

1 ⤷ 1999 թուականի «Ընդհանուր պետութեան» գաղափարը: Նշաձողը իջեցնելու այդպիսի յորդոր էր նաեւ 2001 թուականի Քի Վեսթեան գործընթացը, 2007 թուականի Մադրիդեան սկզբունքները, որոնց վրայ էլ հիմնուած էին 2016 թուականի Յունուար, Յուլիս, Օգոստոսի երեք առաջարկները: Նշաձողը իջեցնելու ուղիղ կամ անուղղակի յորդոր են պարունակել 1990-ականներից միջազգային տարբեր ատեանների ընդունած տարբեր փաստաթղթեր:

«Եւ այն, որ այս փաստերի նշանակութիւնը խնամքով թաքցուել է մեր հանրութիւնից, չի նշանակում, թէ դրանք գոյութիւն չեն ունեցել»:

Եւ կը յաւելէ. «Կարճաժամկէտ, միջնաժամկէտ, երկարաժամկէտ առումով մեր մարտավարութիւնը հետեւեալն է՝ ապահովել այնպիսի իրավիճակ կամ այնպիսի լուծում, որ արցախցին ապրի Արցախում, եւ, ինչպէս ասել եմ Ապրիլի 14-ին խորհրդարանում իմ ունեցած ելոյթում, ապրի այնպէս, որ իրեն զգայ, իրեն համարի արցախցի եւ հայ: ԼՂ խնդրի որեւէ հանգուցալուծում կամ ԼՂ-ում հաստատուած որեւէ իրադրութիւն, որ այս պայմանները ոչ միայն չի ապահովելու, այլեւ չի երաշխաւորելու, ընդունելի չէ մեզ համար եւ ընդունելի չի լինելու երբեք: Սա է հարցի առանցքը, մնացածը բաժակաճառ է»:

ԽՈՀԵՐ

# ՄԻՋԻՆ ՓՈՓԻԽԼԻԶՄԷՆ ԴԷՊԻ ՆՈՒԱԶ ՓՈՓԻԽԼԻԶՄ

ՀԱՅԿ ԱԻԱԳԵԱՆ

Գրութիւնս սերտօրէն կապուած է *Ջահակիրի* այս թիւի առաջնորդող յօդուածին հետ՝ յատկացուած ներկայ ժամանակներու հայկական աջ փոփխլիզմին, որ բաւական հնչեղ տարածում ունի այսօր Հայաստանի եւ Սփիւռքի մէջ: Հետեւաբար, փոփխլիզմ եւ աջ փոփխլիզմ եզրոյթներուն մասին տեսնել այնտեղ:

Փորձ մըն է կարդալու Ապրիլ 13-ին, Ազգային Ժողովի առջեւ Նիկոլ Փաշինեանի կարդացած բնագիրը, ուր կը զեկուցուէր կառավարութեան ծրագիրի 2021 թուականի կատարողականը: Փորձ մըն է կարդալու բնագիրը՝ իբրեւ այդպիսին, ոչ փառաբանելու, եւ ոչ ալ քննադատելու միտումով:

2019-2020 թուականներու Փաշինեանի բնագիրները Էդգար Վարդանեան կը դասակարգէր իբրեւ միջին մակարդակով փոփխլիսթ (տես *Ջահակիրի* առաջին էջը): 2022 Ապրիլ 14-ի ներկայ բնագիրը փոփխլիզմի «նշաձող»-ը հաստատապէս կ՚իջեցնէ նուազ աստիճանի, առանց, սակայն, վերացնելու զայն, քանզի փոփխլիզմը շատ դժուար է անհետացնել իշխանական պատումէն՝ ինչ պետութեան առաջնորդ ալ ըլլայ զայն արտասանողը: Իշխանութեան յատկանիշներէն է փոփխլիզմը: Խօսքը անոր աստիճանի մասին է:

Վարչապետի զեկոյցը փորձ մըն է՝ իշխանական թոյլատրելի սահմաններուն մէջ, հարցերը դիտել իրենց իրական վիճակներուն մէջ, բնականաբար, առանց վնասելու ինքն իրեն իբրեւ իշխանութիւն, բայց մանաւանդ առանց ինքնափառաբանութեան եւ ինքնաբացառիկութեան տարածուած խօսքին:

Ի՞նչ չի գտնուիր զեկոյցին մէջ: Չի գտնուիր հայրենասիրական հոգեյոյզ պատումը, ուրիշին վարկաբեկելու միտումը, բառային խարդաւանքը:

Ընթերցումը կ՚երկարի, համառօտ կանգ պիտի առնեմ լոկ երեք գաղափարներու շուրջ:

**1. Ուրիշը՝ իբրեւ կարեւոր գործօն Հայաստանի քաղաքականութեան մէջ**

Զեկոյցին մէջ Փաշինեան 25 անգամ օգտագործած է «միջազգային» բառը՝ «միջազգային վարկ», «միջազգային ինստիտուտ», «միջազգային գործակալութիւն», «միջազգային հանրութիւն» (10 անգամ), «միջազգային կոնսոլիդացիա», «միջազգային փորձագիտական ներուժ», «միջազգային ճանաչուած սահմաններ», «միջազգային լեգիտիմութիւն» (2 անգամ), «միջազգային դատարան» (3 անգամ), «միջազգային գործընկեր», «միջազգային չփում», «միջազգային առաջմղում», «միջազգային քաղաքականութիւն»: Միւս կողմէ, մեր այնքան պաշտած բառը՝ «ազգային»-ը, գործածած է լոկ 2 անգամ: Աջ փոփխլիսթներու գերակշիռ բառը՝ «ազգային»-ը, դուրս մղուած է բնագիրէն, անոր տեղը դրուելով ճիշդ այդ նոյն փոփխլիսթներուն չսիրածը՝ «միջազգային»-ը:

«Միջազգային»-ի յամառ կրկնութիւնը ունի իր նպատակը: Ան աւելի կը նշանակէ դուրսը, արտաքինը, այն բոլորը որ դուրսէն սերտ առնչութիւն ունի ներքինի հետ՝ Հայաստանի եւ Արցախի: Անոր կրկնութեամբ վարչապետը կ՚ուզէ շեշտել անտեսուածը եւ դիտաւորեալ ոտնակոխուածը՝ արտաքին աշխարհի ազդեցիկ կողմի կարծիքը: Գրեթէ պարտադրանք մը՝ հասկնալու ոչ-հայկական կողմերու կարծիքները: Չկայ երկիր առանց արտաքին յարաբերութիւններու, չկայ երկիր՝ որ կրնայ իր կեթթոյացած ցանկութիւնը պարտադրել: Կայ ռէալ փոլիթիք եւ անոր վրայ հիմնուած դիւանագիտութիւն, որոնցմէ շատ բան կախուած է սեփական երկիրի վիճակը: Անխուսափելի անհրաժեշտութիւն մըն է հասկնալ, գնահատել ուրիշներու կարծիքը եւ ըստ այնմ մշակել սեփական գործողութիւններու մեքանիզմը, լաւ ուսումնասիրած ըլլալէ ետք սեփականի կարելիութիւնները: Ոչ մէկ երկիր պարտաւոր է գործադրել մեր պահանջները, ոչ ալ մենք պարտաւոր ենք գործադրել անոնցը: Յարաբերութիւններն են որոշողները:

Եւ քանի որ կայ յարաբերութիւն, մեզի համար կայ նաեւ ուրիշը, մեզմէ դուրսը՝ այլակարծիք, տարակարծիք ու հակակարծիք: Այդ ուրիշը՝ մերձտարածային իմաստով Ռուսաստանն է, Ազրպէյճանը եւ Թուրքիան, աւելի լայն առումով, «միջազգային» օրէնքներ արտադրողները, որոնք, ինչպէս յայտնի է, աշխարհի ուժային կեդրոններու արտադրանքներն են՝ իրենց պիտակ ունենալով «միջազգային»-ը. բայց անոնք կան եւ անոնց ձայնը վտանգաւոր է անտեսել:

Այս է Փաշինեանի զեկոյցին հիմքը: Այսինքն՝ հաշուի առնել ուրիշը: Իսկ այդ ուրիշը 2018-2019-ին մեզմէ կ՚ակնալէր՝ որ «մենք այս կամ այն կոնֆիգուրացիայով Ադրբեջանին յանձնենք 7 յայտնի շրջանները եւ իջեցնենք Արցախի կարգավիճակի համար մեր սահմանած նշաձողը», եւ այսօր մեզի կրկին կ՚ըսէ. «Մի փոքր իջեցրէք Լեռնային Ղարաբաղի կարգավիճակի հարցում ձեր նշաձողը եւ միջազգային մեծ կոնսոլիդացիա կ՚ապահովէք Հայաստանի եւ Արցախի շուրջ»:

Ազգային պատումին մէջ չի կրնար մտնել միջազգայինի կարծիքը: Միջազգային կարծիքը գոյութիւն չունի մեզի համար: Գոյութիւն ունի միայն այն պարագային՝ երբ սիրախաղութիւն ընէ մեր պատրանքներուն հետ:

Վերոյիշեալ երկու քաղուածքներուն մէջ կը գտնուին երկու «նշաձող»-եր՝ անցեալ եւ ներկայ:

Անցեալը 7 շրջաններու յանձնումն էր, իր բարդ ու գրեթէ անկարելի գործընթացքով, ինչպէս ներկայացուած է բնագիրին մէջ.

ա. Աշխարհաքաղաքական կեդրոնները «բոլորն էլ աներկբայ ճանաչում [էին] Ադրբեջանի տարածքային ամբողջականութիւնը»: Ռոբերտ Քոչարեան չէր չափազանցեր՝ երբ կը յայտարարէր որ տարածքային ամբողջականութեան խնդիր Հայաստանը նոյնպէս ունի, եւ ըստ բանակցային փաստաթուղթերուն, Սերժ Սարգսեան պատրաստ էր յանձնել 7-ը:

բ. Հակառակ ասոր, Ազրպէյճանն էր որ ամէն անգամ նոր պահանջներ առաջ կը քաշէր՝ որոնք արդէն անիրատեսական էին եւ անընդունելի մեզի համար, ներառեալ Սերժ Սարգսեանին:

գ. Աշխարհաքաղաքական կեդրոնները չունէին կարգավիճակի լուծումի միասնական պատկերացում 7-ի յանձնումէն ետք: Անոնք «միակամ եւ միասնական չէին պոտենցիալ յանձնումից յետոյ տեղի ունենալիք իրադարձութիւնների տրամաբանութեան մասով»:

դ. «[Մ]ի հարց է ժամանակին հանրութեան, ժողովրդի հետ այդ մասին խօսելը, երկրորդ հարց է զիջումների անհրաժեշտութեան մէջ ժողովրդին համոզելը եւ երրորդ հարցը՝ այդ ամէնը կեանքի կոչելը»: Ենթաբնագիրը կ՚ակնարկէ՝ որ նոյնիսկ եթէ ամէն բան ընթանար այնքան հարթ՝ որ 7-ը պէտք էր յանձնուէր, ժողովուրդի ազգային կիրքն էր որ պիտի կանգնեցնէր անոր գործադրութիւնը: Կամ, կարելի էր գործադրել՝ առաջնորդի դաւաճանական ամբաստանութեամբ կախաղան բարձրանալու գնով:

ե. Հակառակ այս բոլորին, 7-ը «յանձնելով գուցէ կը փրկէի հազարաւոր կեանքեր, իսկ չյանձնելով փաստօրէն՝ հազարաւոր զոհերի յանգեցրած որոշումների հեղինակ դարձայ»:

Ահաւասիկ, առաջին անգամ ըլլալով, իշխանական մակարդակով կը դրուի Ղարաբաղեան հարցի անցեալ շրջանի ամբողջ բարդութիւնը՝ իր գրեթէ անլուծելի հակասութիւններով հանդերձ:

Գալով ներկայ ժամանակներու «նշաձող»-ին, միշտ ըստ բնագիրին, անոր արտաքին թելադրանքը չի նշանակեր լռելեայն ընդունիլ զայն: Հայաստանը 2021 Սեպտեմբեր 16-ին հայց ներկայացուցած է Արդարադատութեան Միջազգային Դատարան ընդդէմ Ազրպէյճանի ցեղապաշտական խտրականութեան քաղաքականութեան, որ կրնայ բարձրացնել «ԼՂ կարգավիճակի մասին միջազգային հանրութեան ունեցած պատկերացումների նշաձողը»: Ըսել կ՚ուզէ, նշաձողի օրինական պայքար կը մղէ Հայաստան:

**2. Խաղաղութիւն՝ իմանալով դիմացինը**

«Նախ ս/թ Ապրիլի 6-ին Բրիւսէլում տեղի ունեցած եռակողմ հանդիպման արդիւնքներով ձեռքբերուած պայմանաւորուածութիւնների մասին: Այո ես համաձայնութիւն եմ տուել, որ Հայաստանի եւ Ադրբեջանի արտաքին գործերի նախարարները սկսեն խաղաղութեան պայմանագրի նախապատրաստական աշխատանքները: Ինչ է սա նշանակում գործնականում, ինչ ժամանակացոյց, ինչ ձեւաչափ՝ դա դեռ պիտի քննարկուի ու որոշուի: Բայց Ադրբեջանի հետ խաղաղութեան պայմանագրի ստորագրումը որքան հնարաւոր է արագ, այո մտնում է մեր պլանների մէջ»:

Բնագիրի յետագայ շարադրութիւնը կը բացատրէ՝ որ ասիկա կոյր խաղաղութեան գործընթացք չէ: Հայաստան ուզեց մտնել խաղաղութեան գործընթացքի մէջ՝ քաջ իմանալով Ազրպէյճանի նկրտումները. «Բայց պիտի ասեմ, որ այստեղ էլ իլլիւզիաներ չունենք, որովհետեւ չենք բացառում, որ Ադրբեջանը կը փորձի խաղաղութեան բանակցութիւնների գործընթացը հնարաւորինս արագ փակուղի մտցնել, դա դարձնելով Հայաստանի եւ Արցախի դէմ նոր ագրեսիայի, ագրեսիւ գործողութիւնների առիթ: Նոյն հաշուարկը մենք ունենք, ի դէպ, նաեւ դելիմիտացիայի աշխատանքների կապակցութեամբ, որովհետեւ չենք բացառում, որ Ադրբեջանը այդ գործընթացը օգտագործի Հայաստանի նկատմամբ տարածքային պահանջներ ձեւակերպելու համար, դէ իւրէ յայտարարելով, որ ոչ մի տարածքային պահանջ էլ չունի»:

Միաժամանակ, այդ քայլին չերթալը կը բազմապատկէ վտանգները: Երթալ՝ գիտակցելով ու հաշուարկելով:

**3. Ինքնաքննադատութիւն**

Իշխանական ինքնաքննադատութիւնները յաճախ միտուած կ՚ըլլան վերանորոգելու սեփական դիրքերը: Այստեղ եւս հաւանաբար նման նպատակ հետապնդէ ան, բայց, ակներեւ է, որ վերջին 30 տարիներու ընթացքին առաջին անգամն է Հայաստանի բարձրագոյն պաշօնեայ մը կ՚ընդունի իր ձախողութիւնը:

Քանի որ զեկոյցը 2021 թուականի մասին է, վարչապետը կը նշէ այդ ժամանակաշրջանի ամենակարեւոր ձախողութիւնը: Այն է՝ 2021 Մայիս 12-ին, Ազրպէյճանի ներխուժումը Հայաստանի Սոտքխողնավար տարածք:

Կը փորձէ գտնել ձախողութեան պատճառները: Ներխուժումը կու գար Հայաստանի արտահերթ ընտրութիւններուն նպատակով 2021 Մայիս 10-ի խորհրդարանական իրաւական ցրումէն երկու օր ետք, հետեւաբար, «մոտիվացիաներից մէկը Հայաստանի Պետական ինստիտուտները եւ պետականութիւնը կաթուածահար անելն էր, նախընտրական եւ ետընտրական քաոսի յարուցումը եւ ընտրութիւնների արդիւնքների վրայ կոնկրէտ ազդեցութիւն ունենալը: Կարող ենք ուղիղ ասել, որ դա յարձակւում էր նաեւ Հայաստանի ժողովրդավարութեան վրայ»:

Միւս պատճառը բանակի եւ զինուած ուժերու ներքաշումն էր քաղաքականութեան եւ քաղաքական խարդաւանքի մէջ, անոնց լիարժէք ներգրաւումը փտածութեան շղթաներու մէջ, կառավարութեան հրաժարականը պահանջող գլխաւոր շտաբի յայտարարութիւնը, ընդդիմութեան որոշ ղեկավարներու կոչը զէնքը ուղղելու ոչ թէ թշնամիին այլ կառավարութեան շէնքին վրայ:

**4. Ջափուած իտէալիզմէն մինչեւ իրականութիւն կամ միջին փոփխլիզմէն մինչեւ նուազ փոփխլիզմ**

*Մեր ուղին* կայքէջի խմբագրութիւնը այս զեկոյցին փոփխլիսթական տարրերը կ՚անուանէ «չափուած իդէալիզմ», իսկ փոփխլիզմէն հրաժարուելու միտումը՝ «իրականութիւն»: «Ջափուած իդէալիզմից մինչեւ իրականութիւն» խորագիրին տակ կ՚արձանագրէ. «1991-ին Հայաստանի անկախացումից ի վեր առաջին անգամ Հայաստանի ղեկավարը ոչ միայն ճանաչում է իշխանութեան սխալները, այլեւ մանրամասնում է Հայաստանի իշխանութիւնների պատասխանատուութեան տարրերը հայութեան ապրած մեծ փորձութեան մէջ: Պատասխանատուութեան այս զգացումը, որն ունի իրատեսութեան արժանիք եւ իշխողների եւ կառավարուողների միջեւ վստահութեան զգացում ստեղծելու յաւակնութիւն, յիշեցնում է նախկին վարչապետ Յովհաննէ ՝4ս Քաջազնունու (1868-1938) միտքը: Փաստօրէն, թւում է, թէ Նիկոլ Փաշինեանի մտածողութիւնը Արամ Մանուկեանից տեղափոխուել է Յովհաննէս Քաջազնունու մտածողութեանը: Մինչ պարտութիւնը Նիկոլ Փաշինեանը ոգեշնչուած էր Առաջին Հանրապետութեան հիմնադիրով: Նիկոլ Փաշինեանը պարտութիւնից յետոյ գնում է Առաջին Հանրապետութեան առաջին վարչապետի հետքերով: Ջափուած իդէալիզմից մինչեւ իրականութիւն...» («Ջափուած իդէալիզմից մինչեւ իրականութիւն», *Մեր ուղին*, 13 Ապրիլ 2022, https://mer-oughin. am/-2022/04/13/չափված-իդեալիզմից-մինչև-իրականութիւն):




## 1 ԱԶ ՓՈՓԻՒԼԻԶՄԸ՝ ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ՍՓԻՒՌՔ

արժէքների ու ազգային հարցերի շուրջ եւ պէտք է ասել որ հետզհետէ խորամանկ քայլերով, երբեմն բացայայտ, երբեմն թաքնուած, այդ ծրագիրն իրականացւում է»: Այս խօսքը կը հետեւի ոչ մէկ հիմնաւորումի, կը բերէ ոչ մէկ իրական փաստարկութիւն, այլ կը խաղայ զգացումներու վրայ:

Բազմամշակութայնութեան փոխարէն միամշակոյթ՝ փակ սահմաններ, պահպանողական արժէքներ: Հայրենիքի Փրկութեան շարժում. «Հետեւաբար, հարց է դրւում քայքայել ազգային պետութիւնները, պայքարելով կրօնի դէմ, աւանդոյթների դէմ, ազգային արժէքների դէմ, ընտանիքի դէմ»: Կամ՝ «Ազգային ինքնութեան դէմ մարտնչող կոսմոպոլիտ անհայրենիքների շարունակական դիվերցիաներ է իրականացւում»:

Աջ փոփիւլիզմի կարեւոր գործիքներէն մէկն է որոշակի հասարակական խումբերու դիւայնացումը (demonization)՝ ատելութեան խօսքը. «Թրքաբարոյ ոհմակ», «Թրքահաճ գոյանքներ», «աչքերը մարդու հոգին են, դատարկ հոգիները Նիկոլինն են, մարդու աչքերից նաեւ երեւում է ուղեղի նշոյլ կայ թէ ոչ, բացարձակ անուղեղները Նիկոլինն են, անուղեղի ընտրածը հաստատ լաւ բան չի լինի», «ես իրեն համարում եմ թշնամի, ինքը ոչ թէ դաւաճան է այլ մեր ժողովրդի ու պետութեան թշնամին, ինքը մեզ հետ երբեք չի եղել որ դաւաճանէր մեզ, միշտ եղել է օտար, թշնամի»:

Էդգար Վարդանեան արդէն կ'եզրակացնէ Բուն TV-ի մէջ. «Ծայրայեղ աջ փոփիւլիզմի վերոնշեալ յատկանիշներից երեւում է որ դրանք ակնյայտ հակասում են ազատական ժողովրդավարութեան սկզբունքներին եւ յատկապէս ժողովրդավարական փիլիսոփայութեան անկիւնաքարերից մէկին են հակասում՝ պլիւրալիզմին: Այս տեսակի, այս ոճի, այս շեշտադրմամբ, այս ատելութեամբ լցուած խօսքերը տեղ չեն տալիս բանավէճի համար, տեղ չեն տալիս քննարկման համար, տեղ չեն տալիս ինչ-որ ուսումնասիրութիւններ անելու համար, ամէն ինչ ըստ այդ կատեկորիկ արտայայտութիւնների յստակ արդէն պարզ է, կնիքը վրան խբած է եւ վերջ»:

Այսօր, փողոցով պայքարելու կոչ ընողները եւ փողոց իջնող վերնախաւի քանի մը ներկայացուցիչները աջ փոփիւլիսթներն են: Արդէն տեսանք թէ ինչպէս քանի մը օր առաջ շահագործեցին Ապրիլ 24-ը՝ զանգուածային ահռելի մարդասպանութեան այդ խորհրդանիշը, սեփական քաղաքական յուշատետրերը յառաջ մղելու համար: Վտանգաւոր է, եթէ փողոցը լեցուի աջ փոփիւլիսթական պատումով: Փոփիւլիզմը՝ որ տակաւին ամբոխավարութիւն չէ, կրնայ դառնալ այդպիսին:

Ինչպէս Հայաստանցիներուն մեծամասնութիւնը, Վարդանեան կ'անտեսէ Սփիւռքը: Հասկնալի է, իր առաջադրած նիւթին ու խորագիրին մաս չի կազմեր ան: Ես ալ իրաւունք չունիմ հեռու երթալ այս առումով: Բայց այն ինչ որ ամէն օր կը լսուի այստեղ՝ իմ շուրջս, աջ փոփիւլիզմն է: Նոյնիսկ այն տպաւորութիւնը կրնանք ունենալ՝ որ աջ փոփիւլիզմի որոշ բառապաշարներ եւ տարրեր Հայաստան ներմուծուած են Սփիւռքէն:

Դարձեալ իրաւունք չունիմ հեռուները երթալու, բայց կրնամ պնդել՝ որ այսօր, սփիւռքեան աջ փոփիւլիսթական տարրեր խնդիր չունին բնաւ համագործակցելու տեղական երկիրներու աջ փոփիւլիսթներու եւ ծայրայեղականներու հետ, այլեւ ֆինանսաւորել անոնց, պատրաստելու համար վաւերագրականներ կամ «ուսումնասիրութիւններ», որոնք պիտի սնեն Հայաստանի աջ փոփիւլիսթական պատումը, ի շահ սփիւռքեան շատ նեղ իշխանական նկրտումներու եւ շատ լայն ընկերութենական (corporative) շահերու:

Աջ փոփիւլիզմը կիրք է: Ան կիրք կը սփռէ՝ զգացումներուն ամենէն դիւրինը, ամենէն հեշտոլորը, ամենէն վտանգաւորը: Կիրքը ընդունակ է խեղաթիւրելու ամէն բան, ինչպէս ժամանակին գրած էր ընկերվարական-ֆեմինիսթ պայքարող Մառի Պէյլէրեան. «Կիրքը, որ ճշմարտութիւն բառը իրեն անպատկառօրէն դիմակ ըրած, ստել կուտայ, խաբել կուտայ, որը պատժել կուտայ յանիրաւի, եւ կը վարձատրէ անարժանը: Կիրքը՝ որ կը տապալէ անմեղը, որ կը բարձրացնէ մեղաւորը, որ իրաւունքի սուրբ անուան եւեւ օձի պէս կծկտուած, անիրաւութեան թոյնը կը ժայթքէ: Կիրքը՝ մէկ խօսքով, որ ամեն սուրբ ու նուիրական բաներու ճակտին կը դրօշմէ իր աղտոտ, պի՜ղծ կնիքը...» (Մառի Պէյլէրեան, «Մամուլը եւ մեր բարքերը», *Արտէմիս*, Գահիրէ, Փետրուար 1902, Ա. տարի, թիւ 2, էջ 54):

Ա.

## 2 ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ...

համոզումներէն: Բայց միւս առումներով ան աւելի ձախ էր քան Շուշանեանի կամ այդ ժամանակուայ հիմնահոսանքային ընկերվարութեան, Համայնավարութեան եւ Դաշնակցութեան ձախութիւնը, աւելի արմատական քան անոնց արմատականութիւնը: «Ահա՛ *Տատաիզմը* որ մեռաւ գէշ զաւակի պէս», կ'աղաղակէ Շուշանեան: Ճիշդ է, 1920-ականներու երկրորդ կէսին արդէն չկար տատաիզմը: Բայց պատճառները շատ աւելի խոր էին քան Շուշանեանի խանդավառ միամտութիւնը: Նիւթէս դուրս է ասիկա:

Աւան-կարտիսթական ապագայապաշտ (futurism) շարժումին հերքումը, միւս կողմէ, աւելի տրամաբանօրէն կրնայ տեղաւորուիլ Շուշանեանի համոզումներուն մէջ. «Ահա՛ *Ապագայապաշտութիւնը* իր խեղկատակ *Մարինէթթիով*: Հակառակ իր սուտ խանդավառութեանց, ուռուցիկ խօսքերուն, իր իբր թէ «յեղափոխական» պարունակութեան, յանդեցաւ *Ֆաշիզմի*, ցոյց տալով դասակարգային իր աղտեղի դէմքը, կցուելով *Մուսոլինիի* հետ ու պոռնկանալով Հռովմի հրապարակներուն վրայ: Ապագայապաշտութիւնը չէ անշուշտ որ պիտի հակադրէք վաղուան քաղաքակրթութեան, չորրորդ դասակարգի գրականութեան»:

Սահմանափակում կայ Շուշանեանի այնքան գործածած «դասակարգ» բառին մէջ: Դասակարգի հասկացողութիւնը շատ հին է՝ հին յոյն փիլիսոփաներուն ծանօթ էր ան: Շուշանեանին, ինչպէս ժամանակուայ փոփիւլիսթ ընկերվարականներուն համար, մարքսիզմը եղած է միջնորդուած գիտութիւն մը, միջնորդուած՝ իրենց կուսակցութիւններուն եւ հիմնարկներուն ընդմէջէն: Միջնորդութեան, կամ աղբիւրի բուն իմաստի անիրազեկութեան հետեւանքով, դասակարգ բառը ստացաւ համընդհանուր անորոշ դիմագիծ մը, այնպէս ինչպէս դաշտին հակառակ կողմը գտնուող ազգայիններուն համար՝ ազգայինը: Դասակարգային գիտը Մարքսի մօտ կը գտնուի յատուկ իմաստի մը մէջ: Մարքսի համար դրամատէր դասակարգը այն է՝ որ *կ'իւրացնէ* յաւելեալ արժէքը (surplus value), իսկ ընչազուրկ դասակարգը այն է՝ որ *կ'արտադրէ* յաւելեալ արժէքը: Այս առումով, եւ յետ-մարքսեան իրականութիւններու բերումով, ընչազուրկ դասակարգը շատ աւելի լայն հասկացողութիւն մըն է քան բանուորութիւնը, որուն մէջ կրնայ մտնել նաեւ քաղքենի դասակարգը՝ գեղեցիկ փողկապով բաժինի վարիչը, անթերի հագուած քարտուղարուհին, որոնք ընկերութիւններու մէջ եւ այլուր կ'արտադրեն յաւելեալ արժէքը, զոր կ'իւրացնէ տնօրէններու խորհուրդը (board of directors): Խնդիրը դասակարգ բառի բացարձակացումն է, առանց փորձ կատարելու գտնել անոր իմաստային ծալքերը:

Այս բոլորի հակապատկերն է Թաշեանը: Անոր համոզումներուն մէջ նոր հասարակարգ ստեղծելու գաղափար չկայ: Այս առումով յեղափոխական մը չէ ան: Ինչպէս վերը տեսանք, ան ինքզինք կը ներկայացնէ ընկերվարական՝ առանց այդ ընկերվարականին հասնելու ուղիները ներկայացնելու, նախադասելով եւ վերադասելով ազգայինի գաղափարը, որ նոյնպէս մաս կազմած էր Դաշնակցութեան ծրագիրին, ինչպէս պիտի տեսնենք ստորեւ:

Ազգային ըլլալով, Թաշեան հետաքրքրուած չէ արուեստի դպրոցներով՝ տատաիզմ, ապագայապաշտութիւն, եւ այլն: Շուշանեան պէտք ունեցած է հերքել այդ դպրոցները, Թաշեանի ազգայինին համար թապուներ են անոնք:

Ազգայինը՝ Թաշեանի ներկայացումի կերպով, մեկուսացնող դեր կը խաղայ հասարակական շերտերու պահանջքներէն, դառնալով ընդհանուր հասարակութեան անկողմնակալ դիտարկութեան ակնոցը կամ երրորդ խումբի ներկայացուցիչը: Թաշեանի ազգայինը կը տանի դէպի արուեստի ինքնավարութիւն եւ անձնական զգացումներու արտայայտութիւն, հետաքրքրուած չըլլալով մասնակցելու հասարակական շերտերու մտահոգութիւններուն եւ դառնալու անոնց խօսնակը:

**Բանուորականութիւնն ու ազգայինը՝ անմերձանելի միաւորներ**

Արդէն յստակ է բանուորական եւ ազգային գրականութիւններուն անմերձանելիութիւնը՝ Շուշանեանի եւ Թաշեանի բանավէճին մէջ:

Շաւարշ Նարդունի ուղղակիօրէն կը հաստատէ անոնց յաւերժ բաժանումը. «Վրացիները շատ կարեւորութիւն չտուին պրոլետարական գրականութեան տեսակէտներուն: Եւ անոնց «պրոլետ-գրողները», ինչպէս Կալաձէ կամ Իաշվիլի, ազգայնական երգեր կը յօրինեն»: Նարդունիի համար միջին չկայ, կամ պրոլետ-գրող՝ որ վատ է, կամ ազգային գրող՝ որ լաւ է:

Վերջապէս, հարցնենք ամենակարեւորը. ի՞նչ է բանուորական գրականութիւնը եւ ի՞նչ է ազգային գրականութիւնը: Ինչպէ՞ս կարելի է սահմանել բանուոր գրողը եւ ազգային գրողը: Ոչ ոք ունի վերջնական պատասխան (նախորդ թիւերով տեսանք նոյն ինքը ազգային գրականութեան շուրջ եղած անկարելի բանավէճը եւ իրական անհամաձայնութիւնը), բայց տակաւին Շուշանեան եւ Թաշեան/Նարդունի վստահ են բանուորական եւ ազգային գրականութիւններու երեւակայական սահմանագիծի առկայութեան: Կը բաւէ հարցնել շատ միամիտ հարցումներ: Հայ բանուորին արտայայտութիւնն ըլլալը ազգային չէ՞ արդեօք՝ հայ=ազգային հասարակ հաւասարեցումով: Ինչո՞ւ բանուորը ազգային չէ, իսկ ազգայինի տարրերէն մէկը հայ բանուորը չէ: Հարցումը պարզամտութենէ անդին չ'անցնիր, բայց սկիզբ մըն է լուրջ հարցականի տակ դնելու երկուքին պարտադիր հակադրութիւնը:

Նոյնն է նաեւ վերը յիշատակուած միջազգային/ազգային հակադրութիւնը: Երկու բառեր՝ «միջազգային» եւ «ազգային», որոնց տրուած է ծայրայեղ իմաստ: Իւրաքանչիւրն իր իմաստը զարգացուցած է անկախ միւսէն, ինքն իր մէջ հասնելով առաւելագոյն աստիճանի եւ վանելով որեւէ իմաստային շերտաւորումի կարելիութիւն, այն աստիճան՝ որ անկարելի դարձած է անոնց միջեւ գտնել իմաստային փոխյարաբերութիւններ եւ փոխներթափանցումներ: Մինչդեռ, իրականութեան մէջ, անոնք փոխլրացնող իմաստներ են: Իւրաքանչիւր ազգայինի մէջ կայ միջազգային յատկանիշներ, միջազգայինի մէջ կան ազգային տարբերակումներ:

Մեզի կը թուի այնքան վստահ ըլլալ այս երկու բառերու իմաստներէն՝ որ նոյնքան վստահութեամբ եւ անզիջող վճռականութեամբ կ'ընդունինք մէկը, կը հերքենք միւսը: Եւ գերազանցապէս հանդիսատ կը զգանք այս բացարձակ միակութիւններուն մէջ:

(Շար. 10)

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1915 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 19 ՄԱՅԻՍ 2022 | ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. | عدد رقم ١٩١٥ الخميس ١٩ مايو ٢٠٢٢


## «ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆ» ՌՈՒՍ-ՌՈՅՍՈՎ

Մարդիկ Հայաստանի փողոցներն են՝ հանրահաւաք, երթ եւ անհնազանդութեան գործողութիւններ, դիմելով շատ մեծ հայրենասիրական խօսքերու: Պահանջը՝ Փաշինեանի հրաժարականը: Իրական ընդդիմութեան մեծ մասը, հասարակական կազմակերպութիւնները եւ Փաշինեանը մինչեւ վերջ չսիրող խումբերը չկան այնտեղ: Կայ Պատիւ Ունեմը՝ իշխանութենէն դուրս մնացած ԱԱԾ-ի տնօրէնի սեփական կուսակցութիւնը, կայ Հայրենիք Դաշինքը՝ որ վերջին ընտրութիւններուն ստացած իր տոկոսը կը պարտի Քոչարեանին, քանի որ ան էր Դաշինքի առաջնորդը, ան էր ընտրարշաւի առաջին ձայնը, եւ առանց որուն Դաշինքի իրական քուէաթիւը պիտի չանցնէր 4-5 տոկոսը: Զմոռնանք, որ 2021-ի արտահերթ ընտրութիւնները Հայաստանի սակաւաթիւ ՉԿԵՂԾՈՒԱԾ ընտրութիւններէն էր:

Ծայրայեղ աջակողմեայ փոփիւլիսթական խօսքով լեցուած է փողոցը այսօր:

Ահաւասիկ Մայիս 2-ի հանրահաւաքէն քաղուածքներ. «Նիկոլի հայ-հայը գնացել է, վայ-վայն է մնացել: Նիկոլ էլ չկայ»: «Մահապատի՛ժ»: «Պայքար, պայքար մինչեւ վերջ» (երանի այդ պայքարը ըսուած ըլլար 44-օրեայի ժամանակ):

Մայիս 4-ի հանրահաւաքին կը հուչակուի հետեւեալ արտայայտութիւնը՝ «Ով մեր կողքին չէ՝ Նիկոլ է»:

Մայիս 8-ին կ'որոշեն երթալ Գիւմրի: Գերիներու ծնողքները անոնց առջեւ կը փակեն Գիւմրի մտնելու ճանապարհը: Ծակատագիր. փոխանակ իրենք ճամբաները փակելու, ճամբան կը փակուի իրենց առջեւ: Ինչո՞ւ կը փակեն: «Ցաւդ տանիմ, ես գերու ծնող եմ, որ տղես տարիուկէս է էնտեղ է: Դուք ինչի՞ հելաք դրօշը վառիք, չթողիք երեխէքին բերեն», կը բողոքէ ծնողքներէն մէկը միամտօրէն: Խորքային իմաստն այն է՝ որ անյոյս խօսքերու եւ ցոյցերու փոխարէն, գործնական բան մը ըրէք գերիներուն համար, եթէ կրնաք: Մէկ ժամ փակ պահեցին ճամբան: Արշաւի շէֆը նեղուած է եւ կ'արդարացնէ իր գործողութիւնը. «Առաջինը՝ էս քո սաղ մինիստրներին սիկտիր եմ անելու, կամերաների առաջ եմ ասում: Ասե՞մ՝ ինչի: Որովհետեւ մի հայվան արտաքին գործերի նախարար ա նստած, ու սենց հայվանները նստած են...» (https://epress.am/2022/05/08/pows-relatives-stopped-them.html): Այս խօսքերը գիւմրեցիին ըսողը պարագլուխ մըն է՝ որ յոյս ունի վաղը այս բառապաշարով աթոռ գրաւել խորհրդարանի մէջ:

Վտանգաւոր, *շատ* վտանգաւոր խօսքեր:

Թաւշեայ Յեղափոխութիւնն ալ, ինչպէս կը յիշենք, իր հետ բերաւ երկուութիւն մը: Բայց այնտեղ երկուութիւնը նկատի ունէր փտածութիւնն ու անոր թիկունք կանգնող օլիկարքական դասակարգը, Մարտ 1-ին տասը քաղաքացիներ սպաննողները, Մարտ 1-ին Ղարաբաղի սահմաններէն Երեւան զօրք բերողները, արդարադատական համակարգը նուիրապետութեան վերածողները, ընտրութիւնները կեղծողները, կեղծ ընտրութիւններով իշխանութեան հասնողները, ժողովրդավարութիւնը բռնաբարողները, բռնութիւնը արմատացնողները: Ցաւօք, այսօր փողոցը գտնուողները յաջողեցան արդարութեան եւ ժողովրդավարութեան համար պայքարողները անուանել ատելութեան խօսք սերմանողներ:

Բառերը խեղաթիւրուեցան: Արդարութեան խօսքը թարգմանուեցաւ՝ ատելութեան խօսք: Պատերազմի պարտութիւնը թարգմանուեցաւ՝ կապիտուլացիա:

Պարտուած վիճակով Նոյեմբեր 9-ի եռակողմ յայտարարութիւնը (որուն հետեւանքով Ազըրպէյճան չգրաւեց Ղարաբաղի մնացած մասը) թարգմանուեցաւ՝ դաւաճանութիւն: Արդէն Արթուր Վանեցեան ճիշդ պատերազմէն ետք բարձրաձայնեց՝ թէ պէտք չէր յայտարարութիւնը ստորագրել, այլ պէտք էր պարտուիլ մինչեւ վերջ, թողուլ Արցախը ամբողջութեամբ, եւ ապա ռազմական գործողութեամբ կամ դիւանագիտութեամբ ետ վերցնել կորսուածը (*Ջահակիր*, թիւ 1879): Այս մարդը այսօր փողոցն է:

Հիմա եւս բառախաղ է:

Թուրքիոյ հետ դիւանագիտական յարաբերութիւններուն փորձը կը թարգմանուի՝ եղբայրութիւն թուրքերուն հետ: Երբուընէ՞ քաղաքականութեան մէջ եղբայրութիւն գոյութիւն ունեցած է:

Հողային բանակցութիւններու ընթացքը կը թարգմանուի՝ հողային յանձնում: Այսքան պարզ:

Մէկ խօսքով, իրական գործողութիւնները արտայայտող բառերը կը թարգմանուին վերադիր հայրենասիրական բառերով: Մինչ առաջինները ենթակայ են քննարկումի, վիճաբանութեան, ընդունումի եւ մերժումի, երկրորդներուն խնդրականացումն անգամ դաւաճանութիւն է, քանի որ ենթադրաբար հայրենասիրական են: Հայրենասիրական են բառերը: «Հայրենասիրութեան ողջ բառապաշարը պղծեցին», Մայիս 1-ի ֆէյսպուքեան գրառումին մէջ արձանագրեց հասարակաբան Սօնա Մանուսեան:

Հանրահաւաքներուն վարքը կը վերականգնէ նախկիններուն գործողութիւնները: Կ'արձանագրուի հանրակառքերով մարդոց փոխադրութեան դէպք: Հանրակառքերով կուսակցականակից մարդ կը բերուի նաեւ Իրանէն (https://www.youtube.com/watch?v=gU5GeykZQ0E): YouTube-ի վրայ կը յայտնուի ձայնագրութիւն՝ ուր զրուցակիցները կը խօսին, թէ ինչքան գումար կը վճարեն բողոքի ցոյցերուն մասնակցելու համար (https://www.youtube.com/watch?v =_YJshKKhfjw&t=24s): Մայիս 8-ին հանրահաւաք Գիւմրիի մէջ, որմէ կը տարածուի տեսագրութիւն՝ ուր երիտասարդներ կը ծեծեն իրենց ընդդիմացող տարեցներ (https://www.youtube.com/watch?v=smmfdJeECvo): Կը կայանայ հետախուզութիւն եւ կը պարզուին ծեծողները՝ երթերու գլուխը կանգնածներու որդիներ (https://www.aravot.am/2022/05/10/1266869/): Ի դէպ, անոնցմէ մէկը վերը մէջբերուած «հայվան արտաքին գործերի նախարար» արտայայտութեան որդին է: Կազմակերպուած հրոսակախումբ: Մայիս 11-ին կը փորձեն գրոհել Երեւանի քաղաքապետարանի շէնքը:

Կը դիմեն կեղծ տեղեկատուութեան: Մայիս 2-ին կը յայտարարեն՝ որ Երեւանի Համալսարանի աշակերտութեան 70-80 տոկոսը անցած է դասադուլի: Շուտով համալսարանի դասախօսներն ու աշակերտները կը բացայայտեն, որ իրենք ուշ հասած են համալսարան՝ ցուցարարներուն պատճառած երթեւեկութեան խցանումներուն հետեւանքով:

Այսօր փողոցի խօսքը ծայրայեղական է: Խօսքը գործողութիւն կրնայ յառաջացնել: Եւ շատ տեղեր յառաջացուց: Ապրիլ 27-ին, ցուցարարները տարբեր առարկաներ նետեցին Անտարես հրատարակչութեան տնօրէն Արմէն Մարտիրոսեանի ուղղութեամբ (*Politik.am*–ի տեսանիւթին մէջ կ'երեւի՝ թէ ինչպէս ցուցարարները կը հայհոյեն եւ նոյնիսկ հարուածներ կը հասցնեն անոր, զինքը անուանելով թուրք): Մայիս 2-ին ցուցարար մը ապտակեց ոստիկանին եւ ցուցարարները հայհոյեցին իրենց չմիացող անցորդները եւ հարուածեցին վարորդներու ինքնաշարժները: Մայիս 4-ի երթի մասնակցողները շիշերով հարուածեցին դերասան Սօս Ջանիբեկեանին՝ իր իշխանական համոզումներուն համար: Մայիս 10-ին դէպի Զէյթուն թաղամաս երթի ժամանակ շիշեր նետեցին եւ հայհոյեցին փողոցը կանգնած ուսուցիչ Սեւակ Կիրակոսեանի վրայ՝ իր հակառակ դիրքին համար: Այս բոլորը, որովհետեւ իրենց վերնախաւի պատումը յարձակողական է ու ծայրայեղական: Խօսքը կ'արտադրէ գործողութիւնը: Ատելութիւնը ՀԱՄԱԿԱՐԳԱՅԻՆ է:

Սկսան հանգանակի (մանիֆեսթ) նման բաներ տարածուիլ՝ հայրենասիրութիւն հայրենասիրութեան համար փակ ձեւաչափով, զերծ որեւէ քաղաքական մեկնաբանութենէ եւ ռէալ փոլիթիքի ըմբռնումէ:

Այսպէս, Ապրիլ 5-ի «ընդդիմութեան» հանրահաւաքին հանգանակը հայրենասիրական էր, հայրենասիրութիւն կը պահանջէր, հայրենասիրութիւն կը քարոզէր: Եւ այդտեղ կը մնար: *Epress.am* յետագային պիտի գրէր անոր մասին.

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ. ԱՊԱՑՈՒՑՈՒԱԾԸ ԵՒ ԱՆԱՊԱՑՈՒՑԵԼԻՆ



**Մաս 1.**

Այն, որ փոխզիջումների մերժման եւ ստատուս-քվոյի պահպանման քաղաքականութիւնը յանգեցրեց ազգային աղէտի, ապացուցման կարիք չունի, ինչը աղէտից յետոյ խոստովանում են անգամ այդ քաղաքականութեան երբեմնի կողմնակիցներից ոմանք:

Սակայն, դրանով հանդերձ, իրենց արդարացնելու համար շատերը փորձում են ապացուցել, որ նոյն բանը տեղի էր ունենալու նաեւ փոխզիջումային ճանապարհն ընտրելու պարագայում: Սա ոչ այլ ինչ է, եթէ ոչ ինքնարդարացման խղճուկ փորձ եւ բացարձակապէս անապացուցելի, քանի որ պատմութիւնը «եթէ» չի սիրում: Պատմութիւնն արձանագրում է այն, ինչն արդէն իրականացած է: Ուստի, ինչպիսի ձեռնածութիւններով էլ Ղարաբաղի հարցի փոխզիջումային լուծման հակառակորդները (պետական այրեր, կուսակցապետեր, մտաւորականներ) փորձեն արդարացնել իրենց ազգակործան քայլերը, միեւնոյն է, նրանք վաղ, թէ ուշ կանգնելու են պատմութեան դատաստանի առջեւ, ինչից ոչ ոք դեռեւս չի խուսափել: Ահա նման ճակատագրի գիտակցումն է, որ նրանց այսօր էլ մղում է ամէն կերպ արդարացնելու իրենց աղէտաբեր պահուածքը, ինչը, ցաւօք, աւելի ու աւելի է խորացնում Հայաստանի ու Ղարաբաղի ներկայիս ճգնաժամը:

**Մաս 2.**

Խօսքը վերաբերում է ընթացիկ ներքաղաքական առճակատմանը, ինչն, իմ կարծիքով, ոչ թէ ուժեղացնում, այլ աւելի է թուլացնում Հայաստանի դիրքերը առաջիկայ դժուարագոյն բանակցութիւններում: Ուստի անհասկանալի է, թէ որն է այսօրուայ ընդդիմութեան բուն նպատակը: Սերժ Սարգսեանի թեթեւ ձեռքով Նիկոլ Փաշինեանին փակցուել է «կապիտուլեանտ»

↳ 2

# ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ
## (Մահուան 50-ամեակին առիթով)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

**Կուսակցական ծրագիր**

Շուշանեան իր բանուորական-ընկերվարական գաղափարը հաստատելու համար կը դիմէ ոչ թէ Մարքսին՝ որ կորիզն է այդ համոզումներուն եւ անոնց տեսականացումին, այլ Դաշնակցութեան ծրագիրին: Կը քաղէ կուսակցութեան Ժ. Ընդհանուր Ժողովին (1924-1925, Փարիզ) կողմէ հաստատուած ծրագիրը.

«Մարդկութեան մէկ մասին բաժին ըլլալով մաշող աշխատանքը, միւսին պարապ ու զուարճամոլ կեանքը, ձգելով որ մէկը քայքայուի թշուառութենէ, իսկ միւսը ապասերի հարստութենէ, դրամապետութիւնը կը հանդիսանայ հզօր խոչընդոտ մը, մարդկային յառաջդիմութեան գործին:

«Դրամապետութեան սնանկութիւնը ակներեւ է: Մշակութային յառաջդիմութեան դրօշակը իրապէս անցած է արդէն աշխատաւոր դասակարգերուն ձեռքը, որոնք դրամապետութեան կը հակադրեն ընկերվարութիւնը»:

Եւս ուրիշ քաղուածք մը կուսակցութեան ծրագիրէն. «Մեծ յեղափոխութեան հռչակաւոր նշանաբանները «Ազատութիւն, հաւասարութիւն, եղբայրութիւն» որոնց համար աշխատաւորը չէր գլացած թափել իր արիւնը, մնացին իբրեւ պատրանք, իսկ քաղքենի դասու ձեռքին իբրեւ միջոց՝ գրաւած դիրքը ամրապնդելու»:

Քաղքենիութեան դերի սպառումը Շուշանեան նոյնպէս կը գտնէ կուսակցութեան ծրագիրին մէջ: Նախ, ծրագիրը կը հաստատէ քաղքենիութեան յառաջապահ գոյութիւնը աւատատիրութենէն յեղաշրջուելու առնչութեամբ. «Աւատականութեան կապանքներէն ազատելով՝ քաղքենի դասը նոր դարագլուխ մը բացաւ համաշխարհային բնաշրջումին մէջ, հսկայական թռիչք մը տուաւ մարդկային աշխատանքին, ճարտարարուեստին եւ առեւտուրին»:

Ապա ծրագիրը կը ներկայացնէ քաղքենիութեան ներկայ սնանկութիւնը. «Այս ամէնը քաղքենի դասու պատմական դերին դրական կողմն է: Սակայն խորտակելով աւատական իրաւակարգը՝ նոյն քաղքենի դասը հաստատեց իր սեփական իշխանութիւնը: Կեղեքումի մենաշնորհ վայրենի, բիրտ ուժէն անցաւ աւելի քաղաքակիրթ ուժին՝ դրամագլուխին»:

Վերջին քաղուածք մը եւս ծրագիրէն՝ ցոյց տալու համար ովքե՞ր են դրամատիրութեան եւ քաղքենիութեան դէմ պայքարող խումբերը. «Այդ պայքարին մէջ կը միանան եւ ձեռք ձեռքի կու տան քաղաքներու արդիւնաբերական ընչազուրկները, աշխատաւոր գիւղացիութիւնը եւ յեղափոխական մտաւորականները»:

Մինչ Շուշանեան անհրաժեշտ կը գտնէ այս բոլոր քաղուածքները կատարել կուսակցութեան ծրագիրէն, Թաշեան եւ Նարդունի կուսակցական ոչ մէկ քաղուածքի կարիքը կը զգան ազգայինը պաշտպանելու համար:

Պատահական չէ ասիկա: Ազգայինի պատումը կուսակցութեան մէջ եւ անկէ անդին այնքան տարածուած, ամրացած ու անվիճարկելի գոյութիւն մըն էր՝ որ անոր հաստատումը ծրագիրներու ընդմէջէն աւելորդութիւն մըն էր: Այլեւ կրնար նսեմացնել ազգայինի գաղափարը, քանի որ ան կը ներկայանար իբրեւ արտակուսակցական, համահայկական իրականութիւն: Թէեւ, Թաշեան եւ Նարդունի չփորձեցին հակաճառել Շուշանեանի քաղած կուսակցութեան ընկերվարական չերտին: Պարզապէս անտեսեցին անոր գոյութիւնը: Անտեսումը բնական էր՝ քանզի կարելի չէր քննադատել կուսակցութիւնը:

Անկախ ներկայ բանավէճէն, Շուշանեանի ուշադրութենէն պիտի չվրիպէր ծրագիրի ընկերվարական կողմի յարուցած անհանգստութիւնը կուսակցութենէն ներս. «Մեր ծրագիրը, որ աւա՜ղ, աւա՜ղ, սկսած է նեղութիւն պատճառել շատ մը ընկերներու՝ սիրուած աղջկայ մը պէս՝ որուն հանդէպ յանցաւոր է մարդ, խղճի ձայնի պէս որ լռել չի գիտեր, վստահութեամբ կը յարէ, խօսելով յեղափոխութեան մասին, յեղափոխական պայքարի մասին»:

Խօսքը ի սկզբանէ եղած է մարքսիզմի մասին՝ առանց այդ եզրոյթը գործածելու: Եւ մարքսիզմի անհանգիստ ներգրաւումին պատճառները Դաշնակցութեան մէջ պիտի փնտռել իր պատմական զարգացումին մէջ, սկսելով անոր ներածական ընդգրկումով Թիֆլիսի 1892-ի առաջին համագումարին, անցնելով Երկրորդ Միջազգայինի հետ համերաշխական մօտեցումներով, շարունակելով համայնավարութեան հետ թշնամական յարաբերութիւններով, այս բոլորը միախառնուած ազատագրական բազմապիսի շարժումներով՝ ազգայինի գերիշխանութեամբ, ուր, եթէ պէտք էր, ընկերվարութիւնը կ'ենթարկուէր ազգայինին այլ ոչ հակառակը: Մինչ անունով չյիշատակուած մարքսիզմը կը կազմէր Դաշնակցութեան անկայուն տարրը, ազգայինի գոյութիւնը չէր կրնար կասկածի տակ առնուիլ, մինչեւ վերջինիս բացարձակ տիրակալութիւնը առաջինին վրայ: Եւ Շուշանեան իրատեսական կարծիք մը կ'արտայայտէր՝ երբ կ'ըսէր թէ ծրագիրը սկսած էր նեղութիւն պատճառել շատ մը ընկերներու: Նկատի ունէր ծրագիրի ընկերվարական կողմը:

Արդարեւ, Շուշանեանի ձախութիւնը միջնորդուած մարքսիզմ մըն էր, միջնորդուած՝ կուսակցութեան ընդմէջէն: Կուսակցական միջնորդութիւն՝ որ պիտի վաւերականութեան տար մարքսիզմին, առանց յիշատակելու վերջինս կամ վերջինիս անունը: Շուշանեան կրնար իր դիրքը պաշտպանել ուղղակիօրէն դիմելով Մարքսին՝ եթէ երբեւէ կարդացած էր զայն: Ասիկա նաեւ մարքսիզմի ընդհանուր խնդիրը դարձաւ, երբ Մարքսն ու իր տեսութիւնները դարձան վարդապետութիւն՝ յայտնի «իզմ» վերջածանցի յաւելագրութեամբ (մարքսիզմ): Այստեղ գաղափարը վերածուեցաւ գաղափարախօսութեան՝ ուր անյայտացան մեկնաբանութիւնները, մանրամասնութիւնները եւ նրբութիւնները, եւ կարելի եղաւ Մարքսի մասին խօսիլ՝ անոր բացակայութեան:

**Ո՞ւր կը գտնուի խզումին իմաստային ակունքը**

Մարքսիզմի եւ ազգայինի խզումը նոր երեւոյթ չէ: Բացատրութիւնը կ'երկարի: Կարճ: Երբ Մարքս բացասական մօտեցում կը ցուցաբերէր ազգայինի նկատմամբ, ան յստակօրէն նկատի ունէր ԺԹ. դարուն, դրամատիրութեան համատեղ յայտնուած ազգայինի *տեսակը*՝ նոր տեսակը, որ կապուած էր իշխանական պատումին հետ եւ արտադրութիւնն էր վերադիր քաղաքականութիւններու եւ դրամական իշխանութեան: Մարքս երբեք չէ հերքած վարէն բխած դարաւոր ազգայինի գոյութիւնը՝ *ժողովրդական* ազգայինը, իբրեւ կենդանի փորձառութեան եւ բնական ապրելակերպի բնազդական ու ներքնականացուած կենցաղ: Մարքս չէ խօսած ազգերու վերացումի մասին, ազգայինի կորիզը հանդիսացող լեզուներու վերացումի կամ միաձուլումի մասին, այլ, ընդհակառակը, իր ամբողջ տեսութիւնը եղած է մարդը ազատագրելով դրամատիրական այլազան արհեստական պարտադրանքներէն, զայն վերադարձնել իր բնական վիճակին, իր բնազդին, իսկ այդ բնազդին չէր կրնար մաս չկազմել ազգայինը՝ իբրեւ կենդանի փորձառութիւն, իբրեւ փոխարինում իշխանական ազգայնականութեան: Մարքս դէմ էր ազգայինի ֆեթիշականացումին:

ԺԹ. դարուն արդէն ազգայինը անջատուած էր կեանքի բարօրութեան հասկացողութենէն: Կեանքի բարօրութեան մասին խօսքը այլեւս չէր կրնար ազգային նկատուիլ: Աղքատութեան վերացումը ազգային գործունէութիւն չէ: Գիւղացին ազգային է՝ այնքան որ կրնայ նիւթ հայթայթել ազգային գրականութեան համար, գրականութիւն՝ որ չէ ուղղուած գիւղացիին, այլ հասցէագրուած քաղաքի ժողովուրդին՝ *քաղքենի*ին:

ԺԹ. դարուն լիովին անտեսուեցաւ ազգային բնազդականութեան անհրաժեշտութիւնը, յատկապէս համայնավար գաղափարախօսութեան համատեղ պատումներ յառաջացան ազգերու վերացումի մասին՝ զայն խառնելով պետութիւններու վերացումի մարքսեան տեսութեան հետ (ազգն ու պետութիւնը տարբեր միաւորներ են): Զհաշուելով Խորհրդային Միութեան ժամանակ Ռուսաստանի գաղութատիրական կեցուածքը միւս երկիրներուն նկատմամբ, յատկապէս «գաւառական» Կովկասին, բան մը՝ որ համայնավարութիւնը աւելի եւս հեռացուց դասական մարքսիզմէն:

Արդ, մէյ մը որ ազգայինը դարձաւ համընդհանրացնող երեւոյթ՝ անկարող տեսնելու հասարակական շերտաւորմները եւ հոգալու մարդկային բարօրութեան եւ հաւասարութեան հարցերը, որոնք ազգային են ի ծնէ, Շուշանեանն ու Թաշեան/Նարդունին պիտի չկրնային հասկնալ իրարու: Հիմքը այս ըլլալով, անշուշտ, խնդիրը ունի շատ աւելի բարդ ու այլազան երեւոյթներ: Նիւթէս դուրս է ասիկա:

**ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ**

1926-ին եղաւ *Հայ վարժարան* ամսաթերթի համախմբագիրը՝ ուր ստորագրեց նաեւ կարեւոր յօդուածներ: Յօդուածներուն մէջ արծարծուած գաղափարներուն նուիրուած գիրք մը լոյս ընծայուեցաւ 2021-ին (տեսնել Ծանօթագրութիւն 18): Պիտի չկրկնեմ:

***ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՉՆԱԿ***

1922-1929-ին յօդուածներ ստորագրած է Նիւ Եորքի *Հայաստանի կոչնակին* մէջ, 1922-ին՝ Պոլիսէն, 1923-ին՝ Յունաստանէն, 1923-1929-ին՝ Եգիպտոսէն (ցանկը տեսնել «Մամուլի մատենագիտութիւն» մասը):

Մեծամասնութիւնը նուիրուած է փիլիսոփայութեան եւ հոգեբանութեան՝ Ֆրէնսիս Պէյքըն, Ռընէ Տէքարթ, Պէնէտիքթ Սբինօզա, Ժան Լօք, Կիյօմ Լայպնից, Էմմանուէլ Քանդ, Սոկրատ, Պղատոն, Արիստոտէլ, փիլիսոփայութիւնը Քանդէն ետք, յոյն, իտալացի, անգլիացի եւ սպանիացի ժողովուրդներու հոգեբանութիւն:

Պահանջ մըն էր առնչուելու աշխարհի կարեւոր միտքերու հետ եւ վերլուծելու եւրոպացի չորս ժողովուրդներու

4

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ. ԱՊԱՑՈՒՑՈՒԱԾԸ ԵՒ ԱՆԱՊԱՑՈՒՑԵԼԻՆ

1

պիտակը, ինչը թէեւ դիպուկ է, բայց կէս-ճշմարտութիւն: Իրականում կապիտուլեացիայի է ենթարկուել ոչ թէ Փաշինեանը, այլ Հայաստանը. Փաշինեանն ընդամէնը ստորագրել է Հայաստանի կապիտուլեացիայի ակտը:

Հետեւաբար, ով էլ լինի Փաշինեանի փոխարէն՝ Ռոբերտ Քոչարեանը, Սերժ Սարգսեանը կամ թէկուզ՝ Իշխան Սաղաթելեանը, միեւնոյն է՝ նրանք հլու-հնազանդ ընդունելու են այն լուծումը, ինչը փաթաթուելու է Հայաստանի վզին: Խնդիրն, ըստ այդմ, Հայաստանի ղեկավարի անձից կախուած չէ: Եթէ այս պարզ ճշմարտութիւնը չհասկացուի, եւ մեր երկրի ներքաղաքական ցնցումները շարունակուեն, ապա մեզ պարտադրուող լուծումները շատ աւելի ցաւոտ են լինելու, անկախ այն հանգամանքից, թէ Փաշինեանը կամ մէկ ուրիշը կը ստորագրի վերջնական փաստաթուղթը:

Հարց է ծագում՝ արդեօ՞ք ներկայիս ընդդիմութեան առաջնորդները չեն գիտակցում սա: Եթէ չեն գիտակցում, ապա դա նշանակում է, որ քաղաքականութիւնից ոչինչ չեն հասկանում: Իսկ եթէ գիտակցում են, բայց շարունակում ներքաղաքական ցնցումները, ապա դրանից բխում է, որ նրանք բոլորովին այլ նպատակներ են հետապնդում, որոնք բացարձակապէս կապ չունեն ազգային շահերի հետ: Ազգային շահերի հետ ոչ մի կապ չունեն նաեւ ներկայիս իշխանութիւնների կոշտ գործողութիւններն ընդդիմութեան կազմակերպած ցոյցերի, երթերի եւ հանրահաւաքների նկատմամբ:

Անյոյս լաւատես լինելով՝ դեռեւս ակնկալում եմ, որ հակամարտող կողմերը վերջիվերջոյ կը հասկանան իրենց դիրքորոշումների վտանգաւորութիւնը եւ ջանքեր կը գործադրեն ինչ-որ փոխհամաձայնութեան գալու՝ իրավիճակն աւելի եւս չբարդացնելու եւ նոր վտանգներից խուսափելու նպատակով:

Եթէ մեր մտաւորականներն իրապէս ցանկանում են ազգանպաստ գործ կատարել, թող ստիպեն Նիկոլ Փաշինեանին, Ռոբերտ Քոչարեանին եւ Սերժ Սարգսեանին նստել մէկ սեղանի շուրջ եւ ելք գտնել ներքաղաքական ճգնաժամից: Ի դէպ, այսպիսի յորդորով ես հանդէս եմ եկել դեռեւս ներկայիս ճգնաժամից առաջ, ս.թ. Յունուարի 15-ին:



ԽՈՀԵՐ

# ԵՐՐՈՐԴ ՀԱԿԱԲՆԱԳԻՐԸ՝ *ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ, ԱՌԱՆՑ ԲԱՅՑԵՐԻ*

**ՀԱՅԿ ԱԻԱԳԵԱՆ**

Ակադեմական մտաւորականներ՝ ընդդէմ աքթիւիսթական մտաւորականներու, կամ փրոֆեսիոնալներ՝ ընդդէմ յետփրոֆեսիոնալներու (*Զահակիր*, թիւ 1727-1735)։

Բնական է, մտաւորականներու բաժանումը երկու խումբերու կտրուկ ու բացարձակ չէ, ու չի կրնար այդպէս ըլլալ, բայց երկուքի պայմանական բաժանումը ցոյց կու տայ մտածումի հիմնական ու խորքային տարբերութիւններու գոյութիւնը։ Միայն այս երկուքի գիտակցութենէն ետք է որ կարելի կ՚ըլլայ դիտել փոխներթափանցումները եւ մէկէն միւսին անցումներուն կարելիութիւնները։

Ակադեմական փրոֆեսիոնալները անոնք են՝ որոնք չեն կրնար արտայայտուիլ հաստատուած հիմնարկներէն կամ հիմնարկային մտածողութենէն դուրս։ Անոնք մասնագէտներ են իրենց բնագաւառներուն մէջ, յաճախ շատ լաւ մասնագէտներ, բայց կը դժուարանան հասկնալ մասնագիտութեան մշակութային շրջապատը՝ մշակոյթ բառի ամենալայն իմաստով, եւ մանաւանդ՝ ոչ մէկ հետաքրքրութիւն ունին իրենց մասնագիտութիւնը դարձնելու ներգրաւուած ուրիշ բնաւաւառներով եւ կեանքի շերտաւորումներով, հարցերը տեսնելու փոխկապակցուած իրադրութիւններու ընդմէջէն։ Տոքթորականները այդպէս կը պատրաստեն մարդուն՝ տեսնել ինչ որ կայ նիւթին ներսը, որքան կարելի է աւելի մտնելով անոր խորքը, մանրացնելով փշիշները այնքան՝ որ արդէն դժուար կ՚ըլլայ տեսնել մանրացումներէն դուրս։ Կը սիրեն միահամուռ բառերը, միանշանակ արտայայտութիւնները, ընդունուած կարգախօսները։ Յեղափոխութիւնները հեռու են իրենցմէ, չեն սիրեր խանգարուիլ յեղափոխութիւններով։ Չեն սիրեր բանավէճերը, յաճախ ամբողջ մասնագիտական կեանք մը կ՚անցընեն առանձին գոյութեամբ։ Կը ձգտին ինքզինքի աստղային դրութեան, եւ կը հասնին անոր։ Իրենք կը կարծեն գիտնալ ամէն բան։

Երկրորդները սկզբունքօրէն ամէն տեղ են, կրնան գտնուիլ ամէն տեղ՝ ներառեալ հիմնարկներու մէջ։ Անոնց անյարիր է արուեստ արուեստի համար, գիտութիւն գիտութեան համար նշանաբանը, կը փորձեն ըլլալ ներգրաւուած հասարակական կեանքով, հասկնալ շրջապատը եւ այդ շրջապատը վերցնել իրենց արուեստին կամ գրականութեան մէջ։ Կը սիրեն բանավէճերը՝ հեռու ռատիքալ հարթակներէ եւ ֆաշիսթական մտածողներէ, որոնց հետ պարզապէս կարելի չէ վիճիլ։ Կը ձգտին մշակութային կապեր ստեղծել իրենց միջեւ եւ այդ կապերը արտայայտել իրենց արտադրութիւններուն մէջ։ Աստղային դրութիւնը անհաշտ է իրենց բնաւորութեան հետ։ Իրենք կ՚ուզեն գիտնալ ամէն բան։

Առաջիններն ու երկրորդները կ՚արտադրեն իրարմէ բոլորովին տարբեր բնագիրներ։

2016-էն մինչեւ այսօր, արձանագրուած են Հայաստանի քաղաքական դաշտի հետ կապուած երեք պարագաներ՝ երբ միեւնոյն իրադարձութեան շուրջ գրեթէ միաժամանակ արտադրուեցան մտաւորականներու երկու հակադարձող բնագիրներ, մէկը՝ առաջին խումբի ներկայացուցիչներու կողմէ, միւսը՝ երկրորդի։

Առաջին զոյգ բնագիրները եղան 2016 Յուլիսի Սասնայ Ծռերու ապստամբութեան յաջորդող օրերուն, երբ, ապստամբութենէն անդին, շարժեցաւ հասարակական շերտ մը։ Յուլիս 20-ին, ակադեմականներու եւ փրոֆեսորներու խումբ մը տարածեց բնագիր մը՝ բոլորովին անտեսելով ստեղծուող շարժումին իմաստը, եւ միանշանակօրէն դատապարտելով որեւէ հակաիշխանական նկրտում։ Զմոռնանք այդ ժամանակուայ ամբողջապէս փտացած իշխանական վերնախաւը։ Փաստօրէն, այդ մտաւորականութիւնը հանդէս կու գար իբրեւ փտածութեան պաշտպան։ Բնագիրը վճռական էր ու վերջնական։

Յաջորդ օրը՝ Յուլիս 21-ին, գրողներու եւ արուեստագէտներու ընդարձակ խումբ մը՝ ոչ-ակադեմիկոսներ, ոչ-փրոֆեսորներ, բայց բոլորը խորքային ու համակեցային մտածողներ ու հանրային անուններ, հանդէս եկան հակաբնագիրով, ուր կ՚ուզէին տեսնել շարժումին մէջ գտնուող իմաստները, բացատրել անոր պատճառները եւ ցոյց տալ իրենց մտաւոր մասնակցութիւնը իրադարձութեան (այս երկու բնագիրներուն մասին մանրամասն տես՝ *Զահակիր*, թիւ 1770-1771)։

Երկրորդ զոյգ բնագիրները արտադրուեցան Թաւշեայ Յեղափոխութեան առիթով։ 2018 Ապրիլ 21-ին, յեղափոխութեան կիզակէտին, 43 տոքթոր-փրոֆեսորներ տարածեցին բնագիր մը, հրապարակային շնորհաւորութիւն յայտնելով Սերժ Սարգսեանին՝ վարչապետ ընտրուելուն առիթով (կեղծուած ընտրութիւններով)։

Միւս կողմէն, անկախ ու անվախ մտաւորականներու 122 անձերէ բաղկացած բազմութիւն մը Ապրիլ 22-ին հրապարակեց յայտարարութիւն մը՝ հակաբնագիր մը, փորձելով գնահատել կատարուող յեղափոխութիւնը, որուն մէջ մտաւորապէս կը գտնուէին իրենք, օգտագործելով բազմաճկուն լեզու մը (զոյգ բնագիրներուն մասին տես՝ *Թաւշեայ Յեղափոխութիւն Հայաստանի մէջ. Ա. փուլ (13 – 23 Ապրիլ 2018)*, *Զահակիր*, Յաւելուած ԺԶ., էջ 11-17։)

Երրորդ զոյգ բնագիրները արտադրուեցան ընդդիմադիրներուն ներկայ փողոցի գործողութիւններուն առիթով (գործողութիւններուն մասին տես առաջին էջի առաջնորդող յօդուածը)։

Ապրիլ 24-ին՝ նախկիններ, փրոֆեսորներ, ակադեմիկոսներ, ժողովրդական արուեստագէտներ կը տարածեն հանգանակ մը՝ *Արցախի Հանրապետութեան ճակատագիրը համազգային պատասխանատուութիւն է*, ներկայացնելով հայրենասիրութիւն մը՝ աւելի քան ինքը հայրենասիրութիւնը, բնագիր մը՝ որ զերծ է հայրենասիրութիւնը գործողութեան վերածելու կարողութենէ։ Խօսք չկայ փողոցը գտնուողներուն մասին, բայց շարադրանքը 100 տոկոս կը վերարտադրէ նոյն բառաոճը եւ տրամադրութիւնը, միեւնոյն հռետորաբանութիւնը՝ բայց զերծուած անոնց յերիւրանքներէն։

Այս բնագիրին բնութագրիչ պատասխանը անմիջապէս կու գայ Լեւոն Տէր-Պետրոսեանէ, շեշտելով քաղաքական միտքի բացակայութիւնը այնտեղ. «Ինչեւիցէ, վերջիվերջոյ ես որոշեցի հրաժարուել յայտարարութեանն անդրադառնալու գաղափարից, դա համարելով անիմաստ զբաղմունք, քանի որ նրանում կայ ամէն ինչ, բացի քաղաքական մտքից։ Յոռետեսութեան գիրկը չընկնելու համար ինձ այլ բան չէր մնում, քան, սովորութեանս համաձայն, խորասուզուել Էդգար Յովհաննիսեանի *Երեւան դարձած իմ Էրեբունի*, Ռոբերտ Ամիրխանեանի *Երազ իմ երկիր հայրենի*, Ռուբէն Հախվերդեանի *Իմ փոքրիկ նաւակ* եւ Էդգար Էլբակեանի *Ա՜խ լուսին, լուսին* հոգեպարար քնարերգութեան մէջ։ Հաւատացնում եմ, այդ երգերում ազգային ոգու շատ աւելի խորքային եւ մնայուն գանձեր կան, քան խնդրոյ առարկայ յայտարարութիւնը ստորագրած կարկառունների մտքի ազգափրկիչ փայլատակումներում»։

Մայիս 9-ին կու գայ անոր հակաբնագիրը՝ *Խաղաղութիւն, առանց բայցերի*, ստորագրուած երկրորդ շերտի մտաւորականութեան կողմէ։ Ստորեւ՝ բնագիրն ամբողջութեամբ (https://epress.am/2022/05/08/peace_has_no_altrernative.html).

«Մայիսի 9-ը Հայաստանի պետական տօնացոյցի տառի համաձայն նշւում է որպէս «Յաղթանակի եւ խաղաղութեան տօն»։

«Մենք՝ ներքոստորագրեալ Հայաստանի քաղաքացիներս, օրուայ խորհուրդը մեկնում ենք որպէս խաղաղութեան յստակ պահանջ, որովհետեւ խաղաղութիւնը յաղթանակ է, իսկ խաղաղութեամբ չպսակուած «յաղթանակը»՝ պարտութիւն։

«Հակադարձում ենք հողային պահանջատիրութեանը խաղաղութեան պահանջատիրութեամբ, պնդում ենք, որ խաղաղութիւնն այլընտրանք չունի՝ ոչ թէ իբրեւ պարտուածի վզի փաթթան, այլ իբրեւ խաղաղ երկնքի ներքոյ ապրելու Հայաստանի ժողովրդի ազատօրէն արտայայտուած կամք՝ վաւերացուած 2021-ի արտահերթ ընտրութեամբ։

«Ցաւով ենք փաստում, որ 2018-ի ոչ բռնի, անարիւն, ժողովրդական յեղափոխութեան առաջնորդները, գալով իշխանութեան, համալրեցին պատերազմի «աւանդական» կուսակցութիւնների տխրահռչակ շարանը՝ յայտնուելով անցեալի լարած թակարդում։ Միաժամանակ, չենք կարող անտեսել ներկայիս բարդագոյն աշխարհաքաղաքական զարգացումների ֆոնին, խոցելի ինքնիշխանութեամբ եւ լրջագոյն անվտանգային մարտահրաւէրների առջեւ կանգնած Հայաստանը մեկուսացման եւ ազգամիջեան թշնամանքի փակուղուց հանելու, ապաշրջափակելու, հարեւանների հետ յարաբերութիւնները կարգաւորելու գործող իշխանութեան գործադրած ջանքերը։

«Համարում ենք, որ պատերազմի կուսակցութիւնները Հայաստանում չունեն անելիք այլեւս, քանի որ Ղարաբաղի հարցի շահարկմամբ իշխանափոխութեան արատաւոր շրջանն աւարտուել է։ Ուստի, նրանց ոչինչ չի մնում, քան մի վերջին՝ քաղաքացիական պատերազմի հրահրմամբ փորձել վերստին զաւթել ժողովրդի իշխանութիւնը։ Պարզից էլ պարզ է, որ ինքնահռչակ «ազգափրկիչներից» ոչ մէկը չի պատրաստւում ո՛չ Ադրբէջանի, ո՛չ էլ առաւել եւս Թուրքիայի դէմ պատերազմել։ Հետեւապէս, նորօրեայ «հայ վրիժառութեան» միակ հասանելի թիրախը «ներքին թուրքն» է, ասել է թէ՝ մեզ պէս սովորական Հայաստանի քաղաքացին, որ ընտրել է ոչ թէ յանուն հայրենիքի մեռնելու, այլ իր երկրում ազատ, արժանապատիւ եւ երջանիկ ապրելու ուղին։ Մենք կոտրում ենք մեզ պէս մտածող, բայց «թուրք» ու «ազգի դաւաճան» պիտակուելուց խորշող հազարաւոր քաղաքացիների լռութիւնը՝ պահանջելով Հայաստանի լեգիտիմ իշխանութիւններից տէր կանգնել իրենց խոստմանը եւ խաղաղութեան պայմանագրով հանգուցալուծել Ղարաբաղեան հակամարտութիւնը։

«Կիսելով հանդերձ պատերազմի արհաւիրքից տուժած մեր ժողովրդի ցաւն ու վիշտը, քաղհասարակութեան մեր գործընկերների բոլոր հիմնաւոր մտավախութիւնները, արցախահայութեան իրաւունքների պաշտպանութեան մեր բաժին պատասխանատուութիւնը՝ պահանջում ենք խաղաղութիւն՝ առանց բայցերի։

«Խաղաղութեան յաղթանակը տօնելո՛ւ ենք»։

*Արփի Մանուսեան՝ սոցիոլոգ, հետազօտող. Անտոն Իվչենկօ՝ ՀՀ քաղաքացի. Արմէն Օհանեան՝ արձակագիր. Նուարդ Մարգարեան՝ իրաւապաշտպան, հետազօտող. Մարիամ Խալաթեան՝ սոցիոլոգ, հետազօտող. Գոհար Շահնազարեան՝ սոցիոլոգ, դասախօս. Արման Գրիգորեան՝ արուեստագէտ. Արմինէ Մարկոսեան՝ բանասէր. Շահանէ Խաչատրեան՝ լրագրող. Աննա Նիկողոսեան՝ ուսուցմնագէտ. Նանէ Խաչատրեան՝ հետազօտող. Լարա Ահարոնեան՝ իրաւապաշտպան. Անուշ Պօղոսեան՝ հոգեբան. Տաթեւ Եսայեան՝ գրաֆիկ դիզայնէր. Լուսինէ Պապանեան՝ թիւրքագէտ. Էվիյա Յովհաննիսեան՝ սոցիալական մարդաբան. Յովհաննէս Ազոյեան՝ դերասան. Գոհար Խաչատրեան՝ ՀՀ քաղաքացի. Ագապի Իվանեան՝ տնտեսագէտ. Լիլիթ Աւետիսեան՝ հոգեբան, դասախօս. Նիկոլայ Յովհաննիսեան՝ մարդու իրաւունքների փորձագէտ. Անահիտ Ղազարեան. Յովհաննէս Մարգարեան՝ արուեստագէտ. Արթուր Պետրոսեան՝ արուեստագէտ. Լաուրա Բաբայեան՝ բիզնէս վերլուծաբան. Քրիստինա Աճէմեան՝ ծրագրաւորող. Տիգրան Խաչատրեան՝ արուեստագէտ. Արաքս Ասատրեան՝ արուեստագէտ. Էլմիրա Պետրոսեան՝ մենեջէր. Ելենա Բաբայեան՝ սոցիալական մեդիայի մասնագէտ. Վահագն Սարգսեան՝ R&D փորձագէտ. Քրիստինա Սոլոյեան՝ ՀՀ քաղաքացի. Մամիկոն Յովսէփեան՝ իրաւապաշտպան. Հռիփսիմէ Կիզոգեան՝ սոցիոլոգ. Արմինէ Յարութիւնեան՝ սոցիալական աշխատող. Վահան Դուրինեան՝ R&D փորձագէտ. Տիգրան Սարգսեան՝ ճարտարագէտ. Վահրամ Աղասեան՝ արուեստագէտ. Քնար Խուդոյեան՝ լրագրող. Արփի Մխիթարեան՝ ակտիւիստ. Զառա Յարութիւնեան՝ լրագրող. Եուրի Մանուէլեան՝ լրագրող. Մարիամ Ղարագէօզեան՝ տնտեսագէտ, ֆինանսական մասնագէտ. Տիգրան Ամիրեան՝ բանասէր. Սօնա Սիմոնեան. Աւետիք Կարագուլեան՝ գիտաշխատող. Հրայր Մանուկեան՝ ՀՀ քաղաքացի. Լեւոն Յունանեան՝ հասարակական գործիչ. Լաուրա Մանուկեան՝ մշակութային գործիչ. Մարիաննա Եղիազարեան՝ իրաւաբան. Խաչատուր Մկրտչեան՝ հաշուապահ. Լիլիթ Սարիբեկեան՝ պարուսոյց. Մայքլ Քոթանջեան՝ երաժիշտ.*

⇘ 4




2

## ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ...

հոգեբանական դրսեւորումները: Ուսումնասիրուած եւ մարսըւած նիւթեր են՝ գրուած բաւական լայն ընդգրկումներով եւ վերլուծութիւններով:

***ՅՈՒՍԱԲԵՐ***

*Յուսաբեր* օրաթերթը, բնականաբար, պիտի ըլլար իր տունը (ցանկը՝ «Մամուլի մատենագիտութիւն»): Այնտեղ գրեց քիչ մը ամէն բան՝ գրախօսական, քննախօսական, Պօղոսեան Վարժարանի տեղեկագրութիւն, 1929-էն ունեցաւ գրականութեան եւ արուեստի սիւնակ մը՝ «Անդաստան», եւ այլն:

**ԱՄՓՈՓՈՒՄ**

Այսպէս, Բենիամին Թաշեանի գրական սկիզբը եղաւ համարձակ ու ինքնավստահ, բացայայտելով հետաքրքրութիւններու լայն շրջանակ մը՝ գրականութիւն, արուեստ, փիլիսոփայութիւն, մանկավարժութիւն, հոգեբանութիւն: Կարեւոր եղաւ իր մասնակցութիւնը բանավէճերու Գուրգէն Մխիթարեանի եւ Վազգէն Շուշանեանի հետ:

(Շար. 11)

3

## ԵՐՐՈՐԴ ՀԱԿԱԲՆԱԳԻՐԸ՝ *ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ, ԱՌԱՆՑ ԲԱՑՑԵՐԻ*

*Լիլիթ Ղազարեան՝ տնային տնտեսուհի. Ստելլա Յունանեան՝ մանկաբարձ. Սեւակ Կիրակոսեան՝ ազատ գրաֆիկով ուսուցիչ. Հրայր Սաւզեան՝ ՀՀ քաղաքացի. Յասմիկ Պետրոսեան՝ փաստաբան. Անահիտ Բաղդասարեան՝ ՀՀ քաղաքացի. Վարդան Ջալոյեան՝ արուեստի քննադատ. Կարէն Տոնոյեան՝ ՀՀ քաղաքացի. Նաիրա Մնացականեան. Գէորգ Քէչեան. Տօդիկ Խաչատրեան՝ որակի վերահսկման մասնագէտ. Էմին Օհանջանեան. Արմէն Յարութիւնեան՝ ՀՀ քաղաքացի. Վոլոդեա Յակոբեան՝ լրագրող. Անահիտ Քրիչչեան՝ հոգեթերապեւտ. Շուշաննա Թեւանեան՝ ՀՀ քաղաքացի. Անի Սախլեան. Շաղիկ Մաթեւոսեան՝ միջազգային իրաւունքի մասնագէտ. Յակոբ Մանսուրեան՝ ճարտարապետ. Վադիմ Օհանեան՝ ֆիզիկամաթ գիտութիւնների թեկնածու. Արամ Ամիրբէկեան՝ լրագրող. Լիլիթ Բաղդասարեան. Արփի Բալեան՝ մշակութային մարդաբան. Մոնիկա Աւանեսեան. Յասմիկ Յարութիւնեան՝ հոգեբան. Նոնա Շահնազարեան՝ սոցիալական մարդաբան. Անահիտ Խումարեան՝ ուսուցիչ. Լիլիթ Տէր-Մինասեան՝ ճարտարապետ. Ժոզէֆ Տոլմաճեան՝ գրաֆիկ դիզայներ. Հայկ Պետրոսեան՝ իրաւաբան:*

Աւելցնել՝ Հայկ Աւագեան, Եգիպտոսի քաղաքացի:

Փակագիծերու մէջ: Ապրիլ 24-ի հանդանակը ստորագրողներէն գոնէ երեքը եկած են Գահիրէ ելոյթներու, անցեալ 25 տարիներուն ընթացքին: Անոնց խօսքը (ըլլայ բանախօսութիւն թէ երգ) լիովին համահունչ է եգիպտահայութեան մէջ ամէն օր ըսուածին եւ լսուածին: Մէկ պարագային՝ չօու պիզնէսի արտաքին ցոլքի բեմական վերարտադրութիւն, երկրորդ պարագային՝ կոմիտասեան երգի հայրենասիրութիւն ծորող գերզգացական զեղում եւ դիմային յուզմունք, փոխարինելով երաժշտական ու մեկնաբանական հոսքին, երրորդին՝ բամբագոռ հայրենասիրական խրատներ մեզի՝ նուազ հայրենասէրներուս: Դեռ վերջերս այստեղ էր երրորդի արբանեակներէն մէկը մեծ խօսքերով՝ դաւաճանութիւն, բարձր հայրենասիրութիւն, եւ այլն:

Կը բացառեմ, որ օր մը կրնայ Մայիս 9-ի ստորագրողներէն մէկը հրաւիրուիլ աւանդական խողովակներուն ընդմէջէն: Արդէն ասիկա՝ հրաւիրել/չհրաւիրելու սկզբունքը, վկայ մըն է երկու ամենատարբեր խօսոյթներու առկայութեան:

1

## «ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆ» ՌՈԼՍ-ՌՈՅՍՈՎ

«Նախորդ հանրահաւաքներից մէկի ժամանակ ընդդիմադիրները մի մանիֆեստ էին հրապարակել, որում կէտ առ կէտ ձեւակերպել էին գործող իշխանութիւններին ուղղուած պահանջները: Ցանկութիւնների այդ շարքը արտայայտում է Ղարաբաղեան կարգաւորման մասին նրանց պատկերացումները, որոնց իրագործելիութեան աստիճանը մնում է հարցադրելի»: (https://epress.am/2022/05/02/1209-2.html):

Վերջապէս, ովքե՞ր են այս նոր ցուցարարները: Ովքեր են՝ գիտենք: Նորութիւն չէ: Բայց ընաւ ալ աւելորդ չէ ստորեւ մէջբերել քանի մը արձագանգներ, ի թիւս մեծաքանակ արձագանգներուն՝ որոնք տարածուած են կարեւոր չերտաւորումներու մէջ:

Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի Գրասենեակի նախագահ Արթուր Սաքունց, *Առաջին լրատուական*ի հետ զրոյցին կը նշէ՝ որ Հայաստանի ամբողջ պատմութեան ընթացքին առաջին անգամն է, որ իբրեւ ընդդիմութիւն հանդէս կու գան տոլարային միլիոնատէրերը եւ կ'աւելցնէ. «Քաղաքական կուսակցութիւնները որպէս ընդդիմութիւն են հանդէս գալիս: Այս մարդկանց բուն չարժառիթը պետբիւջէի հաշուին կրկին վերականգնելն է ֆինանսական կարողութիւնները»:

Քաղաքացու Որոշում կուսակցութեան գործադիր մարմինի անդամ Սուրէն Սահակեան Ապրիլ 28-ին կը կատարէ ֆէյսպուքեան գրառում, շեշտելով՝ թէ ինչպէս ճնշողները դուրս կու գան ցոյցի, մինչդեռ ցոյցերը ընդունուած է կատարեն ճնշուողները. «Հիմա փողոցում գտնուող քաղաքական կոչուող խմբակները վերջին 25-30 տարում հանրային ընկալումներում անընդհատ ճնշողների դերում են եղել կամ որպէս էդ ճնշումների շահառուներ: Հիմա էլ նրանք քիչ ա՝ ներգրաւուած են պետական կառավարման համակարգում, այսինքն՝ ձեր բառապաշարով «իշխանութիւն են», մի բան էլ պետական կառավարման ապարատի, դատական ու իրաւապահ համակարգերի մի մասը իրենց վերահսկողութեան տակ ա: Ու ստեղ մարդկանց համար մեծ հարց ա առաջանում, թէ ճնշուած կողմը ո՞րն ա: Ժողովրդի գգալի չերտ գործող վարչակազմին մեղադրում ա, որ դուք դեռ բանտում չէք, դուք ուզում էք Ջին Շարփի գրքով յեղափոխութիւն անէք: Լաւ, էլի»:

Առողջապահութեան Ազգային Ինստիտուտի բժիշկ Վահէ Տէր-Մինասեան՝ Ապրիլ 28-ի ֆէյսպուքեան գրառումին մէջ շատ պարզ է եւ սուր. «Բայց հրաժարականի պահանջի որեւէ բարոյական իրաւունք ՉՈՒՆԵՆ բոլոր նրանք, ովքեր 30 տարի բառիս բուն իմաստով լափել են երկիրը, ով կործանել է ու իր մանր քաղաքական նպատակների համար օգտագործել կրթական համակարգը: Ամենաստոր ձեւով թալանել ու փոշիացրել բանակը: Սերմանել է ամբողջ երկիրը պարփակած կոռուպցիան ու լկտիութիւնը: Ով նպաստել է ազգիս մտաւոր դեգրադացիային, մտաւոր ունակ ուժերի արտագաղթին ու կառավարելի անկիրթ զանգուածի ձեւաւորմանը: Ում նոյն 2018-ին խսկապէս մերժեց ժողովուրդը ու ով սրտի սարսափով սպասում էր իր արժանի գնդակահարութեան օրուան...»:

Ապրիլ 13-ին, ազգագրագէտ Աղասի Թադէոսեան հարցազրոյց ունեցաւ *Factor tv*-ի հետ՝ *Ինքնախաբէութիւնը մի՛ ծախէք հայրենասիրութեան տեղ. Արցախն ազատագրելու ի՞նչ ռեսուրս էք առաջարկում*: Խօսելով այսօրուայ ընդդիմութեան մասին, դիտել տուաւ՝ որ եթէ ընդդիմութիւնը իրապէս հայրենասէր ընդդիմութիւն է, ապա ան պէտք է օգնէր իշխանութեան ամենասկիզբէն եւ մէկ անգամէն հող յանձնել-չյանձնելու հրահրումով չսկսէր իր քաղաքական պահուածքը: Այն տպաւորութիւնն է, որ նոյնիսկ պատերազմի ժամանակ ընդդիմութիւնը դէմ չէր, որ քաղաքական վերնախաւը պարտութիւն կրէր: Նոյեմբեր 9 գիշերուայ ջարդուփշուրի գործունէութեան մասնակցած են նաեւ ընդդիմութենէն քանի մը հոգի: Այդպէս կ'ընէին, որովհետեւ ունէին իշխանութիւնը եւ սեփական ունեցուածքը ետ բերելու խնդիր:

Ծգնաժամ է նոյն ինքը ընդդիմութեան ներսը կատարուածը: Ընդդիմութիւնը չի նկատեր, որ իր իսկ ճգնաժամով, աւելցուցած կ'ըլլայ ներկայ իշխանութեան օրինականութիւնը: Ասոր մասին կը գրէ քաղաքագէտ Յակոբ Բադալեան Մայիս 9-ի յօդուածին մէջ. «Մասնաւորապէս, այսօր Հայաստանում խորացել եւ խորանում է ընդդիմութեան ճգնաժամը, ընդդիմութեան լեգիտիմութեան բացակայութեան, կամ լեգիտիմ ընդդիմութեան բացակայութեան ճգնաժամը: Նախկին կառավարող համակարգ-ընդդիմութեան փողոցային անհնազանդութեան ակցիաների հանդէպ հանրութեան վերաբերմունքը, որ արտայայտւում է ոչ միայն Երեւանում, այլ նաեւ Հայաստանի խոշոր քաղաքներում՝ Վանաձոր, Գիւմրի, առաւել քան ցցուն է դարձնում այդ խնդիրը: Ընդ որում, նախկին կառավարող համակարգ-ընդդիմութեան լեգիտիմութեան բացակայութիւնն ինքնաբերաբար լեգիտիմ է դարձնում ներկայիս կառավարող մեծամասնութեանը՝ որոշակիօրէն անգամ անկախ այդ կառավարման արդիւնաւէտութիւնից: Առանցքային արդիւնք դիտւում է այն, որ թոյլ չտրուի նախկին համակարգի վերադարձ իշխանութեան» (https://www.1in.am/3109281.html):

Իրազեկ Քաղաքացիների Միաւորում հասարակական կազմակերպութիւնը, ինչպէս միշտ, իր յատուկ մեթոտներով կը հաշուարկէ ցոյցերուն եւ հանրահաւաքներուն մասնակցողներուն քանակը. Ապրիլ 26-ի քայլերթ, Տիգրան Մեծի պողոտայ՝ 1200 մարդ. Մայիս 1, 2 եւ 3-ի հանրահաւաքներ, Ֆրանսայի Հրապարակ՝ յաջորդաբար 12,500, 3800 եւ 5600 մարդ. Մայիս 4-ի երթ, Բաղրամեան Պողոտայ՝ 5000 մարդ. Մայիս 5-ի հանրահաւաք, Ֆրանսայի Հրապարակ՝ 4200 մարդ. Մայիս 8-ի հանրահաւաք, Գիւմրիի Թատերական Հրապարակ՝ 1150 մարդ, Մայիս 9, 11 եւ 13-ի հանրահաւաքներ, Ֆրանսայի Հրապարակ՝ յաջորդաբար 7700, 1750 եւ 3250 մարդ (https://uic.am/category/adds):

Ինչո՞ւ փողոցի քանակը մնաց սահմանափակ: Պատճառը աւելի քան յստակ է: Քաղաքագէտ Էրիկ Յակոբեան, *Սիվինէթ*ի Մայիս 6-ի շաբաթական հաղորդումին մէջ կը բացատրէ ինչ որ արդէն գիտենք. «Կարծում եմ որ պատճառներից մէկը որ այս ցոյցերը իրականում աւելի մեծ չեն քան կան, այն է որ պարզ չէ ինչի մասին են բանակցում, կամ ինչի մասին են խօսում: Ես կարծում եմ որ մարդկանց համար շատ դժուար է զանգուածաբար դուրս գալ եւ ընդդիմանալ մի բանի՝ որի շուրջ մեծ խառնաշփոթ կայ, յատկապէս որ վերջին երկու շաբաթուայ ընթացքում, կառավարութիւնը հետեւողականօրէն հերքում է Արցախի վերջնական կարգավիճակի վերաբերեալ բանակցութիւնների առկայութիւնը: Երկրորդը, կարծում եմ որ այս ցոյցերը աւելի մեծ կը լինէին եթէ այն չղեկավարէր ներկայիս ընդդիմութիւնը, որին, անկեղծ ասած, դեռ նոյն կերպ են ընկալում ինչ վերջին տարիներին: Այսպիսով ես կ'ասէի այս ցոյցերը թերագնահատում են հասարակութեան մէջ առկայ անհանգստութիւնները Արցախի կարգավիճակի շուրջ բանակցութիւններում կառավարութեան դիրքորոշման վերաբերեալ»:

Վերջապէս, *Epress.am*-ի մէջ խօսելով Մայիս 1-ի երթերուն մասին, Ալլա Մանուէլեան կը ներկայացնէ երգիծական իրականութիւնը. «Մինչ կանգնած հետեւում էի անցուդարձին, մի տղամարդ մօտեցաւ ու հետաքրքրուեց՝ արդեօք անգլերէն խօսո՞ւմ եմ: Մտածում էր՝ մարդիկ աշխատաւորների օրն են նշում, զարմացած էր հաւաքուածների քանակից: «Յունաստանում էլ կոմունիստներ կան՝ մօտ 4 տոկոս են կազմում: Մայիսի մէկին դուրս են գալիս, գբօսնում», — ասաց նա: Երբ իմացաւ, որ ընդդիմութեան հաւաք է, իսկ ընդդիմութեան շարքերում են նախկինում իշխանութեան ղեկին կանգնածները, նկատեց. «Ահա թէ ինչու տարածքում այսքան շատ Rolls Royce կայ»:»

Այս բոլորը տեղի կ'ունենայ կարեւոր յետնախորքի մը վրայ, երբ Հայաստանի իշխանութիւնները կը պայքարին խաղաղութեան պայմանագիրի շուրջ կատարուող ընթացքը կայացնելու հաւասար պայմաններու մէջ: Ահռելի դժուար գործընթացք մը պարտուած պետութեան համար, որ շատ աւելի կը բարդանայ՝ երբեմն դառնալով անկարելի, ռուս ռոյսական օլիկարքական պայքարին հետեւանքով:

Ա.

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1916 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 2 ՅՈՒՆԻՍ 2022 | ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ. | عدد رقم ١٩١٦ الخميس ٢ يونيه ٢٠٢٢


## ՂԱՐԱԲԱՂԸ՝ ՊՐԻՒՔՍԷԼԻ ԵՒ ՄՈՍԿՈՒԱՅԻ ՄԻՋԵՒ

Գործող արտաքին քաղաքականութիւններու յայտարարուած եւ տեսանելի մասերը շատ քիչ կը բացատրեն իրական ընթացքները: Արտաքին քաղաքականութիւններու կարեւոր մասը տեղի կ'ունենայ բեմահետեւի հարթակներու վրայ եւ կը մնայ անյայտ ու անորոշ՝ մինչեւ գործնական քայլերու կիրարկումը:

Ղարաբաղեան հարցի ներկայ փուլը այս պատկերը կ'արտացոլէ: Առանց երկար մեկնաբանութիւններու, ստորեւ պիտի փորձենք ուրուագծել վերջին երեք ամիսներու հայ-ազրպէյճանական բանակցութիւնները, որոնք կ'ընթանան «խաղաղութեան համաձայնագիր»-ի եւ «յարաբերութիւններու կարգաւորում»-ի արտայայտութիւններու փոխադարձ տրամաբանութեան մէջ, թէեւ երկուքը իրարմէ տարբեր բաներ են: Այս տրամաբանութեան մէջ է որ կը տեղադրուի սահմանազատումի շատ խօսուած գործընթացքը:

Փետրուար 24-էն սկսեալ կը ծաւալուի ռուս-ուքրաինական ահարկու պատերազմը՝ հետեւանք արեւմուտքի ուղղակի հրահրումներուն եւ սպառնալիքներուն Ռուսաստանի դէմ, գործիք ունենալով Ուքրաինան եւ անոր խամաճիկ նախագահ Զելենսքին, որ այսօր դարձած է արեւմուտքի զոհեալ հերոսը:

Ղարաբաղեան հարցի առնչութեամբ գոնէ երկար ժամանակի համար դուրս պիտի մնայ արդէն կաղացող Մինսքի Խումբը, քանի որ ԱՄՆ եւ Ֆրանսա պիտի չնստին Ռուսաստանի հետ նոյն սեղանին շուրջ՝ Ուքրաինան պատուակելով: Փոխարէնը, Պրիւքսէլն ու Մոսկուան կը ձգտին իրենց ձեռքը վերցնել խնդիրը՝ բնականաբար իրարմէ անկախ, որոնց մէջտեղը Հայաստան կը փորձէ բանեցնել հաւասարակշռուած դիւանագիտութիւն մը:

Մարտ 12-ին, Ազրպէյճանի արտաքին գործերու նախարար Ճէյհուն Պայրամով կը յայտարարէ՝ թէ Պաքու Երեւանին ներկայացուցած է Հայաստանի հետ յարաբերութիւնները կարգաւորելու ծրար մը, կազմուած հինգ կէտերէ:

Մարտ 14-ին, Ազրպէյճանի արտաքին գործերու նախարարութեան մամուլի խօսնակ Լէյլա Ապտուլլաեւա կը ներկայացնէ այդ հինգ կէտերը:

Մարտ 30-ին, Պրիւքսէլի մէջ, Եւրամիութեան հովանաւորութեան տակ, կը կայանայ Հայաստանի Անվտանգութեան Խորհուրդի քարտուղար Արմէն Գրիգորեանի եւ Ազրպէյճանի նախագահի օգնական Հիքմէթ Հաճիեւի հանդիպումը, զոր կազմակերպած էր Հարաւային Կովկասի հարցերով Եւրամիութեան յատուկ ներկայացուցիչ Թոյվօ Քլաար:

Հանդիպումը կը նախապատրաստէր երկու երկիրներու առաջնորդներուն գալիք գագաթնաժողովը, որ տեղի կ'ունենայ Ապրիլ 6-ին, Պրիւքսէլի մէջ, Եւրոպական Խորհուրդի միջնորդութեամբ: Կը հանդիպին Նիկոլ Փաշինեան, Իլհամ Ալիեւ եւ Եւրոպական Խորհուրդի նախագահ Շարլ Միշէլ: Հայաստանի եւ Ազրպէյճանի առաջնորդները կը յանձնարարեն իրենց արտաքին գործերու նախարարներուն սկսիլ խաղաղութեան պայմանագիրի եւ սահմանագծումի նախապատրաստական աշխատանքները եւ այս առումով ձեռնարկել բանակցութիւններ:

Այս գագաթնաժողովին, Հայաստան Ազրպէյճանին կը յանձնէ վեց կէտերէ բաղկացած փաստաթուղթ, ի պատասխան վերը յիշուած Ազրպէյճանի հինգ կէտերուն: Վեցի բովանդակութիւնը Հայաստան կը նախընտրէ առ այժմ չհրապարակել հանրութեան:

Մայիս 2, կրկին եռակողմ հանդիպում Պրիւքսէլի մէջ՝ Արմէն Գրիգորեան, Հիքմէթ Հաճիեւ եւ Թոյվօ Քլաար:

Դժուար է ըսել՝ եթէ պրիւքսէլեան հանդիպումներուն համար Մոսկուան Հայաստանին տուած էր իր հաւանութիւնը թէ ոչ, բայց, գոնէ առերեւութապէս, Մոսկուա կ'ակնարկէ՝ որ 2021 Նոյեմբեր 26-ի Սոչիի Փութին-Փաշինեան-Ալիեւ եռակողմ հանդիպումը արդէն ցոյց տուած էր խաղաղութիւն-կարգաւորումի ուղին: Իրօք, հանդիպումի պաշտօնական եռակողմ յայտարարութեան մէջ, ի միջի այլոց, գրուած է.

«Պայմանաւորուել ենք քայլեր ձեռնարկել հայ-ադրբեջանական սահմանին կայունութեան եւ անվտանգութեան մակարդակը բարձրացնելու ուղղութեամբ եւ գործընթացը մղել Ադրբեջանի Հանրապետութեան եւ Հայաստանի Հանրապետութեան միջեւ պետական սահմանի սահմանազատման եւ յետագայում սահմանագծման հարցով երկկողմ՝ կողմերի յայտի հիման վրայ Ռուսաստանի Դաշնութեան խորհրդատուական մասնակցութեամբ յանձնաժողով ստեղծելու ուղղութեամբ:

«Բարձր ենք գնահատել 2021 թուականի Յունուարի 11-ի յայտարարութեամբ Ադրբեջանի Հանրապետութեան, Հայաստանի Հանրապետութեան եւ Ռուսաստանի Դաշնութեան փոխվարչապետերի համատեղ նախագահութեամբ գործող եռակողմ աշխատանքային խմբի գործունէութիւնը, որն ուղղուած է տարածաշրջանում տնտեսական եւ տրանսպորտային կապերի ապաշրջափակմանը: Ընդգծել ենք կոնկրէտ ծրագրերի արագ գործարկման անհրաժեշտութիւնը՝ տարածաշրջանի տնտեսական ներուժը բացայայտելու համար»:

Փութին իր ձեռքը կը վերցնէ նախաձեռնութիւնը:

Մայիս 12-ին, Տուշանպէի մէջ տեղի կ'ունենայ հանդիպում Ռուսաստանի, Հայաստանի եւ Ազրպէյճանի արտաքին գործոց նախարարներուն՝ Սերկէյ Լաւրով, Արարատ Միրզոյեան եւ Ճէյհուն Պայրամով: Հանդիպումը կ'ընթանայ ԱՊՀ արտաքին գործոց նախարարներու խորհուրդի նիստի շրջանակին մէջ: Կը յայտարարուի յարաբերութիւններու կարգաւորումի գործընթացքին կարեւորութիւնը եւ մօտալուտ սկիզբը:

Մայիս 13-ին, Հայաստանի Հանրային Հեռատեսիլէն, Պետրոս Ղազարեանի հետ ունեցած հարցազրոյցին, Հայաստանի յատուկ յանձնարարութիւններով դեսպան Էդմոն Մարուքեան առաջին անգամ ըլլալով հապճեպ կը ներկայացնէ Ապրիլ 6-ին Պրիւքսէլի մէջ Ազրպէյճանին փոխանցուած վեց կէտերը:

Ինչո՞ւ Հայաստան այսքան ուշ յայտնի դարձուց իր պատասխանը: Որովհետեւ քաջ կը գիտակցէր՝ որ ձեւական թուղթեր են ատոնք: Թուղթի նախաձեռնութիւնը Ազրպէյճանինն էր: Անոր բովանդակութիւնը անմիջապէս յայտարարելով լրատուամիջոցներուն առջեւ, Ազրպէյճան նպատակ ունէր ինքզինքը ներկայացնել իբրեւ խաղաղութեան նախաձեռնակ պետութիւն: Բանակցութիւնները հեռատեսիլի առջեւ թուղթեր բաժնելով եւ փոխանակելով չեն ըլլար: Բանակցութիւններու բաց ձեւաչափը շատ կարեւոր է, բայց ոչ պատկերներ ստեղծելու միտումով եւ այնտեղ ալ

➪ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍԱՀՄԱՆԱԶԱՏՈՒՄԻ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ԿԱԶՄՈՒԹԻՒՆԸ

Մայիս 23-ին Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեան կը վաւերացնէ Հայաստանի եւ Ազրպէյճանի միջեւ պետական սահմանի սահմանազատումի եւ սահմանային անվտանգութեան հարցերով Հայաստանի յանձնաժողովի անդամներուն անունները.

Մ. Գրիգորեան՝ փոխվարչապետ (յանձնաժողովի նախագահ), Մ. Սաֆարեան՝ Արտաքին Գործերու նախարարի տեղակալ, Ա. Սարգսեան՝ Պաշտպանութեան նախարարի տեղակալ, Գ. Մինասեան՝ Արդարադատութեան նախարարի տեղակալ, Յ. Յարութիւնեան՝ Տարածքային Կառավարումի եւ Ենթակառուցուածքներու նախարարի տեղակալ, Ն. Աւագեան՝ Կադաստրի Կոմիտէի նախագահի տեղակալ, Ա. Գուգարաց՝ Կադաստրի Կոմիտէի նախագահի տեղակալ, Ե. Կիրակոսեան՝ Միջազգային Իրաւական հարցերով ներկայացուցիչ, Ա. Մարտիկեան՝ Զինուած Ուժերու Գլխաւոր Շտաբի պետի տեղակալ, Դ. Սանամեան՝ Ազգային Անվտանգութեան Ծառայութեան բաժանմունքի պետ, Ա. Մարալ-

➪ 2

## Ս.Դ.Հ.Կ. ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան Արեւմտեան Ամերիկայի Վարիչ Մարմինը կը հրապարակէ 2022 Մայիս 23 թուակիր Յայտարարութիւն՝ Հայաստանի մէջ տեղի ունեցող իրադարձութիւններուն կապակցութեամբ:

Հաստատելէ ետք՝ որ բողոքարարներուն կատարածը արդիւնք է ժողովրդավարութեան ընձեռած իրաւունքներուն եւ թէ անոնց իրաւունքն է արտայայտել ազատ կարծիք, Յայտարարութիւնը կը դատապարտէ անոնց անտեսումը իրենց տեսակէտները չբաժնող քաղաքացիներու իրաւունքներուն, իրաւապահներուն հետ ստեղծած միջադէպերը եւ հարթակէն հնչեցուցած անհանդուրժողական եւ ատելութիւն սերմանող ելոյթները:

Արդէն յստակ է՝ որ Հայաստանի ժողովուրդին մեծամասնութիւնը չի բաժներ բողոքարարներուն տեսակէտները եւ անոնք իրաւունք չունին խօսելու ամբողջ հայութեան անունով:

Յայտարարութիւնը կ'եզրափակուի այսպէս. «Յարգելով Հայաստանի քաղաքացիին ընտրութիւնը, որ ան կատարեց տարի մը առաջ կայացած ազատ, արդար ու ժողովրդավար ընտրութիւններու միջոցաւ, մենք կը շարունակենք սատարել իշխանութիւններուն ներքին ու արտաքին քաղաքականութիւններուն, եւ համոզուած ենք, որ անոնք կը բխին Հայաստանի ու Հայութեան ընդհանրական շահերէն»:

ԱՐՑԱԽ

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀԵՏԵՒԱՆՔՈՎ ԱՐՑԱԽՈՒՄ 215 ԲՆԱԿԱՎԱՅՐ ԱՆՑԵԼ Է ԱԴՐԲԷՋԱՆԻ ՕԿՈՒՊԱՑԻԱՅԻ ՏԱԿ. ԱՐՑԱԽԻ ՄԻՊ

2020 թուականի Սեպտեմբերի 27-ին Ադրբեջանի կողմից Արցախի Հանրապետութեան դէմ սանձազերծուած պատերազմական գործողութիւնների հետեւանքով Արցախի 118 համայնք ամբողջութեամբ, իսկ 2 համայնք՝ մասնակի, կամ ընդհանուր 215 բնակավայր անցել են Ադրբեջանի օկուպացիայի տակ: Այդ բնակավայրերից բռնի տեղահանուել է մօտ 40,000

➪ 2

# ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ
## (Մահուան 50-ամեակին առիթով)

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**ՄԱՄՈՒԼԻ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ** (1921-1930)

(Ոչ-ամբողջական)

1. Բ. Թաշեան, «Հարսնութիւն» [բանաստեղծութիւն], *Հայ կին*, կիսամսեայ հանդէս, Կ. Պոլիս, 16 Յունուար 1921, Բ. տարի, թիւ 6, էջ 490:

2. Բ. Թաշեան (Բերա), «Յոյսին համար (Վահրամ Թաթուլին)», [բանաստեղծութիւն], *Հայ կին*, 1 Փետրուար 1921, Բ. տարի, թիւ 7, էջ 505:

3. Բ. Թաշեան, «Յուսալքում» [բանաստեղծութիւն], *Ճակատամարտ*, օրաթերթ, Կ. Պոլիս, 8 Մայիս 1921, նոր շրջան, թիւ 750-2571, էջ 1:

4. Բ. Թաշեան, «Եարի կարօտներ» [բանաստեղծութիւն], *Հայ կին*, 16 Մայիս 1921, Բ. տարի, թիւ 14, էջ 618:

5. Բ. Թաշեան (Կ. Պոլիս), «Դէմքեր իմաստասիրական աշխարհէն. Ֆրէնսիս Պէյքըն», *Հայաստանի կոչնակ*, Նիւ Եորք, 25 Փետրուար 1922, ԻԲ. տարի, թիւ 8, էջ 274-275:

6. Բ. Թաշեան (Կ. Պոլիս), «Դէմքեր իմաստասիրական աշխարհէն. Ռընէ Տէքարթ», *Հայաստանի կոչնակ*, 10 Յունիս 1922, ԻԲ. տարի, թիւ 23, էջ 756-757:

7. Բ. Թաշեան, «Ցամքա՛ծ աղբիւր...» [բանաստեղծութիւն], *Ճակատամարտ*, 9 Յուլիս 1922, նոր շրջան, թիւ 1111, ԺԲ. տարի, թիւ 2932, էջ 1:

8. Բ. Թաշեան (Կ. Պոլիս), «Դէմքեր իմաստասիրական աշխարհէն. Պէնէտիքթ Սբինօզա», *Հայաստանի կոչնակ*, 29 Յուլիս 1922, ԻԲ. տարի, թիւ 30, էջ 983-984:

9. Բ. Թաշեան (թարգմ.) (Կ. Պոլիս), «Գրական պայմաններ ԺԹ.րդ դարուն մէջ», *Հայաստանի կոչնակ*, 2 Սեպտեմբեր 1922, ԻԲ. տարի, թիւ 35, էջ 1137-1138:

10. Բ. Թաշեան, «Կարօտ» [բանաստեղծութիւն], *Ճակատամարտ*, 10 Սեպտեմբեր 1922, նոր շրջան, թիւ 1164, ԺԲ. տարի, թիւ 2985, էջ 1:

11. Բ. Թաշեան (Կ. Պոլիս), «Դէմքեր իմաստասիրական վերածնունդի շրջանէն. Դ. Ժան Լօք», *Հայաստանի կոչնակ*, 30 Սեպտեմբեր 1922, ԻԲ. տարի, թիւ 39, էջ 1265-1266:

12. Բ. Թաշեան (Կ. Պոլիս), «Դէմքեր իմաստասիրական աշխարհէն. Ե. Կիյոմ Լայպնից», *Հայաստանի կոչնակ*, 28 Հոկտեմբեր 1922, ԻԲ. տարի, թիւ 43, էջ 1389-1390:

13. Բ. Թաշեան (թարգմ.), «Պղատոնի գեղեցկագիտութիւնը», *Ճակատամարտ*, 12 Նոյեմբեր 1922, նոր շրջան, թիւ 1218, ԺԲ. տարի, թիւ 3039, էջ 2: Վերատպութիւն՝ *Հայաստանի կոչնակ*, 5 Դեկտեմբեր 1925, ԻԵ. տարի, թիւ 49, էջ 1441-1443:

14. Բ. Թաշեան (Աթէնք, 6 Փետրուար), «Որբերը Յունաստանի մէջ. տեսակցութիւն մը Մ. Մօրիսի հետ (սեփական թղթակցութիւն», *Ճակատամարտ*, 17 Փետրուար 1923, նոր շրջան, թիւ 1300, ԺԲ. տարի, թիւ 3130, էջ 2:

15. Բ. Թաշեան (Լարիսա, Յունաստան), «Իմաստասիրական դէմքեր. Զ. Էմմանուէլ Քանդ», *Հայաստանի կոչնակ*, 24 Փետրուար 1923, ԻԳ. տարի, թիւ 8, էջ 236-237:

16. Բ. Թաշեան (Աթէնք, 20 Փետրուար), «Լութրաքիոյ մէջ հինգ օր որբերուն հետ. Ա. (սեփական թղթակցութիւն)», *Ճակատամարտ*, 2 Մարտ 1923, նոր շրջան, թիւ 1311, ԺԳ. տարի, թիւ 3141, էջ 2:

17. Բ. Թաշեան (Աթէնք, 15 Մարտ), «Գաղթ. գործը Յունաստանի մէջ. հակասական հրահանգներուն արդիւնքը (սեփական թղթակցութիւն)», *Ճակատամարտ*, 23 Մարտ 1923, նոր շրջան, թիւ 1329, ԺԳ. տարի, թիւ 3159, էջ 2:

18. Բ. Թաշեան (Աթէնք, 16 Մարտ), «Դպրոցասէր Տիկնանց Վարժարանը Սելանիկի մէջ (սեփական թղթակցութիւն)», *Ճակատամարտ*, 5 Ապրիլ 1923, նոր շրջան, թիւ 1340, ԺԳ. տարի, թիւ 3170, էջ 2:

19. Բ. Թաշեան, «Մահուան երգեր. առ ցաւ» [բանաստեղծութիւն], *Նոր շարժում*, գրական-գեղարուեստական ու գիտական, Գահիրէ, 14 Ապրիլ 1923, Ա. տարի, պրակ 5-6, էջ 79:

20. Բ. Թաշեան (Եգիպտոս), «Լուսաւոր դէմքեր», *Ճակատամարտ*, 25 Ապրիլ 1923, նոր շրջան, թիւ 1356, ԺԳ. տարի, թիւ 3186, էջ 2:

21. Բ. Թաշեան (Գահիրէ, 16 Ապրիլ), «Մեծ երազներու դառնութիւնը (սեփական թղթակցութիւն)», *Ճակատամարտ*, 1 Մայիս 1923, նոր շրջան, թիւ 1361, ԺԳ. տարի, թիւ 3191, էջ 2:

22. Բ. Թաշեան (Գահիրէ, 24 Ապրիլ), «Եգիպտական սահմանադրութիւնը եւ ազգային շարժումը Եգիպտոսի մէջ (սեփական թղթակցութիւն)», *Ճակատամարտ*, 4 Մայիս 1923, նոր շրջան, թիւ 1364, ԺԳ. տարի, թիւ 3194, էջ 2:

23. Բ. Թաշեան, «Ջութակի խորհուրդ» (Օր. Զ.ին որ Արուեստին յիմարութիւնը պարգեւեց) [բանաստեղծութիւն], *Հայ կին*, 1 Մայիս 1923, Դ. տարի, թիւ 10, էջ 1318:

24. Բ. Թաշեան (Գահիրէ), «Հայ գրականութեան ուղին», *Նոր շարժում*, 5 Մայիս 1923, Ա. տարի, պրակ 9, էջ 124-125:

25. Բ. Թաշեան, «Ցամքա՛ծ աղբիւր...» (Եղիշէ Արքեպիսկ. Դուրեանին) [բանաստեղծութիւն], *Նոր շարժում*, 12 Մայիս 1923, Ա. տարի, պրակ 10, էջ 143:

26. Բ. Թաշեան (Գահիրէ), «Հայ գրականութեան ուղին. Բ. Երէկ եւ այսօր», *Նոր շարժում*, 19 Մայիս 1923, Ա. տարի, պրակ 11, էջ 156-158:

27. Բ. Թաշեան (Գահիրէ), «Հայ գրականութեան ուղին. Գ. Երէկ եւ այսօր», *Նոր շարժում*, 26 Մայիս 1923, Ա. տարի, պրակ 12, էջ 177-179:

28. Բ. Թաշեան (Գահիրէ), «Հեռուի սէր» [բանաստեղծութիւն], *Նոր շարժում*, 9 Յունիս 1923, Ա. տարի, պրակ 14, էջ 202:

29. Բ. Թաշեան (Աթէնք), «Իմաստասիրական դէմքեր (հին շրջան). Ա. Սոկրատ», *Հայաստանի կոչնակ*, 16 Յունիս 1923, ԻԳ. տարի, թիւ 24, էջ 745-747:

30. Բ. Թաշեան (Գահիրէ), «Հայ մտաւորականներու ընկերակցութիւն», *Ճակատամարտ*, 22 Յունիս 1923, նոր շրջան, թիւ 1406, ԺԳ. տարի, թիւ 3236, էջ 2:

31. Բ. Թաշեան (Գահիրէ, 1 Յուլիս), «Եգիպտոսի վերածնունդը. խորհրդարանական ընտրութիւններու նախօրեակին», *Ճակատամարտ*, 20 Յուլիս 1923, նոր շրջան, թիւ 1425, ԺԳ. տարի, թիւ 3255, էջ 2:

32. Բ. Թաշեան (Գահիրէ), «Մտաւորականներու զօրաշարժ», *Նոր շարժում*, 22 Յուլիս 1923, Ա. տարի, պրակ 20, էջ 308-310:

33. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա, 24 Յուլիս), «Երեւոյթներ՝ հայկական կեանքէ (սեփական թղթակցութիւն)», *Ճակատամարտ*, 7 Օգոստոս 1923, նոր շրջան, թիւ 1440, ԺԳ. տարի, թիւ 3270, էջ 2:

34. Բ. Թաշեան, «Ճակատագիրը (նորավէպ)», *Նոր շարժում*, 18 Օգոստոս 1923, Ա. տարի, պրակ 24, էջ 361-365:

35. Բ. Թաշեան, «Մահուան երգեր. առ մահ» [բանաստեղծութիւն], *Նոր շարժում*, 25 Օգոստոս 1923, Ա. տարի, պրակ 25, էջ 380:

36. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Հայ մտաւորականներու ընկերակցութիւն», *Ճակատամարտ*, 29 Օգոստոս 1923, նոր շրջան, թիւ 1459, ԺԳ. տարի, թիւ 3289, էջ 2:

37. Բ. Թաշեան, «Աշխարհի լեզուն (նորավէպ)», *Նոր շարժում*, 1 Սեպտեմբեր 1923, Ա. տարի, պրակ 26, էջ 401-403:

38. Բ. Թաշեան (Քաֆր Էլ-Շէյխ, Եգիպտոս), «Դէմքեր իմաստասիրութեան հին շրջանէն. Բ. Պղատոն», *Հայաստանի կոչնակ*, 8 Սեպտեմբեր 1923, ԻԳ. տարի, թիւ 36, էջ 1132-1134:

39. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Թուրք մտաւորականութիւնը հայ ժողովուրդին հանդէպ», *Ճակատամարտ*, 29 Օգոստոս 1923, նոր շրջան, թիւ 1470, ԺԳ. տարի, թիւ 3300, էջ 2:

40. Բ. Թաշեան, «Ուրուական (նորավէպ)», *Նոր շարժում*, 22 Սեպտեմբեր 1923, Ա. տարի, պրակ 29, էջ 445-447:

41. Բ. Վէմ, «Ուիլերմ Ճէյմըս. մանկավարժ եւ հոգեբան», *Նոր շարժում*, 29 Սեպտեմբեր 1923, Ա. տարի, պրակ 30, էջ 460-461:

42. Բ. Թաշեան, «Շոփէնհաուէր եւ իր գրական ըմբռնումները. Ա.», *Նոր շարժում*, 6 Հոկտեմբեր 1923, Ա. տարի, պրակ 31, էջ 473-476:

43. Բ. Թաշեան, «Շոփէնհաուէր եւ իր գրական ըմբռնումները. Բ.», *Նոր շարժում*, 13 Հոկտեմբեր 1923, Ա. տարի, պրակ 32, էջ 489-491:

44. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա, 16 Հոկտեմբեր), «Մեր ցաւերէն. կիրքերը շոգիի վրայ», *Ճակատամարտ*, 26 Հոկտեմբեր 1923, նոր շրջան, թիւ 1509, ԺԳ. տարի, թիւ 3339, էջ 2:

45. Բ. Թաշեան, «Շոփէնհաուէր եւ իր գրական ըմբռնումները. Գ.», *Նոր շարժում*, 20 Հոկտեմբեր 1923, Ա. տարի, պրակ 33, էջ 510-511:

46. Բ. Թաշեան (Գահիրէ), «Դէմքեր իմաստասիրական հին շրջանէն. Գ. Արիստոտէլ», *Հայաստանի կոչնակ*, 27 Հոկտեմբեր 1923, ԻԳ. տարի, թիւ 43, էջ 1361-1162:

47. Բ. Թաշեան, «Գրականութիւնը ժողովուրդին հետ», *Նոր շարժում*, 3 Նոյեմբեր 1923, Ա. տարի, պրակ 35, էջ 541-543:

48. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա, 30 Հոկտեմբեր), «Քաղաքական կեանքը Եգիպտոսի մէջ. Սաատ փաշա Զաղլուլ», *Ճակատամարտ*, 8 Նոյեմբեր 1923, նոր շրջան, թիւ 1520, ԺԳ. տարի, թիւ 3350, էջ 2:

49. Բ. Թաշեան, «Շքեղ պատրանք (նորավէպ)», *Նոր շարժում*, 17 Նոյեմբեր 1923, Ա. տարի, պրակ 37, էջ 571-573:

50. Բ. Թաշեան, «Շոփէնհաուէր եւ իր գրական ըմբռնումները. Դ.», *Նոր շարժում*, 2 Դեկտեմբեր 1923, Ա. տարի, պրակ 38-39, էջ 590-592:

4

## ՍԱՀՄԱՆԱԶԱՏՈՒՄԻ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ԿԱԶՄՈՒԹԻՒՆԸ

1

չեան՝ Ազգային Անվտանգութեան Ծառայութեան սահմանապահ զօրքերու հրամանատար, Ս. Պետրոսեան՝ Զինուած Ուժերու Գլխաւոր Շտաբի ռազմատեղագրական ծառայութեան պետ:

Միաժամանակ, Ազըրպէյճանի նախագահ Իլհամ Ալիեւ կը վաւերացնէ նոյն որոշումը Ազըրպէյճանի յանձնաժողովի վերաբերեալ, նախագահութեամբ փոխվարչապետ Շահին Մուսթաֆաեւի:

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀԵՏԵՒԱՆՔՈՎ ԱՐՑԱԽՈՒՄ 215 ԲՆԱԿԱՎԱՅՐ ԱՆՑԵԼ ...

1

անձ, ինչը պայմանաւորել է այդ անձանց՝ Արցախի Սահմանադրութեամբ, օրէնսդրութեամբ եւ միջազգային իրաւական ակտերով սահմանուած իրաւունքների՝ սեփականութեան, աշխատանքային, կրթութեան, սոցիալական ապահովութեան, բնակութեան վայրի ազատ ընտրութեան եւ ազգային ու միջազգային իրաւական պաշտպանութեան ներքոյ գտնուող այլ իրաւունքների զանգուածային եւ աննախադէպ խախտումների, որոնց հետեւանքները բռնի տեղահանուած անձինք կրել են նաեւ 2021 թուականի ողջ ընթացքում:

Արցախի Մարդու Իրաւունքների պաշտպան Գեղամ Ստեփանեանը տուեալները հրապարակել է Արցախի Ազգային Ժողովում՝ 2021թ. գործունէութեան, ինչպէս նաեւ մարդու իրաւունքների եւ ազատութիւնների պաշտպանութեան վիճակի մասին տարեկան հաղորդումը ներկայացնելիս:

Տարուայ ընթացքում ՄԻՊ աշխատակազմի կողմից մշտադիտարկման այց են կատարել տեղահանուած անձանց կենտրոնացած բնակութեան հասցէութիւններ, հաւաքագրել խնդիրներն ու դրանք ներկայացրել պետական լիազօր մարմիններին:

Զնայած պետութեան կողմից ներդրուած մեծածաւալ ջանքերի, բռնի տեղահանուած անձինք շարունակում են բախուել բնակարանների սղութեան, չհիմնաւորուած բարձր բնակվարձերի, սոցիալական աջակցութեան այս կամ այն ծրագրերից անհիմն դուրս մնալու, կորսուած փաստաթղթերի վերականգնման ուղղութեամբ բիւրոկրատական քաշքշուքների եւ մի շարք այլ հարցերի:

# ԼԵՆԱ ՇԱՄԱՄԵԱՆ՝ ՔՈԶՄՈՓՈԼԻԹ ՁԱՅՆԸ

ՆԵԻՒՆ ԼԱՄԷՑ

*Սուրիահայ երգչուհի, հեղինակ եւ երաժշտահան, Լենա Շամամեան քանի մը տարուայ ընթացքին տիրացաւ ամրակուռ համբաւի աշխարհի մէջ: Ան կը համաձուլէ հայկական երաժշտութիւնն ու Լեւանթի երգերը, անոնց շնորհելով ճագային շեշտադրութիւն:*

Իր բիւրեղային, խոր եւ եթերային ձայնով, ան հոգեղէնութեամբ տոգորուած երաժշտական երեկոյթ մը տուաւ Ապրիլ 22-ին, Գահիրէի Օփերայի մէջ: Սուրիահայ երգչուհի, հեղինակ եւ երաժշտահան, Լենա Շամամեան արձագանգն է Լեւանթի երկիրներուն՝ արաբական աշխարհի եւ Հայաստանի դասական-արեւելեան երգերուն աւանդական ոճերը համախառնելով ճազի եւ արեւմտեան դասականներուն հետ:

Իր երաժշտութիւնը՝ աւանդականի եւ արդիականի միջեւ, ունի ազատ արտայայտչականութիւն, սրտաբաց է ուրիշին նկատմամբ եւ ամուր կառչած իր արմատներուն: Իբրեւ Միջին Արեւելքի արուեստագիտուհի, ասիկա կը հանդիսանայ սրտայոյզ երգեցողութեան միջոցով սեփական արաբական-հայկական ինքնութիւնը հաստատելու իր եղանակը:

Ծնած 1980-ին, Դամասկոս, Լենա հասակ առած է հայ կաթողիկէ ընտանիքի մէջ, որուն ակունքները կը գտնուին Կիլիկիա՝ Հարաւային Անատոլիա: Հայրը՝ Արթին, Հալէպ ծնած ճարտարագէտ մըն է, սիրահար լուսանկարչութեան եւ երաժշտութեան: Դամասկոսի մէջ է որ հանդիպած է Լենայի մօրը Ղատային, սուրիացի մը Մարտինէն: «Շատ փոքր տարիքէս կը լսէի ճազ երաժշտութիւն, քանի որ հայրս կը նուագէր շեփոր եւ սաքսոֆոն: Լուի Արմսթրոնկէն մինչեւ պեպոփ... Այս երաժշտութիւնը քիչ մը տարօրինակ կը թուէր ինծի, թէեւ կը պաշտէի զայն: Հայրս միշտ հայերէն կը խօսէր հետս: Ան միակն էր իր եղբայրներէն, որ որոշեց չհեռանալ Սուրիայէն: 1960-ականներուն, Դամասկոսի վարչակարգը բռնաճնշեց քաղաքական այլախոհները եւ բռնագրաւեց Յովհաննէս մեծհօրս ունեցուածքը, որ եղած է շատ յայտնի մարքսիթ դերձակ մը Կիլիկիոյ մէջ», կը պատմէ Լենա Շամամեան:

Բազմալեզուանի, ան կ՚երգէ արաբերէն, հայերէն, ֆրանսերէն եւ անգլերէն: «Իմ ծագումնաբանութիւնս կը կրէ խաչաձեւային ժառանգութիւն՝ միաւորուած հաւատքով եւ ցեղասպանութեամբ: 1915-ին հօրենական մեծ ծնողքս հասաւ Հալէպ, այլեւս երբեք չվերադառնալով Կիլիկիա»: Լենայի մանկութիւնը չէ մեկուսացած հայ համայնքին մէջ: Մօրենական մեծհայրը լիբանանցի մըն է Զահլէէն, մեծմայրը՝ սուրիացի մը Դամասկոսէն: «Ժոզէֆին մեծմայրս է որ հինգ տարեկանիս ծանօթացուց դասական երգեցողութիւնը, ունկնդրել տալով Ասմահանին, Ֆարիտ Ալ-Աթրաշին, եւ ուրիշներու: Ան գիս հաղորդակից դարձուց նաեւ հայկական խոհանոցին՝ սորվեցնելով խաղալ գոյներու եւ համերու հետ»:

Այս խոհանոցը սերտօրէն կապուած է Լենայի նման արկածախնդիր եւ նորարարական անհատականութեան հետ, որ կը սիրէ ճամբորդել ամբողջ աշխարհով՝ նոր գաղափարներ բացայայտելու ցանկութեամբ: Ասիկա իր ազդեցութիւնը ունեցած է իր երաժշտութեան վրայ, որ կը գնէ աշխարհի բոլոր համերն ու բուրմունքը: «Ես խառնուրդ մըն եմ ամէն բանի: Իմ երաժշտութիւնս նաեւ խաչաձեւումն է ճազի, դասականի, սուֆիականի, փորթուկալական ֆատոյի, Պալքաններու երաժշտութեան, յունական, թրքական, ափրիկեան, հնդկական, անտալուզեան, հայկական երաժշտութեան, լեւանթական ֆոլքլորի... Ան քոզմոփոլիթ է, արտայայտելով արմատներս եւ ինքնութիւններս: Ան նաեւ նշանաւորուած է ցեղասպանութեամբ, աքսորով, սփիւռքով, ինչպէս նաեւ իմ հոգեվիճակներովս՝ որոնք կը տատանուին յոյսի, սիրոյ, տառապանքի եւ տոկունութեան միջեւ», կը ճշդէ Լենա Շամամեան եւ կ՚աւելցնէ. «Ձայնիս հետ կը վերաբերիմ նուագարանի նման: Արեւելեան դասական երգը աւելի մտահոգուած է բառերով, շատ չի յենուիր զգացումներուն վրայ: Մինչդեռ հայկական երաժշտութիւնը իր շեշտադրութիւնը աւելի կը դնէ զգացումներուն վրայ: Ես կը սիրեմ երգել զգացական ապրումով»:

Շամամեան կը սիրէ լսել Էլլա Ֆիցճերալտ, Տայան Ռիվզ, Տուլս Փոնթէշ, Ամալիա Ռոտրիկեզ, Զաֆէր Եուսէֆ, Նորա Ճոնս, Ֆայրուզ... Ճազն է՝ իր յեղափոխական տիպարով եւ արեւելեան մեղեդիներու երանգաւորումով, որ իրեն կ՚ընծայէ արտայայտութեան ազատ տարածութիւն եւ երաժշտական ճկունութիւն: 2006-ին, Դամասկոսի փոքրիկ գիւղերու մէջ, ինչպէս նաեւ սուրիական սփիւռքի ընդարձակ լսարանի առջեւ կ՚երգէ հայ երաժշտութեան մեծ վարպետ Կոմիտասի *Սարերի հովին մեռնեմը*: Եւ ասիկա, նախքան ողջ աշխարհով հռչակաւոր դառնալը: «Կը թուի թէ ձայնս թոյլ կու տայ գաղթականներուն վերագտնել Դամասկոսի բուրմունքը, դամասկոսեան հոգին: Այդ ժամանակները ճազը մեծ վերելք կ՚ապրէր Սուրիոյ մէջ: Ես կը պատկանիմ այն բախտաւոր սերունդին, որ օգտուեցաւ մշակոյթի մէջ կատարուող լայնախոհ փոփոխութենէն: Ասիկա թոյլ տուաւ ինծի խորտակելու կաթողիկէ ընտանիքիս պահպանողականութիւնը, որ սկիզբէն ի վեր կը միջամտէր երաժշտական ծրագիրներուս: Սորվեցայ ըլլալ աւելի անկախ»:

Ինն տարեկանէն նուագելով սաքսոֆոն, Լենա կ՚անդամակցի Դամասկոսի հայ կաթողիկէ եկեղեցւոյ եւ իր դպրոցի երգչախումբերուն: 2002-ին կը վկայուի Դամասկոսի Համալսարանի առեւտրական բաժանմունքէն, եւ նոյն տարին կ՚ընդունուի Դամասկոսի բարձրագոյն երաժշտական հիմնարկը, ուր հայ փրոֆեսոր Արաքս Չէքիճեանի հսկողութեան տակ կը հետեւի սոլֆէժի դասընթացքներու: Այստեղ է ուր կը ծանօթանայ ճազ երաժիշտ Պասէլ Ռաճուպին: Միասին կը կազմեն երաժշտական ծրագիր մը՝ հիմնուած սուրիական դասական նուագացանկի եւ արեւելեան աւանդական մեղեդիներու վերաձուլումի վրայ ճազային երփներանգներու հետ:

Շամամեան կը վերակենդանացնէ եւ կը յաւերժացնէ աւանդական երգերը՝ մեկնաբանելով *Եա մայլա ՚ալ-ղուսն* (Ճիւղին վրայ ծուած), *Եա մսաֆէր* (Ով ճամբորդ), *Եումմա լա լա*... Այս թուականէն սկսեալ, տրամաթիք սոփրանօ երգչուհին հանդէս կու գայ Սուրիոյ բազմաթիւ մշակութային կեդրոններու մէջ, ճազի միջազգային արուեստագէտներու հետ, ինչպէս՝ Նարեկ Ապաճեան, կը մարզուի Միլանի Լա Սքալայէն ժամանած մասնագէտներու հետ, եւ պատրաստ կ՚ըլլայ մասնակցելու զանազան հեռատեսիլի սերիալներու եւ ֆիլմերու, օրինակ՝ *Նիզար Քապպանի*, *Մեծմօրս դաշուածքները* եւ *Հայելիին ետեւը*:

2005-ին դափնեկիր կը դառնայ Ալ-Մաուրէտ Ալ-Սաքաֆի մրցոյթին: 2006 Սեպտեմբերին նոր թափ կ՚առնէ իր կենսագրութիւնը՝ երբ կը յաղթանակէ Ռատիօ Մոնթէ Քարլոյի Միջին Արեւելքի Երաժշտութեան առաջին մրցոյթի եզրափակիչ փուլին: Այս մրցանակը շրջադարձային նշանակութիւն կ՚ունենայ իր ասպարէզին համար եւ թոյլ կու տայ ձայնագրելու առաջին ալպոմը՝ *Հալ ասմար ալ-լոն* (Թխագոյնը):

Նոյն տարին, Դամասկոսի մէջ կ՚երգէ թրքահայ լրագրող Հրանդ Տինքի յիշատակին, բեմը կիսելով թուրք երաժիշտ Քեմալ Արսլանի հետ: «Դիւրին չէ ցեղասպանութեան յիշողութեամբ մեծցած անձի մը համար երգել թուրքի մը հետ կողք կողքի: Սկիզբը ես մերժեցի իր ձեռքը սեղմել, բայց կամաց կամաց ան շատ լաւ բարեկամ դարձաւ: Բացի այդ, ան հայ դատի պաշտպան մըն է: Մարդկային կողմը կը յաղթանակէ քաղաքականին: Այս հանդիպումէն ետք, ես սորվեցայ անտեսել անձնասիրութիւնս, ատելութիւնս, տկարութիւնս եւ բացուիլ Այլին առջեւ, ընդունիլ, սիրել»:

Բեմին վրայ կը նմանի պարիկի՝ անգլիական գանգուր շէկ մազերով, որոնք բարձր հմայք կը հաղորդեն իրեն: Յաճախ կը հագուի ազգագրական տարազներ, յատկապէս կրելով համակ գունաւոր ասեղնագործ զգեստներ՝ արծաթեայ պճնանքներով զարդարուած: Քանզի հայերը հիանալի ոսկերիչներ են: «Ժոզէֆին՝ մօրենական մեծմայրս, գիս կը խրատէր տունէն դուրս չգալ առանց դիմայարդարանքի եւ առանց կրելու ձեռքի պզտիկ պայուսակ մը: Ան կ՚ըսէր նաեւ թէ գանգուր եւ քաշուած մազերը վայելչագեղ եւ տինամիք ոճ կը հաղորդեն: Գեղեցիկ մնալ՝ ապրելու երջանկութեան մէջ, նոյնիսկ պատերազմի ժամանակ, անհրաժեշտութիւն մը եղած էր իր համար», կը յիշէ Շամամեան:



2011-ին՝ սուրիական յեղափոխութենէն անմիջապէս ետք, փափաքեցաւ փոխել իր տեսքը: Ուրեմն, Փարիզի մէջ, ուր բնակութիւն հաստատած է 9 տարի առաջ, յաճախելով գեղեցկութեան սրահներէն մէկը, կ՚ընտրէ գնչուհիի այս քիչ մը հիփփիական տեսքը՝ բարձրացնելու համար իր տրամադրութիւնը: Իրականութեան մէջ, ասիկա պիտի զուգակցէր իր երաժշտութեան՝ արտայայտելով իշխանականութեան մերժում, վերադարձ դէպի բնութիւն, հակա-մշակոյթ, ազատութիւն...

Իր ծնողքը մնաց Դամասկոս, իսկ ինք 2020-ին ստացաւ ֆրանսական հպատակութիւն: Հետը Փարիզ կը փոխադրէ իր ստեղծագործական կորովը եւ իր ժողովուրդին տառապանքները: Զանազան մրցանակներու դափնեկիր, ան ելոյթներ կ՚ունենայ Եւրոպայի եւ արաբական աշխարհի ամենահեղինակաւոր բեմերուն վրայ: «Փարիզի մէջ ազատագրեցի ինքզինքս: Կը խորշիմ կանոններէ եւ օրէնքներէ, կը սիրեմ ապրիլ եթերի պէս ազատ: Մարդիկ պէտք է յարգեն ընտրութիւններս եւ իրաւունքներս», ըսաւ ան: Այնտեղ կը գտնէ նոր երաժշտական տարածութիւն, նուազ հասարակական խոչընդոտներով: Կը համագործակցի ճազ երաժիշտ Անտրէ Մանուկեանի հետ եւ 2013-ին կը հրապարակէ իր ալպոմը՝ *Ղազլ ալ-պանաթ* (Քաղցր բամպակ): «*Ղազլ ալ-պանաթ* հրաւէր մըն է խաղաղութեան, երջանկութեան, երազանքներու, երեխաներու եւ կիներու պաշտպանութեան: Ինծ միշտ հմայած է Շեհերազատը, այն խելացի կինը՝ որ գիտցաւ փրկել կիները եւ իր ժողովուրդը մահէ, զայն դիմագրաւելով իմաստութեամբ: Եւ ասիկա, առանց կորսնցնելու իր քնքշութիւնը եւ կանացիութիւնը: Որքան կը յառաջանայ տարիքս, այնքան կը գիտակցիմ դէպի արմատներս վերադառնալու ցանկութիւնս», կը խոստովանի Շամամեան եւ կ՚աւելցնէ. «Եթէ կարենամ ետ վերադառնալ, պիտի չգիջիմ իրաւունքներէս: Անտրէ Մանուկեան երկու երգերս վերցուց՝ *Լիլի աման* եւ *Մութն էր*, եւ զանոնք անօրինական կերպով տեղադրեց իր նոր ալպոմին մէջ: Ինծ հասանելի չէն միւս ութ երգերը՝ որոնց վրայ աշխատած ենք միասին»:

Բազմապատկելով երթեւեկութիւնը Ֆրանսայի եւ Եգիպտոսի միջեւ, ինքզինք խիստ յարմարաւէտ կը զգայ վերջինին մէջ, ուր կը բնակի Զամալէքի բարձրադաս թաղամասը: Կը սիրէ զբօսնիլ Գահիրէի փողոցներով, բացայայտելով անոր հարուստ մշակութային ժառանգութիւնը: 2021-ին, Եգիպտոսի մէջ կը պատկերահանէ *Թարիք ալ-շամս* (Արեւու ճամբան) երգին վիտէօ-քլիփը:

**Համառօտ կենսագրութիւն**

1980՝ ծնունդ Դամասկոսի մէջ:

2007՝ Սուրիոյ ռատիոյի երիտասարդ արաբ կնոջ լաւագոյն ձայն: Ինչպէս նաեւ հրապարակում իր երկրորդ ալպոմին՝ *Շամաթ*:

2014՝ Հայ երգի *Ծովից ծով* միջազգային մրցոյթի յանձնախումբի անդամ, Մոսկուա:

2019՝ *Լի Պէյրութ*, երգահանդէս Պէյրութի Միւզիք Հոլին մէջ:

2020՝ *Հան՚իշ ուա նըշուֆ* (Պիտի ապրինք եւ տեսնենք), տարուայ առաջատար երգ: Ինչպէս նաեւ համագործակցութիւն Ամին Պուհաֆայի հետ՝ *Կակարին* ֆրանսերէն ֆիլմի *Եա թարա* (Արդեօք) երգին մէջ:

***Al-Ahram Hebdo*, 11-17 Մայիս 2022, 28-րդ տարի, թիւ 1422, էջ 19**

Ֆրանսերէնէ թարգմանեց՝ Հ. ԱԻԱԳԵԱՆ




## 1 ՂԱՐԱԲԱՂԸ՝ ՊՐԻՒՔՍԷԼԻ ԵՒ ՄՈՍԿՈՒԱՅԻ ՄԻՋԵՒ

վերջացնելով ամէն բան:

Մայիս 16, Մոսկուա, ՀԱՊԿ գագաթնաժողով: Կլոր սեղանի շուրջ կը նստին հինգ բռնատէր եւ կիսաբռնատէր երկիրներու նախագահներ՝ Վլատիմիր Փութին (Ռուսաստան), Ալեքսանդր Լուքաշենքօ (Պելառուս), Քասիմ Թոքաեւ (Ղազախստան), Սատիր Ժափարով (Քիրկիզստան) եւ Էմոմալի Ռահմոն (Թաճիքստան), իրենց հետ ունենալով ՀԱՊԿ-ի մէջ ժողովրդավար ուղի բռնած միակ երկիրի ներկայացուցիչը՝ Նիկոլ Փաշինեան:

ՀԱՊԿ-ի գագաթնաժողով՝ նուիրուած անոր հիմնադրութեան 30-ամեակին, ինչպէս կը յայտարարուի: ՀԱՊԿ՝ գրեթէ ձեւական միութիւն մը, երկիրներու թուլօրէն հիւսուած յարաբերութիւններով, բայց իւրաքանչիւրի ուժեղ յարաբերութեամբ Մոսկուայի հետ: Գագաթնաժողով՝ որ կու գայ ռուս-ուքրաինական պատերազմի կիզակէտին, եւ կը թողու Ռուսաստանի հանրային պատկերը ցուցադրելու տպաւորութիւն: Թէեւ չենք կրնար գիտնալ՝ որ Փութինի առանձին հանդիպումները առաջնորդներուն հետ, ներառեալ Փաշինեանի, ինչ քուլիսային հարցեր կը փորձէին լուծել:

Ամէն պարագայի, պատկերագրուած ու պատկերասփռուած գլխաւոր ընդհանուր նիստին, Փաշինեան կը քննադատէ ՀԱՊԿ-ը Հայաստանին թիկունք կանգնած չըլլալու համար, մինչդեռ ենթադրուած է կազմակերպութիւնը սերտ համագործակցութիւն ցուցաբերէ անդամ որեւէ երկիրի ճգնաժամի պարագային:

Այսպէս, ՀԱՊԿ-ին եւ Փութինին ուղղուած դրական-գովաբանական ուժեղ խօսքերէ ետք, Փաշինեան կը նշէ.

«Ինչպէս գիտէք, անցած տարի հէնց այս օրերին Ադրբէջանի զօրքերը ներխուժել են Հայաստանի ինքնիշխան տարածք: Հայաստանը դիմել է ՀԱՊԿ-ին, որպէսզի գործադրուեն 2010 թուականի Դեկտեմբերի 10-ին հաստատուած ճգնաժամային իրավիճակներին արձագանքման կանոնակարգով նախատեսուած ընթացակարգերով մեխանիզմները: Ցաւօք, չենք կարող ասել, որ կազմակերպութիւնը արձագանքել է այնպէս, ինչպէս սպասում էր Հայաստանի Հանրապետութիւնը: Դեռ երկար ժամանակ մենք բարձրացրել ենք ոչ բարեկամ երկրին ՀԱՊԿ անդամ պետութիւնների կողմից զէնքի վաճառքի հարցը: Այդ զէնքը օգտագործուել է Հայաստանի դէմ եւ հայ ժողովրդի դէմ: Դա նոյնպէս խնդիր է:

«Անկեղծ ասած, ՀԱՊԿ անդամ երկրների արձագանքը 2020 թուականի 44-օրեայ պատերազմի ընթացքում եւ պատերազմից յետոյ այնքան էլ չեն ուրախացրել Հայաստանի Հանրապետութեանը եւ հայ ժողովրդին, բայց ես ուզում եմ ընդգծել Ռուսաստանի Դաշնութեան եւ ՌԴ նախագահ Վլադիմիր Պուտինի կարեւորը դերը Լեռնային Ղարաբաղում պատերազմի դադարեցման գործում»:

Դժուար է հաւատալ՝ որ այս յայտարարութիւնները Փաշինեան կատարած ըլլայ առանց Փութինի հետ նախապէս ունեցած համաձայնութեան: Հայաստան չունի այն խաղաթուղթերը՝ մտմտալու Ռուսաստանի առջեւ:

Մայիս 22-ին, Պրիւքսէլի մէջ կը կայանայ Միշէլ-Փաշինեան-Ալիեւ եռակողմ հանդիպումը: Վճռական որոշումներէն մէկը կ՚ըլլայ սահմանազատումի եւ սահմանային անվտանգութեան հարցերով յանձնաժողովներու կազմութիւնը, որ պէտք է անմիջապէս անցնի գործի:

Մայիս 23-ին, Արարատ Միրզոյեան հեռախօսազրոյց կ՚ունենայ Սերկէյ Լաւրովի հետ, որուն ընթացքին անդրադարձ կը կատարուի 2020 Նոյեմբեր 9-ի, 2021 Յունուար 11-ի եւ Նոյեմբեր 26-ի եռակողմ յայտարարութիւններու դրոյթներու իրականացումի ընթացքին մասին, ինչպէս նաեւ կը քննարկուի Հայաստանի եւ Ազրպէյճանի միջեւ սահմանազատումի եւ սահմանային անվտանգութեան հարցերով յանձնաժողովի ձեւաւորումին առնչուող հարցեր: Հայկական կողմին համար կարեւոր էր նախորդ օրուայ որոշումը համաձայնեցնել Ռուսաստանի հետ: Կամ, ընդհակառակը, Պրիւքսէլի համար Մոսկուան նախօրօք տուած էր իր համաձայնութիւնը:

Նոյն օրը, արդարեւ, նմանօրինակ հեռախօսազրոյց տեղի կ՚ունենայ Ճէյհուն Պայրամովի եւ Լաւրովի միջեւ, որ դարձեալ չի կրնար պատահականութիւն մը ըլլալ Պրիւքսէլէն մէկ օր ետք:

Երեկոյեան, Հայաստան եւ Ազրպէյճան գրեթէ միաժամանակ պաշտօնապէս կը յայտարարեն սահմանազատումի եւ սահմանային անվտանգութեան հարցերով յանձնաժողովներու կազմութիւնը փոխվարչապետներու նախագահութեամբ, Հայաստան՝ Մհեր Գրիգորեանի, Ազրպէյճան՝ Շահին Մուսթաֆաեւի, սկիզբ դնելով յետագայ երկար, բարդ, վտանգաւոր, բայց անհրաժեշտ երկկողմ բանակցութիւններու: Աղմկայարոյց 5/6 կէտերը արդէն կը դառնան անիմաստ: Նոր սկիզբ է պէտք:

Մայիս 24-ին, երկու յանձնաժողովներուն նախագահները՝ Գրիգորեան եւ Մուսթաֆաեւ, կը հանդիպին Հայաստան-Ազրպէյճան միջպետական սահմանին, քննարկելով ընդամէնը կազմակերպչական եւ ընթացակարգային հարցեր, ինչպէս նաեւ համաձայնելով յանձնաժողովին յաջորդ երկու եռակողմ հանդիպումները կատարել յաջորդաբար Մոսկուա եւ Պրիւքսէլ:

Նոյն օրը՝ հայեացք դէպի Մոսկուա, եւ ՀԱՊԿ անդամ պետութիւններու պաշտպանութեան նախարարներու խորհուրդի նիստ՝ տեսաքոնֆերանսի ձեւաչափով, նախագահութեամբ Հայաստանի պաշտպանութեան նախարար Սուրէն Պապիկեանի: Պաշտօնական յայտարարութեան մէջ Ղարաբաղեան հարց չկայ:

Քիչ մը յետոյ՝ հայեացք դէպի ԱՄՆ, եւ հեռախօսազրոյց Փաշինեանի ու ԱՄՆ պետքարտուղար Անթոնի Պլինքէնի միջեւ: ԱՄՆ-ի դրական գնահատութիւն Ղարաբաղեան հարցի կարգաւորումի Հայաստանի ջանքերուն նկատմամբ եւ նման կարգախօսային պաշտօնական յայտարարութիւններ:

Պրիւքսէլ, Մոսկուա եւ քիչ մըն ալ ԱՄՆ, փոխարինելով անգործունեայ դարձած Մինսքի Խումբին:

Կարեւոր է նկատել, որ վերոյիշեալ Հայաստան-Ազրպէյճան բանակցութիւնները եռակողմ են՝ միջնորդուած Պրիւքսէլի եւ Մոսկուայի կողմէ, եւ որոշ ժամանակ մը այդպէս պիտի մնան:

Ասիկա, ի տարբերութիւն Հայաստան-Թուրքիա բանակցութիւններուն, որոնք, եթէ նոյնիսկ տեղի ունեցած են «չէզոք» հողի վրայ, անոնք շատոնց արդէն եղած են երկկողմանի, Հայաստանի կողմէ՝ Ազգային Ժողովի նախագահի տեղակալ Ռուբէն Ռուբինեանի, եւ Թուրքիոյ կողմէ՝ նախկին դեսպան Սերտար Քըլըչի միջեւ, Յունուար 14՝ Մոսկուա, Փետրուար 24՝ Վիեննա, եւ Մայիս 3՝ Վիեննա: Ձհաշուած արտաքին գործոց նախարարներ Արարատ Միրզոյեանի եւ Մեւլիւթ Չաւուշօղլուի ոչ-պաշտօնական հանդիպումը Մարտ 12-ին, Անթալիայի դիւանագիտական փորումի շրջանակին մէջ, որ նոյնպէս երկկողմանի էր: Առ այժմ, առանց որեւէ արդիւնքի:

Ա.

## 2 ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ...

51. Բ. Թաշեան, «Շոփէնհաուէր եւ իր գրական ըմբռնումները. Ե.», *Նոր շարժում*, 30 Դեկտեմբեր 1923, Ա. տարի, պրակ 42-43, էջ 647-649:

52. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա, 29 Յունուար), «Քաղաքական կեանքը Եգիպտոսի մէջ (մեր սեփական թղթակցէն», *Ճակատամարտ*, 6 Փետրուար 1924, նոր շրջան, թիւ 1596, ԺԴ. տարի, թիւ 3426, էջ 2:

53. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա, 5 Փետրուար), «Եգիպտական նոր դահլիճին կազմութիւնը. եւրոպացիները մտահոգ (մեր սեփական թղթակցէն», *Ճակատամարտ*, 15 Փետրուար 1924, նոր շրջան, թիւ 1604, ԺԴ. տարի, թիւ 3434, էջ 2:

54. Բ. Թաշեան, «Աժան սէր (կաղանդի պատմութիւն)» (Գ. Մ.-ին), *Նոր շարժում*, 17 Փետրուար 1924, Ա. տարի, պրակ 46-47, էջ 695-696:

55. Բ. Թաշեան, «Դէպի տոհմիկ գրականութիւնը», *Նոր շարժում*, 3 Մարտ 1924, Ա. տարի, պրակ 48-49, էջ 715-717:

56. Բ. Թաշեան, «Մեր նոր ցաւերէն. Հոգեր՝ վաղուան համար», *Ճակատամարտ*, 19 Մարտ 1924, նոր շրջան, թիւ 1632, ԺԴ. տարի, թիւ 3462, էջ 2:

57. Բ. Թաշեան, «Դէպի տոհմիկ գրականութիւնը. Բ.», *Նոր շարժում*, 22 Մարտ 1924, Ա. տարի, պրակ 50-51, էջ 746-748:

58. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա, 24 Մարտ), «Եգիպտական խորհրդարանին բացումը. Զաղլուլ փաշայի դիրքը (մեր սեփական թղթակցէն)», *Ճակատամարտ*, 2 Ապրիլ 1924, նոր շրջան, թիւ 1644, ԺԴ. տարի, թիւ 3474, էջ 2:

59. Բ. Վէմ, «Կրթական նոր տարին. Դ.», *Յուսաբեր*, եռօրեայ, Գահիրէ, 6 Մայիս 1924, Ժ. տարի, թիւ 14, էջ 2:

60. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա, 28 Ապրիլ), «Անգլիա Եգիպտոսի մէջ. քաղաքական նոր մահափորձ մը (մեր սեփական թղթակցէն)», *Ճակատամարտ*, 7 Մայիս 1924, նոր շրջան, թիւ 1672, ԺԴ. տարի, թիւ 3502, էջ 2:

61. Բ. Վէմ, «Կրթական նոր տարին. Ե.», *Յուսաբեր*, 15 Մայիս 1924, Ժ. տարի, թիւ 19, էջ 3:

62. Բ. Վէմ, «Կրթական նոր տարին. Ե.», *Յուսաբեր*, 5 Յունիս 1924, Ժ. տարի, թիւ 27, էջ 2:

63. Բ. Թաշեան, «Գարտինէ Պապիկեան», *Յուսաբեր*, 24 Յունիս 1924, Ժ. տարի, թիւ 35, էջ 2:

64. Բ. Թաշեան, «Գարտինէ Պապիկեան», *Յուսաբեր*, 1 Յուլիս 1924, Ժ. տարի, թիւ 38, էջ 4:

65. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա, 10 Յուլիս), «Անգլեւեգիպտական բանակցութիւններու նախօրեակին. նոր դէպքեր Եգիպտոսի մէջ (մեր սեփական թղթակցէն)», *Ճակատամարտ*, 18 Յուլիս 1924, նոր շրջան, թիւ 1734, ԺԴ. տարի, թիւ 3564, էջ 2:

66. Բ. Թաշեան (Գահիրէ, 14 Յուլիս), «Եգիպտական դէպքերը եւ Զաղլուլ փաշաի դէմ մահափորձը. ստոր «փռօվօքասիօն» մը հայերուն դէմ (մասնաւոր թղթակցութիւն)», *Ճակատամարտ*, 23 Յուլիս 1924, նոր շրջան, թիւ 1738, ԺԴ. տարի, թիւ 3568, էջ 2:

67. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Դէպի ազգային գրականութիւն», *Հայաստանի կոչնակ*, 26 Յուլիս 1924, ԻԴ. տարի, թիւ 30, էջ 943-944:

68. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա, 2 Սեպտեմբեր), «Կացութիւնը Եգիպտոսի մէջ. Սուտանի վերջին դէպքերը (մեր սեփական թղթակցէն)», *Ճակատամարտ*, 10 Սեպտեմբեր 1924, նոր շրջան, թիւ 1780, ԺԴ. տարի, թիւ 3610, էջ 2:

69. Բ. Վէմ, «Մանկավարժական. *Դէպի վաղուան դպրոցը*. L’Arrière plan». I», *Յուսաբեր*, 9 Դեկտեմբեր 1924, Ժ. տարի, թիւ 107, էջ 1-2:

70. Բ. Վէմ, «Մանկավարժական. *Դէպի վաղուան դպրոցը*. L’Arrière plan». II», *Յուսաբեր*, 11 Դեկտեմբեր 1924, Ժ. տարի, թիւ 108, էջ 1:

71. Բ. Վէմ, «Մանկավարժական. *Դէպի վաղուան դպրոցը*. L’Arrière plan». III», *Յուսաբեր*, 16 Դեկտեմբեր 1924, Ժ. տարի, թիւ 110, էջ 1:

72. Բ. Վէմ, «Մանկավարժական. *Դէպի վաղուան դպրոցը*. L’Arrière plan». IV», *Յուսաբեր*, 20 Դեկտեմբեր 1924, Ժ. տարի, թիւ 112, էջ 1:

73. Բ. Վէմ, «Մանկավարժական. *Դէպի վաղուան դպրոցը*. L’Arrière plan». դպրոցին մէջ. I», *Յուսաբեր*, 1 Յունուար 1925, Ժ. տարի, թիւ 117, էջ 2:

74. Բ. Թաշեան, «Արքայութի՞ւն թէ դժոխք... (Կաղանդի պատմութիւն)», *Յուսաբեր*, 3 Յունուար 1925, Ժ. տարի, թիւ 118, էջ 5:

75. Բ. Վէմ, «*Դէպի վաղուան դպրոցը*. Բ. դպրոցին մէջ. II», *Յուսաբեր*, 22 Յունուար 1925, Ժ. տարի, թիւ 125, էջ 2:

(Շար. 12)

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1917 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 16 ՅՈՒՆԻՍ 2022 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀԿ. عدد رقم ١٩١٧ الخميس ١٦ يونيه ٢٠٢٢


## ԵՐԿՈՒ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐ ԲԱՑԹ ՄԷԿ ԱԶԸՐՊԷՅՃԱՆ

1994-ին գրաւեցինք Ղարաբաղը, մեր բառապաշարով՝ ազատագրեցինք, ազերիներու բառապաշարով՝ բռնագաւթեցինք: Յետոյ ի՞նչ ըրինք: Արցախի նախագահ դրինք (կամ եկաւ) Ռոբերտ Քոչարեան եւ հաստատեցինք երկու ինքնուրոյն հայկական պետութիւններու գոյութիւնները՝ իւրաքանչիւրը իր անկախ սահմանադրութեամբ, եւ ուրախացանք երկու պետութիւններ ունենալով: Քոչարեան ամէն ջանք գործադրեց որքան կարելի է առաւել ինքնուրոյնութիւն տալ Արցախին, իբրեւ անկախ պետութիւն: Գեղեցիկ է անկախ բառը: Ի՞նչ բան աւելի հաճելի է քան անկախութիւնը: Բայց անկախ ուրմէ՞: Հայաստանէ՞ն: Բազմահմուտ պատմաբան-դիւանագէտ Ժիրայր Լիպարիտեան՝ որ 1991-1997-ին, Լեւոն Տէր-Պետրոսեանի ժամանակ վարած էր Հայաստանի զանազան բարձր ու կարեւոր պաշտօններ, վերջերս քանիցս յայտարարեց՝ որ այդ շրջանի Հայաստանի «արտաքին» բանակցութիւններուն ամենադժուարը եղած էր Ղարաբաղի հետ: Ըսել կ՛ուզէ՝ Քոչարեանի հետ: Ապացոյց մը՝ երկու պետութիւններու ինքնակամ գոյութեան:

2020-ին Ազըրպէյճան գրաւեց Շուշին եւ Հադրութը, իր բառապաշարով՝ ազատագրեց, մեր բառապաշարով՝ բռնագաւթեց: Յետոյ ի՞նչ ըրաւ: Ղարաբաղի իր տարածքը չյայտարարեց անկախ պետութիւն կամ ինքնավար մարզ, չնշանակեց նախագահ, այլ անմիջապէս զայն մտցուց Ազըրպէյճանի տարածքի մէջ: Մէկ պետութիւն:

1994-ին գրաւեցինք-ազատագրեցինք-բռնագաւթեցինք Ղարաբաղը: Յետոյ ի՞նչ ըրինք: Ջկրցանք նոյնիսկ հայութեամբ մարդաշատ դարձնել զայն, ստեղծել ամուր ժողովրդագրական հենք: Զգացինք այնտեղ բնակութիւն հաստատելու: Ես ինքս չգացի: Դուն ալ չգացիր: Պետութիւնն ալ չստեղծեց ներքաշող պայմաններ, չհիմնեց մեծ ծրագիրներ:

2020-ին Ազըրպէյճան գրաւեց-ազատագրեց-բռնագաւթեց Շուշի-Հադրութը: Յետոյ ի՞նչ ըրաւ: Սկսաւ ազերինով լեցնել տարածքը, յայտարարել շատ մեծ ծրագիրներու նախագիծեր: Հիմա մենք սկսանք դժգոհիլ, որ Շուշին եւ Հադրութը կը լեցուին անպէտք ու անպիտան ազերիներով, որոնք շուտով Ղարաբաղի ազգաբնակչութեան մեծամասնութիւնը կրնան կազմել եւ ազդել քաղաքական գործընթացքին վրայ:

Արցախի իշխանութիւնը չմարսեց Թաւշեայ Յեղափոխութիւնը: Քանի մը հաշուարկային փոփոխութիւններ կատարուեցան ղեկավարներու առնչութեամբ, իշխանութեան գլուխ եկաւ շատ մեծ օլիկարք մը՝ Արայիկ Յարութիւնեան, եւ Հայաստանի իշխանութենէն դուրս մնացած հակայեղափոխականները Արցախը դարձուցին իրենց գործունէութեան կեդրոնը: Երկու պետութեան խզումի յաւելեալ գործողութիւն մը՝ հայրենասիրութեան անունին տակ: Կեդրոն դարձուցին Արցախը՝ առանց երբեք մտահոգուած ըլլալու անոր քաղաքական, տնտեսական եւ մշակութային բարելաւումով, բնակչութեան կենսամակարդակի բարձրացումով, նոր ու գրաւիչ ծրագիրներու ներդրումով: Մանաւանդ՝ առանց ժողովրդավարական հասարակութիւն կառուցելու ցանկութեամբ: Արցախը մնաց ոչ-ժողովրդավարական պետութիւն, ուր այլակարծութիւնը կը մնայ բռնադատուած:

Լուսաւոր Հայաստան կուսակցութեան նախագահ, Հայաստանի յատուկ յանձնարարութիւններով դեսպան Էդմոն Մարուքեան վերջերս կ՛այցելէ Արցախ: Ապրիլ 22-ին, Հայաստանի հեռատեսիլի Առաջին Կայանի Պետրոս Ղազարեանի հարցազրոյցին հիւրն է ան: Խօսքը կը սկսի այսպէս.

«Ես գնացել էի Արցախ, այդ այցելութեան ընթացքին բաւականին շփումներ եմ ունեցել այնտեղ ժողովրդի հետ, եւ վերադառնալուց յետոյ իմ մտահոգութիւնով կիսուեցի, առ այն որ Արցախում յատակ քարոզչութիւն է իրականացուել եւ իրականացւում, որ Հայաստանը ձեռքերը լուացել է Արցախից, հայ ժողովուրդը ձեռքերը լուացել է ձեզանից եւ խորը ատելութեան քարոզչութիւն: [...] Պարզուեց որ ասածների 60 տոկոսը սուտ էր, մի 20 տոկոսը կիսախեղուած իրականութիւն, մի 20 տոկոս էլ ճիշդ՝ օբիեկտիւ, սուբիեկտիւ պատճառներ: Ասում եմ այս լուրերը ո՞րտեղից, ասում են՝ 5-րդ ալիքով: Ես հրապարակային ասում եմ, 5-րդ ալիքը նման քարոզչութիւն է իրականացնում Արցախում եւ մեր ժողովրդի մի հատուածին միւս հատուածի դէմ է հանում: Հիմա գիտենք 5-րդ ալիքը ումն է՝ երկրորդ նախագահի մասին է խօսքը գնում»:

Էդմոն Մարուքեանի բացայայտումը՝ որ թէեւ նորութիւն մը չէր բնաւ, տեղի տուաւ «5-րդ ալիքեան»-ներու պոռթկումին, խառնելով ամէն բան՝ Մարուքեանի անձը, ընտանիքը, սեփական կեանքը:

Այսօր, «5-րդ ալիքեան»-ներն են Երեւանի փողոցները՝ միս-մինակ, անտեսուած հանրութենէն, բռնութեան ու ատելութեան խօսքը առօրեայ օրակարգ դարձուցած:

Մայիս 28-ին՝ յատուկ էր այս թուականը ընտրուած, «5-րդ ալիքեան»-ները Ստեփանակերտի մէջ երթ ու հանրահաւաք կազմակերպեցին՝ լեցուն գերհայրենասիրական պոռթկումներով եւ ռազմահայրենասիրական երգերով, միաժամանակ աջակցութիւն յայտարարելով Երեւանի «5-րդ ալիքեան»-ներուն եւ ընդդիմութիւն՝ Հայաստանի իշխանութիւններուն: Եւ այս բոլորը, Արցախի իշխանութիւններու լուռ հաւանութեամբ եւ թոյլատրութեամբ, իբրեւ երկու պետութիւններու խզումի պաշտօնական ու խոր արտայայտութիւն:

Ստեփանակերտի ու Երեւանի մէջ կ՛երգեն *Զարթի՛ր, լաօ* հայդուկային երգը: Երգը 1890-ականներուն նախատեսուած էր խանդավառել հայ ժողովուրդը՝ պայքարելու թուրքին դէմ: 2022-ին ան նախատեսուած է խանդավառել ժողովուրդը՝ կատարելու յեղաշրջում Հայաստանի մէջ՝ ետ վերադարձնելու դուրս մնացածներու կորուսեալ փառքը: Այսօրուայ *Զարթի՛ր, լաօ* երգողներէն ո՛Չ ՄԷԿԸ մտածեց զայն երգել 44-օրեայի ընթացքին, ո՛Չ ՄԷԿԸ գնաց պատերազմելու 44-օրեային: Հայրենասիրութիւնը պատում չէ, գործ է: Եթէ անկարող ես գործելու, պարզապէս նախընտրելի է հրաժարիլ

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՅ-ԹՐՔԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԼԱՒՐՈՎ-ՄԻՐԶՈՅԵԱՆ ՄԱՄՈՒԼԻ ԱՍՈՒԼԻՍԻՆ

ՀԱՊԿ արտաքին գործոց նախարարներու Երեւանի հանդիպումէն մէկ օր առաջ՝ Յունիս 9-ին, Հայաստանի եւ Ռուսաստանի արտաքին գործոց նախարարներ Արարատ Միրզոյեան եւ Սերկէյ Լաւրով կ՛ունենան առանձին հանդիպում: Լաւրով Հայաստան կու գար Թուրքիա կատարած այցելութենէն անմիջապէս ետք: Երկկողմ հանդիպումին կը յաջորդէ համատեղ մամուլի ասուլիս, որուն ընթացքին կ՛արծարծուի հայ-թրքական յարաբերութիւններուն հարցը:

Լաւրով կ՛ողջունէ հայ-թրքական յարաբերութիւններու բնականոնացումին ուղղուած գործընթացքը եւ կը նշէ.

«Այս համատեքստում, մեր ընդհանուր կարծիքով, անհրաժեշտ է ապահովել հարաւկովկասեան երեք երկրների եւ նրանց երեք հարեւանների մասնակցութեամբ «3+3» տարածաշրջանային հարթակի ռիթմիկ աշխատանքը: Սա կարեւոր յաւելեալ խողովակ է տարածաշրջանային երկրների եւ նրանց հարեւանների միջեւ երկխօսութեան ձեւաւորման եւ բազմակողմ համագործակցութեան զարգացման համար»:

Իր կողմէն, Միրզոյեան կը նշէ՝ որ հայկական կողմը ուրախ է լսել Թուրքիոյ բարձրագոյն իշխանութեան յայտարարութիւնները՝ թէ իրենք պատրաստ են կարգաւորել եւ դիւանագիտական յարաբերութիւններ հաստատել Հայաստանի հետ եւ բանալ Հայաստան-Թուրքիա սահմանը: Ան կ՛աւելցնէ.

«Միւս կողմից՝ մենք տեսնում ենք մօտեցումների տարբերութիւններ այն առումով, որ թէեւ Թուրքիան շարունակաբար յայտարարում է, որ կարգաւորման այս գործընթացը պէտք է տեղի ունենայ առանց որեւէ նախապայմանի, այնուամենայնիւ, մենք պարբերաբար կապ ենք տեսնում Հայաստան-Թուրքիա կարգաւորման գործընթացի եւ Հայաստան-Ադրբէջան

↳ 2

## ՀԱՄԱՆԱԽԱԳԱՀՆԵՐԸ ԿՈՂՄԵՐԻՆ ԷԻՆ ՆԵՐԿԱՅԱՑՐԵԼ ՅՍՏԱԿ ԲԱՆԱԿՑԱՅԻՆ ՕՐԱԿԱՐԳ. ԱԳ ՆԱԽԱՐԱՐ

Հայաստանի արտաքին քաղաքականութեան կարեւորագոյն գերակայութիւնը 2021 թուականին շարունակել է մնալ Հայաստանի եւ Արցախի անվտանգութեան ապահովումը, Լեռնային Ղարաբաղի քաղաքական կարգաւորումը՝ ԵԱՀԿ Մինսկի Խմբի համանախագահութեան շրջանակներում եւ նրա մանդատի ներքոյ: Այս մասին Յունիսի 6-ին Ազգային Ժողովում ասաց Հայաստանի Արտաքին Գործերի նախարար Արարատ Միրզոյեանը:

«Քննարկումների ձեւաչափի առումով մեզ համար յատուկ կարեւորութիւն է ունեցել ԵԱՀԿ Մինսկի Խմբի համանախագահութեան ձեւաչափը: Շուրջ մէկամեայ դադարից յետոյ, ինչպէս շահագրգիռ պետութիւնների դիրքորոշման, այնպէս էլ հայկական կողմի հետեւողական աշխատանքի շնորհիւ 2021 թուականի Սեպտեմբերին Նիւ Եորքում, ապա Նոյեմբերին՝ Փարիզում տեղի են ունեցել Հայաստանի եւ Ադրբէջանի արտաքին գործերի նախարարների առաջին եւ երկրորդ հանդիպումները՝ ԵԱՀԿ Մինսկի խմբի համանախագահութեան մասնակցութեամբ եւ միջնորդութեամբ: Հանդիպումների ընթացքում հայկական կողմն ընդգծել է իր դիրքորոշումը ԵԱՀԿ Մինսկի Խմբի համանախագահութեան ձեւաչափով Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան խաղաղ կարգաւորման գործընթացը լիարժէք վերականգնելու առնչութեամբ: Վերահաստատուել է սահմանազօտում դէէսկալացիայի եւ հումանիտար խնդիրների կարգաւորման անհրաժեշտութիւնը, ինչպէս նաեւ սադրանքների եւ հայատեաց հռետորաբանութեան անընդունելիութիւնը: Մինչեւ ԵԱՀԿ ձեւաչափով երկրորդ փարիզեան հանդիպումը Հայաստանի եւ Ադրբէջանի արտաքին գործերի նախարարները միմեանց հանդիպել են նաեւ Հոկտեմբերի 14-ին՝ Մինսկում Ռուսաստանի արտգործնախարարի միջնորդութեամբ: Միւս հանդիպումը ԵԱՀԿ Մինսկի Խմբի ձեւաչափով նախատեսուած էր անցկացնել Դեկտեմբերի 1-3-ը Ստոկհոլմում՝ ԵԱՀԿ ամենամեայ նախարարական վեհաժողովի շրջանակներում, սակայն

↳ 4

# ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ
## (Մահուան 50-ամեակին առիթով)

**Հ. ԱԻԱԳԵԱՆ**

76. Բ. Վէմ, «*Դէպի վաղուան դպրոցը. Գ. դպրոցէն դուրս*», *Յուսաբեր*, 29 Յունուար 1925, Ժ. տարի, թիւ 128, էջ 1-2:

77. Բ. Վէմ, «*Դէպի վաղուան դպրոցը. Ջ. մեր դպրոցը*», *Յուսաբեր*, 12 Փետրուար 1925, Ժ. տարի, թիւ 134, էջ 2:

78. Բ. Թ., «Քաղաքականութիւնը դէպի բեւեռ», *Յուսաբեր*, 26 Փետրուար 1925, Ժ. տարի, թիւ 140, էջ 4:

79. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Եպիկուրեաննները», *Հայաստանի կոչնակ*, 28 Փետրուար 1925, ԻԵ. տարի, թիւ 9, էջ 269-270:

80. Բ. Թաշեան, «Արուեստը Խորհրդային Ռուսիոյ մէջ. Ա.», *Նաւասարդ*, Պուքարեսթ, 1925, նոր շրջան, Բ. տարի, Թ. պրակ, էջ 261-263:

81. Բ. Թաշեան, «Արուեստը Խորհրդային Ռուսիոյ մէջ. Բ.», *Նաւասարդ*, Պուքարեսթ, 1925, նոր շրջան, Բ. տարի, Ժ. պրակ, էջ 288-291:

82. Բ. Թաշեան, «Մտաւորական ոյժը Հ. Յ. Դաշնակցութեան մէջ», *Յուսաբեր*, 10 Հոկտեմբեր 1925, ԺԱ. տարի, թիւ 81, էջ 5:

83. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Վաղուան դպրոցը. Ա.», *Հայաստանի կոչնակ*, 31 Հոկտեմբեր 1925, ԻԵ. տարի, թիւ 44, էջ 1283-1284:

84. Բ. Թաշեան, «Վաղուան դպրոցը. Բ.», *Հայաստանի կոչնակ*, 7 Նոյեմբեր 1925, ԻԵ. տարի, թիւ 45, էջ 1320-1321:

85. Բ. Թաշեան, «Կրթական նոր կարգեր Գերմանիոյ մէջ. Ա.», *Յուսաբեր*, 28 Նոյեմբեր 1925, ԺԱ. տարի, թիւ 102, էջ 1:

86. Բ. Թաշեան, «Կրթական նոր կարգեր Գերմանիոյ մէջ. Բ.», *Յուսաբեր*, 1 Դեկտեմբեր 1925, ԺԱ. տարի, թիւ 103, էջ 2:

87. Բ. Թաշեան, «Կրթական նոր կարգեր Գերմանիոյ մէջ. Գ.», *Յուսաբեր*, 3 Դեկտեմբեր 1925, ԺԱ. տարի, թիւ 104, էջ 1-2:

88. Բ. Թաշեան (թարգմ.), «Պղատոնի գեղեցկագիտութիւնը», *Հայաստանի կոչնակ*, 5 Դեկտեմբեր 1925, ԻԵ. տարի, թիւ 49, էջ 1441-1443: Նախապէս տպագրուած՝ *Ճակատամարտ*, 12 Նոյեմբեր 1922, նոր շրջան, թիւ 1218, ԺԲ. տարի, թիւ 3039, էջ 2:

89. Բ. Թաշեան, «Ուշադրութեան մանկավարժական հիմունքները», *Հայ վարժարան*, մանկավարժական ամսագիր (խմբագիրներ՝ Գաբրիէլ Թագւորեան, Հմայեակ Շէմս եւ Բենիամին Թաշեան), Գահիրէ, Յուսաբեր, 1 Մարտ 1926, Ա. տարի, թիւ 1, էջ 17-21:

90. Բ. Թաշեան, «Ուշադրութեան կրթութիւնը. միջոցներ եւ հնարաւորութիւններ», *Հայ վարժարան*, 1 Ապրիլ 1926, Ա. տարի, թիւ 2, էջ 34-37:

91. Բ. Թաշեան, «Մեթոտական բարեփոխումներու պահանջը արդի ուսուցման մէջ. I», *Հայ վարժարան*, 1 Մայիս 1926, Ա. տարի, թիւ 3, էջ 66-70:

92. Բ. Թաշեան, «Մեթոտական բարեփոխումներու պահանջը արդի ուսուցման մէջ. II», *Հայ վարժարան*, 1 Յունիս 1926, Ա. տարի, թիւ 4, էջ 114-118:

93. Բ. Թաշեան, «Մեթոտական բարեփոխումներու պահանջը արդի ուսուցման մէջ. III», *Հայ վարժարան*, 1 Յուլիս 1926, Ա. տարի, թիւ 5, էջ 149-153:

94. Բ. Թաշեան, «Ամերիկացիներու ըմբռնումը դաստիարակութեան մասին. I», *Հայ վարժարան*, 1 Օգոստոս 1926, Ա. տարի, թիւ 6, էջ 170-173:

95. Բ. Թաշեան, «Հանրային կրթութիւնը Խորհրդային Ռուսիոյ մէջ. I», *Յուսաբեր*, 11 Օգոստոս 1926, ԺԲ. տարի, թիւ 111, էջ 2:

96. Բ. Թաշեան, «Հանրային կրթութիւնը Խորհրդային Ռուսիոյ մէջ. II», *Յուսաբեր*, 12 Օգոստոս 1926, ԺԲ. տարի, թիւ 112, էջ 2:

97. Բ. Թաշեան, «Հանրային կրթութիւնը Խորհրդային Ռուսիոյ մէջ. III», *Յուսաբեր*, 13 Օգոստոս 1926, ԺԲ. տարի, թիւ 113, էջ 2:

98. Բ. Թաշեան, «Ամերիկացիներու ըմբռնումը դաստիարակութեան մասին. II», *Հայ վարժարան*, 1 Սեպտեմբեր 1926, Ա. տարի, թիւ 7, էջ 212-216:

99. Բ. Թաշեան, «Ընկերային տարրերը դաստիարակութեան մէջ. I», *Հայ վարժարան*, 1 Հոկտեմբեր 1926, Ա. տարի, թիւ 8, էջ 227-231:

100. Բ. Թաշեան, «Դաշնակցական գրականութիւնը», *Յուսաբեր*, 16 Հոկտեմբեր 1926, ԺԲ. տարի, թիւ 168, էջ 5:

101. Բ. Թաշեան, «Ընկերային տարրերը դաստիարակութեան մէջ. II», *Հայ վարժարան*, 1 Նոյեմբեր-Դեկտեմբեր 1926, Ա. տարի, թիւ 9-10, էջ 276-279:

102. Բ. Թաշեան, «Արուեստը Խորհրդային Ռուսիոյ մէջ», *Նաւասարդ*, Պուքարեսթ, 1926, նոր շրջան, Բ. տարի, ԺԱ. պրակ, էջ 316-318:

103. Բ. Վէմ, «Դպրոցական ըէֆորմը եւ Պօղոսեան Վարժ.ի տեղեկագիրը. I», *Յուսաբեր*, 15 Յունուար 1927, ԺԲ. տարի, թիւ 243, էջ 1-2:

104. Բ. Վէմ, «Դպրոցական ըէֆորմը եւ Պօղոսեան Վարժ.ի տեղեկագիրները. II», *Յուսաբեր*, 17 Յունուար 1927, ԺԲ. տարի, թիւ 244, էջ 1-2:

105. Բ. Վէմ, «Դպրոցական ըէֆորմը եւ Պօղոսեան Վարժ.ի տեղեկագիրները. III», *Յուսաբեր*, 18 Յունուար 1927, ԺԲ. տարի, թիւ 245, էջ 1:

106. Բ. Վէմ, «Դպրոցական ըէֆորմը եւ Պօղոսեան Վարժ.ի տեղեկագիրները. IV», *Յուսաբեր*, 19 Յունուար 1927, ԺԲ. տարի, թիւ 246, էջ 2:

107. Բ. Վէմ, «Դպրոցական ըէֆորմը եւ Պօղոսեան Վարժ.ի տեղեկագիրները. V», *Յուսաբեր*, 20 Յունուար 1927, ԺԲ. տարի, թիւ 247, էջ 1-2:

108. Բ. Վէմ, «Դպրոցական ըէֆորմը եւ Պօղոսեան Վարժ.ի տեղեկագիրները. VI», *Յուսաբեր*, 21 Յունուար 1927, ԺԲ. տարի, թիւ 248, էջ 1-2:

109. Բ. Վէմ, «Դպրոցական ըէֆորմը եւ Պօղոսեան Վարժ.ի տեղեկագիրները. VII», *Յուսաբեր*, 22 Յունուար 1927, ԺԲ. տարի, թիւ 249, էջ 1-2:

110. Բ. Վէմ, «Դպրոցական ըէֆորմը եւ Պօղոսեան Վարժ.ի տեղեկագիրները. VIII», *Յուսաբեր*, 24 Յունուար 1927, ԺԲ. տարի, թիւ 250, էջ 2:

111. Բ. Վէմ, «Դպրոցական ըէֆորմը եւ Պօղոսեան Վարժ.ի տեղեկագիրները. IX», *Յուսաբեր*, 27 Յունուար 1927, ԺԲ. տարի, թիւ 253, էջ 1-2:

112. Բ. Թաշեան, «Իմաստասիրութիւնը Քանդէն վերջ. Ա. գերմանական դպրոց», *Հայաստանի կոչնակ*, 12 Մարտ 1927, ԻԷ. տարի, թիւ 11, էջ 341-342:

113. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Իմաստասիրութիւնը Քանդէն վերջ. Բ. անգլիական դպրոց», *Հայաստանի կոչնակ*, 7 Մայիս 1927, ԻԷ. տարի, թիւ 19, էջ 593-595:

114. Բ. Թաշեան, «Շանթի *Կայսրը*», *Յուսաբեր*, 13 Յունիս 1927, ԺԳ. տարի, թիւ 61, էջ 1-2:

115. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Ժողովուրդներու հոգեբանութիւնը. արդի յոյները. Ա.», *Հայաստանի կոչնակ*, 9 Յուլիս 1927, ԻԷ. տարի, թիւ 28, էջ 877-878:

116. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Ժողովուրդներու հոգեբանութիւնը. արդի յոյները. Բ.», *Հայաստանի կոչնակ*, 16 Յուլիս 1927, ԻԷ. տարի, թիւ 29, էջ 910-911:

117. Բ. Թաշեան, «Արդի իտալացիները հոգեբանութեան լոյսին տակ. Ա.», *Հայաստանի կոչնակ*, 17 Սեպտեմբեր 1927, ԻԷ. տարի, թիւ 38, էջ 1193-1194:

118. Բ. Թաշեան, «Արդի իտալացիները հոգեբանութեան լոյսին տակ. Բ.», *Հայաստանի կոչնակ*, 24 Սեպտեմբեր 1927, ԻԷ. տարի, թիւ 39, էջ 1228-1229:

119. Բ. Թաշեան, «Արդի իտալացիները հոգեբանութեան լոյսին տակ. Գ.», *Հայաստանի կոչնակ*, 1 Հոկտեմբեր 1927, ԻԷ. տարի, թիւ 40, էջ 1259-1260:

120. Բենիամին Թաշեան (Գահիրէ), «Արդի իտալացիները հոգեբանութեան լոյսին տակ. Բ.», *Հայաստանի կոչնակ*, 5 Նոյեմբեր 1927, ԻԷ. տարի, թիւ 45, էջ 1417-1419:

121. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Արդի իտալացիները հոգեբանութեան լոյսին տակ. Գ.», *Հայաստանի կոչնակ*, 19 Նոյեմբեր 1927, ԻԷ. տարի, թիւ 47, էջ 1483-1484:

122. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Անգլիացի ժողովուրդը եւ իր հոգեբանական արժէքները. Ա.», *Հայաստանի կոչնակ*, 10 Դեկտեմբեր 1927, ԻԷ. տարի, թիւ 50, էջ 1576-1578:

123. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Անգլիացի ժողովուրդը եւ իր հոգեբանական արժէքները. Բ.», *Հայաստանի կոչնակ*, 17 Դեկտեմբեր 1927, ԻԷ. տարի, թիւ 51, էջ 1613-1615:

124. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Մտերիմ զրոյց տղուս հետ», *Յունահայ տարեգիրք*, Բ. տարի, 1928, Աթէնք, էջ 24-31:

125. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Անգլիոյ անհատապաշտութիւնը եւ ընկերային հաստատութիւնները», *Հայաստանի կոչնակ*, 28 Յունուար 1928, ԻԸ. տարի, թիւ 4, էջ 104-105:

126. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Անգլիական մտքին ձեւափոխումները», *Հայաստանի կոչնակ*, 11 Փետրուար 1928, ԻԸ. տարի, թիւ 6, էջ 169-171:

127. Բ. Թ., «Թատրոն. *Քին*», *Յուսաբեր*, 3 Մարտ 1928, ԺԳ. տարի, թիւ 284, էջ 2:

128. Բ. Թ., «Ա. Շահ-Մուրատեանի երգահանդէսը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 23 Ապրիլ 1928, ԺԴ. տարի, թիւ 17, էջ 2:

129. Բ. Թ., «Թատրոն. *Համլէթ*», *Յուսաբեր*, 18 Մայիս 1928, ԺԴ. տարի, թիւ 39, էջ 1-2:

4

# ԿԱՊԱՆՈՒՄ ՆԱԽԱՏԵՍՈՒՈՒՄ Է ԿԱՌՈՒՑԵԼ ՈՉ ՖՈՐՄԱԼ ԿՐԹԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ՝ COAF-Ի ՍՄԱՐԹ ԿԵՆՏՐՈՆ

Նախատեսւում է Կապան խոշորացուած համայնքում կառուցել սմարթ կենտրոն, որն առաջարկում է ոչ ֆորմալ կրթութիւն: *Արմենպրէսի* հաղորդմամբ՝ այս մասին ասաց Հայաստանի ԿԳՄՍ փոխնախարար Ժաննա Անդրէասեանն ԱԺ մշտական յանձնաժողովների համատեղ նիստում Հայաստանի 2021թ. պետական բիւջէի կատարման մասին տարեկան հաշուետուութեան քննարկմանը՝ անդրադառնալով պատգամաւորների հարցերին:

Փոխնախարարը նախ խօսեց Կապանի ծրագրի մասին: Ծրագրի շրջանակում պետութիւնն ուսումնասիրել է 31 գիւղական բնակավայրերում չահառու երեխաների թիւը՝ թէ նախադպրոցական, թէ դպրոցական տարիքի երեխաներին, բնակավայրերի հեռաւորութիւնը, տեղանքը, շէնքերի վիճակը: Եւ այդ ուսումնասիրութեան արդիւնքում 13 կրթահամալիրներում նախատեսուել է կազմակերպել կրթութիւն, որը թէ նախադպրոցական, թէ դպրոցական մակարդակի, թէ լրացուցիչ կրթական ծրագրերի իրականացման վայր է լինելու:

Փոխնախարարի խօսքով՝ կայ հնարաւորութիւն՝ աւելացնելու ոչ ֆորմալ կրթութեան բաղադրիչը: «ԵՄ-ի ծրագրերի շրջանակներում քննարկւում է նաեւ Կապան խոշորացուած համայնքում COAF-ի՝ Հայաստանի մանուկների հիմնադրամի կողմից սմարթ կենտրոնի կառուցման հնարաւորութիւնը», - ասաց Անդրէասեանը:

Լոռու Դեբէդ համայնքում գործում է այդպիսի կենտրոն, որը փոխնախարարը համարում ոչ ֆորմալ կրթութեան շատ լաւ միջավայր: Այն 27 տարբեր բնակավայրերից շուրջ 2000 երեխաների առաջարկում է տարբեր դասընթացներ, ընդգրկուած են նաեւ նախադպրոցական տարիքի երեխաները: «Նմանատիպ կենտրոն կ՚ունենանք Կապան խոշորացուած համայնքում: Եւ մեր ֆորմալ կրթութեան ծրագիրը, միանալով ոչ ֆորմալ կրթութեան այս միջավայրին, մի ամբողջ էկօհամակարգ կը ձեւաւորի եւ թոյլ կը տայ, որ ունենանք շատ որակեալ կրթութիւն», - ասաց փոխնախարարը՝ յաւելելով, որ դա ծրագրերից մէկն է, որ քննարկւում է ԵՄ-ի աջակցութեամբ:

1

## ՀԱՅ-ԹՐՔԱԿԱՆ...

գործընթացների միջեւ: Կապ, որը Թուրքիայի իշխանութեան ներկայացուցիչներն են փորձում գտնել, կամ ընդգծում են իւրաքանչիւր առիթով: Մենք չենք կարծում որ սա կառուցողական է: Կան որոշակի տարբերութիւններ նաեւ այն առումով, որ մենք տարբեր պատկերացումներ ունենք տեմպի մասին: Այնուամենայնիւ, կրկին ընդգծում եմ, որ ողջունելի է լսել Թուրքիայից յայտարարութիւններ այն մասին, որ իրենք պատրաստւում են բացել Հայաստանի հետ փակուած սահմանը»:

ԽՈՀԵՐ

# ՍՓԻՒՌՔԸ ԻՐԱՒՈՒՆՔ ՈՒՆԻ՞ ՔՆՆԱԴԱՏԵԼ ՀԱՅԱՍՏԱՆԸ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

«Սփիւռքը իրաւունք ունի՞ քննադատել Հայաստանը»:

Հայաստանցիներու մեծամասնութեան համար՝ ո՛չ:

Սփիւռքցիներու մեծամասնութեան համար՝ այո՛:

Ոչ ոք կը հարցնէ. «Հայաստանը իրաւունք ունի՞ քննադատել Սփիւռքը»: Այս հարցը չէ դրուած, քանի որ, ընդհանուր առմամբ, Հայաստանը չի քննադատեր Սփիւռքը, մինչ հակառակը յաճախ տեղի կ՚ունենայ:

Նախ, ի՞նչ բնագաւառի մասին է հարցումը՝ «Սփիւռքը իրաւունք ունի՞ քննադատել Հայաստանը»: Ո՛չ արուեստի, ո՛չ մշակոյթի, ո՛չ մարզաշխարհի մասին է խօսքը: Սփիւռքը, օրինակ, հազուադէպ կը գրախօսէ, ալ ուր մնաց քննադատէ Հայաստան հրատարակուած գիրք մը: Հարցումը նկատի ունի հիմնականապէս Սփիւռքի կուսակցութիւններու, կուսակցապետերու, լրագրողներու եւ հայագիր ու օտարագիր անկախ անհատներու հրապարակային քննադատութիւնը Հայաստանի կառավարութեան եւ իշխանութեան: Սփիւռքը չէ հետաքրքրուած Հայաստանի հասարակութեան ներքին շերտերով որպէսզի մտածէր քննադատել զայն:

Արդ, «Սփիւռքը իրաւունք ունի՞ քննադատել Հայաստանը», միշտ մնալով իշխանութիւններուն ուղղուած ծիրին մէջ: Այո՛, բայց կարեւոր սահմանափակումներով: Նախ՝ երկու գլխաւոր կէտեր.

1. Առաջին կէտը կապուած է Սփիւռքի սեփական ինքնի հետ, այդ ինքնի գիտակցութեան եւ քննադատութեան, ուրեմն՝ ինքնաքննադատութեան հետ:

Այն սփիւռքահայը՝ որ իր հրապարագրական, բանասիրական, պատմագիտական եւ այլ գրութիւններով անընդհատ պանծացուցած է Սփիւռքը՝ քօղարկելով անոր թերութիւնները, գիտակցաբար կամ ոչ-գիտակցաբար դուրս ձգելով բոլոր բացասականութիւնները, եւ ներկայացնելով Սփիւռքի գերբիւրեղացած պատկեր մը՝ անիրական ու ցնորական, իրաւունք ՉՈՒՆԻ քննադատել Հայաստանը:

Այն սփիւռքահայը՝ որ չէ փորձած ինքզինքը վտանգել քննադատելով իր սեփական Սփիւռքը, այն շրջապատը՝ ուր կ՚ապրի, իրաւունք ՉՈՒՆԻ քննադատել ուրիշը, այս պարագային՝ Հայաստանը:

Այն սփիւռքահայը՝ որ հանգիստ ու յարմարաւէտ նստած է աւանդական կառոյցներուն մէջ՝ գերազանցապէս սնուելով անոնցմէ եւ մերժելով նոյնիսկ խնդրականացնել կամ քննականացնել զանոնք, իրաւունք ՉՈՒՆԻ քննադատել Հայաստանը:

Այն սփիւռքահայը՝ որ մերժած է քննադատել սփիւռքեան հիմնահոսանքի ոչ-ժողովրդավարական կառուցուածքը՝ ուր էական որոշումներ կ՚ընդունուին եւ կը կիրարկուին առանց հասարակութեան իրազեկութեան, իրաւունք ՉՈՒՆԻ քննադատել Հայաստանը:

Ուրեմն, ճիշդ է հակառակը: Այն սփիւռքահայը՝ որ կը քննադատէ Սփիւռքը՝ այսինքն ինքզինքը, եւ մանաւանդ այն սփիւռքահայը՝ որ այդ քննադատութիւններուն հետեւանքով ենթակայ է մեկուսացումի, անտեսումի եւ իր դէմ մղուող խօսուն ու անխօս պայքարի, իրաւունք ՈՒՆԻ քննադատել Հայաստանը:

2. Երկրորդ կէտը կապուած է Հայաստանի հետ՝ անոր ներքնականացումը սփիւռքահայուն կողմէ:

Այն սփիւռքահայը՝ որ պաշտպանած է Հայաստանի իշխանութիւններուն փտածութիւնը, կամ առնուազն տեսնելով զայն՝ անձնական շահերու համար լռած է, թիկունք կանգնած է քրէաօլիկարքական համակարգին՝ անոր անդամները փառաբանելով, ներկայացնելով իբրեւ հայրենասէրներ, չըսելու համար նիւթական նպաստներ ստանալով անոնցմէ, իրաւունք ՉՈՒՆԻ քննադատել Հայաստանը:

Ուրեմն, այստեղ եւս ճիշդ է հակառակը: Այն սփիւռքահայը՝ որ իր ժամանակին քննադատած է Հայաստանի վերնախաւային փտածութիւնը, քննադատած՝ իբրեւ ներքնականացուած համոզում, իբրեւ ժողովուրդին լաւը տեսնելու ցանկութիւն, իրաւունք ՈՒՆԻ քննադատել Հայաստանը:

Այս երկու հիմնական միտումներուն հետ կան նաեւ այլ արժէքներ.

- Այն սփիւռքահայը՝ որ ժամանակին գործակցած է ու հիմա եւս կը համագործակցի Հայաստանի մութ ու փաշական խումբերու հետ, եւ իր առօրեայ հռետորաբանութիւնը դարձուցած է փաշական հայրենասիրութիւն մը՝ ամէն տեսակ զինուորագրեալ բառապաշարով, իրաւունք ՉՈՒՆԻ քննադատել Հայաստանը, քանի որ իր քննադատութեան ոճը, բառապաշարը եւ բովանդակութիւնը յայտնի են կանխապէս:

- Այն սփիւռքահայը՝ որ իր տիրապետած միաւորի ընդմէջէն բաժնած է Սփիւռքի միաւորները իրարմէ՝ գրեթէ յաւերժական երկաթեայ պատեր կառուցելով անոնց միջեւ, իրաւունք ՉՈՒՆԻ քննադատել Հայաստանը:

- Այն սփիւռքահայը՝ որ իր միաւորի ընդմէջէն պաշտօնական ծրագրաւորմով ահաբեկած է սփիւռքահայուն, իրաւունք ՉՈՒՆԻ քննադատել Հայաստանը:

- Այն սփիւռքահայը՝ որ գործնականօրէն չէ հետաքրքրուած Սփիւռքի մշակոյթով, արուեստով, գրականութեամբ, անտեղեակ է իր գաղութի պատմութեան մօտիկ անցեալին՝ անոր մտաւորականներուն, մտաւորական արտադրութեան եւ քաղաքական կուսակցութիւններու պատմական ընթացքին, այն սփիւռքահայը՝ որ մարմնապէս կը բնակի Սփիւռքի մէջ բայց մտաւորապէս ու հոգեպէս կ՚ապրի արտասփիւռքի մէջ, իրաւունք ՉՈՒՆԻ քննադատել Հայաստանը:

- Այն սփիւռքահայը՝ որ կը փակէ հայ մշակոյթին նուիրուած ամսագիրներ, կը փակէ դպրոցներ՝ առանց մեկնաբանութիւններ տալու հանրութեան (դպրոց կարելի է փակել՝ եթէ աշակերտներուն քանակը անբաւարար է, բայց փակումը պէտք է տեղի ունենայ հանրային իրազեկութեամբ), կը փակէ գրադարաններ՝ հսկայական արժէքաւոր գրականութեան ճակատագիրը յանձնելով հնավաճառներու քմահաճոյքին կամ գիրքերը զետեղելով սնտուկներու մէջ՝ զանոնք այլեւս չբանալու հրամայականով, այն սփիւռքահայը՝ որ այսպէսով վնասած է Սփիւռքին, իրաւունք ՉՈՒՆԻ քննադատել Հայաստանը:

Բայց ինչո՞ւ յատկապէս այս կէտերն ու արժէքները: Ուրկէ՞ կու գան անոնք: Անոնք կու գան այսօրուայ կատարուածի դիտարկութենէն, քանի որ այսօր, Հայաստանի իշխանութիւնները քննադատող Սփիւռքի կարեւոր մասը կը կրէ վերոյիշեալ յատկանիշներէն մաս մը, մանաւանդ առաջին կէտը՝ ինքնաքննադատութեան մերժումը: Ինքնաքննադատութիւն մերժողն է որ այսօր ամենահանգիստ սիրտով կը քննադատէ ուրիշը՝ Հայաստանը: Հայաստանը Սփիւռքին համար կը մնայ ուրիշ, այնքան ժամանակ որ Սփիւռքը չունի ինքնաքննադատութիւն: Ինքնաքննադատութեամբ Սփիւռքը պիտի ստեղծէ գաղափարական հարթակներ, եւ ճիշդ այդ նոյն հարթակները պիտի գործադրէ Հայաստանը քննադատելու համար: Հարթակներու նոյնացումը կը ջնջէ ուրիշը՝ նոյնիսկ ամենասուր քննադատութեան պարագային:

Բայց այս բոլորի մէջ կարեւոր թերութիւն մը կայ: Մինչեւ այստեղ քննարկուածը մէկ ուղղութեամբ շարժում մըն է՝ Սփիւռքէն դէպի Հայաստան, ինչպէս միշտ տեղի կ՚ունենայ: Սփիւռքէն օգնութիւն Հայաստանին, Սփիւռքէն ներդրում Հայաստանին, Սփիւռքէն քննադատութիւն կամ ոչ-քննադատութիւն Հայաստանին:

Ո՞ւր մնաց հակառակը եւ հակադարձ հարցումը. «Հայաստանը իրաւունք ունի՞ քննադատել Սփիւռքը»: Պատասխանը ենթադրուած է ըլլալ՝ այո՛, մօտաւորապէս նոյն պայմաններով: Այսինքն, նախ քննադատողը ըլլայ Հայաստանի մշակոյթի եւ քաղաքականութեան իրազեկ մը եւ բացասական կողմերու *իրական* քննադատ մը:

Ցաւօք, Սփիւռքին ուղղուած Հայաստանի քննադատութեան գլխաւոր մասը հիմնուած է դրամի (դրամ չղրկելու) գաղափարին վրայ: Սփիւռքը քիչ դրամ կը ղրկէ Հայաստանին: Ամէն բան դրամի մէջ տեսնելու ցանկութիւն մը, որ նաեւ ստորացում մըն է նոյն ինքը Հայաստանին՝ իբրեւ ստանալու ձգտող միաւոր: Միաժամանակ, հերքում մը հարցումին՝ «Հայաստանը իրաւունք ունի՞ քննադատել Սփիւռքը»: Հերքում, որովհետեւ հարցումը ենթադրուած է ունենալ Հայաստանէն դէպի Սփիւռք շարժում մը, մինչդեռ քննադատութիւնը դարձեալ կը հաստատէ հակառակ ուղղութիւնը՝ Սփիւռքէն դէպի Հայաստան:

Դրամէն զատ, Հայաստանը կը քննադատէ՞ Սփիւռքը: Հազուադէպ:

Ահաւասիկ հազուադէպ քննադատութիւն մը յայտնի լրագրող Յակոբ Բադալեանի կողմէ, գրառուած Յունուար 20-ի ֆէյսպուքեան էջին վրայ.

«Կիլիկիոյ Կաթողիկոս Արամ Առաջինը լիբանանահայ մտաւորականութեան հետ հանդիպմանը մտահոգութիւն է յայտնել, որ Սփիւռքը մաշւում եւ գունաթափւում է, երիտասարդները դառնում են անտարբեր, հեռանում են համայնքային կեանքից, օտար ազդեցութիւնն աւելանում է:

«Իսկ ի՞նչ են արել այդ առնչութեամբ սփիւռքեան տասնեակ «աւանդական» կառոյցները՝ երկու կաթողիկոսութիւնները իրենց թեմերով, երեք աւանդական կուսակցութիւնները իրենց տարատեսակ գրասենեակներով ու կոմիտէներով: Ի՞նչ են արել տարիներ շարունակ, «կորպորատիվ շահերի» համար պայքարից բացի, որպէսզի կանխատեսուէին, գնահատուէին համաշխարհային փոփոխութիւններն ու Սփիւռքի վրայ դրանց անխուսափելի ազդեցութիւնը, մշակելու համար գործողութիւններ, քայլեր, մեխանիզմներ, որոնք նոր աշխարհում պէտք է ապահովէին Սփիւռքի մի կողմից կենսունակութիւնը, միւս կողմից խուսափելով դա ապահովել «գետտոյացման» միջոցով:

«Ինչ են արել, եւ ինչ են անում: Գործնականում ոչինչ: Շարունակւում է աւանդական կառոյցների պայքարը նոր աշխարհի, նոր իրականութեան դէմ՝ կորպորատիվ շահերի տրամաբանութեամբ, պայմանաւորուած նաեւ Հայաստանի ներքաղաքական կեանքում նրանց շահերով»:

«Կորպորատիվ շահեր»՝ խտացումն է Բադալեանի քննադատութեան: Իսկ այդ «կորպորատիվ շահեր»-ու հիման վրայ չէ՞ որ այսօր տեղի կ՚ունենայ Սփիւռքի ամենաձայնաւոր քննադատութիւնը Հայաստանին, քօղարկուած շատ մեծ հայրենասիրական կիրքերով: Եթէ Սփիւռքի «կորպորոտիվ» քննադատութիւնը համակարգային է, Հայաստանի քննադատութիւնը Սփիւռքին պատահական է եւ անհատական:

Իսկ կա՞ն արդեօք սփիւռքահայեր, որոնք կը քննադատեն երկու կողմերն ալ՝ Սփիւռքը եւ Հայաստանը: Կան: Պատմաբան-դիւանագէտ Ժիրայր Լիպարիտեան անոնցմէ մէկն է, թերեւս ամենէն խորերէն ու համարձակներէն մէկը: Միակը չէ, անշուշտ:

Իրական քննադատութիւնը ցուցանիշն է ներգրաւուածութեան: Սփիւռքէն Հայաստան եւ Հայաստանէն Սփիւռք քննադատութիւնը՝ եթէ իրական է ու անկեղծ, հեռու «կորպորատիվ շահեր»-է, պէտք է արտայայտութիւնը ըլլայ փոխներգրաւուածութեան, որ անհրաժեշտ է առողջ յարաբերութիւններ ստեղծելու համար: Վերնախաւային յարաբերութիւնները առողջ չեն: Հայրենասիրութիւն, օլիկարքութիւն, դրամ, ուժ, իշխանութիւն՝ բոլորն ալ միախառնուած ու փոխկապակցուած են այնտեղ:



## 2 ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ...

130. Բ. Թ., «Թատրոն. *Ինկած բերդի իշխանուհին*. Ա.», *Յուսաբեր*, 30 Մայիս 1928, ԺԴ. տարի, թիւ 49, էջ 2:

131. Բ. Թ., «Թատրոն. *Ինկած բերդի իշխանուհին*. Բ.», *Յուսաբեր*, 31 Մայիս 1928, ԺԴ. տարի, թիւ 50, էջ 2:

132. Բ. Թ., «Թատրոն. *Ինկած բերդի իշխանուհին*. Գ.», *Յուսաբեր*, 1 Յունիս 1928, ԺԴ. տարի, թիւ 51, էջ 2:

133. Բ. Թ., «Թատրոն. *Ինկած բերդի իշխանուհին*. Դ.», *Յուսաբեր*, 2 Յունիս 1928, ԺԴ. տարի, թիւ 52, էջ 2:

134. Բ. Թ., «Թատրոն. *Ինկած բերդի իշխանուհին*. Ե.», *Յուսաբեր*, 4 Յունիս 1928, ԺԴ. տարի, թիւ 53, էջ 2:

135. Բ. Թ., «Թատրոն. *Ինկած բերդի իշխանուհին*. Զ.», *Յուսաբեր*, 5 Յունիս 1928, ԺԴ. տարի, թիւ 54, էջ 2:

136. Բ. Թաշեան, «Սպանիացի ժողովուրդին հոգեբանութիւնը. Ա.», *Հայաստանի կոչնակ*, 9 Յունիս 1928, ԻԸ. տարի, թիւ 23, էջ 712-713:

137. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Սպանիացի ժողովուրդին հոգեբանութիւնը. Բ.», *Հայաստանի կոչնակ*, 16 Յունիս 1928, ԻԸ. տարի, թիւ 24, էջ 748-749:

138. Բ. Թ., «Թատրոն. *Ոսկէ հէքիաթ*», *Յուսաբեր*, 28 Յուլիս 1928, ԺԴ. տարի, թիւ 100, էջ 1-2:

139. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Սպանիական նկարգրին այլասերումը եւ իր պատճառները», *Հայաստանի կոչնակ*, 11 Օգոստոս 1928, ԻԸ. տարի, թիւ 32, էջ 999-1001:

140. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Սպանիացի ժողովուրդին հոգեբանութիւնը», *Հայաստանի կոչնակ*, 20 Հոկտեմբեր 1928, ԻԸ. տարի, թիւ 42, էջ 1326-1327:

141. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Սպանիացիները Ամերիկայի մէջ», *Հայաստանի կոչնակ*, 15 Դեկտեմբեր 1928, ԻԸ. տարի, թիւ 50, էջ 1580-1581:

142. Բ. Թաշեան (1 Օգոստոս 1928, Աղեքսանդրիա), «Գիւղը հայ գրականութեան մէջ», *Յունահայ տարեգիրք*, Գ. տարի, Աթէնք, 1929, էջ 201-215:

143. Բ. Թաշեան (Աղեքսանդրիա), «Գերման ժողովուրդը եւ գաղափարական կեանքը. Ա. Հին գերմանները», *Հայաստանի կոչնակ*, 2 Փետրուար 1929, ԻԹ. տարի, թիւ 5, էջ 135-137:

144. Բ. Թաշեան, «Գաղութահայ գրականութեան ճակատագիրը (ցանկութիւններ եւ հնարաւորութիւններ). Ա.», *Յուսաբեր*, 13 Փետրուար 1929, ԺԴ. տարի, թիւ 268, էջ 1-2:

145. Բ. Թաշեան, «Գաղութահայ գրականութեան ճակատագիրը (ցանկութիւններ եւ հնարաւորութիւններ). Բ.», *Յուսաբեր*, 14 Փետրուար 1929, ԺԴ. տարի, թիւ 269, էջ 1-2:

146. Բ. Թաշեան, «Գաղութահայ գրականութեան ճակատագիրը (ցանկութիւններ եւ հնարաւորութիւններ). Գ.», *Յուսաբեր*, 19 Փետրուար 1929, ԺԴ. տարի, թիւ 273, էջ 1-2:

147. Բ. Թաշեան, «Գաղութահայ գրականութեան ճակատագիրը (ցանկութիւններ եւ հնարաւորութիւններ). Դ.», *Յուսաբեր*, 20 Փետրուար 1929, ԺԴ. տարի, թիւ 274, էջ 1-2:

148. Բ. Թաշեան, «Գերման ժողովուրդին հոգեբանութիւնը», *Հայաստանի կոչնակ*, 1 Յունիս 1929, ԻԹ. տարի, թիւ 22, էջ 685-687:

149. Բ. Թաշեան, «...Բայց դրօշը կը մնայ», *Յուսաբեր*, 1 Յունիս 1929, ԺԵ. տարի, թիւ 52, էջ 1-2:

150. Բ. Թաշեան, «Գերմանացի ժողովուրդը եւ իր իրական կեանքը. ճարտարարուեստի զարգացումը Գերմանիոյ մէջ», *Հայաստանի կոչնակ*, 31 Օգոստոս 1929, ԻԹ. տարի, թիւ 35, էջ 1095-1096:

151. Վէմունի, «Անդաստան. նորերը», *Յուսաբեր*, 19 Հոկտեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 170, էջ 2:

152. Վէմունի, «Անդաստան. գրականութիւնը ինչպէս որ է», *Յուսաբեր*, 2 Նոյեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 182, էջ 2:

153. Վէմունի, «Անդաստան. գրականութիւնը ինչպէս որ է», *Յուսաբեր*, 9 Նոյեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 188, էջ 2:

154. Բ. Թաշեան, «Հանրային կրթութիւնը Գերմանիոյ մէջ», *Հայաստանի կոչնակ*, 16 Նոյեմբեր 1929, ԻԹ. տարի, թիւ 46, էջ 1445-1447:

155. Վէմունի, «Անդաստան. գրականութիւնը ինչպէս որ է», *Յուսաբեր*, 23 Նոյեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 200, էջ 2:

156. Վէմունի, «Անդաստան. գրականութիւնը ինչպէս որ է», *Յուսաբեր*, 30 Նոյեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 206, էջ 2:

157. Բ. Թաշեան, «Շանթի *Կայսրը*. գրադատական վերլուծում», *Հայրենիք*, ամսագիր, Պոսթոն, Դեկտեմբեր 1929, Ը. տարի, թիւ 2(86), էջ 56-77:

158. Վէմունի, «Անդաստան. գրականութիւնը ինչպէս որ է», *Յուսաբեր*, 14 Դեկտեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 218, էջ 2:

(Շար. 13)

## 1 ԵՐԿՈՒ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐ ԲԱՑՑ ՄԷԿ ԱԶԸՐՊԷՅՃԱՆ

հայրենասիրական խօսքերէ: Սեփական կարողութիւններու գիտակցութիւնն ալ հայրենասիրութիւն է:

«5-րդ ալիքեան»-ներու վերջին յայտնագործութիւնը Եւրոպական Խորհուրդի նախագահ Շարլ Միշէլի գործածած մէկ նախադասութիւնն էր: Նախադասութիւն՝ որ անջատելով իր բովանդակութենէն, կը փոխադրուի ուրիշ բովանդակութեան տակ: Նախադասութիւն՝ որ իր բուն բովանդակութեան մէջ ունենալով ոչ մէկ կշիռ եւ կարեւորութիւն, նոր բովանդակութեան մէջ կը ստանայ բացառիկ իմաստ:

Այսպէս, Մայիս 22-ին Պրիւքսէլի մէջ տեղի ունեցած է Միշէլ-Փաշինեան-Ալիեւ եռակողմ հանդիպումը: Անմիջապէս կը յաջորդէ Միշէլի պաշտօնական յայտարարութիւնը, ուր կը նշէ տեղի ունեցած քննարկումները մարդասիրական հարցերու շուրջ, ներառեալ՝ ականազերծումը, ձերբակալուածներու ազատումը եւ անյայտ կորսուածներու հարցի լուծումը: Ան կ՚ողջունէ սահմանազատումի հարցով յանձնաժողովներու կազմութիւնը, անհրաժեշտ կը համարէ հասցէագրել հակամարտութեան արմատական պատճառները, կը տեղեկացնէ՝ որ ղեկավարները համաձայնեցան առաջ տանիլ Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ միջպետական յարաբերութիւնները կարգաւորող ապագայ խաղաղութեան պայմանագիրի շուրջ քննարկումները: Ըստ յայտարարութեան՝ անոնք կը համաձայնին «Արեւմտեան Ազըրպէյճանի ու Նախիջեւանի եւ Հայաստանի տարբեր շրջաններու միջեւ Ազըրպէյճանի տարածքով տարանցումի, ինչպէս նաեւ երկու երկիրներու հաղորդակցութեան ենթակառուցուածքներու միջոցով միջազգային երթեւեկութեան սկզբունքներու շուրջ»:

Եւ կու գայ աղմուկ բարձրացուցած նախադասութիւնը. «Ի յաւելումն այս ուղիին՝ ես երկու ղեկավարներուն ալ շեշտեցի՝ որ անհրաժեշտ է ուշադրութիւն դարձնել էթնիք հայ բնակչութեան իրաւունքներուն եւ անվտանգութեան Ղարաբաղի մէջ»:

Արայիկ Յարութիւնեան բողբոքած է: «Արցախի իշխանութիւնների եւ ժողովրդի համար խիստ անընդունելի է Եւրոպական Խորհրդի նախագահ Շառլ Միշէլի յայտարարութեան մէջ տեղ գտած «Ղարաբաղի էթնիկ հայ բնակչութեան իրաւունքներն ու անվտանգութիւնը» ապահովելու մասին ձեւակերպումը»: Այս յայտարարութիւնը «չի արտայայտում արցախահայութեան պահանջներն ու ձգտումները, որոնց հիմքում դրուած է ժողովուրդների ինքնորոշման իրաւունքը»: (30 տարի է՝ ժողովուրդներու ինքնորոշում: 30 տարի է՝ չինքնորոշուեցան:) Անշուշտ, քննադատութիւնը անուղղակիօրէն հասցէագրուած է Փաշինեանի անձին:

Մայիս 25-ին, Փաշինեան կը ստիպուի պաշտպանել Միշէլին: Ըստ անոր, Ղարաբաղի կարգավիճակին վերաբերեալ «քննարկումների արդիւնքում կողմերի միջեւ համաձայնութիւն չի ձեւակերպուել ձեւակերպումների շուրջ»: Խօսելով Շարլ Միշէլի հաղորդագրութեան յիշեալ հատուածին մասին, Փաշինեան կը նշէ՝ քանի որ այս հարցով համաձայնութիւն չէ ձեւակերպուած, Շարլ Միշէլ իր կողմէ կատարած է մեկնաբանութիւններ, որոնք «հնարաւորինս շատ էլեմենտներ կ՚արտայայտեն երկու կողմերի դիրքորոշումներից»:

Այսինքն, այդ նախադասութիւնը ոչ մէկ նշանակութիւն ունի իրական գետինի վրայ կատարուելիք բանակցութիւններուն համար, քանի որ համաձայնութիւն ընդհանրապէս գոյութիւն չունի: Միջանկեալ նախադասութիւն մը՝ որ ոչ մէկ գործնական կարեւորութիւն կը ներկայացնէ եւ որուն իմաստը, եթէ փափաքինք անցնիլ միւս ծայրայեղութեան, նաեւ կրնայ մեկնաբանուիլ Յարութիւնեանի ճիշդ հակառակ իմաստով: Բայց «5-րդ ալիքեան»-ներու նպատակն է բարձրացնել աղմուկ՝ աղմուկի համար:

Աղմուկը կը հասնի մինչեւ Եւրոպական Խորհուրդ, այնքան որ Շարլ Միշէլի խօսնակը Մայիս 31-ին յայտարարութիւն կը տարածէ՝ ի պատասխան Ղարաբաղի քննադատութեան, ուր, ի միջի այլոց, կը նշէ. «Մայիս 22-ին առաջնորդներու հանդիպումի արդիւնքներուն մասին Միշէլի յայտարարութիւնը պէտք չէ մեկնաբանել իբրեւ քննարկումներու որեւէ կանխորոշուած արդիւնքի սատարում: Ի վերջոյ, ամենակարեւորը այն է, որ բոլոր հարցերուն համապարփակ լուծում տրուի, ներառնելով բոլոր ժողովուրդներու իրաւունքներն ու անվտանգութիւնը»:

Այսինքն, դարձեալ, Միշէլի յայտարարութիւնը ոչ մէկ նշանակութիւն ունի յետագայ բանակցութիւններուն համար, քանի որ չկայ կանխակալ համաձայնութիւն: Նախադասութիւն մը՝ որուն տրուեցաւ իր կշիռէն բիւր անգամ աւելի ծանր նշանակութիւն:

Եւ այսպէս շարունակ: Բայց շատ աւելի կտրուկ ու վտանգաւոր եղանակներով քան Միշէլի դէպքը: «Ատելութեան քարոզչութիւն», նկարագրեց Մարուքեան, ինչպէս տեսանք վերը: Միշէլին հասցէագրուածը համեմատաբար մեղմ էր: Վերջապէս՝ Միշէլն էր, Եւրոպան էր:

Երկու անջատ պետութիւններ՝ Հայաստան եւ Արցախ: Շահագործում՝ Արցախի դիրքին եւ արցախեան պատումին: Հայրենասիրութիւն, օլիկարքութիւն, դրամ, ուժ, իշխանութիւն՝ բոլորն ալ միախառնուած ու փոխկապակցուած: Յետոյ՝ ինչո՞ւ կորսուեցաւ Ղարաբաղէն մաս մը: Հապա մինչեւ Պաքու պիտի գրաւէինք: Հապա ամենայն հայոց պատմաբանի պոռթկումը՝ Պաքուն հայկական է:

Ա.

## 1 ՀԱՄԱՆԱԽԱԳԱՀՆԵՐԸ ԿՈՂՄԵՐԻՆ ԷԻՆ ՆԵՐԿԱՅԱՑՐԵԼ ՅՍՏԱԿ ԲԱՆԱԿՑԱՅԻՆ ՕՐԱԿԱՐԳ. ԱԳ ՆԱԽԱՐԱՐ

ադրբէջանական կողմը մի քանի ժամ առաջ չեղարկեց այդ հնգակողմ հանդիպումը», - ասաց նա:

Արարատ Միրզոյեանը նշեց, որ նախքան հնգակողմ այդ հանդիպումը, առանձին հանդիպումների ընթացքում համանախագահները կողմերին էին ներկայացրել յստակ բանակցային օրակարգ: Դրանից օրեր առաջ Վիեննայում տեղի ունեցած ԵԱՀԿ մշտական խորհրդի նիստում իրենց մէկ տարուայ գործունէութիւնը ներկայացնելիս համանախագահները կրկին արձանագրել էին իրենց մանդատը:

«Եւ ահա այս գործօնները՝ համանախագահութեան ձեւաչափի ու մանդատի շուրջ Ադրբէջանի ունեցած վերաբերմունքին զուգահեռ, մեր կարծիքով դարձան Ստոկհոլմեան հանդիպման չեղարկման հիմնական պատճառները: Այնուամենայնիւ, Ստոկհոլմում ԵԱՀԿ ամենամեայ նախարարական խորհրդաժողովի ընթացքում ԵԱՀԿ մասնակից պետութիւնների մեծամասնութեան, ինչպէս նաեւ մի շարք միջազգային կազմակերպութիւնների բարձրաստիճան ներկայացուցիչների կողմից յստակ ընդգծուել է Լեռնային Ղարաբաղի հակամարտութիւնը ԵԱՀԿ Մինսկի Խմբի ձեւաչափում բանակցութիւնների միջոցով կարգաւորելու անհրաժեշտութիւնը», - ասաց Միրզոյեանը:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1918 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 30 ՅՈՒՆԻՍ 2022 *ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀԿ.* عدد رقم ١٩١٨ الخميس ٣٠ يونيه ٢٠٢٢


## ՌՈՒՍԱՍՏԱՆ, ՈՒՔՐԱԻՆԱ, ՀԱՊԿ՝ ՊԱՏԿԵՐԻ ԵՒ ԻՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԻՋԵՒ. Ո՞ՒՐ ԿԸ ԳՏՆՈՒԻ ՀԱՅԱՍՏԱՆԸ

**Ռուսաստան՝ իբրեւ Արեւմուտքի հակապատկեր**

Ռուս-ուքրաինական պատերազմ է: Ուքրաինայի արեւելեան մասը՝ մեծապէս բնակեցուած ռուսերով, կամաց-կամաց կ՚անցնի Ռուսաստանի ձեռքը, չհաշուելով 2014-ին իրեն միացուցած Ղրիմը: Արեւմուտքը կը զինէ Ուքրաինային, յստակ չափանիշերով: Կը զինէ այնքան՝ որ երկարաձգէ պատերազմին տեւողութիւնը, բայց կը զինէ այնքան՝ որ Ռուսաստանը տակաւին մնայ շատ աւելի հզօր: Պատերազմի աւարտէն եւ արեւելեան Ուքրաինան Ռուսաստանին միանալէն ետք, վերջինս դուրս պիտի գայ աւելի հզօ՞ր թէ տկար:

Արդեօ՞ք Ռուսաստանի դէմ Արեւմուտքի պարտադրած դրամատիրական տնտեսութեան շրջանառութեան սահմանափակումներու լրատուական պոռթկումները կը ներկայացնեն իրականութիւնը: Չէ՞ որ դրամատիրական տնտեսութեան այսօրուայ կրողները պետութիւնները չեն, այլ անդրազգային ընկերութիւնները, որոնց համար գերշահոյթներէ հրաժարիլը ցնորական իրականութիւն մըն է եւ որոնք կը ճանչնան ո՛չ ազգ, ո՛չ պետութիւն, թէեւ միշտ կը խօսին հայրենասիրութեան անունով: Եթէ նոյնիսկ անոնք իյնան հանրային պատկերի պահպանութեան պարտադրանքին տակ, ասիկա չի կրնար երկար տեւել: Ուրեմն, այս ընկերութիւնները որքա՞ն կրնան դիմանալ առանց ռուսական փոխշահերու:

Բացի այդ, չէ՞ որ պատերազմի հետեւանքով շրջակայ երկիրները պիտի ձգտին աւաւել եւս սպառազինուիլ եւ յաւելեալ զէնք գնել նոյն ինքը Ռուսաստանէն, որ կրնայ զէնքի վաճառքի միջոցով կարճ ժամանակի մէջ դառնալ նոյնիսկ աւելի հզօր ու հարուստ: Ոչ ոք կրնայ գուշակել ապագան, բայց ասիկա պարզ օրինակ մըն է ցոյց տալու՝ որ Ռուսաստանը տկարացնելու արեւմտեան բարձրաձայնումները շատ հարցական կէտեր ունին:

Կայ ամենաէական կէտը: 20-րդ դարու Արեւմուտքը իր գոյատեւութեան համար միշտ պէտք ունեցած է սեփական հակապատկերին: Հակապատկեր՝ որ վերջապէս պիտի գործածուի գործնապաշտ նպատակներու համար: Խորհրդային Միութիւնը այդ հակապատկերի դիւրին, պարզ եւ ուղղակի միջոցն էր: Բարեպաշտ Արեւմուտք՝ ընդդէմ վտանգաւոր ու վայրագ Խորհրդային Միութեան: Քառուօյական մակարդակով հակադրութիւն, որ հրաշալիօրէն գործեց մինչեւ «վատ» կողմին փլուզումը 1991-ին:

Որմէ ետք Արեւմուտքը մակերես հանեց իր միւս հակապատկերը՝ իսլամիզմը եւ իսլամական ծայրայեղականութիւնը: 20-րդ դարու համար նորութիւն չէր ասիկա: Յիշենք թէ ինչպէս բրիտանացիները 1928-ին կազմեցին Իսլամ Եղբայրները, ապա 1980-ականներուն ամերիկացիները հնարեցին Ալ-Քաէտան: Բայց իսլամական ծայրայեղականութիւնը միջազգային բացարձակ պատումի նիւթ դարձաւ միայն Խորհրդային Միութեան փլուզումէն ետք, երբ Արեւմուտքը շուրջ 10 տարի նախապատրաստուեցաւ յառաջացնելու նոր հակապատկեր մը, որ կեանք առաւ 2001 Սեպտեմբեր 11-ի դէպքերէն սկսեալ: Իսլամական հակապատկերը հասաւ իր գագաթնակէտին, ահաբեկչական (հրահրուած) գործողութիւններ՝ Մատրիտ (2004), Փարիզ (2015), քիչ մըն ալ Գերմանիա, բայց նաեւ ահաբեկչական սպառնալիքներ գրեթէ ամէն տեղ աշխարհի մէջ:

Յետոյ յայտնի Տաէշը, որ կատարելապէս իր գործը կատարեց քայքայելու Սուրիան՝ Արեւմուտքի, Իսրայէլի, Թուրքիոյ օրհնութեամբ, խաղ մը՝ որուն յետոյ միացաւ Ռուսաստանը, երբ արդէն կար տէ ֆաքթօ քայքայուած Սուրիա մը, եւ կրցաւ ռազմական համաձայնեցուած գործողութիւններու միջոցով ստանալ իր պատառը:

Երբ «մեծ»-երը իրենց ձեռքը առին Սուրիան, այլեւս մոռցուեցաւ Տաէշը:

Տեսանք նաեւ, թէ այնքան ալ դժուար չէր միջազգային առումով վերացնել Իսլամ Եղբայրները: Երեւութապէս անոնց թիկունք կանգնած երկու պետութիւնները՝ Քաթար եւ Թուրքիա, ձեռք քաշեցին անոնցմէ, Էրտողան անոնց շնորհելով ընդամէնը հեռատեսիլի կայան մը, ուր կրնային իրենց ամբողջ մաղձը արտածորել: Քանի մը տարի առաջ Թուրքիան նոյնիսկ սահմանափակումներ դրաւ կայանէն արտասանուած խօսքին վրայ, յատկապէս Եգիպտոսի դէմ կեցուածքներուն նկատմամբ: Անկասկած, Եգիպտոսի արտաքին դիւանագիտութեան յաջողութիւններէն մէկը, բայց նաեւ միջազգային մտադրութիւնը՝ լռեցնելու իրենց ծնունդը հանդիսացող իսլամ ծայրայեղականութիւնը:

Արդէն քանի տարի է Արեւմուտքի հակապատկերը՝ իսլամիզմը, դադրած է գործօն ըլլալէ: Իսլամական հակապատկերի հետ, Արեւմուտքը պարբերաբար փորձեց հակապատկերներ ստեղծել Հիւսիսային Քորէայով՝ իբրեւ աշխարհին սպառնացող երկիր, Իրանով՝ դարձեալ յաճախ իսլամիզմը առաջ մղելով: Բայց իբրեւ հակապատկեր ասոնք կը մնային երկրորդային եւ առաջ կը մղուէին լոկ ժամանակ առ ժամանակ:

Այսօր, կը թուի թէ Արեւմուտքը իր յետագայ երկարատեւ հակապատկերը կը ստեղծէ Ռուսաստանի միջոցով, ուքրաինական պատերազմը ընդունելով իբրեւ գլխաւոր քայլ:

Արդ, վերջին հարցումը: Արեւմուտքը իրապէ՞ս կ՚ուզէ տկարացնել Ռուսաստանը: Տկար ու անձայն Ռուսաստան մը կրնա՞յ հակապատկեր ներկայանալ:

Կրնա՞յ ըլլալ Արեւմուտքի նպատակը ոչ թէ Ռուսաստանը տկարացնելն է, այլ Ուքրաինան: Ներկայիս, Արեւմուտքը Ուքրաինային զէնք կ՚ուղարկէ՝ Արեւմուտքի ուզած չափով ու ծաւալով: Ձրի՞ կ՚ուղարկէ: Անհաւանական է: Եթէ նոյնիսկ հիմա ձրի ուղարկէ, մօտակայ նպատակն է զայն փոխհատուցել ամենատարբեր միջոցներով: Գլխաւորապէս, Ուքրաինան յաւերժական պարտքի տակ դնելով Արեւմուտքին, հետեւաբար, քաղաքականապէս եւ տնտեսապէս ենթարկելով իրեն: Միաժամանակ, արեւմտեան շինարարական հսկայ ընկերութիւնները մտցնելով Ուքրաինայի քանդուած մասերը եւ կատարելով լայնածաւալ վերականգնողական աշխատանք, որուն գինը պիտի վճարէ Ուքրաինայի ժողովուրդը:

Այսպէս, Ուքրաինան վճարած կ՚ըլլայ երկու թանկարժէք գիներ: Արեւելեան կողմը տարածքային-սահմանային առումով կորսնցուցած կ՚ըլլայ Ռուսաստանին, իսկ արեւմտեան կողմը ենթարկած Արեւմուտքին եւ անոր անդրազգային ընկերութիւններուն անսահման շահամոլութեան, պատերազմի ահռելի զոհերը փոխարինելով նորակազմ աղքատներու եւ կարիքաւորներու նոյնքան ահռելի զոհերու բանակով:

↳ 3

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀԵՏԵՒԱՆՔՈՎ ՀԱՅԱՍՏԱՆ Է ՏԵՂԱՀԱՆՈՒԵԼ ԵՒ ԱՊԱՍՏԱՆ ՍՏԱՑԵԼ ՇՈՒՐՋ 91,000 ՄԱՐԴ, 88%-Ը՝ ԿԱՆԱՅՔ ԵՒ ԵՐԵԽԱՆԵՐ

Հայաստանի Ազգային Ժողովի Քաղաքացիական Պայմանագիր խմբակցութեան պատգամաւոր Սօնա Ղազարեանը Եւրոպայի Խորհրդի Խորհրդարանական Վեհաժողովի (ԵԽԽՎ) լիագումար նստաշրջանում յայտնել է, 2020-ին Ադրբէջանի սանձազերծած պատերազմի հետեւանքով Հայաստան է տեղահանուել եւ ապաստան ստացել աւելի քան 91,000 մարդ, որոնց 88 տոկոսը կանայք եւ երեխաներ են:

*Արմենպրէսի* հաղորդմամբ՝ Հայաստանի Ազգային Ժողովը հրապարակել է պատգամաւորի ելոյթի տեքստը:

«20-րդ դարի սկզբին կանանց ընտրելու իրաւունքի համար շարժումը տարածւում էր աշխարհով մէկ, եւ ես շատ հպարտ եմ, որ կարող եմ ասել՝ Հայաստանն արդէն յաջողութիւններ էր գրանցում: 1919 թ. առաջին խորհրդարանական ընտրութիւններն անցկացուեցին համընդհանուր ընտրական իրաւունքով. 20 տարեկանից բարձր իւրաքանչիւր անձ ունէր ընտրելու իրաւունք՝ անկախ սեռից, էթնիկ պատկանելութիւնից կամ կրօնական համոզմունքներից: Խորհրդարանում երեք կին պատգամաւոր էր՝ Կատարինէ Զալեան-Մանուկեանը, Պերճուհի Պարտիզպանեան-Բարսեղեանը, Վարվառա Սահակեանը, եւ, գուցէ, դուք ճանաչէք Պերճուհի Բարսեղեանի թոռնիկին՝ Ժաննա Բարսեղեանին, ով ներկայում Ստրասբուրգի քաղաքապետն է: Մէկ այլ հայ ուժեղ կին՝ Դիանա Աբգարը, հասարակական կեանքի այլ ճանապարհ է բռնել: 1920 թ. Յուլիսի 2-ին նշանակուել է Հայաստանի դեսպան Ճապոնիայում: Ծառայելով մինչեւ 1921 թ.՝ նա դասուեց որպէս աշխարհի առաջին կին դեսպաններից մէկը», - նշել է Ղազարեանը:

Նա ընդգծել է, որ ներկայիս խորհրդարանում կանանց ներկայացուցչութիւնն աւելի բարձր է, քան երբեւէ, բայց դեռեւս բաւարար չէ. 35 տոկոս է: Պատգամաւորը շեշտել է, որ բարձր գնահատելով քաղաքացիական հասարակութեան կանանց կազմակերպութիւնների դերը՝ ակտիւօրէն մասնակցում են նրանց հետ օրէնքների ընդունման գործընթացին, ինչը կը

↳ 3

## ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԻ ԱՌՑԱՆՑ ԱՍՈՒԼԻՍԸ

Յունիս 27-ին, Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեան տուաւ ասուլիս առցանց ձեւաչափով, ուր պատասխանեց լրատուամիջոցներու եւ հասարակական կազմակերպութիւններու նախօրօք ղրկած պատասխաններուն:

Երեք ու կէս ժամ տեւած ասուլիսին, վարչապետը անդրադարձաւ գրեթէ բոլոր հրատապ հարցերուն, կատարեց կարեւոր, երբեմն ցնցող բացայայտումներ, եւ փորձեց բացատրել կացութիւնը իր ընդհանրութեան մէջ, ներկայացնելով իր եւ կառավարութեան տեսակէտները:

Խօսեցաւ Լաչին-Բերձորի միջանցքի, Սիւնիքի միջանցքի, Մինսքի Խումբի, պատերազմի հնարաւորութեան, եւ այլ նիւթերու մասին:

Ցուցադրեց լաւն ու վատը, կարելին ու անկարելին, տրամաբանականն ու անտրամաբանականը, դիւանագիտութեան կարելիութիւններն ու սահմանները:

Խօսքը հասցէագրուած էր ներքին (հայկական) եւ արտաքին լսարաններուն:

# ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ
## (Մահուան 50-ամեակին առիթով)

Հ. ԱՒԱԳԵԱՆ

159. Բ. Թաշեան, «Գրական քննադատութիւնը. իր դերը եւ արժէքը. I», *Յուսաբեր*, 21 Դեկտեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 224, էջ 1:

160. Վէմունի, «Անդաստան. գրականութիւնը ինչպէս որ է», *Յուսաբեր*, 21 Դեկտեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 224, էջ 2:

161. Բ. Թաշեան, «Գրական քննադատութիւնը. իր դերը եւ արժէքը. II», *Յուսաբեր*, 26 Դեկտեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 228, էջ 1:

162. Բ. Թաշեան, «Գրական քննադատութիւնը. իր դերը եւ արժէքը. III», *Յուսաբեր*, 27 Դեկտեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 229, էջ 1-2:

163. Բ. Թաշեան, «Գրական քննադատութիւնը. իր դերը եւ արժէքը. IV», *Յուսաբեր*, 28 Դեկտեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 230, էջ 1:

164. Վէմունի, «Անդաստան. գրականութիւնը ինչպէս որ է», *Յուսաբեր*, 28 Դեկտեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 230, էջ 2:

165. Բ. Թաշեան, «Գրական քննադատութիւնը. իր դերը եւ արժէքը. V», *Յուսաբեր*, 30 Դեկտեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 231, էջ 2:

166. Վէմունի, «Անդաստան. գրականութիւնը ինչպէս որ է», *Յուսաբեր*, 31 Դեկտեմբեր 1929, ԺԵ. տարի, թիւ 232, էջ 2:

167. Բ. Թաշեան, «Գրական քննադատութիւնը. իր դերը եւ արժէքը. VI», *Յուսաբեր*, 3 Յունուար 1930, ԺԵ. տարի, թիւ 234, էջ 2:

168. Բ. Թաշեան, «Զգտումը գրականութեան մէջ. I», *Յուսաբեր*, 4 Յունուար 1930, ԺԵ. տարի, թիւ 235, էջ 1-2:

169. Վէմունի, «Անդաստան. գրականութիւնը ինչպէս որ է», *Յուսաբեր*, 4 Յունուար 1930, ԺԵ. տարի, թիւ 235, էջ 2:

170. Բ. Թաշեան, «Գրական քննադատութիւնը. իր դերը եւ արժէքը. VII», *Յուսաբեր*, 8 Յունուար 1930, ԺԵ. տարի, թիւ 236, էջ 2:

171. Բ. Թաշեան, «Զգտումը գրականութեան մէջ. II», *Յուսաբեր*, 11 Յունուար 1930, ԺԵ. տարի, թիւ 239, էջ 1-2:

172. Վէմունի, «Անդաստան. գրականութիւնը ինչպէս որ է», *Յուսաբեր*, 11 Յունուար 1930, ԺԵ. տարի, թիւ 239, էջ 2:

173. Վէմունի, «Անդաստան. գրականութիւնը ինչպէս որ է», *Յուսաբեր*, 18 Յունուար 1930, ԺԵ. տարի, թիւ 245, էջ 2:

174. Վէմունի, «Անդաստան. գրականութիւնը ինչպէս որ է», *Յուսաբեր*, 20 Յունուար 1930, ԺԵ. տարի, թիւ 246, էջ 2:

175. Վէմունի (թարգմ.), «Հայնրիխ Հայնէէն. *Միջնախաղ* (Internezzo)», *Յուսաբեր*, 25 Յունուար 1930, ԺԵ. տարի, թիւ 251, էջ 1-2:

176. Վէմունի, «Անդաստան. միջազգային դէմքեր. 1. Հայնրիխ Հայնէ», *Յուսաբեր*, 25 Յունուար 1930, ԺԵ. տարի, թիւ 251, էջ 2:

177. Վէմունի, «Անդաստան. միջազգային դէմքեր. 1. Հայնրիխ Հայնէ», *Յուսաբեր*, 27 Յունուար 1930, ԺԵ. տարի, թիւ 252, էջ 2:

178. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 1 Փետրուար 1930, ԺԵ. տարի, թիւ 257, էջ 2:

179. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 3 Փետրուար 1930, ԺԵ. տարի, թիւ 258, էջ 2:

180. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 8 Փետրուար 1930, ԺԵ. տարի, թիւ 263, էջ 2:

181. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 10 Փետրուար 1930, ԺԵ. տարի, թիւ 264, էջ 2:

182. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 11 Փետրուար 1930, ԺԵ. տարի, թիւ 265, էջ 2:

183. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 15 Փետրուար 1930, ԺԵ. տարի, թիւ 269, էջ 2:

184. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 17 Փետրուար 1930, ԺԵ. տարի, թիւ 270, էջ 2:

185. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 22 Փետրուար 1930, ԺԵ. տարի, թիւ 275, էջ 2:

186. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 25 Փետրուար 1930, ԺԵ. տարի, թիւ 277, էջ 2:

187. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 26 Փետրուար 1930, ԺԵ. տարի, թիւ 278, էջ 2:

188. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 8 Մարտ 1930, ԺԵ. տարի, թիւ 286, էջ 2:

189. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 15 Մարտ 1930, ԺԵ. տարի, թիւ 292, էջ 2:

190. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 22 Մարտ 1930, ԺԵ. տարի, թիւ 298, էջ 2:

191. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 29 Մարտ 1930, ԺԵ. տարի, թիւ 304, էջ 2:

192. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 5 Ապրիլ 1930, ԺԶ. տարի, թիւ 5, էջ 2:

193. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 12 Ապրիլ 1930, ԺԶ. տարի, թիւ 11, էջ 2:

194. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 14 Ապրիլ 1930, ԺԶ. տարի, թիւ 12, էջ 1:

195. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 16 Ապրիլ 1930, ԺԶ. տարի, թիւ 14, էջ 1-2:

196. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 19 Ապրիլ 1930, ԺԶ. տարի, թիւ 17, էջ 2:

197. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 25 Ապրիլ 1930, ԺԶ. տարի, թիւ 20, էջ 2:

198. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 26 Ապրիլ 1930, ԺԶ. տարի, թիւ 21, էջ 1:

199. Անտէրսէն, «Թերթօն. Մօր մը պատմութիւնը», թարգմ.՝ Վէմունի, *Յուսաբեր*, 26 Ապրիլ 1930, ԺԶ. տարի, թիւ 21, էջ 2. 28 Ապրիլ 1930, ԺԶ. տարի, թիւ 22, էջ 2:

200. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 3 Մայիս 1930, ԺԶ. տարի, թիւ 27, էջ 2:

201. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 12 Մայիս 1930, ԺԶ. տարի, թիւ 33, էջ 1-2:

202. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 13 Մայիս 1930, ԺԶ. տարի, թիւ 34, էջ 1-2:

203. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 17 Մայիս 1930, ԺԶ. տարի, թիւ 38, էջ 2:

204. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 21 Մայիս 1930, ԺԶ. տարի, թիւ 41, էջ 2:

205. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 22 Մայիս 1930, ԺԶ. տարի, թիւ 42, էջ 2:

206. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 23 Մայիս 1930, ԺԶ. տարի, թիւ 43, էջ 1-2:

207. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 24 Մայիս 1930, ԺԶ. տարի, թիւ 44, էջ 2:

208. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 31 Մայիս 1930, ԺԶ. տարի, թիւ 50, էջ 2:

209. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 3 Յունիս 1930, ԺԶ. տարի, թիւ 52, էջ 1:

210. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 9 Յունիս 1930, ԺԶ. տարի, թիւ 57, էջ 1-2:

211. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 14 Յունիս 1930, ԺԶ. տարի, թիւ 62, էջ 2:

212. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 17 Յունիս 1930, ԺԶ. տարի, թիւ 64, էջ 2:

213. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 21 Յունիս 1930, ԺԶ. տարի, թիւ 68, էջ 2:

214. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 28 Յունիս 1930, ԺԶ. տարի, թիւ 74, էջ 2:

215. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 5 Յուլիս 1930, ԺԶ. տարի, թիւ 80, էջ 2:

216. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 15 Յուլիս 1930, ԺԶ. տարի, թիւ 88, էջ 2:

217. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 18 Յուլիս 1930, ԺԶ. տարի, թիւ 91, էջ 1:

218. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 19 Յուլիս 1930, ԺԶ. տարի, թիւ 92, էջ 1-2:

219. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 26 Յուլիս 1930, ԺԶ. տարի, թիւ 98, էջ 2:

220. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 2 Օգոստոս 1930, ԺԶ. տարի, թիւ 104, էջ 2:

221. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 9 Օգոստոս 1930, ԺԶ. տարի, թիւ 110, էջ 2:

222. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 16 Օգոստոս 1930, ԺԶ. տարի, թիւ 116, էջ 2:

223. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 23 Օգոստոս 1930, ԺԶ. տարի, թիւ 121, էջ 2:

224. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 30

↳ 4

ԳԱՀԻՐԷ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ ՋԱՀԱԿԻՐԻ 49-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ԹԱՏԵՐԱԿԱՆ ԳՈՐԾԻՉ ԷՏՈՒԻՆ ՀԱՄԱՄՃԵԱՆԻ ՄԱՍԻՆ

Լոյս տեսաւ *Ջահակիրի* խթ. (49) յաւելուածը՝ *Էտուին Ժերար Համամճեան. գաղափարապէս համակուած արուեստագէտը* (179 էջ):

Ներկայացուած է բազմաբեղուն ամերիկահայ-ֆրանսահայ դերասան, բեմադրիչ, թատերագիր եւ մանկավարժ Էտուին Ժերար Համամճեանի (ծն. 1948, Լոս Անճելըս) կենսագրութիւնը:

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ
ԷՏՈՒԻՆ ԺԵՐԱՐ ՀԱՄԱՄՃԵԱՆ
ԳԱՂԱՓԱՐԱՊԷՍ ՀԱՄԱԿՈՒԱԾ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏԸ
ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԽԹ. (49)
ԳԱՀԻՐԷ
2022

Թոռն է 1920-ականներու եգիպտահայ հռչակաւոր երգչուհի-դերասանուհի Վալանթին Ամիրայեանի (տես՝ *Ջահակիր*, Յաւելուած Խ.): Էտուին կեանքի ներկայ փուլին համար բնակութեան վայր ընտրած է Գահիրէն, ուր կը գտնէ իր հոգեկան անդորրութիւնը: Գիրքը գրուած է Էտուինի հետ սերտ համագործակցութեամբ, որ ունի անսպառ պատմելիք իր կեանքին եւ փորձառութիւններուն մասին: Կը պատմէ իր յարաբերութիւնները զանազան ծանօթ դերասաններու եւ բեմադրիչներու հետ՝ Ռեզա Ապտօ, Աննի Քորտի, Ֆիլիփ Օնօրէ, Ալեհանտրօ Խոտորովսքի, Ժաք Շարոն, Ժան Եան, պարուհի Մայա Փլիսեցքայա, կը ներկայացնէ իր սեփական գաղափարներուն կազմաւորումը եւ զարգացումը, ինչպէս նաեւ որդեգրած ու բեմադրութիւններուն մէջ կիրարկած փիլիսոփայական այլազան համոզումները:



## ՌՈՒՍԱՍՏԱՆ, ՈՒՔՐԱԻՆԱ, ՀԱՊԿ՝ ՊԱՏԿԵՐԻ ԵՒ ԻՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԻՋԵՒ. Ո՞ՒՐ ԿԸ ԳՏՆՈՒԻ ՀԱՅԱՍՏԱՆԸ

Հակապատկերի երեւոյթը վտանգաւոր է հակապատկերուող կողմի համար: Հակապատկեր կը նշանակէ՝ որ վերահսկողութեան տակ է հակապատկերուողը: Հակապատկեր ներկայացնող Խորհրդային Միութիւնը փլուզուեցաւ՝ երբ Արեւմուտքի ստեղծած նէօլիպերալիզմը խուժեց անոր սահմաններէն ներս: Նէօլիպերալիզմն էր Խորհրդային Միութիւնը քանդողը: (Փոխադարձաբար, Խորհրդային Միութեան ներսը ստեղծուած Արեւմտեան-դրամատիրական հակապատկերը անյաջող էր, որուն հասարակութիւնը չէր հաւատար Միութենէն ներս): Նոյնպէս, իսլամական հակապատկերի վերացումով, վերացան աշխարհի մէջ գործունեայ իսլամական ծայրայեղականներու բացայայտ գործողութիւնները: Հիմա՝ հակապատկեր Ռուսաստանով: Ռուսաստան պիտի յաջողի՞ արդեօք հակապատկերը փոխարինել ինքուրոյն կեցուածքով, այնքան ինքնուրոյն՝ որ չազդուի հակապատկեր ըլլալէ…:

Առ այժմ, Ռուսաստան կը փորձէ ստեղծել ինքնապատկերներ բայց ոչ հակապատկերներ: Ուքրաինական պատերազմի ժամանակ, երբ Ռուսաստան սկսաւ իր թուղթերը կարգի բերել, աչքի զարկին երկու ձեռնարկներ: Մէկը ՀԱՊԿ-ի շուրջ խմբաւորումի ներքին փորձերն էին, միւսը՝ Սենթ-Փեթերսպուրկի միջազգային տնտեսական համաժողովը:

**ՀԱՊԿ՝ իբրեւ Ռուսաստանի ներքին ինքնապատկեր**

Այս տարի Հաւաքական Անվտանգութեան Պայմանագրի Կազմակերպութեան (ՀԱՊԿ) 30-ամեակն է: ՀԱՊԿ երկիրներն են՝ Ռուսաստան, Պելառուս, Հայաստան, Ղազախստան, Տաճիկըստան եւ Ղրղըզստան: Հայաստանը ներկայ շրջանի նախագահող երկիրն է:

Մայիս 16, Մոսկուա, ՀԱՊԿ գագաթնաժողով: Նիկոլ Փաշինեան կը քննադատէ ՀԱՊԿ-ը Հայաստանին թիկունք կանգնած չըլլալու համար, մինչդեռ ենթադրուած է կազմակերպութիւնը սերտ համագործակցութիւն ցուցաբերէ անդամ որեւէ երկիրի ճգնաժամի պարագային (մանրամասն՝ *Ջահակիր*, թիւ 1916):

Յունիս 6, Երեւանի Կարէն Դեմիրճեան մարզահամերգային սրահ, ՀԱՊԿ խորհրդարանական վեհաժողովի խորհուրդի նիստ, 128 պատուիրակներու մասնակցութեամբ: Համավարակէն ի վեր կենդանի ձեւաչափով առաջին հանդիպումը:

Ազգային Ժողովի նախագահ Ալէն Սիմոնեան իր պաշտօնական խօսքին մէջ չի մոռնար յիշեցնել՝ որ թէեւ մենք ընդունեցինք ՀԱՊԿ խաղաղապահ զօրակազմ ուղարկել Ղազախստան, սակայն մինչ այդ ՀԱՊԿ-ը օգնութիւն չէր ցուցաբերած Հայաստանին՝ երբ վերջինս գտնուած էր ճգնաժամային իրավիճակի մէջ: ՀԱՊԿ-ի մեքանիզմները չէին գործած Հայաստանի պարագային:

Նոյն օրը, Նիկոլ Փաշինեան կը հիւրընկալէ նիստի մասնակիցներուն:

Յունիս 9-10, Երեւան, ՀԱՊԿ Արտաքին Գործոց նախարարներու նիստ:

Այս ծիրին մէջ, Յունիս 9-ին Փաշինեան կ՚ընդունի Ռուսաստանի Արտաքին Գործոց նախարար Սերկէյ Լաւրովը եւ իր պատուիրակութիւնը: Լաւրով Հայաստան կու գար Թուրքիա կատարած պաշտօնական այցելութենէն ետք: Պատահական չէ որ Լաւրով, ի միջի այլոց, այս հանդիպումին կը յիշեցնէ. «Մեր առաջնահերթութիւնն է 2020 Նոյեմբերի, 2021 Յունուարի եւ Նոյեմբերի եռակողմ յայտարարութիւններուն իրականացումը: Մենք նպատակադրուած ենք, որ այնտեղ ամրագրուած բոլոր ուղղութիւններն ու գործողութիւնները՝ միտուած տարածաշրջանին մէջ իրավիճակի ամբողջական բնականոնացումին, բոլոր խնդիրներու, ներառեալ մարդասիրական հարցերու կարգաւորումին, լուծուին ամենասեղմ ժամկէտներու մէջ»:

Լաւրով անուղղակիօրէն ըսել կ՚ուզէ, որ ռուսական կողմի միջնորդութեամբ (եռակողմ հանդիպումներ) արդէն թուղթի վրայ կայ համակողմանի համաձայնութիւն՝ յետագայ գործողութեան համար: Լուծումը մեր (ռուսական) կողմը կը գտնուի:

Իսկ ո՞ւր մնաց Մինսքի Խումբը:

Փակագիծ մը: Այս տարուայ Յունիս 20-ին, ԱՄՆ պետքարտուղարի եւրոպական եւ եւրասիական հարցերով տեղակալ Քերըն Տոնֆրիտ, *Ազատութիւն ռադիոկայանի* հարցազրոյցին յայտարարած էր՝ որ ԱՄՆ հաւատարիմ է Մինսքի Խումբի համանախագահութեան ձեւաչափին եւ այստեղ պատրաստ է համագործակցիլ Ռուսաստանի հետ՝ իբրեւ Խումբի համանախագահ: Ռուսաստան անմիջապէս արձագանգած էր այս յայտարարութեան Արտաքին Գործոց նախարարութեան խօսնակ Մարիա Զախարովայի միջոցով. «Եթէ Ուաշինկթոնը եւ Փարիզը իսկապէս կարեւորէին ԵԱՀԿ Մինսքի Խումբի համանախագահութեան իւրայատուկ միջնորդական ձեւաչափը, չէին անտեսեր բոլոր անդամ երկիրներու հաւանութեան արժանացած մանտաթը: Անոնք ցուցադրաբար, առանց որեւէ խորհըրդակցութեան, Փետրուար 24-էն [ռուս-ուքրաինական պատերազմի սկիզբը, Ա.] սկսեալ դադրեցուցին շփումները Մինսքի Խումբի ռուս համանախագահին հետ»: Վերջ փակագիծի:

Յունիս 9, Հայաստանի եւ Ռուսաստանի Արտաքին Գործոց նախարարներ Արարատ Միրզոյեանի եւ Սերկէյ Լաւրովի առանձին հանդիպում, որմէ ետք՝ համատեղ մամուլի ասուլիս:

Ասուլիսին, Միրզոյեան կ՚ակնարկէ Մինսքի Խումբի վերադարձի կարեւորութիւնը, հաւանաբար ուզելով ամբողջացնել Զախարովային, թերեւս նաեւ այնքան ալ լաւ չհասկնալով եռակողմերու լաւրովեան ամենավերջին յայտարարութիւնը: Միրզոյեան կ՚ըսէ. «Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան կարգաւորման սկզբունքները մշակուել են ԵԱՀԿ Մինսկի Խմբի համանախագահութեան կողմից, եւ մենք շահագրգռուած ենք ակտիւացնելու միջազգային հանրութեան կողմից միջնորդական մանդատով օժտուած այս ձեւաչափի գործունէութիւնը: Յիշեցնեմ, որ մեր երկրների ղեկավարները իրենց վերջին համատեղ յայտարարութեամբ հաստատել են ԵԱՀԿ Մինսկի Խմբի համանախագահութեան ինստիտուտի ներուժի եւ փորձի օգտագործման կարեւորութիւնը՝ նրա միջազգային մանդատին համապատասխան»:

Ասուլիսի ընթացքին Լաւրով կանգ չ՚առներ այս հարցին վրայ: Բայց երկու շաբաթ ետք ան գացած է Պաքու, ուրկէ Յունիս 24-ին կ՚ընէ իր վճռական յայտարարութիւններէն մէկը, կարծէք պատասխանելով Միրզոյեանին. «[Ազըրպէյճանի Արտաքին Գործոց նախարարի հետ] չենք քննարկած Մինսքի Խումբի հարցը, որովհետեւ ան դադրած է գործելէ՝ ԱՄՆ-ի եւ Ֆրանսայի նախաձեռնութեամբ: Յետպատերազմի շրջանի կարգաւորումի գործընթացքը, անշուշտ, քննարկեցինք: Եւ այս նոր գործընթացքին հիմքն է Ռուսաստանի, Հայաստանի եւ Ազըրպէյճանի եռակողմ յայտարարութիւնները»: Վերջապէս, «2020 Սեպտեմբեր-Հոկտեմբերին, գետինի վրայ իրադարձութիւնները իրենց ետեւը թողուցին բոլոր այն փաստաթուղթերը՝ որոնք երկար տարիներ կը քննարկըուէին [Մինսքի Խումբի կողմէ, Ա.] առանց շօշափելի արդիւնքներ արձանագրելու: Ասիկա ուղղակի առարկայական իրականութիւնն է»:

ԱՄՆ-ն ու Ֆրանսան խոչընդոտեցին Մինսքի շարունակութիւնը, իսկ մինչ այդ Մինսքը տարիներ շարունակ գործած էր առանց արդիւնքի: Հիմա կարեւոր չէ այս երկուքին կապը գտնել: Լաւրովէն արդէն վարժուեցանք լսել անկապ խօսքեր: Բայց յստակ է, որ Ռուսաստան կառչած կը մնայ իր մասնակցութեամբ կայացած եռակողմ բանակցութիւններուն: Գոնէ առ այժմ:

Վերադարձ Յունիս 9-ի Լաւրով-Միրզոյեան ասուլիսին, ուր Միրզոյեան կ՚ուզէ շեշտել հայ-ռուսական յարաբերութիւններուն խորութիւնը. «Ինչպէս գիտէք, Ապրիլ ամսին տեղի ունեցաւ Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի պաշտօնական այցը Ռուսաստան: Երկու երկրների ղեկավարների համատեղ յայտարարութիւնը կարեւոր ուղենիշներ է սահմանել՝ ուղղուած մեր յարաբերութիւնների յետագայ զարգացմանը: Օրեր առաջ պաշտօնական այցով Հայաստանում էր Ռուսաստանի Պետդումայի նախագահ եւ իմ լաւ բարեկամ Վեաչեսլաւ Վոլոդինը: Բացի այդ, Ապրիլին ինքս աշխատանքային այցով գտնւում էի Մոսկուայում: Նոյն ամսուայ վերջին Հայաստանում տեղի ունեցաւ Հայ-ռուսական Միջխորհրդարանական յանձնաժողովի 34-րդ նիստը»:

Հայաստան կարեւոր կը համարէ պարբերաբար նման բարեկամական յիշեցումներ կատարել:

Յունիս 9, հանդիպում Հայաստանի նախագահ Վահագն Խաչատուրեանի եւ Սերկէյ Լաւրովի միջեւ:

Յունիս 10, Փաշինեանի հանդիպումը ՀԱՊԿ երկիրներու Արտաքին Գործոց նախարարներու հետ:

ՀԱՊԿ Արտաքին Գործոց նախարարներու պաշտօնական նիստին, այս անգամ Արարատ Միրզոյեանն է որ կը յիշեցնէ Հայաստանի նկատմամբ ՀԱՊԿ-ի չկատարած պարտականութիւնները՝ երբ Ազըրպէյճան կը ներխուժէր Հայաստանի ինքնիշխան տարածք: Հակառակ ասոր, կ՚աւելցնէ, այս տարուայ Յունուարին ՀԱՊԿ-ը անմիջապէս արձագանգեց Ղազախստանի իրադարձութիւններուն եւ Հայաստան բերաւ իր մասնակցութիւնը:

Յուլիս 10, վերջ ՀԱՊԿ խորհրդարանական վեհաժողովի խորհուրդի նիստին:

Յուլիս 17, Երեւան, ՀԱՊԿ Անվտանգութեան Խորհուրդի քարտուղարներուն հերթական նիստը՝ նեղ կազմով եւ լիագումար ձեւաչափով:

Փաշինեան կ՚ընդունի մասնակիցները եւ արդէն քանիերորդ անգամ ըլլալով կը յիշեցնէ ՀԱՊԿ-ի չկատարած պարտականութիւնները:

Նախ կ՚ըսէ. «2010 թուականի Դեկտեմբերի 10-ին ՀԱՊԿ Հաւաքական Անվտանգութեան Խորհրդի որոշմամբ ընդունուել է դրոյթ՝ ճգնաժամային իրավիճակներին ՀԱՊԿ-ի արձագանքելու կարգի վերաբերեալ, եւ ես կարծում եմ, որ այս փաստաթուղթը բաւական հասկանալիօրէն ձեւակերպում է այն մեխանիզմները, որոնք գոյութիւն ունեն մեր կազմակեր- 4



## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀԵՏԵՒԱՆՔՈՎ ՀԱՅԱՍՏԱՆ Է ՏԵՂԱՀԱՆՈՒԵԼ ԵՒ ԱՊԱՍՏԱՆ ՍՏԱՑԵԼ ՇՈՒՐՋ...

յանգեցնի կանանց աւելի մեծ ներգրաւուածութեանն օրէնսդիր մարմիններում:

«Քանի որ խաղաղութիւնն իշխող կուսակցութեան գլխաւոր օրակարգերից մէկն է, ես կարող եմ վստահեցնել, որ կին պատգամաւորները նոյնպէս մասնակցում են որոշումների կայացման գործընթացներին», - նշել է նա:

Պատգամաւորը յայտնել է, որ Հայաստանի Հանրապետութիւնը մշակել է նաեւ ՄԱԿ-ի Անվտանգութեան Խորհրդի 1325 բանաձեւի կատարման երկրորդ ազգային գործողութիւնների ծրագիրը՝ վերահաստատելով իր պատրաստակամութիւնը շարունակելու իր աշխատանքը կանանց, խաղաղութեան եւ անվտանգութեան հարցերում:

Ծրագիրն անդրադառնում է 2020 թ. աշնանն Արցախի դէմ Ադրբէջանի սանձազերծած ագրեսիւ պատերազմի հետեւանքով Լեռնային Ղարաբաղից տեղահանուած կանանց խնդիրներին եւ մարտահրաւէրներին: Ագրեսիւ պատերազմի հետեւանքով Հայաստան է տեղահանուել եւ ապաստան ստացել աւելի քան 91,000 մարդ, որոնց 88 տոկոսը կանայք եւ երեխաներ են:

«Պատերազմը սկսուել է COVID-19 համաճարակի ժամանակ՝ այդպիսով բարդացնելով կանանց եւ աղջիկների արդէն իսկ ծանր իրավիճակը: Այսպիսով, ծրագիրը ներկայացնում է ճգնաժամի մէջ գտնուող կանանց եւ աղջիկների խնդիրները՝ անդրադառնալով նրանց անվտանգութեան բաղադրիչին: Ծրագիրն անդրադառնում է բռնի տեղահանուած կանանց խնդիրներին, սահմանային նոր իրավիճակի հետեւանքով առաջացած անվտանգութեան մարտահրաւէրներին ու դրանց ազդեցութեանը կանանց եւ աղջիկների վրայ: Վերջապէս, ես պէտք է անկեղծ լինեմ եւ ասեմ, որ իսկապէս զարմացած եմ լսել, թէ ինչպէս ԵԽԽՎ-ում մեր կին գործընկերները եւ հարեւան երկրներում բարձրաստիճան այլ կին պաշտօնեաներ կարող են խօսել պատերազմի եւ բռնութեան օգտին՝ գտնելով արդարացումներ», - եզրափակել է Ղազարեանը:




## 2 ԲԵՆԻԱՄԻՆ ԹԱՇԵԱՆԻ ԳՐԱԿԱՆ...

Օգոստոս 1930, ԺԶ. տարի, թիւ 127, էջ 2:

225. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 6 Սեպտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 133, էջ 2:

226. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 11 Սեպտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 137, էջ 1:

227. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 13 Սեպտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 139, էջ 2:

228. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 20 Սեպտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 145, էջ 2:

229. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 24 Սեպտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 148, էջ 1-2:

230. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 27 Սեպտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 151, էջ 2:

231. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 4 Հոկտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 157, էջ 2:

232. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 8 Հոկտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 160, էջ 1-2:

233. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 11 Հոկտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 163, էջ 2:

234. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 15 Հոկտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 166, էջ 1:

235. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 16 Հոկտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 167, էջ 1-2:

236. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 18 Հոկտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 169, էջ 2:

237. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 25 Հոկտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 175, էջ 2:

238. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 1 Նոյեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 181, էջ 2:

239. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 8 Նոյեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 187, էջ 2:

240. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 18 Նոյեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 195, էջ 2:

241. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 22 Նոյեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 199, էջ 2:

242. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 24 Նոյեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 200, էջ 2:

243. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 29 Նոյեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 205, էջ 2:

244. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 6 Դեկտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 211, էջ 2:

245. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 13 Դեկտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 217, էջ 2:

246. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 18 Դեկտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 221, էջ 2:

247. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 20 Դեկտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 223, էջ 2-3:

248. Վէմունի, «Անդաստան. գրականութիւն եւ արուեստ», *Յուսաբեր*, 27 Դեկտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 229, էջ 2:

(Վերջ 14)

## 3 ՌՈՒՍԱՍՏԱՆ, ՈՒԿՐԱԻՆԱ, ՀԱՊԿ՝ ՊԱՏԿԵՐԻ ԵՒ ԻՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԻՋԵՒ. Ո՞ՒՐ ԿԸ ԳՏՆՈՒԻ ՀԱՅԱՍՏԱՆԸ

պութիւնում»: Անուղղակիօրէն ըսել կ՚ուզէ, որ այդ մեքանիզմները չեն գործեր այսօր:

Կ՚ըսէ նաեւ. «Ցանկանում եմ նաեւ ուշադրութիւն հրաւիրել, որ այս փաստաթղթի երկրորդ գլխում կայ «Մոնիթորինգ» կոչուող գլուխ, եւ ՀԱՊԿ քարտուղարութիւնը մշտական հիմունքով իրականացնում է կազմակերպութեան պատասխանատուութեան գօտում իրավիճակի եւ դրա զարգացման միտումների վերաբերեալ տեղեկատուութեան հաւաքում եւ վերլուծութիւն՝ ճգնաժամային իրավիճակների նախադրեալները վերհանելու նպատակով», որմէ ետք կ՚անդրադառնայ անցեալ տարուայ Մայիս 12-ի դէպքերուն՝ երբ Ազրպէյճան ներխուժեց Հայաստանի տարածք:

Արդ, պաշտօնական առումով, հայկական գիծը կը հետապնդէ երկու իրերակայ գիծեր.

ա. ՀԱՊԿ իր պարտականութիւնները չի կատարեր Հայաստանի նկատմամբ, իսկ Հայաստանի ցանկութիւնն է տեսնել ՀԱՊԿ-ի վերակենդանութիւնը:

բ. Հայաստանի եւ Ռուսաստանի յարաբերութիւնները կը գտնուին կատարեալ փոխհասկացողութեան մակարդակի վրայ եւ Մինսքի Խումբի նկատմամբ ամէն բան կրնանք ընել՝ յարմարուելու ռուսական անկայուն կեցուածքին:

Այս բոլորէն ետք կու գայ գլխաւոր հարցումը. իրապէս գոյութիւն ունի՞ ՀԱՊԿ-ը:

ՀԱՊԿ-ի վերոյիշեալ հանդիպումները կայացան բարձր ծանուցողական աղմուկով անդամ երկիրներուն մէջ: Պատկերի ստեղծումը շատ կարեւոր էր Ռուսաստանի համար, որուն մէջ Հայաստան փորձեց առաջ մղել իր կեցուածքները՝ պատկերային թէ իրական: Բայց խնդիրը արդեօք վերջացա՞ւ այստեղ: Չէ՞ որ ինքնապատկերի միջոցով Ռուսաստանի իրական ցանկութիւնն է վերականգնել ՀԱՊԿ-ը իր վերադասութեան տակ, իր ազդեցութիւնը անոր վրայ դարձնել իրական ու գործադրելի:

Ըստ քաղաքական վերլուծաբան Յակոբ Բադալեանի Յունիս 10-ի յօդուածին, ՀԱՊԿ այլեւս անկարող է գործել իր հին մեթոտներով, քանի որ այսօր տեղի կ՚ունենան աշխարհաքաղաքական նոր բաժանումներ, յատկապէս ուքրաինական պատերազմի միջոցով կազմուելիք նոր տարածքային վերիշխանութիւնները. «ՀԱՊԿ գոյութիւն չունի իր աշխարհաքաղաքական այն տրամաբանութեամբ եւ «տեսքով», որով ստեղծուել է երեք տասնամեակ առաջ եւ գոյութիւն ունեցել անցնող երկու տասնամեակում: Այդ ՀԱՊԿ-ն այլեւս անկենսունակ, ժամանակավրէպ, անհեռանկար է, ի զօրու չէ լուծել այն մասշտաբի խնդիրներ, որոնք կանգնած են այսօր Ռուսաստանի առաջ: Բանն այն է, որ ուկրաինական պատերազմում քանդուող հին՝ եւ ձեւաւորուող նոր աշխարհակարգի հանգամանքը ըստ էութեան հրապարակ է բերել անվտանգային բլոկների նոր օրակարգեր եւ ՀԱՊԿ-ը այդ իմաստով ոչ միայն բացառութիւն չէ, այլ գործնականում դառնում է առաջնահերթութիւն ռուսական խաղում: Դա արտայայտուեց ՀԱՊԿ վերջին վեհաժողովում՝ Ապրիլի վերջին Մոսկուայում, որտեղ Ռուսաստանի նախագահ Պուտինը յայտարարեց ԱՊՀ-ն ՀԱՊԿ դիտորդի կարգավիճակով օժտելու անհրաժեշտութեան մասին, փաստօրէն աննախադէպ բարձր մակարդակով օրակարգ բերելով մի հարց, որը մինչ այդ դիտարկուել է առաւելագոյնը փորձագիտական դաշտում» (https://www.1in.am/3124930.html):

Կրնա՞յ ըլլալ Հայաստանի յամառ ու հետեւողական յիշեցումները ՀԱՊԿ-ի պարտականութիւններու թերացումներուն, Փութինի կողմէ թելադրուած ըլլային՝ շարժելու ՀԱՊԿ-ի անդամ երկիրները եւ զանոնք մղելու իրական գործողութեան...:

Խառնարան մը, պիտի ըսէի:

**Սենթ-Փեթերսպուրկ՝ իբրեւ Ռուսաստանի արտաքին ինքնապատկեր**

Սենթ-Փեթերսպուրկի Միջազգային Տնտեսական Համաժողովը Արեւմուտքի մէջ յաճախ կը ներկայացուի իբրեւ Տաւոսի ռուսական տարբերակը: Ուրեմն, Տաւոսի պատկերային վերարտադրութիւնը Այլի տարածութեան վրայ: Վերարտադրութիւն՝ հետեւաբար բնօրինակի աղօտ կրկնօրինակում, բայց ոչ ինքնարտադրութիւն: Այս առումով, Տաւոսը երբեք չի ներկայացուիր իբրեւ Սենթ-Փեթերսպուրկի Համաժողովի Արեւմտեան տարբերակը:

Տաւոսն ու Սենթ-Փեթերսպուրկը կը ծառայեն ստեղծելու ինքնապատկերներ, քանզի դրամատիրական բուն տնտեսութիւնը կը գտնուի այլուր:

Սենթ-Փեթերսպուրկի 25-րդ Միջազգային Տնտեսական Համաժողովը կայացաւ Յունիս 15-18-ին, բնականաբար, արեւմտեան ընկերութիւններու ակնկալուած պոյքոթումի պայմաններուն տակ, ուքրաինական պատերազմի պատրուակով: Փոխարէնը աւելցաւ բարձրաստիճան պաշտօնական-պետական անձնաւորութիւններու ներկայութիւնը նախագահական եւ փոխ-նախագահական մակարդակներով՝ Քուպա, Եգիպտոս, Պելառուս, Հայաստան, Ղազախստան, Վենեզուելա, Միջին Ափրիկէի Հանրապետութիւն, եւ այլն, ինչպէս նաեւ պատուիրակութիւններ Թալիպանի եւ Տոնեցքի Հանրապետութեան:

Հայաստանը կը ներկայացնէր նախագահ Վահագն Խաչատուրեան, որ նաեւ Յունիս 17-ին առանձին հանդիպում կ՚ունենայ Վլատիմիր Փութինի հետ: Փութին կը յայտարարէ. «Հայաստանը միայն մեր գործընկերը չէ, այն մեր ռազմավարական դաշնակիցն է, մենք դա գնահատում ենք»:

Հայերը կրնան հանդիստ քնանալ եւ ցկեանս հիմնուիլ ռուսական ռազմավարական դաշնակցութեան պտուղներուն վրայ:

* * *

Ահաւասիկ պատկերներու, ինքնապատկերներու, իրականութիւններու միջեւ գտնուող Հայաստանը, որ կը փորձէ իր դիւանագիտութիւնը բանեցնել Թուրքիոյ, Ազրպէյճանի, Ռուսաստանի, Եւրամիութեան, ԱՄՆ-ի հետ (տես նաեւ *Ջահակիր*, թիւ 1916), շրջագայիլ իւրաքանչիւրի քմահաճոյքներուն եւ շահերուն ընդմէջէն, փորձել պարտադրել իր կամքը՝ խօսքով, պատկերով եւ իրականութեամբ, եւ այս բոլորը վերջին 20 տարիներու համեմատութեամբ աննախադէպ դիւանագիտական աշխուժութեամբ, աշխուժութիւն՝ որ թելադրուած է միջազգային յարաբերութիւններու նոր պատումներու եւ իրական նոր կառուցուածքներու գոյութեամբ, որոնց Հայաստան երբեք պատրաստ չէր եղած: Եւ այս բոլորէն ետք, Սփիւռքի աւանդականներու, ամենայն հայոց սփիւռքահայ խմբագիրներու եւ Հայաստանի ձախողած յեղաշրջումի հեղինակներու գերպարզունակ եւ ապակողմնորոշող ձայնաւոր խօսքի համատեղութեամբ, զոր, ըստ էութեան, Հայաստանի իշխանութիւնները արդէն սորվեցան անտեսել եւ քովէն անցնիլ, թէեւ սորվեցան բաւական ուշ:

Ա.

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1919 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 14 ՅՈՒԼԻՍ 2022 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀկ. عدد رقم ١٩١٩ الخميس ١٤ يوليه ٢٠٢٢


## «ԲԵՐՁՈՐՆ ՈՒ ԱՂԱՒՆՈՆ ՅԱՆՁՆՈՒԵԼ ԵՆ ՆՈՅԵՄԲԵՐԻ 9-Ի ՓԱՍՏԱԹՂԹՈՎ. ՍԱ Ո՛Չ ԻՆՁ ՀԱՄԱՐ Է ԳԱՂՏՆԻՔ, Ո՛Չ ԻՇԽԱՆ ՍԱՂԱԹԷԼԵԱՆԻ, Ո՛Չ ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԻ». ՍՈՒՐԷՆ ՍՈՒՐԷՆԵԱՆՑ

### ՀԱՐՑԱԶՐՈՒՑԱՎԱՐ՝ ՔՐԻՍՏԻՆԷ ԱՂԱԲԷԿԵԱՆ

*Մեդիալաբի* հարցերին պատասխանում է Դեմոկրատական Այլընտրանք կուսակցութեան քաղաքական խորհրդի նախագահ Սուրէն Սուրէնեանցը:

**— Պարո՛ն Սուրէնեանց, վարչապետ Նիկոլ Փաշինեանի Յունիսի 27-ի առցանց մամուլի ասուլիսի ասելիքն ու նպատակը ո՞րն էր:**

— Նիկոլ Փաշինեանն ունէր երկու հիմնական հասցէատէր. մէկը միջազգային գործընկերներն էին, նախեւառաջ՝ Ռուսաստանը, ամբողջ ասուլիսի տողատակում այն միտքն էր, որ ռուսական ինչ-որ լուծում կայ, որն այնքան էլ Հայաստանի սրտով չէ, բայց դրան դէմ գնալը կարող է յանգեցնել նոր պատերազմի:

Գաղտնիք չէ, որ խօսքը Սիւնիքով անցնող ճանապարհին է վերաբերում, որովհետեւ Երեւանում ու Բաքւում Լաւրովը, ըստ էութեան, բացայայտել է այդ ճանապարհի կարգավիճակը:

Այդ ճանապարհը դասական իմաստով միջանցք չի լինելու, այսինքն՝ Հայաստանը տարածքային կամ քարտէզային կորուստ չի ունենալու, բայց ֆունկցիոնալ առումով այն շատ մօտ է լինելու միջանցքի, որովհետեւ Լաւրովի ասած պարզեցուած ռեժիմը նշանակում է, որ հայկական կողմը մաքսային ու անձնագրային վերահսկողութիւն չի իրականացնելու այդ ճանապարհին, իսկ սա նշանակում է, որ Հայաստանը կորցնելու է իր ինքնիշխանութեան մի մասն այդ տարածքում:

Սա նշանակում է, որ այդտեղ միջանցքային ինչ-որ բաղադրիչներ կան, որին Հայաստանը բնականաբար դէմ է, բայց օբիեկտիվ, սուբիեկտիվ պատճառներով Հայաստանի իշխանութիւնը չի խիզախում իր անհամաձայնութիւնը յայտնել, ու երէկուայ ասուլիսով Փաշինեանը փորձում էր մեսիջներ ուղարկել Ռուսաստանին, որ այնքան էլ գոհ չէ ստեղծուած իրավիճակից, միեւնոյն ժամանակ, միջազգային այլ գործընկերների հասկացնում էր, որ այդ ստատուս քվոն Հայաստանին այնքան էլ ձեռնտու չէ:

Երկրորդ հասցէատէրը հայ հասարակութիւնն էր, որովհետեւ առաջին 30 րոպէներին Փաշինեանը խօսում էր հնարաւոր նոր պատերազմի մասին: Պատերազմի վախերով՝ փորձում էր հասարակութեանը նախապատրաստել հնարաւոր զիջումներին:

**— Այդ հնարաւոր զիջումների մէջ Բերձորն ու Աղաւնո՞ն են:**

— Միանշանակ, բայց Բերձորի թեման մի քիչ այլ է: Հայաստանը ռեսուրսներ չունի հակադրուելու այն պարտաւորութեանը, որն ամրագրուած է Նոյեմբերի 9-ի եռակողմ յայտարարութեան մէջ: Հայաստանը ռեսուրսներ չունի պահելու Բերձորն ու Աղաւնոն նոր ճանապարհի գործարկումից յետոյ. դա ռէալ չէ:

Հայաստանն այսօր Արցախի անվտանգութիւնը չի կարողանում ապահովել, անգամ չի կարողանում ապահովել իր հարաւային ու հարաւարեւելեան սահմանները, էլ ուր մնաց անկլաւի կարգավիճակ ունեցող Բերձորի ու Աղաւնոյի անվտանգութիւնը կարողանայ ապահովել:

Ակնյայտօրէն նոր ճանապարհի կառուցումից յետոյ Արցախի կամ Հայաստանի իշխանութիւնները պէտք է տարհանեն ու բնակարաններով ապահովեն Աղաւնոյի ու Բերձորի մեր հայրենակիցներին, ինչքան էլ ցաւալի լինի այն, ինչ ասում եմ, սա անխուսափելի հեռանկար է: Մենք չենք կարող հակադրուել մի փաստաթղթի, որի տակ դրուած է նաեւ Ռուսաստանի նախագահի ստորագրութիւնը:

**— Պարո՛ն Սուրէնեանց, ստացւում է, որ Բերձորն ու Աղաւնոն Նոյեմբերի 9-ի փաստաթղթի համաձայն արդէն յանձնուել են Ադրբէջանին, ու դրա մասին տեղեակ է եղել նաեւ ընդդիմութիւնը, այնպէս չէ՞: Այդ դէպքում ինչո՞ւ են հիմա բարձրաձայնում այդ մասին:**

— Հիմա են բարձրաձայնում, որովհետեւ Ադրբէջանը շատ ինտենսիվ ճանապարհի մի հատուածն արդէն կառուցել է: Իհարկէ Հայաստանի խորհրդարանական ընդդիմութիւնն այդ մասին իմացել է, մենք՝ բոլոր քաղաքական գործիչներս, այդ մասին իմացել ենք, սա ո՛չ ինձ համար է գաղտնիք, ո՛չ Իշխան Սաղաթէլեանի, ո՛չ Նիկոլ Փաշինեանի:

Սա Հայաստանի պարտաւորութիւնն է. մենք պարտուած երկիր ենք, անհեթեթ կը լինի պատկերացնել, որ մենք կարող ենք այս կարգավիճակում ստանձնած որեւէ պարտաւորութիւն չկատարել, այն էլ՝ եռակողմ, որը, ըստ էութեան, յետպատերազմեան ստատուս քվոյի անկիւնաքարն է:

**— Բացի այս զիջումներից, էլի՞ զիջումներ կ՚անի Հայաստանը:**

— Տեսանելի է Սիւնիքով անցնող այդ ճանապարհը, որի մասին խօսում էինք, իսկ դա լուրջ զիջում է, որովհետեւ այդ ճանապարհահատուածում մենք զրկւում ենք մեր ինքնիշխանութեան իրացումից:

Պէտք է ճիշտ հասկանալ, թէ ինչ է հիմա ուզում Ռուսաստանը: Արեւմտեան պատժամիջոցներն ու Արեւմուտքի հետ հակադրութիւնը Ռուսաստանին թոյլ չեն տալիս ծաւալուել դէպի Արեւմուտք, Ռուսաստանին շատ արագ պէտք է ծաւալուել դէպի հարաւ՝ Իրանի միջոցով դէպի Պարսից ծոց, Թուրքիայի միջոցով՝ Միջերկրական ծով:

Այս տրամաբանութեան մէջ նրան շատ արագ պէտք է Հարաւային Կովկասում կոմունիկացիաների ապաշրջափակումը, եւ Սիւնիքով անցնող ճանապարհի հարցում առաջին շահառուն հէնց Ռուսաստանն է, նա ամէն ինչ անելու է, որ այդ նախագիծը շատ արագ կեանքի կոչուի:

Բնականաբար, պէտք է մտահոգուել Լեռնային Ղարաբաղի կարգավիճակով. մի քանի անգամ ձեզ հետ զրոյցների ժամանակ ասել եմ, որ հայկական կողմը պէտք է կարողանայ առաւելագոյնն անել, որ կարգավիճակի լուծումը գոնէ յետաձգուի, որովհետեւ եթէ դա չկարողանան անել, չի կարող լուծումը մեզ համար բարենպաստ լինել:

**— Այս սցենարի իրականացումից յետոյ Հայաստանում ու Արցախում ի՞նչ զարգացումներ են սպասուելու:**

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԲԵՐՁՈՐԻ «ՅԱՆՁՆՈՒՄ»

2020 Նոյեմբեր 9-ի յայտնի եռակողմ Յայտարարութիւնը՝ Ռուսաստանի, Հայաստանի եւ Ազըրպէյճանի ստորագրութեամբ, կը բովանդակէ հետեւեալ կէտը (6-րդ).

«Հայաստանի Հանրապետութիւնն Ադրբէջանի Հանրապետութեանը վերադարձնում է Քելբաջարի շրջանը մինչեւ 2020 թ. Նոյեմբերի 15-ը, իսկ Լաչինի շրջանը՝ մինչեւ 2020 թ. Դեկտեմբերի 1-ը: Լաչինի միջանցքը (5 կմ լայնութեամբ), որը ապահովելու է Լեռնային Ղարաբաղի կապը Հայաստանի հետ, ընդորում շրջանցելով Շուշի քաղաքը, մնում է Ռուսաստանի Դաշնութեան խաղաղապահ զօրակազմի վերահսկողութեան ներքոյ:

«Կողմերի համաձայնութեամբ, Լեռնային Ղարաբաղի եւ Հայաստանի միջեւ կապն ապահովելու համար առաջիկայ երեք տարիների ընթացքում պիտի հաստատուի Լաչինի միջանցքի երկայնքով նոր երթուղու կառուցման նախագիծ, որից յետոյ ռուսական խաղաղապահ զօրակազմը կը վերատեղակայուի՝ այդ երթուղին պաշտպանելու համար:

«Ադրբէջանի Հանրապետութիւնը երաշխաւորում է Լաչինի միջանցքով քաղաքացիների, տրանսպորտային եւ բեռնատար միջոցների երթեւեկութեան անվտանգութիւնը երկու ուղղութիւններով»:

Կարճ: 2020 Դեկտեմբեր 1-էն սկսեալ Լաչինի շրջանը պաշտօնապէս կը պատկանի Ազըրպէյճանին:

Շրջանի կեդրոնն է մինչեւ այսօր հայաբնակ մնացած Բերձոր քաղաքը, ուրկէ կ՚անցնի ներկայիս գործող միջանցքը: Այս է պատճառը որ Բերձորը, ինչպէս նաեւ Աղաւնոյ եւ Սուս գիւղերը, տակաւին մնացած են հայաբնակ: Բայց Յայտարարութիւնը կը գրէ «նոր երթուղու կառուցման» մասին, առանց նշելու նորին վայրը, որ պիտի որոշուէր բանակցութիւններու միջոցով: Շատ պարզօրէն կը նշանակէ, որ ճանապարհի նոր վայրով, Բերձորի մէջ եւ այլուր այլեւս չեն կրնար հայեր ապրիլ, քանի որ, արդէն անոնք կը պատկանին Ազըրպէյճանին:

Տեղի կ՚ունենան նոր վայրի համար բանակցութիւններ՝ յաղթած Ազըրպէյճանի եւ պարտուած Հայաստանի մէջ:

↳ 4

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԹՈՒՐՔԻՈՅ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ ՊԻՏԻ ԲԱՑՈՒԻՆ ԱՅԼ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ

Յուլիս 1-ին Վիեննայի մէջ կայացաւ Հայաստանի եւ Թուրքիոյ բանագնացներ Ռուբէն Ռուբինեանի եւ Սերտար Քըլըչի չորրորդ հանդիպումը, որուն ընթացքին կը համաձայնին բանալ իրենց ցամաքային սահմանը երրորդ երկիրներու քաղաքացիներու համար, ինչպէս նաեւ սկսիլ Հայաստան-Թուրքիա ուղիղ օդային բեռնափոխադրումները:

Նշենք, որ Հայաստան-Թուրքիա սահմանները փակ են 1993 թուականէն սկսեալ, իսկ 2019-ի վերջաւորութեան դադրած էր երկու երկիրներու միջեւ ուղիղ օդանաւային հաղորդակցութիւնը:

↳ 2

## ԵԳԻՊՏՈՍԻ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԻԶԱ ԿԸ ՍՏԱՆԱՆ ՊԱՐԶԵՑՈՒԱԾ ԿԱՐԳՈՎ

Եգիպտոսի քաղաքացիների համար դիւրացւում է Հայաստանի մուտքի արտօնագիր ստանալու գործընթացը:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ Եգիպտոսում Հայաստանի դեսպանութիւնը տեղեկացնում է, որ 2022 թուականի Յուլիսի 11-ից Եգիպտոսի քաղաքացիների համար պարզեցւում է վիզային ռեժիմը: Մասնաւորապէս, Եգիպտոսի քաղաքացիներն այլեւս Հայաստանի ոստիկանութեան կամ Արտաքին Գործերի Նախարարութեան կողմից տրուած հրաւէրի կարիք չեն ունենայ: Այսպիսով, վերոնշեալ օրուանից Եգիպտոսի քաղաքացիները կարող են վիզայի համար դիմել անմիջապէս Եգիպտոսում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւն կամ Հայաստանի Հանրապետութեան ցանկացած այլ դիւանագիտական ներկայացուցչութիւն:

↳ 3

# ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆԻ *ՍՆՏՈՒԿԻՆ ՀԱՇԻՒԸ* ՎԻՊԱԿԸ ԵՒ Ի. ԴԱՐԱՍԿԻԶԲԻ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԳԻԾԸ

Հ. ԱՒԱԳԵԱՆ

1896-ի աղէտը եւ անոր հետեւանքով Եգիպտոս գաղթած մտաւորականութիւնն ու հասարակութիւնը հիմք դրին եգիպտահայ նոր մշակոյթին, որուն առաջին փուլը տեւեց մինչեւ 1908-1909 թուականները, երբ Երիտթուրքերու սահմանադրութեան խանդավառութեան տակ շատեր վերադարձան Պոլիս:

1896-1909-ը տեսաւ միտքի այլազանութիւն մը, արտայայտուած յատկապէս անթիւ լրագիրներու ընդմէջէն: Այդ այլազանութեան նմանատիպը եգիպտահայութիւնը չունեցաւ յաջորդ գաղթէն ետք՝ որ կայացաւ Մեծ Եղեռնին հետեւանքով:

Յետեղեռնեան գաղթականութեան, ներառեալ մտաւորականութեան, նկարագիրը եղաւ քիչ մը տարբեր: Անոնք կամաց-կամաց ինքզինքնին գտան աւանդական կուսակցութիւններու աճող տիրապետութեան տակ: Կուսակցութիւնները յաջողեցան հետզհետէ իրենց մէջ ներգրաւել մտաւորականութիւնը, յստակ ուղղութիւններ պարտադրելով հանրային միտքին վրայ, յաջողելով, յատկապէս 1950-ականներէն սկսեալ, բազմակարծութիւնը փոխարինել միակարծութեամբ: Նախաեղեռնեան այլազանութիւնն ու այլաբանութիւնը չկրկնուեցան, թէեւ յայտնուեցան մեծատաղանդ անձեր, որոնք յաջողեցան գծել անձնական ուղիներ եւ բանալ գաղափարական ճանապարհներ՝ իբրեւ անհատական ճիգի արդիւնք: Բարձրամակարդակ մշակութային արտադրութեան մէջ հաւաքական ճիգը փոխարինուեցաւ անհատական ճիգով:

Վահան Թէքէեանի *Սնտուկին հաշիւը* անաւարտ վիպակը կը պատկանի առաջին փուլին, եւ կը նշանաւորէ առկայ բազմակարծութեան կարելիութիւնն ու անոր սահմանը:

Այսպէս, 1907 Փետրուար 21-ին, Գահիրէի մէջ Արփիար Արփիարեանի խմբագրած *Լուսաբեր* եռօրեան կը հրատարակէ հետեւեալ լուրը.

«*Լուսաբեր*ին յառաջիկայ թիւէն հրատարակել պիտի սկսինք վիպակ մը՝ *Սնտուկին հաշիւը* զոր գրած է Ասուպ: Այս ծածկանունը յիշեցնելով *Շիրակ*ին եւ նախկին *Ազատ բեմ*ին փոքրիկ գլուխ գործոցները, անտարակոյս մեր ընթերցողները գրգռուած ախորժակով պիտի սպասեն շաբաթ օրուան»(1):

Անստորագիր այս լուրը վստահաբար գրած է Արփիարեան՝ ի յարգանս իր գաղափարակից գրչընկեր Թէքէեանին, որուն գրական ծածկանուններէն մէկն է Ասուպ:

Փետրուար 23-ին, լրագիրի առաջին էջին վրայ կը սկսի հրատարակուիլ վիպակը: Երկու թիւ (Փետրուար 23 եւ 26) հրատարակուելէ ետք, երրորդ շարունակութեան փոխարէն, լրագիրի առաջին էջի առաջին սիւնակին վերը տեղադրուած կեդրոնական յայտարարութիւն մը կը տեղեկացնէ.

«*Լուսաբեր*ին նախորդ երկու թիւերուն մէջ հրատարակուիլ սկսած *Սնտուկին հաշիւը* վիպակը այլ եւ այլ թիւր մեկնութեանց տեղի տուած ըլլալով, շարունակութիւնը դադրեցնել հարկ տեսնուեցաւ, թերթիս Վարչութիւնը չուզելով, որ մինչեւ իսկ կասկածուի թէ անձնականութիւններ շօշափող գրութիւններ կրնան հրատարակուիլ *Լուսաբեր*ի մէջ:

Վարչութիւն»(2):

Ի՞նչ պատահած է՝ որ Վարչութիւնը որոշած է դադրեցնել վիպակին հրատարակութիւնը: Աւելի քան յստակ է՝ որ այստեղ տեղի ունեցած է արտաքին միջամտութիւն: Արփիարեան՝ որ ծանօթ է *Լուսաբեր*ի մէջ ստորագրած իր համարձակ քննադատութիւններով, գտնուած է ճնշումի ու պարտադրանքի տակ: Բան մը կայ՝ որ շրջանցած է այդ ժամանակուայ ընդունուած կարմիր գիծը: Թէեւ ուղղակի պատճառը տակաւին կը մնայ անյայտ, բայց հրատարակուած մասերը ապակառուցելով կարելի է որոշ բացատրութիւններ գտնել: Նախ՝ նիւթը:

**ՎԻՊԱԿԻՆ ՆԻՒԹԸ**

Գործողութիւնը կ՚ընթանայ Աբքալեան եղբարց ծխախոտի եւ սիկարէթի գործատունը: Գործատան հիմնադիր-տէրերն են Սահակ (աւագ) եւ Կոմիտաս (կրտսեր) Աբքալեան եղբայրները: Ծերացած ու հիւանդոտ, անոնք քաշուած են արուարձանը՝ իրենց նման ծեր հոմանուհիներու խնամքին տակ:

Գործատան վարիչ-տնօրէններ նշանակած են իրենց քեռորդիները՝ Յաբեթ աղա (աւագ) եւ միւսիւ Միսաք (կրտսեր) եղբայրները:

Պաշտօնէութիւնը մեծ մասամբ կազմուած է գաւառացի հայերէ, մինչ բանուոր-գործաւորութիւնը բաղկացած է շուրջ 40 ֆելլահ արաբներէ եւ քանի մը հայերէ ու հրեաներէ:

Գործատան միջօրեայ դադարն է եւ գործաւորները հանգստանալու համար դուրս կու գան գլխաւոր երկաթեայ դարպասէն: Հայ դռնապան Միքայէլ աղբարի պարտականութիւնն է իւրաքանչիւրին խստիւ խուզարկել, որմէ ետք միայն թոյլատրել դուրս ելլել գործարանէն:

Իր պարտականութիւնը խղճմտանքով կատարելէ ետք քիչ մը շունչ կը քաշէր, երբ յանկարծ ուշացած արաբ գործաւոր մը վազելով կը փորձէ դուրս սպրդիլ դարպասէն: Միքայէլ կը նկատէ գործաւորը, եւ հազիւ սկսած էր շարժիլ անոր հասնելու համար, վերէն միւսիւ Միսաք կը պոռայ եւ կը յանդիմանէ զինքը՝ անուշադիր ըլլալուն համար: Միքայէլ աւելի վճռական կը դառնայ արաբին մօտ գտնել գողցուած սիկարէթ մը: Եւ իրապէս, յաջողելով գտնել հատ մը՝ գայն հպարտանքով ցոյց կու տայ Միսաքին, փաստելու համար իր աշխատանքային հաւատարմութիւնը: Ասիկա ճիշդ հակառակ ազդեցութիւնը կ՚ունենայ, քանի որ Միսաք կրկին կը յանդիմանէ, ըսելով որ եթէ ինք գդուշացուցած չըլլար, գործաւորը գողցած ապրանքը արդէն դուրս հանած պիտի ըլլար: Խօսքը ընդամէնը մէկ սիկարէթի մասին է:

Միսաքի պոռչտուքին վրայ, Յաբեթ աղա դուրս կու գայ գրասենեակէն: Ան՝ որ ուրիշ առիթներով ծանր նախատինքներ ուղղած էր Միքայէլին, այս անգամ հանդէս կու գայ զինքը պաշտպանելով, պարզապէս գործընկերոջ Միսաքին դէմ կեցած ըլլալու համար: Խօսքը ուղղելով Միսաքին՝ կ՚ըսէ թէ եղածը ընդամէնը մէկ սիկարէթ մըն է, եւ կը յիշեցնէ թէ ինչպէս խանութին Գասպարը երեսուն ոսկի տարած էր: Ասիկա անհաճոյ է Միսաքին համար, քանի որ իր մէկ զանցառութեան պատճառով էր գողցուած այդ գումարը:

Հակառակ ընդամէնը մէկ սիկարէթ մը ըլլալուն, կը կանչուի ոստիկանը, որ վկայութիւնները արձանագրելէ ետք գործաւորը կը տանի բանտ:

Նոյն ժամանակ, գործատան դիմացը ախոռ մը պիտի կառուցուի եւ այս նպատակով ջորիները շինարարական քար կը բերեն: Դռնապան Միքայէլ կը գողնայ քարերուն «բուսուլյան», որուն հիման վրայ պիտի կատարուի ջորեպանին վճարումը: Այս թուղթը կորսնցնելով, ջորեպանը չպիտի կրնայ գանձել փոխարժէքը: Դռնապանը թուղթը կը յանձնէ Յաբեթին, որ անտարբերութեամբ կը պատռէ գայն եւ գամբիւղը կը նետէ: Մէկ սիկարէթի համար գործաւորը բանտ նետած վարիչը խնդիր չունի ուրիշէն գողցուած փաստաթուղթին նկատմամբ:

Սահակ եւ Կոմիտաս շատ քիչ կ՚այցելեն գործատուն: Հաճոյքի համար կը մսխեն իրենց հարստութիւնը, բայց Կոմիտաս պզտիկ նուիրատուութիւններով եւ բարեգործութիւններով կ՚ուզէ ինքզինքը սիրելի դարձնել հասարակութեան եւ Սահակէն աւելի բարեսիրտ երեւալ:

Չորս գլուխներուն՝ Սահակի, Կոմիտասի, Յաբեթի եւ Միսաքի յարաբերութիւնները այնքան ալ բացայայտ չեն պաշտօնեաներուն համար: Պաշտօնեաներէն մէկը՝ Խանօյեան, կը յաջողի չորս անկիւններէն խաղալով սիրուիլ կամ վախցուիլ իւրաքանչիւրէն: Վեց տարի յաջողապէս այս խաղը գլուխ հանելէ ետք, յանկարծ չորս գլուխները կը նկատեն՝ որ ընտանիքէն դուրս անձ մը իրենց մէջ չափազանց մեծ տեղ կը գրաւէ: Որքան ալ չորսին յարաբերութիւնները ըլլային ձգեալ, ընտանեկան գործարքի պահպանումը ամէն բանէ վեր նկատուելով՝ կը զոհեն Խանօյեանը:

Բայց այս ընտանեկան համաձայնութիւնն ալ չէր կրնար երկար տեւել: Հագուագիւտ բաներէն մէկը՝ որ գոնէ երեւութապէս ընտանիքը իբրեւ մէկ մարմին կանգուն կը պահէ, կը հանդիսանայ բարեգործական Սնտուկը: Խանօյեան կը փորձէ օգտուիլ Սնտուկի գոյութենէն:

Այստեղ կը վերջանայ վիպակի տպագրուած մասը:

(Շար. 1)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

1. *Լուսաբեր*, եռօրեայ, Գահիրէ, 21 Փետրուար 1907, Գ. Տարի, թիւ 333, էջ 3:

2. «Յայտարարութիւն», *Լուսաբեր*, 28 Փետրուար 1907, Գ. Տարի, թիւ 336, էջ 1:

ԳԱՀԻՐԷ

## *ՋԱՀԱԿԻՐԻ* 50-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ՄԱՌԻ ՊԷՅԼԷՐԵԱՆԻ ԵԳԻՊՏՈՍԻ ՇՐՋԱՆԻ ՄԱՍԻՆ

Լոյս տեսաւ *Ջահակիր*ի Ծ. (50-րդ) Յաւելուածը՝ *Մառի Պէյլէրեանի Եգիպտոսի տարիները (1896-1909) եւ ընկերվարական ֆեմինիզմը* (318 էջ):

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ
ՄԱՌԻ ՊԷՅԼԷՐԵԱՆԻ
ԵԳԻՊՏՈՍԻ ՏԱՐԻՆԵՐԸ (1896-1909)
ԵՒ
ԸՆԿԵՐՎԱՐԱԿԱՆ ՖԵՄԻՆԻԶՄԸ
ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ Ծ. (50)
ԳԱՀԻՐԷ
2022

Հատորի առաջին մասը կը բովանդակէ գրող, հրապարակագիր, հանրային գործիչ, մանկավարժ, Մեծ Եղեռնի զոհ Մառի Պէյլէրեանի (1877-1915) կենսագրութիւնը Եգիպտոսի մէջ: Առաջին անգամ օգտագործուած են Հնչակեան Կուսակցութեան Գահիրէի մասնաճիւղի անտիպ նիւթերը: Ապա ներկայացուած են գրողի գաղափարները՝ կապուած ֆեմինիզմի, կրթութեան, յեղափոխութեան, ընկերվարութեան, դրամատիրութեան, մամուլի, արուեստի եւ այլ նիւթերու շուրջ: Հատորի երկրորդ մասը կ՚ամփոփէ եգիպտահայ մամուլին մէջ լոյս տեսած Պէյլէրեանի արձակ ու չափածոյ գործերն ու յօդուածները:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԿԻՆՈՅԻ 100-ԱՄԵԱԿԻ ԿԱՊԱԿՑՈՒԹԵԱՄԲ ՍՏԵՂԾՈՒԵԼ Է ՅՈԲԵԼԵԱՆԱԿԱՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎ

2022 թուականին հայկական կինոն նշում է 100-ամեակը: Այդ կապակցութեամբ, Հայաստանի վարչապետի որոշմամբ, ստեղծուել է հայկական կինոյի հիմնադրման 100-ամեակի յոբելեանական յանձնաժողով, եւ հաստատուել է դրա անհատական կազմը:

*Արմենպրէս*ի փոխանցմամբ՝ յանձնաժողովի նախագահն է Հայաստանի Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի նախարարը:

Համաձայն որոշման՝ եռամսեայ ժամկէտում կը մշակուի յոբելեանական միջոցառումների ծրագիր Հայաստանում եւ արտերկրում իրականացնելու համար:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԹՈՒՐՔԻՈՅ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ ՊԻՏԻ ԲԱՑՈՒԻՆ ԱՅԼ...

1 ➩

Իրազեկ Քաղաքացիների Միաւորում հասարակական կազմակերպութեան համակարգող Դանիէլ Իոաննիսեան, Ֆէյսպուքի մէջ կ՚արձագանգէ. «Եթէ այսօր ձեռքբերուած Ռուբինեան-Քըլըչ պայմանաւորուածութիւնը իրականացուի, ապա դա կը լինի Հայաստանի ապաշրջափակման ուղղութեամբ մի մեծ հոգեբանական քայլ: Եւ եթէ դա տեղի ունենայ, ապա պէտք կը լինի արժանին մատուցել մեր դիւանագէտներին, քանի որ կարողացան Թուրքիայի վրայ միջազգային ազդեցութիւնը ուղղել ճիշտ ուղղութեամբ»:

Յունիս 27-ի ասուլիսին Նիկոլ Փաշինեան կ՚անդրադառնայ այս համաձայնութեան. «Հիմա շատ կարեւոր է, որպէսզի մեր գերատեսչութիւնները Թուրքիայի համապատասխան գերատեսչութիւնների հետ աշխատեն, որովհետեւ քաղաքական պայմանաւորուածութիւնը պայմանաւորուածութիւն, բայց այդ աշխատանքից է կախուած դրանց իրագործումը: Եւ իմ յանձնարարութիւնն է, որպէսզի կօորդինացուած աշխատենք, որպէսզի հնարաւորինս շուտ կարողանանք իրագործել ձեռք բերուած պայմանաւորուածութիւնները»:

ՀԱՅԱՍՏԱՆ

# ԵԳԻՊՏՈՍԻ ԴԵՍՊԱՆԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱՊԵՏԻՆ ԿԸ ՅԱՆՁՆԷ COP27-ԻՆ ՄԱՍՆԱԿՑԵԼՈՒ ՀՐԱՒԷՐԸ

Յունիս 28-ին, վարչապետ Նիկոլ Փաշինեան կ՚ընդունի Հայաստանի մէջ Եգիպտոսի դեսպան Պահա՚ Ալ-Տին Պահկաթ Տուսուքին, որ կը փոխանցէ նախագահ ՚Ապտէլ Ֆաթթահ Ալ-Սիսիի հրաւէրը՝ մասնակցելու միջազգային առաջնորդներու գագաթնաժողովին, որ տեղի պիտի ունենայ 2022 Նոյեմբեր 7-8-ին, Շարմ Ալ-Շէյխի մէջ, ՄԱԿ-ի Կլիմայի Փոփոխութեան Շրջանակային Պայմանագիրի (UNFCCC) համաժողովի 27-րդ նստաշրջանի (COP 27) շրջանակներուն մէջ: Վարչապետը կը յայտնէ իր ուրախութիւնը հրաւէրին համար, որմէ ետք միտքեր կը փոխանակուին տնտեսութեան, հաղորդակցութեան եւ զբօսաշրջիկութեան ոլորտներու համագործակցութեան զարգացումի ուղիներու շուրջ:



Պահա՚ Ալ-Տին Պահկաթ Տուսուքի եւ Նիկոլ Փաշինեան

Այս առիթով, համաձայն Եգիպտոսի Արտաքին Գործոց Նախարարութեան յայտարարութեան, դեսպան Պահա՚ Ալ-Տին Պահկաթ Տուսուքի կը հաստատէ Եգիպտոսի շահագրգռուածութիւնը զարգացնելու Հայաստանի հետ յարաբերութիւնները տարբեր ոլորտներու մէջ: Ան կ՚անդրադառնայ երկու երկիրներու Արտաքին Գործոց Նախարարութիւններու միջեւ շուտով կայանալիք քաղաքական խորհրդակցութիւններու տասներորդ փուլին, ինչպէս նաեւ տնտեսական, գիտական եւ թեքնիքական համագործակցութեան միջկառավարական յանձնաժողովի վեցերորդ փուլի նախապատրաստութեան:

Իր կարգին, Հայաստանի վարչապետը կը շեշտէ անհրաժեշտութիւնը երկու պետութիւններուն միջեւ ճշգրիտ ծրագիրներու եւ գաղափարներու շուրջ քննարկումներն ու աշխատանքները շարունակելու, ինչպէս նաեւ ընդլայնելու երկկողմանի յարաբերութիւններու օրակարգը, յայտնելով իր վստահութիւնը որ ձեռնարկուած ջանքերը պիտի տան դրական արդիւնքներ եւ պիտի խթանեն առաւել եւս խորացնելու յարաբերութիւնները:

# ՆՈՒԲԱՐ ԱՖԷՅԵԱՆՆ ԱՌԱՋԱՐԿՈՒՄ Է ՀԱՅԱՍՏԱՆ-ՍՓԻՒՌՔ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹԵԱՆ ՆՈՐ ՄՈԴԷԼԻ ԻՐ ՏԱՐԲԵՐԱԿԸ

Ապագայ Հայկականը շարժման նախաձեռնող, Աւրորա մարդասիրական նախաձեռնութեան համահիմնադիր Նուբար Աֆէյեանը առաջարկում է Հայաստան-Սփիւռք համագործակցութեան նոր մոդէլ՝ Հայաստանում գործիչները պէտք է աշխատեն ներկայի ուղղութեամբ, իսկ Սփիւռքը՝ ապագայի, այսինքն երկարաժամկէտ ծրագրերի: *Արմենպրէսի* հաղորդմամբ՝ Աֆէյեանը նման տեսակէտ յայտնեց Ապագայ Հայկականի համաժողովի շրջանակում պանելային քննարկմանը:

Աֆէյեանը նշեց՝ ինքը Սփիւռքում է ծնուել, հիմա էլ ԱՄՆ-ում է ապրում: «Անցեալ 22 տարուայ ընթացքում Հայաստանի զարգացման ծրագրերով զբաղուել եմ: Այդ ողջ ընթացքում միշտ կարծում էի, որ Սփիւռք-Հայաստան յարաբերութիւններն ընդհանրապէս լաւ են ու լաւանալու են: Որոշ պատճառներով վերջին 1-2 տարուայ ընթացքում մտահոգութիւններ են ծնուել», - ասաց Աֆէյեանը:

Ըստ նրա՝ պատերազմից յետոյ Հայաստան-Սփիւռք համագործակցութիւնը նախկինի նման այդքան մեծ կարեւորութիւն չի ստանում: Նա նշեց՝ տարիներ շարունակ ինքը մասնակցել է տարբեր Սփիւռք-Հայաստան կոնֆերանսների, լսել է այն միտքը, որ Ադրբէջանն ունի նաւթ, Հայաստանն ունի իր Սփիւռքը՝ իր «նաւթը»: «Կարող է Սփիւռքը նաւթ է, բայց, եթէ չկարողանանք նաւթը հողից հանել եւ օգտագործել, դա կը մնայ պարզապէս երազանք: Պէտք է կարողանանք խօսակցութեամբ իրար գտնել, հասկանալ, յարգել, կարօտն արտայայտել, որ կարողանանք առաջ գնալ», - ասաց նա:

Անդրադառնալով նրան, թէ ինչ պէտք է արուի այդ ուղղութեամբ, ինչ մոդէլ կայ, նա ասաց՝ ամենակարեւոր 10 նպատակներից մէկը պէտք է լինի այն, որ հազարաւոր մասնագէտներ, տասնեակ հազարաւոր ուսանողներ գան այստեղ եւ իրենց տաղանդը ներդնեն Հայաստանի ապագայի կերտման հարցում:





Նուբար Աֆէյեան

«Սփիւռքահայութիւնն ընդհանրապէս յուսահատուելու իրաւունք չունի: Իբրեւ սփիւռքահայ կարող եմ ասել, որ մենք ապրում ենք շատ աւելի դիւրին, շատ աւելի լաւ վիճակում, եթէ մենք մեր ջանքն ենք ներդնելու Հայաստանի ապագային, նախ եւ առաջ պէտք է ասենք, որ յուսահատուելու իրաւունք չունենք: Բայց շատ աւելի պահանջկոտ լինելու իրաւունք ունենք, որպէսզի մեր ներդրումները, մեր ժամանակը շատ աւելի ազդեցութիւն ունենան», - ասաց Աֆէյեանը:

Նա ներկայումս Հայաստանի առջեւ ծառացած շատ խնդիրներ է տեսնում:

«Ներկան պարտադրում է, որ գործիչներն անվերջ ներկայի վրայ աշխատեն: Սփիւռքահայութիւնը կարող է ապագայի վրայ աշխատել, քանի որ ներկայի վրայ այդքան ազդեցութիւն չի կարող ունենալ: Կարող է փողով, ներդրումներով օգնել, բայց պէտք է այստեղ լինես, որ ներկայի վրայ աշխատես, բայց ապագայի վրայ աշխատելու համար կարող ես լինել Լոս Անջելէսում կամ ուր ուզես, եւ կարող ես երազներդ արտայայտել եւ իրականութիւն դարձնել որոշ տարիների ընթացքում», - ասաց Աֆէյեանը:

Ըստ նրա՝ սփիւռքահայութեանը երկարաժամկէտ ծրագրերը պէտք է աւելի հետաքրքիր լինեն: «Եթէ գտնենք այն ձեւը, որ Հայաստանն ու Սփիւռքը կամուրջներ ստեղծեն, Սփիւռքը՝ ապագայից, ներկան՝ Հայաստանի կողմից միացընենք, իմ կարծիքով դա կը լինի նոր մոդէլ», - եզրափակեց նա:

ԽՈՀԵՐ

# ԲՋԻՋԱՅԻՆ ՀԵՌԱՁԱՅՆԸ ԵՒ ԽՕՍԱԿԻՑԻՆ ԱՐԺԵԶՐԿՈՒՄԸ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Բջիջային հեռաձայնը, հասկցանք, կը դիւրացնէ ու կ՚արագացնէ հաղորդակցութիւնը, կը կրճատէ ճամբաները:

Թեքնոլոժի մըն է՝ ոչ աւելի, ոչ պակաս, որ չէ հետաքրքրուած մարդով, մարդու վիճակով եւ մարդկային արժէքով: Վերջապէս, ո՞ր թեքնոլոժին հետաքրքրուած է մարդով:

Բջիջայինով խօսակիցիդ կրնաս հասնիլ որեւէ տեղ, որեւէ ժամանակ, առանց նախնական ծրագրաւումի: Րոպէականութիւնը լաւ բան մը կը նկատուի:

Կ՚ուզես անձնական հանդիպումներդ դասաւորել քանի մը օր առաջ՝ յաջորդաբար: «Հանդիպումէն առաջ մէյ մը հեռաձայնէ», յաճախ կ՚ըլլայ պատասխանը: Ծրագրած ես այսինչ օրը երեք հոգիի հանդիպիլ, երեքին ալ պիտի հեռաձայնես հադիպումէդ մէկ ժամ առաջ, որպէսզի հաստատեն կամ հերքեն իրենց մատչելիութիւնը: Երեք անձեր, որոնք չեն գիտեր ինչ պիտի ընեն քանի մը օր ետք: Արդի մարդու մտացնորութեան նմոյշ:

Անկազմակերպ հասարակութիւններու պարագային, աւելի եւս կը խորանայ անկազմակերպուածութիւնը: Ամէն բան կը լուծուի տուեալ պահուն՝ բջիջայինով, հասարակութիւնը կորսնցնելով ինքզինք ծրագրաւորելու ժամանակային կարողութիւնն ու զգացողութիւնը:

Իսկ մարդկային յարաբերութիւննե՞րը:

Նստած ես մէկու մը հետ եւ կը սկսիս քեզի յուզող նիւթի մը մասին խօսիլ, զոր կարեւոր կը համարես բացատրել մինչեւ վերջ՝ յաջորդական միտքերով: Յանկարծ կը հնչէ խօսակիցիդ բջիջային զանգակը: Պէտք է պատասխանէ: Եթէ չպատասխանէ, պիտի կորսնցնէ հեռաձայնողի հետ խօսելու տուեալ պահու կարելիութիւնը: Մինչդեռ դուն հոս ես, իր դիմացը, եւ կրնաս սպասել: Վստահաբար պիտի չլքես խօսկիցդ ու մեկնիս: Անքաղաքավար պիտի համարուիս եւ չես ուզեր այդպէս ըլլալ:

Խօսակիցդ կը պատասխանէ բջիջայինը, կը խօսի, կը հանդըստանայ, իսկ քու խանդավառութիւնդ արդէն շիջած է: Խօսակիցդ կրնայ նոյնիսկ մոռցած ըլլալ խօսած նիւթդ: «Ինչի՞ մասին կը խօսէինք», կ՚ըլլայ իր հարցումը:

Բայց ամենակարեւորը այն է, որ խօսակիցդ նախընտրած է ուրիշը՝ հեռաձայնի միջնորդութեամբ խօսող անձը: Այդ ուրիշը՝ որուն ով ըլլալը չես գիտեր, աւելի կարեւոր է քան դուն: Խօսակիցդ նախընտրած է հեռուն մօտիկէն, գործիքի միջնորդութիւնը՝ ուղղակի յարաբերութենէն: Պահ մը վիրաւորուած կը զգաս: Իսկ երեւակայէ, երբ մէկ հանդիպումի ընթացքին նոյնը կրկնուի քանի մը անգամ:

Կը զգաս արժեզրկուած: Արդարեւ, արժեզրկուած ես:

# ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ Կ՚ԱՆՑԿԱՑՈՒԻ FEMINNO 2022 ԿԱՆԱՆՑ ՆՈՐԱՐԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՀԱՄԱԺՈՂՈՎԸ

Հայաստանում Յուլիսի 30-31-ը կ՚անցկացուի FemInno կանանց նորարարական միջազգային համաժողովը, որի ընթացքում կ՚ամփոփուեն ինչպէս Հայաստանի, այնպէս էլ արտասահմանցի կանանց ու աղջիկների ստեղծած ստարտափների մրցոյթի արդիւնքները:

Արմենպրէսի հաղորդմամբ՝ համաժողովի գլխաւոր նպատակներն են՝ բիզնէսի, գիտութեան եւ տեխնոլոգիաների ոլորտում կանանց գնահատելը, ներկայացնելն ու հզօրացնելը, կրթութեան թիրախաւորումը որպէս հիմնական ուղի, տարբերութեան եւ ներառականութեան խթանումը վաղ տարիքից, խոցելի խմբերի հզօրացումը եւ որակաւորումը, աշխատանքի եւ ցանցային հնարաւորութիւնների ստեղծումը:

Միջոցառման ընթացքում սպասւում են 30-ից աւելի բանախօսներ եւ յատուկ հիւրեր, 10-ից աւելի սեմինարներ եւ վարպետութեան դասեր, 2000-ից աւելի մասնակիցներ, 15-ից աւելի ներկայացուած երկրներ եւ այլն:

# ԵԳԻՊՏՈՍԻ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԻԶԱ ԿԸ ՍՏԱՆԱՆ ՊԱՐԶԵՑՈՒԱԾ ԿԱՐԳՈՎ

Եգիպտոսի քաղաքացիները կարող են մուտքի արտօնագրի համար դիմել ելեկտրոնային վիզաների համակարգի միջոցով https://evisa.mfa.am/:

Դրանից բացի, Եգիպտոսի քաղաքացիները կարող են մուտքի արտօնագիր ստանալ Հայաստանի սահմանային հսկողութեան ցանկացած կէտ ժամանելուն պէս, եթէ ունեն կացութեան կարգավիճակ կամ վիզա՝ հետեւեալ երկրներում. ԵՄ անդամ պետութիւններ, Շենգէնեան գօտու երկրներ, ԱՄՆ, Աւստրալիա, Նոր Զելանդիա, Կորէայի Հանրապետութիւն, Մեծ Բրիտանիայի եւ Հիւսիսային Իռլանդիայի Միացեալ Թագաւորութիւն, Կանադա, Ռուսաստան, Ճապոնիա, Սաուդիան Արաբիա, Քուվէյթ, ԱՄԷ, Կատար, Բահրէյն, Օման:

# ՋԱՀԱԿԻՐ

## Հ.Մ.Ը.Մ. ՆՈՒՊԱՐ- ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ ՄԻՋԱԿՈՒՄԲԱՅԻՆ ՊԱՍՔԷԹ ՊՈԼԻ ԱՄԱՌՆԱՅԻՆ ՄՐՑԱՇԱՐՔ

Ուրբաթ 22, Շաբաթ 23 եւ Կիրակի 24 Յուլիս 2022

Նուիրուած

**Եգիպտոսի 23 Յուլիսի Յեղափոխութեան 70-րդ տարեդարձին**

Հովանաւորութեամբ՝

**Գերշ. Տ. Աշոտ Եպս. Մնացականեանի**

Բարեխնամ Առաջնորդ Եգիպտոսի Հայոց Թեմի

Նախագահութեամբ՝

**Տոքթ. եւ Տիկ. Հրայր Տրդատեանի**

Ատենապետ Գահիրէի Հ.Մ.Ը.Մ. Նուպարի

Մրցաշարքին տղոց բաժակը նուիրած է՝

**Տիար Այգ Գալայճեան**

Մրցաշարքին աղջիկներու բաժակը նուիրած է՝

**Տիկ. Ալիս Վարժապետեան-Էզաթ**

Մրցաշարքին մետալները նուիրած է՝

**Տէր եւ Տիկ. Վարդ Ալեքսանեան**

**Մրցումներու յայտագիր**

**Ուրբաթ, 22 Յուլիս 2022**

Ա. Աղջիկներու մրցում երեկոյեան ժամը 6:00-ին

**Հ.Մ.Ը.Մ. Կամք x Հ.Մ.Ը.Մ. Նուպար (Աղեքսանդրիա)**

Բ. Տղոց մրցում երեկոյեան ժամը 7:30-ին

**Սրբուհի Թերէզա x Հ.Մ.Ը.Մ. Նուպար (Աղեքսանդրիա)**

Գ. Տղոց մրցում երեկոյեան ժամը 9:00-ին

**Հ.Մ.Ը.Մ. Կամք x Հ.Մ.Ը.Մ. Արարատ**

**Շաբաթ, 23 Յուլիս 2022**

Դ. Աղջիկներու մրցում երեկոյեան ժամը 6:00-ին

**Հ.Մ.Ը.Մ. Նուպար (Գահիրէ) x Հ.Մ.Ը.Մ. Արարատ**

Ե. Տղոց մրցում երեկոյեան ժամը 7:30-ին

**Հ.Մ.Ը.Մ.Նուպար (Գահիրէ)xԳ.մրցումի յաղթական խումբ**

**Մրցումներէն յետոյ տարեկան պարահանդէս՝**

**Օլիվ Այլընտ ծովային յունական սրահին մէջ**

**Կիրակի, 24 Յուլիս 2022**

Աղջիկներու վերջին մրցում երեկոյեան ժամը 6:00-ին

**Ա. մրցումի յաղթական խումբ xԴ. մրցումի յաղթական խումբ**

Տղոց վերջին մրցում երեկոյեան ժամը 7:30-ին

**Բ. մրցումի յաղթական խումբ x Ե. մրցումի յաղթական խումբ**

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## 1 ԲԵՐՁՈՐԻ «ՅԱՆՁՆՈՒՄ»

Նախ, Ազրպէյճան կ՚առաջարկէ Հայաստանի համար ոչ բարենպաստ երթուղի, որ բանակցութիւններու միջոցով կը փոխուի ներկայ համաձայնութեամբ ընթանալիք ճանապարհով:

Յունիս 27-ի առուլիսին, Նիկոլ Փաշինեան ոչ թէ նորութիւն կը յայտնաբերէ, այլ եղածն ու գիտցուածը կը դարձնէ լրատուամիջոցներու զանգուածային սեփականութիւնը. «Նախնական ըմբռնում կայ, որ Լաչինի միջանցքի գործող երթուղին պէտք է փոփոխութեան ենթարկուի: Մենք այս ընթացքում քննարկումների մէջ ենք եղել եւ երթուղու փոփոխութեան հարցում քննարկումներ եղել են: Նախնական համաձայնութիւններ ձեռք են բերուել եւ այդ փոփոխութեան նպատակը Լեռնային Ղարաբաղի եւ Հայաստանի համար աւելի յուսալի ամուր, աւելի որակեալ ճանապարհային կապ ապահովելն է»:

Գալով բնակիչներուն: «Լաչինի բնակիչների խնդիրները մենք կառավարութեան որոշումներով լուծում ենք, բնակիչները, բնականաբար, պէտք է ապահովուեն բնակարաններով: Ըստ էութեան, Լաչինում այսօր, նաեւ Արցախի իշխանութեան հետ այդ հարցերը քննարկում ենք, ընտանիքներ չեն ապրում, Աղաւնոյ գիւղի բնակիչների խնդիրները Արցախի կառավարութեան միջոցներով, կարծում եմ, կը լուծուեն, Սուսի վերաբերեալ ոչինչ չեմ կարող ասել, այս պահին տեղեկութիւններ չունեմ»:

Հետեւեալ խօսքը՝ «Արցախի իշխանութեան հետ այդ հարցերը քննարկում ենք», կը պարզէ նաեւ, որ Արցախի իշխանութիւնները տեղեակ են ամէն բանէ: Եւ արդէն Արցախի նախագահ Արայիկ Յարութիւնեան չէր կրնար աւելի երկար թաքցնել այս իրողութիւնը: Արցախի Ազգային Ժողովի Յունիս 30-ի նիստին, ան կը տեղեկացնէ. «Բերձորից պէտք է դուրս գանք, իսկ Աղաւնոյի հետ կապուած շարունակելու ենք մեր բանակցութիւնները, մեր պայքարը»: Ան կ՚աւելցնէ. «Աղաւնոյ բնակավայրի հարցը դեռ չի քննարկւում, մենք բանակցում ենք: Խօսքը Բերձորի մասին չէ, հէնց կէտում [Նոյեմբերի 9-ի Յայտարարութեան 6-րդ կէտը] գրուած է, որ մենք պարտաւոր ենք Բերձորից դուրս գալ, իսկ Աղաւնոյ բնակավայրի հետ կապուած մենք անելիքներ ունենք: Այդ ուղղութեամբ մենք բանակցութիւնները շարունակում ենք տանել»:

Ան կը հաստատէ՝ որ Լաչինի միջանցքի նոր ճանապարհի հետ կապուած Ազրպէյճանի եւ Ռուսաստանի կողմէ եղած են քանի մը առաջարկութիւններ, զորս մերժած է հայկական կողմը:

Կարեւոր է՝ որ Արցախի իշխանութիւնները տեղեակ եւ մասնակցած ըլլան բանակցութիւններուն: Եւ քանի որ այդպէս է, ի՞նչ իմաստ ունի նոյն Արցախէն ելած ահռելի աղմուկը Հայաստանի դէմ՝ իբրեւ Լաչինը կը յանձնէ Ազրպէյճանին:

Ի՞նչ հիմքի վրայ կառուցուած են նաեւ Հայաստանի «ընդդիմադիր»-ներու եւ Սփիւռքի աւանդականներուն արդէն սովորութիւն դարձած փոփիւլիսթական աղմուկները՝ Լաչինը յանձնելու առումով:

Հայաստան ունէ՞ր կարողութիւն «նոր երթուղի»-ն պահել հին ճանապարհով՝ Բերձորի միջոցով: Պարտուած պետութեան համար՝ ո՛չ:

Հայաստան ունէ՞ր կարողութիւն Յայտարարութեան «նոր երթուղի»-ն ջնջել եւ պահել «հին երթուղի»-ն, այսպէսով հակառակած ըլլալ նոյն ինքը Ռուսաստանի պատրաստած Յայտարարութեան եւ ընդունիլ Փութինի յետագայ աննախատեսելի վերաբերմունքը: Անշուշտ՝ ո՛չ:

Ա.

## 1 «ԲԵՐՁՈՐՆ ՈՒ ԱՂԱՒՆՈՆ ՅԱՆՁՆՈՒԵԼ ԵՆ ՆՈՅԵՄԲԵՐԻ 9-Ի ՓԱՍՏԱԹՂԹՈՎ. ՍԱ Ո՛Չ ԻՆՁ ՀԱՄԱՐ Է ԳԱՂՏՆԻՔ, Ո՛Չ ԻՇԽԱՆ ՍԱՂԱԹԷԼԵԱՆԻ...

— Բնականաբար, այդ սցենարը մեզ համար շատ ցաւոտ է, բայց միշտ պէտք է իրատես լինել. Հայաստանը պատերազմի պարտուած կողմն է, Նոյեմբերի 9-ից յետոյ չենք կարող ունենալ համաձայնութիւններ, որոնք մեզ համար յաղթական կը լինեն: Պէտք է առաւելագոյնն անենք, որ գոնէ նոր առաջ եկող ռիսկերը կարողանանք կառավարել:

Մեր գերխնդիրը այսօր վտանգներից քիչ թէ շատ զերծ համաձայնութիւնների հասնելն է. Հայաստանը պէտք է ձգտի նուազագոյն կորուստներով հասնել խաղաղութեան, Արցախի անվտանգութեան ապահովմանը, որպէսզի յետագայում փորձի ունենալ աւելի ամուր բանակցային հիմքեր:

**— Կարծէք թէ այդ խաղաղութեան հասնելն էլ չի յաջողւում, պարո՛ն Սուրէնեանց, որովհետեւ Նիկոլ Փաշինեանը երէկ ասաց, որ Ադրբէջանը խոչընդոտում է գործընթացը:**

— Այո՛, Հայաստանն ակնյայտօրէն յայտնուել է մի այնպիսի տխուր իրավիճակում, որ մաներւի մեծ հնարաւորութիւններ չունի, ու շատ հարցերում հակադրուելու դէպքում, իսկապէս, կարող է պատերազմի վտանգ առաջանալ:

Միւս կողմից՝ կարծում եմ, որ վարչապետը, այնուամենայնիւ, երկրորդ խնդիր էլ էր լուծում՝ պատերազմի վտանգը ներկայացնելով՝ փորձում է մեր հասարակութեանը հակել հնարաւոր ցաւոտ լուծումների:

**— Նիկոլ Փաշինեանը մտադրութիւն ունի՞ արտաքին քաղաքականութեան վեկտորը փոխելու:**

— Եթէ նման ցանկութիւն ունի, դա կը լինի ամենամեծ արկածախնդրութիւնը, քանի որ նախ՝ պէտք է արձանագրենք, որ Հայաստանը չի կարող արտաքին քաղաքականութեան վեկտորի փոփոխութիւն ունենալ, որովհետեւ ուկրաինական ճակատում Ռուսաստանը ֆիասկօ չապրեց, այսինքն՝ հիմա տեսնում ենք, որ նա բաւականին յաջող ռազմական գործողութիւններ է իրականացնում, ու, ակնյայտօրէն, պատերազմական այս գործողութիւնները չեն յանգեցնելու Ռուսաստանի պարտութեանը գոնէ կարճաժամկէտ հեռանկարում:

Սա նշանակում է, որ Հարաւային Կովկասում Ռուսաստանն իր ազդեցութիւնը չի կորցնելու, ու երբ Բաքւում Լաւրովը խօսում էր Մինսկի Խմբի համանախագահութեան գործունէութեան դադարեցման մասին, ակնարկում էր, որ Ռուսաստանը վերահաստատում է իր գերիշխանութիւնը Հարաւային Կովկասում ու ամէն ինչ անելու է Արեւմուտքի ինստիտուցիոնալ ազդեցութիւնը չէզոքացնելու համար:

Երկրորդ՝ երբեք պատրանքներ չունենաք, որ եթէ Արեւմուտքը լինի հակամարտութեան կարգաւորման մոդերատորը, շատ աւելի հայանպաստ լուծումներ է առաջարկելու, քան առաջարկում է Ռուսաստանը, չկայ նման բան:

Որպէս երկիր՝ մենք չունենք այն գրաւչութիւնը, որ Ադրբէջանի հաշուին մեզ համար նոյն Արեւմուտքը խնդիրներ լուծի: Հետեւաբար, ռէալ պոլիտիկի դաշտում պէտք է անենք հնարաւորինը, որպէսզի Ռուսաստանի միջնորդութեամբ նուազագոյնի հասցնենք կորուստները, կարողանանք առկախել Լեռնային Ղարաբաղի կարգավիճակի հարցի լուծումն ու խաղաղ զարգացման պայմաններում, արդիւնաւէտ կառավարմամբ նոր որակի, մրցունակ պետութիւն կառուցել:

**— Արւո՞ւմ է այդ հնարաւորինը հիմա:**

— Մեր իշխանութեան որակների մասին ես շատ բարձր կարծիքի չեմ, իհարկէ վերջին շրջանում աւելի շատ հարթակի ընդդիմութեանն եմ քննադատել, բայց եթէ մեր իշխանութիւնը հետեւութիւններ չարեց, կադրային բազան չվերանայեց, իշխանութեան ինստիտուցիոնալ հիմքերը չվերանայեց, չի կարող նման բարդ խնդիր սպասարկել, ինչի մասին քիչ առաջ ասում էի:

Իշխանութիւնն անցած չորս տարիներին ապացուցել է, որ արդիւնաւէտ կառավարող չէ, որ չի կարողանում անհրաժեշտ վստահութիւն ներշնչել իր միջազգային գործընկերներին: Խօսում ենք Բերձորից ու Աղաւնոյից, բայց կարելի էր, չէ՞, եռակողմ յայտարարութեան տեքստի վերաբերեալ ուշադիր լինել ու գոնէ այդ ռիսկը չէզոքացնել, որովհետեւ դա ուղղակիօրէն կապուած չէր պատերազմական գործողութիւնների հետ: [Կարելի ՉԷՐ եռակողմ յայտարարութեան մէջ այդ ռիսքը չէզոքացնել, քանի որ Յայտարարութիւնը ստորագրուեցաւ հայկական պարտութեան կիզակէտին, երբ հայկական կողմը իրաւունք չունէր առարկութիւններ ընելու, *Ջահ.*]:

Հասարակութեան հետ պէտք է շատ անկեղծ լինել. Նոյեմբերի 9-ից յետոյ, ով էլ լինի երկրի ղեկավարը, չի կարող այնպիսի լուծում բերել, որն այլ կը լինի Նոյեմբերի 9-ի եռակողմ փաստաթղթի տրամաբանութիւնից, նման բան հնարաւոր չէ, եթէ նոյնիսկ վարչապետ լինեմ ես կամ Իշխան Սաղաթէլեանը:

Ինչ էլ բերենք՝ իր վրայ կրելու է Նոյեմբերի 9-ի տրամաբանութիւնը, որովհետեւ պատերազմն անհետեւանք չի կարող լինել. այն ունենում է քաղաքական, լոգիստիկ, կոմունիկացիոն հետեւանքներ, իսկ դրանք անտեսելն անհնար է: Այլ խնդիր է հնարաւոր ռիսկերը կառավարելը, իսկ այս առումով ես գործող իշխանութեան հնարաւորութիւնների նկատմամբ թերահաւատ եմ, եթէ շատ արագ բովանդակային ու կադրային վերանայումներ չանի:

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1920 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 28 ՅՈՒԼԻՍ 2022 ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 75 Ե. ԴՀԿ. عدد رقم ١٩٢٠ الخميس ٢٨ يوليه ٢٠٢٢


## ՀԱՅԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐՈՒԹԵԱՆ «ՏՆԱՅԻՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ»


**ԱՐՏԱՇԷՍ ԽԱԼԱԹԵԱՆ**

Իրաւաբան, իրաւաքաղաքական հարցերով փորձագէտ


2018-ի յեղափոխութիւնից շուրջ չորս տարի անց կարող ենք փաստել, որ դրա հիմնանպատակները միայն մասամբ են իրացուել: Մասնաւորապէս, արմատական քայլեր են արուել ժողովրդաիշխանութեան վերականգնման ուղղութեամբ, եւ այլեւս փաստ է, որ ընտրութիւնները Հայաստանում ազատ են, արդար եւ թափանցիկ, ինչի մասին խօսել են նաեւ միջազգային կառոյցները:

Միեւնոյն ժամանակ, սակայն, հարկ է նկատի առնել, որ լիարժէքօրէն գործող ընտրական ինստիտուտն ընդգրկում է ոչ միայն օրինականութեան սկզբունքին համապատասխանող նախընտրական քարոզչութիւնը, ընտրական վարչարարութիւնն ու քուէարկութիւնը, այլեւ քաղաքական այնպիսի միջավայրի ձեւաւորումը, որը քաղաքացուն ընտրանքի հնարաւորութիւն կը տայ: Այսինքն՝ անհրաժեշտ է պայմաններ ստեղծել ոչ միայն քաղաքացու «ինչպէս քուէարկելու», այլեւ «ում քուէարկելու» համար: Սա նշանակում է գաղափարական եւ գաղափարախօսական այլընտրանքներ առաջարկող ինքնաբաւ կուսակցութիւնների գոյութիւն, որոնք քաղաքականութեան «շուկայում» կը մրցակցեն քաղաքացու քուէի համար, իսկ քաղաքացին կը կարողանայ կատարել իրազեկ եւ պատասխանատու ընտրութիւն՝ գիտակցելով, որ «բոլորը նոյնն են» կամ «մէկ է՝ իշխանութիւնն անցնելու է» կլիշէներն այլեւս արդիական չեն, եւ հէնց իր քուէն է որոշելու, թէ առաջիկայ ընտրական շրջանում որ ուղղութեամբ է շարժուելու երկիրը, ինչպիսի պետական քաղաքականութիւն է որդեգրուելու եւ ինչպէս է այն իրականացուելու:

Կուսակցական համակարգի գաղափարական բազմազանութիւնը, սակայն, չպէտք է լինի ինքնանպատակ եւ կամայական, այլ պէտք է սահմանագծուած լինի ժողովրդավարական եւ իրաւական պետութեան ուղեծրով: Այլ կերպ ասած՝ քաղաքական իշխանութեան համար մրցակցող կուսակցութիւնները չպէտք է հետապնդեն ոչ ժողովրդավարական ճանապարհով իշխանութեանը տիրանալու նպատակ կամ ունենան բռնապետական, ամբողջատիրական, ծայրայեղական, խտրական կամ ժողովրդավարական սահմանադրական կարգին հակոտնեայ այլ գաղափարախօսութիւն: Միայն նման ժողովրդավարական կոնսենսուսի շուրջ համախմբուած քաղաքական ուժերը կարող են մի կողմից ընտրողին ներկայանալ այլընտրանքային ծրագրերով եւ միմեանց հետ մրցակցել պետութեան զարգացման իրենց տեսլականի յաղթանակի համար, իսկ միւս կողմից՝ հաւատարիմ լինելով պետութեան ժողովրդավարական հիմունքներին, երաշխաւորել քաղաքական համակարգի սահմանադրական կայունութիւնը եւ իշխանութեան փոխանցման գործընթացի օրինականութիւնը:

Յետյեղափոխական ողջ շրջանում Հայաստանում դեռեւս չի ձեւաւորուել ժողովրդավարական կոնսենսուսի վրայ հիմնուած կայուն կուսակցական համակարգ: Այդ պատճառով 2021 թ. արտահերթ խորհրդարանական ընտրութիւնների արդիւնքում Ազգային Ժողովն ստացաւ իրարամերժ եւ կոնֆլիկտային պատկեր: Ժողովրդավարական իշխող ուժին՝ Քաղաքացիական Պայմանագրին հակադրւում են նախորդ բռնապետական քաղաքական ռեժիմի հենքը կազմող Հայաստան եւ Պատիւ Ունեմ դաշինքները: Վերջիններս ոչ միայն չեն կատարում խորհրդարանական ընդդիմութեան սահմանադրական գործառոյթները, այլեւ իրենց դաւանած գաղափարներով (ընտրական ինստիտուտի՝ որպէս իշխանութեան ձեւաւորման կառուցակարգի, մերժում, ժողովրդավարութեան ընկալում որպէս ազգային արժէքներին հակասող երեւոյթ եւ այլն) եւ ծաւալած գործունէութեամբ իրական վտանգ են ստեղծում Հայաստանի ժողովրդավարական սահմանադրական կարգի համար: Մինչդեռ, կենսունակ եւ կայացած ժողովրդավարութիւնը պէտք է ունենայ օրէնսդրական եւ քաղաքական այնպիսի երաշխիքներ, որոնք կը բացառեն հակաժողովրդավարական քաղաքական ուժերի մասնակցութիւնն ընտրութիւններին:

Ժողովրդավարական պետութիւնը պէտք է երաշխաւորի քաղաքացիների ժողովրդավարական ընտրանքը՝ չստեղծելով ժողովրդավարական ճանապարհով բռնապետութեան ձեւաւորման հիմքեր, ինչպէս դա տեղի ունեցաւ Վայմարեան Հանրապետութիւնում Ադոլֆ Հիտլերի եւ իր քաղաքական թիմի իշխանամուտի ժամանակ: Մասնաւորապէս, Սահմանադրութեամբ պէտք է յստակ եւ ներկայի համեմատութեամբ առաւել խիստ արգելք սահմանուի ժողովրդավարական սահմանադրական կարգը մերժող, բռնապետական, ծայրայեղական եւ (կամ) մարդու հիմնարար իրաւունքները մերժող գաղափարախօսութիւն կամ ծրագիր ունեցող եւ համապատասխան գործունէութիւն ծաւալող կուսակցութիւնների գործունէութեան համար՝ դրանց գրանցումը մերժելու կամ լուծարման տեսքով: Հակառակ պարագայում Հայաստանում մշտապէս կը պահպանուի քաղաքական բեւեռացուածութեան բարձր մակարդակը՝ իշխանութեան համար պայքարը վերածելով «գրոյական արդիւնքով խաղի», երբ ընդդիմութեան յաղթանակը կը նշանակի ժողովրդավարական քաղաքական ռեժիմի տապալում եւ բռնապետութեան վերականգնում:

Զուգահեռաբար, պէտք է Ընտրական Օրէնսգըրքով հնարաւորինս իջեցնել Ազգային Ժողովի ընտրութիւններում կուսակցութիւնների անցողիկ շեմը՝ ընդհուպ այն հասցնելով մէկ տոկոսի: Այդպիսով հնարաւորութիւն կը ստեղծուի նորաստեղծ ժողովրդավարական քաղաքական ուժերին անգամ հանրութեան փոքր աջակցութեան պարագայում առնուազն մէկ ներկայացուցիչ ունենալ խորհրդարանում եւ դրանով իսկ ինստիտուցիոնալ նախադրեալներ ձեւաւորել թէ՛ շարունակական կայացման եւ թէ՛ վարկանիշի կայունացման ու յետագայ բարձրացման համար: Նման եղանակով


↳ 3


**ՎՐԱՍՏԱՆ**

## ՀԱՅԱՍՏԱՆ-ԱԶԸՐՊԷՅՃԱՆ ԱՌԱՋԻՆ ԵՐԿԿՈՂՄ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ

Յուլիս 16-ին, Վրաստանի մայրաքաղաք Թիֆլիսի մէջ տեղի ունեցաւ Հայաստանի եւ Ազըրպէյճանի Արտաքին Գործոց նախարարներ Արարատ Միրզոյեանի եւ Ճէյհուն Պայրամովի առաջին երկկողմ հանդիպումը, հիւրընկալութեամբ Վրաստանի ԱԳ նախարար Իլիա Տարչիաշվիլիի:

Մինչ այդ, Միրզոյեան-Պայրամով բոլոր հանդիպումները եղած էին եռակողմ՝ Եւրամիութիւնը կամ Մոսկուան ներկայանալով իբրեւ երրորդ կողմ:

Ներկայ հանդիպումին, կողմերը կ՚անդրադառնան Հայ-ազըրպէյճանական յարաբերութիւններու կարգաւորումին առնչուող հարցերու լայն շրջանակի:

Նախարարները կը քննարկեն նախապէս ստանձնած պարտաւորութիւններու կատարումի ընթացքը եւ մտքեր կը փոխանակեն յետագայ հնարաւոր քայլերու շուրջ:

Ըստ Հայաստանի Արտաքին Գործոց նախարարութեան տարածած հաղորդագրութեան, Միրզոյեան վերահաստատեց հայկական կողմի տեսակէտը, ըստ որուն տարածաշրջանի կայուն ու տեւական խաղաղութեան համար կարեւոր է Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան քաղաքական կարգաւորումը, եւ այս իմաստով ընդգծեց ԵԱՀԿ Մինսքի Խումբի համանախագահութեան հիմնարկն ու փորձը օգտագործելու կարեւորութիւնը՝ համապատասխան իր միջազգային մանտաթին:

Միրզոյեան շեշտեց մարդասիրական խնդիրներու, ներառեալ հայ ռազմագերիները ազատ արձակելու եւ հայրենադարձելու, ինչպէս նաեւ անհետ կորսուած ճակատագիրները պարզաբանելու խնդիրները հասցէագրելու կարեւորութիւնը:

Արձանագրուեցաւ շփումները շարունակելու կողմերու պատրաստակամութիւնը:

**ԹՈՒՐՔԻԱ**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԵՏ ՍԿՍՈՒԱԾ ԳՈՐԾԸՆԹԱՑԸ ԵՌԱԿՈՂՄ Է, ԱՍԵԼ Է ԹՈՒՐՔԻԱՅԻ ԱՐՏԳՈՐԾՆԱԽԱՐԱՐԸ

Մենք Հայաստանի հետ երկկողմ ձեւաչափով գործընթաց ենք սկսել, սակայն պէտք չէ մոռանալ, որ այն իրականում եռակողմ է, յայտարարել է Թուրքիայի արտգործնախարար Մեւլիւթ Ջաւուշօղլուն թուրքական TRT Haber հեռուստաընկերութեան հետ հարցազրոյցում: «Մենք ամէն մի քայլ Ադրբէջանի հետ ենք համապատասխանեցնում՝ կ՚ուզի Հայաստանը, թէ ոչ, իրականութիւնը դա է: Մենք մի ժողովուրդ, երկու պետութիւն ենք», - ասել է նա:

Անդրադառնալով Թուրքիայի նախագահ Ռեջէփ Թայիփ Էրդողանի ու Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի միջեւ Յուլիսի 11-ին կայացած առաջին հեռախօսազրոյցին՝ Ջաւուշօղլուն նշել է, որ Էրդողանը Փաշինեանին ներկայացրել է իր տեսակէտները: «Թէ՛ Թուրքիան, թէ՛ Ադրբէջանը Հարաւային Կովկասում խաղաղութիւն են ցանկանում: Ղարաբաղեան պատերազմից յետոյ ինչպէս մեր, այնպէս էլ Ադրբէջանի առաջարկներն ու յայտարարութիւնները յայտնի են», - ասել է նա:

Թուրքիան եւ Հայաստանը 2021-ի Դեկտեմբերին յարաբերութիւնները կարգաւորելու համար յատուկ ներկայացուցիչներ նշանակեցին, որոնք արդէն չորս հանդիպում են անցկացրել: Ջաւուշօղլուն յատուկ ներկայացուցիչների նշանակումը համարել է «վստահութեան բարձրացմանը միտուած քայլ» եւ նշել, թէ «որպէս մեծ պետութիւն մեր այդ ժեստը նորմալ է»:

Նա անդրադարձել է նաեւ Ռուսաստանի եւ Եւրամիութեան միջնորդութեամբ Ադրբէջանի ու Հայաստանի միջեւ


↳ 4

# ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆԻ *ՍՆՏՈՒԿԻՆ ՀԱՇԻՒԸ* ՎԻՊԱԿԸ ԵՒ Ի. ԴԱՐԱՍԿԻԶԲԻ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԳԻԾԸ

Հ. ԱԻԱԳԵԱՆ

## ՓՈՐՁ ԱՊԱԿԱՌՈՒՑՈՒՄԻ

**ա. Դասակարգային յարաբերութիւններ**

Թէքէեան հրաշալիօրէն ներկայացուցած է դրամատիրական ձեռնարկութեան մէջ գոյութիւն ունեցող թէ՛ բուրգային-ուղղահայեաց դասակարգային եւ թէ՛ հորիզոնական մարդկային յարաբերութիւնները:

Վիպակին մէջ պատկերուած են հինգ դասակարգային շերտեր.

1. Բուրգին վարը կը գտնուին բանուոր-գործաւորները, որոնք կազմուած են արաբ ֆելլահներէ (շուրջ 40 հոգի), գաւառացի հայերէ եւ հրեաներէ:

Թէքէեան նկարագրած է հայերուն եւ արաբներուն տարբերութիւնը: Արաբ ֆելլահները համբերատար են եւ հնազանդ, անոնք աշխատանքի դադարին հանգիստ կարգ կը կանգնին եւ դիւրութեամբ թոյլ կու տան պարտադիր խուզարկութիւնը հայ դռնապանին կողմէ: Մինչդեռ գաւառացի հայերը անհամբեր են, իրենց շարժուձեւերը ցոյց կու տան խուզարկութենէն արագօրէն ազատուելու ցանկութիւն:

Գործատունէն դուրս ելլելով, արաբները ծալլապատիկ կը նստին մայթին վրայ, աղտոտ անդրաշապիկներէն կը հանեն հացի կապը եւ անյագօրէն կ՚ուտեն հացը թացանի մէջ թաթխելով: Մինչդեռ հայերը կը դիմեն ամենամօտ նպարավաճառին:

2. Գործաւորներէն մէկ աստիճան բարձր կը գտնուի հայ դռնապան Միքայէլը: Ի տարբերութիւն գործաւորներէն, ան արդէն անուն ունի՝ Միքայէլ, եւ միայն իրեն յատուկ պաշտօն՝ դռնապանութիւն, այսինքն՝ երեւցող տիպարն է գործատան համակարգին մէջ, փոխանակ անանուն ու ընդհանրացուած գործաւորական շերտին:

Միքայէլ կը վարէ երկակի քաղաքականութիւն՝ դէպի վար եւ դէպի վեր:

Դէպի վար՝ գործաւորներուն հանդէպ, ցոյց կու տայ վճռականութիւն՝ երբ զանոնք խստօրէն կը խուզարկէ դարպասէն դուրս ելլելնուն ժամանակ:

Դէպի վեր՝ իր անմիջական ղեկավարներ Միսաքին եւ Յաբեթին հանդէպ կը ցուցաբերէ լիակատար հնազանդութիւն: Միսաքի սուր յանդիմանութիւնը կ՚ընդունի առանց առարկութեան, իսկ ջորեպանէն գողցած թուղթը յանձնելով Յաբեթին՝ կ՚ուզէ ցոյց տալ իր նուիրուածութիւնը անոր հանդէպ:

3. Դռնապանէն վեր եւ վարիչներէն վար կը գտնուի պաշտօնէութիւնը՝ մեծ մասամբ գաւառացի հայերէ կազմուած: Ի տարբերութիւն դռնապանէն, պաշտօնեաներուն եւ երկու վարիչ-տնօրէններուն յարաբերութիւնը այլազան է.

«Այդ յարաբերութիւնները երբեմն չափազանց ընտանի՝ երբ պաշտօնեայ մը յաջողած էր մասնաւոր ծառայութիւններով հաճելի ըլլալ կամ կերպով մը վախ ազդել մէկ կամ միւս տնօրէնին՝ մերթ ալ ձգտեալ վիճակ մը կը ստանային եւ նոյն իսկ կը փոխուէին յայտնապէս թշնամականի՝ վերածելով գործատունը կատարեալ ռազմադաշտի մը»:

4. Գործաւորներուն, դռնապանին եւ պաշտօնեաներուն վրայ կը գտնուին գործատան վարիչները՝ Յաբեթ եւ Միսաք: Անոնք չեն գլանար ամէն յարմար առիթով ծանր նախատինքներ ուղղել դռնապանին: Գալով գործաւորներուն, մէկ սիկարէթի մը գողութիւնը բաւարար կ՚ըլլայ զայն օրինապէս բանտ ղրկելու:

Յաբեթի եւ Միսաքի միջեւ միայն ձեւական համերաշխութիւն կը տիրէ: Անոնք ոխ ունին իրարու հանդէպ, քանզի իրաւունքները բաժնուած են կէս առ կէս:

5. Գագաթը կը գտնուին գործատան սեփականատէր եղբայրները՝ Սահակ եւ Կոմիտաս Արբալեանները: Անոնց միջեւ յարաբերութիւնը եղած է շահարկային, իսկ հարստութիւնը ալ աւելի բաժնած է զիրենք, նոյնիսկ բոլորովին հեռացուցած իրարմէ:

Սեփականատէրերուն եւ վարիչներուն միջեւ յարաբերութիւնը գաղտնիք մըն է՝ «քաղաքական բարդ խնդիր մը», ինչպէս հեգնութեամբ կը ներկայացնէ հեղինակը.

«Այս երկու եղբայրներուն [իմա՝ Յաբեթ եւ Միսաք, Հ.Ա.], ինչպէս նաեւ երկու մեծ եղբայրներուն [իմա՝ Սահակ եւ Կոմիտաս, Հ.Ա.] եւ անոնց մէն միոյն հետ ունեցած ներկայ յարաբերութիւններուն վիճակը քաղաքական բարդ խնդիր մըն էր, զոր պաշտօնեաներէն ոմանք ուշադիր լուծել կը փորձէին՝ ըստ այնմ անոր վրայ ուղղելու համար իրենց ընթացքը»:

**բ. Հայկական խառնակ ինքնութիւն**

Վիպակին սկիզբը Թէքէեան կը բարձրացնէ եգիպտահայոց պատկանելութեան հարցը: Մենք՝ եգիպտահայերս, հպարտ ենք որ Եգիպտոսի մէջ մեզի կը նոյնացնեն եւրոպացիներուն հետ. «Մինչ հայ եւ «ուրիշ Եւրոպացի» - ինչպէս միայն Եգիպտոսի մէջ կ՚ըսուի ի մեծ հպարտութիւն մեզի – գործաւորներ, ...»:

Ուրեմն, հպարտ ենք որ չենք պատկանիր տեղական մշակոյթին՝ որուն մէջ կ՚ապրինք, բայց փոխանակ հպարտանալու մեզմով՝ հայկականով, կը հպարտանանք եւրոպականով: Մրցակցութիւն երկու մշակոյթներու միջեւ՝ որոնք երկուքն ալ հայկական չեն, մերը չեն:

Բնականաբար, այս եւրոպականացումը, կամ գործատան բանեցուցած անգլիականութեան ճիգը, կեղծ է.

«Տարօրինակ հակասութեամբ մը՝ ամբողջ հաստատութեան վրայ անգղիականութեան ճիգ մը, սուտ երեւոյթ մը կար զոր ներքնապէս ոչինչ սակայն կ՚արդարացնէր, ո՛չ տնօրէնութիւնը՝ կազմուած Թրքախօս Յաբեթ աղայէն եւ միւսիւ Միսաքէն, ո՛չ պաշտօնէութիւնը՝ մեծ մասամբ հայ գաւառացի երիտասարդներ, ո՛չ ալ այս երկուքին իրարու հանդէպ վարմունքը որ յաճախ ամեն բան էր՝ բացի տնօրէնի եւ պաշտօնեայի ծանօթ սովորական վարմունքէն»:

Եւրոպականացումի հեգնանքներէն մէկն ալ Յաբեթի օգտագործած բառն է՝ *անբուլէ*, որ «կը հասկցուի, նշանակելով «պաշտօնեայ», այսինքն employé»:

**գ. Բարեգործութիւն**

Մեծ դրամատիրական բարեգործութիւնը մաս կը կազմէ դրամի շրջանառութեան ընթացքին՝ որուն օգուտները, ի վերջոյ, բազմապատկուած չափերով կը վերադառնան նուիրատուին: Թէքէեան աւելի քան խիստ է այս առումով: Կոմիտաս Արբալեան «իր փառասիրութիւնը [...] կը գոհացնէր հոս հոն պզտիկ նուէրներով, բարերարութիւններով»:

Պզտիկ բարերարութիւններ՝ իր կուտակած գերհարստութեան համեմատութեամբ: Կարեւոր է՝ որ Թէքէեան այս բարերարութեան օգուտը կը վերադարձնէ բարերարին, «իր փառասիրութիւնը» գոհացնելու համար:

Անաւարտ վիպակի վերջաւորութեան կը յայտնուի նաեւ բարեգործական Սնտուկը, որուն ինչ ըլլալը պէտք է բացայայտուէր յետագային, բայց, խորագիրէն (*Սնտուկին հաշիւը*) կարելի է հասկնալ, որ այդ Սնտուկը, որմէ՝ բարեգործութիւնը, պիտի ըլլար պատմութեան կորիզը:

## Ո՞ՒՐ Է ԽՆԴԻՐԸ

Գաղափարական պատճառներով չէ որ վիպակին հրատարակութիւնը դադրեցնել տրուած է: Գաղափարականին կարելի է դրաւոր պատասխանել:

Հիմքը՝ անձի թիրախաւորումն է: Գործատան բանուոր եւ պաշտօնէական դասակարգերը անձայն են՝ անանուն զանգուածներ: Անունն է պէտք՝ հրատարակութիւն մը դադրեցնելու համար: Դռնապան Միքայէլը անուն ունի, բայց ո՞վ հետաքրքրուած է իրմով: Երկու վարիչ-տնօրէններուն՝ Յաբեթին եւ Միսաքին գոյատեւութիւը կրնայ վնասուիլ ոչ թէ գրականութենէ մը բխած վտանգէն, այլ իրենց վերը գտնուող որոշում կայացնողներու քմայքէն: Յաբեթն ու Միսաքը դրամատէրեր չեն, իրենց ձեռքը չէ դրամագլուխը՝ որպէսզի դրամով սպառնալիքներ կարդան լրագիրին: Անոնց միակ մտահոգութիւնն է հաճոյ երեւալ գագաթին:

Բուրգին գագաթը կը գտնուին երկու դրամատէրերը՝ գործատան սեփականատէր եղբայրներ Սահակ եւ Կոմիտաս Արբալեանները: Թէքէեան կը թողու տեղեկութիւններ.

«Արբալեան եղբարց ծխախոտի եւ սիկարէթի գործատունը, «ամենէն ընդարձակը Եգիպտոսի մէջ»՝ ինչպէս կը յաւակնէին տուփերու պիտակներն եւ նամակագլուխները, տասնեակ մը տարիներ առաջ հիմնուած էր Գահիրէ՝ ինչպէս դարձեալ ցոյց կու տար մասնաւորապէս գործատան ճակատը շողացող խոշոր տառերով անգլիերէն արձանագրութիւնը «Հիմնեալ 1896-ին»»:

Վիպակի տպագրութեան ժամանակ, Եգիպտոսի մէջ գործուն ու ազդեցիկ էին սիկարէթի երեք հայ «եղբարք» գործարաններ՝ Մաթոսեան, Մելգոնեան եւ Կամսարական:

Իբրեւ «եղբարք», Մաթոսեան գործատունն է որ հիմնուած է 1896-ին, որմէ առաջ երկու եղբայրները՝ Յովհաննէս (աւագ) եւ Կարապետ (կրտսեր) կը գործէին իրարմէ անջատ: Մաթոսեանը եգիպտական մակարդակով ամենամեծ գործատունն էր: Սուրէն Պարթեւեան 1914-ին կու տայ բաւարար տեղեկութիւններ.

«Մաթոսեան Անանուն Ընկերութիւնը՝ Եգիպտոսի ծխախոտի արդիւնագործութեան մէջ առաջին տեղը կը բռնէ: Անոր հիմնադիրն է Ն. Վ. Յովհաննէս Պէյ Մաթոսեան, որ մօտաւորապէս 40 տարի առաջ ծխախոտի վաճառականութեամբ կը զբաղէր Սամսոնի, Պաֆրայի եւ Թօքատի մէջ: Վսեմ. Յովհաննէս Պէյ, 1882-ին, Աղեքսանդրիա, հիմը կը դնէր այսօրուան Մաթոսեան հսկայ Տան. իսկ 1886-ին, իր կրտսեր եղբայրը՝ Տիար Կարապետ Մաթոսեան կը հաստատէր Գահիրէի մէջ Կ. Մաթոսեան եւ Ընկ. Տունը, որ 1896-ին կ՚ըլլար Օ. եւ Կ. Մաթոսեան եւ Ընկերութիւն: 1899-ին՝ յաջողութեան ճամբուն մէջ արդէն յաղթական այս մեծ ձեռնարկը՝ խտիվական հրովարտակով մը կը ստանար իր վերջնական կազմը, դառնալով Մաթոսեան Անանուն Ընկերութիւնը, 100,000 ոսկիի դրամագլխով մը, որ երեք տարի յետոյ 159,000-ի կը բարձրանար»(3):

Մաթոսեանն էր՝ որ սիկարէթներու տուփերուն վրայ կը նշէր Թէքէեանի յիշատակած «ամենէն ընդարձակը Եգիպտոսի մէջ» պիտակաւորումը՝ «The Greatest Manufactory in Egypt of Turkish Tobacco and Egyptian Cigarettes»: Մելգոնեան իր արտադրութեան վրայ կը նշէր ընդամէնը «մեծ գործատուն»՝ «Great Manufactory of Oriental Tobacco and Egyptian Cigarettes»:

Հաւանաբար, Թէքէեանի վիպակը Մաթոսեան Անանուն Ընկերութեան մասին է, Եգիպտոսի ամենամեծ (ամենէն ընդարձակ) սիկարէթի ընկերութեան, գործարանին եւ երկու տնօրէններուն՝ Յովհաննէսի եւ Կարապետի մասին արտադրելով բացասական պատկեր:

Տակաւին այսքանն ալ կրնար ընդունելի ըլլալ՝ եթէ Նորին Վսեմութիւն Յովհաննէս Մաթոսեան մտած չըլլար բարեգործութեան խաղերուն մէջ, իր նուիրատուութիւններով չներկայանար իբրեւ հանրային դէմք: Այստեղ արդէն կարմիր գիծը քաշուած է: Եգիպտոսի թիւ 1 սիկարէթի գործարանի սեփականատէրը՝ իր տիրած եգիպտահայ միաւորներուն ընդմէջէն, կրնար իշխանութիւն բանեցնել:

Եթէ նոյնիսկ ենթադրութիւնս սխալ է, եւ Թէքէեանի գործող անձերը Մելգոնեանները կամ Կամսարականներն են, ոչ մէկ բան պիտի փոխուի վիպակի արգելումի պատճառներուն մէջ: Մելգոնեան եւ Կամսարական եւս հանրային դէմքեր են՝ մեծահարուստ բարեգործներ:

Պիտի աւելցնել նաեւ, որ *Լուսաբեր*ի մէջ Արփիարեան չունէր բացարձակ անկախութիւն: Ան կը վճարուէր վարչութեան կողմէ: Եւ շատ հաւանական է որ վարչութեան միջոցով կատարուած ըլլայ ճնշումը, մանաւանդ որ վիպակը դադրեցնելու յայտարարութիւնը ստորագրած է Վարչութիւնը:

Ուրեմն, հանրային դէմքի, առաւել եւս ազգային բարեգործ մեծահարուստի դիպչելը կարմիր գիծ մըն էր Ի. դարու սկիզբը:

(Շար. 2)

## ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

3. «Եգիպտոսի գերազանցութիւնը ծխախոտի արդիւնագործութեան մէջ», Սուրէն Պարթեւեան, *Եգիպտահայ տարեցոյցը*, Ա. տարի, 1914, Գահիրէ, էջ 179-180:

## ՈՎ Է ՊԱՀԵԼՈՒ ՍԻՒՆԻՔԸ ԵՒ ՈՒՐ ՊԷՏՔ Է ՈՒՂՂԵԼ ՈՒԺԸ

**ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ**

Հայաստանի Հանրութիւնը, հասարակական-քաղաքական դերակատարները շարունակում են աշխուժօրէն քննարկել Իրանի հոգեւոր առաջնորդի՝ Պուտինի, նաեւ Էրդողանի հետ հանդիպումներում հայ-իրանական սահմանի առնչութեամբ ասուած խօսքերը: Ինչպէս յայտնի է, Ալի Խամենէին նրանց հետ հանդիպումներում խօսել էր հայ-իրանական սահմանի փակման, կամ արգելափակման անթոյլատրելիութեան մասին: Այդ յայտարարութիւնը հերթական անգամ հիմք է տուել հայ հանրութեանը քննարկել, թէ Իրանն ինչի՞ է պատրաստ այդ անթոյլատրելին կամ իր համար կարմիր գիծը պահելու համար: Ոմանք համոզուած են, որ Իրանն է մեր միակ յոյսն ու Սիւնիքի փրկիչը, իսկ ոմանք շտապում են հասարակութեանը հաւաստիացնել, որ պէտք չէ տրուել էմոցիաների եւ ունենալ պատրանքներ:

Այն, որ հայ-իրանական սահմանը Թեհրանի համար ունի կարեւոր նշանակութիւն մի շարք առումներով, անկասկած է եւ յստակ, անգամ առանց Իրանի պաշտօնեաների կամ հոգեւոր առաջնորդի յայտարարութիւնների: Ամբողջ հարցն այն է, թէ Իրանը որքանով է ունակ քաղաքական-դիւանագիտական լծակներով պահպանել իր այդ կարմիր գիծը եւ դրանով օժանդակել Հայաստանին: Որովհետեւ մտածել, թէ Իրանը պատրաստ է ընդհուպ ռազմական ճանապարհով պահել այդ գիծը, թերեւս մոլորութիւն է, վտանգաւոր ինքնախաբէութիւն: Ըստ այդմ, Հայաստանի Հանրութեան համար բացարձակ անիմաստ եւ աւելորդ զբաղմունք է քննարկումը, թէ արդեօ՞ք Իրանը կը պահի, կը փրկի: Ինչպէս որ անիմաստ է որեւէ այլ սուբիեկտի վերաբերեալ այդպիսի քննարկում: Հայաստանն ունի մէկ գերխնդիր՝ հաշուել 4

## ՀԱՅ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՄԻՏՔԸ՝ ՊԱՐԱԼԻԶԻ ԵՆԹԱՐԿՈՒԱԾ. ԱՐՄԱՆ ԲԱԲԱՋԱՆԵԱՆ

Յանուն Հանրապետութեան կուսակցութեան նախագահ Արման Բաբաջանեանը Յուլիսի 21-ի ֆէյսբուքեան իր էջում գրել է.

«Հայաստանը, համայն հայ ժողովուրդը քաղաքական եւ հոգեբանական կոռուպցիայի մէջ է: Հայ քաղաքական միտքը՝ պարալիզի ենթարկուած:

«Հայաստանը պարտուել է, կորցրել է տարածքներ, կորցրել է հազարաւոր կեանքեր, իսկ հիմա զիջում է իր կամքը, միտքը, սթափութիւնը...

«Կրկին բարեկամներ եւ թշնամիներ ենք փնտրում այնտեղ որտեղ նրանք չեն եղել եւ չեն լինելու: Հասուն քաղաքական միտքը պէտք է ելնի այն կանխավարկածից, որ բոլորն են մեզ թշնամի, ում հետ յարաբերութիւններում մենք սուբիեկտ չենք (եւ չենք էլ ձգտում լինել), այլ օբիեկտ:

«Ադրբէջանը ժամանակին պարտուեց պատերազմում, զիջեց տարածքներ, բայց շատ արագ գիտակցեց, որ ուժը, կարողութիւնը ոչ թէ աշխարհից նեղանալու, ռազմավարական եւ ոչ ռազմավարական, բարեկամներ եւ թշնամիներ փնտրելու, դատապարտուածութեան մատնուելու, փակուելու, մեկուսանալու, ամփոփուելու մէջ է, այլ աշխարհի հետ ինտեգրուելու մէջ է, միջազգային տնտեսական եւ էներգետիկ անվտանգութեան համակարգերին կապուելու մէջ է:

«Այդ գիտակցման հետ եկաւ ուժ, գիտակցում եւ կարողութիւն:

«Այն ինչ մենք անում ենք բանական մտքի, հայկական սթափ, ռացիոնալ, պետական շահով առաջնորդուելու կարողականութիւն ձեռք բերելու անհրաժեշտ գիտակցման հետ քաղաքական անհամարժէքութեան, կամ Հայաստանի դէմ դիտաւորութեան դրսեւորում է»:

## 1 ՀԱՅԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐՈՒԹԵԱՆ «ՏՆԱՅԻՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ»

հնարաւոր կը լինի էապէս նպաստել գործող ժողովրդավարական իշխանութեան հետ դեմոկրատական կոնսենսուսի մէջ գտնուող ընդդիմադիր քաղաքական միաւորների ձեւաւորմանը եւ քաղաքական իշխանութեան կրողների սահմանադրական ռոտացիային: Արդիւնքում կ՚ամրապնդուի Հայաստանի քաղաքական համակարգի ժողովրդավարական ներուժն ու համակարգային կայունութիւնը՝ բացառելով պետական յեղաշրջումը կամ ընտրական ճանապարհով քաղաքական ռեժիմի ռեգրեսիւ փոփոխութիւնը:

Հայկական ժողովրդավարութեան յաջորդ չլուծուած խնդիրը խոշոր սեփականութեան էական մասի ոչ լեգիտիմ բնոյթն է:

Յայտնի է, որ սոցիալական բեւեռացումը ժողովրդավարութեան զարգացման հիմնական խոչընդոտներից մէկն է, իսկ սոցիալական բեւեռացման առաջնային պատճառներից է նիւթական բարիքների բաշխման գերկենտրոնացումը: Վերջինս բռնապետական քաղաքական ռեժիմի պարագայում գերազանցապէս ունենում է անօրինական բնոյթ, հանդիսանում է իշխանութեան տնտեսական յենարանը, ինչը բացասաբար է ազդում խոշոր սեփականատէրերի հանրային ընկալման վրայ: Արդիւնքում հասարակութիւնում առաջանում է հակասական վիճակ. ոչ լեգիտիմ համարուող խոշոր սեփականատէրերը հանդիսանում են երկրի խոշորագոյն գործատուները, իրականացնում են համապետական մասշտաբի տնտեսական նախագծեր, բայց միաժամանակ նրանց մասնակցութիւնը քաղաքականութեանը վտանգում է երկրի ժողովրդավարական ապագան:

Քաղաքական գործընթացների գերդրամայնացումը յանգեցնում է սոցիալական բեւեռացման փոխակերպմանը քաղաքական շերտաւորման՝ պետական իշխանութեան յաւակնորդ ուժերի եւ անհատների շրջանակը սահմանափակելով գերազանցապէս խոշոր ձեռնարկատէրերի հետ աֆիլացուած անձանցով: Անգամ եթէ ժողովրդավարական յեղափոխութիւնը յաջողել է, եւ աւտորիտար կառավարիչները հեռացուել են իշխանութիւնից, ոչ լեգիտիմ սեփականութեան բռնագանձման կամ առնուազն քաղաքականութեան դեկապիտալիզացիայի խնդիրը չլուծելը դանդաղ գործողութեան ռումբ է նոր ժողովրդավարական իշխանութեան համար: Ժողովրդի նոր ընտրեալներն ուժեղ են յեղափոխական կամ ապստամբական իրավիճակներում, երբ ժողովուրդն ուղղակիօրէն մասնակցում է քաղաքական գործընթացին, սակայն յետյեղափոխական շրջանում, երբ հասարակութիւնը բնականօրէն կրկին ֆրագմենտացւում է, մեծանում է իշխանական լծակները կորցրած խոշոր սեփականատէրերի ռեւանշի հնարաւորութիւնը, որոնք իշխանութեան վերատիրացման նպատակով ասպարէզ են նետում իրենց տրամադրութեան տակ գտնուող բոլոր միջոցները՝ տեղեկատուական մանիպուլեացիաներից մինչեւ սոցիալական շերտերի եւ խմբերի լոյալութեան ուղղակի կամ անուղղակի գնում (ընտրակաշառք, «ձեռնասուն» վերլուծաբանների եւ քաղաքական գործիչների ներգրաւում, գործող իշխանութեան պառակտմանն ուղղուած դաւադրութիւնների ֆինանսաւորում եւ այլն):

Ոչ լեգիտիմ դրամատէրերի սոցիալական, քաղաքական եւ իրաւական պատասխանատուութեան խնդիրը Հայաստանում կանգնած է առաւել սրութեամբ, քանի որ վերջիններիս բաւականին ընդարձակ մի սեգմենտ անթաքոյց ֆինանսաւորում է ոչ ժողովրդավարական ուժերի ռեստաւրացիան, որի հետեւանքով յեղափոխութեամբ հեռացուած բռնապետական ռեժիմը խորհրդարանում արդէն իսկ ներկայացուած է երկու խմբակցութեամբ, որոնք ունեն տիտղոսային (սահմանադրական) ընդդիմութեան կարգավիճակ:

Գործող իշխանութեան կողմից նախանշուած քաղաքական տեսլականը ենթադրում է խոշոր կապիտալի լեգիտիմացման երկփուլանի գործընթաց՝ նախկինում հարկային եւ մաքսային անօրինական արտօնութիւններից օգտուող գործարարների շրջանառութեան եւ շահոյթի յետայսու հաւասար հարկում՝ առանց նախկինում կուտակուած կարողութեան իրաւաչափութեանն անդրադառնալու եւ նախայեղափոխական շրջանում գործող պաշտօնատար անձանց գոյքի օրինականութեան ստուգում՝ հնարաւոր բռնագանձմամբ: Այսինքն՝ տարանջատում է կատարւում նախկինում արտօնեալ գործարարների եւ իրենց պաշտօնէական դիրքի չարաշահմամբ հարստացած եւ բիզնէս գործունէութիւն ծաւալող նախկին պաշտօնեաների միջեւ. սոցիալական համերաշխութեան հաստատման համար վերջիններիս վճարելիք «գինը» անհամեմատ բարձր է: Բռնագանձման չափը, ըստ գործող օրէնսդրութեան, պէտք է լինի ոչ պակաս, քան ողջ ունեցուածքի 75 տոկոսը՝ գոյքը կամաւոր վերադարձնելու պարագայում:

Անօրինական կապիտալի ազգայնացման ընթացակարգերը, հնարաւոր ներման սահմանները եւ կարգը, ինչպէս նաեւ խոշոր կապիտալի եւ հանրութեան հաշտեցման հետ կապուած մնացեալ հարցերը սահմանուած են յատուկ այդ նպատակով յետյեղափոխական շրջանում մշակուած եւ ընդունուած օրէնսդրութեամբ: Մնում է օրէնսդրութեան կիրառումը, որն օբիեկտիւ (համավարակ, պատերազմ) եւ սուբիեկտիւ (նախկին իշխող համակարգի հետ փոխկապակցուած դեռեւս գործող պաշտօնեաների դիմադրութիւն եւ սաբոտաժ, պաշտօնէական 4

ԽՈՀԵՐ

## ԼՐԱՏԱՐԸ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Այստեղ լրատարը պիտի ընդունիմ իբրեւ այն անձը, անհատը՝ որ լուրերը անձնապէս եւ բերանացի կը փոխանցէ իր աւագին կամ ղեկավարին:

Լրատարը ամէն տեղ է աշխարհի մէջ՝ Ֆրանսա, Ամերիկա, Հայաստան, Հայկական Սփիւռք: Ան կը գործէ հիմնարկներու մէջ՝ անհատական մակարդակով, այդ հիմնարկը ըլլալով պետութիւն, համալսարան, օփերայի թատրոն, եւ այլն:

Օրինակ, համալսարանի տնօրէն մը կրնայ ունենալ իր լրատարները՝ որոնք աշակերտներուն եւ ուսուցիչներուն լուրերը կը հասցնեն իրեն, կը տեղեկացնեն ով-ինչ կը խօսի իր մասին:

Պետութեան առաջնորդը կ՚ունենայ լրատարներ՝ որոնք անհատական մակարդակով իր ականջին կը հասցնեն նախարարներուն, պաշտօնեաներուն եւ ժողովուրդին լուրերը:

Լրատարը անձ մըն է՝ որ կը վայելէ իր աւագին վստահութիւնը:

Անշուշտ, լրատարը կրնայ նաեւ հասցնել այն լուրերը՝ որոնք նպաստաւոր են անձամբ իրեն, անընդհատ աւելցնելով իր հնազանդութեան (լոյալութեան) ցուցադրութեան աստիճանը աւագին առջեւ:

Լրատարը հնազանդ մըն է իր ղեկավարին կամ աւագին: Հնազանդ՝ անձին, բայց ոչ հիմնարկին, ուր կը գործէ: Հնազանդութիւն մը, որ անմիջապէս կը վերանայ՝ երբ կը փոխուի ղեկավարը: Այս պարագային, ան յաճախ կը փորձէ փոխել իր դիրքը, այս անգամ հնազանդութիւն խոստանալով նոր աւագին, վերջինին առջեւ բանալով հինին խայտառակութիւնները՝ որոնց բոլորին տեղեակ է մանրամասնօրէն: Միշտ չէ որ կը յաջողի, քանի որ նոր ղեկավարը պիտի նախընտրէ նոր լրատար մը, որ կազմաւորուած ըլլայ իր ձեռքին տակ:

Սփիւռքն ալ ունի իր լրատարները, անձեր՝ որոնք յաճախ շատ դիւրութեամբ կ՚ինքնաբացայայտուին: Միամիտ, մեծամիտ, մտազուրկ, սնապարծ անձեր՝ որոնք կը ձգտին իրենց գրաւած պաշտօններուն երկարաձգումը սփիւռքեան հիմնարկներուն մէջ:

Բայց լրատարն ալ կրնայ կաշառուիլ: Ոչ միայն հայերը: Բոլորը: Եթէ դուն, իբրեւ «ցած» դասակարգի անդամ, իրազեկ դառնաս լրատարի անձին, կրնաս խօսքդ այնպէս դասաւորել՝ որ քու ուզածդ տեղ հասնի: Կամ պարզապէս կրնաս լրատարը «չէզոքացնել» նուէրով ու դրամով: Լրատարը ամէն բան կրնայ ընել դրամի համար: Հապա աւագին հանդէպ ցուցաբերած հնազանդութիւնը ի՞նչ նպատակ կրնայ հետապնդել՝ եթէ ոչ դրամական եկամուտին երկարատեւութիւնը:

Կեղծ, արհեստական եւ խեղաթիւրուած մարդկային յարաբերութիւններ, որոնցմէ անպակաս է նաեւ մեր շատ սիրելի Սփիւռքը:




## 1 ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԵՏ ՍԿՍՈՒԱԾ ԳՈՐԾԸՆԹԱՑԸ ԵՌԱԿՈՂՄ Է, ԱՍԵԼ Է ԹՈՒՐՔԻԱՅԻ ԱՐՏԳՈՐԾՆԱԽԱՐԱՐԸ

հանդիպումներին՝ նշելով, որ դրանց շրջանակում որոշ համաձայնութիւններ են ձեռք բերուել. «Դրանցից մէկն առնչւում է ընդհանուր սահմանային յանձնաժողովի ստեղծմանը, որը վերաբերում է սահմանների ճշգրտմանը: Երկրորդը խաղաղութեան համապարփակ պայմանագրի շուրջ բանակցութիւններ սկսելու մասին է: Երրորդը տարածաշրջանային նախագծերի իրականացումն է, որը ներառում է նաեւ Զանգեզուրի միջանցքը:

«Քանի որ «Միջին միջանցքը» մեծ կարեւորութիւն է ստացել ռուս-ուկրաինական պատերազմի հետեւանքով, մի շարք հանդիպումներ են եղել Ադրբեջանի ու Միջին Ասիայի պետութիւններից Ուզբեկստանի, Ղազախստանի ներկայացուցիչների հետ, քանի որ այն կրիտիկական նշանակութիւն ունի առեւտրի համար: Այդ իսկ պատճառով այդ նախագծերի իրականացումը շատ կարեւոր է», - ասել է նա:

«[...] երբ հասնում ենք առարկայական խնդիրներին, Հայաստանից կոնկրէտ քայլեր չենք տեսնում: Դրանք վերաբերում են Զանգեզուրի միջանցքին, համապարփակ խաղաղութեան պայմանագրին եւ այլ նախագծերի», - ասել է Չաւուշօղլուն՝ յաւելելով, որ այդ հարցերում Հայաստանի իշխանութիւններից դրական քայլերի են սպասում:

«Մենք Հայաստանի հետ երկկողմ ձեւաչափով գործընթաց ենք սկսել, սակայն պէտք չէ մոռանալ, որ այն իրականում եռակողմ ձեւաչափ է: Մենք ամէն մի քայլ Ադրբեջանի հետ ենք համապատասխանեցնում՝ կ՚ուզի Հայաստանը, թէ ոչ, իրականութիւնը դա է: Մենք մի ժողովուրդ, երկու պետութիւն ենք: Վերջին իրողութիւնից անկախ՝ եթէ խօսում ենք տարածաշրջանում խաղաղութեան մասին, ապա տարածաշրջանի ամէն պետութիւն պէտք է քայլ անի, եւ այդ համատեքստում Հայաստանից եւս առարկայական քայլերի ենք սպասում՝ լինի Զանգեզուրի հարցը, լինի համապարփակ խաղաղութեան պայմանագիրը, թէ մեզ հետ կապուած հարցեր: Մենք ու Ադրբեջանը խաղաղութիւն ու կայունութիւն ենք ցանկանում, եւ դա Հայաստանն էլ պէտք է ցոյց տայ», - ասել է Չաւուշօղլուն:

## 3 ՈՎ Է ՊԱՀԵԼՈՒ ՍԻՒՆԻՔԸ ԵՒ ՈՒՐ ՊԷՏՔ Է ՈՒՂՂԵԼ,,,

այդ կապակցութեամբ Իրանի շահերը, համադրել այլ սուբիեկտների շահերի հետ, հաշուել կամ չափել Իրանի համար այլ կարեւոր ուղղութիւններով այդ երկրի շահերի հետ, հասկանալու համար, թէ Հայաստանը իր շահերը եւ իր կարմիր գծերը պաշտպանելու հարցում աջակցութեան ինչպիսի հաւանականութիւն ունի իրական ռեժիմում: Որովհետեւ զուտ պահելու կամ փրկելու իմաստով, Հայաստանի յոյսը կարող է լինել մէկը՝ Հայաստան-Հայութիւն: Ընդ որում, դա անելու տարբերակն էլ ոչ թէ խրոխտ յայտարարութիւններն են, լինի Սիւնիքի, թէ ինքնիշխանութեան մասին ընդհանրապէս, այլ Սիւնիքի կեանքը հայկական թելերով առաւելագոյնը պատելն ու բազմապատկելը, իհարկէ զուգահեռ փորձելով նաեւ աւելացնել այլ թելեր՝ իրանական, ռուսական, ամերիկեան, բրիտանական, ֆրանսիական, եւրոպական, արաբական: Սակայն այդ ամէնի առանցքում պէտք է լինեն ամուր հայկական հիւսուածքները, որոնք կը վերաբերեն ամենատարբեր ոլորտների: Քննարկումները, մտաւոր եւ ֆիզիկական ուժն ու էներգիան պէտք է ուղղուի այդ հարցի շուրջ քննարկումների ու լուծումների, այլ ոչ թէ որեւէ արտաքին ուժի իրական, թէ մտացածին «փրկիչ» լինել-չլինելու մասին խօսակցութիւնների եւ յաճախ անգամ տիեզերական մասշտաբի, սակայն գործնականում զաւեշտալի բնոյթի դատողութիւնների:

## 3 ՀԱՅԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐՈՒԹԵԱՆ «ՏՆԱՅԻՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ»

անփութութիւն) պատճառներով առայժմ խիստ թերի է: Բաւական է նշել, որ «Ապօրինի ծագում ունեցող գոյքի բռնագանձման մասին» օրէնքն ուժի մէջ է մտել 2020 թ.-ի Մայիսի 23-ին, եւ մինչ օրս որեւէ վարոյթ աւարտին չի հասցուել: Այս առումով խնդիրը մեծ մասամբ վարչարարական է, քանի որ քաղաքական իշխանութեան մակարդակում, ի դէմս խորհրդարանի եւ կառավարութեան, ընդունուել են անօրինական կապիտալի բռնագանձման ինստիտուտի կիրարկման համար անհրաժեշտ իրաւական գործիքները: Միւս կողմից, իշխանութիւնը պարտաւոր է առաւել ակնդէտ հետեւել իրաւակիրառ պրակտիկային եւ անել անհրաժեշտ հետեւութիւններ՝ այդ թւում այս կամ այն պատճառով թերացած պաշտօնատար անձանց պատասխանատուութեան ենթարկելու ձեւով: Հակառակ պարագայում, հասարակութիւն-խոշոր կապիտալիստներ կոնֆլիկտը թէկուզեւ անթեղուած վիճակում կը պահպանուի՝ ինչ-որ պահի հաստատապէս թէժանալու հեռանկարով՝ դրանից բխող ծանր սոցիալ-քաղաքական հետեւանքներով՝ ընդհուպ մինչեւ քաղաքացիական յուզումներ կամ պետական յեղաշրջում:

Հայկական յեղափոխութեան կապիտալիզացիայի ճանապարհին հանդիպող խոչընդոտները սնուցող «երակ» է պետական եւ համայնքային գործող ծառայութիւնը: Վերջինս պետական իշխանութեան համակարգի այն առանցքային հանգոյցն է, որը պատասխանատու է քաղաքական որոշումների կատարման եւ այդ թւում նախատեսուած բարեփոխումները կեանքի կոչելու համար: Պետական եւ համայնքային ծառայութեան ռեֆորմ չիրականացնելու պարագայում քաղաքական իշխանութիւնը կարող է ձախողել յեղափոխութեամբ թելադրուած բարեփոխումները, ինչի քաղաքական պատասխանատուութիւնը կը կրի իշխող քաղաքական թիմը, սակայն ռեֆորմների բուն վարչական պատասխանատուները, ըստ էութեան, ոչ մի պատասխանատուութիւն չեն կրի՝ դառնալով ինչպէս իշխող քաղաքական թիմի, այնպէս էլ երկրի ժողովրդավարացման գերեզմանափորը:

Արդէն իսկ նկատելի են բիւրոկրատիայի անթաքոյց եւ լատենտ դիմադրութեան բազմաթիւ դէպքեր, ինչի արդիւնքում անարդիւնաւէտ եւ դանդաղ է ընթանում ապօրինի գոյքի բռնագանձման գործընթացը, դատական իշխանութեան բարեփոխումները փոխանակ կոռումպացուած դատաւորների զտմանը յանգելուն՝ բաւարարւում են միայն կառուցուածքային եւ համակարգային ընթացիկ հարցերի հասցէագրմամբ, պետական կառավարման թուլյնացումը, չնայած քաղաքական եւ ռազմավարական մակարդակներում կայացուած որոշումներին, իրականացւում է հատուածական եւ տեխնիկապէս թերի: Կարելի է բերել բիւրոկրատիայի ռազմավարական թիրախների ոչ արդիւնաւէտ սպասարկման այլ օրինակներ եւս:

Առկայ իրավիճակի հիմնական պատճառները մի քանիսն են.

— քաղաքացիական ծառայողները, դատախազները, դատաւորները, իրաւապահ համակարգի այլ ներկայացուցիչներ գերազանցապէս պաշտօնի են նշանակուել նախորդ քաղաքական ռեժիմի օրօք եւ ունեն քաղաքական, տնտեսական, ընտանեկան փոխկապուածութիւն իշխանազրկուած վարչախմբի հետ եւ, հետեւապէս, նոր իրականութիւնում շահագրգռուած չեն սպասարկել այն քաղաքական օրակարգը, որն, ի վերջոյ, իրենց վերջնականապէս զրկելու է ապօրինի եկամուտներից,

— առանձին խնդիր է նաեւ պետական եւ համայնքային բիւրոկրատիայի քաղաքական նախասիրութիւնը, որի հետեւանքով վերջինիս էական մի սեգմենտ գիտակցուած սաբոտաժի է ենթարկում գործող իշխանութեան քաղաքական օրակարգի եւ ռազմավարութեան իրացման գործընթացը,

— ելնելով նախորդ քրէաօլիգարխիկ բռնապետական համակարգի տրամաբանութիւնից՝ պետական եւ համայնքային ծառայողների սելեկցիան հիմնուած էր ոչ թէ մասնագիտական ձեռնհասութեան, այլ քաղաքական լոյալութեան վրայ, ինչը լիովին բաւական էր իր բնոյթով էքստրակտիւ (կորզիչ) կառուցակարգերի (կաշառակերութիւն, հովանաւորչութիւն, պետական մակարդակով յանցաւոր համագործակցութիւն եւ այլն) գործողութեան համար,

— պետական եւ համայնքային ծառայութեան գործող օրէնսդրութիւնը մշակուած է այնպէս, որ գործնականում անհնար է այս ոլորտում իրականացնել համակարգային փոփոխութիւններ՝ բիւրոկրատիայի իրաւական պաշտպանուածութեան անոմալ ուժեղ երաշխիքների պատճառով, ինչը բիւրոկրատիայի մի ընդարձակ շրջանակի մօտ ստեղծում է անպատժելիութեան զգացում:

Ձեւաւորուել է այնպիսի մի իրավիճակ, երբ ոլորտը կամ պետական մարմինը ղեկավարող քաղաքական պաշտօնեան պարզապէս չի կարող ձեւաւորել համախոհների աշխատանքային թիմ կամ իրականացնել քիչ թէ շատ էական համակարգային ռեֆորմ իր ղեկավարած գերատեսչութիւնում, քանի որ գտնւում է անփոփոխելիութեան օրէնսդրական երաշխիքների պաշտպանութեան ներքոյ գտնուող բիւրոկրատական բազմամեայ կարծրացած ցանցից դուրս եւ ունենալով ֆորմալ լիազօրութիւններ՝ փաստացի չի կարողանում ներազդել կառավարչական անարդիւնաւէտ եւ արատաւոր իներցիայի վրայ:

Եթէ գործող իշխանութիւնը չգնայ այս ոլորտում արմատական փոփոխութիւնների ճանապարհով եւ չքանդի պետական եւ համայնքային բիւրոկրատիայի կոռումպացուած կլանային ցանցը, ապա Հայաստանի ժողովրդավարութեան եւ արդիւնաւէտ կառավարման յաւակնոտ օրակարգը կարող է ձախողուել: Դրա համար անհրաժեշտ է իրականացնել պետական համակարգի ամբողջական վեթինգ՝ հիմք դնելով անձնական եւ մասնագիտական միանգամայն նոր որակներով մերիտոկրատական բիւրոկրատիայի սաղմնաւորմանը: Նորացուած համակարգում պէտք է մնան միայն այն ծառայողները, որոնք համապատասխանում են բարեվարքութեան եւ ձեռնհասութեան առաջադրուած պահանջներին, իսկ համակարգը լքածների փոխարէն պէտք է աշխատանքի ընդունուեն թարմ եւ նոր իրականութեանը համահունչ յաւակնոտ կադրեր:

Վերոնշեալ խնդիրները կանգնած են հայկական յեղափոխութեան վերջնական յաջողման եւ ժողովրդավարական ու իրաւական պետութեան անշրջելիութեան ինստիտուցիոնալ ապահովման ճանապարհին: Միայն համակարգային եւ փաթեթային լուծումները կարող են երաշխաւորել յեղափոխական իշխանութեան յաւակնոտ քաղաքական օրակարգի կենսագործումը: Հակառակ պարագայում հայկական ժողովրդավարութիւնը կը շարունակի հիմնուած լինել անձերի, այլ ոչ թէ ինստիտուտների վրայ, ինչը միջնաժամկէտ եւ երկարաժամկէտ հեռանկարում վտանգում է 2018 թ.-ին հռչակուած արժէքների եւ նպատակների կենսունակութիւնը:

Գործող քաղաքական թիմն այլեւս ժամանակ չունի, եւ անյետաձգելի վիրահատական միջամտութիւնը մնում է իշխանազրկուած «խորքային պետութեան» սարդոստայնը պատռելու եւ ժողովրդավարութիւնն ու իրաւունքի գերակայութիւնն ինստիտուցիոնալ ռելսերի վրայ դնելու միակ ճանապարհը:

***Անալիտիկոն***

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1921 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 11 ՕԳՈՍՏՈՍ 2022 ՀԱՏԸ ՁԵՌ.ԲԷ 75 Ե. ԴՀԿ. عدد رقم ١٩٢١ الخميس ١١ أغسطس ٢٠٢٢


## *ՓՈԹՈՐԻԿ ԿՈՎԿԱՍՈՒՄ*. ԼՈՅՍ Է ՏԵՍԵԼ 44-ՕՐԵԱՅ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ ԳՐՔԻ ՀԱՅԵՐԷՆԸ

**ԿԱՐԷՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ**

Newmag հրատարակչատունը լոյս է ընծայել *Փոթորիկ Կովկասում* գրքի հայերէն թարգմանութիւնը:

*Փոթորիկ Կովկասում* գիրքը 2020-ի Ղարաբաղեան պատերազմի մասին ռուս, հայ, թուրք եւ միջազգային փորձագէտների յօդուածների ժողովածու է, որը 2021-ին հրատարակել է Մոսկուայի Ռազմավարութիւնների եւ տեխնոլոգիաների կենտրոնը՝ Ռուսլան Պուխովի ղեկավարութեամբ: Գրքի հայերէն հրատարակութիւնը հովանաւորել է Թուֆենկեան հիմնադրամը:

Ինը յօդուածների տասներկու հեղինակները քաղաքագէտներ եւ ռազմական փորձագէտներ են, որոնք անդրադառնում են Ղարաբաղեան խնդրի տարբեր անկիւնների, մարտական գործողութիւնների ընթացքին եւ խնդիրներին, տարածաշրջանային զարգացումներին:

Պատմական սոցիոլոգ Գէորգի Դերլուգեանը, վերլուծելով պատերազմին նախորդած մի քանի հարիւրամեակի մակրոքաղաքական զարգացումները, անդրադառնում է նաեւ պատերազմի արդիւնքներին ու շեշտում, որ յաղթանակած Ադրբէջանի տարածքում արդէն չորս բանակ կայ.

«Ինչպէ՞ս է այժմ Բաքուն պատրաստւում իր տարածքում միաւորել չորս բանակ՝ իր սեփականը, թուրք ռազմական փորձագէտներին, ռուս խաղաղապահներին ու հայկական կազմաւորումների մնացորդներին: Առանձին հարց է, թէ Իրանը ինչ կարող է ձեռնարկել՝ ի պատասխան Ադրբէջանում խսրայէլցիների ներկայութեան»:

Ռուս քաղաքագէտ Սերգէյ Մարկեդոնովը վերլուծում է 2020-ի պատերազմի արդիւնքները տարածաշրջանի համար: Նա նկատում է, որ ընդհանուր առմամբ, Անկարայի դիրքերի ամրապնդումը, բայց առանց Ռուսաստանի՝ Կովկասում ամբողջական թուլացման, ուժեղացնում է մերձաւորարեւելեան դինամիկայի ազդեցութիւնը կովկասեան գործընթացների վրայ:

Քաղաքագէտ Ալեքսանդր Իսկանդարեանը եւս անդրադառնում է մերձաւորարեւելեան զարգացումների՝ հարաւկովկասեան տարածաշրջանի վրայ յարաճուն ազդեցութեան խնդրին.

«Հայկական լրատուամիջոցներ ընթերցելիս տպաւորութիւն է, թէ Հայաստանը գտնւում է Ատլանտեան օվկիանոսում ինչ-որ տեղ՝ Բրիւսէլի, Վաշինգտոնի եւ Պետերբուրգի միջեւ: Մոսուլի, Աֆրինի կամ Թաւրիզի իրադարձութիւնների մասին մամուլում գրեթէ ոչինչ գրուած չէ: Իսկ եթէ գրուած է, ապա արեւմըտեան կամ ռուսական լրատուամիջոցներից թարգմանուած նիւթերի տեսքով: Կարող է թուալ, թէ Հայաստանից Բրիւսէլ կամ նոյնիսկ Վլադիվոստոկ շատ աւելի մօտ է, քան Աֆրին կամ Իդլիբ: Հոգեբանօրէն դա այդպէս է, բայց ուղիղ հեռաւորութիւնը Հայաստանից մինչեւ Սիրիայի կամ Իրաքի հիւսիսային շրջաններ աւելի փոքր է, քան Մոսկուայից Պետերբուրգ հեռաւորութիւնը: Մենթալ առումով Հայաստանը չի ապրում այն տարածաշրջանում, որտեղ աշխարհագրօրէն գտնւում է»:

Մոսկուայի Ռազմավարութիւնների եւ տեխնոլոգիաների վերլուծութեան կենտրոնի տնօրէն Ռուսլան Պուխովը եւ նրա տեղակալ Կոնստանտին Մակիենկոն, մանրամասն վերլուծելով պատերազմի ընթացքը, ակնարկում են, որ Ռուսաստանը Ղարաբաղեան երկրորդ պատերազմում պարտուած կողմ է, քանի որ նրա աւանդական ազդեցութեան տիրոյթում՝ յետխորհրդային տարածքում, Թուրքիան միջամտութիւն է ունեցել եւ յաղթանակ տարել Ռուսաստանի դաշնակից Հայաստանի նկատմամբ:

Պուխովի եւ Մակիենկոյի տեսակէտը չի կիսում Թուրք վերլուծաբան Քերիմ Հասը՝ նշելով, որ պատերազմից յետոյ Անկարան, չնայած այդքան մեծ մասնակցութեանը պատերազմին, դուրս թողնուեց բանակցութիւնների սեղանից, որն անցաւ Կրեմլի հովանու ներքոյ: Աւելին, Ղարաբաղում ռուս խաղաղապահներ տեղակայուեցին, իսկ թուրքերը սահմանափակուեցին միայն Աղդամում գործող համատեղ մշտադիտարկման կենտրոնով:

«Չի կարելի հաշուի չառնել նաեւ այսպէս կոչուած՝ Փաշինեանի գործօնը, որը մեծապէս կանխորոշեց ադրբէջանա-հայկական հակամարտութեանը թուրքական մասնակցութեան վճռականութիւնը: Մի կողմից, թէ՛ Թուրքիան, թէ՛ Ադրբէջանը ի դէմս Նիկոլ Փաշինեանի կերպարի տեսան ռուս-հայկական յարաբերութիւնների զարգացման հեռանկարի տեսանկիւնից Մոսկուայի շահերին չհամապատասխանող առաջնորդի: Հաշուի առնելով Հայաստանի քաղաքական նոր ղեկավարութեան գործողութիւնները 2018-ից յետոյ՝ արեւմտեան ինստիտուտների հետ համագործակցութեան ընդլայնման օգտին քաղաքական վեկտորի փոփոխութիւնը, ռուսական հեռուստաալիքների հեռարձակման սահմանափակումը, ինչպէս նաեւ Ռուսաստանի նկատմամբ վարուող քաղաքականութեան ընդհանուր մթնոլորտը՝ Անկարան եւ Բաքուն կանխագուշակել էին, որ Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան բաց փուլի դէպքում Կրեմլի աջակցութիւնը Փաշինեանին զուսպ է լինելու: Միւս կողմից, ղարաբաղեան պատերազմի վերաբերեալ իր դիրքորոշման մէջ Ռուսաստանի ղեկավարութիւնը կարող էր նաեւ հնարաւորութիւն տեսնել Հայաստանի քաղաքական վերնախաւին դաս տալու եւ որոշ առումով թուլացնելու նրա դիրքերը ներքաղաքական դաշտում», - գրում է Քերիմ Հասը:

Լէոնիդ Ներսիսեանը եւ Մարկ Քազալեթն անդրադառնում են պատերազմում ԱԹՍ-ների լայնածաւալ կիրառման խնդրին: Ընդունելով Ադրբէջանի ակնյայտ առաւելութիւնը օդում՝ նրանք ընդգծում են նաեւ, որ հայկական հակաօդային Պաշտպանութիւնն (ՀՕՊ) անպատրաստ էր դրանց դէմ պայքարելուն, եւ հայկական հրամանատարութիւնը պատշաճ չէր ուսումնասիրել անօդաչուների կիրառման այլ դէպքերը (օրինակ՝ Լիբիայում, Սիրիայում,

↳ 4

ԱՐՑԱԽ

## ՀԱՅ-ԱԶԷՐՊԷՅՃԱՆԱԿԱՆ ԼԱՐՈՒԱԾՈՒԹԻՒՆ

Օգոստոս 1-էն սկսեալ կը լարուի Արցախ-Ազըրպէյճան շփումի գիծին իրավիճակը: Անկէ քանի մը օր առաջ, Ազըրպէյճան ռուս խաղաղապահներու միջոցով պահանջք ներկայացուցած էր Ղարաբաղ-Հայաստան երթեւեկութիւնը կազմակերպել նոր, Լաչինը շրջանցող ճամբայով, Նոյեմբեր 9-ի պայմանագիրին մէջ նշուած ժամկէտէն շատ աւելի կանուխ: Երեւան ասիկա համարած էր անօրինական:

Օգոստոս 3-ի առաւօտեան, ազըրպէյճանական զինուած ուժերը կը յարձակին եւ կը թիրախաւորեն Արցախի բանակի մարտական դիրքերը, կիրառելով ականանետեր, նռնականետեր եւ հարուածային ԱԹՍ-ներ, ինչպէս նաեւ տարբեր տրամաչափով հրաձգային զինատեսակներ:

Հայկական կողմը ունի 2 զոհ, իսկ վիրաւորներուն թիւը հասած է 19-ի: Ղարաբաղի մէջ կը յայտարարուի մասնակի զօրահաւաք:

Ռուսական խաղաղապահ զօրախումբը կը հաստատէ Օգոստոս 3-ին ազըրպէյճանական զինուժի կողմէ հրադադարի խախտումը չորս անգամ՝ Սարիբաբա եւ Բուզդուխ լեռներու շրջանին:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՓԱՇԻՆԵԱՆԸ ՆԵՐԿԱՅԱՑՐԵՑ ԼՂ ԱՆՎՏԱՆԳՈՒԹԵԱՆ ԿԱՐԵՒՈՐԱԳՈՅՆ ԻՆՍՏԻՏՈՒՏՆԵՐԸ, ՈՐՈՆՔ ԱՄՐԱԳՐՈՒԱԾ ԵՆ ԵՌԱԿՈՂՄ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԵԱՄԲ

Որքան էլ քննադատուի 2020 թուականի Նոյեմբերի 9-ի եռակողմ յայտարարութիւնը, դրանում ԼՂ անվտանգութեան կարեւոր ինստիտուտներ են ամրագրուած: Ինչպէս յայտնում է *Արմենպրէսը*, այս մասին Օգոստոսի 4-ի կառավարութեան նիստին յայտարարեց Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանը:

«Նախ, Լեռնային Ղարաբաղի միաւորի արձանագրումն է տեղի ունեցել, ինչը մինչեւ հիմա փորձում է ժխտել Ադրբէջանը՝ ասելով, թէ Լեռնային Ղարաբաղ գոյութիւն չունի: Ադրբէջանից հնչող նմանատիպ յայտարարութիւններն, ի դէպ, եռակողմ յայտարարութեան կոպտագոյն խախտում են:

«Երկրորդը, արձանագրուել է, որ գոյութիւն ունի շփման գիծ: Եւ երրորդը, Լաչինի միջանցք, որն ապահովում է Լեռնային Ղարաբաղի կապը Հայաստանի հետ: Ըստ էութեան, այս երեք ինստիտուտների դէմ է Ադրբէջանի այսօրուայ պայքարը, եւ մեր ակնկալիքն է, որ ինչպէս եւ նախատեսուած է եռակողմ յայտարարութեամբ՝ Ռուսաստանի Դաշնութեան խաղաղապահ զօրախումբն Ադրբէջանին հնարաւորութիւն չտայ խաթարելու եռակողմ յայտարարութեամբ արձանագրուած այս հիմնարար ինստիտուտները», - ասաց Փաշինեանը:

Նա նշեց, որ Ադրբէջանն այսօր անընդհատ խօսում է ԼՂ պաշտպանութեան բանակի մասին՝ թէ ինչու են նրանք տեղակայուած շփման գծի երկայնքով: «Եթէ Ռուսաստանի խաղաղապահ զօրախումբը, Ադրբէջանը երաշխաւորի շփման գծի անձեռնմխելիութիւնը, Լեռնային Ղարաբաղի պաշտպանութեան բանակը, կարծում եմ, մարտական հերթապահութիւն իրականացնելու անհրաժեշտութիւն չի ունենայ: Նման անհրաժեշտութիւն առաջացել է միայն այն բանից յետոյ, երբ Ադրբէջանը հրաժարուել է ստորագրել խաղաղապահների մանդատը եւ շարունակաբար խախտում է 2020 թուականի Նոյեմբերի 9-ի եռակողմ յայտարարութեան դրոյթները՝ այդ թւում բոլոր ռազմական գործողութիւնների դադարեցման մասին, որը վերը նշուած փաստաթղթի բուն էութիւնն է», - յայտարարեց վարչապետը:

Նա նշեց, որ Ադրբէջանը շարունակաբար շահարկում է նաեւ ԼՂ-ում Հայաստանի զինուած ուժերի ներկայութիւնը: «Պիտի արձանագրեմ պաշտօնապէս, որ Լեռնային Ղարաբաղում Հայաստանի Հանրապետութեան զինծառայող չկայ», - յայտարարեց նա:

# ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆԻ *ՍՆՏՈՒԿԻՆ ՀԱՇԻՒԸ* ՎԻՊԱԿԸ ԵՒ Ի. ԴԱՐԱՍԿԻԶԲԻ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԳԻԾԸ

Հ. ԱԻԱԳԵԱՆ

## ՀԱՄԵՄԱՏՈՒԹԻՒՆ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՆԱԽԱՏԻՊԵՐՈՒ ՀԵՏ

Իբրեւ համեմատական նմոյշներ, մինչեւ 1907 թուականը եգիպտահայոց մէջ կարելի է առանձնացընել գրական պարտադիր դադարեցումի եւ մեծահարուստ հանրային դէմքի քննադատութեան մէկական դէպքեր:

**1. Գրական դադարեցում**

1898-ին, Լոնտոնի *Նոր կեանք*ին համար Միքայէլ Կիւրճեան Աղեքսանդրիայէն ղրկած էր *Մարտիկ աղա* վէպը, որ հրատարակուեցաւ յաջորդական շարունակութիւններով: Զայն կարելի է նկատել յետ-պարոնեանական գլխաւոր փորձը երգիծանկարելու հանրային դէմքեր: Այդ բոլոր դէմքերը եգիպտահայեր էին: Գրութեան համար Կիւրճեան կը ծածկէ թէ՛ իր անունը՝ հանդէս գալով Պայրոյր գրչանունով, եւ թէ՛ տիպարներուն բուն անունները: Բայց տիպարներուն գծագրութիւնը ըրած է այնքան կենդանի՝ որ Եգիպտոսի ընթերցողները ճանչցած են իւրաքանչիւրը, առանց կարենալու բացայայտել գրողին ինքնութիւնը, չմոռնալով՝ որ Կիւրճեան այդ ժամանակ տակաւին սկսնակ մըն էր գրականութեան մէջ:

Վէպը աղմուկ կը բարձրացնէ եգիպտահայութեան մօտ: Օտեան կը նկարագրէ.

«Ահռելի փոթորիկ մըն էր փրթաւ քաղքին մէջ: Տուները, սրճարանները, գբօսավայրերը, ամէն մարդ *Մարտիկ աղայ*ով կը զբաղէր: Անոնք որ տակաւին վէպին մէջ չէին երեւցած՝ սրտատրոփ անձկութեամբ կը սպասէին իրենց կարգին»(4):

Տպագրութիւնը կանգնեցնելու փորձը՝ նախաձեռնըւած *Նոր կեանքի* կուսակցութեան ներսէն, կը պսակուի յաջողութեամբ: *Նոր կեանք* օրկանն էր Վերակազմեալ Հնչակեաններուն եւ այդ ժամանակ զայն կը խմբագրէր Լեւոն Բաշալեան: Կանգնեցնելու փորձը կու գար կուսակցութեան Եգիպտոսի ներկայացուցիչներէն մէկուն՝ հարուստ դասակարգին յարող Լեւոն Մկրտիչեանի կողմէ, ինչպէս կը տեղեկացնէ Օտեան.

«Լեւոն Մկրտիչեան, իբրեւ [Վերակազմեալ] Հնչակեան պետերէն մին, դիմում ըրած էր Լոնտոն հեղինակին իսկական անունը իմանալու համար, սակայն Բաշալեան մերժած էր յայտնելու: Մկրտչեան պահանջած էր որ վէպին հրատարակութիւնը դադրեցնեն, Արփիար եւ Բաշալեան ընդիմացած էին ասոր: Մկրտիչեան հեռագրով հրահանգ տուած էր դարձեալ վէպը դադրեցնելու, սակայն շարունակուած էր: Ասոր վրայ Մկրտիչեան սպառնացեր էր հրաժարելու եւ կուսակցութենէն քաշուելու: [...]

«Եւ սակայն այս վէպին յարուցած գայթակղութիւնը այնքա՜ն մեծ էր որ ի վերջոյ *Նոր կեանք* ստիպուեցաւ զայն կարճ կապել, ամբողջ գլուխներ կրճատելով, այնպէս որ հազիւ թէ կէսը հրատարակուած է»(5):

Յակոբ Օշական լոկ կուսակցական կիրքերուն կը վերագրէ բարձրացած աղմուկը.

«Զիս անտարբեր կը ձգեն անշուշտ աղմուկը այդ գործին վրայ, իրադարձութիւնները, որոնք այդ օրերու կուսակցական կիրքերուն կը մնան ենթակայ»(6):

*Մարտիկ աղայ*ին ազդեցութիւնը կ՚ըլլայ երկարատեւ, դարձեալ դիտել կու տայ Օտեան.

«Տարիներ անցնելէ ետքն ալ Պարոյրի դէմ գրգռումը չանցաւ Աղեքսանդրիոյ Հայ գաղութին մէջ, եւ ի վերջոյ, երբ իմացուեցաւ անոր իսկական անունը, ճշմարիտ հալածանք մը սկսաւ Միքայէլ Կիւրճեանի դէմ, այն աստիճան որ խեղճը, քաղաքին մէջ հանգիստ ապրելու համար, ստիպուեցաւ հրապարակաւ յայտարարել թէ *Մարտիկ աղա*ն գրելով գրական *ճախա* մը ընել ուզած էր որուն համար կը զղջար»(7):

*Մարտիկ աղա*ն երգիծանկար մըն է ամէն տեսակ մարդոց: Կիւրճեան նոյնիսկ երգիծանկարած է ինքզինքը՝ Քուրջեան անունով: Բայց վէպի տպագրութեան կանգնեցումը Քուրջեանի տեսակ տիպարներուն պատճառով պիտի չըլլար հարկաւ:

Արդարեւ, ան դադրեցաւ՝ առանց կիսատ մնալու տպաւորութիւնը թողելու: Ան կը կարդացուի իբրեւ աւարտուն գրութիւն, իսկ անաւարտութեան մասին իրազեկ կը դառնանք շնորհիւ Օտեանի տեղեկութեան: Անաւարտութեան գիտակցութիւնն է որ մեզի համար ան կը դառնայ անաւարտ:

**2. Հանրային մեծահարուստի քննադատութիւն**

Ոչ գրական, այլ հրապարակագրական ոլորտին մէջ, Երուանդ Օտեան 1902-ին քննադատած էր տեղականօրէն գործունեայ ազգային բարեգործ մեծահարուստ ընտանիք մը՝ բաւական յաջող ելքով:

Այսպէս, դարասկիզբին աղեքսանդրիահայութեան մէջ տեղի կ՚ունենար ժողովրդական շարժում մը՝ որ ծանօթ դարձաւ Սահմանադրական Պայքար անունով: Թերթերը լայնօրէն արձագանգեցին տարիներ տեւած շարժումին՝ կողմ եւ դէմ դիրքերով: Կողմերէն մէկն էր Սմբատ Բիւրատի *Փիւնիկ*ը: Այս պայքարին հետ կապուած, *Փիւնիկ*ի մէջ 1902-ին Օտեան կը գրէր.

«Րէյիզեանները իրենց ընկերական դիրքով շատ հեռու մնացած են հայկական տարրէն, անտեղեակ են մեր եկեղեցական ու դպրոցական խնդիրներուն, ազգային հարցերով չեն հետաքրքրուած եւ նոյն իսկ տեսակ մը չտես զէվզէկութեամբ արհամարհանք մը ցոյց տուած են իրենց ցեղին նկատմամբ, վերջապէս անօգուտ են ու անյարմար իբրեւ Թաղական Խորհրդի անդամ:

«Իրենց բոլոր տաղանդը, բոլոր յատկութիւնները, բոլոր բարեմասնութիւնները Թաղային խորհրդարանին մէջ կը թափին կ՚իյնան իբրեւ սիրամարգի կեղծ փետուրներ եւ չեմ վարանիր ըսելու որ պարզ բանուոր մը հայ տարրին հետ իր ունեցած շփմամբը աւելի ներկայանալի, գուցէ աւելի օգտակար Թաղական ընտրելի մըն է քան Րէյիզեան պէյ մը եւրոպական շրջանակներու մէջ իր մշակած յարաբերութիւններովը»(8):

Նախադէպը չունեցող քննադատութիւն մը եգիպտահայ մեծաւորի նկատմամբ: Տասը տարի ետք՝ 1912-ին, Օտեան պիտի յուշագրէր յօդուածին արդիւնքը.

«Հազիւ քանի մը օրէ ի վեր Աղեքսանդրիա հասած՝ ես ալ նետուեցայ պայքարին մէջ Սմբատ Բիւրատի *Փիւնիկ*ին մէջ ամենաբուռն յօդուած մը հրատարակելով Րէյիզեան պէյերուն դէմ, որոնց մին խնամակալութեան դեր նախագահ եւ միւսն ալ անդամ էր:

«Յօդուածս մեծ իրարանցում մը առաջ բերաւ: Առաջին անգամ էր որ Եգիպտահայ պէյերու դէմ այդ ոճով բան մը կը գրուէր եւ ամենէն կատաղի սահմանադրականները ափ ի բերան մնացին:

«Նոյն իսկ քանի մը երիտասարդներ ուզեցին այս առթիւ ոսկի գրիչ մը նուիրել ինծի: Գեղեցիկ մտածում որ, ափսո՜ս չիրագործուեցաւ»(9):

*Փիւնիկ*ի մէջ նման սուր եւ ուղղակի քննադատութիւն Սմբատ Բիւրատ չէ վարանած հրատարակել: Բիւրատ ինքը *Փիւնիկ*ն էր, ամէն բան էր այնտեղ, ի տարբերութիւն *Լուսաբեր*էն, ուր Արփիարեան չունէր լիակատար տնօրինութիւն:

Միւս կարեւոր կէտը այն էր՝ որ Օտեանի քննադատութիւնը կու գար պայքարի մը եւ ժողովրդական շարժումի մը համատեղ՝ իբրեւ մասնակցողական գրութիւն, եւ այս ծիրին մէջ պիտի ունենար ամուր յենակ սահմանադրութեան կողմնակիցներէն, մինչդեռ Թէքէեանի վիպակը կը ներկայացնէր իրականութիւն մը՝ որուն շուրջ հանրային կարծիք չէր կազմուած: Թէքէեան պիտի չունենար այն յենակիցը՝ որ վիպակին շարունակութիւնը դարձնէր կարելի: Վիպակը մաս չէր կազմեր աղմուկի մը:

Օտեան կը մասնակցէր ճշգրիտ պահու տրամադրութեան, հրատարակելով ոչ-շարունակելի մէկ յօդուած մը, մինչ Թէքէեան քննականօրէն կը մեկնաբանէր դրամատիրական ձեռնարկի մը մէջ գոյութիւն ունեցող ընդհանուր երեւոյթ մը, շարունակելի գրութեամբ: Թէեւ երկուքին առարկան նոյնն էր՝ տեղականօրէն գործունեայ ազգային մեծահարուստի քննադատութիւնը: Համաձայն իմաստներուն, Րէյիզեանները կարելի է փոխել ուրիշ պէյերով, որմէ ետք ազգային խնամակալութիւնը իր տեղը պիտի գտնէ, մինչդեռ Արբալեան-Մաթոսեանի փոխարինումէն ետք գործարանի մարդոց յարաբերութիւնները պիտի մնային նոյնը:

**Համեմատութիւն**

Բոլոր պարագաներուն, յիշեալ երեք քննադատութիւններուն կորիզը եգիպտահայ հանրային դէմքն է, որուն զգալի մասը կը ներկայացնէ հարուստ դասակարգը:

1898-ին, գրական շարունակական գործ մը՝ *Մարտիկ աղա*, կը յառաջացնէ հետաքրքրութիւն, կը շարժէ լայն հասարակութիւնը, եւ անկախ հասարակական կամքէն՝ հարուստ վերնախաւը կը յաջողի զայն կանգնեցնել, որոշ պայքարէ մը ետք, յենարան ունենալով նաեւ կուսակցական ներքին յարաբերութիւնները:

1902-ին, Օտեանի հրապարակագրական մէկ յօդուած մը կը յենուի Սահմանադրական Պայքարի արդէն շարժում ստեղծած ու աղմուկ բարձրացուցած իրադարձութեան վրայ, ինքն իր կողմէ յառաջացնելով համակրանք ու հակակրանք:

1907-ին, գրական շարունակական գործ մը՝ *Սնտուկին հաշիւը*, ո՛չ կը յենուի հասարակական շարժումի վրայ եւ ո՛չ ալ ժամանակ կ՚ունենայ հասարակութեան ուշադրութիւնը գրաւել, քանզի վերնախաւը մեծ արագութեամբ համախմբուելով, կը յաջողի լռեցնել զայն:

Հետաքրքրական է, որ թէ՛ Կիւրճեան եւ թէ՛ Թէքէեան յետագային չփորձեցին տպագրել իրենց անաւարտ մնացած գործերը: Գոնէ Կիւրճեանի մասին գիտենք, որ բաւական ուշ՝ երբ *Մարտիկ աղայ*ին տիպարները այլեւս գոյութիւն չունէին, ինքն է որ մերժած է անոր տպագրութիւնը:

Հանրային հարուստ դէմքի քննադատութեան առումով, ի տարբերութիւն Օտեանի հրապարակագրական յիշեալ յօդուածէն՝ որ ընթացող աղմկարար շարժումի մը մաս կը կազմէր եւ իմաստով կը վերջանար ինքն իր մէջ, *Սնտուկին հաշիւը* յաջող ելք ունենալու համար պէտք է ճեղքէր ժամանակի դանդաղութիւնը գործնական եւ գաղափարական տեսանկիւններէ: Գործնականօրէն՝ պէտք է շարունակուէր անոր տպագրութիւնը եռօրեային մէջ: Գաղափարապէս՝ դժուար էր անմիջապէս ընկալել հրապարակի վրայ չդրուած հասկացողութիւններ, ինչպէս՝ դասակարգային հակադրութիւնները, միջդասակարգային մրցակցութիւնները, մարդկային յարաբերութիւններուն մէջ դրամի եւ հարստութեան խաղացած կործանարար դերը, որոնք բոլորն ալ առկայ են վիպակին մէջ, բայց չեն դարձած հասարակական խօսոյթ՝ դիւրաւ ընկալելի ըլլալու համար: Գրականութենէն առաջ պէտք է ճեղքուէր գաղափարական խնդիրը՝ որուն դարմանը ժամանակն էր: Ընդդիմադիրները շատ վաղ յաջողեցան կտրել Փիզիքական ժամանակի թելը:

*Սնտուկին հաշիւը* տարբեր է նաեւ Կիւրճեաննէն, որուն երգիծապատումները անմիջականօրէն մատչելի են եւ ընկալելի, հիմնուած ամենօրեայ գործող եւ մեր աչքերուն դիմաց կենդանի տիպարներու վրայ, որոնց սրածայր գունաւորումը հաճելի է ընթերցողին, ընթերցող՝ որ պատրաստ է ընկալելու նման տիպարներ:

Եգիպտահայ պատմութեան մէջ, պարտադրաբար անաւարտ մնացած *Սնտուկին հաշիւը* կը մնայ եզակի երեւոյթ, մարմնաւորելով ժամանակաշրջան մը՝ երբ կը թուէր կարելի ըլլար ամէն յառաջադէմ միտք: Տպագրուելով՝ կը հերքուի նիւթը թաղելու ձգելու կարելիութիւնը, տպագրութեան արգելափակումով՝ կարելիութիւնն ու թաղումն կը բախուին իրարու:

(Վերջ 3)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

4. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս», *Ժամանակ*, ժողովրդական օրաթերթ, Պոլիս, 26 Սեպտեմբեր / 9 Հոկտեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1228, էջ 1:

5. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս», *Ժամանակ*, 27 Սեպտեմբեր / 10 Հոկտեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1229, էջ 1:

6. Յակոբ Օշական, *Համապատկեր արեւմտահայ գրականութեան*, իններորդ հատոր, Արուեստագէտ սերունդ, Անթիլիաս, 1980, էջ 318:

7. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս», *Ժամանակ*, 27 Սեպտեմբեր / 10 Հոկտեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1229, էջ 1:

8. Երուանդ Օտեան, «Զեղոքի մը կարծիքը», *Փիւնիկի Ե. Յաւելուածը*, Աղեքսանդրիա, 20 Մարտ 1902, Բ. տարի, թիւ 43, էջ 1:

9. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս», *Ժամանակ*, 31 Հոկտեմբեր / 13 Նոյեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1263, էջ 1:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ԸՆԴԼԱՅՆԵԼ Է ՏՆՏԵՍՈՒԹԵԱՆ ԱՐԴԻԱԿԱՆԱՑՄԱՆ ԾՐԱԳՐՈՎ ՆԱԽԱՏԵՍՈՒԱԾ ՈԼՈՐՏՆԵՐԻ ՑԱՆԿԸ

Տնտեսութեան արդիականացման ծրագրի մէջ փոփոխութիւններ կատարելու մասին Օգոստոսի 4-ի որոշմամբ Հայաստանի կառավարութիւնը ընդլայնում է ծրագրի մէջ ընդգրկուած այն ոլորտների ցանկը, որտեղ գործող ընկերութիւնները կարող են նոր սարքաւորումներ գնել եւ դրա համար սուբսիդաւորում ստանալ կառավարութիւնից: *Արմէնպրէսի* հաղորդմամբ՝ կառավարութեան նիստից յետոյ լրագրողների հետ ճեպազրոյցում այս մասին յայտնեց Հայաստանի էկոնոմիկայի նախարար Վահան Քերոբեանը՝ յաւելելով, որ կառավարութիւնը կը սուբսիդաւորի վարկերի տոկոսների մեծ մասը:

«Այստեղ արդէն ունենք որոշակի արդիւնքներ: Նախորդ ամիսների աշխատանքի արդիւնքում արդէն 200 ընկերութիւն 11,4 միլիարդ դրամի սարք-սարքաւորումներ է ներմուծել, եւ մենք կարծում ենք, որ այս փոփոխութիւնները՝ ոլորտների ընդլայնումը, կը տայ նաեւ այս պրոյեկտների արագացում: Նկատի ունեմ ոլորտներ, որոնք աւելացել են, օրինակ՝ լոգիստիկա, տեղափոխում եւ պահեստաւորում, տեղեկատուութիւն եւ կապ, առողջապահութիւն, կրթութիւն եւ հանքարդիւնաբերութիւն: Այս բոլոր ոլորտների մէջ նոր սարքաւորումներ գնող ընկերութիւնները կարող են օգտուել մեր ծրագրից, եւ մենք կարծում ենք՝ արժէ, որ օգտուեն եւ արժէ, որ նորից վերանայեն իրենց պլաններն ու սարքաւորումներ գնելու գործընթաց սկսեն, որովհետեւ դա, բնականաբար, խթանելու է արտադրողականութիւնը», - պարզաբանեց նախարարը:

## ՀԻՄԱ ՄԱՐԴ ԿԱ՞Յ, ՈՐ ԴԵՌ ԿԱՐՈՂ Է ԿԱՍԿԱԾԵԼ, ԹԷ ԻՆՉՊԷՍ ԵՆ ԱԴՐԲԷՋԱՆԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԵՐՍԻՑ ԱՄԷՆ ԳՆՈՎ ՈՒ ԱՄԷՆ ԲԱՆՈՎ ՕԳՆՈՒՄ. ՄԱՐՈՒՔԵԱՆ

Յատուկ Յանձնարարութիւններով դեսպան, Լուսաւոր Հայաստան կուսակցութեան ղեկավար Էդմոն Մարուքեանը Օգոստոսի 5-ին գրել է.

Երեւի քչերը նկատեցին, որ հայկական կողմը Լաչինի միջանցքի վերաբերեալ իր ստանձնած պարտաւորութիւնները հանդիստ կատարում էր՝ նախ, պլանի հաստատման մասով սպասելով դրա քննարկմանն ու հաստատմանը եւ յետոյ, ճանապարհի այլընտրանքային հատուածի նախագծմամբ, բնականաբար հիմք ընդունելով եռակողմ յայտարարութեան ժամկէտը (առաջիկայ երեք տարուայ ընթացքում կ՚որոշուի Հայաստանի հետ Լեռնային Ղարաբաղի կապն ապահովող Լաչինի միջանցքով երթեւեկութեան նոր երթուղու կառուցման պլանը, ռուսական խաղաղապահ զօրակազմի յետագայ վերատեղաբաշխմամբ՝ այդ երթուղու պահպանութեան համար):

Մէկ էլ յանկարծ Մայիս ամսուայ ընթացքում Հայաստանում յայտնի «ընդդիմադիր» եւ «փորձագիտական» շրջանակներ սկսեցին յայտարարել, որ Հայաստանի իշխանութիւնները մօտ օրերս կը յանձնեն Բերձորը եւ Աղաւնոն, անգամ մարդ կար պնդում էր, որ վարչապետի ծննդեան օրը Աղաւնոյում կը ծածանուի Ադրբէջանի դրօշը: Այս յայտարարու-

↳ 4

## ԱՐՏԵՐԿՐԻՑ ԲԱՐՁՐԱԿԱՐԳ ՄԱՍՆԱԳԷՏՆԵՐԻ ՀՈՍՔ Է ԱԿՆԿԱԼՒՈՒՄ. ՊԵՏՈՒԹԻՒՆԸ ՊԱՏՐԱՍՏ Է ՈՐՈՇ ՉԱՓՈՎ ՓՈԽՀԱՏՈՒՑԵԼ ԱՇԽԱՏԱՎԱՐՁԸ

Հայաստանի կառավարութիւնը պատրաստ է որոշ չափով փոխհատուցել արտերկրից այն բարձրակարգ մասնագէտների աշխատավարձերը, որոնք կը ներգրաւուեն Հայաստանի ընկերութիւններում: Կառավարութիւնը ծրագիրը հաւանութեան է արժանացրել: Օգոստոսի 5-ին *Արմէնպրէսի* մամուլի սրահում հրաւիրուած ասուլիսում էկոնոմիկայի նախարարի տեղակալ Ռաֆայէլ Գէորգեանը նշեց, որ դիտարկուել է երկու հիմնական չափանիշ: Առաջինը տուեալ անձը 10 եւ աւելի տարի մասնագիտական փորձ պէտք է ունենայ առաջատար ընկերութիւններում, պետութիւնը Հայաստանում աշխատելու ժամանակ կը փոխհատուցի աշխատավարձի 20 տոկոսի չափով: Եթէ այդ մասնագէտները աշխարհի 400 լաւագոյն համալսարաններից մէկն աւարտած լինի, ապա պետութիւնը կ՚աջակցի աշխատավարձի 50 տոկոսի չափով: Եւ վերջապէս, եթէ տուեալ անձը կ՚որոշի նաեւ դասաւանդել հայաստանեան բուհերում, ապա պետութիւնը կը փոխհատուցի աշխատավարձի 70 տոկոսը:

«Մենք ունենք որոշակի ներքին պայմանաւորուածութիւն, որ չենք սահմանափակե-

↳ 4

## ԱՄՆ-ՌՈՒՍԱՍՏԱՆ ՕՐԱԿԱՐԳԵՐԻ ԲԱԽՈ՞ՒՄ, ԹԷ՞ ՇՓՈՒՄ. ՄՈՍԿՈՒԱՅԻ ԵՐԿՈՒ ԶԱՆԳԸ ԵՐԵՒԱՆ

ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ

Օգոստոսի 2-ին տեղի է ունեցել Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի եւ Ռուսաստանի նախագահ Վլադիմիր Պուտինի հեռախօսազրոյցը, որի վերաբերեալ թէ Երեւանի, թէ Կրեմլի հաղորդագրութիւնները բաւականին համառօտ են՝ քննարկուել են Նոյեմբերի 9-ին, Յունուարի 11-ի եւ Նոյեմբերի 26-ի եռակողմ յայտարարութիւնների կատարման ընթացքը, պայմանաւորուել են յետագայ շփումների շուրջ: Ընդ որում, ուշադրութեան է արժանի հանգամանքը, որ Փաշինեան-Պուտին հեռախօսազրոյցից ժամեր առաջ տեղի էր ունեցել Լաւրով-Միրզոյեան հեռախօսազրոյց: Այն, որ Ռուսաստանի թէ նախագահը, թէ արտգործնախարարը խօսում են Հայաստանի իրենց գործընկերների հետ նոյն օրը, վկայում է, որ խօսակցութեան առարկան բաւականին յստակ է եւ կարեւոր: Ընդ որում, դատելով հաղորդագրութիւններից, զանգերը եղել են Մոսկուայից, քանի որ հակառակ պարագայում ռուսական կողմը նշում է, որ զանգի նախաձեռնութիւնը եղել է «դիմացի» կողմից:

Մոսկուայից Օգոստոսի 2-ի երկու հեռախօսազանգերը յաջորդում են երկու նկատելի իրողութեան, որ տեղի ունեցան Օգոստոսի 1-ին: Այդ օրը տեղի ունեցան ԱՄՆ պետքարտուղարի Եւրոպայի ու Եւրասիայի հարցերի օգնական Քերըն Դոնֆրիդի հեռախօսազրոյցները Հայաստանի եւ Ադրբէջանի արտգործնախարարների հետ: Դրան զուգահեռ, հաղորդագրութիւն տարածեց Արցախի ՊԲ-ն, որ Օգոստոսի 1-ի առաւօտեան ժամը 9-ից սկսած ադրբէջանական զինուժը փորձել է գրոհել Արցախի հիւսիս-արեւմտեան եւ հիւսիսային դիրքերը, խախտել շփման գիծը, սակայն պաշտպանական բանակը թոյլ չի տուել որեւէ առաջխաղացում եւ յաջողութիւն: Ընդ որում, այստեղ կայ ուշադրութեան արժանի մի քանի հանգամանք:

Յատկանշական է, որ Արցախի ՊԲ-ն ադրբէջանական սադրանքի մասին հաղորդագրութիւն է տարածել օրուայ երեկոյեան, այն դէպքում, երբ ըստ հաղորդագրութեան՝ սադրանքները սկսել են առաւօտից: Այդ իմաստով հետաքրքիր է, որ օրուայ ընթացքում Արցախի ղեկավարութիւնը նախընտրել է ձեռնպահ մնալ յայտարարութիւններից: Միաժամանակ, տեղի էր ունեցել Արցախի նախագահի հանդիպումը եւ քննարկումը ուժային կառոյցների ղեկավարների հետ: Ուշադրութեան արժանի միւս հանգամանքը այն էր, որ Ադրբէջանը հերքել է տեղեկութիւնը, թէ որեւէ գործողութիւն է արել Արցախի դիրքերի նկատմամբ: Իսկ դա Ադրբէջանի պարագայում որոշակիօրէն արտասովոր է, որովհետեւ Բաքուն եթէ չի էլ փորձել հիմնաւորել իր սադրանքները «իրաւունքներով», ապա առնուազն չի էլ շտապել հերքել դրանք եւ նուազագոյնը փորձել է միջադէպի պատասխանատուութիւնը դնել հայկական կողմի վրայ: Ինչո՞ւ է Ադրբէջանը շտապել հերքել: Դա քաղաքական պատասխանատուութեան մտահոգութիւնի՞ց է, թէ՞ Բաքուն պարզապէս չի ուզել ակամայ խոստովանել, որ ինչ որ առաջխաղացում է փորձել, սակայն մատնուել է անյաջողութեան: Եւ միւս ուշադրութեան արժանի հանգամանքը այն է, որ ռուսական

↳ 4

ԽՈՀԵՐ

## ԳՐԱԿԱՆ ԵՐԳԻԾԱՆՔ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Գոյութիւն ունեցող հայկական երգիծական գրականութիւնը կարելի է բաժնել երեք դասակարգերու.

1. Խոր, լայնամիտ, մտաշարժ երգիծանք պարունակող գրականութիւն՝ որ երեւոյթն ու անձը կ՚ընդունի իբրեւ յետնախորք կամ տիպար, արտայայտելու գոյութիւն ունեցող ընդհանուր երեւոյթներ:

Յակոբ Պարոնեանի *Ջոջերը* կամ Միքայէլ Կիւրճեանի *Մարտիկ աղան* կը վերցնեն անձեր՝ հասարակական տեսանելի դէմքեր, սրելով անոնց անձնական կողմերը, ցցելով անհատական յատկանիշները, խրելով բնաւորութեան եսական ծալքերը: Եւ այս է որ ծիծաղ կը յառաջացնէ: Բայց ծիծաղային կողմը պիտի մնար անկատար եւ նոյնիսկ անծիծաղ, եթէ սրումները չըլլային հասարակական երեւոյթներու մարմնաւորումներ, նեղ տեղավայրէ եւ սահմանահեղձ ժամանակէ անդին:

Պարոնեանի *Քաղաքավարութեան վնասները* քաղքենիութեան քննադատութիւնն է՝ որ այսօր աւելի քան կենդանի է Սփիւռքի գաղութներուն մէջ, ներառեալ եգիպտահայութեան: Աբխողոմ աղան շրջապատող մեծապատիւ եւ փողկապաւոր շողոքորթները աւելի եւս բարգաւաճած են այսօր եւ ստացած «համամարդկային» տարողութիւն, այլեւ արդի քաղաքակրթութեան մէջ դրականօրէն ընդունելի դարձած իբրեւ «աչքաբաց» անձեր:

Օտեանի Փանջունին մեծախօս պարարտախօսի տիպարն է, որ այսօր ամենուր է՝ քաղքենի ցած խաւէն մինչեւ երկիրի ղեկավարը: Օտեանի մահէն ետք պատրաստուած եւ հրատարակուած Փանջունիի երգիծագարդ գծագրուած հատորները՝ ընդհանուր հասարակական երեւոյթը կը նուազեցնեն դէպքի պահային աստիճանին, որ Օտեանի յղացումը չէ, հակառակ գծագրութիւններուն հանճարեղ որակին՝ իբրեւ զուտ գծագրութիւններ:

Օտեանի թողած բազմահազար երգիծական էջերու իւրաքանչիւրին մէջ կարելի է գտնել միտք եւ իմաստ, արծարծելով ամենատարբեր հասարակական նիւթեր:

2. Երգիծական գրականութիւն՝ որ գրուած է երգիծանքի համար իբրեւ վերջնական լուծում, զուարճանքի եւ խնդուքի միակ նպատակով: Եգիպտահայութիւնը ունեցած է բազմաթիւ այսպիսի նմոյշներ: *Աւել* (1908-1910) եւ *Մալէշ* (1911-1912) երգիծական հանդէսները խնդուքի համար եղած են, եւ բնաւ չեն խնդացներ: Երբ չկայ իմաստ, խնդուքի մակարդակը կ՚իջնէ շատախօս թեթեւամտութեան մակարդակին: Կար Խորէն Տէտէեան մը: Կը գրէր, կը գրէր ու կը գրէր, միշտ երգիծական ըլլալու մտադրութեամբ: Կը հիմնուէր դէպքերու եւ կացութիւններու վրայ՝ ինչ որ ալ ըլլան անոնք. կարեւորը խնդացնելն էր: Երբեք չեմ կրցած ժպտիլ իր երգիծապատումներէն: Չկայ խորքային չերտ՝ իմաստ:

3. Երգիծական գրականութիւն՝ որ կը հիմնուի կենդանի անհատներու վրայ, առանց փորձելու հասկնալ երեւոյթներուն իսկութիւնները: Անհատի հանդէպ աւելորդ ցցունութիւնը եւ անհատի գերսրումը կը հասնի այն աստիճանի՝ որ ընթերցանութիւնը կը դարձնէ անհաճոյ: Կայ անձի թիրախաւորում, յաճախ մաղձ ու ատելութիւն, կամ, առնուազն, ծաղրանք: Երգիծանքն ու ծաղրանքը բոլորովին տարբեր բաներ են:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1922 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 25 ՕԳՈՍՏՈՍ 2022 — *ՀԱՏԸ ՑԵՌՔԷ 75 Ե. ԴՀԿ.* — عدد رقم ١٩٢٢ الخميس ٢٥ أغسطس ٢٠٢٢

## «ՍՓԻՒՌՔՈՒՄ ԱՊՐՈՂՆԵՐՆ ԻՐԱՒՈՒՆՔ ՈՒՆԵՆ ԿԱՐԾԻՔ ՈՒՆԵՆԱԼՈՒ, ԲԱՅՑ ԴԱ ՊԱՐՏԱԴՐԵԼ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԱՊՐՈՂՆԵՐԻՆ՝ ԲԱՐՈՅԱԿԱՆ ՏԵՍԱՆԿԻՒՆԻՑ ՃԻՇՏ ՉԷ». ԳԱՐԵԳԻՆ ՄԻՍԿԱՐԵԱՆ

**ՔՐԻՍՏԻՆԷ ԱՂԱԲԷԿԵԱՆ**

*Մեդիալաբի* հարցերին պատասխանում է հանրային, քաղաքական գործիչ Գարեգին Միսկարեանը:

**— Պարո՛ն Միսկարեան, ինչպէ՞ս էք վերաբերւում, գնահատում սփիւռքում ապրող մեր հայրենակիցների կողմից կազմակերպուող բողոքի ակցիաները՝ ուղղուած Հայաստանի գործող իշխանութեան դէմ:**

— Ինձ համար, ճիշտն ասած, շատ զարմանալի է, թէ ինչպէ՞ս են իրենք որոշում՝ Հայաստանում ո՛վ լինի իշխանութիւն, ո՛վ լինի ընդդիմութիւն, ով ինչո՛վ զբաղուի: Ի՞նչ բարոյական իրաւունք ունեն, ինձ համար դա մեծ հարց է, ու, կարծում եմ, Հայաստանում կառավարութիւնը ձեւաւորւում է Հայաստանի քաղաքացիների կողմից, ու միայն նրանք են իրաւասու այդ գործառոյթն իրականացնելու, ընդ որում՝ Հայաստանի Հանրապետութեան տարածքում ապրող քաղաքացիները: Այնպէս որ, ես ձեր նշած դէպքերին շատ զարմանքով եմ վերաբերւում:

**— Այսինքն՝ եթէ Հայաստանի Հանրապետութեան տարածքից դուրս են, ապա իրաւունք չունե՞ն որոշելու, թէ Հայաստանի համար ինչն է լաւը, ինչը՝ չէ:**

— Իրենք իրաւունք ունեն կարծիք ունենալու, բայց դա պարտադրել Հայաստանում ապրողներին, կարծում եմ, բարոյական տեսանկիւնից ճիշտ չէ:

**— Գուցէ Հայաստանում ապրող մարդիկ էլ այդ պարագայում դժգոհեն՝ ասելով, որ այնտեղի բնակչութիւնն անտարբեր է Հայաստանում տեղի ունեցողի նկատմամբ, նրանց տեղի ունեցողը չի հետաքրքրում:**

— Իսկ ո՞վ է ասել, որ անտարբեր չլինելու ապացոյցը միայն կառավարութեան հրաժարական պահանջելն է: Քաղաքականութիւնը շատ բարդ ու բազմաշերտ երեւոյթ է, իրենք իհարկէ կարող են նաեւ աջակցել, գալ ու, ենթադրենք, տնտեսական գործունէութիւն ծաւալել, կարող են լոբբինգով զբաղուել, եթէ ուզում են Հայաստանի համար լաւ լինի, բայց Հայաստանում ընտրութիւնների ու կառավարութեան ձեւաւորման վերաբերեալ Սահմանադրութեամբ ամրագրուած ընթացակարգ կայ, որը շատ ծայրայեղ դէպքերում է ենթակայ այսպէս ասած խախտման, այսինքն՝ արտահերթ ընտրութիւնը խաղ ու պար չէ, որ ամէն տարի արտահերթ ընտրութիւն անենք: Այդ գործընթացը պետութիւնը, տնտեսութիւնը տանում է յետընթացի, դրանք սթրես են պետութեան համար ու անհիմն պատճառներով, ինչ-որ վերացական պատճառներով այնտեղից խառնուել Հայաստանի ներքաղաքական կեանքին այդ մակարդակով, կարծում եմ, բարոյական չէ:

**— Պարո՛ն Միսկարեան, կոնկրէտ հիմա հնչող պահանջով, երբ սփիւռքը պայքարում է, իրենց բնորոշմամբ՝ Հայաստանի Թրքացման դէմ, դաւաճան իշխանութեան դէմ, այս պատճառները վերացակա՞ն էք համարում:**

— Ես չգիտեմ՝ իրենք ինչ են հասկանում Թրքացում ասելով, բանակցութիւնները Թրքացում ենթադրո՞ւմ են, թէ՞ չէ, եթէ ուզում են Հայաստանում մարդ մնայ, հայ մնայ, թող բարի լինեն թող վեր կենան, գան Հայաստանում ապրելու: Գան այստեղ ու այստեղից որոշումներ կայացնեն՝ Հայաստանն ո՛ւմ հետ բանակցի, ո՛ր քաղաքական ուժն իրենց ներկայացնի, թէ չէ հեռուից հեռու՝ Փարիզում, Լոնդոնում կամ այլուր նստել ու որոշել՝ Հայաստանն ինչ արտաքին քաղաքականութիւն վարի, Ռուսաստանի կազմի մէջ մտնի, թէ չէ, վաղն էլ կարող է Ռուսաստանի հայերը պահանջեն միաւորուել Ռուսաստանի հետ, որքանո՞վ է դա ճիշտ: Հայաստանի արտաքին քաղաքականութիւնը Հայաստանում ապրող ժողովրդի ճակատագրին է առնչւում, ու այդ ճակատագրին իրաւունք ունեն որոշելու այստեղ ապրողները:

**— Արտերկրում ապրող մեր հայրենակիցները ո՞ր գործունէութեամբ աւելի շատ օգտակար կը լինեն իրենց հայրենիքին՝ ըստ ձեզ:**

— Այսօր Հայաստանը, ցաւօք սրտի, այն վիճակում չէ, որ կարողանայ բաւարար ու արդիւնաւէտ օգտագործել սփիւռքի ռեսուրսը, բայց յոյս ունեմ, որ մի օր կ՚ունենանք լիարժէք կայացած պետական ինստիտուտներ, որոնք փոխշահաւէտ համագործակցութիւն կ՚ունենան սփիւռքում ապրող մեր հայրենակիցների հետ:

Այս պահին ասել, թէ ինչով իրենք կարող են օժանդակել Հայաստանի զարգացմանը, իմ կարծիքով՝ բացառապէս միայն Հայաստան վերադառնալով: Հայաստանում ստեղծուած 1 դոլարն աւելի մեծ արժէք է ինձ համար, քան, օրինակ՝ ԱՄՆ-ից ուղարկած 100 դոլարը, հետեւաբար, այդ փող ուղարկելը ես համարում եմ անարդիւնաւէտ ու անհեռանկար:

**— Դուք ասում էք՝ թող գան Հայաստան, բայց իրենք էլ հակադարձում են, թէ այստեղ պայմաններ չկան, ու իրենք ստիպուած են լքել երկիրը, ո՞ւր վերադառնան:**

— Դէ, կը ներէք, այդ պայմաններն ո՞վ է ստեղծելու, թող գան, միասին ստեղծենք դրանք, սպասում են, որ ես պայմանը ստեղծեմ, իրենք գան ապրե՞ն այստեղ: Այդ պայմանները ոչ մէկի համար չկան կամ կան այնքան, որքան բոլորի համար, թող գան, միասին աւելի լաւ պայմաններ ստեղծենք, ո՞վ է իրենց փոխարէն պետութիւն կառուցելու:

**— Պարո՛ն Միսկարեան, որոշ ժամանակ առաջ խօսւում էր, որ Սահմանադրութեան մէջ փոփոխութիւն պէտք է արուի, որպէսզի սփիւռքում ապրող մեր հայրենակիցները եւս իրաւունք ունենան մասնակցելու Հայաստանի գործադիր ու օրէնսդիր մարմինների ձեւաւորման աշխատանքներին: Դուք համաձայն կը լինէ՞ք նման փոփոխութեան:**

— Համաձայն կը լինեմ, բայց մի պայմանով, որ այդ քաղաքացիները, ենթադրենք, երկու տարուայ մէկ տարին մշտապէս բնակուեն ↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՀԱՅ-ՎՐԱՑԱԿԱՆ ՍԱՀՄԱՆԻՆ ՏԵՂԻ Է ՈՒՆԵՑԵԼ ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԻ ԵՒ ԻՐԱԿԼԻ ՂԱՐԻԲԱՇՎԻԼԻԻ ԱՌԱՆՁՆԱԶՐՈՅՑԸ

Հայ-վրացական սահմանին՝ Բագրատաշէնի հատուածում, Օգոստոսի 19-ին տեղի է ունեցել Հայաստանի եւ Վրաստանի վարչապետներ Նիկոլ Փաշինեանի եւ Իրակլի Ղարիբաշվիլիի առանձնազրոյցը:



Ինչպէս *Արմենպրէս*ին յայտնում են Հայաստանի կառավարութիւնից, հանդիպումը կայացել է Հայ-վրացական բարեկամութեան կամրջի գործարկման արարողութեան շրջանակում:

Նիկոլ Փաշինեանը եւ Իրակլի Ղարիբաշվիլին կարեւորել են կամուրջի գործարկումը եւ ընդգծել դրա դերը երկկողմ տրանսպորտային հոսքերն առաւել դիւրին դարձնելու գործում:

Հայաստանի եւ Վրաստանի կառավարութիւնների ղեկավարները նշել են, որ բարձրաստիճան ինտենսիւ շփումները վկայում են Հայ-վրացական յարաբերութիւնների դինամիկ զարգացման եւ քաղաքական երկխօսութեան բարձր մակարդակի մասին:

Զրուցակիցները քննարկել են Հայաստան-Վրաստան համագործակցութեան օրակարգային հարցեր, մտքեր են փոխանակել տարածաշրջանային զարգացումների շուրջ: Երկուստեք վերահաստատուել է բարեկամական կապերը հետեւողականօրէն խորացնելու եւ ակտիւ երկխօսութիւնը շարունակելու պատրաստակամութիւնը:

## ԱԱԾ-Ն ՇՐՋԱՆԱՌՈՒԹԵԱՆ ՄԷՋ Է ԴՐԵԼ ՀԱՅ-ԱԴՐԲԷՋԱՆԱԿԱՆ ՍԱՀՄԱՆԻՆ ԱՆՑԱԿԷՏԵՐ ՍՏԵՂԾԵԼՈՒ ՆԱԽԱԳԻԾ

Հայաստանի Ազգային Անվտանգութեան Ծառայութիւնը շրջանառութեան մէջ է դրել նախագիծ, որով առաջարկւում է անցակէտեր ստեղծել Հայ-ադրբէջանական սահմանի որոշ հատուածներում:

Հայաստանի կառավարութեան 2011 թուականի N 703-Ն որոշման լրացումներ կատարելու մասին նախագիծը հրապարակուել է իրաւական ակտերի նախագծերի հրապարակման միասնական կայքում՝ e-draft.am-ում:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ հիմնաւորման մէջ նշւում է, որ նախագծի ընդունումը պայմանաւորուած է Օգոստոսի 4-ին կառավարութեան նիստի ընթացքում վարչապետի կողմից տրուած յանձնարարականների կատարման ապահովման անհրաժեշտութեամբ: Ակնկալուող արդիւնքը Հայաստանում պետական սահմանի նոր անցման կէտերի ստեղծումն է՝ պետական սահմանով անձանց, ապրանքների եւ տրանսպորտային միջոցների անցումը կազմակերպելու եւ իրականացնելու նպատակով: Նոր անցակէտերը նախատեսւում են ստեղծել Գեղարքունիքի (Սոթք համայնքից դէպի Հայաստանի պետական սահման M11 մայրուղի՝ աւտոմոբիլային), Արարատի (Երասխ համայնք՝ աւտոմոբիլային), Սիւնիքի (Քարահունջ համայնքից մօտ 7,5 կմ հարաւ, հարաւ-արեւելք Մ2 մայրուղի՝ աւտոմոբիլային) մարզերում Հայ-ադրբէջանական սահմանի ուղղութեամբ:

Նախագիծը մշակուել է Հայաստանի Ազգային Անվտանգութեան Ծառայութեան կողմից: Նախագծի ընդունմամբ անհրաժեշտութիւն կ՚առաջանայ ներգրաւուել լրացուցիչ ֆինանսական միջոցներ նոր անցման կէտերի շինարարական եւ կահաւորման աշխատանքների իրականացման համար:

# ՍՈՆԻԱ ՍԱՐԳԻՍ
# ԶՐՈՅՑ ԲՆԱԳԱՒԱՌԻ ԼԱՒԱԳՈՅՆԻՆ ՀԵՏ

***Հարցազրուցավար՝ Laybird-ի խմբագրութիւն***

Բախտաւոր կը զգամ զրուցելու եգիպտական պարի կուռք Տիկ. Սոնիա Սարգիսի հետ, եգիպտացի prima ballerina-ն՝ որ յաջողեցաւ եգիպտական պալէն դնել աշխարհի քարտէզին վրայ, շնորհիւ ողջ աշխատանքային տարիներուն ցուցաբերած կարկառուն կատարողականութեան եւ բացառիկ ներկայացուցչութեան: Իր գեղեցկուհի դուստրը՝ փրոֆեսիոնալ պարուհի Քրիսթինը, միացաւ մեզի՝ պալէի մասին ունեցած խորաթափանց հայեցողութեամբ եւ The Dance Factory պարի սեփական դպրոցի հարուստ պատմութեան իրազեկութեամբ:

**- Տիկ. Սարգիս, ձեր մասին կրնայի՞ք աւելի մանրամասն պատմել:**

- Պալէի աշխարհ մտայ ինն տարեկանիս եւ շրջանաւարտ եղայ ճիշդ ինն տարի ետք: Ապա շարունակեցի ուղիս մինչեւ իրաւունք ունեցայ որակուելու prima ballerina, դառնալով Եգիպտոսի առաջին պարուհին: Անդամակցեցայ Գահիրէի Օփերայի Պարախումբին, որուն միջոցով Եգիպտոսը ներկայացուցի ամբողջ աշխարհին:

**- Որքա՞ն վաղ սկսած էք դասաւանդել:**

- Ընթացաւարտ ըլլալէս ետք, ուսումս շարունակեցի Գահիրէի Պալէի Բարձրագոյն Հիմնարկի մէջ: Շատ լաւ կը զարգանայի, իսկ որակեալ ուսանողներուն համար տեսակ մը պարտադիր աշխատանք էր դասաւանդել պալէի երիտասարդ սերունդներուն: Կը դասաւանդէի առաւօտեան եւ կը պարէի գիշերը: Հիմնականապէս այսպէս կ՚ընթանար կեանքս տուեալ փուլին:

**- Ինչպէ՞ս ընդունեցիք վաղ երիտասարդ տարիքին Եգիպտոսը ներկայացնելու վիթխարի պատասխանատուութիւնը:**

- Իբրեւ prima ballerina, պարախումբին հետ շրջեցայ ամբողջ աշխարհը՝ երկիրը ներկայացնելով միջազգային ամենահեղինակաւոր բեմերուն վրայ: Պալէն ոչ միայն գեղարուեստական ձեւ մըն է, այլ արտաքին աշխարհի հետ յարաբերակցելու գեղարուեստական եղանակ մը: Կը մարզուէի օրական ութ ժամ, երբեմն ճնշող ըլլալու աստիճան, բայց իւրաքանչիւր պահը արժանի էր:

**- Գոյութիւն ունեցող բազմաթիւ լաւ պարողներէն միայն քիչերը կ՚առանձնանան, որոնցմէ մէկը հաստատապէս դուք էք: Ի՞նչ / ո՞վ օգնեց ձեզի հասնելու նման բարձր աստիճանի:**

- Իմ ժամանակներս, Հիմնարկի բոլոր դասատուները ռուսեր էին եւ ես օրհնեալ ու բախտաւոր կը զգամ մարզուելու առաջնակարգ ուսուցիչներու հետ, որոնք վաղ տարիքէս սորվեցուցին ճիշդ թեքնիք եւ օգնեցին ընկալելու այն կարգապահութիւնը՝ զոր կը պահանջէ արուեստի այս բարդ ձեւը: Նաեւ, կառավարութիւնը այդ ժամանակ սովորութիւն ունէր շատ աւելի ներդնել պալէի մէջ, որ առիթ տուաւ մեզի ձեռք բերել միջազգային ասպարէզին մէջ մրցելու անհրաժեշտ գործիքներն ու ցուցադրամիջոցները:

**- Կրնայի՞ք սահմանել ձեր ասպարէզի որոշ անկիւնաքարերը:**

- Ասպարէզիս ամբողջ ընթացքին աշխարհի լաւագոյն պալէի ընկերութիւններ զիս հրաւիրած են միանալու իրենց: Մասնակցած եմ նաեւ զանազան մրցոյթներու: Բայց եթէ պէտք է անուանեմ անկիւնաքար մը, ան հաստատապէս պիտի ըլլայ իմ ելոյթս ռուսական հեղինակաւոր Պոլշոյ Թատրոնի բեմին վրայ: Ես առաջին եգիպտացի պարուհին եմ որ պարած է Պոլշոյի մէջ:

**- Կ՚ուզեմ ուշադրութիւնը հրաւիրել The Dance Factory-ի վրայ: Տիկ. Սարգիս, կրնայի՞ք յաւելեալ տեղեկութիւններ տալ անոր մասին:**

- 18 տարի դասաւանդած եմ Քորպա Թաղամասը [Հելիոպոլիս] գտնուող պզտիկ սթուտիոյի մը մէջ, որմէ ետք փոխադրուեցանք այստեղ, մեր ներկայ տեղավայրը, որովհետեւ պէտք ունէինք աւելի լայն տարածութեան՝ ընդունելու քանակապէս աճող ուսանողները եւ ընդլայնելու մատուցուած դասընթացքները:

**- Կը դասաւանդէ՞ք արդեօք պարի այլ տեսակներ, թէ՞ կը կեդրոնանաք միայն պալէի վրայ:**

- Մենք պալէ կը մատուցենք պատանիներուն եւ չափահասներուն: Ունինք նաեւ զումպա, ինչպէս նաեւ ճազի եւ լատինական պարի աշխատանոցներ:



Սոնիա Սարգիս (աջին), իր դստեր Քրիսթին Սամիի (ձախին) հետ: Տեսարան *Լորկիանա* պալէէն, The Dance Factory դպրոցի տարեկան ներկայացում, 2018:

**- Ֆիթնէսի եւ պարի արդիւնաբերութեան մրցակցութիւնը զօրեղ է, ուր մարդիկ կը մտնեն ամէն օր: Ինչպէ՞ս կը յաջողիք տոկալ:**

- Մեր գլխաւոր կեդրոնացումը պարն է եւ ոչ ֆիթնէսը: Կը փորձենք գործադրել մեր առաւելագոյն ճիգը: Օրինակ, անդամներէն ոմանք խոստովանեցան, թէ զումպայի հետ երբեք չէին առնչուած այնպէս՝ ինչպէս ներկայացուցած ենք մենք: Աւելին, ուրիշ կազմակերպութիւններ զայն կ՚ընդունին իբրեւ զուտ պիզնէս եւ կիրքի բացակայութիւն: Ասիկա էական է մեզի համար: Մենք առեւտրական չենք, եւ երբեք պիտի չըլլանք այդպէս: Նաեւ, հրամայական մըն է վստահելիութիւնը: Մենք պալերինաներ ենք, ծնած ենք պարելու համար, եւ մեր դասաւանդումի առարկային կը տիրապետենք առաջնային փորձառութեամբ: Մեր անդամները կու գան որովհետեւ կը վստահին Սոնիա Սարգիսին:

**- Ինչպէ՞ս առաւել երիտասարդ խումբին կը պահէք շահագրգռուած եւ ներգրաւուած:**

- Մեր մասնակից / պարողներուն համար կը կազմակերպենք տարեկան մեծ ներկայացում մը, իբրեւ միջոց մը զանոնք շահագրգռելու եւ դէպի աւելի լաւը ներշնչելու: Այս ներկայացումին ներկայ կը գտնուին ականաւոր դէմքեր, որոնք նոր տաղանդներ կը փնտռեն Օփերայի Թատրոնի պարախումբին համար: Մեր վերջին ներկայացումը Ապրիլին էր [2016], որ կայացաւ New Generation School-ին մէջ:

**- Վերջապէս, ի՞նչ են ձեր ակնկալիքները The Dance Factory-էն:**

- Յաջորդ փուլին, կը ծրագրենք աւելի ամուր կառուցւածք ներկայացնել մեր մատուցած ուրիշ պարատեսակներուն նկատմամբ, ինչպէս ճազն ու ժամանակակիցը, կը փափաքինք ընդլայնել մատուցուած դասընթացքները: Աւելին. բացի մեր տարեկան ներկայացումէն, կը ծրագրենք կազմակերպել մեծ մրցոյթ մը՝ ուր հաւաքուին Եգիպտոսի լաւագոյն պարի սեփական դպրոցները, առիթ տալով ուսանողներուն աւելի բացայայտուիլ եւ սորվիլ իրարմէ: Յոյս ունինք նաեւ ժամանակի ընթացքին քանդել պալէին վերագրուող «ոչ-տղամարդկային» կարծրատիպը, փափաքելով որ աւելի շատ տղաք միանան մեզի: Վերջապէս, կ՚ուզենք քաջալերել ծնողքները ազատագրուելու պարի նկատմամբ հասարակութեան ունեցած բացասական ընկալումներէն:

*Laybird*, **ամսագիր, Գահիրէ, Յուլիս 2016**

Անգլերէնէ թարգմանեց՝ Հ. Ա.

Ծ. Բուն անունով Սոնիա Ջամքէրթէնեան, Սոնիա Սարգիս քոյրն է Գալուստեան, ապա Գալուստեան-Նուպարեան ազգային վարժարաններու երկարամեայ տնօրէն Սիմոն Ջամքէրթէնեանի: Իր մասին մանրամասն կարելի է կարդալ՝ *Դասական պարուհի՝ Սոնիա Սարգիս*, *Ջահակիր*, Յաւելուած №., 2021:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՊԱՅԹԻՒՆ ՍՈՒՐՄԱԼՈՒ ԱՌԵՒՏՈՒՐԻ ԿԵԴՐՈՆԻՆ ՄԷՋ

Օգոստոս 14-ին, Երեւանի Սուրմալու առեւտրական կեդրոնին մէջ տեղի կ՚ունենայ ուժեղ պայթիւն:

Կը զոհուին 16 անձեր, հիւանդանոց կը դիմեն 60 անձեր՝ թեթեւէն մինչեւ ծանր վիրաւորումներով:

Պայթիւնի դէպքի առիթով կը նախաձեռնուի քրէական վարոյթ՝ Քրէական Օրէնսգիրքի 357-րդ յօդուածի 2-րդ մասի (Հրդեհային ապահովութեան կանոններու կամ պահանջներու խախտում, որ անզգուշութեամբ յառաջացուցած է մարդու մահ կամ այլ ծանր հետեւանք) եւ 358-րդ յօդուածի 2-րդ մասի (Դիւրավառ կամ այրիչ նիւթերու պահպանումի, հաշուառումի, փոխադրումի, առաքումի կամ օգտագործումի կանոններու կամ պահանջներու խախտում, որ անզգուշութեամբ յառաջացուցած է մարդու մահ կամ այլ ծանր հետեւանք) յատկանիշներով:

## ՀԱՅԱՍՏԱՆՆ ՈՒ ԹՈՒՐՔ-ԱԴՐԲԷՋԱՆԱԿԱՆ ԿԾԻԿԸ

*Լուրեր*ի հիւրն է Միջազգային եւ Անվտանգութեան Հարցերի Հայկական Ինստիտուտի (ՄԱՀՀԻ) նախագահ Ստիոպա Սաֆարեանը:

Հայաստանն այսօր մի քանի կարեւոր խնդիրներ ունի, որոնցից են Արցախի եւ Թուրքիայի ու Ադրբէջանի հետ յարաբերութիւնները կարգաւորելու հարցերը: Այս իրավիճակում նկատելի է, թէ ինչպէս է Թուրքիան փորձում համատեղել իր գործողութիւններն Ադրբէջանի հետ:

Ինչպէս նկատեց Սաֆարեանը, թէ՛ Թուրքիան, թէ՛ Ադրբէջանը փորձում են իրենց գործողութիւնները միաւորելով կրկին հաստատել աւելի վաղ իրենց կողմից արտայայտուած «մէկ ազգ երկու պետութիւն» սկզբունքը եւ ամենեւին զարմանալի չէ, որ Անկարան ամէն ինչ անում է ցոյց տալու համար Բաքուին, որ իրենք չեն մոռացել ադրբէջանական խնդիրները, տեղեակ են, զբաղւում են այդ ամէնով:

Այս պահին Թուրք-ադրբէջանական գործողութիւնների համատեղումը նպատակ ունի ճնշում գործադրել հայկական կողմի վրայ, տպաւորութիւն ստեղծել, որ հայերը չեն կատարում խաղաղութեան կնքման իրենց մասի պարտաւորութիւնները: Դրանից յետոյ նրանք արդէն դիտարկում են իրենց ցանկութիւններին ռազմական եղանակով հասնելու տարբերակները: 2020թ. պատերազմը յատկապէս ադրբէջանցիների մէջ ամրապնդել է հարցերին ռազմական մօտեցում ցուցաբերելու սկզբունքը: Այն, որ Թուրքիան բոլոր դէպքերում կանգնած է ադրբէջանցիների թիկունքին, դա արտայայտուել է ոչ միայն 2020թ. այլեւ արցախեան առաջին պատերազմի ու ընդհանրապէս ողջ բանակցային գործընթացի ժամանակ:

Ալիեւը դեռ պատերազմից առաջ էլ մի տեսակ անհասկանալի հարցազրոյց էր տուել, որում ոչ բառացի, բայց ըստ էութեան յայտարարում էր բանակցային գործընթացներից դուրս գալու եւ ռազմական ճանապարհն ընտրելու մասին:

↳ 4

ՌՈՒՍԻԱ

## ՊՈՒՏԻՆԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒՄ Է ԽՕՍԵԼ ԱՐԵՒՄՈՒՏՔԻ ՍՊԱՌՆԱԼԻՔՆԵՐԻ, ՍԱԴՐԱՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ռուսաստանի նախագահ Վլադիմիր Պուտինն Օգոստոսի 16-ին ասել է, թէ Արեւմուտքը ցանկանում է ՆԱՏՕ-ի նման համակարգ տարածել Ասիական-Խաղաղօվկիանոսեան տարածաշրջանում:

Մոսկուայի միջազգային անվտանգութեան համաժողովի բացմանը ներկայացուել է նրա տեսաերիզը, որտեղ Պուտինն ասել է, թէ ԱՄՆ-ը ցանկանում է ձգձգել հակամարտութիւնը Ուկրաինայում:

Նա անդրադարձել է նաեւ Ներկայացուցիչների Տան խօսնակ Նենսի Փելոսիի Թայուան կատարած այցին: Պուտինի խօսքով՝ այն ոչ թէ անպատասխանատու առանձին քաղաքական գործչի քայլ էր, այլ ԱՄՆ-ի նպատակաուղղուած քաղաքականութիւն՝ ապակայունացնելու իրավիճակը տարածաշրջանում, «մանրակրկիտ պլանաւորուած սադրանք, ուրիշ երկրների ինքնիշխանութիւնը չյարգելու լկտի ցուցադրութիւն»:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀՈՍԱՆՔ ՉԿԱՅ, ՆՊԱՍՏ ԿԸ ԼԻՆԻ, ՏՆԵՐԸ ՉՎԱՌԵՂ. ԲԵՐՁՈՐՑԻՆԵՐԸ ՀԵՌԱՆՈՒՄ ԵՆ

Աղաւնոյում Օգոստոսի 18-ից հոսանք չկայ, անջատել են նաեւ գազն ու կապի բոլոր միջոցները:

Լաչինում՝ Աղաւնօ, Բերձոր, Սուս համայնքներում մօտ 350 հոգի էր ապրում. նրանց մի մասը հեռացել է, շատերը դեռ իրերն են տեղափոխում:

Լաչինի միջանցքը՝ յիշատակուած երեք համայնքներով հանդերձ, մինչեւ Օգոստոսի 25-ը անցնելու է ադրբեջանական վերահսկողութեան տակ: Արցախի իշխանութիւնները այս մասին բնակիչներին տեղեկացրեցին Օգոստոսի 5-ին՝ ղարաբաղա-ադրբեջանական սահմանին վերջին էսկալացիայից յետոյ:

*Ստեփանակերտը աւելի վաղ յայտարարել էր, որ Բաքուն ռուս խաղաղապահների միջոցով պահանջել է Հայաստանի հետ կապը կազմակերպել նոր ճանապարհով, որի ադրբեջանական հատուածն արդէն պատրաստ է, իսկ հայաստանեանը դեռեւս չի կառուցուել: Երեւանն ի պատասխան յիշեցրել էր 2020-ի Նոյեմբերի 9-ի յայտարարութեան մասին, որտեղ ամրագրուած էր՝ 3 տարուայ ընթացքում Լաչինով նոր երթուղու կառուցման նախագիծ պիտի հաստատուի: 3 տարին դեռ չի լրացել, հաստատուած նախագիծ էլ չկայ, ուստի, ըստ հայկական կողմի, Ադրբեջանի ներկայացրած պահանջը լեգիտիմ չէ:*

*Չնայած այս փաստարկներին՝ Հայաստան-Արցախ երթեւեկութիւնն այսուհետ նոր ճանապարհով է իրականացուելու, ռուս խաղաղապահները լքելու են Լաչինի արդէն նախկին միջանցքը, Բերձոր (Լաչին), Աղաւնօ եւ Սուս համայնքներն էլ, որոնք չեն մտնում «Լեռնային Ղարաբաղի ինքնավար մարզի նախկին սահմանի մէջ», անցնելու են Ադրբեջանին:* ↳ 4

## ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԱԹՆԱԺՈՂՈՎԸ Կ'ԱՆՑԿԱՑՈՒԻ ՀՈԿՏԵՄԲԵՐԻՆ, ՀՐԱՒԻՐՈՒԱԾ ԵՆ ՍՓԻՒՌՔԵԱՆ ԲՈԼՈՐ ՈՒԺԵՐԸ

Սփիւռքի գործերի գլխաւոր յանձնակատարի գրասենեակի կողմից կազմակերպուող Համաշխարհային հայկական գաղաթնաժողովը կ'անցկացուի Հոկտեմբերի 28-31-ին Երեւանում: Տեղեկութիւնը *Սիվիլ Նէթին* յայտնեցին Սփիւռքի գործերի գլխաւոր յանձնակատարի գրասենեակից:

Նշւում է, որ գագաթնաժողովը՝ որպէս նոր ձեւաչափ եւ հարթակ, սփիւռքի ներկայացուցիչների եւ տեղացի գործընկերների համար հնարաւորութիւն է՝ քննարկելու համընդհանուր նշանակութեան մարտահրաւէրներն ու խնդիրները:

Գագաթնաժողովի օրակարգում ընդգրկուած են լինելու ազգային անվտանգութեանը, հայկական շահերի պաշտպանութեանը, հայրենիքի ռազմավարական ոլորտների զարգացմանը, հայրենադարձութեանը, ներդրումային ներգրաւուածութեանը, հայապահպանութեանը, սփիւռքի ինքնակազմակերպմանը վերաբերող հարցեր:

«Գագաթնաժողովի ընթացքում հնչեցուած առաջարկները, լուծումներն ու արդիւնքները կը դառնան համահայկական օրակարգի ստեղծման եւ առաջմղման հիմնաքարերը: Այսպիսով՝ հայրենիքն ու սփիւռքը միասին կը նախանշեն յետագայ համատեղ աշխատանքի առաջնահերթութիւններն ու ճանապարհները», - տեղեկացնում է գրասենեակը: Նախատեսւում է սփիւռքից հիւրընկալել շուրջ 600 մասնակիցների:

«Սփիւռքեան բոլոր քաղաքական ուժերը, նրանց կից կամ առնչակից կառոյցները, համայնքային կազմակերպութիւնները, մասնագիտական, գործարար համայնքների ներկայացուցիչները հրաւիրուել են: Գրասենեակի կողմից որեւէ խտրականութիւն չի դրուել: Չենք բացառում, որ գուցէ որոշ անհատներ դուրս մնացած լինեն հրաւիրեալների ցուցակից, սակայն գրասենեակը բաց է նաեւ նրանց համար, ովքեր ուզում են մասնակցել գագաթնաժողովին եւ այս օրակարգի շրջանակներում կարող են հիմնաւորել իրենց մասնակցութիւնը: Դեռեւս չեն հրաւիրուել միայն հայրենադարձները, նրանց հրաւէրները կ'ուղարկուեն Սեպտեմբերի սկզբին», - նշում են Սփիւռքի յանձնակատարի գրասենեակից:

***Սիվիլ Նէթ***

ԽՈՀԵՐ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Չեմ գիտեր ինչու կը գրենք ու կը գրենք դէպքերու եւ իրերու մասին՝ որոնց մասին գրուած է մէկ դար առաջ: Թերեւս կրկնութիւնը շատ սիրելնուս համար:

1920 Ապրիլ 30-ին, *Արեւ* պիտի արտատպէր Երուանդ Օտեանի յօդուածը՝ «Հայաստանի սահմանները» խորագիրով: Յօդուածին մէջ Օտեան «կը լուծէ» Հայաստանի այդ ժամանակուայ (չ)գծուող սահմանները: Յօդուածը կը սկսի.

«- Տղաս, կրնա՞ս Հայաստանի սահմանները ըսել:

- Հայաստանի սահմաններն են, Արեւելքէն՝ անորոշութիւն, Արեւմուտքէն՝ տարտամութիւն, Հարաւէն՝ անստուգութիւն եւ Հիւսիսէն՝ անհաստատութիւն»:

Ասկէ ետք, համաձայն Օտեանին, սահմանին համար հայերը խնամատարներ փնտռեցին Եւրոպա եւ Ամերիկա, եւ ձախողելէ ետք որոշեցին հիմնուիլ ինքզինքնուն վրայ.

«Տարի մը Հայաստանի համար խնամատար մը փնտռեցին եւ կարելի չեղաւ գտնել, Միացեալ Նահանգներէն սկսան եւ մինչեւ Հոլանտայի դուռը ափ առին: Ոչ ոք ուզեց այդ անառակ որդիին հոգըստանձնել:

Յուսահատ՝ հրաժարեցան հոգատար կամ խնամատար գտնելէ եւ վճռեցին թէ հայերը չափահաս են ու խնամատարի պէտք չունին»:

Ստանձնելով անձնական ճակատագիրի որոշումը, հայերը սկսան գծել սահմանները, ինչպէս ցոյց կու տայ Օտեան.

«Հիմակ ալ Հայաստանի սահմանները գծելու կ'աշխատին:

«Բարձրագոյն Խորհուրդը Հայաստանի սահմաններու գծմամբ զբաղեցաւ» լուր կը բերէ հեռագիրը:

- Քիչ մը առաջ Հայաստանի սահմանները կը գծէինք կոր, կ'աւետէ Ահարոնեան Բարիզի հայերուն:

«Ըստ ֆրանսական տեսակէտին, Հայաստանի սահմանը Էրզրումի Արեւելքէն պիտի անցնի» կ'ըսէ զեկոյց մը:

«Ըստ անգլիական տեսակէտին, Հայաստանի սահմանը Տրապիզոնի Արեւմուտքէն պիտի անցնի» կ'ըսէ պաշտօնական յայտարարութիւն մը:

- Սեւ Ծովի վրայ ելք պիտի ունենայ, կը յայտարարէ իտալացի պաշտօնական անձնաւորութիւն մը:

- Միջերկրականէն մուտք մը անհրաժեշտ է, կը վճռէ ամերիկացի մեծ հայասէր մը:

Վերջապէս, շաբաթներէ ի վեր Հայաստանի սահմանները որոշելու վրայ են»:

Այսօրուայ բառապաշարով պիտի ըսէինք՝ տեսէ՛ք, հայկական լոպպինկի շնորհիւ ինչե՞ր պիտի ընէ Ֆրանսացին, անգլիացին, իտալացին եւ ամերիկացին... խօսելով:

Կու գայ Օտեանի յօդուածին վերջին մասը: Հայերս այս նոր սահմանները պիտի ստանանք՝ հակառակ մեր կատարեալ անզօրութեան.

««Սահման քաշաց՝ զէնք իւրեանց» ըսած է ժամանակին Հայ Թագաւոր մը, բայց դժբախտաբար չէ ըսած թէ զէնք չունեցողին սահմանը ի՞նչ է:

Շատ կը վախնամ որ այս սահմանագծութիւնն ալ հոգատարութեան քով երթայ եւ օր մը ելլեն մեզի յայտարարելու.

- Հայաստանը սահմանի պէտք չունի:

Անսահման Հայաստան մը..., ի՜նչ երազ»:

Բարեբախտաբար, այստեղ ալ կը վերջանայ Օտեանի յօդուածը, հեղինակին ծարաւը անսահմանէն աւելի ընդարձակ Հայաստանի մը չհասած:

Յօդուածէն քիչ ժամանակ ետք եկաւ Խորհրդային Միութիւնը, որ կարճ ժամանակի մէջ իր որոշումով գծեց-վերջացուց Հայաստանի սահմանները: Կը հաւնինք, չենք հաւնիր, 70 տարի չկրցանք բերաննիս բանալ:

Հիմա, 1991-էն ի վեր, Հայաստանի նոր սահմաններ կը գծենք, մեր հին հողերը վերագրաւելով, ուրիշին հողերը եւս գրաւելով, յետոյ նոյները կամ անոնց կարեւոր մասը կորսնցնելով, բայց նաեւ շատ բան կորսնցնելէ ետք, ամենայն հայոց պատմաբանի վանկարկութեամբ բարձրաձայնելով Հայաստանի սահմաններու պատմական երկարութիւնը մինչեւ Պաքու:

Երեսուն տարի է կը գծենք Հայաստանի սահմանները՝ մեր խնամատարութեամբ, օտար խնամատարութեամբ, երբեմն ոչ մէկով եւ ոչ միւսով, եւ տակաւին, ըստ երեւոյթին, երկար պիտի գծենք՝ «Սահման քաշաց՝ *անզէն* իւրեանց» նոր բնաբանով:

Ինչ ընենք՝ չգծե՞նք:

ՋԱՀԱԿԻՐ

## ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՋԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ

### ԿՐԹԱԿԱՆ ՄՐՑԱՆԱԿՆԵՐ

Գահիրէի ՀԲԸՄ-ի Սաթենիկ Ջագըր Հիմնադրամը, 2021-2022 տարեշրջանին համար, դրամական մրցանակներ պիտի տրամադրէ եգիպտահայ համայնքին պատկանող բոլոր այն ուսանողներուն, որոնք փայլուն արդիւնքներ բերած են որեւէ կրթական հանգրուանի աւարտական քննութիւններուն:

Այսպէս, մրցանակներ պիտի տրամադրուին աւարտական կարգերու՝ պետական կամ համազօր քննու--թիւններու ներկայացող բոլոր այն աշակերտներուն, որոնք 90% եւ աւելի արդիւնք բերած են պատրաստական բաժնին եւ 85% եւ աւելի արդիւնք բերած են երկրորդական բաժնին:

Դրամական մրցանակները իւրաքանչիւր կրթական հանգրուանի համար են եւ պիտի տրամադրուին հետեւեալ ձեւով.

| | |
|---|---|
| Պատրաստականի աւարտական դասարան | Ե.Ո. 500.- |
| Երկրորդականի աւարտական տարի | Ե.Ո. 1000.- |
| Համալսարանի աւարտական տարի | |
| Ա- Շատ լաւ արդիւնք | Ե.Ո. 1500.- |
| Բ- Գերազանց արդիւնք | Ե.Ո. 2000.- |
| Մագիստրական աստիճանի աւարտին | Ե.Ո. 2500.- |
| Դոկտորական աստիճանի աւարտին | Ե.Ո. 5000.- |

Գահիրէի դիմորդները իրենց ձեռք բերած կրթական արդիւնքը հաստատող փաստաթուղթը եւ անկէ պատճէն մը, պարտին ներկայացնել ՀԲԸՄ-ի Գահիրէի գրասենեակը:

Աղեքսանդրիոյ դիմորդները պարտին նոյները ներկայացնել Աղեքսանդրիոյ ՀԲԸՄ-ի գրասենեակը:

Բոլոր դիմումները ընդունելու վերջին պայմանաժամն է 30 Հոկտեմբեր 2022:

Մրցանակներու յանձնումը պիտի կայանայ հանդիսաւոր իրադրութեամբ:

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## 1 «ՍՓԻՒՌՔՈՒՄ ԱՊՐՈՂՆԵՐՆ ԻՐԱՒՈՒՆՔ ՈՒՆԵՆ ԿԱՐԾԻՔ ՈՒՆԵՆԱԼՈՒ, ԲԱՅՑ ԴԱ ՊԱՐՏԱԴՐԵԼ...

Հայաստանում: Այն մարդիկ, որոնք գնացել են ու տարիներով Հայաստանի հետ ուղիղ կապ չունեն, չգիտեմ այդ մարդկանց ձայն տալու իրաւունքը որքանով է արդարացուած: Մարդը պէտք է իր մաշկի վրայ զգայ Հայաստանում փոփոխութիւնները, որ ճիշտ ընտրութիւն կատարի, ներգրաւուած լինի այդ կեանքին:

**– Սփիւռքում տեղի ունեցող բողոքի ակցիաները ինքնաբո՞ւխ են, թէ՞ ուղղորդուած:**

– Կարծում եմ, որ դրանք իրականում շատ չնչին տոկոսն են կազմում, սփիւռքում ապրող մեր հայրենակիցների ոչ մեծ մասն է իրեն իրաւունք վերապահում որոշել այն կարեւոր հարցերը, որոնք վերաբերում են Հայաստանի ժողովրդի ապագային ու բարեկեցութեանը: Շատերը բաւականին խելամիտ ու հաւասարակշռուած են, բաւականին լոյալ են ու խելքից դուրս պահանջներ չեն բարձրացնում՝ Հայաստանից դուրս գտնուելով: Այդ փոքր մասի ակցիաներն էլ բացարձակ ուղղորդուած են, ու չգիտեմ, իրենք գիտակցում են դա, թէ չէ, բայց իրենք սպասարկում են օտար, ոչ այդքան մեզ բարեկամ պետութիւնների շահերը:

**– Հայաստանում գործող քաղաքական ուժե՞րն են ուղղորդողները, պարո՛ն Միսկարեան:**

– Առաւելապէս այո՛, բայց նրանք էլ ուղղորդւում են արտաքին ուժերից:

## 3 ՀՈՍԱՆՔ ՉԿԱՅ, ՆՊԱՍՏ ԿԸ ԼԻՆԻ, ՏՆԵՐԸ ՉՎԱՌԵ՛Լ...

**տարհանում**

Արցախի կառավարութիւնը Աղաւնոյում եւ Բերձորում ապրող ընտանիքներին 250 հազար դրամ է տրամադրել՝ տարհանման գործը կազմակերպելու համար: Միայնակ ապրողներին յատկացուել է 125 հազար դրամ: Գումարը, տեղացիների փոխանցմամբ, Կարմիր Խաչի միջազգային կոմիտէն է տրամադրել:

Բնակիչներն ահազանգում էին՝ բեռնատարների վարորդները իմացել են, որ մարդիկ գումար են ստացել, եւ սկսել են թուեր կրակել. Բերձոր-Երեւան սովորաբար մօտ 150 հազար դրամ արժեցող բեռնափոխադրումը դարձել էր 250-350 հազար:

**նպաստ**

Քաշաթաղի վարչակազմի ղեկավարի խօսքով՝ առաջիկայ ամիսներին տեղահանուած ընտանիքները աջակցութիւն կը ստանան՝ ամէն շնչին 70 հազար դրամի չափով: Աղաւնոն 177 բնակիչ ունէր, Բերձորում մօտ 65 ընտանիք էր ապրում, Սուսը գրեթէ դատարկ էր. ընդհանուր առմամբ՝ խօսւում է 300-350 բնակչի մասին:

**սերտիֆիկատ**

Արցախի տարածքային կառավարման նախարարը հաւաստիացրել էր, որ տարհանուող ընտանիքները, որոնք նախընտրում են ապրել Արցախում, բնակարան կը ստանան, իսկ մինչ այդ կը տեղաւորուեն ժամանակաւոր կացարանում: Նոյնը՝ Հայաստանի դէպքում: Հաւանաբար, ինչպէս 44-օրեայ պատերազմից յետոյ Լաչինից տեղահանուածներին, այնպէս էլ նրանց պետութիւնը բնակարանի գնման սերտիֆիկատ կը տայ՝ 8-ից 12 միլիոն դրամի չափով: Մինչ այս նախկին քաշաթաղցիները Երեւանում բողոքի ցոյցեր էին անում, որ տրամադրուած սերտիֆիկատով բնակարան գնել հնարաւոր չէ՝ շուկայական գներն աւելի բարձր են:

**գազ, հոսանք եւ կապ էլ չկայ**

Արցախի իշխանութիւնները Աղաւնոյի բնակիչներին տեղեկացրել էին, որ Օգոստոսի 20-ից գազը, հոսանքն ու կապն անջատուելու են. մինչեւ Օգոստոսի 25-ը նախատեսում են նաեւ ենթակառուցուածքները տարհանել, որոնք անցնում են Լաչինի միջանցքով: Օգոստոսի 18-ին կոմունալներն արդէն անջատուած էին: Հեռախօսակապ անգամ չկայ, հաւանաբար՝ աշտարակն են հանել:

**տները չվառե՛լ**

Ղարաբաղի տարածքային կառավարման նախարար Հայկ Խանումեանը տեղացիների հետ հանդիպման ժամանակ յորդորել էր՝ հեռանալուց առաջ տները չվառէ՛ք: 44-օրեայ պատերազմից յետոյ Քելբաջարից հեռացողներից շատերը իրենց տները հրդեհում, նոր էին գնում: Տները վառելու պրակտիկան տարածուած էր նաեւ Ղարաբաղեան առաջին պատերազմի տարիներին:

Այժմ Աղաւնոյում եւ Լաչինում ղարաբաղցի իրաւապահներն են փորձում կանխել գոյքը վնասելու փորձերը: Երեք ընտանիք, այնուամենայնիւ, արդէն վառել է իր տունը:

**ադրբէջանցի պրոպագանդիստը**

Ադրբէջանական պրոպագանդիստական հաքին.az լրատուական կայքի գլխաւոր խմբագիր Էյնուլա Ֆաթուլաեւը նախօրէին ռուս խաղաղապահ ուժերի գնդապետ Զիմինի ուղեկցութեամբ մտել է Բերձոր (Լաչին) եւ Աղաւնօ, «հարցազրոյց» է վերցրել բնակիչներից մի քանիսից: Նոյն կայքում Օգոստոսի 19-ին հրապարակուել է նրա *Անդրանիկն ու դաշնակները պատրաստւում են Ադրբէջանի հետ վերջին մարտին* վերնագրով քարոզչական յօդուածը:

Հայաստանեան ԶԼՄ-ների հետ զրոյցում տեղի բնակիչները, որոնք յայտնուել էին Ֆաթուլաեւի յօդուածում, նշում են, որ ադրբէջանցի լրագրողը ռուս խաղաղապահների հետ է եկել, ներկայացել է որպէս միջազգային մամուլի թղթակից, անգլերէն է խօսել, մարդիկ մտածել են՝ եւրոպացի կամ ամերիկացի է: Ասում են՝ յօդուածում աղաւաղել է իրենց խօսքերը:

Հայկական լրատուամիջոցների ներկայացուցիչներն ահազանգում են, որ ռուս խաղաղապահները վերջին օրերին արգելում են իրենց մուտքը Բերձոր եւ Աղաւնօ:

*Epress.am*

## 2 ՀԱՅԱՍՏԱՆՆ ՈՒ ԹՈՒՐՔ-ԱԴՐԲԷՋԱՆԱԿԱՆ ԿԾԻԿԸ

Ալիեւը 2021թ. իր հարցազրոյցներից մէկում յայտարարել էր, որ ինքը գիտի յաջողութեան բանաձեւը եւ նաեւ այն, թէ ինչ անել, եթէ չաշխատի տարբերակ Ա-ն, տարբերակ Բ-ն, կամ տարբերակ Գ-ն:

Թուրքերն ու ադրբէջանցիները հասկանում են, որ հիմա միջազգային իրաւունքն ու միջազգային կառոյցները շատ ուժեղ չեն, որ այս պահին աշխարհում քաղաքական բարդակ է տիրում եւ նրանք փորձում են օգտուել այդ վիճակից այնքան ինչքան հնարաւոր է՝ նախ ճնշումների եւ ապա, լաւ պահ գտնելու դէպքում՝ ռազմական միջամտութեան:

Ստիոպա Սաֆարեանը համաձայնուեց այն տեսակէտի հետ, որ Թուրքիան շատ աւելի յստակօրէն կը սկսի գործել նախագահական ընտրութիւններից յետոյ: Էրդողանը հիմա հասկանում է, որ իր քաղաքականութիւնը այլեւս շատ վստահելի չէ արեւմուտքի համար: Նոյնիսկ շանսեր կան, որ Էրդողանը չի վերընտրուի: Ամէն դէպքում Թուրքիան հիմա իրեն աւելի զգոյշ է պահում, քանի որ արտաքին ու ներքին ճակատագրի շուրջ տեղի ունեցող փոփոխութիւններ կարող են արձանագրուել նախագահական ընտրութիւններից յետոյ:

Ինչ վերաբերում է հայկական կողմի պահուածքին, ապա Սաֆարեանն այն տեսակէտը զարգացրեց, որ հայկական իշխանութիւնները փորձում են զգոյշ լինել եւ բոլոր խնդիրները մէկ զամբիւղում չտեղաւորել, քանի որ ամէն խնդիր լուծման իր տարբերակն ու ձեւն ունի: Հայաստանը փորձում է քիչ քիչ քանդել ադրբէջանական կծիկը:

Մենք ամէն ինչ պէտք է անենք, որ թուրք-ադրբէջանական միացեալ ցանկութիւնները եւս չտեղաւորուեն նոյն սկզբունքի մէջ, քանի որ նրանք փորձում են ամէն կերպ փոխադարձ պարտաւորութիւններն իրար հակադրել եւ դրանով իսկ նախ ճնշում գործադրել, իսկ յետոյ նաեւ փորձել ռազմական լուծում տալ հարցին: Օրինակ այն, որ Բաքուն փորձում է Լաչինի միջանցքը հակադրել Զանգեզուրեան միջանցքին, ասելով, որ կը տաք միջանցք, կը տամ միջանցք, չէ ուրեմն չէ, չնայած իրենք էլ արդէն Շառլ Միշէլի մակարդակով հասկացան, որ խօսքը ոչ թէ միջանցքի կարգավիճակի մասին է լինելու, այլ հսկուող աւտոճանապարհի

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1923 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 8 ՍԵՊՏԵՄԲԵՐ 2022 ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 75 Ե. ԴՀԿ.

عدد رقم ١٩٢٣ الخميس ٨ سبتمبر ٢٠٢٢


## ՅԱՒԵՐԺ «ԿԱՐԳԱՒՈՐՈՒՈՂ» ՀԱՅ-ԹՈՒՐՔԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

**ՕՖԵԼԻԱ ՍԻՄՈՆԵԱՆ**

2022 թուականին Հայ-Թուրքական յարաբերութիւնների կարգաւորման գործընթացը մտաւ ակտիվ փուլ: Յունուարի 14-ին Մոսկուայում հանդիպեցին երկու երկրների յատուկ բանագնացներ Ռուբէն Ռուբինեանը եւ Սերդար Քըլըչը, որից յետոյ վերականգնուեց երկու երկրների միջեւ ուղիղ աւիահաղորդակցութիւնը: Եւս երեք հանդիպում նրանց միջեւ կայացաւ Փետրուարին, Մայիսին եւ Յունիսին՝ Վիեննայում: Կողմերը յայտարարել էին, որ բանակցութիւնների վերջնական նպատակն է Հայաստանի ու Թուրքիայի միջեւ յարաբերութիւնների լիարժէք կարգաւորումը: Բանագնացների չորրորդ հանդիպումը յատկանշական էր ձեռք բերուած կոնկրէտ պայմանաւորուածութիւններով.

- Հայաստան-Թուրքիա ցամաքային սահմանը հատելու հնարաւորութիւն ապահովել երրորդ երկրների քաղաքացիների համար,
- մեկնարկել Հայաստան-Թուրքիա ուղիղ օդային բեռնափոխադրումների իրականացումը:

Յուլիսի 11-ին Հայաստանի վարչապետն ու Թուրքիայի նախագահն առաջին անգամ զրուցեցին հեռախօսով: Մեկնարկած բանակցային գործընթացը քաղաքագէտների կողմից անուանուեց քայլ առաջ: Բանակցութիւններից մեծ ակնկալիքներ ունէր նաեւ Թուրքիայի հայ համայնքը: Յարաբերութիւնների կարգաւորման նախորդ փորձը, սակայն, ցոյց է տալիս, որ անգամ շատ առարկայական պայմանաւորուածութիւններից յետոյ բանակցութիւնները ի վերջոյ մտել են փակուղի:

*Media.am*-ը որոշեց ուսումնասիրել՝ անկախութիւնից ի վեր Հայաստան-Թուրքիա բանակցութիւնները ինչ փուլերով են անցել, երբ, որտեղ եւ քանի անգամ են հանդիպել հայ եւ թուրք բարձրաստիճան պաշտօնեաները եւ ինչ հանգուցալուծում են ունեցել բանակցութիւնները:

**Լեւոն Տէր-Պետրոսեան**

1991թ. Դեկտեմբերի 24-ին Թուրքիան ճանաչեց Հայաստանը՝ որպէս անկախ պետութիւն, եւ երկու երկրների միջեւ համագործակցութեան քայլեր ձեռնարկուեցին: Մոսկուայում Թուրքիայի դեսպան Վոլկան Վուրալը անգամ ասել էր, որ Թուրքիան պատրաստւում է հիւպատոսութիւն բացել Երեւանում:

1992-ի Յունիսի 2-ին թուրքական *Ջումհիւրիէթ* թերթին տուած հարցազրոյցում Հայաստանի նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը յայտարարեց, որ ցանկանում է Թուրքիային տեսնել որպէս բարեկամ եւ գործընկեր պետութիւն. «Վերջիվերջոյ, մենք հարեւաններ ենք, եւ մեր համագործակցութիւնը տնտեսական եւ քաղաքական տեսանկիւնից արդիւնաւէտ կը լինի մեր երկու երկրների համար»:

1992թ. Յունիսի 14-ին Ռիօ դէ Ժանէյրոյում՝ բնապահպանական համաժողովի շրջանակում, կայացաւ Տէր-Պետրոսեանի եւ Թուրքիայի վարչապետ Սուլէյման Դեմիրէլի հանդիպումը: Շուրջ երկու շաբաթ յետոյ նրանք նորից հանդիպեցին Ստամբուլում՝ Սեւծովեան Տնտեսական Համագործակցութեան Կազմակերպութեան եզրափակիչ հռչակագրի ստորագրմանը: Նոյն տարուայ Օգոստոսի 23-ին Երեւան ժամանեց թուրքական բարձրաստիճան պատուիրակութիւնը, եւ բարձր մակարդակի հանդիպումներ տեղի ունեցան Հայաստանի ղեկավարների հետ: Հոկտեմբերի 7-ին պետնախարար Գագիկ Շահբազեանը մեկնեց Անկարա՝ քննարկելու Թուրքիայից հացահատիկը Հայաստան հասցնելու ուղիները, օրեր անց Անկարայում պայմանագիր ստորագրուեց Հայաստանի պարենի եւ Թուրքիայի առեւտրի նախարարութիւնների միջեւ:

1993-ի Ապրիլին Անկարայում Տէր-Պետրոսեանը եւ նրա խորհրդական Ժիրայր Լիպարիտեանը մասնակցեցին Թուրքիայի նախագահ Թուրգութ Օզալի թաղմանը: Այդ այցի ժամանակ հայկական պատուիրակութեանը ընդունեց վարչապետ Դեմիրէլը:

1995 թուականի Հոկտեմբերին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը ՄԱԿ-ի 50-ամեակին նուիրուած յոբելեանական հաւաքի ընթացքում հանդիպեց Թուրքիայի նախագահ դարձած Սուլէյման Դեմիրէլի հետ: Հայաստանի անկախացումից յետոյ դա Հայաստանի ու Թուրքիայի նախագահների առաջին հանդիպումն էր:

Առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը, այսպիսով, հանդիպումներ է ունեցել վարչապետ, ապա նախագահ Սուլէյման Դեմիրէլի հետ, այցելել Թուրքիա: Հայաստանի տարբեր բարձրաստիճան պաշտօնեաներ այդ ընթացքում եւս հանդիպումներ ունեցել են թուրք գործընկերների հետ:

**Ռոբերտ Քոչարեան**

Ռոբերտ Քոչարեանի՝ 1998թ.-ին նախագահի պաշտօնը ստանձնելուց ի վեր Հայաստանի եւ Թուրքիայի նախագահները հանդիպել են երկու անգամ: 1999թ. Հոկտեմբերի 27-ի ահաբեկչութիւնից յետոյ Թուրքիայի պետնախարար Մեհմէտ Ալի Իրտեմչելիկի գլխաւորած պատուիրակութիւնը ժամանել էր Հայաստան ու մասնակցել խորհրդարանում գնդակահարուած գործիչների յուղարկաւորութեան արարողութեանը: Մէկ ամիս անց Ռոբերտ Քոչարեանը մեկնեց Ստամբուլ՝ մասնակցելու Սեւծովեան Տնտեսական Համագործակցութեան Կազմակերպութեան գագաթնաժողովին եւ հանդիպեց Թուրքիայի նախագահ Դեմիրէլին: Հանդիպումների մասին մանրամասները հնարաւոր է կարդալ Հայաստանի ԱԳՆ նախկին նախարար Վարդան Օսկանեանի «Անտեսուած դասեր» յօդուածում: Վերջինս եւս բազմաթիւ հանդիպումներ է ունեցել թուրք գործընկերների, այդ թւում՝ յետագայում նախագահ դարձած Աբդուլլահ Գիւլի հետ:

Դրանից յետոյ կապը Հայաստանի եւ Թուրքիայի նախագահների միջեւ շարունակուել է նամակագրութեամբ: 2005-ին Թուրքիայի վարչապետ Ռեջէփ Թայիփ Էրդողանը նամակ է յղել Քոչարեանին՝ առաջարկելով պատմաբանների յանձնաժողով ստեղծել՝ «ուսումնասիրելու 1915 թուականի իրադարձութիւնները»: Քոչարեանի պատասխան նամակը հրապարակուել էր տարիներ անց՝ Wikileaks-ում: Հայաստանի երկրորդ նախագահը առաջարկել էր ստեղծել միջկառավարական յանձնաժողով, որը կարող է քննարկել ցանկացած եւ բոլոր չլուծուած խնդիրները երկու պետութիւնների միջեւ:

**Սերժ Սարգսեան**

Սերժ Սարգսեանը Հայաստանի առաջին նախագահն էր, որը շնորհաւորական ուղերձ ստացաւ Թուրքիայի նախագահից ընտրուելու

↳ 4

**ԲՐԻՒՍԷԼ**

## ՓԱՇԻՆԵԱՆ-ԱԼԻԵՒ ՀԱՆԴԻՊՈՒՄ ԲՐԻՒՍԷԼՈՒՄ

Օգոստոսի 31-ին Բրիւսէլում, Եւրամիութեան Խորհրդի նախագահ Շառլ Միշէլի միջնորդութեամբ, տեղի է ունեցել Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի եւ Ադրբէջանի նախագահ Իլհամ Ալիեւի հանդիպումը:

Քննարկուել են գերիների ազատ արձակմանը եւ անհետ կորածների ճակատագրի պարզաբանմանը, սահմանազատմանը եւ սահմանային անվտանգութեանը, տարածաշրջանային ապաշրջափակմանը, Հայաստան-Ադրբէջան յարաբերութիւնների կարգաւորմանը, Լեռնային Ղարաբաղի հիմնախնդրին վերաբերող հարցեր:

Պայմանաւորուածութիւն է ձեռք բերուել ԱԳ նախարարների մակարդակով շարունակել առարկայական բանակցութիւնները խաղաղութեան պայմանագրի նախագծի մշակման շուրջ: ԱԳ նախարարների հանդիպումը տեղի կ՛ունենայ մէկ ամսուայ ընթացքում:

Սահմանազատման եւ սահմանային անվտանգութեան հարցերի յանձնաժողովի յաջորդ հանդիպումը տեղի կ՛ունենայ Բրիւսէլում Նոյեմբերին:

Առաջնորդների ձեւաչափով յաջորդ հանդիպումը տեղի կ՛ունենայ Նոյեմբերին:

## ՓԱՇԻՆԵԱՆՆ ՈՒ ՊՈՒՏԻՆՆ ԱՆԴՐԱԴԱՐՁԵԼ ԵՆ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ՇՈՒՐՋ ԻՐԱՎԻՃԱԿԻՆ

Օգոստոսի 29-ին Վարչապետ Նիկոլ Փաշինեանը հեռախօսազրոյց է ունեցել Ռուսաստանի նախագահ Վլադիմիր Պուտինի հետ, հաղորդում են կառավարութիւնից:

Բացի հայ-ռուսական օրակարգային մի շարք հարցերը, նրանք անդրադարձել են Լեռնային Ղարաբաղի շուրջ իրավիճակին: Մասնաւորապէս, ընդգծուել է 2020 թուականի Նոյեմբերի 9-ի, 2021 թուականի Յունուարի 11-ի եւ Նոյեմբերի 26-ի եռակողմ պայմանաւորուածութիւնների հետեւողական իրականացման կարեւորութիւնը, ասուած է երկու կողմերի տարածած նոյնաբովանդակ հաղորդագրութիւնների մէջ:

Երկու երկրների ղեկավարները նաեւ շնորհաւորել են միմեանց Հայաստանի եւ Ռուսաստանի միջեւ Բարեկամութեան, Համագործակցութեան եւ Փոխադարձ Օգնութեան պայմանագրի 25-ամեայ յոբելեանի առիթով, որը լրանում է Օգոստոսի 29-ին՝ համոզմունք յայտնելով, որ «այսուհետ եւս հայ-ռուսական դաշնակցային փոխշահաւէտ յարաբերութիւնները տարբեր ոլորտներում կը շարունակեն արդիւնաւէտ կերպով զարգանալ ու ամրապնդուել»:

↳ 2

**ՌՈՒՍԻԱ**

## ՄՈՍԿՈՒԱՅՈՒՄ ԿԱՅԱՑԵԼ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԱԴՐԲԷՋԱՆԻ ՓՈԽՎԱՐՉԱՊԵՏԵՐԻ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ

Օգոստոսի 30-ին Մոսկուայում կայացել է Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ պետական սահմանի սահմանազատման ու սահմանային անվտանգութեան հարցերով յանձնաժողովի եւ հայ-ադրբէջանական սահմանի սահմանազատման պետական յանձնաժողովի երկրորդ նիստը՝ փոխվարչապետեր Մհեր Գրիգորեանի եւ Շահին Մուստաֆաեւի նախագահութեամբ:

Հայաստանի արտաքին քաղաքական գերատեսչութեան փոխանցմամբ՝ պայմանաւորուածութիւն է ձեռք բերուել համաձայնեցուած ժամկէտներում երրորդ հանդիպման անցկացման վերաբերեալ:

Նիստին ընդառաջ, ըստ հաղորդագրութեան, Ռուսաստանի փոխվարչապետ Ալեքսէյ Օվերչուկը

↳ 2

# ԵՐՈՒԱՆԴ ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

## Եգիպտահայ մոռցուած երաժիշտը

**Հ. ԱՒԱԳԵԱՆ**

1889 Մայիս 7/19-ին, Պոլսոյ Թեւթոնիա սրահին մէջ, Տիգրան Չուհաճեան կը կազմակերպէ նուագահանդէս մը՝ որ կ՚արձանագրէ բացառիկ յաջողութիւն: Նուագահանդէսի վերջին գործը Հռչակաւոր երաժշտահանի *Rappelle-toi* ռոմանսն էր, «զոր երգեց Երուանդ էֆ. Օգոստինոսեան այնպիսի զգայուն ձայնով ու շեշտերով որ ցունց տուաւ հոգիներուն եւ այդ աննման երգի բոլոր մելամաղձութիւնը սրտերու մէջ անցուց», կ՚արձանագրէ Տիգրան Արփիարեան(1):

Ուրիշ անստորագիր խանդավառ հանդիսատես մը կը գրէ՝ թէ մեծ յաջողութիւն «ունեցաւ վարպետին [իմա՝ Չուհաճեանի, Հ.Ա.] *Յիշեա՛* (Rappelle-toi): Ծանօթ է ամէնուն Ժօռժ Ռիւբէսի եղանակն Ալֆրէտ տը Միւսէի բառերուն վրայ, բանաստեղծութեանը նման սիրամնջիկ մելամաղձիկ եղանակ մը. ա՛յնքան այդ եղանակն ու այդ բառերը միաքայլ խառնուած են յիրեար որ դժուարին էր երեւակայել Միւսէի տաղն երգուած տարբեր եղանակով. Չուխաճեան յաղթած է այդ դժուարութեան, եւ իւր *Rappelle-toi*-ն, Պ. Օգոստինոսեանի թրթռուն հոգեդղորդ ձայնովն երգուած, յուզեց ունկնդրաց սրտերն առաւել տխուր, առաւել գորովական, առաւել սարսռուն բացատրութիւն մը տալով բանաստեղծին զգացմանց»(2):

Ծնած Պոլիս, 1862 Սեպտեմբեր 25 / Հոկտեմբեր 7-ին(3), Երուանդ Օգոստինոսեան 27 տարեկան էր՝ երբ կը գտնէր Տիգրան Արփիարեանի եւ պոլսահայ մամուլի յիշեալ յախուռն ընդունելութիւնը: «Թրթռուն հոգեդղորդ ձայնովն», կամ «ցունց տուաւ հոգիներուն», սովորական արտայայտութիւններ չէին պոլսահայ մամուլին համար: Յստակ է մեներգիչի արուեստին ազդեցիկութեան աստիճանը:

Պէտք չէ մոռնալ նաեւ Չուհաճեանի նման հռչակաւոր երաժիշտի մը թոյլտուութիւնը՝ կատարելու իր նորաստեղծ մեներգը:

Օգոստինոսեանի կենսագրական տուեալները կը պակսին: *Rappelle-toi*-էն հինգ ու կէս ամիս ետք՝ 1889 Օգոստոս 25 / Սեպտեմբեր 6-ին կ՚ամուսնանայ Հեղինէի հետ: Կ՚ունենայ երեք զաւակներ՝ Լիպարիտ (ծն. 1890), Արման (ծն. 1894) եւ Հեղինէ (ծն. 1900)(4):

1896 թուական եւ Պանքայի դէպքը՝ կոտորածներով փոխադարձուած: Օգոստինոսեանները կը գաղթեն Սոֆիա, իրենց հետ ունենալով Երուանդի քենին՝ Հայկանոյշ Պալեան (դաշնակահարուհի, յետագայ կողակիցը ճարտարապետ Կարօ Պալեանի)(5):

Օգոստինոսեանները Սոֆիայէն կը հեռանան 1904 Մարտ 22-ին (այսուհետեւ՝ նոր տոմարով), Աղեքսանդրիա կը հասնին Ապրիլ 2-ին, Գահիրէ՝ Ապրիլ 16-ին(6):

Ապրելով Եգիպտոսի մէջ մինչեւ իր վաղաժամ մահը 1924 Սեպտեմբեր 15-ին(7), Երուանդ Օգոստինոսեան շուրջ քսան տարի եգիպտահայ գաղութին մէջ ծաւալած է ուշագրաւ երաժշտական եւ հասարակական գործունէութիւն:

**Իբրեւ պարիթոն**, 1905-1921-ին անընդհատ մեներգած է եգիպտահայ կարեւոր ձեռնարկներու մէջ: Մամուլը արձանագրած է հետեւեալ երգացանկը.

1. Կոմիտաս Վարդապետ, *Կռունկ*:
2. Կոմիտաս Վարդապետ, *Հայաստան*:
3. Փրոֆ. Գալֆաեան, *Օրօր*:
4. *Գինիին երգը*:
5. Լէօնքաւալլօ, *Pagliacci*, արիա:
6. Լուիճի Տենցա, երգ:
7. Մասընէ, *Hérodiade*, 'Vision fugitive':
8. Վերտի, *Don Carlos*, արիա:
9. Քարլօ Փինսութի, *Il libro santo*:
10. Փուչչինի, *La bohème*, թենորի եւ պարիթոնի զուգերգ:

Ասոնք լոկ արձանագրուածներն են եգիպտահայ մամուլին մէջ: Երգացանկը պէտք է շատ աւելի ընդարձակ եղած ըլլայ:

**Իբրեւ մանկավարժ**, 1910-1915-ին եղած է Գալուստեան Ազգային Վարժարանի երգի ուսուցիչ: Այս հանգամանքով, դպրոցական ու արտադպրոցական հանդէսներու համար պատրաստած է աշակերտական երգչախումբը եւ մարզած աշակերտներուն մեներգները: Երգչախումբը կատարած է, ի միջի այլոց, Կոմիտաս Վարդապետ, հայկական-ժողովրդական, ֆրանսական երգեր:

Օգոստինոսեան հայերէնի թարգմանած է Վերտիի *Nabucco*-էն հատուածներ, զանոնք կատարել տալով Գալուստեանի աշակերտներուն:

Բարեգործականի նորաստեղծ քայլերգը՝ *Փա՜ռք Միութեան* (խօսք՝ Վ. Մալէզեան, երաժշտութիւն՝ Յ. Սինանեան), առաջին անգամ կատարուած է 1914-ին, Գալուստեան Ազգային Վարժարանի երկձայն երգչախումբին կողմէ, խմբավարութեամբ Օգոստինոսեանի, ի ներկայութիւն Պօղոս փաշա Նուպարի:

**Իբրեւ խմբավար**, 1920-ին կազմած է նոր հիմնադրուած Ռամկավար Գեղարուեստասիրաց Սրահի (յետագային՝ Հայ Գեղարուեստասիրաց Միութիւն) առաջին երգչախումբը:

1922-ին, Բարսեղ Աբովեանի բեմադրած *Ուշ լինի նուշ լինի եւ Նա չը լինի սա լինի* օփերէթներուն համար յատուկ կազմած, մարզած ու վարած է երգչախումբը:

Մասնաւոր առիթներով վարած է Ս. Աստուածածին եկեղեցիի երգչախումբը (դպրաց դաս), օրինակ՝ Հայ Երիտասարդ Քրիստոնեայ Ընկերակցութեան Ծննդեան հանդէսին (Ամերիքըն Միշընի սրահ, 1914), Հայաստանի անկախութեան Բ. տարեդարձին նուիրուած հանդիսաւոր պատարագին (Ս. Աստուածածին եկեղեցի, 28 Մայիս 1920):

**Իբրեւ դաշնակահար**, կատարած է Շոփէնէն կտոր մը (1913) եւ քանիցս նուագակցած մեներգիչներուն եւ իր սեփական մեներգներուն:

**Իբրեւ երաժշտահան**, յօրինած է Հետազօտիչ-Տղայոց քայլերգը (խօսք՝ Յ. Թ. Գայաեան), զոր 1916-ին կատարած է հետազօտիչներու ֆանֆարը:

**Իբրեւ հասարակական գործիչ**, եղած է եգիպտահայ միութիւններու վարչական անդամ. 1915՝ Հայ Հետազօտիչներու Ընկերակցութիւն (անդամ), 1916՝ Գրական Գեղարուեստական Միութիւն (խորհրդական), եւ 1918՝ Ազգային Սրահ (ատենադպիր):

1913-ին Օգոստինոսեան արդէն հռչակուած էր իբրեւ վեթերան երաժիշտ(8):

Իր որդին՝ Արման Օգոստինոսեան, որ 1913 թուականէն ի վեր յայտնուած է եգիպտահայ բեմին վրայ իբրեւ պարիթոն, յետագային կարեւոր դեր պիտի խաղար գաղութին մէջ: Ան բազմաթիւ ելոյթներ ունեցած է Եգիպտոսի ռատիոյէն: Արժանի է առանձին հատորի մը:

### ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ԵԳԻՊՏՈՍԻ ՇՐՋԱՆԻ

Ժամանակագրութիւնը պատրաստուած է համաձայն եգիպտահայ մամուլի մէջ պահպանուած նիւթերուն, որոնք շատ հեռու են ամբողջական ըլլալէ, բայց ցոյց կու տան երաժիշտի կենսագրութեան ընդհանուր կորագիծը:

**10 Մարտ 1905**

Գերմանական Քլիւպ Հարմոնիա սրահ, գրական-երաժշտական երեկոյթ, կազմակերպութեամբ Լսարան-Ընթերցատան:

Կը բանախօսեն Տիրան Քէլէկեան եւ Վահան Մալէզեան, կը նուագեն Հայկանոյշ Պալեան (դաշնակ) եւ Յարութիւն Սինանեան (դաշնակ եւ ջութակ), կը մեներգէ Պր. Մ. Նեվրուզ(9):

Երեկոյթի առաջին մասին, Օգոստինոսեան կը մեներգէ Լէօնքաւալլոյի *Pagliacci*-էն արիա մը, դաշնակի նուագակցութեամբ Հ. Պալեանի(10), որուն ազդեցութիւնը, ինչպէս Պոլսոյ անդրանիկ ելոյթը, կ՚ըլլայ բացառիկ.

«Տ. Ե. Օգոստինոսեան, որ մինչեւ հիմակ անծանօթ մըն էր Գահիրէի հայ հասարակութեան համար, իր գեղ ձայնովը ծայրագոյն յաջողութեամբ երգեց. իր երգը գնահատեցին, մենէ շատ աւելի ձեռնհասութեամբ, մասնաւորապէս զինքը լսելու փութացող քանի մը Իտալացիներ: Պատիւ մը եղաւ Լսարանի վարչութեան համար իր այս հրաւէրով, ցարդ եգիպտահայուն անծանօթ սոյն տաղանդին, Գահիրէի մէջ ներկայութիւնը ծանօթացնելը»(11):

Յայտագիրի երկրորդ մասին կ՚երգէ Լուիճի Տենցայէն երգ մը:

**7 Մայիս 1905**

Էզպէքիէ Թատրոն, Յարութիւն Սինանեանի նուագահանդէս(12):

Հայ եւ օտար հասարակութիւն մը ունկնդիր կ՚ըլլայ Սինանեանին իբրեւ նուագավար (ղեկավարելով Քնար Հայկական նուագախումբը), դաշնակահար, ջութակահար եւ երաժշտահան: Կը մեներգէ Մ. Նեվրուզ, դաշնակի մենանուագով, զուգանուագով եւ նուագակցութեամբ կը մասնակցի Հայկանոյշ Պալեան(13): ⇘ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԵԱՀԿ ՄԽ ՀԱՄԱՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՆ ՄԱՆԴԱՏԸ ՈՐԵՒԷ ՄԷԿԸ ՉԻ ՉԵՂԱՐԿԵԼ. ՀՀ ԱԳՆ

ԵԱՀԿ Մինսկի խմբի համանախագահութիւնն ունի միջազգային մանդատ՝ աջակցելու Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան տեւական ու համապարփակ կարգաւորմանը, եւ այս մանդատը որեւէ մէկը չի չեղարկել, *Ազատութիւն ռադիոկայանի* խնդրանքով, արձագանքելով ԵԱՀԿ ՄԽ ամերիկացի համանախագահի նշանակմանը Բաքուի կոշտ արձագանքին, ասել է Հայաստանի արտգործնախարարութեան խօսնակ Վահան Յունանեանը:

Օգոստոսի 24-ին Միացեալ Նահանգների արտաքին քաղաքական գերատեսչութիւնը հաղորդեց պետքարտուղարի եւրոպական եւ եւրասիական հարցերով օգնականի նախկին պաշտօնակատար Ֆիլիպ Ռիքերի՝ Կովկասեան բանակցութիւնների գծով աւագ խորհրդական եւ ԵԱՀԿ Մինսկի խմբի համանախագահ նշանակման մասին:

Բաքուն կոշտ արձագանքեց՝ գրեթէ ⇘ 3

1 ⇘

## ՄՈՍԿՈՒԱՑՈՒՄ ԿԱՅԱՑԵԼ Է...

հանդիպել է Շահին Մուստաֆաեւի եւ Մհեր Գրիգորեանի հետ եւ ողջունել յանձնաժողովի աշխատանքների շարունակումը:

Կողմերը քննարկել են կազմակերպչական եւ ընթացակարգային հարցեր, հանգամանալից մտքեր փոխանակել յանձնաժողովների համատեղ գործունէութեան կանոնակարգի եւ յետագայ աշխատանքների շուրջ:

Հանդիպման արդիւնքներով պաշտօնական հաղորդագրութիւն է տարածել նաեւ Ռուսաստանի արտգործնախարարութիւնը՝ շեշտելով, որ ռուսական կողմը պատրաստ է շարունակել խորհրդատուական եւ տեխնիկական աջակցութիւն ցուցաբերել Ադրբէջանի եւ Հայաստանի պատուիրակութիւններին՝ երկու երկրների միջեւ պետական սահմանի սահմանազատման շուրջ բանակցութիւններում:

Սա յանձնաժողովների ձեւաւորումից յետոյ փոխվարչապետերի երկրորդ հանդիպումն է, սակայն, առաջինը՝ հայ-ադրբէջանական յանձնաժողովների ամբողջական կազմերով: Գրիգորեանն ու Մուստաֆաեւն առաջին անգամ հանդիպել էին Մայիսին՝ Երասխի ուղղութեամբ՝ հայ-ադրբէջանական սահմանին:

Մոսկուա մեկնած հայկական պատուիրակութեան կազմը 11 հոգանոց է՝ փոխվարչապետից բացի, արտաքին գործերի, պաշտպանութեան, արդարադատութեան, տարածքային կառավարման փոխնախարարները, ներկայացուցիչներ Զինուած Ուժերի Գլխաւոր Շտաբից, ԱԱԾ-ից, Կադաստրի Կոմիտէից: Իսկ ադրբէջանական պատուիրակութիւնը 23 հոգանոց է:

1 ⇘

## ՓԱՇԻՆԵԱՆՆ ՈՒ ՊՈՒՏԻՆՆ ԱՆԴՐԱԴԱՐՁԵԼ ԵՆ...

Կրեմլի խօսնակ Դմիտրի Պեսկովն աւելի վաղ յայտնել էր նախատեսուած հեռախօսազրոյցի մասին՝ նշելով. «Այսօր Ռուսաստանի եւ Հայաստանի համար շատ կարեւոր օր է: 25 տարի առաջ մեր երկու երկրների միջեւ ստորագրուեց բարեկամութեան պայմանագիրը»:

Փաշինեանն ու Պուտինը հեռախօսով զրուցել էին նաեւ Օգոստոսի 24-ին՝ կրկին քննարկելով Լեռնային Ղարաբաղի շուրջ ստեղծուած իրավիճակը:

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆ-ԱՐՑԱԽ ԳՐՈՒՆՏԱՅԻՆ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԻ ՄԱՍԻՆ

Օգոստոսի 30-ի ժամը 20:00-ից, Հայաստան-Արցախ կապն իրականացւում է նոր երթուղով:

**Որտեղո՞վ է անցնում նոր մայրուղին**

Օգոստոսի սկզբի ռազմական յարձակման նախաշեմին Բաքուն ռուս խաղաղապահների միջոցով պահանջ էր ներկայացրել Արցախի իշխանութիւններին՝ լքել Լաչինի գործող միջանցքը եւ Հայաստանի հետ կապը կազմակերպել նոր՝ Բերձորը (Լաչին) շրջանցող ճանապարհով, որի ադրբեջանական հատուածը (շուրջ 20 կմ) արդէն պատրաստ էր, իսկ հայաստանեանը (շուրջ 12 կմ) դեռ չէր կառուցւում:

Երեւանն ի պատասխան յիշեցրել էր 2020-ի Նոյեմբերի 9-ի յայտարարութեան մասին, որտեղ ամրագրուած էր՝ Լաչինի միջանցքով նոր երթուղու կառուցման նախագիծը պէտք է հաստատուի 3 տարուայ ընթացքում: 3 տարին դեռ չի լրացել, հաստատուած նախագիծ էլ չկայ, ուստի, ըստ հայկական կողմի, Ադրբեջանի պահանջը լեգիտիմ չէ:

Չնայած այս փաստարկին՝ պահանջը իրականացուել է. ռուս խաղաղապահներն լքում են Լաչինի արդէն նախկին միջանցքը (Տեղ-Բերձոր-Ստեփանակերտ), յարակից բնակավայրերը՝ Բերձորը (Լաչին), Աղաւնոն եւ Սուսը, որոնք չեն մտնում «Լեռնային Ղարաբաղի ինքնավար մարզի նախկին սահմանի մէջ», արդէն յանձնուել են Ադրբեջանին:

Նոր ճանապարհը ձգւում է Կոռնիձոր-Հին Շէն-Մեծ Շէն-Ստեփանակերտ երթուղով. Սիւնիքի մարզի Կոռնիձոր գիւղից այն դուրս է գալիս դէպի Հագարի (Աղաւնօ) գետի վրայով անցնող կամուրջ, այնուհետեւ՝ հասնում Հին Շէն, Մեծ Շէն եւ դուրս գալիս Եղծահող 4

# ՓԱՇԻՆԵԱՆԸ ՓՐԿՕՂԱԿ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՀԱՄԱՐ

Լրագրող Դաւիթ Գրիգորեանն իր ֆէյսբուքեան էջում տեղադրուած տեսանիւթում անդրադարձել է ներքաղաքական այն իրադրութեանը, որ ձեւաւորուեց Հայաստանում արցախեան առաջին պատերազմից յետոյ:

Արցախեան յաղթական պատերազմից յետոյ, ըստ նորմալ տրամաբանութեան, Հայաստանում պիտի իշխէր այն միտքը, որ եթէ յաղթանակը շատ արագ չկապիտալիզացուէր, ապա յաջորդ պատերազմը ոչ միայն անխուսափելի էր լինելու, այլեւ շատ աւելի ծանր, քան առաջինը:

Բայց պատերազմից յետոյ իշխանութեան եկածները պարուրուեցին պատերազմի յաղթական քօղով եւ ամէն ինչ արեցին միայն իրենց անսահմանափակ իշխանութիւնն ու հեշտ ու առատ պլրուստը ապահովելու համար: Այդ տրամաբանութեամբ նրանք հերթով Ռուսաստանին զիջեցին մեր երկրի բնական հարստութիւնների ու ստրատեգիական կարեւոր կէտերի կառավարումը՝ անվտանգային պատրանքի դիմաց, փորձելով այդ կերպ ամէն կերպ յետաձգել պատերազմը, որն անխուսափելիօրէն մօտենում էր:

Ռուսաստանից ակնկալուող անվտանգային պատրանքը ցնդեց 2016թ. Քառօրեայի ժամանակ: Մենք այդ ժամանակ ունեցանք հարիւրից աւել մարդկային զոհ, տարածքային կորուստներ, բայց փոխանակ հասկանալու, թէ ինչ էր նշանակում Քառօրեան, այդ չորսօրեայ մարտերը ներկայացրինք որպէս յաղթական պատերազմ, մինչդեռ ռազմական տեսաբաններն ու գործից հասկացող մարդիկ զգուշացնում էին, որ Քառօրեային շուտով յաջորդելու է էլ աւելի մեծ պատերազմ ու էլ աւելի սարսափելի է լինելու: Քառօրեան, որը մինչեւ հիմա չգիտենք պատերազմ էր թէ ոչ, իրենից ներկայացնում էր հետախուզական մարտ: Քառօրեայի ժամանակ ադրբեջանցիները հասկացան հայկական բանակի թոյլ կողմերը, բացթողումները վրիպումները, իսկ Հայաստանում Սերժ Սարգսեանն այդ չորսօրեայ մարտերը ներկայացրեց որպէս յաղթական պատերազմ՝ իր ընկած ռեյտինգը բարձրացնելու համար: Նոյն կերպ նաեւ Նիկոլ Փաշինեանը վարուեց 2020թ. Յուլիսին տաւուշեան սահմանային բախումները ներկայացնելով որպէս ինչ որ յաղթական ու կարճ պատերազմ:

Այդ միջոցներով տարուող քաղաքականութիւնն աշխատում է կարճաժամկէտ հեռանկարում, բայց ոչ երկարատեւ եւ պաշտպանում է միայն օրուայ իշխանութեանը:

2020թ. պատերազմն աւելի շուտ պիտի տեղի ունենար, բայց հետաձգուեց Թուրքիայում կատարուող յեղաշրջման հետեւանքով: Ռուսների ձեռքով փրկուած Էրդողանը ակտիվ մասնակցութիւն ունեցաւ տարածաշրջանի վերաբաժանման գործում:

Հայաստանի նախագահ Սերժ Սարգսեանն ինքն էլ շատ լաւ գիտէր, որ պատերազմը գնալով աւելի ու աւելի է մօտենում եւ իր առաջ յստակ պահանջներ են դրուած՝ յանձնելու եօթ, իսկ լաւագոյն դէպքում հինգ շրջաններ, առանց Արցախեան կարգավիճակի որեւէ յստակեցման: Նա ինքն էլ պատերազմից յետոյ յայտարարում էր, որ պատրաստ է հողերը վերադարձնելուն, իսկ Նիկոլ Փաշինեանի վարչապետական հակումները ուղղակի փրկութիւն դարձան Սերժ Սարգսեանի համար, ով օրինապէս հնարաւորութիւն ունեցաւ բանակցային անելանելի ծանրութեան փաստաթուղթը թողնելու սեղանին եւ գնալու:

Իսկ հիմա նախկին իշխանութիւնները, որոնք ոչ մի առաջընթաց այդպէս էլ չգրանցեցին բանակցային գործընթացում, հիմա մեղադրում են Նիկոլ Փաշինեանին պարտուելու համար վաղուց կանխորոշուած պատերազմում:

# ԵԱՀԿ ՄԽ ՀԱՄԱՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՆ ՄԱՆԴԱՏԸ ՈՐԵՒԷ ՄԷԿԸ ՉԻ ՉԵՂԱՐԿԵԼ. ՀՀ ԱԳՆ


2

չգործող Մինսկի Խումբը «վերակենդանացնելու փորձերը» կարող են յանգեցնել հայ-ադրբեջանական յարաբերութիւնների կարգաւորման գործընթացից ԱՄՆ-ի հեռացման: «Ղարաբաղեան հակամարտութիւնը լուծուած է, Ղարաբաղն էլ Ադրբեջանի անքակտելի մասն է», ասել է Ադրբեջանի ԱԳՆ խօսնակ Լեյլա Աբդուլաեւան:

ԱՄՆ Պետքարտուղարութեան ներկայացուցիչն էլ, ի պատասխան Բաքուի, այսօր յայտարարել է՝ Ռիքերի նշանակմամբ ԱՄՆ-ը նպատակ ունի հասնել հայ-ադրբեջանական համապարփակ խաղաղութեանը:

44-օրեայ պատերազմից յետոյ մօտ երկու տարի եռանախագահութեան մակարդակով բանակցութիւնները, փաստացի, փակուղում են: Մինչ Հայաստանը խօսում է Լեռնային Ղարաբաղի հակամարտութիւնը ԵԱՀԿ Մինսկի Խմբի համանախագահութեան ձեւաչափում կարգաւորելու անհրաժեշտութիւնից, Ադրբեջանի նախագահ Ալիեւը պնդում է՝ նման հարց այլեւս գոյութիւն չունի, Մինսկի Խմբին էլ թոշակի է ուղարկել:

ԽՈՀԵՐ

# ԲԱՌԵՐ՝ ԲԱՌԵՐՈՒ ՓՈԽԱՐԷՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

**Դէմ՝ քննադատութեան փոխարէն**

Քննադատութիւնը անբարենպաստ կարծիքն է անձի մը կամ գործի մը նկատմամբ, անհամաձայնութիւն անձի մը կարծիքին:

Քննադատուող կողմը յաճախ քննադատութիւնը կը ներկայացնէ իբրեւ կեցուածք իր դէմ: Ինքնարդարացումի ամենադիւրինը: Ասոր մէջ վարպետ են հայկական աւանդական կուսակցութիւնները՝ որոնք ինքզինքնին վերածած են անքննադատելի գոյացութիւններու: Քննադատուող կուսակցութիւնը քննադատութիւնը կը ներկայացնէ իբրեւ իր դէմ եղած դիրքորոշում:

Քննադատելն ու դէմ ըլլալը տարբեր իմաստներ են:

Ինքնին քննադատութիւնը ընդունուած է դիտել իբրեւ դրական երեւոյթ՝ հակառակ բացասական վերաբերմունքին ուրիշին նկատմամբ, մինչդեռ «դէմ»-ը բացասական է ամէն կողմերէ:

Ասիկա չի բացառեր, որ քննադատութիւն մը ըլլայ ոխի, վրէժի եւ մաղձի նպատակներով, այսինքն դառնայ «դէմ»: Բայց այս պարագային կը դադրի քննադատութիւն ըլլալէ:

**Դրամ մուրալ՝ դրամահաւաքի փոխարէն**

Դրամահաւաքը (fundraising) ենթադրաբար բարի նպատակներու ուղղուած գործողութիւն մըն է՝ ըլլայ ան կուսակցական, միութենական, հիմնարկային կամ պետական մակարդակներով:

Դրամահաւաքի համար պէտք է գտնել դրամ տուողը: Տուողը՝ յաճախ անհատ մը կ՚ըլլայ, կամ անհատականացուած հիմնարկ: Կարեւոր է տուողի անձնական անունին փայլեցումը: Տուողը՝ երբ չի հաւնիր դրամահաւաք իրականացնողը, կամ տրամադրութիւն չունի դրամ տալու, կամ տուեալ պարագային դրամ տալը բան մը պիտի չաւելցնէ իր վարկին վրայ, դրամահաւաքողը կ՚անուանէ դրամ մուրացող: Մեր շուրջը շատ կը լսենք այս արտայայտութիւնը՝ ի դիմաց դրամահաւաքի պաշտօնական յայտարարութիւններուն եւ ազդերուն:

Դրամահաւաքն ու մուրացկանութիւնը տարբեր արժէքներ են: Դրամահաւաքը դրական է, մուրացկանութիւնը՝ բացասական: Բայց երբեմն կարելի չէ՞ արդեօք բարձր մակարդակի դրամահաւաքութեան ետեւ գտնել քօղարկուած մուրացկանութիւն: Մուրացկանութեան պաշտօնականացում՝ դրամահաւաքի հասարակականօրէն դրական ըմբռնումին տակ:

**Զինեալ պայքար՝ փոխանակ պատերազմի**

Պատերազմը բացասական հասկացողութիւն է: Բայց աշխարհի ամէն տեղ պատերազմ է: Պատերազմ էր Ղարաբաղեան առաջին պատերազմը, պատերազմ էր երկրորդը: Արդարեւ, պատերազմող կողմին համար ան դրական երեւոյթ է: Պատերազմը դրականի կը վերածուի իրաւունքի եւ հայրենասիրութեան խօսոյթներուն շնորհիւ:

Աշխարհի բոլոր ռազմական նախարարութիւններուն անունները փոխուած են պաշտպանութեան նախարարութիւններու: Ծիծաղելի է: Բոլոր երկիրներն ալ կը պաշտպանուին: Եթէ բոլորին նախարարութիւնները պաշտպանական են, ովքե՞ր են յարձակողները:

Քու պատերազմդ կրնայ դրական համարուիլ նաեւ ուրիշին կողմէ՝ եթէ կարողանաս զինք համոզել իրաւունքի տեսանկիւնէն: Հայրենասիրութիւնը կրնայ գործել միայն երկիրին ներսը: Հայաստանն ու Ազըրպէյճանը կրնան ներքին հայրենասիրութեամբ իրենց ժողովուրդներուն արդարացնել Ղարաբաղի պատերազմներուն ձեռնարկումը, բայց տակաւին Ֆրանսային կամ Ռուսաստանին հաւանութիւնը ստանալու համար ստիպուած են գտնել իրաւական հիմքեր՝ իրական թէ անիրական:

Արդ, պատերազմը՝ ինքնին բացասական գործողութիւն մը ըլլալով, ենթակայ խումբերու համար դրականութիւն մը կը դառնայ:

Բոլորովին տարբեր է զինեալ պայքարը: Զինեալ պայքար հասկացողութիւնը արդէն իր մէջ կը բովանդակէ հայրենասիրութիւն, ազգային տվայտանք: Պատերազմ հասկացողութիւնը այս բոլորը չի պարունակեր: Զինեալ պայքարի հարթակին հասնելու համար, պատերազմի հասկացողութեան վրայ վերադիրօրէն կ՚աւելցուի ազգայնական հայրենասիրութիւնը: Մինչդեռ զինեալ պայքարը պէտք չունի վերադիրներու: Հայրենասիրութիւնն ու ազգային տվայտանքը ներյատուկ են հասկացողութեան:

Փոխանակ ըսելու թէ Արեւմտահայաստանը պիտի գրաւենք պատերազմով՝ որ խորթ պիտի թուի շատերուն, գիտնալով ներկայիս այդ ուղիով արդիւնքի հասնելու անկարելիութիւնը, կարելի է ըսել Արեւմտահայաստանը մեզի պիտի վերադարձնենք զինեալ պայքարով: Քանի որ վերջինին մէջ հայրենասիրութիւն կայ, գործողութիւնը կը դառնայ ընդունելի:

**Գրոց-բրոց՝ փոխանակ մտաւորականի**

Մտաւորականութիւնը դրական հասկացողութիւն մըն է, գրոց-բրոցութիւնը՝ ծաղրական:


4




## 1 ՑԱՒԵՐԺ «ԿԱՐԳԱՒՈՐՈՒՈՂ»

կապակցութեամբ: 2013-ին Աբդուլլահ Գիւլը շնորհաւորել էր նրան նաեւ վերընտրուելու կապակցութեամբ: Սերժ Սարգըսեանն էլ, իր հերթին, շնորհաւորական ուղերձ էր յղել Թուրքիայի նախագահ Աբդուլլահ Գիւլին Թուրքիայի ազգային տօնի՝ Հանրապետութեան Օրուայ առթիւ:

2008-ի Ապրիլի 21-ին Թուրքիայի արտգործնախարար Ալի Բաբաջանը պաշտօնական նամակով հայկական կողմին տեղեկացրեց, որ Թուրքիան ցանկանում է կարգաւորել հայ-թուրքական յարաբերութիւնները: Ապրիլի 27-ին Հայաստանի ու Թուրքիայի վարչապետները նամակներով փոխանակուեցին: Այն ժամանակ դեռ վարչապետ Էրդողանը յոյս յայտնեց, որ Սերժ Սարգսեանի՝ նախագահական պաշտօնում ընտրուելով հայ-թուրքական յարաբերութիւնները «կը մտնեն նոր փուլ»: Ի պատասխան՝ Տիգրան Սարգսեանը գրեց, որ Հայաստանը պատրաստ է սկսել երկխօսութիւն, եթէ Անկարան որեւէ նախապայման առաջ չքաշի:

2008-ի Յուլիսի 18-ին Ալի Բաբաջանը հաստատում է, որ Հայաստանն ու Թուրքիան մի շարք գաղտնի հանդիպումներ են ունեցել Բեռնում՝ Մայիս եւ Յուլիս ամիսներին: Հայաստանի վարչապետ Տիգրան Սարգսեանը արձագանքում է՝ «Որեւէ գաղտնիք կամ զարմանալու առիթ չկար: Հայ եւ թուրք դիւանագէտների միջեւ նման շփումները երբեք չեն դադարել»:

2008-ին Սարգսեանը Թուրքիայի նախագահին հրաւիրեց Հայաստան՝ դիտելու աշխարհի առաջնութեան Հայաստանի եւ Թուրքիայի ֆուտբոլի ազգային հաւաքականների ընտրական հանդիպումը: 2008թ. Սեպտեմբերի 6-ին Աբդուլլահ Գիւլը ժամանեց Երեւան, այցը տեւեց 6-7 ժամ:

2009թ. Յունուարի 29-ին Դաւոսում Սերժ Սարգսեանի եւ վարչապետ Ռեջէփ Թայիփ Էրդողանի միջեւ կայացաւ 20 րոպէ տեւողութեամբ հանդիպում:

2009-ի Ապրիլի 23-ին Հայաստանի եւ Թուրքիայի արտաքին գործերի նախարարութիւնների եւ Շուեյցարիայի արտաքին գործերի դաշնային դեպարտամենտի հետ համատեղ յայտարարութիւն է տարածւում յարաբերութիւնների կարգաւորման «ճանապարհային քարտէզի» մասին: Նոյն թուականի Օգոստոսի 31-ին Հայաստանի եւ Թուրքիայի արտգործնախարարութիւնները հրապարակում են նախաստորագրուած երկու արձանագրութիւններ, որոնք վերջնական ստորագրւում են Հոկտեմբերի 10-ին:

Հոկտեմբերի 14-ին Թուրքիա-Հայաստան ֆուտբոլային պատասխան հանդիպումն էր: Գիւլից Սարգսեանը գրաւոր հրաւէր ունէր՝ միասին դիտելու խաղը: Ու թէեւ Սարգսեանը յայտարարել էր, թէ կը մեկնի Թուրքիա, «եթէ սահմանը բաց լինի կամ եթէ մենք գտնուենք դրա նախաշեմին», աշխատանքային այցով մեկնում է Բուրսա, երբ սահմանը փակ էր:

2009թ. Մայիսի 7-ին Չեխիայի մայրաքաղաքում՝ միջազգային գագաթժողովի ընթացքում, տեղի ունեցան բանակցութիւններ Սերժ Սարգսեանի եւ Աբդուլլահ Գիւլի միջեւ:

2010-ի Ապրիլի 22-ին Սերժ Սարգսեանը հեռուստաուղերձով յայտնեց, որ Թուրքիան ամէն ինչ արել է ժամանակ ձգելու եւ գործընթացը տապալելու համար եւ պատրաստ չէ սկսուած գործընթացը շարունակել: 2015 թուականին Սարգսեանը յետ կանչեց արձանագրութիւնները Ազգային Ժողովից, 2018-ի Մարտի 1-ին հրամանագիր ստորագրեց հայ-թուրքական արձանագրութիւնների կնքման ընթացակարգը դադարեցնելու մասին:

Այսպիսով, Հայաստան-Թուրքիա բանակցութիւնների գործընթացում բարձրաստիճան պաշտօնեաների բազմաթիւ հանդիպումներ են կայացել, առարկայական թւացող պայմանաւորուածութիւններ ձեռք բերուել, սակայն դրանք դեռեւս կարգաւորուած յարաբերութիւնների երաշխիք չեն:

*Media.am*

## 3 ԲԱՌԵՐ՝ ԲԱՌԵՐՈՒ ՓՈԽԱՐԷՆ

Քիչ չէ՝ երբ նոյն ինքը մտաւորականը իր մտաւորական գործընկերոջ կ՚անուանէ գրոցբրոց, արտայայտած ըլլալով դիմացինի ստորադասումի հաճոյքը:

**Ընդօրինակող՝ փոխանակ խմբագիրի**

Խմբագրութիւն ըսելով նկատի ունիմ ձեռագիրներու, անտիպ կամ տպագիր գործերու հրատարակութեան պատրաստութիւնը, որ այդպէս կը կոչուի աքատեմիք շրջանակներու մէջ: Այս տեսակ խմբագրութիւնը դրական հասկացողութիւն մըն է, քանի որ խմբագիրը կը փրկէ կորուսեալը, լոյս աշխարհ կը հանէ անյայտը, կը բազմացնէ սակաւագոյնը:

Բայց կրնաս անձնապէս չսիրել տուեալ խմբագիրին եւ իր գործը կրնաս անուանել՝ ընդօրինակութիւն: Անոր ըրածը ձեռագիրի ընդօրինակութիւն է: Հանճարեղ բան մը չկայ ընդօրինակութեան մէջ: Ոեւէ մէկը կրնայ ընդօրինակել:

Խմբագիրը՝ գիտականօրէն ընդունուած եւ վաւերացուած պաշտօնակատարութիւն մը, մտաւորական դասակարգի մը յարիր, գերազանցապէս դրական հասկացողութիւն մըն է: Ընդօրինակողը՝ սովորական գործողութիւն մը, հասարակ ժողովուրդին յարիր, աննկարագիր հասկացողութիւն մըն է:

Խմբագրութիւնն ու ընդօրինակութիւնը տարբեր արժէքներ են:

Արդեօ՞ք խմբագրութիւնը աքատեմակա-- նօրէն վաւերացուած ընդօրինակութիւն կամ ընդօրինակութեան պաշտօնականացումը չէ:

* * *

Օրինակները շատ են: Բաւարարուիմ այսքանով:

Բառեր՝ որոնք կը փոխարինեն բառերու, տարբեր արժէքներ տալու համար գործողութեան: Բառեր՝ զորս կը գործածենք ըստ մեր նախասիրութեան, շահի եւ նպատակի: Բառեր՝ որոնք կը յառաջացնեն արժէքային համակարգեր, որոնց ընդմէջէն կը սաւառնինք ամենայն հեշտութեամբ, մէկ բառի փոխարինումով փոխելով ամբողջ արժէքային համակարգ մը:

## 3 ՀԱՅԱՍՏԱՆ-ԱՐՑԱԽ ԳՐՈՒՆՏԱՅԻՆ ԱՅԼԸՆՏՐԱՆՔԻ ՄԱՍԻՆ

գիւղին մօտ գտնուող նախկին մայրուղի:

Ճանապարհի մեծ մասը՝ մինչեւ Հայաստանի սահման հատուածը, արդէն պատրաստ է (կառուցուել է Ադրբէջանի կողմից): Հայաստանի տարածքով անցնող մօտ 12 կմ-անոց կտորը նոր են սարքում:

Հայկական կողմը աշխատանքները սկսել է Օգոստոսի 4-ին՝ արցախա-ադրբէջանական սահմանին ռազմական էսկալացիայի ժամանակ: Շինարարութեան մէջ միաժամանակ երեք ընկերութիւն է ներգրաւուած, աշխատանքներ են տարւում երեք տեղամասերում: Ճանապարհը, հաւանաբար, պատրաստ կը լինի միայն գարնանը:

Իսկ մինչ այդ Արցախ-Հայաստան կապը կ՚ապահովուի Աղաւնոյից ոչ հեռու գտնուող 4 կիլոմետրանոց գրունտային ճանապարհով, որը վերջին օրերին հապճեպօրէն բարեկարգըւում էր:

Թէ՛ նոր մայրուղին եւ թէ՛ ժամանակաւոր գրունտային ճանապարհը շրջանցում են Բերձոր (Լաչին) քաղաքը, Աղաւնօ եւ Սուս համայնքները: Արցախի տարածքային կառավարման նախարար Հայկ Խանումեանի փոխանցմամբ՝ այնտեղի բնակիչները ամբողջութեամբ տարհանուած են, Օգոստոսի 25-ի դրութեամբ այնտեղ քաղաքացիական բնակչութիւն այլեւս չկար, Օգոստոսի 26-ին համայնքները անցել են Ադրբէջանի վերահսկողութեան ներքոյ:

**Որտեղո՞վ է անցնելու ժամանակաւոր ճանապարհը**

Քանի որ նոր մայրուղու հայաստանեան հատուածը պատրաստ չէ, իսկ Լաչինի միջանցքը, որը վերջին 30 տարիներին Հայաստանը Արցախին կապող հիմնական մայրուղին էր, այլեւս հասանելի չի լինելու հայկական կողմին, կապը ժամանակաւորապէս ապահովուելու է 4 կիլոմետրանոց գրունտային ճանապարհով:

Հողային այս ճանապարհը անցնում է Հագարի գետի վրայ ադրբէջանցիների կառուցած կամրջով: Այն շրջանցում է Բերձորն ու Աղաւնոն եւ միանում նախկին մայրուղուն՝ Աղաւնօ գիւղից արդէն քիչ վերեւ՝ հայկական սահմանին աւելի մօտ:

*Epress.am*

## 2 ԵՐՈՒԱՆԴ ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

Օգոստինոսեան կ՚երգէ երկու արիաներ:

Առաջինը՝ Մասընէի *Hérodiade* (Հերովդիատա) օփերայի ‘Vision fugitive’ (Խաբուսիկ տեսիլ) արիան:

Երկրորդը՝ Վերտիի *Don Carlos*-էն արիա մը, «ցոյց տալով որ արդարեւ ունի մշակուած ձայն, ճաշակ, եւ երգելու մեծ ընդունակութիւն»(14):

(Շար. 1)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

1. Տ[իգրան] Ա[րփիարեան], «Երէկի նուագահանդէսը«, *Արեւելք*, 8/20 Մայիս 1889, Զ. տարի, թիւ 1602, էջ 3:

2. «Զուխաճեան նուագահանդէս», *Արեւելք*, 11/23 Մայիս 1889, Զ. տարի, թիւ 1605, էջ 2:

3. Ծննդեան եւ քանի մը այլ ճշգրիտ թուականներ տրամադրեց մեներգիչի թոռնուհին՝ ողբ. Սիրա Թաշճեան, 1997 Յունիսին իր հետ ունեցած հանդիպումիս ընթացքին: Սիրա դուստրն է պարիթոն Արման Օգոստինոսեանի:

4. Թուականները տրամադրած է Սիրա Թաշճեան:

5. «Տիկ. Հայկանոյշ Պալեան», *Արեւ*, 13 Յուլիս 1936, Ի. տարի, թիւ 5328, էջ 3:

6. Թուականները տրամադրած է Սիրա Թաշճեան:

7. Թուականը տրամադրած է Սիրա Թաշճեան:

8. Ե. Ք., «Ազգային Սրահին մէջ», *Յուսաբեր*, 31 Յուլիս 1913, Թ. տարի, թիւ 115, էջ 2:

9. «Գահիրէի Լսարան-Ընթերցատան հանդէսը», *Ազատ բեմ*, 18 Մարտ 1905, Բ. տարի, թիւ 48, էջ 1: «Ուրբաթ գիշերուան երեկոյթը», *Լուսաբեր*, 14 Մարտ 1905, Ա. տարի, թիւ 12, էջ 2:

10. «Ուրբաթ գիշերուան երեկոյթը», էջ 2:

11. «Գահիրէի Լսարան-Ընթերցատան հանդէսը», էջ 1:

12. «Բրոֆ. Սինանեանի նուագահանդէսը», *Լուսաբեր*, 22 Ապրիլ 1905, Ա. տարի, թիւ 59, էջ 2:

13. Ս. Մ. Ծոցիկեան, «Պ. Սինանեանի նուագահանդէսը», *Լուսաբեր*, 11 Մայիս 1905, Ա. տարի, թիւ 63, էջ 2-3:

14. Անդ, էջ 2-3:

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1924 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 22 ՍԵՊՏԵՄԲԵՐ 2022 — *ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.* — عدد رقم ١٩٢٤ الخميس ٢٢ سبتمبر ٢٠٢٢

# ԻՆՉՈ՞Ւ ԵՒ Ի՞ՆՉՊԷՍ ԿԱՐԵԼԻ Է ՁԱԽՈՂԵՑՆԵԼ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Այս յօդուածին բնաբանն է Սեպտեմբեր 13-14-ին Ազըրպէյճանի նախաձեռնած պատերազմը: Բոլոր գլխաւոր ու կողմնակի հարցերը ներկայացուած են այս լոյսին տակ:

**Պատերազմ եւ խաղաղութիւն**

Աղաւնոյի, Սուսի եւ Բերձորի շուրջ 350 անձերէ կազմուած հայ բնակչութեան տեղափոխութենէն ետք, Օգոստոս 31-էն սկսեալ Հայաստան-Արցախ ճանապարհային կապը կ՚իրականացուի նոր ճանապարհով՝ համաձայն 2020 Նոյեմբեր 9-ի Յայտարարութեան 6-րդ կէտին (*Ջահակիր*, Թիւ 1919):

Ծրար մըն էր՝ որ վերջացաւ: Գոնէ ժամանակաւորապէս: Բայց գերռազմականացուած տարածաշրջանի մը համար ծրարներու լուծումները ՊԷՏՔ ՉԷ վերջանան: Կայ ամբողջ Ղարաբաղի հարցը, որ տակաւին երկար ժամանակ դիտաւորեալ պիտի մնայ չլուծուած:

Աշխարհի գործողութիւններուն հիմքը պատերազմն է, խաղաղութիւնը դառնալով պատերազմին պատկերը: Երկու հականիշեր, որոնցմէ առաջինը դարձած է իրական գործողութիւն, երկրորդը՝ պատկերային խօսոյթ: Ազգային պետութիւնները կը պատերազմին իրարու դէմ... խաղաղութեան համար:

Ղարաբաղի հարցին պատճառով, Հայաստան-Ազըրպէյճան տարածքը դարձած է աշխարհի ամենէն աւելի ռազմականացուած օրրաններէն մէկը: Ղարաբաղի ներկայ հարցը, *բնազդաբար* վերածնած 1988-ին՝ իր յայտնի շարունակութիւններով, առաջին պատերազմէն ետք *պարտադրաբար* դարձաւ ռազմարդիւնաբերական մեծ տէրութիւններուն հաճելի խաղադաշտը: Ուր զէնքի վաճառք կայ, խաղաղութիւնը կը դառնայ պատրանք:

Ազըրպէյճան՝ իր ունեցած մարդաբանական, տարածական եւ նիւթական աղբիւրներուն շնորհիւ, կրնայ դառնալ պատերազմող, որմէ՝ իր ներկայ պատերազմական նկրտանքը:

Հայաստան՝ իր ունեցած մարդաբանական, տարածական եւ նիւթական աղբիւրներուն պատճառով չի կրնար դառնալ պատերազմող, որմէ՝ Հայաստանի նկրտանքը խաղաղութեան համար, ոչ իբրեւ խօսոյթ, այլ իրական գործողութիւն, բայց նաեւ ոչ իբրեւ գաղափարական համոզում, այլ իբրեւ գործնական շահ:

Հայաստան՝ ինչպէս Ազըրպէյճանը, քրէաօլիկարքական համակարգ մըն է, բայց, ի տարբերութիւն Ազըրպէյճանին, չկրցաւ տոկալ օլիկարքական պերճանքին: Փոքրիկ Հայաստանին համար օլիկարքութիւնը անբաղձալի գեխութիւն մը եղաւ, որ խլեց ՀՆԱ-ի մեծագոյն մասը, պետութեան ու ժողովուրդին թողելով փշրանքներ: Սփիւռքը՝ իր բարձրագոյն անհատներու անմիջական մասնակցութեամբ, ընկերութենական (corporative) մակարդակով մտաւ այդ օլիկարքական համակարգին մէջ եւ մեծապէս նպաստեց անոր:

Հայկական կողմէ խաղաղութեան ձգտում՝ հակառակ իր նախաձեռնած 1991-ի պատերազմին: Պատերազմ՝ որ իր վարէն վեր, հասարակութենէն իշխանութիւն ունեցած շարժումին շնորհիւ (գոնէ սկզբնական շրջանին), տարբեր էր վերէն վար, իշխանութենէն հասարակութիւն ընթացող Ազըրպէյճանի նախաձեռնած 44-օրեայէն: Թէեւ՝ պատերազմ էին երկուքն ալ:

Ոչինչ կայուն է քաղաքականութեան մէջ:

Արդ, ներկայիս ունինք Ազըրպէյճան, որ կը կամենայ պատերազմ, եւ Հայաստան՝ որ կը կամենայ խաղաղութիւն: Ստորեւ բանակցութիւններուն էութիւնը պատերազմ-խաղաղութիւնն է: Այս իրադրութեան ծառայելու համար, թէ՛ իրական գործողութեան եւ թէ պատկերային խօսոյթին կը միանան բազմաթիւ օժանդակ տարրեր:

Ներկայիս ունինք Ազըրպէյճանի ռազմական քաղաքականութիւնը՝ որ համերաշխ է «միջազգային» *չգրուած* օրէնքներուն, այսինքն՝ պատերազմին, եւ կը ծառայէ մեծ տէրութիւններու ռազմարդիւնաբերական արտադրութեան, եւ Հայաստանի քաղաքականութիւնը՝ որ համերաշխ է «միջազգային» *գրուած* օրէնքներուն, այսինքն՝ խաղաղութեան:

**Նոյեմբեր 9-ի յայտարարութիւնը՝ պատրուակ**

Պատերազմ-խաղաղութիւն առանցքի այսօրուայ հրատապ կէտերէն մէկն է Ազըրպէյճան-Նախիջեւան ճանապարհը:

Հետաքրքրական է համեմատել 2020 Նոյեմբեր 9-ի եռակողմ յայտարարութեան 6-րդ եւ 9-րդ կէտերը, որոնք յաջորդաբար կը վերաբերին Լաչինի միջանցքին եւ Ազըրպէյճան-Նախիջեւան երթեւեկային ճանապարհին:

6-րդ կէտը երկու անգամ կը շեշտէ «միջանցք» արտայայտութիւնը (Լաչինի միջանցք), տալով զայն կառուցելու եւ օգտագործելու առաւելագոյն ժամկէտ՝ երեք տարի (ուրիշ հարց թէ գործադրուեցաւ «ժամկէտէն շուտ»):

Ազըրպէյճանի պարտականութիւնը. «Ադրբէջանի Հանրապետութիւնը երաշխաւորում է Լաչինի միջանցքով քաղաքացիների, տրանսպորտային եւ բեռնատար միջոցների երթեւեկութեան անվտանգութիւնը երկու ուղղութիւններով»:

Ռուսաստանի պարտականութիւնը. Լաչինի միջանցքը «մնում է Ռուսաստանի Դաշնութեան խաղաղապահ զօրակազմի վերահսկողութեան ներքոյ»:

9-րդ կէտին մէջ միջանցքի խօսք չկայ: Ժամկէտ ալ չէ նշանակուած:

Հայաստանի պարտականութիւնը. «Հայաստանի Հանրապետութիւնը երաշխաւորում է տրանսպորտային կապերի անվտանգութիւնը Ադրբէջանի Հանրապետութեան արեւմտեան շրջանների եւ Նախիջեւանի Ինքնավար Հանրապետութեան միջեւ՝ երկու ուղղութիւններով քաղաքացիների, տրանսպորտային միջոցների եւ ապրանքների անխոչընդոտ տեղաշարժը կազմակերպելու համար»:

Ռուսաստանի պարտականութիւնը. «Տրանսպորտային հաղորդակցութեան հսկողութիւնն իրականացնում են ՌԴ ԱԴԾ [Ռուսաստանի Դաշնութեան Անվտանգութեան Դաշնային Ծառայութեան] Սահմանապահ Ծառայութեան մարմինները»:

6-րդ կէտի «Ռուսաստանի Դաշնութեան խաղաղապահ զօրակազմ»-ը բոլորովին տարբեր միաւոր մըն է 9-րդ կէտի ՌԴ ԱԴԾ Սահմանապահ Ծառայութենէն՝ որ շատոնց է պաշտօնապէս կը գտնուի Հայաստան, իբրեւ սահմանապահ մարմին:

Ամբողջ 9-րդ կէտը անորոշ է, թէ ինչպէս կրնան ազըրպէյճանցիները անցնիլ Հայաստանի տարածքով, առանց երրորդ կողմի պաշտպանութեան, այլ ընդամէնը սահմանի հատումի ժամանակ ենթարկուելով ԱԴԾ-ի քննութեան, ինչպէս Հայաստանի սահմանը մտնող ոեւէ անձ:

Ռուսաստանի կողմէ գրուած յայտարարութիւնը, թերեւս դիտաւորեալ անորոշ թողած է այս կէտը՝ յետագայ բանակցութիւններու ընթացքին զայն ձեւաւորելու միտումով, բայց նաեւ հեռացնելու հողային յանձնումի թիւրըմբռնումը:

9-րդ կէտը շուտով Ազըրպէյճանի կողմէ միակողմանի յայտարարութեամբ վերածնեցաւ «Զանգեզուրի միջանցք» արտայայտութեան՝ «Լաչինի միջանցք»-ի նմանողութեամբ: Հայաստան մերժեց Զանգեզուրի միջանցքը եւ ամուր մնաց 9-րդ կէտի տառացի վերարտադրութեան վրայ, քաջ իմանալով անոր անգործադրելիութիւնը:

2022 Օգոստոս 4-ի կառավարութեան նիստին, Փաշինեան կրկնեց իր նախապէս յայտարարածը Ազըրպէյճան-Նախիջեւան կապի մասին. «Այո՛, մենք այս ընթացքում ամէն օր էլ պատրաստ ենք այդ կապն ապահովել: Այդ Ադրբէջանն է, որ չի օգտւում մեր ընձեռած հնարաւորութիւններից: Մենք այսօր էլ ասում ենք, որ Հայաստանի Հանրապետութեան օրէնսդրութեամբ սահմանուած կարգով, ինչպէս կարգն է, եկէք, հատէք Հայաստանի սահմանը, գնացէք Նախիջեւան: Հէնց այսօր: Հէնց այսօր պատրաստ ենք ապահովել: Մենք նաեւ դեռեւս նախորդ տարուանից ունենք կէտ, որտեղ կայ Հայաստանի Հանրապետութեան մաքսային ծառայութեան կէտ եւ սահմանապահ ծառայութեան կէտ, եւ ասել ենք Ադրբէջանին, որ ցանկացած պահի Հայաստանի Հանրապետութեան օրէնսդրութեամբ սահմանուած կարգով այդ կէտերը կարող են հատել եւ կապ հաստատել Նախիջեւանի հետ»:

Կապ հաստատել՝ առանց միջանցքի, ուրեմն՝ առանց հողային զիջումի:

Մինչեւ այսօր, Հայաստանէն անցնող Ազըրպէյճան-Նախիջեւան ճանապարհի ճշգրիտ վայրը չէ որոշուած: Ամէն բան ըսուեցաւ: Մեղրի, Ջերմուկ, եւ այլն:

**Ազըրպէյճան-Նախիջեւան ճամբայ Իրանի միջոցով**

2022 Մարտ 11-ին, Պաքուի մէջ, Ազըրպէյճանի փոխվարչապետ Շահին Մուսթաֆաեւ եւ Իրանի քաղաքաշինութեան եւ ճանապարհներու նախարար Ռոսթամ Ղասէմի կը ստորագրեն համաձայնագիր, ըստ որուն Իրանի տարածքով պիտի բացուի Ազըրպէյճան-Նախիջեւան երթեւեկային ճամբայ, որ պիտի ներառնէ նաեւ երկաթուղի:

Օգոստոս 9-ին, Ազըրպէյճանի արտաքին գործոց նախարար Ճէյհուն Պայրամով կը վերահաստատէ լուրը. «Ազըրպէյճանը Նախիջեւանին կապելու համար կայ այլընտրանքային ճանապարհ Արաքս գետով՝ շրջանցելով Հայաստանը: Այդ նպատակով, Իրանի հետ պայմանաւորուածութեան համաձայն, Պաքուն արդէն սկսած է Արաքս գետի վրայով կառուցել առաջին կամուրջը»:

Պէտի հասկնալ, որ ասիկա կը փոխարինէ Զանգեզուրի միջանցք կոչուածը եւ վերջինիս մասին արդէն աւելորդ է վիճաբանիլ:

Բայց ոչ ոք խօսեցաւ այս փոխարինումին մասին: Ընդհակառակը, Ազըրպէյճան շարունակեց Հայաստանէն պահանջել միջանցքը, Հայաստանն ալ սրտաբաց պատասխանեց՝ օրինապէս հատեցէ՛ք Հայաստանի սահմանը, ինչպէս ոեւէ օտարերկրացի, եւ մենք ձեզի կը թոյլատրենք երթալ Նախիջեւան:

Նման պայմաններու տակ է որ Հայաստան կը մասնակցի բաւական աշխոյժ բանակցութիւններու՝ արեւելեան եւ արեւմտեան կեդրոններու հետ, միշտ յայտարարութիւններու առանցքը ունենալով խաղաղութիւնը: Հարցը, բնականաբար, միայն Զանգեզուրի միջանցքը չէ:

**Ազըրպէյճան եւ պատերազմի օրինականացումը**

2022 Յունիս 27-ի հեռատեսիլի ելոյթին, Փաշինեան կրկին առաջ կը քաշէ պատերազմ-խաղաղութիւն հարցը, շեշտելով՝ որ Ազըրպէյճան ամէն ջանք կը գործադրէ Հայաստանի դէմ յետագայ պատերազմը օրինականացնելու համար. «Խաղաղութեան գործընթացի այլընտրանքը նոր պատերազմն է: Կան

☞ 2

1

## ԻՆՉՈ՞Ւ ԵՒ Ի՞ՆՉՊԷՍ ԿԱՐԵԼԻ Է ՋԱԽՈՂԵՑՆԵԼ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ

օրինակներ, թէ ինչպէս է Ադրբէջանը հրաժարւում գալ խօսակցութեան՝ հրապարակային մեղադրելով Հայաստանին խօսակցութիւնից հրաժարուելու մէջ: Ինչո՞ւ է սա արւում, իմ գնահատականը մէկն է՝ արւում է Հայաստանի դէմ պատերազմի նոր լեգիտիմութիւն ձեւաւորելու համար»:

Ոմանք այս յայտարարութիւնը նկատեցին Փաշինեանի կողմէ կատարուած ինքնապաշտպանութեան փորձ: Յետագայ պատմական ընթացքը ցոյց տուաւ վարչապետի խօսքին իրականութիւնը:

**Փաշինեան-Փութին հեռախօսազրոյց**

Օգոստոս 29-ին հեռախօսազրոյց կ՚ունենան Փաշինեանն ու Փութինը: Ցուցադրական հեռախօսազրոյց մը, որուն դրդապատճառը կը ներկայացնէ Քրեմլինի խօսնակ Տմիթրի Փեսքով. «Այսօր Ռուսաստանի եւ Հայաստանի համար շատ կարեւոր օր է: 25 տարի առաջ մեր երկու երկիրներուն միջեւ ստորագրուեցաւ բարեկամութեան պայմանագիրը»:

Իրապէս, 1997 Օգոստոս 29-ին ստորագրուած էր պայմանագիր՝ Հայաստանի եւ Ռուսաստանի միջեւ բարեկամութեան, համագործակցութեան եւ փոխադարձ օգնութեան մասին:

Շատ բաներ գրուած են այնտեղ: 2022 Սեպտեմբեր 13-ի վերջին դէպքերուն առնչութեամբ թերեւս ամենէն աչքառուն է Յօդուած 3-ը. «Բարձր պայմանաւորուող կողմերը համատեղ կը ձեռնարկեն իրենց համար բոլոր մատչելի միջոցները՝ խաղաղութեան դէմ սպառնալիքը, խաղաղութեան խախտումը վերացնելու կամ նրանց դէմ ցանկացած պետութեան կամ պետութիւնների խմբի կողմից ձեռնարկուած ագրեսիայի գործողութիւններին հակազդելու համար եւ կը ցուցաբերեն միմեանց անհրաժեշտ օգնութիւն, ներառեալ ռազմական՝ ՄԱԿ-ի կանոնադրութեան 51-րդ յօդուածին համապատասխան հաւաքական ինքնապաշտպանութեան իրաւունքի իրականացման կարգով»:

Երբեք չգործադրուած, եւ առերեւութապէս երբեք չգործադրուելիք կէտ մը, որ հայերուն համար կարեւոր հնչերանգ պիտի ստանար Սեպտեմբեր 13-էն ետք:

**Գրիգորեան-Մուսթաֆաեւ հանդիպում**

Օգոստոս 30-ին, Մոսկուայի մէջ կը կայանայ Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ պետական սահմանի սահմանազատումի եւ սահմանային ապահովութեան (անվտանգութեան) հարցերով յանձնաժողովի եւ հայ-ազըրպէյճանական սահմանի սահմանազատումի պետական յանձնաժողովի երկրորդ նիստը՝ փոխվարչապետներ Մհեր Գրիգորեանի եւ Շահին Մուսթաֆաեւի նախագահութեամբ:

Ըստ յայտարարութիւններուն, քննարկումները կ՚ըլլան կազմակերպչական եւ ընթացակարգային հարցերու շուրջ: Ոչ մէկ խօսք սահմանային հարցերու մասին: Սահմանային քննարկումներ ենթադրաբար եղած են, բայց անոնց բացակայութիւնը պաշտօնական յայտարարութիւններուն մէջ կրնան ցոյց տալ նման քննարկումներու դժուարութիւնը կամ ուղղակի անհամաձայնութիւնը:

Յանձնաժողովներու կազմաւորումէն ետք սիկա երկրորդ հանդիպումն է: Գրիգորեան եւ Մուսթաֆաեւ առաջին անգամ հանդիպած էին Մայիսին՝ Արաքսի ուղղութեամբ հայ-ազըրպէյճանական սահմանին:

Բայց սիկա առաջին հանդիպումն է երկու կողմերու յանձնաժողովներու ամբողջական կազմերով, քանզի Հայաստանի պատուիրակութիւնը կազմըւած էր 11 անձերէ, Ազըրպէյճանինը՝ 23:

Վերջին պատերազմին առաջին օրը՝ Սեպտեմբեր 13-ին, Խորհրդարանի ելոյթին ընթացքին, Փաշինեան վերջապէս կը համառօտագրէ սահմանազատումի գործընթացքին ձախողութիւնը: Ըստ վարչապետին, յստակ չէ՝ արդեօ՞ք Ազըրպէյճանը Հայաստանի տարածքային ամբողջականութիւն ըսելով նկատի ունի նաեւ Ղարաբաղեան պատերազմի ժամանակ եւ 2021 Մայիսին գաւթած տարածքները, թէ՞ ոչ:

Փաշինեան կը շեշտէ Ազըրպէյճանի յայտարարութիւնը՝ թէ Հայաստանի նկատմամբ տարածքային պահանջքներ չունի, մինչդեռ սահմանազատումի եւ սահմանագծումի ծիրին մէջ կը պատրաստուի «խնդիրներ բարձրաձայնել ապօրինի ձեւով Հայաստանին յանձնուած որոշ տարածքներու» մասին:

Ըստ վարչապետին՝ այս տարածքները երբեմն կը սկսին Նռնաձորէն, կը շարունակուին Սիւնիքի մարզով եւ կ՚աւարտին Հայաստանի մայրաքաղաք Երեւանով. «Եթէ դրանք լինէին պարզապէս հարցազրոյցներ եւ յայտարարութիւններ, կարելի էր նոյնիսկ չանդրադառնալ, բայց բոլոր փաստերը, այդ թւում՝ դիւանագիտական եւ բանակցային, վկայում են, որ սա հետեւողական քաղաքականութիւն է Ադրբէջանի կողմից»:

Արհեստական խոչընդոտներ եւ անկարելի պահանջքներ բանակցութիւնները ձախողեցնելու համար: Ասիկա աւելի քան յստակ է Սեպտեմբեր 13-ի գրոհի լոյսին տակ:

**Փաշինեան-Ալիեւ-Միշէլ հանդիպում**

Օգոստոս 31-ին, Պրիւքսէլի մէջ կը կայանայ եռակողմ հանդիպում Փաշինեանի, Ալիեւի եւ Եւրամիութեան Խորհուրդի նախագահ Շարլ Միշէլի մասնակցութեամբ: Պրիւքսէլեան չորրորդ հանդիպումն էր սիկա:

Հանդիպումէն ետք, Միշէլ՝ պաշտօնական ժպիտը երեսին, կը յայտարարէ դիւանագիտականօրէն մաշած խօսքը, թէ կողմերը համաձայնեցան առարկայական աշխատանք սկսիլ՝ խաղաղութեան պայմանագիրին շուրջ յառաջխաղացում ապահովելու համար:

Բանակցութիւններու շարունակութիւն Արտաքին Գործերու Նախարարութիւններու մակարդակով, գերիներու ազատ արձակում, սահմանազատում եւ սահմանային ապահովութիւն, ապաշրջափակում, երկկողմ յարաբերութիւններու կարգաւորում. ասոնք են քննարկուած հարցերը, ըստ Հայաստանի պաշտօնական հաղորդագրութեան: Ճշգրիտ ի՞նչ եղած են համաձայնութեան եզրերը, յայտնի չէ: Բայց Փաշինեան կը ծանօթացնէ բանակցութեան բնոյթը, հաստատելով՝ որ «քննարկումը ծաւալուն է եղել, քննարկումը հեշտ չէր», եւ ամբողջ կատարուածը կը ներկայացնէ բացասական գոյներով.

«Բայց ես ուզում եմ արձանագրել, որ մեր նպատակադրումները շարունակում են մնալ եւ պիտի շարունակեն մնալ այնպիսին, ինչի մասին ես յայտարարել եմ իմ հրապարակային ելոյթներում. Հայաստանի կառավարութիւնը որդեգրել է խաղաղութեան օրակարգը, եւ այստեղ էլ մեզ վճռականութիւն է անհրաժեշտ այս օրակարգը կեանքի կոչելու համար:

«Մենք պէտք է բոլորս հասկանանք, որ դա հեշտ չէ, պարզ չէ, հնարաւոր լուծումներն էլ ակնյայտ չեն, մենք պէտք է շարունակենք հետեւողական աշխատել: Կարծում եմ, որ անհրաժեշտութիւն է, որ օր առաջ մեր տարածաշրջանում հաստատուի տեւական ու համապարփակ խաղաղութիւն, եւ մենք պէտք է աւելի ու աւելի շատ կենտրոնանանք այս խնդրի լուծման վրայ»:

Ոչ-լաւատեսական ակնարկումը դժուար չէ որսալ այս խօսքերէն:

Միակ շօշափելի արդիւնքը կ՚ըլլայ Սեպտեմբեր 8-ին հինգ գերիներու վերադարձը Հայաստան:

Մէկ շաբաթ ետք, Վլատիվոսթոքի հայութեան հետ ունեցած հանդիպումին, Փաշինեան պիտի արձագանգէր. «Պիտի ասեմ, որ այդ հանդիպման ընթացքում ամենակարեւոր կամ մեզ յուզող ամենակարեւոր հարցերի վերաբերեալ մեզ չի յաջողուել ընդհանուր դիրքորոշումներ արձանագրել, խօսքը, մասնաւորապէս, Լեռնային Ղարաբաղի հիմնախնդրի վերաբերեալ է, բայց միւս կողմից էլ՝ մենք երկուստեք՝ ե՛ւ Ադրբէջանը, ե՛ւ Հայաստանը արձանագրում են խաղաղութեան հասնելու եւ խաղաղութիւն արձանագրելու իրենց ցանկութիւնը»:

Ըստ վարչապետին՝ Ազըրպէյճան կը համարէ լուծուած ըլլալ Լեռնային Ղարաբաղի խնդիրը եւ այլեւս քննարկելու բան չկայ:

Եթէ քննարկելու բան չկայ, ուրեմն չկայ բանակցութիւն: Բանակցութիւնը ձախողեցնելու ճարտար միջոց մը:

Ինչպէս Գրիգորեան-Մուսթաֆաեւ հանդիպումը, Սեպտեմբեր 13-ի լոյսին տակ այս պարագային եւս կարելի է շեշտել Ազըրպէյճանի կողմէ բանակցութեան դիտաւորեալ ձախողեցումի մասին:

Իսկ պատերազմէն մէկ օր ետք, Սեպտեմբեր 14-ին, Խորհրդարանի մէջ ունեցած ելոյթին, Փաշինեան կրկին պիտի բանար ճանապարհ տալ-չտալու հարցը, տեղեկացնելով՝ որ Օգոստոս 31-ի Պրիւքսէլի հանդիպումին, երթեւեկութեան բացումի նոր ծրար ներկայացուցած էր Ազըրպէյճանին. «Մենք եռակողմ աշխատանքային խմբի ֆորմատով Ադրբէջանին առաջարկութիւնների նոր փաթեթ ենք ներկայացրել եւ այդ առաջարկութիւնը Բրիւսէլում առձեռն փոխանցել եմ Ադրբէջանի նախագահին: Ինչի մասին է այդ առաջարկը, որ մենք պատրաստ ենք ճանապարհներ տալ եւ ստանալ»:

Վարչապետը կ՚աւելցնէ. «Մենք ասել ենք, որ Հայաստանի տարածքով մենք միջանցք չենք տալու: Մեր տարածքային ամբողջականութեան հարցում ընդհանուր առմամբ ուրիշների տեսակէտը մեզ շատ չպէտք է հետաքրքրի: Մեզ պէտք է հետաքրքրի մեր դիրքորոշումը եւ մենք ասել ենք, որ միջանցք չենք տալու: Մենք մեր բոլոր դաշնակիցների հետ այս հարցով քննարկում ունեցել ենք եւ կայ միասնական ըմբռնում, այդ թւում, իմ տպաւորութեամբ, միջազգային հանրութեան հետ: Չկայ մի երկիր, որը մեզ հետ քննարկումներում խօսում է միջանցքի մասին»:

Ասոր համա՞ր էր Սեպտեմբեր 13-ի երկօրեան: Պիտի փորձենք դիտել քիչ մը վարը:

**Միրզոյեան-Լաւրով հեռախօսազրոյց**

Սեպտեմբեր 2, հեռախօսազրոյց Հայաստանի եւ Ռուսաստանի արտաքին գործոց նախարարներուն միջեւ՝ Արարատ Միրզոյեանի եւ Սերկէյ Լաւրովի: Խօսակցութիւն՝ նախապատրաստելու համար երկու նախարարներու գալիք հանդիպումը Մոսկուայի մէջ:

**Դէպի Ռուսաստան եւ դէպի ԱՄՆ**

Միեւնոյն օրը՝ Սեպտեմբեր 5-ին, Արարատ Միրզոյեան կը մեկնի Մոսկուա՝ հանդիպելու Լաւրովի հետ, իսկ պաշտպանութեան նախարար Սուրէն Պապիկեան եւ պատուիրակութիւնը կը մեկնին ԱՄՆ:

Լաւրով-Միրզոյեան վերջին հանդիպումը կայացած էր Յունիս 9-ին, Երեւանի մէջ, երբ Լաւրով Հայաստան կու գար Անքարայէն:

Ներկայ հանդիպումին համար կը հրապարակուի պաշտօնական հաղորդագրութիւն՝ պաշտօնական խօսքերով.

«Արարատ Միրզոյեանը կարեւորել է ռուսական կողմի ջանքերը, այդ թւում՝ ԵԱՀԿ Մինսկի Խմբի համանախագահութեան շրջանակներում՝ ուղղուած Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան տեւական եւ համապարփակ կարգաւորմանը:

«Վերահաստատուել է 2020 թուականի Նոյեմբերի 9-ի, 2021-ի Յունուարի 11-ի եւ Նոյեմբերի 26-ի եռակողմ յայտարարութիւններով ձեռքբերուած պայմանաւորուածութիւնների կեանքի կոչման կարեւորութիւնը»:

Բնականաբար, ասոնց համար չէ որ Միրզոյեան գացած է Մոսկուա: Գալիք պատերազմ մը կայ՝ որ կը խմորուի բեմատեւը:

Գալով Պապիկեանին, ան հանդիպումներ կ՚ունենայ ամերիկացի պաշտօնատարներու հետ՝ Քանզասի նահանգապետ Լորա Քելլիի (Սեպտեմբեր 7) եւ ԱՄՆ պաշտպանութեան քարտուղարի քաղաքականութեան հարցերով տեղակալ Քոլին Քահլի (Փենթակոն, Սեպտեմբեր 8) հետ:

**Դէպի Վլատիվոսթոք**

Սեպտեմբեր 6-9-ին, աշխատանքային այցով Փաշինեան կը գտնուի Վլատիվոսթոք, մասնակցելու *Բազմաբեւեռ աշխարհի ճանապարհին* վերտառութեամբ Արեւելեան Տնտեսական 7-րդ համագումարի լիագումար նստաշրջանին, որուն իրենց մասնակցութիւնը կը բերեն նաեւ Ռուսաստանի նախագահ Վլատիմիր Փութին, Միանմայի, Մոնղոլիայի վարչապետները, Չինաստանի ժողովրդական ներկայացուցիչներու համաչինական ժողովի մշտական յանձնախումբի նախագահը: Հեռավար կերպով ելոյթ կ՚ունենան Հնդկաստանի վարչապետ Նարենտրա Մոտի, Մալէզիայի եւ Վիեթնամի կառավարութիւններուն ղեկավարները:

Համաժողովի շրջանակին մէջ կը կայանայ Փաշինեան-Փութին հանդիպումը:

**Ռազմական հռետորաբանութեան յաւելումը Ալիեւի կողմէ**

Սեպտեմբեր 6-ին, Ալիեւ կը յայտարարէ՝ որ Պաքու կը գործակցի աւելի քան 50 երկիրներու ընկերութիւններու հետ՝ հզօրացնելու համար իր ռազմական կարողութիւնը եւ արդիականացնելու ռազմական թեքնիքը:

3

2

# ԻՆՉՈ՞Ւ ԵՒ Ի՞ՆՉՊԷՍ ԿԱՐԵԼԻ Է ՁԱԽՈՂԵՑՆԵԼ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ

**Ֆիլիփ Ռիքէրի այցելութիւնը Հայաստան**

Մինսքի Խումբի նորանշանակ ամերիկացի համանախագահ եւ կովկասեան բանակցութիւններու գիծով աւագ խորհրդական Ֆիլիփ Ռիքէր, Սեպտեմբեր 8-ին կ՚այցելէ Երեւան:

Ալիեւ ջղայնացած է ոչ թէ Ռիքէրի այցելութենէն, այլ ընդհանրապէս Մինսքի Խումբի գոյութենէն: Ռիքէրի նշանակումին առիթով ան քանիերորդ անգամ ըլլալով կը յայտարարէ. «Ղարաբաղեան հակամարտութիւնը լուծուած է, Ղարաբաղն ալ Ազրպէյճանի անքակտելի մասն է»:

Անկախ Ազրպէյճանի առաջնորդի դերասանական ջղագրգռութենէն, պէտք է իրապէս հարցնել. Մինսքի Խումբ կա՞յ տակաւին:

Ինչեւէ: Սեպտեմբեր 9-ին Ռիքէր կը հանդիպի Արարատ Միրզոյեանի հետ, Սեպտեմբեր 10՝ Նիկոլ Փաշինեանի, նոյն օրը՝ Ազգային Ժողովի նախագահի տեղակալ, Հայաստան-Թուրքիա կարգաւորումի գործընթացքի Հայաստանի յատուկ ներկայացուցիչ Ռուբէն Ռուբինեանի: Հանդիպումներ՝ առանց արձագանգի: Թերեւս ուրիշ բան կայ ետեւը:

**Ազրպէյճան-Ռուսաստան-Իրան Հուչակագիր Հիւսիս-Հարաւ երթեւեկային ճանապարհի մասին**

Սեպտեմբեր 9, Պաքու, Ազրպէյճան-Ռուսաստան-Իրան եռակողմ հանդիպում-ձեռնարկ՝ յատկացուած Հիւսիս-Հարաւ երթեւեկային միջանցքի զարգացումին:

Ձեռնարկի ընթացքին, Ազրպէյճանի փոխվարչապետ Շահին Մուսթաֆաեւ կը հասցնէ բարձրաձայնել՝ թէ ազրպէյճանական կողմը չհագրգռուած է կարեւորել Հայաստանի հետ յարաբերութիւնները: Պիտի հասկնալ՝ որ Հայաստանն է խոչընդոտողը:

Ձեռնարկին արդիւնքը կ՚ըլլայ եռակողմ հուչակագիրի ստորագրութիւն՝ Մուսթաֆաեւի, Իրանի ճանապարհներու եւ քաղաքաշինութեան նախարար Ռուսթամ Ղասէմիի եւ Ռուսաստանի փոխվարչապետ Ալեքսանդր Նովաքի կողմէ: Կողմերը կը պարտաւորուին համագործակցիլ՝ Հիւսիս-Հարաւ միջանցքի լիարժէք օգտագործումին համար:

Այսպէս իր աւարտին կը հասնի տարիներ շարունակ ծեծուող Հիւսիս-Հարաւ երթեւեկութեան հարցը: Հայաստան յոյս ունէր որ մաս մը պիտի անցնի իր տարածքին վրայով, անկէ բխելիք դիրքային առաւելութիւններուն հետ:

**Իկոր Խովաեւ Պաքուի եւ Երեւանի մէջ**

Հայ-ազրպէյճանական կարգաւորումի հարցով Ռուսաստանի արտաքին գործոց նախարարի յատուկ ներկայացուցիչ Իկոր Խովաեւ Սեպտեմբեր 9-ին Պաքուի մէջ կը հանդիպի Ազրպէյճանի ԱԳ նախարար Ճէյհուն Պայրամովին, որոնք կը քննարկեն Ազրպէյճանի եւ Հայաստանի միջեւ յարաբերութիւններու կարգաւորումի հարցեր:

Պաքուէն կ՚անցնի Երեւան, եւ պատերազմի առաջին օրը՝ Սեպտեմբեր 13-ին, Խովաեւ կը հանդիպի Միրզոյեանին, ապա Փաշինեանին, քննարկելով Ազրպէյճանի կողմէ Հայաստանի ինքնիշխան տարածք խուժելու հանգամանքը:

**Պատերազմ**

Բանակցութիւնները ձախողեցան, կարելի է ըսել առաջին նայուածքով: Բանակցութիւնները դիտաւորեալ ձախողեցուց Ազրպէյճանը, կարելի է ըսել դիտելով դէպքերուն ներսը եւ վերոյիշեալ ընթացքը:

Սեպտեմբեր 13-ի ժամը 00:05-ին, Ազրպէյճան սաստիկ կրակ կը բանայ Գորիսի, Սոթքի եւ Ջերմուկի ուղղութիւններով, օգտագործելով հրետանային միջոցներ, մեծ տրամաչափով հրաձգային զինատեսակներ եւ Անօդաչու Թռչող Սարքեր (ԱԹՍ):

Տեղի կ՚ունենայ պատերազմ, որ կը տեւէ մինչեւ Սեպտեմբեր 14-ի գիշերը:

Ընդհանուր առմամբ, կը թիրախաւորուին 36 բնակավայրեր, ներառեալ՝ Գորիս, Սիսիան, Կապան, Ջերմուկ, Վարդենիս, Տեղ, Գեղամասար համայնքները, որուն հետեւանքով մասնակի կամ ամբողջական կ՚աւերուին 192 տուներ, 3 պանդոկներ, 2 դպրոցներ, 1 բժշկական հաստատութիւն, 1 հանդիսութիւններու սրահ, 4 անասնագոմեր: Կը վնասուին 7 ելեկտրական ենթակառուցուածքներ, 5 ջրային ենթակառուցուածքներ, 3 կազամուղեր, 1 կամուրջ, 2 ճանապարհներ, 1 փողոց:

Հայկական կողմի զոհուածներուն եւ անհետ կորսուածներուն թիւը կը հասնի 207-ի, ընդ որում կը զոհուին 3 քաղաքացիներ, իսկ 2 քաղաքացիներու վայրը կը համարուի անյայտ: Կը վիրաւորուին 293 զինծառայողներ, 7 քաղաքացիներ, գերի կ՚իյնան 20 զինծառայողներ:

Նախնական տուեալներով, ազերիական կողմը կը յայտարարէ առ նուազն 79 զոհ, որ հաւանաբար աւելցած պէտք է ըլլայ:

Ուրեմն, երկու կողմերը միասին շուրջ 300 զոհ՝ երկու օրուայ ընթացքին, մեծ մասամբ պարտադիր զինուորական ծառայութիւն կատարող պատանի-երիտասարդներ: Որո՞ւն հոգն է մարդը: Զայն յետմահու կը հերոսացնենք եւ ամէն բան կը վերջանայ հայրենասիրաբար: Կարեւորը հողն է: Տարածքային ամբողջականութիւն: Բայց ոչ՝ մարդկային ամբողջականութիւն:

**Պատերազմի պատճառ**

Ազրպէյճան պաշտօնապէս կը յայտարարէ՝ որ պատերազմին պատճառը Հայաստանի Զինուած Ուժերու ստորաբաժանումներու լայնածաւալ սադրանքն է հայ-ազրպէյճանական պետական սահմանի Դաշքեսանի (Քարհատ), Քելբաջարի (Քարվաճառ) եւ Լաչինի (Բերձոր) ուղղութիւններով :

Ազրպէյճանական այս երեք քաղաքներուն ընտրութիւնն ալ պատահական չէ: Անոնք քիչ թէ շատ հանդիպակաց վայրերն են Հայաստանի երեք տեղավայրերուն՝ որոնց վրայ կատարուած է առաջին յարձակումը: Դաշքեսանը հանդիպակաց է Սոթքին, Քելբաջարը՝ Ջերմուկին, Լաչինը՝ Գորիսին:

Այսպէս, թեթեւ մը ժպտինք եւ անցնինք առաջ:

**Դիւանագիտական քայլեր**

Պատերազմի առաջին ժամերէն սկսեալ, Հայաստան կը շարժէ դիւանագիտական կարելիութիւնները՝ հեռու Թուրք-ազրպէյճանական շրջագիծէն:

Վարչապետի մակարդակով, Սեպտեմբեր 13-ի առաւօտեան, Փաշինեան հեռախօսազրոյցներ կ՚ունենայ Փութինի, Էմանուէլ Մաքրոնի եւ Շարլ Միշելի հետ:

Արտաքին Գործոց նախարարութեան մակարդակով, Արարատ Միրզոյեանի հեռախօսազրոյցները ԱՄՆ պետական քարտուղարի եւրոպական եւ եւրասիական հարցերով տեղակալ Քերըն Տոնֆրիտի եւ Ռուսաստանի արտաքին գործոց նախարար Սերկէյ Լաւրովի հետ: Սեպտեմբեր 14-ին՝ Միրզոյան հանդիպում կը կազմակերպէ Հայաստանի մէջ հաւատարմագրուած դիւանագիտական ներկայացուցչութիւններու ղեկավարներուն հետ:

Անմիջապէս կը կայանայ Հայաստանի Անվտանգութեան Խորհուրդի նիստ, որուն որոշումին հիման վրայ Հայաստան պաշտօնապէս կը դիմէ Ռուսաստանին՝ Բարեկամութեան, Համագործակցութեան եւ Փոխադարձ Օգնութեան պայմանագիրի դրոյթները գործողութեան մէջ դնելու նպատակով, Հաւաքական Անվտանգութեան Պայմանագիրի Կազմակերպութեան (ՀԱՊԿ) եւ ՄԱԿ-ի Անվտանգութեան Խորհուրդին:

**Բարեկամութեան, Համագործակցութեան եւ Փոխադարձ Օգնութեան պայմանագիր**

Վերը նշեցի 1997 Օգոստոս 29-ին ստորագրուած պայմանագիրը՝ Հայաստանի եւ Ռուսաստանի բարեկամութեան, համագործակցութեան եւ փոխադարձ օգնութեան մասին, քաղելով անոր 3-րդ յօդուածը, ուր կողմերը կը պարտաւորուէին փոխադարձ օգնութեան հասնիլ արտաքին յարձակումներու պարագային, «ներառեալ ռազմական»:

Հայաստանի դիմումը Ռուսաստանին՝ այս պայմանագիրի կէտերու գործադրութեան համար, մնաց ամբողջապէս անպատասխան: Ռուսաստան պիտի չպատերազմի Ազրպէյճանի դէմ, որուն հետ դեռ վերջերս կնքեց Հիւսիս-Հարաւ ճանապարհի համաձայնագիրը, եւ որուն հետ ունեցած է զինավաճառքի արդիւնաւոր գործողութիւններ:

Թերեւս ասիկա յստակ պէտք է ըլլայ հայերուս համար, քանի որ պաշտօնապէս Ռուսաստանի ձեռքը կը գտնուի Հայաստանի բոլոր սահմանները պաշտպանելու գործը:

**ՀԱՊԿ**

ՀԱՊԿ Պայմանագիրը ստորագրուած է 1992-ին Հայաստանի, Ղազախստանի, Ղրղզստանի, Ռուսաստանի, Տաջիկստանի եւ Ուզբեկստանի ղեկավարներուն կողմէ:

Ըստ 4-րդ յօդուածին՝ «եթէ անդամ պետութիւններից որեւէ մէկը ենթարկուի ագրեսիայի որեւէ պետութեան կամ պետութիւնների խմբի կողմից, ապա անդամ պետութիւնների կողմից դա կը համարուի որպէս ագրեսիա սոյն Պայմանագրի բոլոր մասնակից պետութիւնների դէմ:

«Մասնակից պետութիւններից որեւէ մէկի դէմ ագրեսիայի ակտի ի յայտ գալու պարագայում, մնացած մասնակից պետութիւնները կը ցուցաբերեն անհրաժեշտ օժանդակութիւն՝ ներառեալ ռազմական օգնութիւնը, նաեւ կը ցուցաբերեն օժանդակութիւն իրենց տրամադրութեան տակ գտնուող միջոցներով՝ հաւաքական պաշտպանութեան իրաւունքի իրագործման կարգին համապատասխան՝ համաձայն ՄԱԿ-ի կանոնադրութեան 51-րդ յօդուածի»:

Այս հիման վրայ է որ Սեպտեմբեր 13-ին Հայաստան դիմեց ՀԱՊԿ, որ անմիջապէս յայտարարեց՝ թէ հակամարտութիւնը կարգաւորելու համար գործարկած է կազմակերպութեան մեքանիզմները: Ի՞նչ մեքանիզմներ՝ մնացին անորոշ:

Ապա, Փաշինեանի նախագահութեամբ տեղի կ՚ունենայ ՀԱՊԿ Հաւաքական Անվտանգութեան Խորհուրդի արտահերթ նիստ տեսահամաժողովի ձեւաչափով, որուն կը մասնակցին՝ Ռուսաստանի նախագահ Վլատիմիր Փութին, Ղազախստանի նախագահ Քասիմ-Ժոմարդ Թոքաեւ, Ղրղզստանի նախագահ Սատիր Ժափարով, Տաջիկստանի վարչապետ Քոխիր Ռասուլզոտա, Պելառուսի Անվտանգութեան Խորհուրդի պետական քարտուղար Ալեքսանդր Վոլֆովիչ, ՀԱՊԿ գլխաւոր քարտուղարի տեղակալ Վալերի Սեմերիքով: Փաշինեան կը ներկայացնէ իրավիճակը:

Ծիծաղելի հանդիպում: Ղրղզստանի եւ Տաջիկստանի ղեկավարները կը մասնակցին միեւնոյն համաժողովին, մինչ իրենց սահմաններուն վրայ տեղի կ՚ունենայ թշնամական մարտեր:

Սեպտեմբեր 15-ի երեկոյեան, ՀԱՊԿ Հաւաքական Անվտանգութեան Խորհուրդի որոշումով, վերահսկողական առաքելութիւն իրականացնելու ազդարարութեամբ Հայաստան կու գայ ՀԱՊԿ միացեալ հրամանատարութեան գործադիր խումբը, գլխաւորութեամբ ՀԱՊԿ միացեալ հրամանատարութեան պետ, ժեներալ-գնդապետ Անաթոլի Սիտորովի:

Ձեւական արարքներ: Սեպտեմբեր 16-ին, Հայաստանի Անվտանգութեան Խորհուրդի քարտուղար Արմէն Գրիգորեան հակիրճօրէն կը ներկայացնէ հարցին էութիւնը՝ թէ Հայաստանը ՀԱՊԿ-ի միջամտութեան յոյս չունի այլեւս. «Բնականաբար, այդպիսի յոյս եղել է, եւ, բնականաբար, այդ յոյսը ամբողջովին ի չիք է դարձել, եւ չկայ այդպիսի յոյս այլեւս: Այն, որ ՀԱՊԿ-ը դեռեւս պատշաճ չի արձագանքել, որպէսզի ադրբէջանական զօրքերն ամբողջութեամբ դուրս գան Հայաստանի սուվերէն տարածքից, նշանակում է, որ մեր ակնկալիքները չեն արդարացել»:

Զմոռնանք, որ ՀԱՊԿ-ը ռուսական ազդեցութեան տակ է:

**ՄԱԿ Ալ**

Արձագանգելով Հայաստանի դիմումին, Սեպտեմբեր 15-ի առաւօտեան, ՄԱԿ Անվտանգութեան Խորհուրդը կը գումարէ հակիրճ նիստ, Ռուսաստանի հաւանութեամբ եւ ՄԱԿ-ի մէջ Ռուսաստանի դեսպան Վասիլի Նեպենզիայի գլխաւոր ելոյթով: Դրութիւնը կը բացատրէ նաեւ Հայաստանի ներկայացուցիչը: Պատերազմը արդէն դադրած ըլլալով, վերջնական յուշագիրը կ՚ողջունէ հրադադարը: Խօսք կ՚առնեն նաեւ Չինաստանի, Մեծն Բրիտանիոյ, Ալպանիոյ, Մեքսիքայի եւ այլ ներկայացուցիչներ:

Գումարումն ինքնին երեւոյթ է, բայց իրական արդիւնքներուն մասին խօսիլը անիմաստ է:

**Հրադադար՝ երեք հիմնարկ-պայմանագիրներէն դուրս**

Բարեկամութեան, Համագործակցութեան եւ Փոխադարձ Օգնութիւն պայմանագիրը, ՀԱՊԿ-ը եւ ՄԱԿ-ը ոչ մէկ գործնական քայլ պիտի առնէին, հակառակ առաջին երկուքի ստորագրեալ պարտաւորութիւններուն Հայաստանի հանդէպ եւ երրորդի կանոնագրութեան կէտերուն: Գիրն ու ստորագրութիւնները անզօր են իրական գետինի ուժային յարաբերութիւններուն առջեւ:

4

ՋԱՀԱԿԻՐ



3

# ԻՆՉՈ՞Ւ ԵՒ Ի՞ՆՉՊԷՍ ԿԱՐԵԼԻ Է ՋԱԽՈՂԵՑՆԵԼ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Ռուսաստան, Ֆրանսա, ԱՄՆ՝ ղեկավարական զանազան մակարդակներով, կը ստանձնեն աշխոյժ ու բուռն միջնորդութեան դերը յիշեալ հիմնարկ-պայմանագիրներէն դուրս, հակառակ որ Բարեկամութեան պայմանագիրը եւ ՀԱՊԿ-ը կը գտնուին Ռուսաստանի ազդեցութեան տակ, իսկ ՄԱԿ-ի վրայ ԱՄՆ-ի ազդեցութիւնը կարելի չէ թերագնահատել: Մարդկային տարօրինակ յարաբերութիւններ: Ղեկավարը կը գերադասէ իր անձը՝ իր իսկ երկիրի հիմնարկէն, իր իսկ հիմնած հիմնարկէն:

Պատերազմը կը դադրի Սեպտեմբեր 14-ի գիշերը:

Թուրքիոյ նախագահ Ռեճէփ Թայիփ Էրտողան՝ իբրեւ Իլհամ Ալիեւի պաշտօնական խօսնակը, Սեպտեմբեր 17-ին կը յայտարարէ, որ Ազըրպէյճան յաջողեցաւ կասեցնել հայկական սադրանքը եւ այս պատճառով աւարտեցաւ պատերազմը:

Սեպտեմբեր 17-ին, Հանրային հեռատեսիլի Պետրոս Ղազարեանի հետ ունեցած հարցազրոյցին, Ազգային Ժողովի նախագահ Ալէն Սիմոնեան հրադադարը կը վերագրէ բանակցութիւններուն, ամենամեծ տեղը յատկացնելով ԱՄՆ-ին. «Մեծ է եղել ԱՄՆ աջակցութիւնը, բայց ես չեմ ուզում որեւիցէ ձեւով դա գերադասել, օրինակ, Ֆրանսիայի կամ Ռուսաստանի միջամտութիւնից»:

Ան կը նշէ ԱՄՆ ներկայացուցիչներու պալատի խօսնակ Նանսի Փելոսի Հայաստան մօտալուտ ժամանումը. «Դա քաղաքական աշխատանք է, մեր դեսպանի, մեր քաղաքական թիմի մեծ աշխատանքն է, դա նաեւ գնահատական է ժողովրդավարութեան աստիճանին, որը Հայաստանի Հանրապետութիւնում գոյութիւն ունի, եւ ես շնորհակալ եմ Փելոսիին, որ նա չչեղարկեց իր այցը, որովհետեւ ես այցի մասին գիտէի շատ աւելի վաղ: Ասեմ, որ այցելութիւնը շատ մեծ դեր կ՚ունենայ հէնց անվտանգութեան առումով»:

**Պատերազմի արդիւնք**

Եթէ Զանգեզուրի միջանցքի համար եղաւ այս բոլորը, միջանցք՝ որուն ոչ տեղը որոշուած է եւ ոչ ալ պիտի որոշուի, ի՞նչ գործ ունի Սոթքը, որ դժուար թէ այդ ենթադրեալ միջանցքի կէտերէն ըլլայ:

Լրատուամիջոցներուն մէջ առաջ նետուեցաւ միջանցքին պարուակը: Երկու միջանցքներո՞ւ պէտք ունի Ազըրպէյճան՝ Նախիջեւան հասնելու համար: Իրանի մէջէն անցնող նոր ճամբան՝ երկաթուղիով ամրացած, կատարելապէս ապահով, բաւարար չէ՞ արդեօք: Երկու միջանցքներու համատեղութեան հարցը չբարձրացաւ հրապարակախօսական հարթակին վրայ, ներկայ պատերազմին սլաքը ուղղելու համար Զանգեզուրի միջանցքին շուրջ եղող անհամաձայնութեան:

Յիշենք, որ 2021 Մայիս 12-ին, նոյն կողմերը, Ազըրպէյճան Հայաստանի ինքնիշխան տարածքէն գրաւած էր 40 քառակուսի քիլոմեթր տարածք, որ մինչեւ այսօր կը մնայ իր տիրապետութեան տակ:

2022 Սեպտեմբեր 14-ի խորհրդարանական հարցպատասխանին, Փաշինեան կը նշէ՝ որ ներկայ դրութեամբ Ազըրպէյճան գրաւած է եւս 10 քառ. քլ. (հաւանաբար յետագային թիւը աւելցած ըլլայ): Ուրեմն, ընդհանուրը կ՚ըլլայ 50: *Հայկական ալիք* կայքէջը՝ յայտնի իբրեւ հակաիշխանական տեսլութիւններու սերմանիչ, ներկայ պատերազմին համար կը հաշուարկէ 110 քառ. քլ. նոր տարածքներու գրաւում, ներառեալ ռազմավարական բարձունքներ:

Բարձունքներու գրաւումը եղած ըլլալու է Ազըրպէյճանի ներկայ գրաւումին գլխաւոր նպատակը: Կառավարութեան կը մնայ հանրայնացնել տարածքի իրական չափը, որքան որ ցաւալի ըլլայ ան:

**Նանսի Փելոսի այցելութիւնը Երեւան**

Սեպտեմբեր 17-19-ին, Նանսի Փելոսի կը գտնուի Երեւան: Ճիշդ պատերազմէն ետք, երբ ընդհանուր յուսախաբութիւն կար Ռուսաստանի նկատմամբ, իր ստորագրեալ պարտականութիւնները կատարած չըլլալու համար: Մինչ Էրտողան սկիզբէն վերջ թիկունք կանգնեցաւ ներկայ պատերազմին՝ ուղղակիօրէն գովաբանելով Ալիեւը եւ պախարակելով Հայաստանը, Հայաստանի պաշտօնական *միակ* դաշնակից Ռուսաստանը խաղաց բիւր թելերու հետ:

Փելոսիի այցելութիւնը թէեւ նախատեսուած էր աւելի կանուխ եւ կապ չունէր պատերազմին հետ, բայց ան իրականանալով հիմա, ստացաւ բոլորովին ուրիշ հանգամանք եւ գունաւորում:

Ան հանդիպումներ կ՚ունենայ ԱԺ նախագահ Ալէն Սիմոնեանի եւ վարչապետ Նիկոլ Փաշինեանի հետ, կ՚այցելէ Հայաստանի պաշտպանութեան նախարարութիւն, ինչպէս նաեւ Քաֆէսճեան Կեդրոն եւ այլ վայրեր:

Եւ բաւական մեծ յայտարարութիւններ Փելոսիի ու պատուիրակութեան կողմէ.

- ԱՄՆ ներկայացուցիչներու պալատը արդէն առաջ քաշած է բանաձեւ, ըստ որուն կը դատապարտենք Ազըրպէյճանի գործողութիւնները: [Նորէ՞ն բանաձեւ, Ա.]:

- Մենք պիտի շարունակենք աջակցիլ Հայաստանի տարածքային ամբողջականութեան եւ դէմ պիտի ըլլանք Հայաստանի սահմաններու որեւէ փոփոխութեան:

- Մենք կը գիտակցինք՝ որ Հայաստանը ՀԱՊԿ-ի մաս է՝ Ռուսաստանի հետ: Մենք ասոր առնչութեամբ ոչինչ կ՚ըսենք: Մեր ըսածը այն է՝ որ ԱՄՆ խիստ անհանգստացած է Հայաստանի ապահովութեամբ: Մենք կը փափաքինք աջակցիլ Հայաստանին ապահովութեան հարցով:

- Հայաստանի ժողովրդավարութիւնը ուրախութիւն է աշխարհի համար, ողջ աշխարհը ողջունեց Թաւշեայ Յեղափոխութիւնը:

- Դուք դէպի ժողովրդավարութիւն անցնելու լաւ օրինակ էք: Եւ մենք կ՚աջակցինք անոր:

- Ձեր յարաբերութիւնները այլ կառոյցներու հետ Հաաստանի որոշելու հարցն է: Հայաստանի տարածքային ապահովութիւնը, ինքնիշխանութիւնը, ժողովրդավարութիւնը մեզի համար արժէք են ԱՄՆ-ի մէջ: Եւ այլ երկիրներու հետ մեր յարաբերութիւններուն մէջ մենք պէտք է օգտագործենք մեր ազդեցութիւնը, մեր լծակները՝ ցոյց տալու համար որ հայկական ժողովրդավարութիւնն ու ինքնիշխանութիւնը առաջնային են:

- Հայաստան եկանք այն պահուն, երբ կարող ենք անձամբ խիստ դատապարտել Ազըրպէյճանի գործողութիւնները:

Փելոսիի այցելութենէն եւ խօսքերէն պէտք չէ խանդավառուիլ. ԱՄՆ-ը մարդասիրական քայլեր չի կատարեր:

«Թաւշեայ Յեղափոխութիւն» եզրոյթը Փութին եւ Ռուսաստան երբեք չեն գործածած Հայաստանի համար, իսկ «ժողովրդավարութիւն» բառը ընդհանրապէս գոյութիւն չունի անոնց բառապաշարին մէջ:

Միւս կողմէ, Փելոսի՝ իբր ամերիկացի, նման արտայայտութիւններով կ՚ուզէ միշտ արժեւորել իրենց սեփական (ենթադրեալ) ժողովրդավարութիւնը, զոր կը համարեն աշխարհի յառաջադոյնը:

Պարզապէս, ցանկութիւնս է, որ այս պատերազմը առիթ մը ըլլայ Հայաստանին գործնականօրէն բազմազանել արտաքին քաղաքականութիւնը, առանց երբեք դէմ երթալու Ռուսաստանին կամ խզելու անոր հետ ունեցած դաշինքը:

Ազըրպէյճան-Վրաստան-Հայաստան եռեակ երկիրներէն Հայաստանը միակն է՝ որ չունի այլազանուած արտաքին քաղաքականութիւն, տնտեսական-քաղաքական շատ տեսանկիւններէ ըլլալով ռուսական նէօ-գաղութատիրական տիրոյթին տակ, բան մը՝ որուն մասին շատ քիչ կը խօսուի, անյարիր ըլլալով ազգայնական տարածուած պատումին:

Թերեւս այս պատերազմը քայլ մը ըլլայ դէպի բաղձալի այլազանումը:

**Փութին՝ ընդդէմ Փելոսիի**

Փելոսիի այցելութիւններն ու ելոյթները՝ իրենց դերասանական վարպետութեամբ, խօսքային տիրապետութեամբ, արտաքին փայլով, սովորական երեւոյթներ չեն Հայաստանի համար:

Որեւէ երկիր, ոեւէ մարդ երբեմն պէտք ունի իր մտածումներն ու զգացումները արտայայտուած տեսնել ուրիշի կողմէ: Հոգեբանական կարեւորութիւն ունեցող հարց է: Փելոսի վարպետ եղաւ այս առումով: Ըսաւ այն՝ ինչ Հայաստանի միակ դաշնակից Ռուսաստանը չըսաւ, եւ երբեք չէ ըսած: Շեշտեց Ազըրպէյճանի յարձակողականութիւնը՝ մինչ Ռուսաստան իր յայտարարութիւններուն մէջ կը մնար կրաւորական ու անցողակի:

Այս բոլորը չվրիպեցան Ռուսաստանէն: Ռուսաստանի նախագահի մամուլի քարտուղար Տմիթրի Փեսքով Փելոսիի ելոյթները անուղղակիօրէն անուանեց «փոփիւլիսթական». «Այն ամէնը, ինչը ոչ թէ խօսքով է, այլ գործով, ոչ պոպուլիստական է, այլ իրականում հանգիստ ու գործնական կարող է նպաստել յարաբերութիւնների կարգաւորմանը, սահմանին իրավիճակի կայունացմանը, այդ ամէնը կարող է ողջունուել: Կարո՞ղ են արդեօք նման բարձրագոչ գործողութիւններն ու յայտարարութիւնները նպաստել այդ կարգաւորմանը: Տեսնենք, ժամանակի ընթացքում այդ ամէնը պարզ կը լինի»:

Սեպտեմբեր 19-ին Երեւանի մէջ կը կայանայ հայ-ռուսական միջտարածաշրջանային 9-րդ համաժողովը, մասնակցութեամբ Հայաստանի եւ Ռուսաստանի փոխվարչապետներ Մհեր Գրիգորեանի եւ Ալեքսէյ Օվերչուկի: Փութին կը յղէ ողջոյնի խօսք, ուր, ի միջի այլոց, կը շեշտէ երկու երկիրներու յարաբերութեան դաշնային բարձր մակարդակը. «Այս տարի մեր երկրները նշում են դիւանագիտական յարաբերութիւնների հաստատման 30-ամեակը եւ բարեկամութեան, համագործակցութեան եւ փոխադարձ օգնութեան մասին պայմանագրի ստորագրման 25-ամեակը: Կարեւոր է, որ անցած ժամանակահատուածում Ռուսաստանի եւ Հայաստանի միջեւ կառուցողական համագործակցութեան մեծ փորձ է կուտակուել ամենատարբեր ուղղութիւններով, իսկ երկկողմ կապերը հասցուել են դաշնակցային բարձր մակարդակի»:

Փութինի խօսքը՝ ընդդէմ Փելոսիի խօսքին:

Երկուքն ալ՝ խօսքեր: Խօսքի պատերազմ:

**2020 Հոկտեմբեր-Նոյեմբեր եւ 2022 Սեպտեմբեր՝ միջազգային արձագանգ**

Անկախ իւրաքանչիւրի տեւողութենէն, 2020-ի եւ 2022-ի պատերազմները տարբեր ընկալում ունեցան «միջազգային» հասարակութեան կողմէ:

Առաջինը մնաց գրեթէ անարձագանգ: Պատճառը գլխաւորաբար 5+2 տարածքներն էին, որոնք միջազգային հասարակութեան կողմէ պաշտօնապէս սահմանուած էին իբրեւ բռնագրաւեալ տարածքներ:

Իսկ Շուշի՞ն՝ որ դուրս էր 5+2-էն: Ան ալ կը մտնէր վիճելի տարածքներ հասկացողութեան մէջ, ներառնելով ամբողջ Լեռնային Ղարաբաղը:

Մինչդեռ 2022 Սեպտեմբեր 13-14-ը գրաւուած մըն էր Հայաստանի ինքնիշխան, միջազգայինօրէն ընդունուած տարածք: Որմէ՝ արեւմտեան գլխաւոր կեդրոններու արձագանգները եւ տարբեր մակարդակով յայտարարութիւններն ու բանակցութիւնները: Յայտարարութիւններ եւ բանակցութիւններ՝ որոնք եթէ առաւելագոյնը նպաստեցին հրադադարի կիրարկութեան (թէեւ վստահ չենք), ոչ մէկ յստակ պահանջք եւ պարտադրանք ներկայացուցին գրաւեալ հողերէն ետ քաշուելու համար:

Հողերու ազատագրումը քու գործդ է: Բայց ի՞նչ գինով:

**Եւ բանակցութիւնները կը շարունակուին…**

Սեպտեմբեր 19, Նիւ Եորք, Միրզոյեան-Պայրամով-Պլինքէն եռակողմ հանդիպում, ԱՄՆ-ի նախաձեռնութեամբ…:

Ա.

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1925 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 13 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2022 *ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 75 Ե. ԴՀկ.* عدد رقم ١٩٢٥ الخميس ١٣ أكتوبر ٢٠٢٢

# ՓՐԱԿԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ԿԸ ԲԵՐԷ՞ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ. ՎԵՐԼՈՒԾՈՒԹԻՒՆ ԵՐԵՒԱՆԷՆ ԵՒ ՊԱՔՈՒԷՆ

JAMnews

«Փրակի մէջ կայացած հանդիպումի ժամանակ [6 Հոկտեմբեր, Եւրոպական Քաղաքական Համայնքի համաժողով, Ձ.], ղեկավարներու մակարդակով Հայաստան եւ Ազրպէյճան ճանաչեցին միմեանց տարածքային ամբողջականութիւնը», - նշուած է գագաթնաժողովին յաջորդող յայտարարութեան մէջ: Ասկէ ետք ի՞նչ բանի մասին կը խօսուի Երեւանի եւ Պաքուի մէջ:

Փորձագէտներու կարծիքով՝ Ազրպէյճանի եւ Հայաստանի միջեւ տարածքային ամբողջականութեան ճանաչումին շուրջ ձեռք բերուած համաձայնութիւնը կարող է մօտեցնել այս երկիրներուն դիրքորոշումները խաղաղութեան պայմանագիրի նախապատրաստութեան եւ միջպետական սահմանի սահմանազատումի գործընթացքին մէջ: Բայց արդեօ՞ք ամէն բան այսքան պարզ է:

Կը ներկայացնենք վերջին նորութիւնները Պաքուէն եւ Երեւանէն, ինչպէս նաեւ երկու կողմերու քաղաքական մեկնաբաններու կարծիքները:

**ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ ՊԱՔՈՒԷՆ**

**Ի՞նչ ըսաւ Ալիեւ Փրակի մէջ**

Եւրոպական Խորհուրդի նախագահ Շառլ Միշէլի եւ Ֆրանսայի նախագահ Էմանուէլ Մաքրոնի միջնորդութեամբ, Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի հետ առաջին եւ երկրորդ հանդիպումներու միջակայքին, Ազրպէյճանի նախագահ Իլհամ Ալիեւ հարցազրոյց տուաւ ազրպէյճանական հեռատեսիլի կայաններուն:

Ալիեւ ըսաւ՝ որ Ազրպէյճան եւ Հայաստան աստիճանաբար կը մօտենան խաղաղութեան: «Խթան տրուեցաւ խաղաղ գործընթացքին», - նշեց ան:

«Շուտով նախարարները երկրորդ անգամ պիտի հանդիպին, որմէ ետք մենք առաջարկեցինք որ հանդիպին նաեւ աշխատանքային խումբերը, երկու երկիրներու աշխատանքային խումբերը, որոնք, կարելի է, ոչ թէ մէկ հանդիպումի, այլ քանի մը օրուայ ընթացքին կը պատրաստեն խաղաղութեան համաձայնագիրի բնագիրը», - աւելցուց Ազրպէյճանի նախագահը:

Ալիեւ անդրադարձաւ նաեւ Ղարաբաղի հարցին եւ այդ տարածաշրջանի հայ բնակչութեան ապագային.

«Հայկական զինուած կազմաւորումները տակաւին դուրս չեն բերուած մեր հողերէն: Մենք կը պահանջենք դուրս բերել զանոնք: Ճիշդ է, անոնցմէ քանի մը հատը ետ քաշուեցան, բայց տակաւին կը շարունակեն մնալ մեր հողին վրայ: Յոյսով եմ, որ ասոր ալ վերջ կը տրուի, քանի որ ամբողջ միջազգային հանրութիւնը արդէն բացայայտօրէն կը գիտակցի՝ որ Ղարաբաղը Ազրպէյճան է: Մենք ասիկա ըսած ենք ամէն անգամ՝ գրաւումի ժամանակ, պատերազմի ժամանակ եւ յետոյ: Այսօր միջազգային հանրութիւնը ոչ միայն կը գիտակցի այս ճշմարտութիւնը, այլեւ կը խօսի անոր մասին: Ղարաբաղի մէջ ապրող հայերը, ես ասոր մասին երէկ ըսի Աղդամի մէջ, մեր քաղաքացիներն են, եւ մենք մտադիր չենք այս կամ այն երկիրի, ներառեալ Հայաստանի հետ քննարկել անոնց ճակատագիրը, ապագան: Ասիկա մեր ներքին գործն է, հայերը կ՚ունենան նոյն իրաւունքները՝ ինչ Ազրպէյճանի քաղաքացիները: Ամէն պարագայի, անոնք կրնան վստահ ըլլալ, որ իրենց կեանքը՝ ազրպէյճանական հասարակութեան սերտաճուած (integrated) կեանքը, շատ աւելի լաւ պիտի ըլլայ, քան ներկայիս եղածը:

«Ինչպէս կը կարգադրուի հայ բնակչութեան կեանքը Ղարաբաղի մէջ, առանձին պատմութիւն է: Մենք կը նախատեսենք աշխուժացնել խորհրդակցութիւնները մեր արտաքին քաղաքական դաշինքի շրջանակներուն մէջ, ինչպէս նաեւ շարունակել ոչ պաշտօնական շփումները Ղարաբաղի հայ բնակչութեան ներկայացուցիչներուն հետ: Պէտք է ըսեմ, որ նման շփումներ արդէն շատոնց է կ՚ընթանան: Եւ կը կարծեմ, որ անոնց արդիւնքը պիտի ըլլայ այն՝ որ տակաւին ռուսական խաղաղապահ զօրախումբի պատասխանատուութեան գօտիին մէջ ապրող հիմնական բնակչութիւնը հասկնայ, թէ ազրպէյճանական հասարակութեան մէջ սերտաճելէ զատ այլ ճանապարհ չունի: Ով որ կ՚ուզէ ապրիլ իբրեւ Ազրպէյճանի քաղաքացի, կը կարծեմ որ պիտի չզղջայ: Իսկ եթէ զանազան պատճառներով ասիկա յարիր չէ ոմանց, անոնք կրնան իրենց համար այլ բնակավայր ընտրել», - աւելցուց ան:

**Մեկնաբանութիւն Պաքուէն**

«Փրակի հանդիպումէն ետք տարածուած յայտարարութեան մէջ ամենակարեւոր կէտը 1991 թուականի Ալմա-Աթայի համաձայնագիրի հիման վրայ Ազրպէյճանի եւ Հայաստանի միջեւ տարածքային ամբողջականութեան փոխադարձ ճանաչումն է», - ընդգծեց քաղաքական մեկնաբան Աղշին Քարիմով:

Իր կարծիքով՝ այս թէզը հիմնարար գործօն պիտի դառնայ սահմանազատումի յանձնաժողովներու աշխատանքին համար.

«Կը կարծեմ՝ երկրորդ կարեւոր արդիւնքը այն է, որ այս յայտարարութիւնը Հայաստանին որեւէ առիթ չի թողուր միջամտելու Ղարաբաղեան հիմնախնդիրին եւ Ազրպէյճանին կը վերապահէ երկիրի այդ տարածաշրջանի հայ բնակչութեան իրաւունքները կարգաւորելու իրաւունքը:

«Երրորդ՝ կողմերը այլեւս պիտի չկրնան խուսափիլ խաղաղութենէն, բայց միանգամայն հնարաւոր է, որ Հայաստան չհամաձայնի սահմանազատումի հարցի Ազրպէյճանի պահանջներու ծաւալին: Ասիկա կրնայ նոր հիմք հանդիսանալ սահմանին ռազմական գործողութիւններ սկսելու համար: Այստեղ կարեւոր է նաեւ այն պայմանը, զոր Ազրպէյճան կը դնէ բանակցութիւններուն մէջ՝ սահմանային պուֆերային գօտիի ստեղծումը»:

Քերիմով նշեց, որ ԵՄ առաքելութեան մուտքը Հայաստանի տարածք կրնայ լրջօրէն չփոթեցնել Ռուսաստանը, եւ Քրեմլինը, մեծ հաւանականութեամբ, զայն գնահատէ իբրեւ հարուած գօտկատեղէն վար: «Իբրեւ հետեւանք, Մոսկուա կրնայ կիրարկել Հայաստանը պատժելու նոր մեքանիզմներ», - ըսաւ քաղաքական մեկնաբանը:

Ան յիշեցուց նաեւ, որ Ազրպէյճան համաձայն չէ նման առաքելութիւնը իր տարածքին վրայ, քանի որ «ներկայ լարուած ժամանակաշրջանին, նման քայլը կրնայ իրական սպառնալիք դառնալ տարածաշրջանի անվտանգութեան համար»:

Քերիմով նաեւ արտայայտեց իր կանխատեսումները՝ Փրակի մէջ ձեռք բերուած համաձայնութիւններու լոյսին տակ.

1. Խաղաղութեան պայմանագիրին մերձեցումը ցոյց կու տայ՝ որ այս փաստաթուղթին նախագիծը արդէն պատրաստ է: Հակառակ ասոր, Ազրպէյճան պիտի փորձէ համակարգուած կերպով Հայաստանէն երաշխիքներ ստանալու շարք մը պայմաններ դնել:

↳ 4

# ՓԱՇԻՆԵԱՆ ԵՒ ԷՐՏՈՂԱՆ ՔՆՆԱՐԿԵՑԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ-ԹՈՒՐՔԻԱ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԿԱՐԳԱՒՈՐՈՒՄԻՆ ԳՈՐԾԸՆԹԱՑՔԸ

Փրակի Եւրոպական Քաղաքական Համայնքի գագաթնաժողովը առիթ ընծայեց Հոկտեմբեր 6-ին իրականացնելու Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի եւ Թուրքիոյ նախագահ Ռեճէփ Թայիփ Էրտողանի հանդիպումը:

Երկու երկիրներու առաջնորդներուն առաջին հանդիպումն է վերջին 13 տարիներու ընթացքին:

Ըստ հայկական կողմին, անոնք խօսեցան տարածաշրջանային գործընթացքներուն շուրջ:

Քննարկեցին Հայաստան-Թուրքիա յարաբերութիւններու կարգաւորումին գործընթացքը՝ որ սկսած էր 44-օրեայ պատերազմէն ետք, եւ այդ ուղղութեամբ առնուելիք յետագայ հնարաւոր քայլերը:

Ըստ Հայաստանի կառավարութեան հաղորդագրութեան, բաց սահմաններ չունեցող երկու դրացի պետութիւններու ղեկավարները շեշտեցին յատուկ ներկայացուցիչներու քննարկումներու ընթացքին ձեռք բերուած համաձայնութիւններու շուտափոյթ իրականացումի անհրաժեշտութիւնը: Մասնաւորապէս՝ երրորդ երկիրներու քաղաքացիներու համար ցամաքային սահմանի բացումը, Հայաստան-Թուրքիա ուղիղ օդային բեռնափոխադրումներու իրականացումը:

Գագաթնաժողովին յաջորդած ասուլիսին ժամանակ Էրտողան խօսեցաւ նաեւ Հայաստանի վարչապետի հետ հանդիպումի մասին՝ յոյս յայտնելով, որ ի վերջոյ կը հասնին երկու երկիրներու յարաբերութիւններու լիակատար կարգաւորումին՝ տարածաշրջանի բարիդրացիական յարաբերութիւններու հիման վրայ:

Էրտողան նշեց՝ որ երկու երկիրներու յատուկ ներկայացուցիչները կ՚աշխատին այդ ուղղութեամբ, արտաքին գործոց նախարարներուն տրուած են ցուցմունքներ, եւ որոշ ծրագիրներ ճշգրտուելու պարագային պիտի կատարուին անհրաժեշտ քայլերը դէպի առաջ:

# ՓՐԱԿԻ ՔԱՌԱԿՈՂՄ ՀԱՆԴԻՊՈՒՄԻՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

Հոկտեմբեր 6-ի ուշ երեկոյեան, Փրակի մէջ կայացած Եւրոպական Քաղաքական Համայնքի գագաթնաժողովի ծիրին մէջ, տեղի կ՚ունենայ Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի, Ազրպէյճանի նախագահ Իլհամ Ալիեւի, Ֆրանսայի նախագահ Էմանուէլ Մաքրոնի եւ Եւրոպական Խորհուրդի նախագահ Շարլ Միշէլի քառակողմ հանդիպումը:

Իբրեւ արդիւնք, կ՚ընդունուի հետեւեալ յայտարարութիւնը՝ հրապարակուած Հայաստանի կառավարութեան կողմէ.

«Հայաստանի Հանրապետութեան վարչապետ Նիկոլ Փաշինեանը եւ Ադրբէջանի Հանրապետութեան նախագահ Իլհամ Ալիեւը հանդիպեցին 2022 թուականի Հոկտեմբերի 6-ին Պրահայում՝ Ֆրանսիայի Հանրապետութեան նախագահի եւ Եւրոպական Խորհրդի նախագահի նախաձեռնութեամբ կայացած Եւրոպական Քաղաքական Համայնքի առաջին հանդիպման շրջանակներում:

«Հայաստանն ու Ադրբէջանը հաստատեցին իրենց յանձնառութիւնը ՄԱԿ-ի կանոնադրութեանը եւ 1991թ. Ալմա-Աթայի Հռչակագրին, որոնց միջոցով երկու կողմերն էլ ճանաչում են միմեանց տարածքային ամբողջականութիւնն ու ինքնիշխանութիւնը: Նրանք հաստատեցին, որ դա հիմք կը հանդիսանայ սահմանազատման հարցերով յանձնաժողովների աշխատանքների համար, եւ որ

↳ 3

# ԵՐՈՒԱՆԴ ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

## Եգիպտահայ մոռցուած երաժիշտը

**Հ. ԱԻԱԳԵԱՆ**


ՇՔԱՀԱՆԴԷՍ
ի պատիւ
Համակրելի Դերասանուհի
ՏԻԿԻՆ ԴՈՒՐԵԱՆ-ԱՐՄԷՆԵԱՆԻ
ԳԱՀԻՐԷ
ԹԱՏՐՈՆ ՎԷՐՏԻ
1907 Ապրիլ 12, Ուրբաթ գիշեր ժամը 9ին
ՏԻԿԻՆ ԴՈՒՐԵԱՆ-ԱՐՄԷՆԵԱՆ

Դուրեան-Արմէնեան շքահանդէսի յայտագիրին անուանաթերթը, Թատրոն Վերտի, 12 Ապրիլ 1907

*Կոմս Բարնիոլլի ջանքերը՝ դարմանելու իր գործած սխալը՝ կը մնան ապարդիւն։ Անտրէ շատ կը սիրէ եւ կը նախընտրէ այդ սիրոյ պալատէն մնած դուրս ելլալ։ Կոմսը կը դիմէ վերջին միջոցի մը. կը յիշեցնէ իր լքած նշանածը՝ մահամերձ հիւանդ, զոր թերեւս իր վերադարձը կարենայ ազատել։ Անտրէն չի վարանիր. Իշխանուհիին՝ մնաս-բարովը ըսելու կը վազէ բայց ան իր նոր սիրահարին հետ՝ երգիչ մը՝ մեկնած է արդէն։ Այն ատեն յուսահատ ու խելագար, կը խուճապէ դէպ ի վրէժը, եւ ինքզինքը դէմ առ դէմ կը գտնէ իր պատիժին հետ. ճամբան կը տեսնէ իր նշանածին դագաղը զոր կ'անցընեն. այդ գերագոյն յուզմունքը բոլորովին կը տապալէ հիւծախտաւոր Անտրէն, որ կը մեռնի. մինչդեռ անդին կոմսը կը փախցնէ Իշխանուհին իր սիրականին հետ՝ որ կ'երգէ Անտրէի գլուխ-գործոց ոտանաւորը։*

*Ծանօթ.— ՏԻԿԻՆ ՊԱԼԵԱՆ կը շնորհէ իր պարգեւած մասնակցութիւնը՝ դաշնակի վրայ ածելով. իսկ Տ. Ե. ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ ազնուաբար յանձն առած է երգել։*

Դուրեան-Արմէնեան շքահանդէսի յայտագիրէն էջ մը

**12 Ապրիլ** 1907

Թատրոն Վերտի, շքահանդէս ի պատիւ դերասանուհի Դուրեան-Արմենեանի, կազմակերպութեամբ Տիկնանց Կարգադիր Մասնախումբին(15):

Կը բեմադրուի Օքթաւ Ֆէօյէի *Տալիլա* թատերգութիւնը երեք արարով, որուն ընթացքին կը նուագէ Հ. Պալեան եւ կը մեներգէ Օգոստինոսեան: Անոնց ելոյթը կախարդական եղաւ, կը նկարագրէ *Լուսաբերի* քննախօսը.

«Կատարեալ կախարդութիւն եղաւ Տիկին Պալեանի եւ Տիար Ե. Օգոստինոսեանի հաճոյակատար եւ թանկագին մասնակցութիւնը: *Տալիլայի* ներկայացման միջոցին Տիկին Պալեան վարպետի մատերով դաշնակի վրայ ածեց, եւ Տիար Օգոստինոսեանի երկու անգամ իր հեղինակաւոր ու համակրելի ձայնով»(16):

**1910**

Կը սկսի երգ դասաւանդել Գալուստեան Ազգային Վարժարանի մէջ(17):

**14 Յունուար** 1912

Թէաթր Ապպաս, Գալուստեան Ազգային Վարժարանի ամանորի հանդէս:

Աշակերտները կը կատարեն մեներգներ եւ խմբերգներ(18): Իբրեւ Գալուստեանի երգի միակ դասատու, աշակերտներուն երգերը պատրաստուած պէտք է ըլլան Օգոստինոսեանի կողմէ:

Ներկաներուն խնդրանքով, ուսուցիչներ Օգոստինոսեան եւ Օր. Աժտէրեան կը հրամցնեն մէկական մեներգներ(19):

**31 Յունուար** 1912

Խտիվական Օփերա, Գահիրէի Որբախնամի տարեկան նպաստի ներկայացում:

Կը բեմադրուի Ռոսսինիի *Guillaume Tell* օփերան: Իբրեւ Գալուստեանի երգի ուսուցիչ, Օգոստինոսեան կ'առաջարկէ վարժարանի բարձրագոյն կարգերու աշակերտներէն շուրջ 20 հոգիի տրամադրել ձրի տոմսակ, «որպէսզի ուսանողները գործնականօրէն տեսնան եւ վայելեն երաժշտական տարերքը, որոնց տեսականը արդէն կ'աւանդուի իրենց վարժարանին մէջ»(20):

**23 Մարտ** 1912

Գալուստեան Ազգային Վարժարանի սրահ, ընթացաւարտներու հանդէս:

Օգոստինոսեան կը վարէ աշակերտական խմբերգները, «որոնք ունկնդրուեցան այնքան հաճոյքով»(21):

**27 Յունիս** 1912

Գալուստեան Ազգային Վարժարանի սրահ, Ս. Սահակի եւ Ս. Մեսրոպի յիշատակին նուիրուած հանդէս:

Օգոստինոսեանի մարզած դպրոցական երգչախումբը կը բերէ իր մասնակցութիւնը.

«Յարգելի բանախօսներուն զգայացունց խօսքերը կ'արձագանգուէին վարժարանի երգեցիկ խումբին ներդաշնակ երգերով, որոնք օրուան տօնին յատուկ դրոշմ մը կը կրէին եւ համօրէն ուսանողութեան սրտին մէջ կը վառէին նուիրական խանդավառութիւն մը: Յիշատակութեան արժանի է Օր. Վերգին Զագըճեան որ իր *Հայաստան երկիր դրախտավայր* երգովը յուզեց ներկաները»(22):

Ասիկա եգիպտահայ երաժիշտ, դպրապետ եւ հասարակական գործիչ Յակոբ Մարգպանեանի գնահատականն է գործընկերոջը հասցէին:

**30 Յունիս** 1912

Գալուստեանի ամավերջի հանդէս:

Աշակերտական խմբերգներ եւ մեներգներ.

1. *Մաղթանք*:
2. Երգ Մանկարան եւ Ծաղկարան դասարաններուն կողմէ:
3. Երգ Վերտիի *Nabucco*-էն՝ «Պուլպիկը» (Վարժարանին համար Օգոստինոսեան այլապէս հայերէնի թարգմանած է Վերտիի *Nabucco*-էն հատուածներ եւ բեմադրած զայն)(23):
4. Խմբերգ՝ *Մարմնոյ մասերը*:
5. Երգ՝ *Յոյս*(24):

Հանդէսէն առաջ Օգոստինոսեան կը հիւանդանայ եւ «անկողնոյ կը ծառայէ», անկարող ըլլալով անձամբ ղեկավարել երգչախումբը(25):

**19 Ապրիլ** 1913

Ազգային Սրահի բացումի հանդէս(26):

Սրահը ձեւով մը կու գար փոխարինել նոր փակուած երկարամեայ Լսարան-Ընթերցատան: Սրահին վրայ դրուած յոյսերը բաւական մեծ էին, իբրեւ եգիպտահայ մշակութային կեդրոն: Բացումը կը կատարուի փառաւոր հանդիսութեամբ, ուր կ'ասմունքէ այդ ժամանակ Գահիրէ գտնուող Վահրամ Փափազեան: Օգոստինոսեան կը մասնակցի մեներգով եւ դպրոցական երգչախումբի ղեկավարութեամբ:

Երգչախումբը կը կատարէ Կոմիտաս Վարդապետէն խմբերգներ.

«Գալուստեան Ազգ. Վարժարանի սաներէն երգեցիկ խումբ մը, Տիար Օգոստինոսեանի տիրական ղեկավարութեամբ, Կոմիտաս Վարդապետի մէկ քանի երգերը լսելի ըրաւ խիստ յաջող կերպով», կը տեղեկացնէ քննախօսը(27):

Կը մեներգէ Կոմիտասի *Հայաստանը*.

«Տիար Օգոստինոսեան իր դաշն ու գեղեցիկ ձայնով *Հայաստանը* մեներգեց, բուռն ծափահարութիւններ խլելով ներկաներէն»(28):

Հանդէսի դաշնակի նուագակցութիւնը ստանձնած էր Փրոֆ. Վալանթինի:

**25 Մայիս** 1913

Թատրոն Բրէնթանիա, բազմավաստակ ուսուցիչ եւ բանաստեղծ Յովհաննէս Սեթեանի քառասնամեայ յոբելեան(29):

Յոբելեարէն բանաստեղծութիւն մը կ'ասմունքէ Վահրամ Փափազեան:

Օգոստինոսեան դարձեալ կը մասնակցի կրկնակի պաշտօնով՝ խմբավար եւ մեներգիչ:

«Դպրոցի երկսեռ խմբերգը Տիար Ե. Օգոստինոսեանի ղեկավարութեան տակ զանազանութիւն մը դրաւ հանդէսին»(30):

Ապա՝ մեներգը.

«Յետոյ Տ. Ե. Օգոստինոսեան մեներգեց իր ճոխ ու լեցուն ձայնովը՝ դաշնակի ընկերակցութիւնով, զոր կ'ածէր Փրոֆ. Վալանթինի»(31):

**21 Յունիս** 1913

Ազգային Սրահ, խնջոյք-շքասեղան ի պատիւ Ակնունիի:

Ի միջի այլոց, համերաշխութեան մասին կը ճառախօսէ 20 Հնչակեաններու յետագայ մատնիչ Արթիւր Եսայեան՝ որուն միտումները իբրեւ Թրքական գործակալ տակաւին կը մնային անյայտ(32):

Տեղի կ'ունենան ինքնաբուխ ելոյթներ: Օգոստինոսեան կ'երգէ քանի մը երգեր, դաշնակի նուագակցութեամբ Տիկ. Հ. Մկրտիչեանի.

«Իսկ Պ. Օգոստինոսեան, իր կիրթ երգեցողութեամբը, մասնաւորապէս իր *Գինիին երգովը* խնջոյքին ոգեւորութեան թափ մը տուաւ»(33):

**29 Յունիս** 1913

Թատրոն Ապպաս, Գալուստեանի ամավերջի հանդէս:

Դպրոցի երգչախումբը կը ղեկավարէ Օգոստինոսեան(34):

**30 Օգոստոս** 1913

Ազգային Սրահ, երաժշտական շքեղ երեկոյթ:

Օգոստինոսեան կը մեներգէ, դաշնակի նուագակցութեամբ Տիկ. Մկրտիչեանի(35):

**22 Նոյեմբեր** 1913

Ազգային Սրահ, գրական-երաժշտական երեկոյթ:

Օգոստինոսեան ինքն իրեն նուագակցելով կը կատարէ *Հայաստանը*, որ «խանդավառ ծափերու արժանացաւ»: Ապա դաշնակի վրայ կը նուագէ Շոփէնէն կտոր մը(36):

**14 Դեկտեմբեր** 1913

Գերմանական Քլիւպ, թենոր Հրանտ Գարայի երգահանդէս:

Իր մասնակցութիւնը կը բերէ Օգոստինոսեան(37):

**3 Յունուար** 1914

Ազգային Սրահ, ատենախօսութիւն Սապահ-Գիւլեանի:

Օգոստինոսեան յանպատրաստից երգեց *Հայաստանը* «եւ արժանացաւ որոտընդոստ ծափահարութեանց», ստիպուելով կրկնել երգը(38):

**10 Յունուար** 1914

Ազգային Սրահի 17-րդ երեկոյթ՝ իր հիմնադրութենէն ի վեր:

Օգոստինոսեան կը մեներգէ Փրոֆ. Գալֆաեանի *Օրօրը*, նուագակցելով ինքն իրեն: Ապա դաշնակով կը նուագակցի նորայայտ երգիչ Է. Ֆէնէրճեանին՝ *Ձայն տուր ով ծովակ*(39):

(Շար. 2)

## ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ


15. *Լուսաբեր*, 14 Ապրիլ 1907, Գ. տարի, թիւ 354, էջ 2:

16. Մ., «Քրոնիկ. Շքահանդէս ի պատիւ Տիկին Դուրեան-Արմենեանի», *Լուսաբեր*, 18 Ապրիլ 1907, Գ. տարի, թիւ 357, էջ 2:

17. «Ազգ. Վարժարանին շուրջ», *Լուսաբեր-Արեւ*, 11 Հոկտեմբեր 1910, Զ. տարի, թիւ 890, էջ 3:

18. «Եգիպտահայ կեանքը», *Հուսանք*, 8/21 Յունուար 1912, Ա. տարի, թիւ 2, էջ 32: «Գալուստեան Վարժարանի ամանորի հանդէսը», *Լուսաբեր-Արեւ*, 16 Յունուար 1912, Ը. տարի, թիւ 1088, էջ 1-2:

19. Անդ:

20. «Հայկական լուրեր», *Լուսաբեր-Արեւ*, 16 Յունուար 1912, Ը. տարի, թիւ 1088, էջ 2:

21. Ներկայ մը, «Շաբաթի հանդէսը», *Լուսաբեր-Արեւ*, 28 Մարտ 1912, Ը. տարի, թիւ 1118, էջ 3:

22. Յ. Մարգպանեան, «Հանդէս Գալուստեան Ազգ. Վարժարանին մէջ», *Լուսաբեր-Արեւ*, 29 Յունիս 1912, Ը. տարի, թիւ 1157, էջ 2:

23. Աւետիս Եափուճեան, *Եգիպտահայ մշակոյթի պատմութիւն*, Գահիրէ, 1981, էջ 352-353: Սիրա Թաշճեան ինծի հաստատած է այս տեղեկութիւնը:

24. «Հանդէս ամավերջի Գալուստեան Ազգ. Վարժարանի», *Լուսաբեր-Արեւ*, 29 Յունիս 1912, Ը. տարի, թիւ 1157, էջ 2:

25. «Հայկական կեանք», *Լուսաբեր-Արեւ*, 4 Յուլիս 1912, Ը. տարի, թիւ 1159, էջ 2:

26. «Ազգային Սրահի բացման հանդէսը», *Յուսաբեր*, 17 Ապրիլ 1913, Թ. տարի, թիւ 71, էջ 3:

27. «Ազգային Սրահին բացման հանդէսը», *Յուսաբեր*, 22 Ապրիլ 1913, Թ. տարի, թիւ 73, էջ 1:

28. Անդ:

29. «Թատրոն Բրէնթանիա», *Յուսաբեր*, 22 Մայիս 1913, Թ. տարի, թիւ 85, էջ 3:

30. «Յոբելեանական հանդէս Տիար Յովհաննէս Սեթեանի», *Յուսաբեր*, 27 Մայիս 1913, Թ. տարի, թիւ 87, էջ 1:

31. Անդ, էջ 2:

32. «Համերաշխութեան ցայգատօն. Ի պատիւ Պ. Ակնունիի հացկերոյթը», *Յուսաբեր*, 24 Յունիս

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՈՒՐՈՒԱԿԱՆՆ ՈՒ «ԶՈՄԲԻ» ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ ՏԻԳՐԱՆ ՀԱՅՐԱՊԵՏԵԱՆԻ ՄԱՐԳԱՐԷԱԿԱՆ ԳՐՔՈՒՄ

**ԼՈՒՍԻՆԷ ՂԱՐԻԲԵԱՆ**

Գրքի երեւանեան հինգերորդ փառատօնի շրջանակում տեղի է ունեցել քաղաքագէտ, հրապարակախօս Տիգրան Հայրապետեանի *Երրորդ աշխարհամարտի մատոյցներում* գրքի շնորհանդէսը: Սա նրա քաղաքագիտական ժառանգութիւնն ամփոփող քառահատորեակի երկրորդ գիրքն է, որ հրատարակում է Newmag-ը:

Տիգրան Հայրապետեանը 1990-ականներին եղել է Հայաստանի Ազգային Անվտանգութեան Խորհրդի անկախ փորձագէտ, քաղաքական պարբերականների խմբագիր: Արցախեան շարժման ակտիւ մասնակիցներից էր, նրա հրապարակախօսական յօդուածներն ու վերլուծական նիւթերը լոյս են տեսել հայաստանեան եւ եւրոպական մամուլում: Տիգրան Հայրապետեանը մահացել է 1999-ին՝ ատովթարից:

*Երրորդ աշխարհամարտի մատոյցներում* ժողովածուի առանցքում աշխարհի շրջապտոյտն է՝ հնարաւոր մեծ պատերազմի ուրուականով, ու այս իրավիճակում հայկական պետութեան համար կարեւորագոյն փորձութիւնը՝ յարաբերութիւնները Ռուսաստանի, Արեւմուտքի ու Միջին Արեւելքի հետ:

«Երկրորդ հատորի կազմութիւնը շատ աւելի բարդ էր, քան՝ առաջինը: Այստեղ սկզբունքօրէն երկու գիրք ենք միաւորել, որովհետեւ հասկացանք, որ այս մի ընդհանուր վերնագիրը երկուսին էլ վերաբերում է. մի կողմում Ռուսաստանն է՝ յետխորհրդային տարածքը, եւ միւս կողմում Արեւմուտքն է՝ ԱՄՆ-ը, Եւրոպան եւ յարակից երկրները, եւ իհարկէ, կայ մի երրորդ խումբ՝ Միջին Արեւելքը:

«Ստացւում է, որ մենք ունենք 1991-1999 թուականներին նոյն թեմայի շրջանակներում ե՛ւ աշխարհի զարգացումը, ե՛ւ թեմայի ներսում զարգացումը, ե՛ւ Տիգրան Հայրապետեանի մտքի եւ վերլուծութիւնների զարգացումը», - ասում է Տիգրան Հայրապետեան Հիմնադրամի տնօրէն Նազենի Ղարիբեանը:

«Ռուսաստանը Հայաստանին ստիպում է արնաքամ լինել «անհնազանդ» ադրբէջանցիներին պատժելու իր ծրագրերում, որպէսզի, ի վերջոյ, հերթական գործարքը կնքի Թուրքերի հետ՝ վճարի գին ունենալով հայկական տարածքները (ցաւօք, բացառուած չէ, որ դա միայն Լեռնային Ղարաբաղը չի լինի) եւ հայերի զանգուածային տեղահանութիւնը՝ հայերին վերադարձնելով զոհի աւանդական կարգավիճակը»:

Սա մի հատուած է Տիգրան Հայրապետեանի վերլուծութիւններից, որ ժամանակակից ընթերցողները համարում են մարգարէական:

Պատմաբան, Տիգրան Հայրապետեան Մրցանակի դափնեկիր Հրանտ Տէր-Աբրահամեանն ասում է, որ այս հրատարակութիւնն ուշացած, բայց կարեւոր նախաձեռնութիւն է. քաղաքագիտական մտքի ոչ մեծ ժառանգութիւնը մնում է չարժեւորուած, չիւրացուած:

«Ես համարում եմ, որ այս գրքի հրատարակումն ուշացել է: Սա պէտք է մինչեւ 2020 թուականը լինէր, շատ աւելի շուտ, քան 2020 թուականը: Չեմ ասում, թէ դրանից ամբողջ իրականութիւնը կը փոխուէր, բայց գուցէ շատ բաներ այլ կերպ ընկալուէին: Մենք ամէն անգամ կուրօրէն մի իրավիճակի ենք հանդիպում, կարծես թէ առաջին անգամ է մեզ հետ տեղի ունենում, կարծես՝ ոչ ոք սրա մասին ո՛չ մտածել է, ո՛չ գրել է, մենք ամէն անգամ զրոյից սկսում ենք իմաստաւորել: Դրա համար էլ անընդհատ յետ ենք ընկնում: Պարտութեան հիմքում միշտ յետ ընկնելն է, քո ներքին ժամանակից յետ ընկնելը»:

«Կայուն ու զարգացող հասարակութիւններ Արեւմուտքին պէտք չեն ո՛չ Անդրկովկասում, ո՛չ Կովկասում: «Նոր աշխարհակարգը» պահանջում է հնազանդ ու լիովին կառավարելի «զոմբի» ժողովուրդներ, որոնք կը ծառայեն աշխարհի մեծերի աշխարհաքաղաքական ծրագրերին»:

Տիգրան Հայրապետեանի առաջին գիրքը՝ *Պատերազմ եւ քաղաքականութիւն* քաղաքագիտական վերլուծութիւնների եւ ակնարկների ժողովածուն, լոյս է տեսել այս տարուայ Մարտին:

## 1 ՓՐԱԿԻ ՔԱՌԱԿՈՂՄ ՀԱՆԴԻՊՈՒՄԻ...

այդ յանձնաժողովների յաջորդ նիստը կը կայանայ Բրիւսէլում, մինչեւ Հոկտեմբերի վերջ:

«Հայաստանն իր համաձայնութիւնը յայտնեց՝ խրախուսելու ԵՄ քաղաքացիական առաքելութիւնը Ադրբէջանի հետ սահմանի երկայնքով: Ադրբէջանը համաձայնեց համագործակցել նշեալ առաքելութեան հետ այնքանով, որքանով որ առնչութիւն կ'ունենայ: Առաքելութիւնն իր աշխատանքները կը սկսի Հոկտեմբերին, առաւելագոյնը երկու ամիս ժամկէտով: Առաքելութեան նպատակը կը լինի վստահութեան կառուցումը, եւ իր զեկոյցների միջոցով, սահմանային յանձնաժողովներին աջակցելը»:

Նոյն յայտարարութիւնը՝ անգլերէնով, կը հրապարակէ Եւրամիութեան Խորհուրդը իր պաշտօնական կայքէջին վրայ:

Ասիկա Փաշինեանի եւ Ալիեւի առաջին հանդիպումն էր շաբաթներ առաջ Հայաստանի վրայ իրականացուած յարձակումէն ի վեր:

ԽՈՀԵՐ

# ՅՈՒՁՈՒԱԾՆԵՐԸ...

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Հայ մամուլը յուզուած է օտարազգիով՝ որ իր կարգին յուզուած է հայերով:

Յուզումներով հարցեր կը լուծենք, յուզումներով պատմութիւն կը գրենք, յուզումներով քաղաքականութիւն կը մեկնաբանենք, յուզումներով յեղաշրջում կը պատրաստենք, յուզումներով կուսակցութիւն կը ղեկավարենք, յուզումներով «հայասէր» օտարազգիներ կը փնտռենք... ու երբեմն կը գտնենք: Կը գտնենք, ապա ծայրայեղական հայ միութիւններէն մէկը լաւ մը կը ֆինանսաւորէ զինքը, որպէսզի հայերուն մասին չգիտցածը վերածէ յուզումնառատ պատումի: Միութիւնը կը վաստակի թուանշան, օտարը կը գտնէ իր կեանքին մէջ չգտած, ու երբեք չգտնելիք, լրատուական ընդունելութիւն: Արդիւնքը՝ տկար, իմաստազուրկ, հակառւեստ արտադրութիւն մը՝ ըլլայ ան գիրք, յօդուածաշար, կամ վաւերագրական: Կարեւորը՝ օտարի հայասիրութիւնն է, որ իրմէ կը վանէ ամէն տեսակ արժէքային մակարդակ:

«Առաջին անգամ եկայ Հայաստան: Զուարթնոց օդակայանին մէջ անբացատրելի զգացումներ ունեցայ, հասկցայ որ կապուած եմ այս երկիրին հետ, նոյնիսկ մինչեւ այստեղ գալս: Անտեսանելի բան մը կայ որ զիս կը կապէ հայ ժողովուրդին հետ», կը պատասխանէ օտարազգի վաւերագրագէտը գեր յուզուած հարցազրուցավարին:

Կարելի չէ աւելի վերացականօրէն հայասէր երեւալ: Օդակայանին մէջ զգացեր է իր կապը հայերուն հետ՝ տակաւին Հայաստանը չտեսած: «Անբացատրելի» ու «անտեսանելի» բառերը բաւարար են իր հայասիրութիւնը բացատրելու:

Բայց նաեւ պարբերութիւնը դիտենք ազգերու փոխանակութեամբ: Հայերս պիտի ուզէի՞նք՝ որ հայ մը նոյն բանը ըսէր, օրինակ, Լիպիոյ ժողովուրդին. «Առաջին անգամ եկայ Լիպիա: Օդակայանին մէջ անբացատրելի զգացումներ ունեցայ, հասկցայ որ կապուած եմ այս երկիրին հետ, նոյնիսկ մինչեւ այստեղ գալս: Անտեսանելի բան մը կայ որ զիս կը կապէ լիպիացի ժողովուրդին հետ»: Հաճոյք պիտի ստանա՞նք նման արտայայտութենէ: Հաստատաբար՝ ո՛չ: Օտարազգիին հայասիրութիւնը նոյն արտայայտութեան միւս երեսն է:

«Ընդհանրապէս կապուած եմ Սիւնիքի հետ: Հայ ինքնութեան հիմքը շատ կը զգամ հարաւային այս վայրերը», կը խօսի օտարազգին: Հիմա, եւ *միայն* հիմա, կապուած զգաց Սիւնիքի հետ: Հիմա, եւ *միայն* հիմա, հայ ինքնութիւնը աւելի ուժեղ դարձաւ այնտեղ քան այլուր: Ամբողջ աշխարհի լաւագոյն հայ ինքնութիւնը կը գտնուի Սիւնիք: Ենթադրաբար, օտարազգին քաջ ուսումնասիրած է հայկական ինքնութիւնը ողջ Հայաստանի եւ Սփիւռքի մէջ եւ ընտրած Սիւնիքը իբրեւ լաւագոյնը:

Բայց ինչո՞ւ Սիւնիք: Հայ ծայրայեղականներ այսօր կը մեղադրեն Հայաստանի կառավարութիւնը Սիւնիքը «ծախելու» մէջ: Ուղղակի այդպէս: Անտեսելով քաղաքական այն բարդ շրջանը որուն մէջէն անցաւ Հայաստանը եւ որուն հետեւանքները տակաւին երկար պիտի կրէ: Սիւնիքը, այսօր, լուրջ խնդիր կը ներկայացնէ Հայաստանի համար: Բայց խնդիրի գոյութիւնը վերածել սիւնիքեան հայրենասիրութեան՝ չբացատրուած ու չմեկնաբանուած ինքնութեան պատումի ընդմէջէն, ինքնութիւն՝ իբրեւ միակ ու բացառիկ հասկացողութիւն, լուրջ հարցադրումներ յառաջ կը բերէ:

«Թշնամիներուն զարմացուց այն՝ թէ ինչպէս դուք այսքան երկար տարիներ դիմացաք Ցեղասպանութեան եւ պատերազմի, եւ շարունակեցիք ապրիլ»:

Թշնամին՝ զարմացած: Ահաւասիկ ուրիշ հայրենասիրական նիւթ մը: Թշնամին Ցեղասպանութիւն գործեց եւ հասաւ իր փայփայած նպատակին, նպատակին հասնելէն ետք զարմացաւ մեր տոկունութեան վրայ՝ երբ արդէն կորսնցուցած էինք ամէն բան: Թշնամին դիւրութեամբ գրաւեց մինչեւ Շուշի եւ հասաւ իր փայփայած նպատակին, նպատակին հասնելէն ետք զարմացաւ մեր տոկունութեան վրայ: Ե՞րբ է որ Թուրքիան եւ Ազրպէյճանը զարմացան մեր տոկունութեան վրայ: Ե՞րբ արտայայտեցին նման բան: Աւելի ճիշդ պիտի ըլլար ըսել՝ թէ ասիկա հայկական ցանկութիւնն է, տեսնել «թշնամի»-ն զարմացած: Ցանկութիւնն ալ կը ներկայացուի իբրեւ աւելի քան իրականութիւն: Եւ եթէ այդ աւելի քան իրականութիւնը արտասանած ըլլայ օտարը, այլեւս մեր ուրախութեան սահման չի մնար:

Տեղ մը, հարցազրուցավարը խօսակիցին կը վերագրէ Հայաստանը աշխարհի պորտը ըլլալու «իրականութեան» յայտարարութիւնը. «Կ'ըսէք՝ թէ Հայաստան աշխարհը աշխարհի պորտն է ու այստեղէն սկիզբ առած է մարդկութիւնը»: Օտարազգին չի հերքեր այս «իրականութիւն»-ը: Առանց մեզի աշխարհի մարդկութիւնը գոյութիւն ունեցած պիտի չըլլա՞ր, ուրեմն:

Եւ այսպէս՝ մինչեւ վերջին բառը: Արդէն իմաստ չունի շարունակել:

44-օրեայէն անմիջապէս ետք, ֆրանսացի հռչակաւոր փիլիսոփայ Միշէլ Օնֆրէ կ'այցելէ Արցախ եւ տարեվերջին հրապարակ կը հանէ հետաքրքրական վաւերագրական մը՝ *Arménie, un choc des civilisations*:

Միշէլ Օնֆրէ՝ աւելի քան 100 գիրքերու հեղինակ, նաեւ մետրաթիք դէմք մըն է՝ հեռատեսիլով, ռատիոյով եւ առցանց: Լայնածաւալ հետաքրքրութիւններով փիլիսոփայ մը, բաց մտքի տէր մտածող մը: Ան, միաժամանակ, առօրեայ իրադարձութիւններու մեկնաբան մըն է, իր փիլիսոփայական գաղափարները ներգրաւուած են գործող իրականութիւններով:

Մեր սիրած բարբառով, ան «հայասէր» մըն է: Բայց իր «հայասիրութիւնը» կապուած է գաղափարի հետ, գաղափարներ՝ որոնց մասին միշտ խօսած ու գրած է: Շատ հեռու է անտեսանելի կապեր, զգացական սէրեր եւ զարմացած թշնամիներ գտնելու դիւրին միտումներէն: Այս պատճառով, իր վաւերագրականը եւ իր մտաւոր դիրքորոշումը անցան հայկական լրատուամիջոցներու այլընտրանքային սակաւաթիւ խողովակներէն, այլապէս առանց ստանալու մասնաւոր շեշտադրութիւններ: Փիլիսոփայութիւն կար այնտեղ:

Բացի այդ, Օնֆրէի վաւերագրականին մէջ ՈՉ ՄԷԿ հայկական հովանաւորութիւն կար, ՈՉ ՄԷԿ դրդում հայերուն կողմէ:

Ասիկա շատ կարեւոր կէտ մըն է: Կրնան երկու անձեր երկու նոյնատիպ նպաստաւոր ելոյթներ ունենալ հայերուն մասին: Հայկական շրջանակներու մէջ կը յաղթանակէ այն՝ որուն ետեւը կանգնած է հայկական հովանաւորութիւն, քանի որ հովանաւորողը ունի իր սեփական շահերը, եւ կը հովանաւորէ միայն իր շահերուն շուկայացումը ապահովելէ ետք:

Օտարազգիի արտադրութիւնը կարելի չէ քննադատել: Ան բացառապաշտ լեզուով է, լեզու՝ առանց մտածողութեան, քանզի այնտեղ կարելի չէ գտնել մտաւոր շերտեր:

Օնֆրէի վաւերագրականին հետ կարելի է անընհատ վիճաբանիլ, զայն քննադատել, գնահատել, տրամախօսել, մեկնաբանել: Քանզի բազում են մտաւոր շերտերը:



## 2 ԵՐՈՒԱՆԴ ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

1913, Թ. տարի, թիւ 99, էջ 1:
33. Անդ, էջ 2:
34. Թաթուլ Տէր Անդրէասեան, «Ազգ. Գալուստեան Վարժարանի ամավերջի հանդէսը», *Յուսաբեր*, 1 Յուլիս 1913, Թ. տարի, թիւ 102, էջ 3:
35. Յ. Գալէմքէրեան, «Ազգային Սրահին մէջ», *Յուսաբեր*, 2 Հոկտեմբեր 1913, Թ. տարի, թիւ 142, էջ 3:
36. Յ. Հ. Թըգըրեան, «Ազգային Սրահին մէջ», *Յուսաբեր*, 25 Նոյեմբեր 1913, Թ. տարի, թիւ 165, էջ 3:
37. «Ազգային արձագանգ», *Յուսաբեր*, 11 Դեկտեմբեր 1913, Ժ. տարի, թիւ 172, էջ 2:
38. Յ. Յ. Գալէմքերեան, «Ազգային Սրահին մէջ», *Յուսաբեր*, 6 Յունուար 1914, Ժ. տարի, թիւ 183, էջ 3:
39. Յ. Յ. Գալէմքերեան, «Ազգային Սրահին մէջ», *Յուսաբեր*, 13 Յունուար 1914, Ժ. տարի, թիւ 186, էջ 3:



## 1 ՓՐԱԿԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ԿԸ ԲԵՐԷ՞ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ. ՎԵՐԼՈՒԾՈՒԹԻՒՆ ԵՐԵՒԱՆԷՆ ԵՒ ՊԱՔՈՒԷՆ

2. Երեւան պիտի փորձէ սեւ երանգներ աւելցնել խաղաղութեան օրակարգին, սակայն միաժամանակ կրնայ բախուիլ Պաքուի ուժի կիրարկութեան:

3. Ռուսաստան տակաւին պիտի չնախանձի Փրակի հանդիպումի արդիւնքներէն: Մոսկուա պիտի արձագանգէ այն պարագային՝ երբ ԱՄՆ փորձէ անոնցմէ դիւանագիտական օգուտներ քաղել:

4. Զեմ հաւատար՝ որ Ռուսաստան պիտի շարունակէ բոլոր մակարդակներով աջակցիլ Հայաստանին, որ կը փորձէ յարաբերութիւններուն սլաքը շրջել դէպի Արեւմուտք: Այդ իսկ պատճառով Քրեմլինը, անշուշտ, պիտի մեծացնէ խաղաղրոյքը Ազըրպէյճանի վրայ, իսկ Հայաստանի վրայ՝ ճնշում գործադրելու եղանակը»:

**ԻՆՉՊԷ՞Ս ԵՐԵՒԱՆ ԿԸ ՄԵԿՆԱԲԱՆԷ ՓՐԱԿԻ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ**

Փրակի բանակցութիւններու երկու փուլերէն ետք, Հայաստանի մէջ առայժմ հրապարակուած է կողմերու ընդունած յայտարարութեան բնագիրը: Ան լրացուած է Նիկոլ Փաշինեանի Twitter-ի կարճ գրառումով.

«Պրահայում ես վերահաստատեցի մեր առաջարկը՝ ապաշրջափակել բոլոր տարածաշրջանային հաղորդակցութիւնները: Ադրբեջանը կրկին դրական պատասխան չտուեց: Ես հաստատում եմ, որ Հայաստանը պատրաստ է ապաշրջափակել բոլոր տարածաշրջանային հաղորդակցութիւնները՝ լիովին յարգելով մեր ինքնիշխանութիւնն ու օրէնսդրութիւնը»:

Փաստօրէն, Հայաստանի վարչապետը կ՚ըսէ՝ որ Ազըրպէյճան կը շարունակէ Հայաստանէն պահանջել «միջանցք» տրամադրել երկիրի հարաւով՝ Սիւնիքի մարզով, այսինքն՝ ճանապարհ, զոր հայկական կողմը չի վերահսկեր: Փաշինեանի բնագիրէն պարզ կը դառնայ, որ Հայաստան նոյնպէս կը շարունակէ պնդել՝ ճանապարհները կը տրամադրուին, բայց այդ տարածքներու նկատմամբ ինքնիշխան վերահսկողութեան պահպանումով:

Հայաստանի իշխանութիւններու յայտարարութեան բնագիրի մեկնաբանութիւն կարելի է համարել Հայաստանի Յատուկ Յանձնարարութիւններով Դեսպան Էդմոն Մարուքեանի ֆէյսպուքեան գրառումը: Ան հայկական կողմի համար կ՚առանձնացնէ երկու կարեւոր կէտեր.

1. « Ադրբեջանը համաձայնել է համագործակցել ԵՄ քաղաքացիական առաքելութեան հետ, որը տեղակայուելու է սահմանի երկայնքով»:

Իսկ ասիկա, ըստ Մարուքեանի, կը նշանակէ՝ որ «տեղում վերահսկուելու է Ադրբեջանի յետագայ ագրեսիան, աւելին՝ կ՚արձանագրուի Հայաստանի ինքնիշխան տարածքի արդէն օկուպացուած հատուածը»:

Ան յիշեցուց 2022 Հոկտեմբեր 5-ին ԵՄ արտաքին քաղաքականութեան եւ անվտանգութեան հարցերով բարձր ներկայացուցիչ Ժոզէփ Պորէլի յայտարարութիւնը՝ թէ «Եւրամիութիւնը կը փափաքի դիտորդական առաքելութիւն ուղարկել շփումի գօտի, սակայն Ազըրպէյճանի հակազդեցութեան պատճառով առաքելութիւնը չուղարկուեցաւ»:

2. «Ադրբեջանը համաձայնել է ճանաչել Հայաստանը ՄԱԿ-ի կանոնադրութեան եւ Ալմա–Աթայի հռչակագրի համաձայն, որից յետոյ Ադրբեջանն այլեւս չի կարող տարածքային պահանջներ ներկայացնել Հայաստանի ինքնիշխան տարածքին սահմանազատման գործընթացում: Ինչը նաեւ նշանակում է, որ Ադրբեջանի զինուած ուժերը պէտք է դուրս բերուեն նախկինում օկուպացուած տարածքներից»:

**Մեկնաբանութիւն Երեւանէն**

Քաղաքական մեկնաբան Յակոբ Բադալեանի խօսքով՝ Հայաստան եւ Ազըրպէյճան կը փորձեն «որոշակի համաձայնութեան գալ սահմանների անձեռնմխելիութեան հարցում»: Կ՚ըսէ՝ թէ այդ մասին կը վկայէ յղումը Ալմա-Աթայի հռչակագիրին, փաստաթուղթ մը՝ զոր երկու երկիրներն ալ ստորագրած են տարածքային ամբողջականութեան արձանագրութեան ներքոյ:

Բադալեանի գնահատումով, պէտք է հասկնալ՝ այդ համաձայնութիւնը ինչպէս կրնայ ամրագրուիլ խաղաղութեան պայմանագիրին մէջ:

«Յայտնի է, որ Երեւանը բարձրացնում է նաեւ Արցախի անվտանգութեան եւ իրաւունքների հարցը: Պայմանագրում որեւէ կերպ պէտք է ամրագրուի այդ հանգամանքը, այլապէս այն կը վերածուի ծուղակի, որտեղ Արցախը դառնում է «Ադրբեջանի ներքին խնդիր»», - *JAMnews*-ի հետ զրոյցին նշեց ան:

Անդրադառնալով հայ-ազըրպէյճանական սահմանին ԵՄ քաղաքացիական առաքելութեան տեղակայումին, վերլուծաբանը կը նկատէ՝ թէ խօսքը դիտորդներու մասին է, բայց ոչ ռազմական տեղակայումի: Ըստ անոր՝ ասիկա կ՚ենթադրէ շատ աւելի ցած կարգավիճակ, ցած պատասխանատուութեան աստիճան:

«Զեմ պատկերացնում, թէ քաղաքացիական առաքելութիւնը ինչ արդիւնք է տալու, որքանով է զսպելու Ադրբեջանին, եթէ նկատի ենք ունենում նաեւ այն, որ ապակայունացման խթանները մեր ռեգիոնում ունեն շատ աւելի լայն ռազմաքաղաքական խորքեր», - շեշտեց Բադալեան:

Վերլուծաբանի կարծիքով՝ դիտորդներու տեղակայումին շուրջ համաձայնութիւնը ձեռք բերուած է պարզապէս ցոյց տալու համար, որ Փրակի հանդիպումը ունեցած է որեւէ արդիւնք:

Միւս կողմէն կը նկատուի՝ որ ռազմական դիտորդական առաքելութիւնը համաձայնեցումի առումով բարդ եւ բազմաթիւ շերտերու հետ առնչուող հարց մըն է.

«Հարց է առաջանում՝ արդեօ՞ք Ֆրանսիան կամ որեւէ այլ երկիր պատրաստ են ռազմական դիտորդների մասնակցութեամբ պատասխանատուութիւն ստանձնել հայ-ադրբեջանական սահմանին իրավիճակի համար: Արդեօ՞ք Ադրբեջանը, Թուրքիան, Ռուսաստանը համաձայն կը լինեն Եւրամիութեան ռազմական դիտորդական առաքելութեան ներգրաւմանը»:

Քաղաքացիական առաքելութեան հետ կապուած հարցերն ալ քիչ չեն: Օրինակ՝ ինչո՞ւ Ազըրպէյճանը խումբին հետ պիտի համագործակցի «այնքանով, որքանով առնչութիւն կ՚ունենայ»: Բադալեանի դիտարկումով՝ Փրակի քառակողմ հանդիպումի արդիւնքներն ու ներկայ իրավիճակը հնարաւոր կ՚ըլլայ գնահատել այս եւ շատ այլ հարցերու պատասխանները ստանալէն ետք միայն:

«Մի բան յստակ է՝ Հայաստանը շահագրգռուած է, որ սահմանային արձանագրումները լինեն որքան հնարաւոր է արագ, որպէսզի Ադրբեջանը զրկուի իր ռազմական առաւելութիւնը քաղաքական առաւելութեան վերածելու հնարաւորութիւններից: Որպէսզի Ադրբեջանը յայտնուի մի իրավիճակում, երբ յստակ պարզ կը լինի, որ ապակայունացման որեւէ գործողութիւն ենթադրելու է քաղաքական պատասխանատուութիւն: Բարդ է ասել՝ որքան մօտ ենք այդ իրավիճակին: Յստակ մեխանիզմներ դեռեւս չեն երեւում», - ընդգծեց վերլուծաբանը:

Յակոբ Բադալեան չի կարծեր, թէ հնարաւոր է սահմանազատումի եւ սահմանագծումի գործընթացքը արագ իրականացնել: Կ՚ըսէ՝ նոյնիսկ Հայաստան-Վրաստան սահմանի պարագային, երբ հայ-վրացական հակամարտութիւն գոյութիւն չունի, ան կը ձգձգուի երկար տարիներ:

Կը գործեն հայ-ազըրպէյճանական յարաբերութիւններու կարգաւորումի երկու ձեւաչափեր՝ մոսկովեան եւ պրիւքսէլեան: Բադալեան կը դժուարանայ ըսել՝ քառակողմը պիտի դառնա՞յ նոր ձեւաչափ, թէ՞ ոչ: Կը յիշեցնէ՝ Մաքրոնի նախաձեռնութեամբ այս տարուայ Մարտին նոյն կազմով կազմակերպուած տեսաքոնֆերանսը: Անկէ ետք, սակայն, ամիսներ շարունակ քառակողմ ձեւաչափով ոչինչ տեղի ունեցաւ:

«Բարդ է ասել՝ արդեօ՞ք գործ ունենք հաստատուն ձեւաչափի հետ, թէ՞ Ֆրանսիան պարզապէս փորձում է օգտագործել իր հնարաւորութիւնները «խաղից դուրս չյայտնուելու», իր տեղն ու դերը ցոյց տալու համար», - կ՚ամփոփէ քաղաքական մեկնաբանը:

https://jam-news.net/am
7 Հոկտեմբեր 2022
(Արեւմտահայերէնի փոխադրութիւն՝ Ձ.)

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR

Armenian Weekly


P.O.Box 2111 (Cairo),

Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1926 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 27 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2022 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀԿ. عدد رقم ١٩٢٦ الخميس ٢٧ أكتوبر ٢٠٢٢


## ԱՐԵՒՄՈՒՏՔ, ԱՐԵՒԵԼՔ ԵՒ ԱՌՃԱԿԱՏՈՒՄԻ ՄԻՋՆՈՐԴՆԵՐ

Իր անկախութեան պատմութեան ամենէն աշխոյժ բանակցային շրջանը կ՚անցընէ Հայաստան ներկայիս: Փորձ մը դէպի Արեւմուտք՝ այլազանելու համար դիւանագիտական յարաբերութիւնները, նաեւ փորձ մը թեթեւօրէն ձերբազատուելու ռուսական գաւառայնացումի քաղաքականութենէն՝ առանց երբեք հեռանալու Ռուսաստանէն կամ նոյնիսկ կասկածի ենթարկելու պայմանագրային յարաբերութիւնները:

Արեւմուտքի յարաբերութիւնները, բնականաբար, զերծ չեն ռուս-ուքրաինական ընթացող պատերազմի բնաբանէն, ուր Արեւմուտքը կը գործածէ իր ամբողջ քարոզչական արշաւը ընդդէմ Ռուսաստանի, երբեմն Հայաստանը շահագործելով իբրեւ այդ արշաւի միջնորդը:

Հայաստանը կը մնայ Արեւմուտքի շահագործումի եւ Ռուսաստանի գաւառայնացումի միտումներուն միջեւ, փորձելով ճեղքել երկուքը:

Դիւանագիտութիւնը հիմնուած է առիթներու վրայ, կարեւորը՝ այդ առիթներուն լիիրաւ գիտակցութիւնն է եւ անոր ետեւը կանգնած հանգամանքներուն իրազեկութիւնը:

**ԴԷՊԻ ԱՐԵՒՄՈՒՏՔ**

**Եւրոպա**

Հոկտեմբեր 6, Եւրոպական Քաղաքական Համայնքի առաջին համաժողովը Փրակի մէջ (մանրամասն՝ *Ջահակիր*ի անցեալ թիւը):

Կը կայանայ վերջին 13 տարիներու առաջին հանդիպումը Հայաստանի եւ Թուրքիոյ առաջնորդներուն միջեւ՝ Փաշինեանի եւ Էրտողանի, եւ կը քննարկուի Հայաստան-Թուրքիա յարաբերութիւններու կարգաւորումի գործընթացքը (ուրիշ ի՞նչ բան կրնար քննարկուիլ):

Նաեւ՝ Փաշինեանի, Ալիեւի, Ֆրանսայի նախագահ Էմանուէլ Մաքրոնի եւ Եւրոպական Խորհուրդի նախագահ Շարլ Միշէլի քառակողմ հանդիպումը:

Բացի քառակողմ հանդիպումի համատեղ պաշտօնական յայտարարութենէն, Փրակը յանգեցաւ երկու աչքառու յայտարարութիւններու:

Մէկը՝ Ալիեւինն էր, որ իր սովորական պաղարիւն ու մեծամիտ ինքնավստահութեամբ երեւաց լրատուամիջոցներուն առջեւ, յայտարարելով՝ «Ղարաբաղի մէջ ապրող հայերը Ազրպէյճանի քաղաքացիներ են», եւ պահանջելով «հայկական զինուած կազմաւորումներուն դուրս բերումը Ղարաբաղէն»:

Երկրորդ յայտարարութիւնը Մաքրոնինն էր, որ Ֆէյսպուքի իր էջին վրայ արձանագրեց. «Հայաստան համաձայն է նպաստել իրականացնելու Եւրամիութեան քաղաքացիական առաքելութիւնը Ազրպէյճանի սահմանին, եւ համաձայն է համագործակցիլ»:

Փրակէն ետք, Ֆրանսան կեանքի կը կոչէ անգործ մնացած Մինսքի Խումբի Ֆրանսայի համանախագահ Պրիս Ռոքֆէօյին, որ, Ֆրանսայի նախագահի խորհրդական Իզապէլ Տիւմոնի հետ, Հոկտեմբեր 10-ին կը հանդիպի Հայաստանի Արտաքին Գործոց նախարար Արարատ Միրզոյեանին, ապա՝ Փաշինեանին եւ այլոց: Տիւմոն կը հաստատէ Ֆրանսայի դիրքորոշումը՝ Ազրպէյճանի զինուած ուժերու դուրս բերումը Հայաստանի ինքնիշխան տարածքէն եւ հարցերու լուծումը խաղաղ ճանապարհով:

Իբրեւ Փրակի համաձայնութեան շարունակութիւն, Հոկտեմբեր 11-ին, Եւրամիութեան դեսպանները համաձայնութիւն կու տան Հայաստան ուղարկել քաղաքացիական առաքելութիւն, որ պիտի տեղակայուի Ազրպէյճանի սահմանի երկայնքով եւ նպաստէ սահմանագատումի աշխատանքին:

Հոկտեմբեր 30, Եւրախորհուրդի Խորհրդարանական Վեհաժողովի (ԵԽԽՎ)՝ Հայաստանի պարտաւորութիւններու եւ յանձնառութիւններու իրականացումը դիտարկող համազեկուցողները իրենց պաշտօնական յայտարարութեան մէջ կը շեշտեն Ազրպէյճանի բռնագաւթումը հայկական հողերու եւ կոչ կ՚ուղղեն ետ քաշել զօրքերը:

Գործադրելով Փրակի համաձայնութիւնը, Հոկտեմբեր 14-ին Երեւան կը ժամանեն Եւրամիութեան դիտորդներուն նախնական թեքնիքական խումբը՝ նախապատրաստելու բուն դիտորդներուն այցելութիւնը: Հոկտեմբեր 18-ին խումբը կ՚այցելէ Գեղարքունիք մարզի սահմանամերձ գօտիներ եւ չափիչ սարքերու միջոցով կ՚արձանագրէ դիտարկումներ՝ նպատակ ունենալով պատրաստել զեկոյցներ:

40 անձերէ կազմուած դիտորդները կու գան Հայաստան եւ Հոկտեմբեր 27-ին կը սկսին իրականացնել պարեկութիւնը, հետեւելու համար սահմանի հայկական կողմը տիրող իրավիճակին՝ նպատակ ունենալով ձեւաւորել վստահութիւն եւ աջակցիլ սահմանային յանձնաժողովներուն: Կեցութեան ժամկէտն է երկու ամիս:

Դիտորդական խումբէն անդին, Երեւանի պաշտօնական հրաւէրով, Հոկտեմբեր 21-ին ԵԱՀԿ-ը Հայաստան կը ղրկէ կարիքներու գնահատումի փորձագէտ խումբ, որ պիտի մնայ մէկ շաբաթ: Նպատակն է գնահատել սահմանի որոշակի հատուածներու իրավիճակը: Հոկտեմբեր 24-ին կ՚այցելէ Սիւնիք, կը հանդիպի մարզպետին, ապա կը մեկնի Ջերմուկ՝ արձանագրելով վնասներու մասին փաստեր:

Վերջապէս, երկու յաջորդական պայմանագիրներու ստորագրութեամբ, Եւրամիութիւնը Հայաստանին պիտի տրամադրէ 10 եւ 23 միլիոն եւրոյի դրամաշնորհներ յատուկ նպատակներու համար՝ ոստիկանութեան բարեփոխումներ, մարդու իրաւունքներու պաշտպանութեան բարելաւում, Սիւնիքի մարզի ծրագիրներ:

**Միացեալ Նահանգներ**

Հոկտեմբեր 17-ին Երեւան կը ժամանէ ԱՄՆ Ներկայացուցիչներու Պալատի Ժողովրդավարական Գործընկերութեան Յանձնախումբի նախագահ Տէյվիտ Փրայսի գլխաւորած քոնկրէսական պատուիրակութիւնը: (Յիշենք ԱՄՆ Ներկայացուցիչներու Պալատի խօսնակ Նանսի Փելոսիի այցելութիւնը Հայաստան Սեպտեմբեր 17-19-ին, երբ նշեց՝ որ Հայաստան կը դիմակայէ Ազրպէյճանի անօրինական եւ մահաբեր յարձակումը:)

Յաջորդ օրը պատուիրակութիւնը կը ↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱՊԵՏՆ ՈՒ ԱԳ ՆԱԽԱՐԱՐԸ ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐ ԵՆ ՈՒՆԵՑԵԼ ԱՐՑԱԽԻ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԵԱՆ ՀԵՏ

Հայաստանի վարչապետն ու արտգործնախարարը Հոկտեմբերի 15-ին հանդիպումներ են ունեցել Արցախի նախագահ Արայիկ Յարութիւնեանի գլխաւորած պատուիրակութեան անդամների հետ:

Վարչապետի աշխատակազմի փոխանցմամբ՝ Նիկոլ Փաշինեանի հետ կայացած հանդիպմանը անդրադարձ է կատարուել Ադրբէջանի հետ տարուող քննարկումների ընթացքին: Վարչապետը նշել է, որ ինչպէս մինչ այժմ, այնպէս էլ յետագայում Արցախի գործընկերներին տրամադրուելու է քննարկումների մասին ողջ տեղեկատուութիւնը:

Հայաստանի ԱԳ նախարար Արարատ Միրզոյեանը եւ Արցախի նախագահ Արայիկ Յարութիւնեանի գլխաւորած պատուիրակութեան անդամները մտքեր են փոխանակել տարածաշրջանում ստեղծուած անվտանգային իրավիճակի վերաբերեալ:

Արարատ Միրզոյեանը, ըստ Հայաստանի արտգործնախարարութեան տարածած հաղորդագրութեան, մանրամասնօրէն ներկայացրել է Ադրբէջանի հետ յարաբերութիւնների կարգաւորման շուրջ ընթացող քննարկումների զարգացումները եւ Լեռնային Ղարաբաղի հիմնախնդրի կարգաւորման հեռանկարները:

Պատուիրակութեան կազմում են եղել նաեւ Արցախի ԱԺ նախագահ Արթուր Թովմասեանը, Արցախի ԱԳ նախարար Դաւիթ Բաբայեանը եւ պաշտօնատար այլ անձիք:

## ՎԱՐՉԱՊԵՏԸ ՀԱՆԴԻՊՈՒՄ ՈՒՆԵՑԱՒ ԱՐՏԱԽՈՐՀՐԴԱՐԱՆԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒԺԵՐՈՒ ՀԵՏ

Հոկտեմբեր 11-ին Վարչապետ Նիկոլ Փաշինեան հերթական հանդիպում ունեցաւ արտախորհրդարանական քաղաքական ուժերու հետ համագործակցութեան խորհրդակցական ժողովի մասնակից կուսակցութիւններու ղեկավարներուն հետ:

Կառավարութենէն կը հաղորդեն, որ հանդիպումին մասնակցած են Հանրապետութիւն, Հայաստանի Քրիստոնեայ-Ժողովրդավարական, Միասնական Հայրենիք կուսակցութիւններուն նախագահները, Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան Հայաստանի վարչութեան ատենապետը, Հայաստանի Եւրոպական Կուսակցութեան նախագահը, Ինքնիշխան Հայաստան կուսակցութեան ղեկավարը, Ուժը Հայրենեաց կուսակցութեան նախագահը:

Նման հանդիպում կայացած էր նաեւ Սեպտեմբեր 20-ին: Հանրապետութիւն Կուսակցութեան ղեկավար Արամ Սարգսեան լրագրողներուն կ՚ըսէ՝ որ քննարկուեցաւ նաեւ Ռուսաստանի ղեկավարած անվտանգային կազմակերպութենէն՝ ՀԱՊԿ-էն դուրս գալու հարցը:

**ԹՈՒՐՔԻԱ**

## «ՏԱՐԱԾԱՇՐՋԱՆՈՒՄ ԵՐԿԱՐ ՏԱՐԻՆԵՐ ԱՆՑ ԿԱՅՈՒՆ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ ՀԱՍՏԱՏԵԼՈՒ ՀՆԱՐԱՒՈՐՈՒԹԻՒՆ Է ՍՏԵՂԾՈՒԵԼ». ԷՐԴՈՂԱՆ

«Տարածաշրջանում երկար տարիներ անց կայուն խաղաղութիւն հաստատելու հնարաւորութիւն է ստեղծուել, յուսով ենք, որ Հայաստանը կը գնահատի այդ պատմական հնարաւորութիւնը», - Հոկտեմբերի 21-ին յայտարարել է Թուրքիայի նախագահ Ռեջէփ Էրդողանը՝ Ադրբէջանից վերադարձի ճանապարհին օդանաւում լրագրողների հետ զրոյցում:

«Սահմանների ճշգրտումը, Նախիջեւանի եւ Ադրբէջանի արեւմտեան շրջանների միջեւ ճանապարհի բացումը եւ խաղաղութեան պայմանագրի ստորագրումը կարեւոր քայլեր կը լինեն տարածաշրջանում նորմալացման համար», - պնդել է Էրդողանը: ↳ 4

# ԵՐՈՒԱՆԴ ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

## Եգիպտահայ մոռցուած երաժիշտը

Հ. ԱՒԱԳԵԱՆ

**20 Յունուար** 1914

Ամերիքըն Միշընի սրահ, Գահիրէի Հայ Երիտասարդ Քրիստոնեայ Ընկերակցութեան Ծննդեան հանդէս:

Յատուկ հրաւէրով կը մասնակցի Հայ Լուսաւորչական եկեղեցիի Դպրաց Դասը, եռաձայն կատարելով *Հայր մեր, Ահա մեզի մանուկ ծնաւ* եւ *Սուրբ, սուրբ*: Խմբավարներն են Օգոստինոսեան եւ Յակոբ Մարգպանեան(40):

**21 Փետրուար** 1914

Հայ Ազգային Սրահ, նուագահանդէս(41):

«Տիար Ե. Օգոստինոսեան շատ յաջող եւ զգայուն շեշտերով երգեց Massenet-ի *Hérodiate*-ը, ունկնդիրներուն ծափահարութեանց արժանանալով»:

Ուրիշ տեղ.

«Ներկաներու խնդրանքին վրայ՝ Տիար Ե. Օգոստինոսեան իրեն յատուկ եռանդով երգեց *Հայաստան*ը, զոր վերջացուց ունկնդիրներուն ծափահարութեանց մէջ»(42):

**21 Մարտ** 1914

Ազգային Սրահ, գեղարուեստական երեկոյթ:

Կը մասնակցին Օգոստինոսեան եւ իր որդին՝ պարիթոն Արման(43):

**12 Ապրիլ** 1914

Ազգային Սրահ, թէյասեղան ի պատիւ Պօղոս փաշա Նուպարի, կազմակերպութեամբ Եգիպտահայ Պատուիրակութեան:

«Մեր բարեկամը Տ. Երուանդ Օգոստինոսեան քանի մը վայրկեան պարիթոնի իր գեղեցիկ ձայնին հմայքին տակ բռնեց ներկաները *Հայաստան*ը երգելով»(44):

**10 Մայիս** 1914

Հելիոպոլսոյ Հիբոտրոմի պարտէզին եւ սրահին մէջ, դաշտահանդէս նուիրուած Հ.Բ.Ը.Միութեան 8-րդ տարեդարձին, նախագահութեամբ Պօղոս փաշա Նուպարի(45):

Պօղոս փաշայի մուտքէն ետք կը հնչէ Բարեգործականի նոր քայլերգը՝ *Փա՜ռք Միութեան*: Զայն երկձայն կը կատարէ Գալուստեան Վարժարանի երկսեռ աշակերտները, ղեկավարութեամբ Օգոստինոսեանի, «որ յաջողած էր մէկ շաբթուան միջոցին պատրաստել երգեցիկ խումբը»(46):

«Վսեմ. փաշան պատուոյ բեմը տեղաւորուելուն պէս, Գալուստեան վարժարանի երկսեռ սանունք եռանդով հնչեցուցին Հ. Բ. Ը. Միութեան նոր քայլերգը, երկձայն, առաջնորդութեամբ Տիար Ե. Օգոստինոսեանի, որ իր գնահատելի մասնակցութիւնը բերած էր հանդէսին»(47):

Քայլերգը, խօսք Վահան Մալէզեանի, երաժշտութիւն Յարութիւն Սինանեանի, կը կատարուէր առաջին անգամ: Ան «օրուան նորութիւնը եղաւ [...], որ իր զուարթ ու ոգեւորիչ եղանակովը մեծ ընդունելութիւն գտաւ»(48):

Պօղոս փաշայի յատուկ խնդրանքով, Օգոստինոսեան կ'երգէ *Հայաստան*ը.

«Ն. Վսեմութեան խնդրանքի վրայ՝ Տ. Երուանդ Օգոստինոսեան իր պարիթօնի գեղեցիկ ձայնով երգեց *Հայաստա՜ն երկիր դրախտավայրը*, որ, օտարութեան այս դաժան ու անարգ տարտամութեան մէջ, ցեղին նուիրականութիւններէն գրկուած տարագիր հոգիները՝ հայրենի կարօտանքներու գերագոյն խռովքովը հաղորդեց»(49):

«Տ. Ե. Օգոստինոսեան, Ն. Վսեմութեան խնդրանքին վրայ, շատ գեղեցիկ կերպով երգեց *Հայաստան*ը որ կատարեալ վայելք մը եղաւ ներկաներուն համար»(50):

**11 Փետրուար** 1915

Ազգային Սրահ, Վարդանանց հանդէս:

Օգոստինոսեանի *Կռունկ*ը «ելեքտրականացուց ներկաները», իսկ իր վարած Գալուստեանի երգչախումբը «յաջող կերպով երգեց քանի մը կրակ ու բոց երգեր»(51):

**29 Մայիս** 1915

Ազգային Սրահ, գրական-գեղարուեստական երեկոյթ:

Օգոստինոսեան կ'երգէ *Կռունկ* եւ *Հայաստան*(52):

**12 Յունիս** 1915

Ազգային Սրահ, գրական-գեղարուեստական երեկոյթ:

Կ'երգէ Օգոստինոսեան(53):

**28 Յունիս** 1915

Ազգային Մանկապարտէզի սրահ, Գալուստեան Վարժարանի աւարտական հանդէս:

«Իսկ Պ. Ե. Օգոստինոսեանի առաջնորդութեամբ վարժարանին երգիչ խումբին կողմէն երգուած հայկական-ժողովրդական եւ ֆրանսական երգերը արժանաւոր կերպով կը համեմէին մեզի հրամցուած մտքի եւ սրտի գեղեցիկ խնջոյքը»(54):

**29 Սեպտեմբեր** 1915

Ամերիքըն Միշընի սրահ, բանախօսութիւն Զէյթունի քարոզիչ Պատ. Տիգրան Աւետիսեանի:

Օգոստինոսեան կ'երգէ *Կռունկ* եւ *Հայաստան*(55):

«Կէս գիշերը գրեթէ մէկ ժամ անցած էր արդէն, երբ Պ. Ե. Օգոստինոսեան, կարծես քանի մը ժամուան այս կազդուրիչ ինքնամոռացումէն մեզի, հայ հանդիսականներս, սթափեցնելու եւ հայ ահաւոր իրականութեան վերադարձնելու համար, կը սկսէր երգել.

«Կռո՜ւնկ, ուստի՞ կուգաս, ծառայ եմ ձայնիդ,
Կռո՜ւնկ, մեր աշխարհէն խապրիկ մը չունի՞ս...:»
Ա՜հ, այդ «մեր աշխարհը»...»(56):

**18 Դեկտեմբեր** 1915

Սուլթանական Օփերա, գեղարուեստական երեկոյթ Հայ Կարմիր Խաչի:

Կ'երգէ Օգոստինոսեան(57):

**1915**

Կը հիմնուի Հայ Հետազօտիչներու Ընկերակցութիւնը, որուն առաջին Վարչական Ժողովի անդամ կ'ըլլայ Օգոստինոսեան: Սուրէն Պարթեւեան ականատես է.

«Եթէ մարզանքի շարժումը Աղեքսանդրիայէն սկսաւ, Հայ Պօյ-Սքաութի մը առաջին ընկերակցութիւնը կազմած ըլլալու պատիւը կը պատկանի Գահիրէի երիտասարդութեան: Մօտաւորապէս տարի մը առաջ Պ. Պ. Յ. Զօպանեան եւ Խ. Նաճարեան, քանի չափ պատանիներ շուրջերնին հաւաքած, սկսան մարզանք ընել տալ, բայց որոշ ընկերակցութիւն մը չէին կազմեր. դիմեցին կամքի եւ կորովի տէր երիտասարդի մը, – Պ. Լ. Քիրազեանին՝ որ գործի սկսաւ, եւ ամիսներու չարաչար տքնութենէ յետոյ, կազմուեցաւ Գահիրէի Հայ Հետազօտիչներու Ընկերակցութիւնը, որ այսօր 60-ի չափ անդամ ունի. – Վարչական Ժողովը կը կազմեն՝ Տօքթ. Սերովբեան (Ատենապետ), Փրօֆ. Գայաեան եւ Մէթր Զօհրապ (փոխ-Ատենապետք), Տեարք՝ Գ. Միհանօֆ (Գանձապետ), Լ. Քիրազեան (Ատենադպիր), Մ. Ղազարոսեան (Առաջնորդարանի ներկայացուցիչ): Անդամներ՝ Տօքթ. Շամլեան, Տօքթ. Տէմիրճեան, Մ. Բրուտեան, Ե. Օգոստինոսեան, Յ. Սիմօնեան»(58):

**14 Մայիս** 1916

Պուլաքի Գալուստեան Վարժարանի բակ, Գահիրէի Հայ-Հետազօտիչներու Ընկերակցութեան հրապարակային խոստումի եւ դրօշակի յանձնումի հանդէս, ներկայութեամբ Եագուպ Արթին փաշայի:

Հետազօտիչներու փանֆարը կը նուագէ Հետազօտիչ-Տղայոց քայլերգը (խօսք՝ Յ. Թ. Գայաեան), որուն երաժշտութիւնը յօրինած է «իր միշտ երիտասարդ աւիւնով, տիար Ե. Օգոստինոսեան»(59):

**17 Յունիս** 1916

Ամերիքըն Միշընի սրահ, նուագահանդէս Հ. Ե. Ք. Ընկերակցութեան չորրորդ տարեդարձին առիթով:

Օգոստինոսեան կ'երգէ *Կռունկ* եւ *Հայաստան*՝ «իրեն յատուկ յաջողութեամբ»(60):

**Յունիս** 1916

Կը կազմուի Եգիպտահայ Գրական Գեղարուեստական Միութիւնը, նախագահ՝ Թորգոմ եպս. Գուշակեան, ատենապետ՝ Յովհաննէս Սեթեան, Ա. ատենադպիր՝ Յ. Թ. Գայաեան, Բ. ատենադպիր՝ Միհրան Աժտէրեան, գանձապետ՝ Կարօ Պալեան, խորհրդականներ՝ Ստեփան Սապահ-Գիւլեան, Սուրէն Պարթեւեան, Երուանդ Օգոստինոսեան եւ Արտաւազդ Հանըմեան(61):

**18 Փետրուար** 1917

Թատրոն Բրէնթանիա, Հ.Բ.Ը.Միութեան գրական-երաժշտական ցերեկոյթ:

Օգոստինոսեան ելոյթ կ'ունենայ երեք մեներգներով եւ մէկ զուգերգով:

1. Ciro Pinsuti, *Il libro santo*, դաշնակ՝ Տիկ. Զ. Սինանեան, ջութակ՝ Մօ. Ա. Քաթաուի, թաւջութակ՝ Յ. Սինանեան:
2. Puccini, *La bohème*, զուգերգ Թ. Պայոքքիի (թենոր) հետ, դաշնակ՝ Օր. Իքոնոմոբուլօ:
3. *Կռունկ*, դաշնակ՝ Տիկ. Զ. Սինանեան:
4. *Հայաստան*, դաշնակ՝ Տիկ. Զ. Սինանեան(62):

Անստորագիր քննախօսը՝ որ կանգ կ'առնէ յայտագիրի լոկ քանի մը թիւերու վրայ, կը նշէ՝ որ *Կռունկ*ն ու *Հայաստան*ը «բոլոր սիրտերը յուզեցին եւ սրահը փոթորկեցին»(63):

(Շար. 3)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

40. Յ. Հ. Թըգըրեան, «Ծննդեան հանդէս մը», *Յուսաբեր*, 22 Յունուար 1914, Ժ. տարի, թիւ 189, էջ 2-3:

41. «Հայ Ազգային Սրահ», *Յուսաբեր*, 17 Փետրուար 1914, Ժ. տարի, թիւ 200, էջ 3:

42. Յ. Գալէմքեարեան, «Ազգային Սրահին մէջ շքեղ նուագահանդէս», *Յուսաբեր*, 26 Փետրուար 1914, Ժ. տարի, թիւ 204, էջ 3:

43. Հանդիսական, «Ազգ. Սրահին մէջ», *Յուսաբեր*, 26 Մարտ 1914, Ժ. տարի, թիւ 216, էջ 2:

44. «Թէյասեղան ի պատիւ Վսեմ. Պօղոս փաշա Նուպարի», *Միութիւն*, Ապրիլ 1914, Գ. տարի, թիւ 28, էջ 54:

45. «Յայտագիր Հ.Բ.Ը.Միութեան 8-րդ տարեդարձի», *Յուսաբեր*, 28 Ապրիլ 1914, Ժ. տարի, թիւ 229, էջ 3:

46. «Հայկ. Բարեգ. Ընդհ. Միութեան 8-րդ տարեդարձին առթիւ Գահիրէի դաշտահանդէսը», *Միութիւն*, Մայիս 1914, Գ. տարի, թիւ 29, էջ 73:

47. Հանդիսական մը, «Հայկ. Բարգծ. Ընդհ. Միութեան 8-րդ տարեդարձը», *Ժամանակ*, 20 Մայիս 1914, Է. տարի, թիւ 1802, էջ 1:

48. «Հայկ. Բարեգ. Ընդհ. Միութեան 8-րդ տարեդարձին առթիւ Գահիրէի դաշտահանդէսը», էջ 73:

49. Անդ, էջ 74:

50. Հանդիսական մը, «Հայկ. Բարգծ. Ընդհ. Միութեան 8-րդ տարեդարձը», *Ժամանակ*, 20 Մայիս 1914, Է. տարի, թիւ 1802, էջ 1:

51. «Ազգային արձագանգ», *Յուսաբեր*, 18 Փետրուար 1915, նոր շրջան Գ. տարի, թիւ 355, էջ 3:

52. «Ազգ», *Արեւ*, 28 Մայիս 1915, Ա. տարի, թիւ 9, էջ 2:

53. «Ազգ», *Յուսաբեր*, 12 Յունիս 1915, նոր շրջան (ԺԱ. տարի), թիւ 24, էջ 4: Պ., «Գահիրէի Ազգային Սրահին մէջ», *Յուսաբեր*, 17 Յունիս 1915, նոր շրջան (ԺԱ. տարի), թիւ 26, էջ 2:

54. Ա. Հ., «Աւարտական հանդէս Գալուստեան Ազգային Վարժարանի», *Յուսաբեր*, 1 Յուլիս 1915, նոր շրջան (ԺԱ. տարի), թիւ 32, էջ 2:

55. «Ազգային քրոնիկ», *Արեւ*, 6 Հոկտեմբեր 1915, Ա. տարի, թիւ 65, էջ 3:

56. «Հայ Կարմիր-Խաչը Սուլթանական Օբերայի մէջ», Սուրէն Պարթեւեան, *Եգիպտահայ տարեցոյցը*, Գ. տարի, թիւ 1916, էջ 193:

57. Հանդիսական մը, «Հայ Կ. Խաչի «կալա»-ն Սուլթանական Օբերային մէջ», *Արեւ*, 22 Դեկտեմբեր 1915, Ա. տարի, թիւ 98, էջ 3:

58. Սուրէն Պարթեւեան, *Եգիպտահայ տարեցոյցը*, Գ. տարի, թիւ 1916, էջ 184:

59. Թղթակից, «Քիչ մը ժպիտ. Գահիրէի Հայ-Հետազօտիչներու հանդէսը», *Արեւ*, 19 Մայիս 1916, Բ. տարի, թիւ 4(160), էջ 2:

60. Խ. Աւետիսեան, «Հ. Ե. Ք. Ընկերակցութեան նուագահանդէսը», *Արեւ*, 21 Յունիս 1916, Բ. տարի, թիւ 18(174), էջ 2:

61. «Եգիպտահայ Գրական Գեղարուեստական Միութիւն», *Արեւ*, 3 Յուլիս 1916, Բ. տարի, թիւ 23(179), էջ 1-2:

62. «Թատրոն Բրէնթանիա», *Արեւ*, 16 Փետրուար 1917, Գ. տարի, թիւ 120(276), էջ 2:

63. «Հ. Բ. Ը. Միութեան գրական եւ երաժշտ. ցերեկոյթը», *Արեւ*, 21 Փետրուար 1917, Գ. տարի, թիւ 122(278), էջ 2:

ԳԱՀԻՐԷ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ *ՋԱՀԱԿԻՐԻ* 51-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ՅԱՏԿԱՑՈՒԱԾ *ՎԱՀԱԳՆԻ ԾՆՈՒՆԴԻ*

Արծուի Բախչինեանի (Երեւան) եւ Հ. Ա.ի (Գահիրէ) համատեղ աշխատութեամբ լոյս տեսաւ *Ջահակիրի* ԾԱ. (51-րդ) Յաւելուածը՝ *Վահագնի ծնունդը աշխարհի 50 լեզուներով* (248 էջ):

Հատորը կը բովանդակէ *Վահագնի ծնունդը* բանաստեղծութեան գրաբար եւ աշխարհաբար (արեւելահայերէն եւ արեւմտահայերէն) նմոյշներ, որոնց կը յաջորդեն անոր թարգմանութիւնները աշխարհի 50 լեզուներով:

ՎԱՀԱԳՆԻ ԾՆՈՒՆԴԸ
ԱՇԽԱՐՀԻ 50 ԼԵԶՈՒՆԵՐՈՎ

Հաւաքեցին եւ հրատարակութեան պատրաստեցին՝
ԱՐԾՈՒԻ ԲԱԽՉԻՆԵԱՆ
եւ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԾԱ. (51)

ԳԱՀԻՐԷ
2022

Ամփոփուած են նախապէս տպագրուած թարգմանական նմոյշներու գրեթէ ամբողջութիւնը, անգլերէն՝ 28 թարգմանութիւններ, ֆրանսերէն՝ 24, ռուսերէն՝ 20, գերմաներէն՝ 12, իտալերէն՝ 6, սպաներէն՝ 5, հունգարերէն՝ 4, պարսկերէն՝ 4, արաբերէն՝ 2, լատվիերէն՝ 2, սերպերէն՝ 2, վրացերէն՝ 2, փորթուկալերէն՝ 2, եւ մէկական՝ թրքերէն, լատիներէն, լեհերէն, յունարէն, շուէտերէն, չեխերէն, պուլկարերէն եւ ռումաներէն:

Հատորին համար հայ եւ օտար բանաստեղծներ եւ լեզուաբաններ յատուկ թարգմանութիւններ կատարած են նոր լեզուներու՝ ալպաներէն, ասորերէն, գնչուերէն, դանիերէն, եբրայերէն, էսթոներէն, թայլանտերէն, խալանտերէն, լաոսերէն, լիթուաներէն, լինկալերէն, հնդկերէն, հոլանտերէն, ղազախերէն, ճաբոներէն,մակեդոներէն, մոնղոլերէն, նորվեկերէն, ուզպեքերէն, ուքրաիներէն, չինարէն, պասքերէն, պելառուսերէն, պենկալերէն, սլովաքերէն, քմէրերէն, քորէերէն, քրտերէն եւ ֆինլանտերէն:

Առաջին անգամ է՝ որ հայերէն բանաստեղծութիւն մը կը ներկայացուի 50 լեզուներով, միաժամանակ ամփոփելով նախապէս հրատարակուած թարգմանութիւններու ամբողջականութիւնը:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԿԱՊԱՆՈՒՄ ԲԱՑՈՒԵՑ ԻՐԱՆԻ ԳԼԽԱՒՈՐ ՀԻՒՊԱՏՈՍՈՒԹԻՒՆԸ

Կապանում պաշտօնապէս բացուեց Իրանի Իսլամական Հանրապետութեան գլխաւոր հիւպատոսութիւնը. Հայաստանի ԱԳ նախարար Արարատ Միրզոյեանն այն համարում է երկու բարեկամ եւ հարեւան երկրների ջերմ յարաբերութիւնների ցուցիչ, տարածաշրջանում խաղաղութեան եւ անվտանգութեան ապահովման իւրօրինակ հանգրուան:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ Հոկտեմբերի 21-ին Կապանում հիւպատոսութեան բացման արարողութեանը կարմիր ժապաւէնը կտրեցին Հայաստանի ԱԳ նախարար Արարատ Միրզոյեանն ու Իրանի ԱԳ նախարար Հոսէյն Ամիր Աբդոլլահիանը:

«Այսօր նշանակալից օր է հայ-իրանական բազմադարեայ եւ բարիդրացիական յարաբերութիւնների պատմութեան մէջ: Վստահաբար կարող եմ նշել, որ Իրանի գլխաւոր հիւպատոսութեան հիմնումն ու արդիւնաւէտ գործունէութիւնը նոր որակ կը հաղորդեն երկու երկրների առանձնայատուկ յարաբերութիւններին, կը խթանեն երկկողմ փոխգործակցութիւնն ու կը նպաստեն հայ-իրանական կապերի զարգացմանը», - ասաց Միրզոյեանը:

Նախարարը յատկանշական համարեց, որ այս կարեւոր միջոցառումը տեղի է ունենում Հայաստանի եւ Իրանի միջեւ դիւանագիտական յարաբերութիւնների հաստատման 30-րդ տարում:

«Անցած 30 տարիների ընթացքում մեր անցած ուղին նշանաւորուել է ռազմավարական բնոյթ ունեցող յարաբերութիւնները եղբայրութեան եւ սերտ գործընկերութեան ոգով զարգացնելու մեր անկեղծ մղումով: Վստահ եմ, որ յետայսու եւս կը ներդրուեն անհրաժեշտ ջանքեր՝ պազգայ փոխշահաւէտ համագործակցութիւնն աւելի խորացնելու եւ ամրապնդելու համար», - ասաց ԱԳ նախարարը:

Միրզոյեանը վստահեցրեց, որ Հայաստանում խորապէս ընկալում եւ բարձր են գնահատում երկրի ողնաշարը հանդիսացող այս հատուածում՝ Սիւնիքի մարզում գլխաւոր հիւպատոսութիւն բացելու Իրանի որոշումը: «Ցանկանում եմ եւս մէկ անգամ վերահաստատել հայկական կողմի մտադրութիւնը՝ Թաւրիզում գլխաւոր հիւպատոսութիւն հիմնելու վերաբերեալ: Իրանի Իսլամական Հանրապետութիւնը Հայաստանի համար մշտապէս եղել է եւ կը շարունակի լինել առանցքային գործընկեր: Մեր փոխգործակցութիւնը ներառում է բաւականին ընդգրկուն քաղաքական օրակարգ, ինչպէս նաեւ առեւտրի, էներգետիկայի, տրանսպորտի, զբօսաշրջութեան, մշակոյթի, գիտութեան, կրթութեան ոլորտներում ամուր կապեր, որոնք, լիայոյս ենք, աւելի կը խորանան եւ որակական ու գործնական նոր շունչ կը ստանան այսօր բացուող գլխաւոր հիւպատոսութեան շնորհիւ», - ասաց ԱԳ նախարարը:

Նա վստահութիւն յայտնեց, որ գլխաւոր հիւպատոսութիւնը մեծապէս կը նպաստի նաեւ հայ եւ իրանցի ժողովուրդների միջեւ մարդկային շփումների առաւել ակտիւացմանը: «Այն կը դառնայ երկու բարեկամ եւ հարեւան երկրների ջերմ յարաբերութիւնների ցուցիչ, տարածաշրջանում խաղաղութեան եւ անվտանգութեան ապահովման իւրօրինակ հանգրուան», - ընդգծեց Միրզոյեանը:

Նա հիւպատոսին շնորհաւորեց Հայաստանում Իրանի գլխաւոր հիւպատոսի պատասխանատու պաշտօնում նշանակման կապակցութեամբ:

ԽՈՀԵՐ

## 100 ՏԱՐԻ ԵՏՔ..

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Հայաստանի առաջին Հանրապետութեան Դաշնակցական կառավարութեան պաշտօնաթերթ *Յառաջ* օրաթերթը (Երեւան), 1920 Նոյեմբեր 23-ին (երկրորդ տարի, թիւ 257) կը գրէ իր կարեւոր խմբագրականներէն մէկը՝ «Դէպի հաշտութիւն», գործածելով կուսակցութեան համար ոչ այնքան սովորական ոճ մը եւ արտայայտելով ոչ այնքան ընդունուած իշխանական գաղափարներ: Ծանր պարտութիւններէն ետք գրուած խմբագրականը կը նախապատրաստէր հասարակութիւնը Ալեքսանդրապոլի դաշնագիրի հաւանական ստորագրութեան:

Ստորեւ կ՚արտատպեմ այդ խմբագրականէն երկու մեծ հատուածներ, որոնք կրնան նոյնութեամբ վերաբերիլ մեր օրերուն: Կարծէք բան մը չէ փոխուած իշխանական մեծ հայրենասիրական հռետորաբանութեան մէջ, որ սովորական պարագաներու տակ ամէն ձեւով կը մերժէ ռէալփոլիթիքի իրականութիւններն ու պարտադրանքները: Եւ կորուստներէն ետք միայն իշխանութիւնները կ՚արթըննան պատրանքներէն, կը ստիպուին մեծ ցանկութիւնները զանազանել քաղաքական իրականութիւններէն, բայց նաեւ հասարակայնօրէն կապուած կը մնան երազային շրջանի իրենց իսկ տարածած մեծ պատումներուն եւ դժուարութիւն կ՚ունենան այս անգամ հասարակութիւնը համոզել հակառակ ուղղութեամբ՝ ռէալփոլիթիքի հիմունքներուն վրայ:

100 տարի անցած է խմբագրականէն, եւ երեւոյթի շղթայակապ յաջորդութիւնը (մեծ պատում, յետոյ ռէալփոլիթիք, յետոյ պատումէն ձերբազատուելու դժուարութիւն) ոչ միայն կրկնուեցաւ այսօր դիտաւորեալ պնդութեամբ, այլ ստացաւ տասնապատիկ աւելի սրութիւն:

Մէջբերուած հատուածները կը թողում առանց մեկնաբանութեան: Միայն կը փափաքիմ ընթերցողներուն ուշադրութիւնը դարձնել աւելի մեր օրերուն վրայ քան 1920-ին՝ որ «Խոհեր»-ու հետաքրքրութենէն դուրս է առ այժմ:

«Մենք, որ օտարների ուժի վրայ յոյս դնելով շարունակ ձգտել ենք մի անգամից ստեղծել մեծ Հայաստան, մեր այս շշմեցնող պարտութիւնից յետոյ անմոռանալի առիթներ ունեցանք համոզուելու, թէ որքան խաբուսիկ եւ վնասակար էին մեզ համար այդ մեծ յոյսերը:

«Եւ եթէ մենք լինէինք ռէալ քաղաքագէտներ եւ ժամանակին ըմբռնէինք, որ չի կարելի առաջադրել ազգային քաղաքական նպատակներ, յենուելով ոչ թէ սեփական, այլ օտար ուժերի վրայ, եւ եթէ մենք ի վիճակի լինէինք ճշտօրէն չափելու մեր սեփական ուժի եւ կարողութեան իսկական կշիռը, մենք երբեք չպիտի ձգտէինք ստեղծել մի մեծ Հայաստան, որ չգիտէինք էլ թէ ինչպէս պիտի լեցնենք ազգաբնակութեամբ, պահենք ու պահպանենք եւ վաղուց պիտի ունենայինք հաշտութիւն մեր թշնամու հետ:

«Վերջին պատերազմը մի այնպիսի մեծ հարուած էր, որ չէր կարող չսթափեցնել, չզգաստացնել մեզ բոլորիս:

«Պէտք է, որ գէթ այժմ ունենանք մեր համեստ, շատ համեստ սեփական ուժի եւ կարողութեան դառն գիտակցութիւնը: Պէտք է, որ վերջապէս հասկանանք, թէ մեր ուժի եւ կարողութեան չափով միայն մենք կարող ենք քաղաքական նպատակներ ու պահանջներ առաջադրել: Այլապէս մենք ինքներս կը նպաստենք մեր կործանման եւ երբէք չպիտի կարողանանք յարատեւօրէն հաշտուել մեր հարեւան թիւրքերի հետ:

«Մեր ազգային քաղաքականութիւնը, որ մինչեւ այժմ եղել է անուղղելիօրէն ռոմանտիկական, պէտք է հիմնովին շրջէ իր ղեկավարող սկզբունքները:

«Ռէալ քաղաքականութեան գլխաւոր սկզբունքն է – *պահանջներիդ սահմանը սեփական ուժիդ չափն է*:

«Եթէ այդպէս վարուենք, մենք միշտ կը շահենք, մեր ոտքի տակից երբէք չենք կորցնի հաստատուն հողը եւ հաշտութեան ընդհանուր լեզու կը գտնենք տաճիկների հետ:

«Աւելի լաւ է սեփական ուժով ունենալ քիչ, քան օտարի օգնութեամբ՝ շատ: Որովհետեւ օտարի օգնութեամբ ձեռք բերուածը միշտ անհաստատ, միշտ անվստահելի եւ խաբուսիկ բան է, մանաւանդ եթէ սեփական ուժով ի վիճակի չես պաշտպանել այդ: Որովհետեւ օտարի շահը միայն այսօր, ներկայ պայմաններում կարող է զուգադիպել քո շահին, իսկ վաղը, տարբեր պայմաններում, նա կարող է դառնալ քեզ հակառակ կամ անտարբեր, եւ դու կը կորցնես հաստատուն հողը քո ոտների տակից եւ կը կորցնես այն, ինչ որ ձեռք ես բերել օտարի օգնութեամբ, ու թերեւս, շատ աւելի:

«Այն վատառողջ եւ ծայր աստիճան վտանգաւոր հոգեբանութիւնը, որ մինչեւ այժմ եղել է մեր մէջ, վերջին ցնցող դէպքերից յետոյ էլ կարծես շարունակում է տակաւին իր գոյութիւնը մեզանից շատերի մէջ»: [...]

«Ժամանակ է, որ մենք բոլորս սթափուենք եւ հիմնովին փոխենք մեր մինչայժմեան քաղաքական ընթացքը:

«Ամենից առաջ եւ ամենից աւելի մենք պէտք է հաշտ լինենք մեր հարեւանների հետ: Եւ որքան աւելի ուժեղ են մեզանից մեր հարեւանները, այնքան աւելի խաղաղասէր մենք պիտի դառնանք նրանց հանդէպ:

«Մենք պէտք է ձգտենք, որ այն հաշտութիւնը, որ կնքուելու է Ալեքսանդրապոլում, լինի սկիզբը պատմական մի նոր դարաշրջանի եւ նոր հայկական քաղաքականութեան: Մենք պէտք է ձգտենք ամենայն անկեղծութեամբ եւ վճռականութեամբ վերացնել այն բոլոր խոչընդոտները, որոնք անկարելի են դարձրել մինչեւ այժմ *հայ-թուրքական բարեկամութիւնը*»:

(Ընդգծումները *Յառաջ*ինն են:)








### «ՏԱՐԱԾԱՇՐՋԱՆՈՒՄ ԵՐԿԱՐ ՏԱՐԻՆԵՐ ԱՆՑ...

Թուրքիայի նախագահը, խօսելով հայ-թուրքական յարաբերութիւնների կարգաւորումից, կրկին գործընթացը կապել է Երեւանի եւ Բաքուի միջեւ բանակցութիւններում առաջընթացի հետ:

«Անկասկած, ադրբէջանա-հայկական բանակցութիւններում առաջընթացը դրական ներդրում կ՚ունենայ Թուրքիայի եւ Հայաստանի միջեւ յարաբերութիւնների կարգաւորման գործընթացում: Մենք վճռական ենք ամրապնդելու եղբայրական Ադրբէջանի հետ մեր համագործակցութիւնը բոլոր ոլորտներում «Մէկ ազգ, երկու պետութիւն» կարգախօսով», - ասել է Թուրքիայի առաջնորդը:

### ԱՐԵՒՄՈՒՏՔ, ԱՐԵՒԵԼՔ ԵՒ ԱՌՃԱԿԱՏՈՒՄԻ ՄԻՋՆՈՐԴՆԵՐ

հանդիպի Փաշինեանին: Փրայս կը յայտարարէ Ազըրպէյճանի կողմէ Հայաստանի ինքնիշխան տարածք ներխուժումը, չեշտելով ազըրպէյճանական ստորաբաժանումներուն անյապաղ վերադարձը դէպի սկզբնական դիրքերը:

**ԴԷՊԻ ՌՈՒՍԱՍՏԱՆ**

Փրակի յաջորդ օրը՝ Հոկտեմբեր 7-ին, Փաշինեան աշխատանքային այցելութեամբ կը մեկնի Սենթ Փեթերսպուրկ, մասնակցելու ԱՊՀ երկիրներու (Ռուսաստան, Հայաստան, Ազըրպէյճան, Ղազախըստան, Ղրղըզստան, Մոլտովա, Պելառուս, Տաճիկըստան, Ուզպեկստան) ղեկավարներու ոչ-պաշտօնական հանդիպումին:

Հոկտեմբեր 9, եռօրեայ այցելութեամբ Մոսկուա կը մեկնի Ազգային Ժողովի նախագահ Ալէն Սիմոնեան, Ռուսաստանի Դաշնային Ժողովի Պետական Տումայի նախագահ Վիաչեսլաւ Վոլոտինի հրաւէրով: Հանդիպումներ Վոլոտինի, Ռուսաստանի Դաշնային Ժողովի վերին պալատի՝ Դաշնութեան Խորհուրդի նախագահ Վալենթինա Մաթվիենքոյի եւ տումայի խմբակցութիւններու ներկայացուցիչներու հետ:

ՀԱՊԿ-ը չկրցաւ իր անդամներէն մէկուն դէմ կատարուած յարձակումին արձագանգել գործնական եւ արդիւնաւէտ կերպով, ռուս պաշտօնատարներուն կը չեշտէ Սիմոնեան:

Հոկտեմբեր 12-ին Հայաստանի Արտաքին Գործոց նախարար Արարատ Միրզոյեան կը գտնուի Աստանա (Ղազախստանի մայրաքաղաք)՝ մասնակցելու ԱՊՀ արտաքին գործոց նախարարներու խորհուրդի նիստին: Առանձին հանդիպում Ռուսաստանի Արտաքին Գործոց նախարար Սերկէյ Լաւրովի հետ, ուր Լաւրով կը յայտարարէ՝ թէ ՀԱՊԿ պատրաստ է դիտորդներ ուղարկել Հայաստան, բայց ատոր համար անհրաժեշտ է ունենալ ՀԱՊԿ խորհուրդի որոշումը:

Միրզոյեան կրկին կը շեշտէ, թէ հայկական կողմը կ՚ակնկալէ Ռուսաստանի՝ իբրեւ ռազմավարական դաշնակիցի, միանշանակ դիրքորոշումը եւ աջակցութիւնը՝ ազըրպէյճանական զինուած ուժերը Հայաստանի ինքնիշխան տարածքէն դուրս բերելու հարցով:

(Յիշեցում մը: 2021 Մայիսի եւ 2022 Սեպտեմբերի յարձակումներուն հետեւանքով, Ազըրպէյճան գրաւած է Հայաստանի շուրջ 127 քառակուսի քիլոմեթր տարածք: Յարձակումը, սակայն, ՀԱՊԿ-ի կողմէ մինչեւ այսօր չէ ճանաչուած:)

Հոկտեմբեր 14, միշտ Աստանայի մէջ, եռակողմ հանդիպում Հայաստանի, Ազըրպէյճանի եւ Ռուսաստանի արտաքին գործոց նախարարներուն՝ Միրզոյեան, Պայրամով եւ Լաւրով: Պաշտօնական յայտարարութիւններ, եւ ոչ աւելի:

Հոկտեմբեր 13-ին Աստանա կը հասնի Փաշինեան՝ մասնակցելու յաջորդ օրը տեղի ունենալիք ԱՊՀ պետութիւններու ղեկավարներու խորհուրդի նիստին:

Վարչապետը նիստին կը ներկայացնէ ներկայ իրավիճակը եւ Ազըրպէյճանի չպատճառաբանուած յարձակումը Հայաստանի վրայ, եզրակացնելով. «Ցանկանում եմ ընդգծել, որ Ադրբէջանի կողմից նոր ագրեսիայի ռիսկը մնում է շատ բարձր՝ յատկապէս հաշուի առնելով այն, որ Ադրբէջանը շարունակում է հետեւողականօրէն խախտել հրադադարի ռեժիմը՝ փորձելով իրենց սադրիչ գործողութիւնները վերագրել հայկական կողմին: Յետագայ էսկալացիայի եւս մէկ գործօն կարող է լինել անվտանգութեան տարածաշրջանային կազմակերպութիւնների կողմից՝ ստեղծուած իրավիճակին ոչ ադեկվատ արձագանքը, ինչը շատ սուր հարցադրումներ է առաջացրել հայ հասարակութեան մէջ»:

Հոկտեմբեր 25-ին կը յայտարարուի՝ որ Փութին կը պատրաստուի եռակողմ հանդիպում կայացնել Հայաստանի եւ Ազըրպէյճանի առաջնորդներուն միջեւ, որուն վայրը եւ ժամանակը տակաւին պիտի որոշուին:

**ԱՐԵՒԵԼՔ-ԱՐԵՒՄՈՒՏՔ ԱՌՃԱԿԱՏՈՒՄ**

Մոսկուա դժգոհ է Պրիւքսէլէն՝ հայ-ազըրպէյճանական կարգաւորումին միջամտելու համար (յիշենք Պրիւքսէլի եռակողմ հանդիպումները):

Հոկտեմբեր 11-ին, Ռուսաստանի Արտաքին Գործոց Նախարարութեան պաշտօնական ներկայացուցիչ Մարիա Զախարովա, լրատուամիջոցներուն առջեւ կը դանդատի ԵՄ միջամտութենէն՝ որ կը միտի «դուրս մղել մեր երկիրի միջնորդական ջանքերը», աւելցնելով՝ որ «Պաքուն եւ Երեւանը հաշտեցնելու, տարածաշրջանին մէջ կայուն խաղաղութիւն եւ երկարաժամկէտ կայունութիւն հաստատելու միակ բանալին Ռուսաստանի, Հայաստանի եւ Ազըրպէյճանի ղեկավարներու եռակողմ յայտարարութիւններու լիարժէք իրականացումն է»:

Ըսել կ՚ուզէ՝ առանց Ռուսաստանի հաւանութեան եւ արտօնութեան, ոչ մէկ դրական արդիւնք կարելի է ձեռք բերել:

Ռուս-ուքրաինական պատերազմէն ի վեր, Մաքրոն առիթ չէ կորսնցուցած դատապարտել ու մեղադրել Փութինը: Հոկտեմբեր 12-ին, France 2-ի հետ ունեցած հարցազրոյցին, Մաքրոն Հայաստանը կը միախառնէ իր հակառուսական արշաւին, բաւական կոշտ յայտարարութեամբ. «Վերջին երկու տարիներուն ի՞նչ կը կատարուի [Հայաստան-Ազըրպէյճան] սահմանին... ըստ հաղորդումներուն, այնտեղ տեղակայուած են հինգ հազար ռուս զինուորներ՝ սահմանի ապահովութիւնը երաշխաւորելու նպատակով, բայց ռուսերը կ՚օգտագործեն հարիւրամեակներու պատմութիւն ունեցող հակամարտութիւնը եւ կը խաղան Ազըրպէյճանի խաղը՝ Թուրքիոյ մասնակցութեամբ, որպէսզի թուլացնեն Հայաստանը, որուն հետ սերտ յարաբերութիւններ ունին: Կը տեսնէք թէ ինչ կը կատարուի. ասիկա ապակայունացնելու Ռուսաստանի փորձն է, որ կ՚ուզէ Կովկասի մէջ խառնել իրավիճակը՝ բոլորխ ապակայունացնելու համար»:

Բնականաբար, պիտի չուշանար Ռուսաստանի պատասխանը, Ռուսաստանի Արտաքին Գործոց Նախարարութեան խօսնակ Մարիա Զախարովայի բերանով. «Ֆրանսայի նախագահի անհեթեթ միտքերը կը վկայեն՝ որ Փարիզ շահագրգռուած չէ տարածաշրջանին մէջ կայուն խաղաղութիւն հաստատելու», մինչդեռ Ռուսաստան, ի տարբերութիւն Ֆրանսայի, գործնական քայլեր առած է այդ ուղղութեամբ:

Մաքրոնին կը հակաճառեն նաեւ Փութինն ու Ռուսաստանի նախկին նախագահ եւ վարչապետ Տմիթրի Մետվետեւը:

Վերը նշուեցաւ՝ որ Փութին եռակողմ հանդիպում պիտի կազմակերպէ Հայաստանի եւ Ազըրպէյճանի առաջնորդներուն միջեւ, որուն վայրն ու ժամանակը տակաւին պիտի որոշուին: Այս հանդիպումը կը տեղաւորուի հայ-ազէրիական հակամարտութեան գնահատումի անունին տակ ընթացող եւրոպական միջամտութեան եւ դիտորդական առաքելութեան առաքումի բնաբանին մէջ, որ, ինչպէս տեսանք, իր մէջ ունի նաեւ հակառուսական մանիկներ՝ շահագործելով ռուս-ուքրաինական պատերազմը եւ Արեւմուտքի հակառուսական հսկայ քարոզչութիւնը:

Մարիա Զախարովա Հոկտեմբեր 15-ին կը նշէ՝ թէ հայ-ռուսական «դարաւոր կապերուն վնասելու համար տարածաշրջանին մէջ Ռուսաստանի քաղաքականութիւնը վարկաբեկող քայլեր կը ձեռնարկուին», բայց «Երեւանին եւ Մոսկուային ընդհարելու այդ փորձերը պիտի չպսակուին յաջողութեամբ»: Ըստ անոր, արտաքին ուժերը կը փորձեն ռուսական խաղաղապահ առաքելութիւնը դուրս բերել Ղարաբաղէն, որ կրնայ ապակայունացնել Հարաւային Կովկասը: Այս ծիրին մէջ է որ Զախարովա կը յայտարարէ Փութինի ծրագիրը եռակողմ հանդիպումին առնչութեամբ:

Եւրոպական աշխուժութեան հակաճառում մը, անկասկած: Եթէ եւրոպական միջամտութիւնը պիտի հրահրէ Ռուսաստանը շարժելու նորովի, ուրեմն կարելի է խօսիլ բանակցային արդիւնքի մասին:

Ուրիշ բան է, անշուշտ, իրական հողի վրայ կիրարկուող ուժային յարաբերութիւնները:

Ա.

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1927 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 10 ՆՈՅԵՄԲԵՐ 2022 *ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.* عدد رقم ١٩٢٧ الخميس ١٠ نوفمبر ٢٠٢٢


## ՍՈՉԻԻ ԵՌԱԿՈՂՄ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ԵՒ ՄԻՋՆՈՐԴԻ ՈՒԺԱՅԻՆ ՑՈՒՑԱԴՐՈՒԹԻՒՆԸ

**Տարածաշրջանային դաշնակցութիւններ**

Կարելի չէ թերագնահատել Թուրքիա-Իսրայէլ-Ազրպէյճան եռեակը: Թուրքիա-Ազրպէյճան յարաբերութիւնները բացայայտ են, բայց շատ քիչ կը խօսուի Իսրայէլ-Ազրպէյճան յարաբերութիւններուն մասին: Իսկ Թուրքիա-Իսրայէլ յարաբերութիւնները՝ հակառակ դիտաւորեալ առաջ մղուած ձեւական անհամաձայնութեան, աւելի քան խոր են ու համագործակցային (*Ջահակիր*, թիւ 1754 եւ 1876):

(Ի միջի այլոց, *Սիվիլ Նէթ* կը բացայայտէ՝ թէ ինչպէս Սեպտեմբերի պատերազմին անհամեմատօրէն աշխուժացան Թէլ Աւիւէն Պաքու ուղեւորուող ինքնաթիռային բեռնափոխադրութիւնները, որոնցմով տեղի ունեցած են զէնքի վաճառք-փոխադրութիւն: Փոխադրութիւնը կատարած է Silk Way West օդանաւի ընկերութիւնը: Silk Way West-ը՝ Silk Way օդանաւի ընկերութեան հետ, մաս կը կազմէ Silk Way Group-ին: Իսկ վերջինիս սեփականատէրերը փոխկապակցուած են Ալիեւներուն հետ (https://www.civilnet.am/news/675690/):)

Փոխարէնը կ՚ակնկալուէր Հայաստան-Ռուսաստան երկեակի աշխուժութիւն՝ հիմնուած դաշնագրային համաձայնագրային համագործակցային յարաբերութեան վրայ: Եւ քանի որ Հայաստան-Ազրպէյճան թշնամիներ են, կ՚ենթադրուէր Ռուսաստան՝ ընդդէմ Թուրքիա-Իսրայէլ:

Բայց թշնամի-բարեկամ հակադրութիւնը եւ սառը պատերազմին բնորոշ քաղաքական-ռազմական յստակ միութիւն-բաժանումները Նաթօ-Վարշաւայի Պայմանագիր օրինակով այլեւս չեն գործեր: Գործողը յարաբերութիւններու խաչաձեւային կարգադրութիւններն են, բազմաշերտ փոխներթափանցումներով:

Տուեալ պարագային, Ռուսաստան սերտ շահերով կապուած է Թուրքիոյ եւ Իսրայէլի հետ: Գոնէ Թուրքիոյ պարագային ասիկա ակնյայտ է: Կը բաւէ յիշեցնել՝ որ ռուս-ուքրաինական ընթացող պատերազմին, Թուրքիա, ի տարբերութիւն Արեւմուտքին, ոչ մէկուն կողմը բռնեց, այլեւ աւելի սերտօրէն մշակեց յարաբերութիւնները Ռուսաստանի հետ, այն աստիճան՝ որ Ռուսաստանի դէմ Արեւմուտքի յայտարարած տնտեսական պատժամիջոցներու ներկայ պայմաններուն, Ռուսաստանէն Թուրքիա արտահանումներուն ծաւալը աճեցաւ 213%-ով: Թուրքիա, ուրիշ ոչ-արեւմտեան երկիրներու հետ, դարձաւ Արեւմուտքի մասնակի փոխանորդը Ռուսաստանի համար: Ասիկա՝ լոկ պարզ օրինակ մը:

Բացի այդ, Ռուսաստան-Ազրպէյճան յարաբերութիւնները բաւական գործուն են, առեւտուրի եւ յատկապէս ռազմական առեւտուրի առումով: Ռուսաստանի համար կարեւոր է չկորսնցնել Ազրպէյճանը, մինչ վերջինս յաջողած է ճկուն քաղաքականութիւն բանեցնել Ռուսաստանի հետ:

Կը մնայ հարցնել: Ռուսաստան-Ազրպէյճան փոխշահաւէտ յարաբերութիւններու գոյութեան, բայց Հայաստան-Թուրքիա յարաբերութիւններու բացակայութեան պարագային, ինչպէ՞ս կրնայ Ռուսաստան միանշանակ թիկունք կանգնիլ Հայաստանին: Հայաստանի մէջ տեղադրած իր ռազմակայաններով, նէօլիպերալ տնտեսութեան շնորհիւ իր անդրազգային ընկերութիւններու ներխուժումով՝ յատկապէս հանքարդիւնաբերական ոլորտին մէջ, այլեւ կազմատակարարումի եւ այլ բանալի ընձեռումներու տիրապետութեան միջոցով, Ռուսաստան ապահոված է Հայաստանի ենթակայութիւնը իրեն՝ զայն հասցնելով գրեթէ գաւառային ենթարկուածութեան:

Արդ, երբ Թուրքիա եւ Իսրայէլ բանակավարական ամէն մանրամասնութիւն եւ հոգածութիւն պիտի ընծայէին Ազրպէյճանին՝ բնականաբար ոչ առանց քաղաքական եւ նիւթական հուժկու շահերու, Ռուսաստան այս բնագաւառին մէջ մեծ զգուշաւորութեամբ պիտի վերաբերէր Հայաստանի նկատմամբ: Շահերու եւ փոխշահերու լայն, խառնաշփոթ ու յարափոփոխ գունապատկեր մը կը բարդուի, որուն մէջ Հայաստան կը փորձէ գտնել իր ինքնուրոյնութիւնն ու տեղ հասցնել իր ձայնը:

**Ռուսաստան եւ փորձ մը փարատելու իր դէմ եղած քննադատութիւնները**

Հայաստանի վերջին շրջանի արեւմտեան դեգերումները՝ պրիւքսէլեան հանդիպումներ, Արեւմուտքի հետ յարաբերութիւններու մշակում, Եւրամիութեան դիտորդներու տեղակայում, ԱՄՆ քոնկրեսականներու այցելութիւններ, եւ այլ գործողութիւններ, բնական արդիւնքն էին հայկական տեսանկիւնէն Ռուսաստանի վարած անյաջող կամ չկամ քաղաքականութեան հակամարտութեան նկատմամբ:

Հայաստանի մէջ կը սկսին բարձրանալ ռուսական անգործունեութեան վարկածներ, սկսելով վարչապետ Փաշինեանի մեղմօրէն արտայայտած ակնարկումներէն մինչեւ լրատուային-քարոզչական բարձրաշուինդ յայտարարութիւններ:

Ասոր համատեղ, նկատի ունենալով Պրիւքսէլի եւ Եւրամիութեան նկրտումները կարգաւորելու հայ-ազրպէյճանական յարաբերութիւնները, ինչպէս նաեւ ռուս-ուքրաինական պատերազմի յետնախորքին վրայ Էմանուէլ Մաքրոնի հակառուսական յարձակողականութիւնը՝ ուր կը մեղադրէր Ռուսաստանը Թուրքիային եւ Ազրպէյճանին թիկունք կանգնելու եւ Հայաստանը թուլացնելու համար (*Ջահակիր*, անցեալ թիւ), արդէն ժամանակը հասունցած էր Ռուսաստանին՝ նոր քայլ մը առնելու հայ-ազրպէյճանական հարցով, հոգ չէ թէ ձեւական:

Այդ քայլին նախապատրաստութիւնը սկիզբ կ՚առնէ Ռուսաստանի Արտաքին Գործոց Նախարարութեան խօսնակ Մարիա Զախարովայի Հոկտեմբեր 15-ի ասուլիսին, երբ խօսնակը կը փորձէ արձանագրել՝ թէ «Արեւմուտքը ակնյայտօրէն կը փորձէ Ուքրաինայի մէջ փորձարկուած առճակատումի տարբերակները տեղափոխել Անդրկովկաս: Մենք կը տեսնենք՝ թէ ինչ աննախադէպ արտաքին ճնշումի կ՚ենթարկուի եղբայրական Հայաստանը», թէ «Երեւանին եւ Մոսկուային ընդհարելու այդ փորձերը պիտի չպսակուին յաջողութեամբ», թէ անհիմն է Մոսկուայի հասցէին հնչող մեղադրանքները՝ Հայաստանի նկատմամբ ապահովութեան (ավտանգութեան) պարտաւորութիւնները չկատարելու վերաբերեալ, կը բաւէ այն փաստը՝ որ Ռուսաստանն է որ վերջ տուաւ Ղարաբաղեան երկրորդ պատերազմին եւ տեղակայելով խաղաղապահները՝ տարածաշրջանին բերաւ խաղաղութիւն եւ կայունութիւն:

Միանշանակօրէն հայանպաստ ելոյթ մը՝ իր նախադէպը չունեցող: Այս ծիրին մէջ է որ

⇨ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍԱՀՄԱՆԱԶԱՏՈՒՄԻ ԵՐՐՈՐԴ ՆԻՍՏԸ ՊՐԻՒՔՍԷԼԻ ՄԷՋ

Նոյեմբեր 3-ին Պրիւքսէլի մէջ տեղի ունեցաւ Հայաստանի եւ Ազրպէյճանի միջեւ սահմանազատումի հարցերով յանձնաժողովի երրորդ նիստը՝ Հայաստանի փոխվարչապետ Մհեր Գրիգորեանի եւ Ազրպէյճանի փոխվարչապետ Շահին Մուսթաֆաեւի նախագահութեամբ:

Նիստէն առաջ, Հայաստանի եւ Ազրպէյճանի պատուիրակութիւններուն կ՚ողջունէ Եւրոպական Արտաքին Գործողութիւններու Ծառայութեան գլխաւոր քարտուղար Սթեֆանօ Սանինօ.

«Նկատի առնելով Հայաստանի եւ Ազրպէյճանի ղեկավարներու մակարդակով տարբեր ձեւաչափերով ձեռք բերուած համաձայնութիւնները՝ կողմերը շարունակեցին սահմանազատումի հարցերուն քննարկումը, անդրադարձան կազմակերպչական եւ ընթացակարգային հարցերուն: Յանձնաժողովներուն համատեղ գործունէութեան իրաւական շրջանակներ ձեւաւորելու նպատակով՝ կողմերը համաձայնեցան արագացնել Հայաստանի եւ Ազրպէյճանի միջեւ պետական սահմանի սահմանազատումի յանձնաժողովներուն համատեղ գործունէութեան կարգի համաձայնեցումին աշխատանքները», - նշուած է հաղորդագրութեան մէջ:

Հանդիպումին համաձայնութիւն ձեռք կը բերուի աշխատանքային կարգով որոշել յանձնաժողովներու չորրորդ նիստի անցկացումին ամսաթիւը եւ վայրը:

*Հայ-ազրպէյճանական սահմանազատումի հարցով յանձնաժողով ստեղծելու համաձայնութիւնը ձեռք բերուած էր 2021 Նոյեմբեր 26-ին Սոչիի մէջ՝ Հայաստանի, Ազրպէյճանի եւ Ռուսաստանի ղեկավարներու եռակողմ հանդիպումին ընթացքին:*

*Սահմանազատումի հարցով առաջին հանդիպումը տեղի ունեցած էր Մայիս 24-ին Հայաստանի եւ Ազրպէյճանի միջպետական սահմանին վրայ, երկրորդ հանդիպումը՝ Օգոստոս 30-ին Մոսկուայի մէջ:*

## ՓԱՇԻՆԵԱՆ ԵՒ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆ ԿԸ ՀԻՒՐԸՆԿԱԼԵՆ ԿԱՐՕ ՓԱՅԼԱՆԻՆ

Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեան Հոկտեմբեր 29-ին կը հիւրընկալէ Թուրքիոյ խորհրդարանի պատգամաւոր Կարօ Փայլանին, որ Հայաստան ժամանած էր մասնակցելու Համաշխարհային Հայկական Առաջին Գագաթնաժողովին:

Առաջին նախագահի գրասենեակի հաղորդագրութեան համաձայն՝ աւելի քան երկու ժամ տեւած զրոյցը կ՚ընթանայ հայ-թրքական յարաբերութիւններու կարգաւորումի հեռանկարներուն շուրջ:

Զրոյցին կը մասնակցի նաեւ Տէր-Պետրոսեանի գլխաւոր խորհրդական Ժիրայր Լիպարիտեան:

Աւելի ուշ Փայլանին կ՚ընդունի Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեան:

Վարչապետը կ՚ողջունէ հայազգի պատգամաւորին, կը կարեւորէ իր մասնակցութիւնը համահայկական օրակարգի խնդիրներու քննարկումին նուիրուած գագաթնաժողովին, ինչպէս նաեւ այդ խնդիրներու լուծումին իր նպաստը բերելու պատրաստակամութիւնը:

Կարօ Փայլան կը ներկայացնէ Թուրքիոյ հայ համայնքին ներկայ վիճակը եւ համայնքային կեանքին առնչուող հարցեր:

Միտքեր կը փոխանակուին Հայաստան-Թուրքիա կարգաւորումի գործընթացքին շուրջ:

# ԵՐՈՒԱՆԴ ՕԳՈՍՏԻՆՈՍԵԱՆ

## Եգիպտահայ մոռցուած երաժիշտը

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**29 Յունիս** 1917

Քազինօ Քիւրսալ, Հայ Կարմիր Խաչի երեկոյթ:

Օգոստինոսեան կ՛երգէ *Հայաստանը*(64):

**21 Փետրուար** 1918

Ազգային Սրահ, հաւաքոյթ ողջունելու չորս կամաւոր ուխտաւորներ:

Կ՛երգէ Օգոստինոսեան(65):

**2 Մարտ** 1918

Ազգային Սրահը՝ որ այսուհետեւ պիտի անուանուի Հայկական Սրահ, կը գումարէ Ընդհանուր Ժողով, ուր քուէարկութեամբ կ՛ընտրուի նոր վարչութիւն. Միհրան Ղազարոսեան՝ ատենապետ, Արշակ Ֆէրմանեան՝ փոխ-ատենապետ, Երուանդ Օգոստինոսեան՝ ատենադպիր, Պետրոս Սէլեան՝ գանձապետ, Գէորգ Ակոբովի՝ մատակարար, Գէորգ Նահապետեան՝ գրադարանապետ, Գրիգոր Միհանոֆ, Զաքի Իփլիքճեան, Տիգրան Հաճընլեան՝ անդամներ: Սրահի հիմնադիր Պետրոս Յովսէփեան միաձայնութեամբ կ՛ընտրուի պատուոյ անդամ(66):

Նորընտիր վարչութիւնը իր առաջին նիստին մէջ կ՛որոշէ մասնակցիլ Հայրենիքի Տուրքին՝ տարեկան 60 ոսկիի, եւ Հայ Հետազօտիչներու տարեկան 24 ոսկիի նուիրատուութեամբ(67):

**2 Դեկտեմբեր** 1918

*Արեւ*ի խմբագրութեան ուղղուած նամակի ձեւով, Օգոստինոսեան առաջ կը մղէ հայ թշուառներուն օգնելու անհրաժեշտութիւնը: Կը մերժէ եւրոպական կառավարութիւններէն փոխառութիւն առնելու գաղափարը՝ որուն կողմնակցութիւն յայտնած են ոմանք, քանզի անիկա պարտքի տակ պիտի դնէ հայերը: Փոխարէնը կ՛առաջարկէ հիմնուիլ մեր վրայ, օգտագործելով անհատական կամքը: Օրինակ.

«Ըստ մեր բարի եւ հին սովորութեան, Կաղանդի առթիւ, ամէն ընտանիքի մէջ իրարու նուէր տալով, բաւական կարեւոր գումարներ կը վատնուին: Եւ այս գումարներն ո՞ւր կ՛երթան: Կ՛երթան խանութպաններու որոնց մեծագոյն մասը օտար է:

«Առաջարկութիւնս այս է: Գոնէ այս տարի, այդ գումարները իրարու տրուած նուէրներու գործածելու տեղ, ղրկենք զանոնք այլ եւ այլ բարեգործական կամ նպաստի հաստատութեանց: Ձեզի կ՛իյնայ բնականաբար, ցոյց տալ թէ որոնք են այն հաստատութիւնները որք, այս միջոցին, ամենէն աւելի պէտք ունին նպաստի»:

Օրինակ, ինչպէս Սրբազան Առաջնորդ Հայրը կը յորդորէ, գումար ղրկել Հանգերձարանին:

Այս տեսակ նուէրները կ՛երթան մօտակայ սիրելիներուն: Իսկ հեռաւոր հայրենակիցներու համար կարելի է կազմակերպել հանգանակութիւններ(68):

**22 Դեկտեմբեր** 1918

Հայկական Սրահ, հայ ճարտարագէտներու առաջին խորհրդակցական ժողով, իբրեւ փորձ միացեալ ուժերով լծուելու Հայրենիքի վերաշինութեան նուիրական գործին:

Ներկայ էին բազմաթիւ ճարտարապետներ, երկրաչափեր եւ գծագրիչներ:

Նախաձեռնութիւնը կը պատկանէր Սրահի ատենադպիր Օգոստինոսեանին.

«Պ. Ե. Օգոստինոսեան, որ նախաձեռնութիւնն առած էր այս հրաւէրին, հակիրճ եւ զգացուած խօսքերով բացատրեց Հայրենիքի վերաշինութեան գործին մէջ հայ *թէքնիսիէն*ներու վերապահուած դերը եւ կոչ ուղղեց մեր բոլոր մասնագէտներուն համախմբուիլ հասարակական միութիւններու մէջ, կազմակերպուած ոյժերով յառաջ մղելու համար աւերակ Հայրենիքին վերաշինութեան աշխատութիւնը: Իբրեւ առաջին քայլ, աւելցուց Պ. Օգոստինոսեան, մենք, հայ ճարտարագէտներս, պէտք է ձեռք ձեռքի տանք եւ պատրաստուինք յառաջապահները ըլլալ վաղուան Հայաստանի մէջ սկսուելիք հսկայ գործունէութեան, եւ յոյս յայտնեց որ ամէն երկրի մէջ գտնուող եղբայրակիցներն ալ պիտի չյամենան հետեւիլ տրուած օրինակին»:

Այս նպատակին համար կը կազմուի առժամեայ յանձնախումբ մը՝ Պ. Ազնաւուր, Ա. Նէսիպեան, Կարօ Պալեան, Ե. Օգոստինոսեան եւ Ա. Ուզունի(69):

**28 Փետրուար** 1919

Հայկական Սրահ, թէյասեղան ի պատիւ հայկական եւ յունական ակումբներու վարչութիւններուն, նպատակ ունենալով երկու ազգերու յարաբերութիւնները աւելի եւս սեղմելու:

Հայկական Սրահի վարչութեան անունով Օգոստինոսեան կը մաղթէ բարի գալուստ:

Մթնոլորտին մէջ փոխոխութիւն մտցնելու համար, ան կ՛երգէ *Հայաստան* եւ *Կռունկ*, «յիշեցնելու համար հաւաքոյթին հայկական դրոշմը»(70):

**28 Մայիս** 1920

Գահիրէի Ս. Աստուածածին եկեղեցի, հանդիսաւոր պատարագ եւ գոհաբանական մաղթանք Հայաստանի անկախութեան Բ. տարեդարձին առիթով:

Եկեղեցիի երգչախումբը յատուկ կը մարզէ Օգոստինոսեան.

«Դպրաց երկսեռ խումբը մասնաւորապէս մարզուած՝ քաղցրալուր ներդաշնակութեամբ երգեց, երգեհոնի ընկերակցութեամբ, զոր կը վարէր Պ. Օգոստինոսեան»(71):

**11 Դեկտեմբեր** 1920

Ռամկավար Գեղարուեստասիրաց Սրահ, ընտանեկան երեկոյթ կազմակերպութեամբ սրահի Ընթերցասրահի վարչութեան:

Ռամկավար Գեղարուեստասիրաց Միութեան երգչախումբը, Օգոստինոսեանի ղեկավարութեամբ, կ՛երգէ *Տալուորիկը*.

«Խմբերգ *Տալուորիկը* երգուեցաւ խիստ յաջող կերպով Ռամկավար Գեղ. Միութեան երգչախումբին կողմէ, ղեկավարութեամբ խումբին անխոնջ մարզիչ Տ. Ե. Օգոստինոսեանի, որուն ժրաջան գործունէութեան շնորհիւ առաւել քան երեսուն երգիչներ յաջողեցան երգել ներդաշնակութեամբ»(72):

**2 Նոյեմբեր** 1921

Ռամկավար Ազատական Կուսակցութեան Սրահ (4 Քամէլ փողոց), Օգոստինոսեանի ղեկավարութեան տակ կը վերսկսի երգի դասաւանդութիւնը(73):

**5 Նոյեմբեր** 1921

Նաւասարդ Սրահ, գրական-երաժշտական երեկոյթ, կազմակերպութեամբ Հ. Յ. Դաշնակցութեան Զաւարեան Թաղային Կոմիտէին:

«Պ. Օգոստինոսեան երգեց իտալերէն երգ մը եւ *Հայաստանը*, որոնց ընկերացաւ դաշնակով տաղանդաւոր դաշնակահարուհի Տիկին Հ. Պալեան: Պ. Օգոստինոսեան իր գոռ ձայնովը, եւ Տիկին Պալեան որ իբրեւ քաջավարժ դաշնակահարուհի ամենուն հիացմունքի արժանացած է, մէկ անգամ եւս որոտագին ծափերու արժանացան»(74):

**21 Յունուար** 1922

Ռամկավար Ժողովրդային Սրահ, գրական-գեղարուեստական երեկոյթ:

Օգոստինոսեան դաշնակով կը նուագակցի Օր. Ա. Զուքուրեանի մեներգին(75):

**8 Հոկտեմբեր** 1922

Թատրոն Նախկին Վերտի, *Ուշ լինի նուշ լինի*, օփերէթ երեք արարով, երաժշտութիւն՝ Գ. Երեցեան, նախաձեռնութեամբ Գողթան գեղարուեստասիրաց միութեան, բեմադրութեամբ հիւրաբար Եգիպտոս գտնուող Բարսեղ Աբովեանի:

Երգչախումբը կը մարզէ ու կը ղեկավարէ Օգոստինոսեան(76):

**19 Նոյեմբեր** 1922

Թատրոն Նախկին Վերտի, *Նա չը լինի սա լինի* (կամ *Մաշատի ի պատ*), օփերէթ երեք արարով, մասնակցութեամբ Գողթան գեղարուեստական միութեան Հայկական օփերէթային խումբին, բեմադրութեամբ Բարսեղ Աբովեանի «եւ բարեհաճ մասնակցութեամբ վաստակաւոր երգիչ-երաժշտագէտ Պ. Երուանդ Օգոստինոսեանի»(77):

**15 Սեպտեմբեր** 1924

Յանկարծամահ՝ 62 տարեկանին(78):

(Վերջ 4)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

64. «Հայ Կարմիր Խաչի միջազգային չքեղ երեկոյթը», *Արեւ*, 25 Յունիս 1917, Գ. տարի, թիւ 20(330), էջ 2: «Հայ Կարմիր Խաչի միջազգային չքեղ երեկոյթը», *Յուսաբեր*, 27 Յունիս 1917, Գ. տարի, թիւ 37, էջ 3: Հ. Ա., «Կարմիր Խաչի երեկոյթը», *Յուսաբեր*, 4 Յուլիս 1917, Գ. տարի, թիւ 40, էջ 2:

65. X, «Անմոռանալի երեկոյթ մը», *Յուսաբեր*, 24 Փետրուար 1918, Գ. տարի, թիւ 140, էջ 3:

66. «Հայկական Սրահ», *Յուսաբեր*, 17 Մարտ 1918, Գ. տարի, թիւ 149, էջ 2: «Ազգային քրոնիկ», *Արեւ*, 18 Մարտ 1918, Գ. տարի, թիւ 133(443), էջ 3:

67. «Ազգային քրոնիկ», *Արեւ*, 18 Մարտ 1918, Գ. տարի, թիւ 133(443), էջ 3:

68. Ե. Օգոստինոսեան, «Հայ թշուառներուն օգնելու առաջարկ մը», *Արեւ*, 2 Դեկտեմբեր 1918, Դ. տարի, թիւ 87(552), էջ 1:

69. «Հայ ճարտարագէտներու անդրանիկ ժողովը», *Յուսաբեր*, 26 Դեկտեմբեր 1918, Դ. տարի, թիւ 114, էջ 2:

70. «Հայ-հելլէնական եղբայրութիւնը», *Արեւ*, 7 Մարտ 1919, Դ. տարի, թիւ 127 (592), էջ 3:

71. «Հայկ. անկախութեան Բ. տարեդարձը», *Արեւ*, 31 Մայիս 1920, Զ. տարի, թիւ 9(779), էջ 2:

72. Լրատու, «Ռամկավար կեանքը Գահիրէի մէջ», *Արեւ*, 27 Դեկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 99(859), էջ 2:

73. Վարչութիւն, «Գահիրէի ակումբ», *Արեւ*, 31 Հոկտեմբեր 1921, Է. տարի, թիւ 77(988), էջ 2:

74. «Այսօր Շաբաթ իրիկուն գրական-երաժշտական երեկոյթ», *Յուսաբեր*, 5 Նոյեմբեր 1921, Է. տարի, թիւ 95, էջ 3: Ներկայ մը, «Շաբաթ օրուայ երեկոյթ-հանդէսը», *Յուսաբեր*, 12 Նոյեմբեր 1921, Է. տարի, թիւ 96, էջ 2:

75. Գաւառացի, «Կուսակցական կեանքը Գահիրէի մէջ», *Արեւ*, 1 Փետրուար 1922, Է. տարի, թիւ 116(1027), էջ 1:

76. «Թատրոն Նախկին Վէրտի», *Յուսաբեր*, 3 Հոկտեմբեր 1922, Ը. տարի, թիւ 79, էջ 4:

77. «Թատրոն Նախկին Վէրտի», *Յուսաբեր*, 7 Նոյեմբեր 1922, Ը. տարի, թիւ 84, էջ 4:

78. Թուականը տրամադրած է Սիրա Թաշճեան:

ԳԱՀԻՐԷ

# ԽՈՍՐԻ ՆԱՍՐ ԱԼԼԱՀ՝ ՍԵԴԱ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ ՄԱՍԻՆ

Հոկտեմբեր 4-ին, cbc հեռատեսիլի արաբերէն արբանեակային կայանը կը ցուցադրէ շաբաթական հարցազրուցային հաղորդումը՝ «Երեկոն Քասուա՛ի հետ»:

Հաղորդավարուհի Քասուա՛ Ալ-Խըլալի այս անգամ հրաւիրած էր եգիպտացի բազմավաստակ բեմադրիչ Խօսրի Նասր Ալլահ, որ, ի միջի այլոց, կը խօսի իր փորձառութեան մասին լիբանանահայ նկարչուհի Սեդա Մանուկեանի արուեստին նկատմամբ.

«Պէյրութ բնակած ժամանակս առաջին դաս մը սորվեցայ: Կար նկարչուհի մը՝ Սեդա Մանուկեան, որուն գործը շատ կը սիրէի եւ անակնկալի եկայ իր գործէն: Իր նկարները միշտ զգացնել կու տան կտրուած ըլլալ, որ բան մը կայ անոնցմէ դուրս, որ նկարէն դուրս տակաւին կը գտնուի ուրիշ աշխարհ մը՝ զոր ինք չէ նկարած, եւ նկարը դիտաւորեալ կտրած է՝ հրահրելու համար երեւակայութիւնդ անկէ դուրս գտնուածին նկատմամբ: Կը թուի այս է զոր կը փորձեմ իրականացնել ֆիլմերուս մէջ: Միշտ կ՛ուզես զգալ որ բան մը կայ դուրսը՝ զոր դուն պէտք է ամբողջացնես»:

ԳԱՀԻՐԷ

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ *ՋԱՀԱԿԻՐԻ* 52-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ԷՏՈՒԻՆ ՀԱՄԱՄՃԵԱՆԻ ՄԱՍԻՆ

Լոյս տեսաւ *Ջահակիրի* 52-րդ (ԾԲ.) Յաւելուածը անգլերէն լեզուով՝ *Edwin Gerard Hamamdjian: An Artist in the Service of Ideas* (175 էջ):

HAIG AVAKIAN

EDWIN GERARD HAMAMDJIAN
An Artist in the Service of Ideas

Translated by
MARIE SARGSYAN-LUSCOMBE

*TCHAHAGIR* WEEKLY
SUPPLEMENT 52

CAIRO
2022

Յաւելուածներու շարքի առաջին անգլերէն գիրքն է: Ան թարգմանութիւնն է 49-րդ (ԽԹ.) Յաւելուածին: Անգլերէն թարգմանութիւնը կատարած է Մարի Սարգսեան-Լիւսքոմպ:

Կը բովանդակէ ամերիկահայ-ֆրանսահայ, այժմ եգիպտաբնակ բեմադրիչ, դերասան եւ մանկավարժ Էտուին Ժերար Համամճեանի (ծն 1948, Լոս Անճելըս) կեանքը, գործունէութիւնը եւ գաղափարները:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ ԿԱՅԱՑԱՒ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԳԱԳԱԹՆԱԺՈՂՈՎԸ

Հոկտեմբեր 28-31-ին, Երեւանի մէջ կայացաւ Համաշխարհային Հայկական Առաջին Գագաթնաժողովը:

Մասնակցեցան 50 երկիրներէ 600 անձեր, բանախօսութեամբ հանդէս եկան 15 երկիրներէ աւելի քան 100 բանախօսներ:

Հոկտեմբեր 28-ին, Հայաստանի Ազգային Պատկերասրահին մէջ տեղի ունեցաւ բացումի արարողութիւնը, որուն ներկայ գտնուեցան Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեան եւ տիկինը, Արցախի նախագահ Արայիկ Յարութիւնեան, Հայաստանի Ազգային Ժողովի նախագահ Ալէն Սիմոնեան, Անվտանգութեան Խորհուրդի քարտուղար Արմէն Գրիգորեան, Սփիւռքի Գործերու գլխաւոր յանձնակատար Զարեհ Սինանեան, տարբեր ոլորտներ ներկայացնող սփիւռքահայ բազմաթիւ գործիչներ, պաշտօնատար այլ անձեր: Ելոյթ ունեցան Հայաստանի վարչապետը, Ազգային Ժողովի նախագահը, Արցախի նախագահը եւ ուրիշներ:

Գագաթնաժողովը ունեցաւ 8 փանէլային քննարկումներ եւ 17 համաժամանակեայ նիստեր՝ քննարկելով Հայաստանի ապահովութենէն մինչեւ աշխարհի մէջ հայկական շահերու պաշտպանութիւնը, հայրենադարձութենէն մինչեւ կրթութիւն, առողջապահութիւն եւ գիւղատնտեսութիւն, ճգնաժամային համայնքներէն մինչեւ Սփիւռքի երիտասարդութեան առնչուող հարցեր:

## ՍՈՉԻԻ ԵՌԱԿՈՂՄ ՀԱՆԴԻՊՄԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

«Մենք՝ Հայաստանի Հանրապետութեան վարչապետ Ն. Վ. Փաշինեանը, Ադրբէջանի Հանրապետութեան նախագահ Ի. Հ. Ալիեւը եւ Ռուսաստանի Դաշնութեան նախագահ Վ. Վ. Պուտինը 2022 թ.-ի Հոկտեմբերի 31-ին հանդիպեցինք Սոչիում եւ քննարկեցինք 2020 թ.-ի Նոյեմբերի 9-ի, 2021 թ.-ի Յունուարի 11-ի եւ Նոյեմբերի 26-ի եռակողմ յայտարարութիւնների կատարման ընթացքը:

Վերահաստատեցինք նշեալ բոլոր պայմանաւորուածութիւնների խստօրէն պահպանման յանձնառութիւնը՝ ելնելով հայ-ադրբէջանական յարաբերութիւնների համապարփակ կարգաւորման, Հարաւային Կովկասում խաղաղութեան, կայունութեան, անվտանգութեան եւ կայուն տնտեսական զարգացման ապահովման շահերից: Համաձայնեցինք լրացուցիչ ջանքեր գործադրել մնացեալ, այդ թւում՝ հումանիտար խնդիրների հրատապ լուծման ուղղութեամբ:

Նշելով ռուսական խաղաղապահ զօրախմբի առանցքային ներդրումն իր տեղակայման գօտում անվտանգութեան ապահովման գործում՝ ընդգծեցինք տարածաշրջանում իրավիճակի կայունացմանն ուղղուած նրա ջանքերի պահանջուածութիւնը:

Պայմանաւորուեցինք զերծ մնալ ուժի կիրառումից կամ դրա կիրառման սպառնալիքից, քննարկել եւ լուծել բոլոր խնդրայարոյց հարցերը բացառապէս ինքնիշխանութեան, տարածքային ամբողջականութեան եւ սահմանների անձեռնմխելիութեան փոխադարձ ճանաչման հիման վրայ՝ համաձայն ՄԱԿ-ի կանոնադրութեան եւ 1991 թ.-ի Ալմա-Աթայի հռչակագրի:

Ընդգծեցինք Հայաստանի Հանրապետութեան եւ Ադրբէջանի Հանրապետութեան միջեւ խաղաղութեան պայմանագրի կնքման ակտիւ նախապատրաստման կարեւորութիւնը՝ տարածաշրջանում կայուն եւ երկարաժամկէտ խաղաղութեան հասնելու նպատակով: Առկայ աշխատանքային տարբերակների հիման վրայ պայմանաւորուածութիւն է ձեռք բերուել շարունակել փոխընդունելի լուծումների որոնումը: Ռուսաստանի Դաշնութիւնը հնարաւոր օժանդակութիւն կը ցուցաբերի դրան:

Շեշտեցինք Հայաստանի Հանրապետութեան եւ Ադրբէջանի Հանրապետութեան միջեւ դրական մթնոլորտի ձեւաւորման կարեւորութիւնը՝ Ռուսաստանի օժանդակութեամբ հասարակութիւնների ներկայացուցիչների, փորձագիտական համայնքների եւ կրօնական առաջնորդների ↳ 4

ԽՈՀԵՐ

## ԱԶԳԱՅԻՆ ԱՅԼԸ ԻԲՐԵՒ ԿԱՐԾՐԱՏԻՊ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Մինչեւ ԺԹ. դարը, պատմութեան ընթացքին անսովոր չէ տեսնել էթնիքական մշակոյթի մը պատկանող մարդիկ ու խումբեր արտայայտուին մօտիկ ու հեռաւոր ուրիշ էթնիքական խումբերու մասին, անոնց տալով ընդհանուր գունաւորումներ եւ որակաւորումներ, հիմնուած լեզուի, մաշկի, սովորութիւններու եւ արտաքին տպաւորութիւններու ու ներքին ըմբռնումներու վրայ:

Թէեւ նախատիպեր կրնային գործել այս բնութագրութիւններուն համար, բայց անոնց հեղինակները պիտի փորձէին բոլոր պարագաներուն դնել իրենց սեփական փորձառութիւնը եւ համոզուածութիւնը: Ահաւասիկ ամենայայտնի օրինակը Ֆրիկէն.

Ուրիշ լեզու ամէն մէկի,
Որ մէկ մէկի ո՛չ հաւանի.
Որ մէկն է հայ, մէկ վրացի,
Մէկն է տաճիկ, մէկն ասորի:

Մէկն է ճհուտ եբրայեցի,
Եւ մին արաբ հագարացի,
Մէկն է ալան արեւորդի,
Մինն է թովիչ եւ ափխազի: (Եւ այլն:)

Այստեղ կարելի է գտնել փափաք դեգերելու ուրիշ էթնիքական խմբաւորումներու մէջ՝ լեզուական հանգամանքը իբր պատրուակ, եւ այդ դեգերումներու ընդմէջէն մտորելու ու դատելու:

ԺԹ. դարը փոխեց ամէն բան: Խմբային հակադրութիւնները դարձան գերազանցապէս սուր ու բախումնային, մտորել-դատելու կարելիութիւնը փոխուեցաւ մենիմաստ հարկադրութեան:

ԺԹ. դարէն առաջ անկարելի էր յօրինել այնպիսի բառապաշարով եւ տրամադրութեամբ բանաստեղծութիւններ (ըլլայ հեղինակային, աշուղական կամ ժողովրդային)՝ ինչպիսիք են յեղափոխական երգերու հետեւեալ քաջայայտ տողերը.

«Զարկե՛նք շուն թուրքին, գնա՛նք մենք առաջ»:

Կամ՝ «Գազան թուրք մեր սրտերն արել ես եարոտ»:

Անշուշտ, նկատի ունիմ օգտագործուած հայհոյանքները՝ մէկ բառով ներկայացնելու թշնամին իր ամենայն ամբողջականութեամբ, ինչպէս նաեւ այդ հայհոյանքին հանդէպ կուսակցութիւններու՝ իբրեւ սփիւռքեան իշխանական մարմիններ, արտայայտած յետագայ հիացմունքը՝ երգը հասցնելով գրեթէ գրական ընկալումի աստիճանի:

Ասիկա հայկական երեւոյթ չէ, այլ արդիւնքն է ԺԹ. դարու ամբողջ աշխարհի նոր տեսակ ազգայնականութեան:

ԺԹ. դարուն զարգացաւ իշխանական ազգայնականութիւնը, այն որ կապուած է դրամի, ուժի եւ տիրապետութեան հետ: Արտադրուեցան վերադիր ազգայնականութիւններ՝ փոխանակ ժողովուրդներու բնական, ինքնափորձառութեան վրայ հիմնուած դարաւոր տարբերակին:

Յատուկ կազմակերպուածութեամբ եւ թիրախաւորուած նպատակամղուածութեամբ, պետութիւնները սկսան ընդհանրացուած ու մենիմաստ գոյներ տալ այլ ազգերու, յատուկ շահեր ձեռք բերելու նպատակով:

Օրինակ, ԺԹ. դարը նշանաւորեց թիրախաւորումը Միացեալ Նահանգներու բնիկներուն, այն ցեղային խումբերուն՝ որոնց ամբողջականութիւնը տարօրինակօրէն անուանուեցաւ կարմիր հնդիկներ: Զաւթող ճերմակ ցեղին համար երկիրի բուն բնակիչները ներկայացուեցան իբրեւ վայրենի, միշտ մարդասպան մարդիկ, եւ ամբողջ ճերմակ ցեղը հաւատաց անոնց վայրենիութեան, առանց տեսած ըլլալու անոնցմէ ոեւէ մէկուն: Ասիկա ճամբայ բացաւ անոնց դէմ շատոնց սկիզբ առած լուռ ցեղասպանութիւնը իր լրումին հասցնելու, որմէ՝ ճերմակ ցեղի վերջնական տիրապետութեան:

Հնդիկներու վայրենիութեան պատկերումը դիտաւորեալ ուղղուածութեամբ ա՛լ աւելի սրութիւն ստացաւ Ի. դարու հոլլիուուտեան ֆիլմերուն մէջ, չմոռնալով որ Հոլլիուուտը, մինչեւ այսօր, շատ կողմերով կը ծառայէ յատուկ քաղաքականութիւններու:

Ֆրանսացիները՝ ալճերիական գաղութատիրութիւնը ամրացուցին արեւելականացնելով (orientalising) ալճերիացիները՝ չկրթուած, անհոգ, անուշադիր մարդիկ, այլեւ տարածեցին լուսանկարներ՝ ուր ամրագրուած էին ցեղապաշտական անկիւններէ դիտուած կրօնական-մշակութային երեւոյթներ: Ֆրանսացին հաւատաց այս պատկերին՝ առանց մէկ ալճերիացի մը տեսած ըլլալու:

Աւելի լայն առումով, ԺԹ. դարու Արեւմուտքը ինքզինքին համար ստեղծեց ամբողջ արաբական աշխարհի միանուագ պատկերը՝ երազկոտութիւն, զգայականութիւն, ծուլութիւն, հարէմ, դաժանութիւն, եւ այլն:

Բ. Համաշխարհային Պատերազմէն ետք, ԱՄՆ պէտք ունէր Ճաբոնին իբրեւ տնտեսական կեդրոնական ուժ՝ քաղաքականապէս դիմադրելու շրջապատող համայնավար երկիրները: Եւ ԱՄՆ-ի անմիջական օգնութեամբ Ճաբոն դարձաւ աշխարհի յառաջադէմ դրամատիրական տնտեսութիւններէն մէկը: Ասոր համատեղ, ԱՄՆ յառաջացուց ճաբոնցիի ցեղային կատարեալ ու անթերի յատկութիւններով օժտուած մարդու պատկերը՝ արտակարգօրէն խելացի, հանճարեղօրէն ստեղծարար, չափազանց աշխատասէր, մինչեւ վերջ նուիրուած հայրենիքին: Ո՞ւր էին այս յատկութիւնները 1945-էն առաջ: Վերջացաւ Սառը Պատերազմը, դադրեցաւ Ճաբոնի օգտակարութիւնը ԱՄՆ-ի համար, չիջեցաւ ճաբոնցի անսայթաք մարդու պատկերը:

Հայերս եւս ունեցած ենք ազգային կարծրատիպեր:

Ստեղծած ենք թշնամի պարսիկ տղամարդուն կարծրատիպը՝ ճաղատ գլուխով, սրածայր մօրուքով: Հիմա պարսիկներուն հետ քաղաքական յարաբերութիւնը բաւական լաւ է, եւ չենք կրնար այսօրուայ պարսիկներուն նոյն թշնամական տիպարը տալ, թէեւ հինը միշտ մնաց նոյնը:

Ցեղասպանութենէն ետք ստեղծեցինք թուրքի կարծրատիպը՝ ի ծնէ ու յաւերժ ցեղասպան. բացառութեան չկայ:

Ղարաբաղի առաջին պատերազմէն ետք երկու կողմերը կազմեցին հակառակորդ կողմի անփոփոխ պատկերներ իբրեւ նախայարձակ վայրենիներ, անմշակոյթ տարրեր, արտապատմական էակներ: Մինչ Ազըրպէյճան՝ որ կը բաղձար պատերազմի, իր համար ստեղծեց հայու ծայրայեղօրէն վայրագ տիպարը, Հայաստան՝ որ չէր բաղձար պատերազմի, իր համար ստեղծեց ազէրիի նուազ վայրագ տիպարը: Ամէն բան ստեղծուեցաւ վերը՝ իշխանութիւններուն կողմէ, եւ ժողովուրդները հաւատացին անոր՝ իրենց հրամցուած չափի աստիճանով, առանց երբեք երկու կողմերը հանդիպած ըլլալու իրար: Առանց ծանօթ ըլլալու՝ ատեցին զիրար, հերքեցին դիմացինի տառացիօրէն ամէն բանը: Դիմացինը հասկնալ փորձողներն ալ անուանուեցան դաւաճան:







### ՍՈՉԻԻ ԵՌԱԿՈՂՄ ՀԱՆԴԻՊՄԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

միջեւ երկխօսութեան շարունակման, ինչպէս նաեւ երկու երկրների ժողովուրդների միջեւ վստահութեան ամրապնդմանը միտուած եռակողմ միջխորհրդարանական շփումների մեկնարկի համար:

Հայաստանի Հանրապետութեան եւ Ադրբէջանի Հանրապետութեան ղեկավարները ողջունել են Ռուսաստանի Դաշնութեան պատրաստակամութիւնը՝ յետայսու եւս ամէն կերպ նպաստելու Հայաստանի Հանրապետութեան եւ Ադրբէջանի Հանրապետութեան միջեւ յարաբերութիւնների կարգաւորմանը, Հարաւային Կովկասում կայունութեան եւ բարգաւաճման ապահովմանը»:

1

### ՍՈՉԻԻ ԵՌԱԿՈՂՄ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ԵՒ ՄԻՋՆՈՐԴԻ ՈՒԺԱՅԻՆ ՑՈՒՑԱԴՐՈՒԹԻՒՆԸ

Զախարովա կը յայտարարէ Փութինի ծրագիրը եռակողմ հանդիպումին առնչութեամբ, տակաւին առանց բացայայտելու վայրն ու ժամանակը:

Կ՚որոշուին վայրն ու ժամանակը՝ Սոչի, Հոկտեմբեր 31:

**Ի՞նչ նախատիպարներով Ալիեւ եւ Փաշինեան գացին Սոչի**

Որոշ ժամանակ է՝ որ Ալիեւ առաջ նետած է երկու վարկած-պահանջներ.

1. Ղարաբաղի հակամարտութիւն չկայ, ան լուծուած է երկրորդ պատերազմէն ետք, իսկ Ղարաբաղը Ազըրպէյճանինն է:

Նոյնիսկ Սոչիի եռակողմ հանդիպումին սկիզբը տեղի ունեցած մամուլի բաց հատուածին, Ալիեւ, անդրադառնալով ղարաբաղեան հարցին, ընդգծեց՝ որ հակամարտութիւնը «արդէն պատմութիւն է, ան լուծուած է երկու տարի առաջ, ուստի այդ բնաբանին մէջ ոչինչ կայ գործնականօրէն քննարկելու»:

Եթէ հակամարտութիւն չկայ, ինչպէ՞ս Ղարաբաղը պիտի անցնի Ազըրպէյճանին: Խաղա՞ղ ճանապարհով՝ հայ առաջնորդներու թոյլատրութեամբ: Կը նշանակէ՝ կայ ղարաբաղեան հակամարտութիւն:

2. Զանգեզուրի միջանցք՝ Լաչինի միջանցքի նմանողութեամբ: Թէեւ երկուքը չեն կրնար նոյնանալ: Նախ, Նոյեմբեր 9-ի յայտարարութեան մէջ Զանգեզուրի միջանցք անուանումը չկայ: Նշուած է Ազըրպէյճանի արեւմտեան շրջաններու եւ Նախիջեւանի միջեւ երթեւեկային կապերու ապահովումը Հայաստանի կողմէ: Ասիկա Ազըրպէյճանի կողմէ միակողմանիօրէն վերածեցաւ Զանգեզուրի միջանցքի՝ Լաչինի միջանքի նմանողութեամբ (*Ջահակիր*, թիւ 1924): Նոյնացաւ չնոյնացուողը: Հայաստան չի կրնար ընդունիլ իր երկիրը ճեղքել երկուքի՝ մէջտեղը ամբողջ գիծ մը յանձնելով Ազըրպէյճանի տնօրինութեան: Մինչդեռ անմարդաբնակ Լաչինը կենսական անհրաժեշտութիւն մը չի ներկայացներ Ազըրպէյճանի համար: Թէեւ, պաշտօնապէս ըլլալով Ազըրպէյճանի տարածքի մաս, Ազըրպէյճան կրնայ ուժի կիրառումով որեւէ պատեհ առիթի փակել Լաչինի միջանցքը՝ պնդելով անոր նոյնականացումը Զանգեզուրի հետ: Կրնայ՝ եթէ խաղի պայմանները փոխուին, մանաւանդ Ռուսաստանի հետ կապուած:

Ազըրպէյճան կը պնդէ Զանգեզուրի միջանցքը, երբ արդէն շինարարութեան մէջ է Ազըրպէյճան-Նախիջեւան ճանապարհը Իրանի տարածքով՝ երկաթուղիով ամրացած: Պարզապէս վերջինս քիչ մը աւելի երկար պիտի ըլլայ, քանի որ պէտք է հասնիլ մինչեւ Իրան: Իրապէ՞ս երկու միջանցքներ կ՚ուզէ ունենալ Ազըրպէյճանը, թէ Զանգեզուրինը պարզապէս խաղաղութեան կարելիութիւնը խափանելու յաջորդական միջոց մըն է:

Կը ստացուի այսպէս: Տուէ՛ք մեզի Զանգեզուրի միջանցքը, որմէ ետք մեզի կը յանձնէք Ղարաբաղը: Պատկերաւոր հարցում մը: Եթէ, համաձայն Ալիեւի յայտարարութիւններուն, Ղարաբաղը դառնայ Ազըրպէյճան եւ պարպուի հայութենէ, Լաչինի միջանցքը պիտի դառնայ անգործածելի եւ անպէտք: Ուրեմն ինչո՞ւ Հայաստանը Ազըրպէյճանին յանձնէ Զանգեզուրի միջանցքը՝ իբրեւ Լաչինի կրկնօրինակութիւն: Ասիկա՝ լոկ տրամաբանութեան համար:

Հիմա թող ըսուի՝ որ Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ հակամարտութիւնը աւարտած է եւ մտած ենք խաղաղութեան պայմանագիրի փուլը:

Իսկ ի՞նչ բերած էր Փաշինեան: Եռակողմին անմիջապէս նախորդող Փաշինեան-Փութին երկկողմանի հանդիպումին, Հայաստանի առաջնորդը ներկայացուց քանի մը պահանջներ, որոնցմէ կարելի է առանձնացնել երեք կէտեր.

1. «Մեզ համար շատ կարեւոր է ադրբէջանական զօրքերի դուրսբերման հարցը Լեռնային Ղարաբաղում ռուս խաղաղապահների պատասխանատուութեան գօտուց, ուր նրանք ներխուժել են այս տարուայ Մարտին»:

Խօսքը Փառուխ գիւղի եւ Քարագլուխի՝ ռազմավարական նշանակութիւն ունեցող բարձունքի տարածքային կորուստներուն մասին է:

2. «[Ա]յս տարուայ Սեպտեմբերի 13-ին Ադրբէջանը նոր ագրեսիա նախաձեռնեց Հայաստանի դէմ եւ օկուպացրեց մեր երկրի նոր տարածքներ: Մեզ համար շատ կարեւոր է Ռուսաստանի Դաշնութեան յստակ դիրքորոշումն այս հարցում, ըստ որի՝ անհրաժեշտ է ադրբէջանական զօրքերը դուրս բերել ելման դիրքեր 2021 թ-ի Մայիսի 11-ի դրութեամբ»:

3. «Հայաստանի Հանրապետութեան տարածքով անցնող հաղորդակցութիւնները պէտք է լինեն Հայաստանի Հանրապետութեան լիակատար վերահսկողութեան ներքոյ եւ գործարկուեն Հայաստանի Հանրապետութեան օրէնսդրութեանը համապատասխան»:

Խօսքը Ազըրպէյճանի անուանած Զանգեզուրի միջանցքի մասին է:

Կարելի՞ է արդեօք Ալիեւի եւ Փաշինեանի այս հակադիր դրոյթները որեւէ ձեւով համաձայնեցնել: Ո՞ւր կը գտնուի համաձայնեցումի եւ փոխզիջողականութեան համատեղ հարթակը: Համաձայնութեան հարթակ չկայ՝ եռակողմ հանդիպումի սահմանափակ ժամերուն ընթացքին լուծումներ գտնելու համար:

**Եռակողմ հանդիպում**

Հոկտեմբեր 31-ին, Սոչիի մէջ, կայացաւ եռակողմ հանդիպումը, որմէ անմիջապէս ետք Փութին յայտարարեց. «Մեր բոլորիս կարծիքով՝ շատ օգտակար հանդիպում էր: Ան լաւ մթնոլորտ ստեղծեց որոշ հիմնարար հարցերու շուրջ ապագայ հնարաւոր պայմանաւորուածութիւններու համար: Այսօր համաձայնեցանք համատեղ յայտարարութեան շուրջ: Անկեղծ ըսեմ՝ չյաջողեցանք ամէն բան համաձայնեցնել: Որոշ բաներ ջնջուեցան մասնագէտներու կողմէ նախապէս մշակուած բնագիրէն»:

Տարածուեցաւ յայտարարութիւնը, բոլորս ալ կարդացինք, հասկցանք որ բառերու եւ նախադասութիւններու գեղեցիկ համադրութիւն մըն էր:

**Միջնորդը իբրեւ ուժ**

Բնական է՝ որ Թուրքիան չի կրնար միջնորդ ըլլալ Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ, քանի որ բացայայտ կողմ մըն է ան: Բայց ան, ենթադրաբար անկողմնակալ դիրք բռնելով ռուս-ուքրաինական պատերազմին, միջնորդ կը փորձէ ըլլալ Ռուսաստանի եւ Արեւմուտքի միջեւ՝ այդ պատերազմին հետեւանքով անոնց միջեւ յառաջացած խզումը վերացնելու կամ մեղմելու առումով, մինչ ինք խնդիր չունի հարուածելու իր սեփական երկիրի քուրտերը, Սուրիան, այլեւ օգնելու Ազըրպէյճանը՝ հարուածելու Հայաստանը, եւ այլն: Միջազգային բարձր աղմուկ ունեցող ռուս-ուքրաինական պատերազմին փորձելով ըլլալ միջնորդ՝ Թուրքիա իր ուժը ստացած կ՚ըլլայ միջնորդութենէն: Քանզի եթէ կարողանաս ինքզինքդ պարտադրել իբրեւ միջնորդ, քու պատկերդ աւելի բարձր կը դառնայ հակամարտող կողմերէն, կը դառնաս բարի, ազնիւ, խաղաղութեան ձգտող՝ հակամարտող եւ խաղաղութիւնը մերժող կողմերուն միջեւ:

Սոչիի եռակողմով, անպտուղ՝ իբրեւ բանակցութիւն, Ռուսաստան կը ձգտէր վերահաստատել իր դիրքը իբրեւ իշխանութիւն, կրկին իր կողմը գրաւելով միջնորդային դերը իբրեւ կեդրոնական ուժ, ձգտելով խաղաղութեան՝ մինչ ինք կը պատերազմի Ուքրաինայի դէմ:

Հետաքրքրական է: Թուրքիա՝ միջնորդ Ռուսաստանի եւ Արեւմուտքի միջեւ, մինչ ան կը շարունակէ իր յարձակողական եւ պատերազմական քաղաքականութիւնը այլուր, Ռուսաստան՝ միջնորդ Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ, մինչ ան նոյնպէս կը շարունակէ իր պատերազմները այլուր: Ասոնց համատեղ կը գործէ Թուրքիա-Ազըրպէյճան (առայժմ մէկ կողմ ձգենք Իսրայէլը՝ որ առանձին խօսելու նիւթ է) եւ Ռուսաստան-Հայաստան դաշնակցային զոյգ յարաբերութիւնները՝ բանակավարութեան առումով առաջինի լիակատար համագործակցութեամբ եւ երկրորդի անկատար ներդրումով, յարաբերութիւններ՝ ուր Ազըրպէյճան-Հայաստան թշնամութիւնը ոչ միայն չի թշնամացներ իւրաքանչիւրի դաշնակիցները՝ Թուրքիա եւ Ռուսաստան, այլ զանազան շահերու բերումով անոնք կը դառնան կարեւոր համագործակցողներ: Բայց նաեւ կարեւոր մրցակիցներ միջնորդական ուժերու տիրանալու համար:

Սոչիի եռակողմը փորձ մըն էր Ռուսաստանի ուժի ցուցադրութեան՝ միջնորդի դերակատարութեան մէջ:

Ա.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202)24530327, Fax: (202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1928 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 1 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2022 *ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.*

عدد رقم ١٩٢٨ الخميس ١ ديسمبر ٢٠٢٢


## ՌՈՒՍԱԿԱՆ ՏՐԱՄԱԴՐՈՒԹԻՒՆՆԵՐ

**Հայաստանի գաւառայնացումը**

2018-ին Երեւան կը գտնուէի գիտական համագումարի համար: Համագումարի մասնակցողներուն կարեւոր մասը Ռուսաստանէն էր: Ռուս էին: Եկած էին Հայաստան, քաջ իմանալով որ բոլորը իրենց հետ պիտի խօսին ռուսերէն: Այդպէս ալ եղաւ: Իսկ եթէ կար մասնակցող մը՝ որ եկած էր ուրիշ տեղէ եւ ռուսերէն չէր իմանար, պարզապէս խորթ տարր մըն էր իրենց համար: Խորթ տարր մը երկիրի մը մէջ՝ որ իրենցը չէ: Պիտի չփորձէին նոյնիսկ երրորդ լեզուով մը, օրինակ՝ անգլերէն, խօսիլ հետը: Պիտի չփորձէին նոյնիսկ հաղորդակցիլ հետը:

Ասիկա օրինակ մըն է, որ հեռու է անձնական ըլլալէ: Ռուսաստանը լայն տարողութեամբ կը գտնուի Հայաստանի մէջ: Ռուսական ընկերութիւնները այնտեղ են՝ ազդեցիկ ոլորտներու մէջ բանալի լուծումները ունենալով իրենց ձեռքը: Այլեւ ռազմակայաններ՝ Ռուսաստանի ամենամարդաշատ ռազմակայանը իր սահմաններէն դուրս, եւ սահմանային պաշտպանութեան համաձայնագրային իրաւունք:

Բայց երբ հարցը կը հասնի բարոյա-լեզուական վերջնական փուլին, արդէն կարելի է խօսիլ Հայաստանի գաւառային դրութեան մասին Ռուսաստանի դիտանկիւնէն: Խորհրդային շրջանէն ժառանգուած կացութիւն մը, պիտի պատճառաբանեն ոմանք: Բայց մինչեւ ե՞րբ խորհրդային ուրուականը պիտի հետապնդէ մեզի: Ըստ էութեան, Հոկտեմբեր 27-ը՝ որուն շնորհիւ Հայաստանը բազմատարր իշխանական համակարգի կարելիութենէն անցաւ միատարր բռնատիրական վարչակարգի (որուն թիկունք կանգնեցաւ Սփիւռքը իր ամենակալ կամքով), ճամբայ բացաւ ռուսական գերտիրակալութեան Հայաստանի վրայ, անշուշտ գլուխներու անձնական-պիզնէսային հսկայ շահերու միջնորդութեամբ:

Իսկ եթէ Ռուսաստանի ձեռքն է ամէն բան, եթէ ապահոված է Հայաստանի յաւերժ ենթարկուածութիւնը, ինչո՞ւ պիտի մտածէ հաղորդակցիլ Հայաստանի հետ փոխշահաւէտ սկզբունքով: Իսկ որեւէ փոքր նահանջ կամ քննադատութիւն Ռուսաստանի նկատմամբ պիտի թարգմանուի իբրեւ հակառուսական տրամադրութիւն կամ գործողութիւն:

Եւ ահաւասիկ, կրկին ու կրկին բազմաչարչար ՀԱՊԿ-ը՝ Ռուսաստանի միահեծան մարտանաւը, ՆԱԹՕ-ի աղօտ տարբերակը: Եւ կրկին Հայաստանի քննադատութիւնը ՀԱՊԿ-ին՝ անոր գագաթնաժողովի ընդմէջէն:

**ՀԱՊԿ գագաթնաժողով Հայաստանի մէջ**

Նոյեմբեր 22, Երեւան, ՀԱՊԿ Արտաքին Գործերու նախարարներու խորհուրդի արտահերթ նիստ, նախապատրաստելու համար յաջորդ օրուայ գագաթնաժողովը:

Նոյեմբեր 23, Երեւան, ՀԱՊԿ գագաթնաժողով՝ անդամ երկիրներու ղեկավարներու մասնակցութեամբ. Վլատիմիր Փութին՝ Ռուսաստանի նախագահ, Ալեքսանդր Լուքաշենքօ՝ Պելառուսի նախագահ, Քասիմ-Ժոմարթ Թոքաեւ՝ Ղազախստանի նախագահ, Սատիր Ժափարով՝ Ղրղզստանի նախագահ, Էմոմալի Ռահմոն՝ Տաճիկստանի նախագահ:

ՀԱՊԿ-ի 4-րդ յօդուածի համաձայն, որեւէ անդամ պետութեան նկատմամբ յարձակում կը համարուի յարձակում ՀԱՊԿ բոլոր երկիրներուն նկատմամբ: Բայց եւ այնպէս, հակառակ Հայաստանի դիմումին, ՀԱՊԿ որեւէ ռազմական օգնութիւն չցուցաբերեց Հայաստանին Ազըրպէյճանի վերջին գրաւումներուն առընչութեամբ: Ասիկա հիմք ունենալով, գագաթնաժողովի ընթացքին Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեան կրկին ուժեղօրէն կը քննադատէ ՀԱՊԿ-ը, Ազըրպէյճանի յարձակումներուն նկատմամբ անտարբեր մնացած ըլլալու համար.

«Աւարտւում է Հայաստանի նախագահութիւնը ՀԱՊԿ-ում, բաւականին յագեցած ժամանակահատուած էր: Մենք նշեցինք ՀԱՊԿ-ի պայմանագրի ստորագրման 30-ամեակը եւ դաշինքի ստեղծման 20-ամեակը: Չնայած յոբելեաններին՝ մեր տրամադրութիւնը, ցաւօք, բոլորովին էլ յոբելեանական չէ՝ վերջին երկու տարիների ընթացքում ՀԱՊԿ անդամ Հայաստանը առնուազն երեք անգամ յարձակման է ենթարկուել Ադրբէջանի կողմից:

«Հայաստանի անդամակցութիւնը ՀԱՊԿ-ին որեւէ կերպ չզսպեց Ադրբէջանի ագրեսիւ գործողութիւնները, եւ փաստացի մինչեւ հիմա մենք դաշինքից որեւէ արձագանք չենք ստացել Ադրբէջանի ագրեսիայի վերաբերեալ, ինչը մեծ հարուած է հասցնում ՀԱՊԿ-ի իմիջին, եւ ես սա համարում եմ ՀԱՊԿ-ում Հայաստանի նախագահութեան հիմնական ձախողումը»:

Նիստի ընթացքին կ'ընդունուէին 15 որոշումներ, որոնցմէ երկուքը կը ղրկուէին վերանայումի, իսկ այդ երկուքէն մէկը կը վերաբերէր ՀԱՊԿ-ի կողմէ Հայաստանին օժանդակութիւն ցուցաբերելու համատեղ ձեռնարկումներուն:

Քիչ ժամանակ անց, ՀԱՊԿ-ի նեղ կազմով նիստին մէջ Փաշինեան կը յայտնէ՝ որ դաշինքի քաղաքական գնահատականի բացակայութեան պատճառով պատրաստ չէ ստորագրել այդ փաստաթուղթը, ըսելով.

«Այս պայմաններում իրավիճակի քաղաքական յստակ գնահատականի բացակայութիւնը եւ վերը նշուած որոշումը չկայացնելը կարող է նշանակել ոչ միայն ՀԱՊԿ-ի կողմից դաշնակցային պարտաւորութիւններից հրաժարում, այլ նաեւ Ադրբէջանի կողմից մեկնաբանուել որպէս ՀԱՊԿ-ի կողմից կանաչ լոյս Հայաստանի դէմ յետագայ ագրեսիայի համար»:

Փաստաթուղթի բովանդակութեան մանրամասնութիւնները եւ վարչապետի մերժած կէտերը կը մնան անյայտ:

Եւ ահաւասիկ հայ մամուլը՝ համակիր ու ընդդիմադիր թեւերով: Առաջինը ուրախ է՝ որ Հայաստան «յաղթանակ» տարաւ Ռուսաստանի դէմ եւ անվախօրէն պարտադրեց իր մերժողական կամքը: Երկրորդը ուրախ է՝ որ Հայաստան ստացաւ Ռուսաստանի թշնամութիւնը, հետեւաբար Ռուսաստանը պիտի վտարէ Փաշինեանը եւ ընդդիմադիրները պիտի վերագտնեն իրենց կորուսեալ իշխանութիւնը: Այս երկու ծայրայեղութիւնները տիրապետող էին, թէեւ, բնականաբար, եղան ոչ-աղմկալից լուրջ մեկնաբանութիւններ:

Այս բոլորը՝ հակառակ մեր անգիտու- ↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆԻ ՀԱՐՑԱԶՐՈՅՑԻ ԿԱՐԵՒՈՐ ՀԱՏՈՒԱԾՆԵՐԸ

Նիկոլ Փաշինեանի Նոյեմբերի 11-ի Հանրային Հեռուստաընկերութեանը հարցազրոյցի կարեւոր հատուածները.

Խաղաղութեան պայմանագիրը պէտք է միջազգային երաշխաւոր կամ երաշխաւորի ինստիտուտ ունենայ:

Ադրբէջանի գործողութիւններից արցախահայերի հանդէպ նոր ցեղասպանութեան նախապատրաստութեան տպաւորութիւն է գալիս:

2018 թուականից Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան կարգաւորմանն ուղղուած բանակցային գործընթացում իմ կողմից արտայայտած որեւէ նախադասութիւն չկայ, որից Լեռնային Ղարաբաղի իշխանութիւնը տեղեակ չէ:

Մենք ցանկացած պահի կարող ենք բացել ճանապարհը եւ ապահովել Ադրբէջան-Նախիջեւան կապը՝ երկուստեք օգտագործելով այն: Դրանք պէտք է գործեն Հայաստանի օրէնսդրութեամբ:

Ադրբէջանի նախագահն ինքն է հրաժարւում նոր կոմունիկացիաների կառուցման առաջարկից:

Խաղաղութեան պայմանագրի ուժի մէջ մտնելուց առաջ պէտք է դելիմիտացիայի գործընթացն աւարտուած լինի:

Եթէ Լեռնային Ղարաբաղի հարցը ըստ Ալիեւի լուծուած է, ինչո՞ւ են ադրբէջանական զօրքերը կրակում Լեռնային Ղարաբաղի վրայ:

Լեռնային Ղարաբաղի ներկայացուցիչները պէտք է լինեն բանակցող կողմ: Սա ԼՂ մեր հայրենակիցների իրաւունքները պաշտպանելու լաւագոյն ձեւն է:

Էրդողանի հետ զրոյցը գնահատում եմ դրական, քանի որ Թուրքիայի նախագահի եւ իմ ասածները, խօսոյթները անհամատեղելի չէին:

Եթէ փոխադարձաբար ընդունում ենք 1991-ի սահմանը, դրանով ֆիքսւում է, որ Ադրբէջանը օկուպացրել է մեր տարածքները:

Անընդունելի ենք համարում Բելառուսի նախագահի յայտարարութիւնները: Նիկոլ Փաշինեանը անդրադարձել է Լուկաշենկոյի յայտարարութեանը, բայց յետոյ որոշուել է՝ այն չհրապարակել, որպէսզի այդ հրապարակումը պրոբլէմի մասշտաբը չփոխէր:

Սեպտեմբերին աշխատատեղերի նոր բացարձակ ռեկորդ ենք սահմանել Հայաստանում: Նախորդ տարուայ Սեպտեմբերի համեմատ 16 տոկոս աշխատավարձի աճ է տեղի ունեցել:

Իշխանութեան եւ եկեղեցու միջեւ պառակտման մասին խօսելը ճիշտ չէ, որովհետեւ իշխանութիւնն ու եկեղեցին տարբեր, իրարից անջատ մարմիններ են: Այս ամէնի արդիւնքում, կարող է, ի վերջոյ, հնարաւորութիւն ստեղծուել, որ եկեղեցին զբաղուի իր բուն գործառոյթներով եւ աւելի համապարփակ անդրադառնայ հոգեւոր օրակարգին:

## ԵՐԲ ՀԱՅԱՍՏԱՆ-ԹՈՒՐՔԻԱ ԳՈՐԾԸՆԹԱՑՈՒՄ ՉԿԱՅ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱՄՔ, ԱՌԱՋ Է ՔԱՇՒՈՒՄ ՍՓԻՒՌՔԻ ԳՈՐԾՕՆԸ

Հայաստան-Թուրքիա յարաբերութիւնների կարգաւորման գործընթացում Սփիւռքը գործօն չէ: *Առաջին լրատուականի* հետ զրոյցում նշեց Ստամբուլի *Ժամանակ* օրաթերթի գլխաւոր խմբագիր Արա Գոչունեանը:

Նրա խօսքով՝ Թուրքիայի հետ գործընթացում Հայաստանը որեւէ ձեւով Սփիւռքին զսպելու կարիք չունի, առաջնորդւում է սեփական շահերով. «Սփիւռքի ներուժը ճակատագրական պահերին Հայաստանի համար որեւէ օգուտ չունի: Երբ Անկարա-Երեւան բանակցային երկխօսութեան մէջ առաջ է քաշւում Սփիւռքի գործօնը, նշանակում է կայ քաղաքական չկամութիւն»:

ԳԱՀԻՐԷ

# ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻ ՄՇԱԿՈՅԹԻ ԵՐԵԿՈՅԹԸ
## Ինքնախօսակցական մտորումներ, ակնկալիքներու սահմաններ

Հ. ԱԻԱԳԵԱՆ

Կէսդարեայ սովորութիւն մը կայ Եգիպտոսի մէջ քննախօսել սեփական ձեռնարկի մասին՝ պահուըտելով «Թղթակից», «Ներկայ մը» կամ «Պաշտօնական հաղորդագրութիւն» ստորագրութիւններուն ետեւ: Գիրքեր ալ սկսան գրուիլ ուրիշներու անունով:

Բայց կա՞յ արդեօք տարբերութիւն այսպիսի վարմունքի եւ միութենական-կուսակցական մամուլի անուն-ազգանունով ստորագրեալ քննախօսականներուն միջեւ, երբ միութեան ներկայացուցիչն է որ կը քննախօսէ իր սեփական միութեան արտադրութիւնը:

Մէկ լումայի երկու երեսները:

Այս ծուղակը կը կրկնուի ու պիտի կրկնուի անընդհատ, այնքան ժամանակ որ միութիւնները մերժեն ինքնաքննադատութիւնը եւ այնքան ժամանակ որ քննախօսականները չճեղքեն լաւ-վատ (միշտ՝ գերազանցօրէն բացառիկ) վճռականութեան սահմանները՝ արտայայտելու համար միտքեր ու գաղափարներ: Ծուղակ մը՝ որուն մէջ հանդիստ են խմբագիրը, գրողը եւ ընթերցողը միաժամանակ:


Երեկոյթի ընդհանուր տեսարանը:

Հելիոպոլսոյ Պըլըքտանեան Սրահի Նոյեմբեր 19-ի ձեռնարկը՝ *Մշակոյթի երեկոյթ* վերտառութեամբ, կազմակերպութիւնն էր Գահիրէի Հայկական Ընթերցասրահին: Ան տեղի կ՚ունենար Ընթերցասրահի 25-ամեայ ատենապետ Մարտիրոս Պալաեանի կազմակերպչական ջանքերուն շնորհիւ: Կը մասնակցէի ես ինքս՝ իբրեւ խօսող ու համակարգող: Եւ այդ անձնականութիւնն է զոր պիտի օգտագործեմ՝ քննախօսութեանս հարթակը երրորդ կողմի մը ենթադրեալ անկողմնակալութենէն փոխադրելու դէպի անձնական մտորումներու եւ ակնկալիքներու ոլորտ: Փորձ մը՝ ծուղակէն դուրս գալու:

Երեկոյթին երկու կարեւոր դէմքերն էին՝ բանասիրական գիտութիւններու թեկնածու, բազմավաստակ բանասէր եւ գրող Արծուի Բախչինեան, յատուկ հրաւիրուած Հայաստանէն, եւ ամերիկահայ-ֆրանսահայ մեծահմուտ դերասան, բեմադրիչ, թատերագիր, նկարիչ Էտուին Ժերար Համամճեան:

Երեկոյթը կը գտնուէր հովանաւորութեան տակ Գերշ. Տ. Աշոտ Եպս. Մնացականեանի՝ առաջնորդ Եգիպտահայ Թեմի, որ կը բացակայէր Հայաստան գտնուելուն պատճառով, ներկայ էին՝ Արհ. Գրիգոր Օգոստինոս Եպս. Գուսան՝ առաջնորդ Եգիպտահայ Կաթողիկէ Թեմի, Տիկ. Զառա Բալայեան՝ կողակիցը Հայաստանի դեսպանին Եգիպտոսի մէջ, դեսպանատան ներկայացուցիչներ, պաշտօնական անձինք, եւ աւելի քան 50 հետաքրքրասէր հանդիսատեսներ:

### ՆԻՒԹԸ

Ձեւական առումով, երեկոյթին նիւթերը համախմբուած էին վերջին երկու տարիներու *Ջահակիրի* Յաւելուածներու ընտրանիի մը վրայ, որ կ՚ընդգրկէր նկարչութիւն, թարգմանական գրականութիւն եւ սինեմա:

Երեկոյթին երեք բաժիններն էին.

**1. Նկարչական ցուցահանդէս**

Էտուին Համամճեան կը ցուցադրէր իր 12 գեղանկարները, որոնց մէկ մասը վերարտադրուած էր *Ջահակիրի* 49 եւ 52-րդ Յաւելուած-գիրքերուն մէջ: Երկու գիրքերը՝ հայերէն եւ անգլերէն, նուիրուած են Համամճեանի թատերական գործունէութեան եւ գաղափարներուն, ներկայացնելով նաեւ իր նկարչական ու բանաստեղծական արտադրութիւններէն նմոյշներ:

Էտուին արդէն քանի մը տարի է բնակութիւն հաստատած է Գահիրէ: Ծնած Լոս Անճելոս 74 տարի առաջ, ան թոռն է եգիպտահայ երգչուհի-դերասանուհի Վալանթին Ամիրայեանի եւ մարզական գործիչ


Իր խօսքը կ՚արտասանէ Էտուին Համամճեան:

Ստեփան Ամիրայեանի:

Երեկոյթի ընթացքին ան կ՚արտասանէ իր հակիրճ խօսքը, ուր յուզումով եւ արտասուքով կը նշէ եօթը տարեկանի յիշատակները՝ երբ մօրը հետ քանի մը ամիսով կ՚այցելէր Եգիպտոս: Կը յիշէ Արարատ Ակումբը, Գեղարուեստասիրացի Հայ Տանիքին վրայ Արաքսի Օհանեանի մէկ բեմադրութիւնը, առաջին հանդիպումը մեծհօր Ստեփանի հետ (Վալանթին եւ Ստեփան շատոնց ամուսնալուծուած էին):

**2. *Վահագնի ծնունդը***

Երեկոյթի ընթացքին ներկայացուեցաւ *Ջահակիրի* 51-րդ Յաւելուածը՝ *Վահագնի ծնունդը 50 լեզուներով*, Արծուի Բախչինեանի եւ իմ համահեղինակութեամբ:

Գիրքը ունի երկու հեղինակներ՝ երկու հետապնդումներ:

Իմ պարտականութիւնս բանահաւաքային հետապնդումն էր, ամփոփելով նախապէս հրատարակուած անգլերէն, արաբերէն, գերմաներէն, թրքերէն, իտալերէն, լատիներէն, լատվիերէն, լեհերէն, հունգարերէն, յունարէն, չեխերէն, պարսկերէն, պուլկարերէն, ռումաներէն, ռուսերէն, սերպերէն, սպաներէն, վրացերէն եւ ֆրանսերէն թարգմանութիւններուն ամբողջականութիւնը: Ասոնց Արծուի աւելցուց շուէտերէնն ու փորթուկալերէնը:

Միւս կողմէ, օգտագործելով իր լայնատարած ծանօթութիւնները աշխարհի հայ եւ օտար մտաւորականներուն հետ, Արծուի աշխատութիւնը համալրեց նոր թարգմանութիւններով՝ յատուկ կատարուած այս հատորին համար: Իր անդուլ հետապնդումներուն շնորհիւ աւելցան ալպաներէն, ասորերէն, գնչուերէն, դանիերէն, եբրայերէն, էսթոներէն, թայլանտերէն, իսլանտերէն, լաոսերէն, լիթուաներէն, լինկալերէն, հնդկերէն, հոլանտերէն, ղազախերէն, ճաբոներէն, մակեդոներէն, մոնղոլերէն, նորվեկերէն, ուզպեքերէն, ուքրաիներէն, չինարէն, պասքերէն, պելառուսերէն, պենկալերէն, սլովաքերէն, քմէրերէն, քորէերէն, քրտերէն եւ ֆինլանտերէն թարգմանութիւնները, թարգմանուած լեզուներուն քանակը հասնելով 50-ի: Այստեղ կան լեզուներ՝ որոնք առաջին անգամ կը թարգմանուէին հայերէնէ:

Երեկոյթի ընթացքին Արծուի համառօտակի ներկայացուց իր աշխատանքային փորձառութիւնը այս հատորին առնչութեամբ:

**3. Հայերը եգիպտական սինեմայի մէջ**

*Ջահակիրի* 41-47 Յաւելուածները յատկացուած են


Կը բանախօսէ Արծուի Բախչինեան:

եգիպտական սինեմայի հայ դերասաններուն եւ գործիչներուն:

Միաժամանակ, Արծուի Բախչինեան հեղինակն է կոթողային աշխատութեան մը՝ *Հայերը համաշխարհային կինոյում* (Երեւան, 2004), ուր առաջին անգամ գիտական շրջանառութեան մէջ կը դրուին եգիպտական սինեմայի հայ անունները:

Հետաքրքրութիւնները կը համընկնին:

Արծուի կը հրաւիրուի ելոյթ ունենալու բանախօսութեամբ, այս անգամ նիւթը հիմնելով ոչ թէ եգիպտական սինեմայի հայերուն վրայ, այլ հայկական սինեմայի Եգիպտոսի մէջ՝ *Հայկական շարժանկարի փորձեր Եգիպտոսում*:

Երկու մասերէ բաղկացած խօսքին մէջ նախ կը վերլուծէ Վահան Զարդարեանի *Հայկական սինէմա* գրքոյկի բովանդակութիւնը՝ պայմանականօրէն հայ սինեմայի ծննդեան թուականը ընդունելով 1912-ը, իսկ վայրը՝ Եգիպտոս:

Երկրորդ մասը յատկացուցած էր եգիպտահայ սինեմայի սթուտիոներուն:

(Բանախօսութիւնը ամբողջութեամբ պիտի հրատարակուի *Ջահակիրի* յաջորդ թիւերով):

Երեկոյթը կ՚աւարտի յատուկ պատրաստուած ֆիլմով, ուր մոնթաժուած է եգիպտական պահպանուած ֆիլմերու մէջ երեւցած հայ դերասաններուն ամբողջականութիւնը, ցուցադրելով իւրաքանչիւրէն մէկ կամ երկու նմոյշ: Սինեմայի 25 հայ դերասաններ կարելի եղաւ հաւաքել 22 վայրկեան տեւող ցուցադրութեան մէջ: Անոնց թիւը աւելի է, բայց ոչ բոլորին ֆիլմերը պահպանուած են: Օրինակ, չէ պահպանուած եգիպտական խաղարկային առաջին ֆիլմը՝ *Լայլա*, ուր պատկերահանուած է Վարդանոյշ Պարթեւեան:

### ԻՄԱՍՏԱՅԻՆ ՈՐՈՆՈՒՄՆԵՐ

**1. Մշակութային համակեցութիւն**

Ութ տարի առաջ էր՝ 2014 Յունիս 8-ին, երբ նոյնպէս Պըլըքտանեան Սրահի մէջ Հայկական Ընթերցասրահը կը կազմակերպէր Արուեստի Երեկոյթ, նպատակ ունենալով համատեղել երգ, նուագ, կրաֆիքի պատկերահանուած ցուցադրութիւն, ցուցահանդէսներ նկարչութեան, դրոշմաթուղթի եւ գորգի: Իմաստն էր արուեստը դիտել իր բաղադրիչներու համակեցութեան եւ փոխներթափանցումի ակնոցով:

Նման բան մըն էր Նոյեմբեր 19-ի կատարուածը, բայց շատ աւելի սահմանափակ բաղադրիչներով՝ նկարչութիւն, սինեմա եւ գրական թարգմանութիւն:

Քանզի ԺԹ. դարը՝ փրոֆեսիոնալիզմի անունին տակ, ամէն բան բաժնեց իրարմէ: Նոյնիսկ մէկ մասնագիտութեան մը ճիւղերը բաժնուեցան իրարմէ: Երեկոյթի ընթացքին երեք բնագաւառներու մէկտեղումը ո՛չ նպատակ ունէր փրոֆեսիոնալիզմի ճեղքըւածքները ջնջել, ոչ ալ կը հետապնդէր իր կարողութենէն վեր հարցեր լուծել, այլ կը փափաքէր գգալ հաճոյքը տարբեր ոլորտներու միաժամանակեայ

↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԱԽԱԳԱՀՆ ՈՒ ՅԱԿՈԲ ՅԱԿՈԲԵԱՆԻ ԸՆՏԱՆԻՔԻ ԱՆԴԱՄՆԵՐԸ ՔՆՆԱՐԿԵԼ ԵՆ ԳԵՂԱՆԿԱՐՉԻ ՄՇՏԱԿԱՆ ՑՈՒՑԱԴՐՈՒԹԵԱՆ ՑՈՒՑԱՍՐԱՀ-ԹԱՆԳԱՐԱՆ ՈՒՆԵՆԱԼՈՒ ՀԱՐՑԸ

Հայաստանի նախագահ Վահագն Խաչատուրեանն այցելել է գեղանկարիչ Յակոբ Յակոբեանի ընտանիքին, զրուցել նրա այրու՝ Մարի Յակոբեանի եւ դստեր՝ Նորա Յակոբեանի հետ: Հանդիպմանը ներկայ է եղել նաեւ Երեւանի քաղաքապետ Հրաչեայ Սարգսեանը:

Ինչպէս *Արմենպրէս*ին յայտնում են նախագահի աշխատակազմից, թէյի սեղանի շուրջ անմիջական մթնոլորտում գեղանկարչի ընտանիքի անդամները նախագահին են ներկայացրել յաջորդ տարի Յակոբ Յակոբեանի հարիւրամեակին նուիրուած միջոցառումների ծրագրերը:

Հանրապետութեան նախագահը նշել է, որ մեծանուն նկարչի հարիւրամեակին նուիրուած մշակութային միջոցառումները պէտք է իրականացուեն ամենաբարձր պետական հովանաւորութեամբ, Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի Նախարարութեան անմիջական աջակցութեամբ:

Մարի եւ Նորա Յակոբեանները նախագահի հետ քննարկել են Յակոբ Յակոբեանի գործերի մշտական ցուցադրութեան ցուցասրահ-թանգարան ունենալու հարցը, որը կարեւոր նշանակութիւն կ'ունենայ գեղանկարչի ստեղծագործութիւնների պահպանութեան եւ հանրային հասանելիութեան տեսանկիւնից:

Նախագահ Խաչատուրեանն իր խօսքում առանձնայատուկ կարեւորել է նման թանգարանի ստեղծման անհրաժեշտութիւնը: Երեւանի քաղաքապետ Հրաչեայ Սարգսեանն էլ իր հերթին նշել է, որ քննարկւում են մի շարք տարբերակներ, եւ նկարչի ընտանիքի անմիջական մասնակցութեամբ որոշում կը կայացուի:

Հանրապետութեան նախագահը պատրաստակամութիւն է յայտնել հնարաւորինս աջակցել եւ իր ուշադրութեան կենտրոնում պահել նկարչի հարիւրամեակին եւ յիշատակին նուիրուած ծրագրերի ընթացքը:

# ԳԵՂԱՄ ՄԱՆՈՒԿԵԱՆԻՆ ՄԵՂԱԴՐԱՆՔ Կ'ԱՌԱՋԱԴՐՈՒԻ՞. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. «*Ժողովուրդ* օրաթերթի տեղեկութիւնների համաձայն՝ Հայաստանի Ազգային Անվտանգութեան Ծառայութիւնը մեղադրանք է առաջադրելու Ազգային Ժողովի Հայաստան խմբակցութեան պատգամաւոր Գեղամ Մանուկեանին: Առիթը քուրդ ազատամարտիկների՝ Թուրքիայում յայտնուելու դէպքով նրա արած յայտարարութիւններն են:

Ըստ ամենայնի, ԱԱԾ-ն Գեղամ Մանուկեանին մեղադրանք կ'առաջադրի Հայաստանի Քրէական Օրէնսգրքի 329-ի յօդուածի յատկանիշներով (Ատելութիւն, խտրականութիւն, անհանդուրժողականութիւն կամ թշնամանք հրահրելուն կամ քարոզելուն ուղղուած հրապարակային խօսքը, ինչպէս նաեւ այդ նպատակով նիւթեր կամ առարկաներ տարածելը, անձի կամ անձանց խմբի նկատմամբ ռասայական, ազգային, էթնիկ կամ սոցիալական ծագումով, կրօնով, քաղաքական կամ այլ հայեացքներով կամ անձնական կամ սոցիալական բնոյթի այլ հանգամանքներով պայմանաւորուած ատելութիւն, խտրականութիւն, անհանդուրժողականութիւն կամ թշնամանք հրահրելը կամ քարոզելը...): Այս յօդուածով նախատեսւում է պատիժ՝ ազատազրկմամբ՝ առաւելագոյնը երկու տարի ժամկէտով:

Յիշեցնենք, որ Գեղամ Մանուկեանը ԱԱԾ-ում հարցաքննուել էր քուրդ ազատամարտիկների՝ Թուրքիայում յայտնուելու դէպքով տարուող քրէական գործով, ինչը հէնց Մանուկեանը հաստատել էր մեզ հետ զրոյցում: *Ժողովուրդ* օրաթերթը աւելի վաղ գրել էր, որ ԱԱԾ-ում քրդերի՝ Թուրքիայում յայտնուելու առեղծուածային դէպքով քրէական գործ է յարուցուել, եւ բաւականին խիստ է դրուել հարցը՝ պարզել, թէ ինչպէս են երկու քուրդ ազատամարտիկները յայտնուել Թուրքիայի ուժային կառոյցների մօտ: Յիշեցնենք նաեւ, որ երկու քրդերը Հայաստանում 2021 թուականի Օգոստոսի 16-ին ապօրինի հատել էին Արաքս գետով անցնող՝ Հայաստանի պահպանուող պետական սահմանը:

Այդ արարքի համար Հայաստանի վերաքննիչ դատարանը 5 տարի ժամկէտով ազատազրկման էր դատապարտել նրանց, որը պայմանականօրէն չէր կիրառուել՝ սահմանելով փորձաշրջան՝ 3 տարի ժամկէտով: Քուրդ ազատամարտիկներն ազատ էին արձակուել հէնց դատական նիստերի դահլիճից: Նրանք, ըստ էութեան, ազատութեան մէջ էին 7 ամիս, որից յետոյ անհասկանալի հանգամանքներում յայտնուել են Թուրքիայում»:

# ԼԷՊԼԷՊԱ ԵՒ ՏԵՍԻԼ ՄԽՏԻԿԵԱՆ՝ ԳԱՀԻՐԷԻ 44-ՐԴ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՖԻԼՄԻ ՓԱՌԱՏՕՆԻՆ

Հ. Ա.

Նոյեմբեր 13-22-ին տեղի ունեցաւ Գահիրէի 44-րդ Միջազգային Ֆիլմի Փառատօնը, որ կը բովանդակէր երկարամեթրաժ ու կարճամեթրաժ ֆիլմերու մրցոյթներ, արտամրցութային ցուցադրութիւններ, բաց զրոյցներ: Փառատօնի նախագահն էր եգիպտական սինեմայի աստղ դերասան Հուսէյն Ֆահմի:

Երկու հայկական կանացի անուններ կարելի էր հանդիպիլ այնտեղ: Մէկը՝ Լէպլէպա, որ բարձր աղմուկով պաշտօնապէս կը պարգեւատրուէր իր 80-ամեակին առիթով, միւսը՝ Տեսիլ Մխտիկեան, որ անաղմուկ կերպով մրցոյթին կը ներկայացնէր իր բեմադրած առաջին կարճամեթրաժ ֆիլմը:

**ԼԷՊԼԷՊԱ**

**1. Կեանքի Նուաճումներ Մրցանակ**

Դերասանուհի Լէպլէպա, բուն անունով՝ Նունիա-Նինոչքա Մանուկ Քիւփէլեան, արդէն 80 տարեկան է (ծն. 14 Նոյեմբեր 1942, Գահիրէ):

Փառատօնը զինք կը պարգեւատրէ Կեանքի Նուաճումներ Մրցանակով (Lifetime Achievement Award): Պարգեւատրութիւնը տեղի կ'ունենայ բացումի հանդէսին՝ Նոյեմբեր 13, Գահիրէի Օփերայի Մեծ Սրահը: Հուսէյն Ֆահմի անձամբ մրցանակը կը յանձնէ Լէպլէպային, ներկաներու յոտընկայս ծափահարութիւններուն ուղեկցութեամբ:

(Յիշենք, որ անցեալ տարի նոյն պարգեւը տրուած էր դերասանուհի Նելլիի (Նելլի Գալֆայեան)՝ Լէպլէպայի զարմուհիին):

Այս առիթով, Փառատօնի պաշտօնական կայքը արաբերէն եւ անգլերէն էջ մը կը յատկացնէ դերասանուհիին, ներկայացնելով անոր գործունէութիւնն ու գեղարուեստական նուաճումները (արաբերէն՝ https://www.ciff.org.eg/ar/, անգլերէն՝ https://www.ciff.org.eg/ciff-honors-lebleba-with-the-lifetime-achievement-award/): Այս էջը՝ նախորդ փառատօներու կայքերուն նման, հաւանաբար շուտով ջնջուի ու դառնայ անմատչելի: Ստորեւ կու տանք անոր ամբողջական թարգմանութիւնը (փորձելով համադրել արաբերէն եւ անգլերէն բնագիրները, որոնց միջեւ կան բազմաթիւ արտայայտչական, թէեւ ոչ խորքային, տարբերութիւններ).

«Գահիրէի 44-րդ Միջազգային Ֆիլմի Փառատօնը (13-22 Նոյեմբեր) հեղինակաւոր Կեանքի Նուաճումներ Մրցանակով պիտի մեծարէ առասպելային աստղ Լէպլէպան:

«Մրցանակը կու գայ մեծարելու Լէպլէպայի ստեղծագործական երկարատեւ ուղին՝ որ սկիզբ առաւ մանկութեան շրջանէն եւ շարունակուեցաւ երկար տարիներ, ներկայացնելով բազմաթիւ անմոռանալի գործեր սինեմայի, թատրոնի, հեռատեսիլի եւ շօուի բնագաւառներուն մէջ:

«Գահիրէի Միջազգային Ֆիլմի Փառատօնի նախագահ Հուսէյն Ֆահմի կը մեկնաբանէ. «Մենք հպարտ ենք Կեանքի Նուաճումներ Մրցանակը պարգեւելու հռչակաւոր աստղ Լէպլէպային, որ նուիրումով աջակցեցաւ եգիպտական սինեմային եւ հեռատեսիլի սերիալին, իր ողջ ասպարէզի ընթացքին դառնալով եգիպտացի հռչակաւոր անձերուն ամենէն ճանաչելիներէն մէկը: Մասնագիտական ուղիի սկզբնական տարիներէն սկսեալ, Լէպլէպա իր բազմակողմանի գործունէութեան ընդմէջէն կեանքը նուիրեց ֆիլմարտադրական արդիւնաբերութեան: Իր հետ խաղացած ըլլալով զանազան ֆիլմերու մէջ, ես անձնապէս պատիւ կը զգամ մաս կազմած ըլլալու իր երկարատեւ ասպարէզին»:

«Գահիրէի Միջազգային Ֆիլմի Փառատօնի տնօրէն Ամիր Ռամսէս կ'աւելցնէ. «Լէպլէպա թանկագին արժէք մըն է ֆիլմի ռեւէ բեմադրիչի համար, քանի որ իր ինքնաբերականութիւնը, քարիզմը, եւ կատակերգութենէն դէպի սրտա-



13 Նոյեմբեր, Գահիրէի Օփերայի մեծ սրահ, Հուսէյն Ֆահմի Փառատօնին մրցանակը կը յանձնէ Լէպլէպային:

ճմլիկ ողբերգութիւնը անցնելու անզուգական կարողութիւնը, խորութիւն տուած են ֆիլմերու բոլոր դերերուն: Տարիներու ընթացքին այդ ֆիլմերը ուժեղօրէն գրաւեցին արաբական աշխարհի զանգուածային դիտորդները»:

«Լէպլէպա կ'արտայայտէ իր հրճուանքը պարգեւը ստանալու առնչութեամբ. «Թէեւ նախապէս մեծարուած եմ տարբեր տեղական եւ միջազգային ֆիլմի փառատօներէ, բայց Գահիրէի Փառատօնին պարգեւը առանձնայատուկ նշանակութիւն ունի ինձ համար: Այս պարգեւը կը հանդիսանայ իւրաքանչիւր եգիպտացի դերասանի երազը, եւ ես հրճուած եմ մեծարուելու Փառատօնի բեմին վրայ»:

«Ֆիլմի ականաւոր դերասանուհի, երգչուհի եւ շօու արուեստագիտուհի մըն է Լէպլէպա: Իր ընդարձակ երկացանկը կը պարունակէ 88 սինեմայի ֆիլմեր եւ 4 հեռատեսիլի սերիալներ: Ան յայտնի է նաեւ իր երգերով եւ մոնոլոկներով, ուր նմանակած է յայտնի արուեստագէտներ եւ դէմքեր: Այս երգերուն թիւը հասած է 268-ի, որոնցմէ 30-ը մանուկներու համար:

«Լէպլէպա արժանացած է տարբեր փառատօներու եւ ֆիլմային իրադարձութիւններու Լաւագոյն Դերասանուհի Մրցանակին:

«Իբրեւ ծաղկող տաղանդ հինգ տարեկանին սկսած է իր ասպարէզը, 1950-ականներուն գլխաւոր դերեր ստանձնելով զանազան ֆիլմերու մէջ, ինչպէս՝ *Հապէպթի Սուսու* (Սուսու սիրուհիս) (1951)՝ բեմադրիչ Նիյազի Մուսթաֆայի, *Ալ-Պայթ ալ-սա'իտ* (Ուրախ տունը) (1952)՝ Հուսէյն Սետքիի, *Եա գալեմնի* (Անգութ ես դուն) (1954)՝ Իպրահիմ 'Էմարայի, եւ *Արպա' պանաթ ուա տապէթ* (Չորս աղջիկներ եւ սպայ մը) (1954)՝ պատմութիւն, բեմադրութիւն եւ խաղարկութիւն Անուար Ուակտիի: Վերջինին մէջ Լէպլէպա ոչ միայն հանդէս կու գար Անուար Ուակտիի եւ Նա'իմա 'Աքէֆի նման աչքառու աստղերու հետ, այլ իր անունը կը տեղադրուէր պաշտօնական ազդի վրայ իբրեւ գլխաւոր հերոսներէն մէկը: Նոյնպէս, 1955-ին Լէպլէպա կը մասնակցի *Ալ-Հապիպ ալ-մաkհուլ* (Անծանօթ սիրահարը) ֆիլմին, բեմադրիչ՝ Հասան Ալ-Սայֆի, որուն հետ կը համագործակցի *Ալ-Նաղամ ալ-հազին* (Տխուր մեղեդին) (1960) եւ *Քատի ալ-ղարամ* (Սիրոյ դատաւորը) (1962) ֆիլմերուն:

«1960-70-ականներուն, հանդիսատեսը ականատես կ'ըլլայ Լէպլէպայի պատանեկան եւ երիտասարդական տարիներու ծաղկումին: Ան կը մասնակցի տարբեր ֆիլմերու, ինչպէս՝ *Նեմար ալ-թալամզա* (Աշակերտներուն թուանշանները) (1964)՝ 'Իսա Քարամայի, *Ակազա պըլ-'աֆիա* (Բռնի արձակուրդ) (1966)՝ Նակտի Հաֆէզի, եւ *Ախըր ալ-'անքուտ* (Վերջին ողկոյզը) (1966)՝ Զուհայր Պաքիրի: Կրկին կը համագործակցի բեմադրիչ Հասան Ալ-Սայֆի հետ *Շանթաթ Համզայի* (Համզային պայուսակը) (1967) եւ *Ալ-Միլիոնէր ալ-մուզայաֆի* (Կեղծ միլիոնատէրը) (1968) մէջ: Ապա կը մասնակցի *Պորկ ալ-'ազրա'*ին (Կոյս աստղակերպը) (1970)՝ բեմադրիչ Մահմուտ Զուլ-Ֆաքքարի, *Ռեհլաթ*

↳ 4





## 1 ՌՈՒՍԱԿԱՆ ՏՐԱՄԱԴՐՈՒԹԻՒՆՆԵՐ

թեան փաստաթուղթին եւ մերժուած կէտերուն մասին: Իսկ խնդիրը ռուսամէտութեան եւ Հակառուսականութեան մէջ շրջանակելը Հերքումն է դիւանագիտական այլազանութեան կարելիութեան:

Բացի այդ, Ռուսաստանը ամենուր է Հայաստանի մէջ, անկէ Հեռանալը աւելորդ, այլեւ անկարելի արկածախնդրութիւն մըն է: Խնդիրը Ռուսաստանի նկատմամբ ինքնադաւառայնացումի սկզբունքի մերժումն է:

**Փութին Հայաստանի մէջ**

Նոյեմբեր 23-ին Հայաստան կը ժամանէ Վլատիմիր Փութին՝ մասնակցելու ՀԱՊԿ գագաթնաժողովին: Առաջին անգամ է որ Հայաստան կու գար 2020-ի պատերազմէն ետք:

Գագաթնաժողովէն եւ Փաշինեանի կողմէ փաստաթուղթի ստորագրութեան մերժումէն ետք տեղի կ՚ունենայ Փաշինեան-Փութին առանձնազրոյց, որուն կը յաջորդեն պաշտօնական յայտարարութիւններ:

Փութին Հայաստան կը ժամանէ՝ Ռուսաստանի Հանդէպ ժողովրդեան յուսախաբութեան գագաթնակէտային շրջանին: Յուսախաբութիւն, այլ ոչ ատելութիւն:

Գագաթնաժողովին օրը՝ Նոյեմբեր 23-ին, Հաւաքացոյց է Ազատութեան Հրապարակին վրայ: Հարիւրաւոր մարդիկ եկած էին ցոյց տալու իրենց անհամաձայնութիւնը Ռուսաստանի ազդեցութեան Հայաստանի վրայ եւ ՀԱՊԿ անդամակցութեան: Ցոյցին կը մասնակցէին նաեւ ռուս-ուքրաինական պատերազմէն ի վեր իրենց Հայրենիքը թողած ռուսեր եւ ուքրաինացիներ: Պաստառներ՝ «Ռուսաստանը աՀաբեկչական պետութիւն է», «Փութինը մարդասպան է», «ՀԱՊԿ կը սպաննէ մեր զինուորները»:

Ռուսաստանէն Հայաստան ապաստանած 27-ամեայ Տմիթրին կ՚ըսէ. «Մենք եկած ենք, որովՀետեւ նոյնպէս Համաձայն չենք Փութինի քաղաքականութեան եւ Ուքրաինայի պատերազմին: Հաճելի է տեսնել, որ այստեղ կրնաս ազատ արտայայտել կարծիքդ: Ռուսաստանի մէջ Հնարաւոր չէ այս տեսակ ցոյցեր ընել: Ի տարբերութիւն Ռուսաստանի՝ այստեղ ոստիկանները ցոյց կու տան իրենց դէմքերը եւ կը պաշտպանեն Հաւաքը: Իմ Հայրենիքիս մէջ անոնք սաղաւարտներ պիտի կրէին ու չթողէին մեզի ազատօրէն արտայայտուիլ»:

**«Մենք ՀԱՊԿ-ի մէջ աւելի շատ ընկերներ ունինք քան Հայաստանը»**

Ազրպէյճանի ցկեանս նախագահ Իլհամ Ալիեւի խօսքն է սաիկա, արտասանուած ՀԱՊԿ գագաթնաժողովէն երկու օր առաջ: Յիշենք՝ որ Ազրպէյճան ՀԱՊԿ-ի անդամ չէ:

Անշուշտ, Ալիեւ այս խօսքը արտասանած է շատոնց արդէն սովորական դարձած ծայրայեղօրէն ՀակաՀայկական տափակ արտայայտութիւններու նշանաբանին տակ: Անկախ նշանաբանէն, այս խօսքը ճիշդ չէ՞ արդեօք:

Խոր ու լայն ընկերութենական (corporative) շաՀեր կը կապէ Ազրպէյճանը ՀԱՊԿ երկիրներուն Հետ, ներառեալ Ռուսաստանի: Ընկերութիւններ՝ որոնք կը ստեղծեն քաղաքականութիւն, եւ որոնց մէկ մասը կը պատկանի Ալիեւ ընտանիքին:

Հայաստան ի՞նչ ունի տալիք ՀԱՊԿ երկիրներու գլուխներուն:

Ա.

## 2 ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻ ՄՇԱԿՈՅԹԻ ԵՐԵԿՈՅԹԸ

գոյութեան: Հաճոյք՝ որ յաճախ կը կորսուի փրոֆեսիոնալ սրածայր կեթթոյացումներուն մէջ:

**2. Սփիւռք**

Ներկայացուած նիւթերուն կարեւոր մասը կը ներկայացնէր Սփիւռքի մշակոյթը: Սփիւռքահայ արուեստագէտ Էտուին Համամճեան, Հայերը եգիպտական սինեմայի մէջ, *ՎաՀագնի ծնունդի* թարգմանութիւնները՝ որոնց մէկ մասը իրականացուած է Սփիւռքի մէջ: Նոյնիսկ Հայաստանէն Հրաւիրուած Արծուի Բախչինեանին կարելի է անուանել «սփիւռքահայ», քանզի իր գրութիւններուն ջախջախիչ մեծամասնութիւնը նուիրուած է Սփիւռքի:

Խօսքիս մէջ ուզեցի շեշտադրել Սփիւռքի Հարցը.

«Սփիւռք: Բազմաչարչար այդ եզրոյթը՝ որ երբեմն կը շաՀագործուի, երբեմն կը ճնշուի ու կը թերագնաՀատուի, երբեմն կը գերագնաՀատուի:

«Սփիւռք՝ որ երբեմն Հայագիր մտածողութեան մէջ կը գերառարկայականացուի այնքան՝ որ կը զրկուի իմաստէ, մեղկօրէն կը բանաստեղծուի այնքան՝ որ այլեւս անկարելի կը դառնայ մեկնաբանութիւնը:

«Սփիւռք, որ երբեմն անգլիագիր կամ անգլիաբան մտածողութեան մէջ կը ծանրաբեռնուի արդիապաշտ եւ յետ-արդիապաշտ պատրաստ տեսութիւններով, ուր աւելի կարեւոր կը դառնայ սփիւռքագէտի տարօրինակ կոչումի ինքնապիտակաւորումը օգտուող անձերուն կողմէ, քան Սփիւռքի ներքին մեքանիզմներու բացատրութեան ձգտումը:

«Սփիւռք՝ որ յաճախ կը դիտուի արտաքինի Հետ ունեցած իր շողարձակումներու ծածկոյթին տակ՝ ենթակայ մը արտաքինին, ըլլայ ան տեղական երկիրին կամ Հայաստանին, մոռացութեան տալով Սփիւռքը իբրեւ ինքն իր մէջ գոյութիւն ունեցող ու զարգացող միաւոր, իբրեւ ինքնուրոյն միաւոր՝ որ աշխարՀի բոլոր միաւորներուն նման, ունի Հաղորդակցութիւններ եւ ներթափանցումներ շրջապատի Հետ, այլեւ ենթակայականօրէն կապուած է Հայութեան եւ Հայ զգացողներուն Հետ, չխօսելու Համար անոր կարեւոր բայց չմշակուած փոխյարաբերութիւնները Հայաստանի Հետ:

«Ի՞նչ գիտենք Սփիւռքի մշակոյթի եւ պատմութեան մասին: Ի՞նչ գիտենք եգիպտաՀայութեան Հին ու նոր պատմութեան մասին»:

Ըսել կ՚ուզէի՝ շատ քիչ բան գիտենք:

**ԱԿՆԿԱԼԻՔՆԵՐ ԵՒ ՍԱՀՄԱՆՆԵՐ**

Ընդունուած երեւոյթ է՝ որ մարդ կը Հակի դէպի այն կողմը, զոր արդէն գիտէ: Յարմարաւէտ-Հանգստաւէտութեան գօտին յաճախ եղած է տիրապետող մարդուս Համար: Բայց յարմարաւէտութեամբ մշակոյթ ու կեանք յառաջ չեն ընթանար, չեն զարգանար: Սփիւռքեան իշխանական յաւերժ ու ծրագրուած յարմարաւէտութեան, որմէ՝ զարգացումի եւ մտաւոր արդիականացումի դժուարութեան մասին, ուրիշ անգամ:

Նկարչութիւն, սինեմա եւ գրականութիւն առաջնային առարկաներն էին ներկայ երեկոյթին: Առարկայի գիտութիւնը, գիտակցութիւնը եւ իրազեկութիւնը շատ կարեւոր նախադրեալներ են անցնելու աւելի խոր շերտերու: ԸնդՀակառակը, անոնց անգիտացումը կ՚առաջնորդէ դէպի մեկնաբանական վերացականութիւն, ինչպէս երբեմն տեղի կ՚ունենայ անգլիագիր «սփիւռքագիտութեան» մէջ:

Բայց առարկաներուն ետեւը կը գտնուին իմաստներ՝ որոնք այլազան են ու անվերջանալի: Տուեալ երեկոյթին Համար, յիշեալ առարկաներուն ենթիմաստները եւ ենթակայական-տիալեքթիքական ընտրեալ իմաստները կը գտնուէին մշակոյթներու Համակեցային Հասկացողութեան եւ Սփիւռքի ըմբռնումին Հետ:

Առարկան, ներկայ աշխարՀի գերառարկայականացուած տեսքին մէջ, կը ներկայացնէ Հանգստաւէտութեան ամենայարմար տարրը: Գերառարկայի վերադարձումը դէպի իր բնական ոլորտը՝ առարկան, եւ անկէ անցումը դէպի ենթակայականութիւն, կը ներկայացնեն ներկայ դարաշրջանի անՀանգստաւէտ տարրերը:

2014-ի երեկոյթի ենթիմաստն էր արուեստներու Համակեցութիւնը: Ութ տարի ետք, կրնամ ըսել, որ այդ երեկոյթը մնաց իր առարկայականացուած անջատումներու Հասկացողութեան մէջ: Շատ բան ներկայացուեցաւ այդ ժամանակ, առատ էր նիւթը: Նիւթը գովաբանուեցաւ: Իսկ այդ «շատ բան»-երը ինչո՞վ էին կապուած իրարու...:

2022-ի երեկոյթին, նոյնին կ՚աւելնար նաեւ Սփիւռքի Հասկացողութիւնը: Մատչելի եղա՞ն այս ենթիմաստները...:

## 3 ԼԷՊԼԷՊԱ ԵՒ ՏԵՍԻԼ ՄԽՏԻԿԵԱՆ՝ ԳԱՀԻՐԷԻ 44-ՐԴ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ...

*շաՀր ալ-՚ասալ* (Մեղրալուսինի ճամբորդութիւնը) (1970)՝ Ջուհայր Պաքիրի, *Պենթ Պատի՚ա* (Պատի՚այի դուստրը) (1972)՝ Հասան Ալ-Իմամի, եւ *Ջաուակ պըլ-էքրաՀ* (Բռնի ամուսնութիւն) (1972)՝ Նակտի Հաֆէզի:

«Շարունակելով սինեմայի գործունէութիւնը, 1973-ին Հանդէս կու գայ չորս ֆիլմերու մէջ՝ *Ալ-Շայաթին ֆի ակազա* (Սատանաները արձակուրդի մէջ) (1973) եւ *Ալ-Պանաթ ուալ-Մարսիտէս* (Աղջիկները եւ Մերսետէսը) (1973)՝ Հոսամ Ալ-Տին Մուսթաֆայի, *Շայ՚ մըն ալ-Հուպպ* (Քիչ մը սէր) (1973)՝ ԱՀմատ Ֆու՚ատի, եւ *Ալ-Սուքքարէյա* (1973)՝ Հասան Ալ-Իմամի, Հիմնուած ականաւոր գրող Նակիպ ՄաՀֆուզի պատմուածքին վրայ եւ դառնալով եգիպտական սինեմայի ամենակարեւոր ֆիլմերէն մէկը:

«1974-ին Լէպլէպա կը ներկայացնէ 6 ֆիլմեր՝ *Ալ-Պանաթ ուալ-Հուպպ* (Աղջիկները եւ սէրը)՝ Հոսամ Ալ-Տին Մուսթաֆայի, *24 սա՚ա Հուպպ* (24 ժամ սէր)՝ ԱՀմատ Ֆու՚ատի, *՚Արիս ալ-Հանա* (Բախտաւոր փեսան)՝ ՄաՀմուտ Ֆարիտի, *Ֆիլ-Սայֆ լազըմ նըՀէպպ* (Ամառը պէտք է սիրաՀարուինք)՝ ՄոՀամմատ ՚Ապտէլ-՚Ազիզի, եւ երկու ֆիլմեր Հասան Ալ-Իմամի՝ *՚Ակայէպ եա զաման* (Զարմանալի ժամանակներ) եւ *Հըքայաթի մա՚ալ-զաման* (Պատմութիւնս ժամանակին Հետ), որուն գլխաւոր դերակատարներն էին Ռուշտի Ապազա եւ Ուարտա:

«1975-ին, տարբեր ֆիլմերու մէջ կը մարմնաւորէ բազմաթիւ այլ դերեր՝ *Մուլէտ եա տոնիա* (Տօն է աշխարՀը)՝ Հուսէյն Քամալի, *ԷՀթերեսի մըն ալ-ոըկալ եա մամա* (Մայրիկ, զգուշացիր տղամարդոցմէ)՝ ՄաՀմուտ Ֆարիտի, *Մին ե՚տար ՚ալա ՚Ազիզա* (Ով կրնայ յաղթել ՚Ազիզային)՝ ԱՀմատ Ֆու՚ատի, որ կը Հանդիսանայ իր առաջին դերակատարութիւնը Հռչակաւոր դերասան Հուսէյն ՖաՀմիի Հետ, որուն Հետ յետագային պիտի մասնակցէր այլ ֆիլմերու՝ *Ալֆ պոսա ուա պոսա* (Հազար ու մէկ Համբոյրներ) (1977)՝ ՄոՀամմատ ՚Ապտէլ-՚Ազիզի, *Հուպպ ֆաուք ալ-պուրքան* (Սէր Հրաբուխին վրայ) (1978)՝ Հասան Ալ-Իմամի, եւ *Շայթան մըն ՚ասալ* (Մեղրէ սատանայ) (1985)՝ Հասան Ալ-Սայֆիի:

(Շար. 1)

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1929 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 15 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2022 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀԿ.

عدد رقم ١٩٢٩ الخميس ١٥ ديسمبر ٢٠٢٢

## ԻՆՉՊԷ՞Ս ԿԱՐԵԼԻ Է ՓԱԿԵԼ ԼԱՉԻՆԻ ՄԻՋԱՆՑՔԸ. ՑԱՇԱԿԱՆՈՒԹԻՒՆ՝ ԲՆԱՊԱՀՊԱՆՈՒԹԵԱՆ ՏԱՐԱԶՈՎ

Այսօրուայ ամենաշատ խօսուող նիւթն է Լաչինի միջանցքը: Դեկտեմբեր 12-էն ի վեր Ազըրպէյճան փակած է Լաչինի միջանցքը, Արցախը թողելով ամբողջական շրջափակումի մէջ:

**Լաչինի միջանցք եւ Զանգեզուրի «միջանցք»**

Նոյեմբեր 8, Իլհամ Ալիեւ ռազմական զգեստով ելոյթ կ՚ունենայ 44-օրեայ պատերազմի տարելիցին առիթով, Հայաստանի նկատմամբ արտասանելով բարձրագոչ յայտարարութիւններ, դնելով ռազմատենչ պահանջներ, յղելով ծանրագոյն սպառնալիքներ:

Կրկին կը բարձրաձայնէ Զանգեզուրի միջանցքին մասին՝ այդ անուանումով, ըսելով. «Երկու տարի է՝ մենք ձեռք չենք տուած Լաչինի ճանապարհով Հայաստանէն Ղարաբաղ եւ հակառակ ուղղութեամբ երթեւեկող ինքնաշարժներուն: Մենք ընդունած ենք պարտաւորութիւն եւ կը կատարենք զայն: Հայաստան նոյնպէս ստանձնած է պարտաւորութիւն, որպէսզի ճանապարհային կապ ըլլայ Ազըրպէյճանի արեւմտեան շրջաններուն եւ Նախիջեւանի Ինքնավար Հանրապետութեան միջեւ: Անցան երկու տարիներ, չկայ թեքնիքա-տնտեսական հիմնաւորում, գործողութիւն, երկաթգիծ, ճանապարհ: Որքա՞ն պէտք է սպասենք»:

Հայաստան անմիջապէս կը հակադարձէ բազում անգամ կրկնածին՝ թէ 2020 Նոյեմբեր 9-ի յայտարարութեան մէջ կայ Լաչինի միջանցքի պարտաւորութիւնը բայց չկայ Զանգեզուրի միջանցքի դրոյթը, հետեւաբար, այս երկուքը անհամատեղելի են:

Նոյեմբեր 10-ի կառավարութեան նիստին, արձագանգելով Ալիեւի ելոյթին, Նիկոլ Փաշինեան քանիցս կը մատնանշէ Լաչինի միջանցքը փակելու վտանգը. «Ադրբէջանի նախագահը փորձում է հիմքեր ստեղծել, մտացածին հիմքեր Հայաստանի կողմից իբր իր պարտաւորութիւնները չկատարելու պատրուակով Լաչինի միջանցքը փակելու, Լեռնային Ղարաբաղի հայութեանը շրջափակելու եւ նրան ցեղասպանութեան ու հայրենազրկման ենթարկելու համար»:

**Զէնքի փոխադրութիւն Արցախ**

Նոյեմբերի վերջաւորութիւնը ականատես եղաւ Ազըրպէյճանի կողմէ հրադադարի խախտումի համեմատական վերելքի, պատճառելով հայկական կողմի հերթական զոհերու: Եւ փոխադարձ ամբաստանութիւններու ոճական ու քանակական աճ, Դեկտեմբեր 7-ի Պրիւքսէլի եռակողմ հանդիպումի ջնջում:

Այս անգամ Ազըրպէյճան կը մեղադրէ Հայաստանը՝ Լաչինի միջանցքով զէնք փոխադրելու համար Արցախ: (Պատերազմը արդարացնող արդի աշխարհի մէջ ուրիշ ի՞նչ ճանապարհով զէնք կարելի է փոխադրել Արցախ, եւ ինչո՞ւ այնտեղ զէնք պէտք չէ փոխադրուի… եթէ իրապէս կը փոխադրուի):

Այս պատրուակը նկատի ունենալով, Նոյեմբերի վերջաւորութեան Արցախի իշխանութիւնները կ՚ազդարարեն Լաչինի միջանցքի հնարաւոր փակումի վտանգը Ազըրպէյճանի կողմէ:

**4-ժամեայ փակում**

Փաշինեանի եւ Արցախի ակնկալիքները կ՚իրականանան, բայց ուրիշ պատրուակով:

Դեկտեմբեր 3-ին, շուրջ չորս ժամ կը փակուի Լաչինի միջանցքը: Ստեփանակերտ-Գորիս մայրուղիի Շուշի-Քարին-տակ խաչաձեւ հատուածը կու գան քաղաքացիական հագուստով ազըրպէյճանցիներ եւ կը փակեն ճամբան, ըստ Արցախի պաշտօնական յայտարարութեան:

Քիչ ետք Պաքու կը հաղորդէ՝ որ մասնագէտներու խումբ ղրկած է ռուս խաղաղապահներու վայրը, որպէսզի «հետաքննեն եւ վերահսկեն այնտեղի օգտակար հանածոներու ապօրինի շահագործումը [հայերուն կողմէ] եւ այդ գործունէութեան բնապահպանական հետեւանքները»: Ի՞նչ «օգտակար հանածոներու» մասին է խօսքը: Չկայ բացատրութիւն:

Երեք ժամ տեւած ազէրի-ռուս բանակցութիւններէ ետք կը բացուի ճանապարհը:

**Անժամկէտ փակում**

Նոյեմբեր 7, Խոջալու, հանդիպում Ազըրպէյճանի բնապահպանական ոլորտի պետական պաշտօնեաներու եւ Խոջալուի մէջ տեղակայուած ռուս խաղաղապահ առաքելութեան հրամանատար Արտրէյ Վոլքովի միջեւ:

Ազըրպէյճան գոհ է հանդիպումէն, զայն անուանելով կառուցողական: Տնտեսութեան Նախարարութեան ներկայացուցիչ Մասիմ Մամետով լրագրողներուն կը յայտնէ՝ որ ռուս խաղաղապահներուն փոխանցեցին Ղարաբաղի հանքավայրերու անօրինական շահագործումի մշտադիտարկումին հետ կապուած առաջարկներ, մասնաւորելով Դրմբոնի ոսկիի եւ Կաշէնի պղնձամոլիպտէնային հանքավայրերը, որոնց հետ իբր կապուած են հարցերը: Այս մեծ ու կարեւոր հանքերը 44-օրեայ պատերազմին չանցան Ազըրպէյճանի կողմը:

Ռուսական կողմը ոչ մէկ յայտարարութիւն կ՚ընէ, մինչ Արցախի ներկայացուցիչները, ըստ երեւոյթին, դուրս մնացած էին հանդիպումէն:

Նոյեմբեր 10, Ազըրպէյճանի Տնտեսութեան Նախարարութիւնն ու Բնապահպանութեան եւ Բնական Պաշարներու Նախարարութիւնը հանդէս կու գան համատեղ յայտարարութեամբ, ըստ որուն՝ համաձայն Դեկտեմբեր 3-ին եւ 7-ին ռուս խաղաղապահ զօրախումբի հրամանատարութեան հետ կայացած բանակցութիւններու արդիւնքին, Պետական Գոյքի Ծառայութեան աշխատակիցները եւ ԱզէրԿոլտ ՓԲԸ-ն պիտի սկսին նախնական դիտարկումը՝ ուսումնասիրելու օգտակար հանածոներու հանքավայրերուն մէջ ապօրինի շահագործումի փաստերը Ազըրպէյճանի տարածքին վրայ, ուր տեղակայուած է ռուսական խաղաղապահ զօրախումբը:

Պաշտօնական Ստեփանակերտը չէ իրազեկուած նման գործողութեան մասին:

Նոյեմբեր 11, ազըրպէյճանական խումբը կ՚ուղեւորուի դէպի Մարտակերտի շրջանի Դրմբոնի եւ Կաշէնի հանքային տարածքները, բայց Արցախի Հանքարդիւնաբերական կազմակերպութեան աշխատակիցները եւ համայնքներու բնակիչները ինքնաբուխ մղումով մը կ՚արգելափակեն խումբին մուտքը:

Ազըրպէյճան վիրաւորուած է: Սադրանք Ազըրպէյճանի դէմ, եւ նման բաներ: Ապա, կոչ Մոսկուային՝ ապահովելու խումբին մուտքը յիշեալ տարածքներ, ըստ նախապէս եղած ենթադրեալ համաձայնութեան: Ոչ մէկ պաշտօնական արձագանգ Մոսկուայէն:

Նոյեմբեր 12-ի առաւօտեան ժամը 10:30-ին, Ազըրպէյճանի բնապահպան ակթիւիսթներ իրենց ձեռքը վերցնելով նախաձեռնութիւնը կը փակեն Լաչինի միջանցքի Շուշիի հատուածը, այսպիսով փակած ըլլալով ողջ միջանցքը: Վրաններ տեղադրելով կը տեղաւորուին այնտեղ՝ իբրեւ բողոքի ցոյց ընդդէմ ընդերքի ապօրինի շահագործումին: Ազըրպէյճան կը յայտարարէ՝ որ անոնք ոչ կառավարական կազմակերպութիւններ են:

Ակթիւիսթները «պաշտպանելու» պատրուակով տեղավայր կը ժամանեն Ազըրպէյճանի Ներքին Գործոց Նախարարութեան ներքին զօրքերու ծառայողներ եւ ոստիկանական ուժեր:

Աւելորդ է նշել՝ որ այս բնապահպանները կառավարութեան մարդիկն են:

*Սիվիլ Նէթի* Անի Գրիգորեանը, հիմնուելով ➯ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՊՐԻՒՔՍԷԼ ՊԻՏԻ ՉԵՐԿԱՐԱՁԳԷ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ԵՒՐԱՄԻՈՒԹԵԱՆ ԴԻՏՈՐԴԱԿԱՆ ԱՌԱՔԵԼՈՒԹԵԱՆ ԺԱՄԿԷՏԸ. ԺՈԶԷՓ ՊՈՐԷԼ

Պրիւքսէլ պիտի չերկարաձգէ Հայաստանի մէջ Եւրամիութեան դիտորդական ժամկէտը, որ կը վերջանայ յաջորդ շաբաթ, յայտարարեց Եւրամիութեան դիւանագիտութեան ղեկավար Ժոզէփ Պորէլ, նշելով՝ որ այս որոշումը կայացաւ Պրիւքսէլի մէջ Եւրամիութեան անդամ երկիրներու արտաքին գործոց նախարարներու Դեկտեմբեր 12-ի գումարած նիստին:

Պորէլի գնահատութեամբ՝ առաքելութեան աշխատանքը «արդիւնաւէտ» էր: Ան չխօսեցաւ առաքելութեան ժամկէտը չերկարաձգելու պատճառներուն մասին, միայն նշեց, որ «ըստ Հայաստանի եւ Ազըրպէյճանի հետ համաձայնութեան» առաքելութիւնը պէտք է իր գործունէութիւնը աւարտէ Դեկտեմբեր 19-ին:

«Բայց եւ այնպէս, Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ երկխօսութեան միջնորդի մեր հեղինակութիւնը պահպանելու համար, Հայաստան պիտի ղրկուի խումբ մը՝ որ ծրագրէ հնարաւոր քաղաքացիական առաքելութեան ուղարկումը, եթէ յաջորդ տարի նման համաձայնութիւն ձեռք բերուի», - յայտարարեց Պորէլ:

## ԺԱՆՆԱ ԱՆԴՐԷԱՍԵԱՆԸ՝ ԿԳՄՍ ՆԱԽԱՐԱՐ

Ժաննա Անդրէասեանը նշանակուել է Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի նախարար. հրամանագիրը ստորագրել է նախագահ Վահագն Խաչատուրեանը:

Մինչ այս Անդրէասեանը զբաղեցրել է Աշխատանքի եւ Սոցիալական Հարցերի փոխնախարարի, իսկ յետոյ՝ ԿԳՄՍ փոխնախարարի պաշտօնը: Սոցիոլոգ է, հետազօտող, երկար տարիներ դասաւանդել է Երեւանի պետական համալսարանում եւ Վ. Բրիւսովի անուան պետական լեզուահասարակագիտական համալսարանում:

Յիշեցնենք, որ նախօրէին Վահրամ Դումանեանը հրաժարականի դիմում էր ներկայացրել: Նա Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի նախարարութիւնը ղեկավարում էր 2020 թուականի Նոյեմբերի 23-ից:

## ՅՈՒՆՈՒԱՐ-ՆՈՅԵՄԲԵՐ ԱՄԻՍՆԵՐԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ ԱՅՑԵԼԱԾ ԶԲՕՍԱՇՐՋԻԿՆԵՐԻ ԹԻՒԸ ԳԵՐԱԶԱՆՑԵԼ Է 1,5 ՄԻԼԻՈՆԸ

2022 թուականի Յունուար-Նոյեմբեր ամիսներին Հայաստան եկած զբօսաշրջիկների թիւը կազմել է 1,54 միլիոն մարդ: *Արմենպրէս*ն այս մասին տեղեկանում է Զբօսաշրջութեան Կոմիտէի հրապարակած տուեալներից:

«Այս տարի առաջին անգամ մենք գերազանցեցինք 2019 թուականի այցելութիւններն ամսուայ կտրուածքով՝ գրանցելով 144,576 այցելութիւն (2019 թուականի Նոյեմբերին՝ 140,376 այցելութիւն): Նշենք, որ 2021 թուականի Նոյեմբերին ունեցել ենք 85,762 այցելութիւն», - ասւում է հաղորդագրութիւնում:

# ՀԱՅԿԱԿԱՆ ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ՓՈՐՁԵՐ ԵԳԻՊՏՈՍՈՒՄ

**ԱՐԾՐՈՒԻ ԲԱԽՉԻՆԵԱՆ**

2004 թուականին մեր լոյս ընծայած *Հայերը Համաշխարհային կինոյում* եւ 2012-ին հրատարակած *Հայ կինո-100* աշխատութիւններում անդրադարձել ենք Եգիպտոսում հայերի կողմից շարժանկարներ ստեղծելու փորձերին եւ եգիպտահայերի մասնակցութեանը Եգիպտոսի ազգային շարժանկարին:

Սոյն յօդուածում մասամբ կը կրկնենք մեր արդէն գրածը՝ նաեւ կենտրոնանալով 2012-ից յետոյ մեր յայտնաբերած նորագիւտ փաստերի վրայ:

**1. Վահան Զարդարեանի *Հայկական սինէման***

Եգիպտոսը, աւելի ստոյգ՝ նրա հայ համայնքը պայմանականօրէն կարելի է համարել հայ շարժանկարի սկզբնաւորման վայրերից մէկը: Հայաստանում շարժանկարի ստուդիայի հիմնադրումից 11 տարի առաջ եգիպտաբնակ հայ ուժերի կողմից կատարուել է, ըստ էութեան, առաջին հայկական կինոֆիլմի ստեղծման փորձը: Անուանում ենք փորձ, քանի որ իրականում այն չի եղել աւարտուն շարժանկար, այլեւ լուսանկարների եւ նկարահանուած շարժանկարային նիւթի համակցում (մոնտաժ): Այն անգամ չի ունեցել յատուկ անուանում, կոչուել է պարզապէս *Հայկական սինէմա*: Իրականացնողը եղել է եգիպտահայ հրատարակիչ, գրավաճառ Վահան Զարդարեանը, որը հայ մտաւոր պատմութեան մէջ յայտնի է որպէս *Յիշատակարան* կոչուող գրքոյկների շարքի հրատարակիչ: Դրանցում նա արտացոլել է անցեալի եւ իր ժամանակի անուանի հայ անձանց դիմանկարները, հրապարակել զանազան պատմական վաւերագրեր: 1912 թ. Զարդարեանը ձեռնամուխ է եղել կինօնկարի ստեղծմանը՝ օգտուելով նորաստեղծ կինեմատոգրաֆի հնարաւորութիւններից եւ իր *Յիշատակարանում* արդէն ընդգրկուած յիշարժան տարեթուերն ու յոբելեանական անձանց ներկայացնելով այս անգամ շարժուող պատկերների միջոցով: Նրա ձեռնարկը հովանաւորել է եգիպտական եւ հայ ազգային ականաւոր գործիչ, Հայ բարեգործական ընդհանուր միութեան նախագահ Պօղոս Նուպար փաշան: Ֆիլմի «քլիշէները» (իմա՝ մակագրերը) ստեղծելու գործում նրան օժանդակել է եգիպտահայ արուեստագէտ Երուանդ Հոտլեանը:

Բարեբախտաբար, հայկական այս առաջին կինոփորձի ստեղծման առթիւ լոյս է տեսել 15 էջանոց մի գրքոյկ՝ *Հայկական սինէմա ի պատիւ հայ թատրոնի ութսունամեակին (1833–1913)*, հրատարակուած Կահիրէում, 1913-ին, որտեղ ընդգրկուած են Հմայեակ Գրանեանի (1891–1969) «Հայկական սինէման... հայրենի փառքեր» եւ Կիլիկեան Բու ծածկանունով հեղինակի «Տիպար ձեռնարկ մը» յօդուածները: Մեր խօսքը հայկական առաջին կինոփորձի մասին հիմնըւած կը լինի այս գրութիւնների ոչ ժլատ տեղեկութիւնների, ինչպէս նաեւ ժամանակի մամուլի վրայ:

Շարժանկարը բաղկացած է եղել հինգ մասից: Առաջինում ներկայացուել է հայ ժողովրդի ծագումը՝ Ուրարտուից մինչեւ հայոց պետականութեան կործանումը, երկրորդում՝ կործանուած Անի մայրաքաղաքն իր խաչքարերով, գերեզմաններով, աւերակներին նստած սգացող հերարձակ Մայր Հայաստանի պատկերով: Երրորդ մասում ներկայացուել է հայ միջնադարեան արուեստը՝ վանքեր, քանդակներ, տարազներ, հայ բնաշխարհի տեսարաններ (Մասիս, Եփրատ, Արաքս, Տարօնի դաշտ, Աշտիշատ, Օշական), հայոց տպագրութեան հիմնադիր Յակոբ Մեղապարտը եւ միւս հայ տպագրիչները: Չորրորդ մասն ամբողջովին նուիրուած է եղել հայոց թատրոնին, ներկայացուել են արեւմտահայ թատրոնի հիմնադիրներից Յակոբ ամիրա Պէզճեանը եւ հայ բեմի մի շարք ականաւոր դէմքեր (Վարդովեան, Մաղաքեան, Ֆասուլեաճեան, Մնակեան, Սիրանոյշ եւ այլք): Հինգերորդ մասը ներկայացրել է ժամանակի հայ ականաւոր դէմքերին (ազգային գործիչներ, բարերարներ, պետական բարձրաստիճան անձինք, բանաստեղծներ, դերասաններ, երաժիշտներ, նմուշներ հայ նկարչութիւնից, հին դրամներից եւ տարազներից):

1913-ին Պոլսի *Ազատամարտի* սեփական թղթակիցը նկարագրել է Ալեքսանդրիայում կայացած *Հայկական սինէմայի* ցուցադրութիւնը: «Ներկաները.... խիստ անհամբերութեամբ ու հետաքրքրութիւնով կը սպասէին հայկական սինէմա-նկարներուն, եւ ահա յանկարծ ելեկտրական լոյսերը սկսան ցոյց տալ Հայ բեւեռագրեր, Ս. Սահակ եւ Ս. Մեսրոպ, Հայ թագաւորներ, Թագուհիներ, Իշխաններ, Եկեղեցիներ, Քանդակներ, Հայկական դրամներ, Հայ ձեռագրեր, Նկարչութիւններ, Արքայական հրովարտակներ եւ Հայ Կաթողիկոսներ: Պ. Զարդարեան բեմին առջեւ կանգնած ամէն մէկ նկարին բացատրութիւնները յստակօրէն կուտար բարձրաձայն»(1): Նկատենք, որ յօդուածագիրը գործածել է «սինէմանկարներ» արտայայտութիւնը, որից կարելի է ենթադրել, որ խօսքը իրար հերթագայող լուսանկարների ու դրանց մակագրերի մասին է: Սակայն անշարժ պատկերներից բացի *Հայկական սինէման* բաղկացած է եղել նաեւ արդէն հայաստանեան կինօխրոնիկայից (Զուարթնոցի տաճարի, Անիի աւերակների եւ այլ դրուագներ): Մեր ենթադրութեամբ՝ ֆիլմի առաջին մասում ընդգրկուել է 1911-ին նկարահանուած «Անի. Հազար ու մի եկեղեցիների քաղաքը» նիւթը, որը, ինչպէս յայտնի է, մուտք է գործել իտալական կինօամսագիր, ինչպէս նաեւ ֆրանսիական *Գոմոն* կինօամսագրի 1912 թուականի 35-րդ թողարկումը՝ «Էջմիածին, Կովկաս. Հայոց նոր պատրիարք Գրիգոր Ե-ի մուտքը»:

Այն, որ *Հայկական սինէմայում* ներառուած են եղել նաեւ նկարահանուած դրուագներ, կարող են վկայել հետեւեալ երկու վկայութիւնները.

1. «Տ. Վահան Զարդարեան ոչ նուազ շնորհաւորելի է իր սոյն օգտաշատ գիւտին համար: Եգիպտոսի ժողովուրդը երկար ատենէ ի վեր ու յաճախ առիթը ունեցած է Սինէմաներ վայելելու, որոնք շատ անգամներ օտար եւ երբեմն ալ բարքերը ապականող տեսարաններ եղած են, իսկ Տ. Զարդարեանինը զուտ Հայկական եղած է, հայուն սրտին ու հոգւոյն հետ խօսող»(2):

2. Երկրորդ մասի վերաբերեալ ասւում է, որ այն «հայուն կեանքին ու պատմութեան ամէնէն հոգետխուր ֆիլմն էր որ կը քակուէր մեր աչքերուն առջեւ»: Ինչպէս տեսնում ենք, *Հայկական սինէմային* հակադրւում են այլ «սինէմաներ», այսինքն՝ շարժանկարներ, եւ ապա՝ «սինէմայի» հետ մէկտեղ գործածուել է նաեւ «ֆիլմ» բառը՝ որպէս հոմանիշ եւ կամ որպէս կինօերկի առանձին գիտակցուող մաս:

Եգիպտոսում *Հայկական սինէմայի* մասերի ցուցադրութեան ընդմիջումներին դասախօսութիւններով հանդէս են եկել թատերագէտ Շարասանը (Սարգիս Թիւթիւնճեան), պրոֆեսոր Գայաեանը, երգերի եւ դաշնամուրի նուագի կատարումներով՝ Ռոզալի Պէնլեանը, Թագուհի Նաճարեանը, Օննիկ Վոլտերը, Զապէլ եւ Շաքէ Հոտլեան քոյրերը, օրիորդ Գայաեանը, ասմունքով՝ Ենովք Շահէնը, իսկ Արշակ Պէնլեանը ներկայացրել է «Արեւելեան թատերախմբի» դերասանների ներքին կեանքը:

Վերոյիշեալ գրքոյկի երկրորդ հեղինակն իր խօսքն աւարտել է հետեւեալ ցանկութեամբ. «Կը փափաքինք որ Տ. Զարդարեան իր Հայկական սինէման միայն Եգիպտահայուն վայելումին մենաշնորհը չի դարձնէ, այլ վայելել տայ ամէն ուրեք ուր հայութիւն գոյութիւն ունի»: Եւ իսկապէս, ժամանակի մամուլը վկայում է, որ Զարդարեանի *Հայկական սինէման* ցուցադրուել է նաեւ ԱՄՆ-ի 13 քաղաքներում, Ֆրանսիայում եւ Մեծ Բրիտանիայում: «*Հայ Յիշատակարանի* ծանօթ հեղինակ Տ. Վահան Զարդարեան, որուն ազգային սինէմային ինքնատիպ ներկայացումները այս ձմեռ գեղեցիկ նորութիւն մը եղան Եգիպտոսի հայութեան համար, մտադիր ըլլալով Ամերիկայի հայ գաղութները եւս մասնակից ընել իր խիստ շահեկան հաւաքածոյին, փափաք յայտնած է [Հայ Բարգործական Ընդհանուր] Միութեան Ամերիկայի տեղական Մասնաճիւղներուն թողուլ իր զուտ հասոյթներուն մէկ երրորդը: Կեդր. Վարչ. Ժողովը շնորհակալութեամբ ընդունելով այս ինքնայօժար նուիրաբերումը, այս առթիւ Տ. Վ. Զարդարեանի յանձնած է բաց նամակ մը՝ ուղղեալ Միութեան Ամերիկայի Մասնաժողովներուն»:

Իսկ 1919 թ. պոլսահայ մամուլը վկայել է. «Ուրախութեամբ կը լսենք, թէ քիչ օրէն Բերայի մէջ պիտի ներկայացուի ի նպաստ Տարագրելոց եւ Որբերու Վ. Զարդարեանի պատրաստած Հայկական սինէման, որ Գահիրէի մէջ առաջին անգամ ներկայացուած է Պօղոս Նուպար փաշայի հովանաւորութեամբ 1912ին եւ յետոյ հետզհետէ Աղէքսանդրիա եւ Ամերիկայի գլխաւոր 13 քաղաքներու մէջ, եւ գնահատուած է եգիպտական, ֆրանսական, անգլիական, ամերիկեան եւ հայկական մամուլէն: Վստահ ենք, թէ հոս եւս պիտի գտնէ միեւնոյն յաջողութիւնը»:

Ամենայն հաւանականութեամբ այս նոյն կինօնկարն է եղել 1919-ին Կ. Պոլսի ամերիկեան կինօթատրոնում ցուցադրուելիք Հայաստանի մասին վաւերագրութիւնը: Այդ թուականին պոլսահայ մամուլը ծանուցել է, որ Կ. Պոլսի ամերիկեան կինօթատրոնում պիտի ցուցադրուի «Հայաստանի ժամանակագրական պատմութիւնը, սկիզբէն մինչեւ մեր օրերը: ....Հանդիսատեսները պիտի տեսնեն խիստ շահեկան եւ բնատիպ տեսարաններ: Ամբողջ կրօնական (ձեռագիրներ), ճարտարապետութիւն, գեղարուեստ, աւերակներ Անիի, կրօնական պետերու, հռչակաւոր անձնաւորութիւններու դիմաստուերները նախապատմական շրջաններէն մինչեւ քսաներորդ դար: Այս ցուցադրութիւնը պիտի ըլլայ մեծ դէպք մը՝ զոր ամէն ոք պիտի փափաքի տեսնել: Պօսթօն, Վաշինկթօն, Լօնտրա եւ Փարիզ Հայաստանի ցուցադրութիւնը ամէնէն բարձր յաջողութիւնը ունեցաւ: Նոյնը պիտի ըլլայ նաեւ հոս»:

...Յայտնի է, որ հայ մշակոյթի մի շարք արտայայտութիւններ դարերի ընթացքում մեզ չեն հասել, սակայն պահպանուել են անվիճելի տուեալներ դրանց գոյութեան մասին: Այդպէս էլ ասպարէզում չէ Վահան Զարդարեանի ստեղծած *Հայկական սինէման*, սակայն առկայ փաստերը խօսում են այդ իրողութեան աներկբայելիութեան մասին: Առաջին հայկական կինօփորձը ստեղծուել է Հայաստանի սահմաններից դուրս, սակայն՝ հայ գաղթավայրում, հայկական թեմայով եւ հայ անձանց նախաձեռնութեամբ, որը մեզ իրաւունք է տալիս այն դիտել որպէս հայ մշակոյթի արտայայտութիւն: Այդ իսկ պատճառով այսօր Վահան Զարդարեանին իրաւունք ունենք համարել հայ շարժանկարի ռահվիրաներից, իսկ հայ կինոյի ծննդեան տարեթիւ պայմանականօրէն ընդունել 1912 թուականը...

(Շար. 1)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

1. «Հայկական սինէման Աղեքսանդրիոյ մէջ. Մեծ յոբելեանին առթիւ», *Ազատամարտ*, 1.03.1913:

2. *Հայկական սինէմա ի պատիւ հայ թատրոնի ութսունամեակին (1833–1913)*, Կահիրէ, 1913, էջ 14:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆՁՆԱԳԻՐԸ՝ ԿՐԿԻՆ ՊԱՀԱՆՋՈՒԱ՞Ծ. ԻՆՉ Է ՓԱՍՏՈՒՄ ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹԻՒՆԸ

**ՀԱՅԿ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ**

2022-ը վերջին ութ տարիների կտրուածքով ռեկորդային է Հայաստանի քաղաքացիութեան համար դիմած եւ ստացած քաղաքացիների թուով: Տարեսկզբից մինչեւ Հոկտեմբերը ներառեալ աւելի քան 14,000 անձ է դարձել Հայաստանի քաղաքացի, միեւնոյն ժամանակահատուածում քաղաքացիութեան համար դիմել է շուրջ 20,000 մարդ: Տասը ամիսների այս ցուցանիշը գրեթէ կրկնակի է նախորդ ամբողջ տարուայ համեմատ:

**Հայաստանի քաղաքացիութիւն ստացած անձանց մեծամասնութիւնը Ռուսաստանի՝ ազգութեամբ հայ քաղաքացիներ են**

Ոստիկանութիւնից ստացուած տուեալների համաձայն՝ 2022-ի տասը ամիսներին քաղաքացիութիւն ստացած 14,073 անձանցից 13,795-ը կամ 98%-ը ազգութեամբ հայ են: Նախորդ տարիներին այս համամասնութիւնը նոյնն է եղել՝ տատանուելով 98-99%-ի շրջանակում:

Խիստ փոխուել է Հայաստանի անձնագիր ստանալու համար դիմած եւ ստացած անձանց աշխարհագրութիւնը՝ 2015-ին Հայաստանի քաղաքացիութիւն ստացած անձանց 4%-ն էր Ռուսաստանի քաղաքացի, 2020-ին՝ 24,4%-ը:

2022-ի Փետրուարին ռուս-ուկրաինական պատերազմի մեկնարկից յետոյ, երբ բազմաթիւ ռուսաստանցիներ տեղափոխուեցին Հայաստան, դիմումների կտրուկ աճ գրանցուեց, ինչի հետեւանքով 2022-ին (Հոկտեմբերի դրութեամբ) ռուսաստանցիները կազմում են անձնագիր ստացած անձանց 64,5%-ը (9,071 մարդ): Նախորդ ամբողջ տարուայ համեմատ այս ցուցանիշն աճել է 4,3 անգամ: Վրաստանի եւ Լիբանանի քաղաքացիները կազմում են Հայաստանի քաղաքացիութիւն ստացածների ↳ 4

## ՏԵՂԻ Է ՈՒՆԵՑԵԼ ՍՊԵՆԴԻԱՐԵԱՆԻ ՏՈՒՆ-ԹԱՆԳԱՐԱՆԻ 55-ԱՄԵԱԿԻՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՄԻՋՈՑԱՌՈՒՄ

Ալեքսանդր Սպենդիարեանի տուն-թանգարանի դահլիճում Դեկտեմբերի 9-ին տեղի ունեցաւ տուն-թանգարանի 55-ամեակին նուիրուած հանդիսութիւնը: Միջոցառմանը հրաւիրուած էին գործընկեր հաստատութիւնների ներկայացուցիչներ, Ա. Սպենդիարեանի տուն-թանգարանի բարեկամ մշակոյթի գործիչներ եւ գիտական խորհրդի անդամներ, նախկին աշխատակիցներ:

Բացման խօսքում տուն-թանգարանի տնօրէն Մարինէ Օթարեանը հիւրերին շնորհաւորեց Երեւանում առաջին երաժշտական յուշային թանգարանի բացման տարեդարձի առիթով եւ կարեւորեց աշխատակիցների դերը մշակութային այս կարեւոր կենտրոնի կայացման գործում: Ներկայացուեց «55-ամեայ թանգարանի պատմութիւնը լուսանկարների խճապատկերում» խորագրով ժամանակաւոր ցուցահանդէսը: Ա. Սպենդիարեանի ժառանգութեան հանրահռչակման գործում տուն-թանգարանի դերը արժեւորող խօսքով եւ բարեմաղթանքներով հանդէս եկան Երեւանի Կոմիտասի անուան Կոնսերվատորիայի պրոֆեսորներ Արմէն Բուդաղեանը եւ Դաւիթ Ղազարեանը, Հայաստանի ԳԱԱ Արուեստի Ինստիտուտի տնօրէն Աննա Ասատրեանը, Հայաստանի ժողովրդական նկարիչ Վալմարը, Մարտիրոս Սարեանի տուն-թանգարանի տնօրէն Ռուզան Սարեանը, կոմպոզիտոր Ռոբերտ Ամիրխանեանը, որը նա յանպատրաստից եւ սրտաբուխ կատարեց իր *Անանձնութիւն* երգը: Ցուցադրուեց թանգարանի գիտաշխատող Ինեսսա Խաչատրեանի հեղինակած «55 կադր՝ 55-ամեայ թանգարանից» տեսաֆիլմը, որը ներկայացնում էր տուն-թանգարանի՝ կէս դարից աւելի շարունակուող տարեգրութիւնը:

Սպենդիարեանական երկերի՝ փողային նուագարանների համար փոխադրումներով հանդէս եկան Թամար Յարութիւնեանը (ֆլեյտա), Վարդգէս Յովհաննիսեանը (ֆագոտ), Էրիկ Գրիգորեանը (հոբոյ) եւ Կատարինէ Յովսէփեանը (դաշնամուր):

Թանգարանի կողմից շնորհակալագրեր յանձնուեցին թանգարանի նախկին աշխատակիցներ՝ գիտաշխատողներ Կարինէ Մարգարեանին, Սարգիս Յովհաննիսեանին, ինչպէս նաեւ թանգարանի նորեկ գիտաշխատող Կատարինէ Յովսէփեանին:

Տօնական օրն ու տրամադրութիւնն ամփոփուեցին եւ ամբողջական խմբակային լուսանկարներում:

## ԼԷՊԼԷՊԱ ԵՒ ՏԵՍԻԼ ՄԽՏԻԿԵԱՆ՝ ԳԱՀԻՐԷԻ 44-ՐԴ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՖԻԼՄԻ ՓԱՌԱՏՕՆԻՆ

**Հ. Ա.**

«Իր ասպարէզի ընթացքին Լէպլէպա հանդէս եկած է զանազան աստղերու հետ՝ կազմելով 1970-80-ական թուականներու եգիպտական սինեմայի ամենէն անմոռանալի եւ քարիզմաթիք զուգախաղերէն մէկը: Ասոնց ամենէն ուշագրաւներէն է զուգախաղերը հռչակաւոր կատակերգակ ’Ատէլ Իմամի հետ, ինչպէս՝ *Ալ-Պա’տ եազհապ լըլ-մա’զուն մարրըթայն* (Ոմանք ամուսնութեան լիազօրին կ’երթան երկու անգամ) (1978), *Խալլի պալաք մըն կիրանաք* (Զգուշացիր դրացիներէդ) (1979), *’Էսապաթ Համատա ուա Թութու* (Համատայի եւ Թութուի աւազակախումբը) (1982)՝ բոլորն ալ Մոհամմատ ’Ապտէլ-’Ազիզի բեմադրութեամբ, ինչպէս նաեւ *Էհթարէս մըն Ալ-Խէթթ* (Զգուշացիր Խէթթէն) (1984)՝ Սամիր Սէյֆի:

«Նոյնպէս, կատակերգութեան վարպետ Սամիր Ղանէմի հետ կազմած է ուրիշ հիասքանչ զուգախաղ մը երեք յաջորդական ֆիլմերու մէջ՝ *Էննահոմ եասրեքուն ալ-արանէպ* (Անոնք նապաստակները կը գողնան) (1983)՝ Նատէր Կալալի, *Էհնա պըթու’ ալ-էս’աֆ* (Մենք շտապ օգնութեան մարդիկն ենք) (1984)՝ Սալահ Քարիմի, եւ *Մըհաթթաթ ալ-օնս* (Հաճոյքի կայարանը) (1985)՝ Հասան Իպրահիմի:

«Ունեցած է նաեւ կարեւոր համագործակցութիւններ այլ աստղերու հետ, օրինակ, Մոհամմատ Սուպհիի հետ *Ալ-Ճայթանա ալլաթի ահպաթնի* (Սատանայ աղջիկը որ սիրեց զիս) (1990) ֆիլմին մէջ՝ բեմադրութիւն Սամիր Սէյֆի, Ահմատ Զաքիի հետ *Տէտտ ալ-հըքումա* (Կառավարութեան դէմ) (1992)՝ ’Աթէֆ Ալ-Թայէպի, Նուր Ալ-Շերիֆի հետ *Լայլա սախենա* (Տաք գիշեր) (1995), որուն շնորհիւ արժանացաւ Փարիզի Արաբական Աշխարհի Էնսթիթիւի (Institut du monde arabe) տրամադրած Արաբական Ֆիլմի Պիենալի (Biennale des cinémas arabes) մրցանակին՝ իբրեւ լաւագոյն դերասանուհի:

«1999-ը նշանաւորուեցաւ իր գեղարուեստական կեանքի նոր նուաճումներով՝ *Կաննաթ ալ-շայաթին* (Սատանաներուն դրախտը)՝ բեմադրիչ Ուսամա Ֆաուզիի, խաղընկեր ունենալով Մահմուտ Հըմէյտա, *Ալ-Ախար* (Ուրիշը)՝ Եուսէֆ Ճահինի, որուն հետ 2004-ին համագործակցած է նաեւ *Էսքենտերէյա Նիու Եորք* (Աղեքսանդրիա Նիւ Եորք) ֆիլմին մէջ:

«2000-ականներուն կը մասնակցի քանի մը նշանաւոր ֆիլմերու, որոնցմէ՝ *Մա’ալի ալ-ուազիր* (Նորին Վսեմութիւն նախարար) (2002)՝ Սամիր Սէյֆի, դերակատարութեամբ Ահմատ Զաքիի, եւ *Ալ-Նա’մա ուալ-թաուուս* (Ջայլամը եւ սիրամարգը) (2002)՝ Մոհամմատ Սալահ Ապու Սէյֆի, դերակատարութեամբ Մուսթաֆա Ճա’պանի:

«2004-ին վերականգնեց համագործակցութիւնը ’Ատէլ Իմամի հետ *’Արիս մըն կեհա ամնէյա* (Գաղտնի գործակալութեան փեսան) ֆիլմին մէջ՝ ’Ալի Էտրիսի բեմադրութեամբ, որուն յաջորդեց 2008-ին *Հասան ուա Մորքոս* (Հասան եւ Մորքոս)՝ Ռամի Իմամի, որ կը համարուի եգիպտական սինեմայի ամենակարեւոր ֆիլմերէն մէկը՝ ուր արտայայտուած է եգիպտական հասարակութեան շերտերու բախումը: Ֆիլմին իրենց մասնակցութիւնը բերած են խումբ մը հռչակաւոր դերասաններ, որոնցմէ մէկն է ’Օմար Ալ-Ճարիֆ:

«Իր ակնառու ֆիլմերու ցանկին մէջ կը գտնուի *Ֆարհան Մուլազէմ Ատամ* (2005)՝ ’Օմար ’Ապտէլ-’Ազիզի բեմադրութեամբ, ուր հանդէս կու գայ Էհսանի դերով, խաղընկերներ ունենալով Սամի Ալ-’Ատլ, Հասան Հոսնի, Ֆաթհի ’Ապտէլ-Ուահապ եւ ուրիշներ:



16 Նոյեմբեր, Գահիրէի Օփերայի բացօթեայ սրահ, Լէպլէպայի բաց զրոյցը հանդիսատեսին հետ:

«Բացի այդ, Լէպլէպա խաղացած է երիտասարդ աստղերու հետ, ինչպէս՝ Մոհամմատ Հենէյտիի հետ *Ուէշշ էկրամ* (Բնազդով ոճրագործ) (2006) ֆիլմին մէջ՝ բեմադրութեամբ Ուա’էլ Էհսանի, Մոհամմատ Սա’տի հետ *Պուհա* (2005)՝ Ռամի Իմամի, Մոհամմատ Իմամի հետ *Ալ-Պէհ ռոմանսի* (Պարոնը ռոմանթիք է) (2009)՝ Ահմատ Ալ-Պատրիի, Հասան Ալ-Ռատտատի եւ Հուրէյա Ֆարղալիի հետ *Նազարէյաթ ’ամմեթի* (Հօրաքրոջս տեսութիւնը) (2013)՝ Աքրամ Ֆարիտի, եւ Քարիմ ’Ապտէլ-’Ազիզի հետ *Ալ-Ֆիլ ալ-ազրաք* (Կապոյտ փիղը) (2014)՝ Մարուան Համէտի:

«2019-ին կը պատկերահանուի ցարդ իր վերջին ֆիլմին մէջ՝ *Քազապլանքա*:

«2014-ին Լէպլէպա նոր էջ մը կը բանայ իր դերասանական ասպարէզին մէջ՝ ներխուժելով հեռատեսիլի սերիալներու աշխարհը, երբ ’Ատէլ Իմամի առաջարկով կը մասնակցի *Սահէպ ալ-սա’ատա* (Նորին վսեմութիւն) սերիալին, բեմադրութիւն Ռամի Իմամի: Ապա, 2016-ին, ’Ատէլ Իմամի հետ կը խաղայ նաեւ *Մա’մուն ուա շարիքահ* (Մա’մուն եւ Ընկ.) սերիալը: Մակտի Ալ-Հաուարիի բեմադրութեամբ կը մասնակցի երկու սերիալներու՝ *Ալ-Ճարէ’ էլլի ուարանա* (Մեր ետեւի փողոցը) (2018), եւ *Տայման ’ամէր* (Միշտ չէն), որ ցուցադրուեցաւ 2022 թուականի ռամատանեան օրերուն:

«Լէպլէպա ելոյթ ունեցած է նաեւ մոնոլոկային ներկայացումներով, ուր հանդէս բերած է հանրային դէմքեր եւ յայտնի անձնաւորութիւններ նմանակելու սքանչելի տաղանդը:

«Միւս կողմէ, իբրեւ յանձնախումբի անդամ, ան մասնակցած է 6 միջազգային ֆիլմի փառատօներու՝ ներառեալ Գահիրէի Միջազգային Ֆիլմի Փառատօնին, ինչպէս նաեւ 16 արաբական ֆիլմի փառատօներու»:

**2. Զրոյց Լէպլէպայի հետ**

Նոյեմբեր 16, կէսօրէ ետք ժամը 3, Օփերայի բացօթեայ սրահին մէջ կը կայանայ ազատ զրոյց Լէպլէպայի հետ, զոր կը վարէ յայտնի բեմադրիչ Ամիր Ռամսէս:

Դերասանուհին իր խօսքը կը սկսի պատմելով առաջին տարիները: Կ’ըսէ՝ որ երեք տարեկանին ծնողքը նշմարած էր իր մէջ դերասանական հակում, երբ կը նմանակէր շուրջի մարդոց՝ ազգականներ, դրացիներ, եւ նոյնիսկ փուլ ծախողին կանչը: «Պատմութիւնը իմ մօտս սկսաւ նմանակումով: Մայրս նկատեց որ այս երեխան տարբեր է իր քոյրերէն», կը յայտարարէ ան:

Ապա կը յիշէ իր դերասանական սկզբնաւորութիւնը եւ կը բացայայտէ Լէպլէպա անունին պատահական ծագումը: Կը պատմէ՝ թէ հինգ տարեկանին ծնողքին հետ կ’երթայ սիրողներու մրցոյթի մը Օպէրժին մէջ: Մրցոյթը չունէր տարիքային սահման: Լսելով երաժշտութեան առաջին հնչիւնները, բնազդաբար կը բարձրանայ սեղանին վրայ եւ կը պարէ, ↳ 4






## 1 ԻՆՉՊԷ՞Ս ԿԱՐԵԼԻ Է ՓԱԿԵԼ ԼԱՉԻՆԻ ՄԻՋԱՆՑՔԸ...

«բնապահպաններու» հպարտութեամբ հրապարակած ֆէյսպուքեան լուսանկարներուն վրայ, կը բացայայտէ անուններ ու դէմքեր: Թալեհ Մանսուրովը իշխող, Ալիեւի ղեկավարած Նոր Ազըրպէյճան կուսակցութեան անդամ է: Հապիլ Նիֆթալը նախագահն է Օփթիմիսթ հասարակական խնդիրներու լուծումին աջակցող հասարակական միաւորումին, որ ծրագիրներ իրականացուցած է պետական գործակալութեան ֆինանսաւորումով: Ֆարիզ Աքպարովը Ընտանիքի, Կանանց եւ Երեխաներու Հիմնախնդիրներու պետական յանձնախումբին կից Հանրային Խորհուրդի անդամ է, Ազըրպէյճանի Երեխաներ հասարակական կազմակերպութեան իրաւաբան, եւ ծրագիրներ իրականացուցած է պետական գործակալութեան ֆինանսաւորումով: Ճամբան փակողներուն մէջ կը գտնուի Ազըրպէյճանի Բնապահպանութեան եւ Բնական Պաշարներու փոխնախարար Ֆիրտովսի Ալիեւ: Թելման Ղասիմովը Ազըրպէյճանի յայտնի ռազմաքաղաքական փորձագէտ է եւ նախկին զինուորական:

Գրեթէ բոլորը այս կամ այն ձեւով կապուած են, կը ֆինանսաւորուին եւ ծրագիրներ իրականացուցած են Ազըրպէյճանի՝ հասարակական կազմակերպութիւններուն աջակցութեան յատկացուած պետական գործակալութեան օժանդակութեամբ: Այս գործակալութիւնը ստեղծուած է 2021-ին՝ Ազըրրպէյճանի նախագահի հրամանագիրով եւ փաստացիօրէն կը ֆինանսաւորէ ՀԿ դաշտը: Նոյնիսկ ճամբան փակող աքթիւիսթներուն շարքերը կը գտնուի այդ գործակալութեան դիտորդ խորհուրդի անդամ Իլկար Օրուճով:

Վերջապէս, Անի Գրիգորեան կը բացայայտէ ամենէն ծայրայեղականը: Բնապահպանական բողոքացոյց իրականացնողները պարբերաբար ցոյց կու տան Գորշ Գայլերու նշանը:

Մանրամասնենք: Գորշ Գայլեր՝ Թուրք ծայրայեղ աջակողմեայ եւ գերազգային կազմակերպութիւն մը, նէօ-ֆաշական համաթրքականութեան քարոզիչ, յայտնի իր բռնի գործողութիւններով, սպանութիւններով, հակաքրտական եւ հակահայկական արիւնալի շարժումներով: Ան հանդէս եկած է Թուրքիոյ մէջ 1960-ականներուն եւ անցած զանազան փուլեր ու զարգացումներ, երբեմն դառնալով իշխող իշխանութեան հակառակորդը, երբեմն իշխանութիւնները զանոնք դարձնելով իր աղտոտ գործողութիւններու գործադրող ձեռքը: Ան առաջին անգամ չէ որ կը համագործակցի Ազըրպէյճանի հետ. Ղարաբաղի առաջին պատերազմին անոր ներկայութիւնը Ազըրպէյճանի բանակին մէջ գաղտնիք մը չէ: Եւ ահաւասիկ, իբր բնապահպան կը յայտնուի Լաչինի միջացքը:

Նոյեմբեր 13, Ազըրպէյճան կը կտրէ կազամատակարարումը դէպի Արցախ: Ի՞նչ կապ ունի կազը բնապահպանութեան հետ: Բայց նաեւ, ճանապարհի տիրանալու կարելիութենէն զատ, արդէն յստակ է որ Ազըրպէյճան կրնայ նաեւ սառեցնել Արցախը՝ կտրելով իր տարածքէն անցնող կազը, որ նոյնքան կործանիչ է որքան շրջափակումը:

Եւ բանակցութիւններ՝ Փութին-Ալիեւ, Փութին-Փաշինեան, նամակներ ՄԱԿ-ին, Եւրամիութեան Խորհուրդին:

Նոյեմբեր 15-ի դրութեամբ ճանապարհն ու կազը տակաւին կը մնան փակ: Արցախահայութիւնը կը գտնուի լիակատար շրջափակումի մէջ, ոչ մէկ մատակարարում կրնայ հասնիլ այնտեղ:

Ճանապարհը օր մը պիտի բացուի եւ կազը պիտի վերադառնայ: Ազըրպէյճան սակայն պիտի կատարէ՝ իր խօսքը տեղ հասցուցած ըլլալէ ետք: Առ այժմ ժամանակը չէ հասունցած վերացընելու հայկական Ղարաբաղը: Կրնայ հասուննալ օր մը: «Ղարաբաղը Ազըրպէյճան է», քանիցս յայտարարած է Ալիեւ ամենայն ինքնավստահութեամբ: Այս խօսքին լրջութեամբ պէտք է մօտենալ:

Լաչինի պատմութիւնը տակաւին չէ աւարտած...:

Ա.

## 3 ԼԷՊԼԷՊԱ ԵՒ ՏԵՍԻԼ ՄԽՏԻԿԵԱՆ՝ ԳԱՀԻՐԷԻ 44-ՐԴ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ...

արժանանալով առաջին մրցանակի: Ներկայ էին յայտնի բեմադրիչ Նիազի Մուսթաֆա եւ սենարիսթ, թատերագիր ու գրող Ապուլ Սէ՛ուտ Ալ-Իպիարի: Նիազի Մուսթաֆա կը մօտենայ մօրը եւ կը խնդրէ երեխային բերել իր գրասենեակը՝ փորձելու համար դերասանական կարողութիւնները.

«Մայրս հագուեցուց զիս, մազերուս վրայ կապեց կարմիր ժապաւէն, եւ միասին գացինք Նահաս Ֆիլմ ընկերութիւն: Զիս տեսնելով Նիազի Մուսթաֆա հարցուց. «Անունդ ի՞նչ է անուշիկս»: Ըսի՝ «Նունիա», ուրախ ըլլալով անունէս: Ըսաւ՝ «Նունիա՞»: Ըսի՝ «Դուք ընտրա՞ծ էք ձեր անունը»: Նայեցաւ Ապուլ Սէ՛ուտ Ալ-Իպիարիին եւ ըսաւ՝ «Լէպլէպի նման է» [«Լէպլէպ»՝ եգիպտական ժողովրդական բարբառ, կը նշանակէ՝ «ճարպիկ լեզուի մէջ», Հ.Ա.]: Եւ զիս անուանեցին Լէպլէպա»:

Համաձայնութիւնը կնքուած էր առաջին ֆիլմին համար՝ *Հապէպթի Սուսու* (Սուսու սիրուհիս), բեմադրութիւն Նիազի Մուսթաֆայի, սենարիօ Ապուլ Սէ՛ուտ Ալ-Իպիարիի: Եւ իր առջեւ կը բացուի սինեմայի ճանապարհը:

Լէպլէպա հպարտ է խաղացած ըլլալու լաւագոյն բեմադրիչներու հետ. «Ներկաներուն կ՛ուզեմ ըսել, որ ես բախտ ունեցած եմ աշխատելու Եգիպտոսի ամենամեծ բեմադրիչներուն հետ՝ Հուսէյն Քամալ, Հասան Ալ-Իմամ, ՛Աթէֆ Սալէմ, Հոսամ Ալ-Տին Մուսթաֆա, Աշրաֆ Ֆահմի, Եուսէֆ Շահին...»:

Կը պատմէ անեկդոտային դրուագներով յագեցած իր յիշողութիւնները զանազան ֆիլմերու շուրջ, օրինակ, կեանքի եւ հասարակութեան զոհը դարձած Հուրէյայի տիպարը *Լայլա սախենայի* (Տաք գիշեր) մէջ (1995), եւ անոր ճիշդ հակապատկերը ներկայացնող կրքոտ ու սեռային Հոպպան՝ *Կաննաթ ալ-շայաթինի* (Սատանաներուն դրախտը) (1999) մէջ:

Հոպպայի դերը դիտելէն ետք է որ Եուսէֆ Շահին Լէպլէպային կը վստահի Պահէիան *Ալ-Ախարի* (Ուրիշը) (1999) մէջ, թէեւ երկուքի ոճական տարբերութիւնները բաւական մեծ են:

Շահինի հետ ունեցած փորձառութեան մասին Լէպլէպա կը հաստատէ՝ թէ «ան դպրոց մըն է», եւ կ՛աւելցնէ՝ որ «շատ զարմանալի բան մը սորվեցայ իրմէ»: Կը պատմէ՝ թէ ինչպէս իր առաջին աշխատանքային օրը անցաւ առանց պատկերահանումի: Շահին ստիպեց իրեն լիովին զգեստաւորուած վիճակով պարել պատկերահանուելիք միջավայրին մէջ եւ զգալ բնակարանը, ննջասենեակը, վարագոյրը, յարդարանքը, աշխատանքի մեքենան: Լէպլէպա կ՛եզրակացնէ. «Հիմա, երբ որեւէ դեր ստանձնեմ, բեմադրիչին կ՛ըսեմ որ կ՛ուզեմ տեսնել յարդարանքը, կ՛ուզեմ քիչ մը նստիլ այնտեղ»:

Պատմութիւնները կ՛ընդհատէր երգելով իր ֆիլմերէն ու առանձին երգերէն հատուածներ:

Հանդիսատեսի մը խնդրանքով նմանակեց երգչուհի Ֆայզա Ահմատին, բաւական հաճոյք պատճառելով ներկաներուն:

Լէպլէպայի ելոյթէն ետք իրենց խօսքը արտասանեցին յայտնի դերասաններ՝ որոնք նստած էին հանդիսատեսի աթոռներուն վրայ, ինչպէս՝ Մահմուտ Հըմէյտա, Լայլա ՛Էլուի եւ Էլհամ Շահին:

Փառատօնի նախագահ Հուսէյն Ֆահմի շեշտեց՝ որ պարգեւի տուչութեան ընդունելութիւնը կայացած էր միաձայն. «Շատ մտածեցի, քանի որ մեծարումը մեր մօտ դիւրին չէ՝ ինչո՞ւ կը մեծարուի տուեալ անձը, արուեստագէտը, ի՞նչ է իր անցեալը: Առաջին անձը որ միտքէս անցաւ Լէպլէպան էր: Փառատօնի Բարձրագոյն Յանձնախումբին առաջարկեցի իր անունը եւ Յանձնախումբը միաձայն տուաւ իր համաձայնութիւնը: Ասիկա ըսի ցոյց տալու համար, որ նոյնիսկ Յանձնախումբին համար Լէպլէպան լաւագոյն անձն էր: Եւ դուն անշուշտ արժանի ես անոր»:

Հանդիսատեսի առաջին շարքը նստած էր նաեւ երգչուհի-դերասանուհի Անուշքա (Վարդանոյշ Զատըրճեան):

(Շար. 2)

## 3 ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆՁՆԱԳԻՐԸ՝ ԿՐԿԻՆ ՊԱՀԱՆՋՈՒԱ՞Ծ. ԻՆՉ Է ՓԱՍՏՈՒՄ ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹԻՒՆԸ

համապատասխանաբար 12,9% եւ 8,6%-ը:

Յատկանշական է, որ սա չի վերաբերում Ուկրաինայի քաղաքացիներին (այնտեղ բնակուող հայերին): Եթէ 2021-ին Հայաստանի քաղաքացիութիւն էր ստացել Ուկրաինայի 129 քաղաքացի, ապա 2022-ին միայն 180 անձ:

**Նախորդ տարիների համեմատ ցուցանիշը ռեկորդային է**

Ինչպէս նշեցինք, այս տարուայ առաջին տասն ամիսներին Հայաստանի քաղաքացիութիւն ստացած անձանց թիւը շուրջ երկու անգամ գերազանցում է նախորդ ամբողջ տարուայ ցուցանիշը. 2021-ին քաղաքացիութիւն էր ստացել 7,379 անձ: Վերջին ութ տարիներին մօտ ցուցանիշ գրանցուել էր միայն 2019-ին, երբ քաղաքացիութիւն էր ստացել 13,469 մարդ:

Այս թեմայով Դեկտեմբերի 2-ին Ազգային Ժողովի Պաշտպանութեան եւ Անվտանգութեան հարցերի մշտական յանձնաժողովի նիստում խօսել էր փոխոստիկանապետ Արա Ֆիդանեանը եւ յայտնել, որ այս տարի քաղաքացիութիւն է ստացել մօտ 15,000 մարդ՝ նախորդ տարուայ 3,000-ի դիմաց:

Փոխոստիկանապետի այս յայտարարութիւնը տարածել էին մի շարք լրատուականներ: Ֆիդանեանը փաստացի սխալւում է: Հէնց ոստիկանութեան տրամադրած պաշտօնական տուեալներով նախորդ տարի քաղաքացիութիւն ստացած անձանց թիւը 7,379 է:

Միաժամանակ, համաձայն Ռուսաստանի ներքին գործերի նախարարութեան տուեալների՝ 2022-ի 9 ամիսներին Ռուսաստանի քաղաքացիութիւն է ստացել մօտ 33,000 Հայաստանի քաղաքացի: 2021-ի նոյն ժամանակահատուածի համեմատ Ռուսաստանի քաղաքացիութիւն ստացած հայաստանցիների թիւը այս տարի պակասել է 1,400-ով:

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1930 - ՀԻՆԳՇԱԲԹԻ    29 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2022    *ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀկ.*    عدد رقم ١٩٣٠ الخميس ٢٩ ديسمبر ٢٠٢٢


# ԼԱՉԻՆԻ ՄԻՋԱՆՑՔ, ՀԱՆՔԱՐԴԻՒՆԱԲԵՐՈՒԹԻՒՆ, ԱՆԵՐԵՒՈՅԹ ԻՐԵՐԱՀԻՒՍՈՒՄՆԵՐ

Դեկտեմբեր 12-էն ի վեր Ազրպէյճան փակ կը պահէ Արցախը Հայաստանին կապող միակ ճանապարհը՝ Լաչինի միջանցքը: Արցախի 120,000 բնակչութիւնը, որուն 30,000-ը երեխաներ են, կանգնած են ճգնաժամի առջեւ: 1100 քաղաքացիներ, որոնցմէ 270-ը անչափահասներ, չունին տուն վերադառնալու կարելիութիւն: Միջանցքը փակ է նաեւ շտապօգնութեան ինքնաշարժներուն համար, հիւանդանոցները անհրաժեշտ բժշկական ապրանքներ ու դեղեր չեն ստանար, ուտեստեղէնի խանութները կիսադատարկ են (Հայաստանէն ամէն օր 400 թոն սննդամթերք եւ դեղ կը ղրկուէր Արցախ):

Դեկտեմբեր 16-ին Ազըրպէյճան ընդամէնը կը վերականգնէ իր կողմէ կտրած կազամատակարարումը Արցախին:

Ներկայ գրութիւնս կանգ պիտի առնէ հիմնականապէս տնտեսական գործօնին եւ անկէ բխած հանգամանքներուն վրայ:

## ԿԱՇԷՆԻ ԵՒ ԴՐՄԲՈՆԻ ՀԱՆՔԱՎԱՅՐԵՐԸ

Լաչինի միջանցքը փակելու եւ հանքավայրերու փոխկապակցութեան հարցը խորութեամբ հետախուզած է Վահէ Սարուխանեան, *Հետք*ի էջերուն վրայ հրապարակած երկու յաջորդական յօդուածներով՝ «Ադրբէջանը Սոթքի հանքի իր հատուածի փոխարէն բրիտանական ընկերութեանը «տուել է» 3 տարածք, այդ թւում՝ Կաշէնի հանքը» (17 Դեկտեմբեր 2022) եւ «Ովքե՞ր են Արցախի ընդերքի վրայ աչք դրած բրիտանական ընկերութեան տէրերը» (20 Դեկտեմբեր 2022): Յօդուածիս այս ենթագլուխը ամբողջութեամբ քաղուած է յիշեալ երկու յօդուածներէն:

Այսպէս, Լաչինի միջանցքը փակելու նպատակը Կաշէնի հանքավայրը Արցախէն խլելն է, ինչու չէ հասնելով նաեւ մինչեւ Դրմբոն:

Կաշէնի եւ Դրմբոնի հանքերը ներկայիս կը բանեցնէ Արցախի մէջ գրանցուած Base Metals Փակ Բաժնետիրական Ընկերութիւնը (ՓԲԸ): Ան հիմնադրուած է 2002-ին՝ Մարտակերտի շրջանի Դրմբոնի պղինձ-ոսկիի հանքավայրը օգտագործելու նպատակով: Այնտեղ ընկերութիւնը կառուցած է լեռնահանքային համալիր եւ իրականացուցած հանքարդիւնաբերութիւնը:

2007-ին Base Metals կը սկսի երկրաբանական-հետախուզական աշխատանքներ տանիլ Կաշէնի պղինձ-մոլիպտէնային հանքավայրը: 2013-ին կը սկսի հանքաքարի արդիւնահանումը, որ նախ կը վերամշակուի Դրմբոնի գործարանին մէջ, ապա, Կաշէնի լեռնահանքային համալիրի կառուցումէն ետք, 2016-էն կը շարունակուի այնտեղ:

Base Metals ներկայիս ունի շուրջ 2000 աշխատողներ եւ կը հանդիսանայ Արցախի ամենամեծ հարկատուն: Ան գործարար Վալերի Մէջլումեանին պատկանող Վալլեքս խումբի ընկերութիւններէն մէկն է:

Նշենք նաեւ, որ սահմանամերձ Կաշէնը կը գտնուի Արցախի Մարտակերտի շրջանի արեւելեան հատուածը՝ Ծաղկաշէն գիւղին կից, մինչ Դրմբոնը՝ նոյնպէս Մարտակերտի շրջան, կը գտնուի Սարսանգի ջրամբարին մերձ՝ Կաշէնէն շուրջ 28 քիլոմեթր հեռաւորութեան վրայ, սահմանէն հեռու: 44-օրեայէն ետք Կաշէնը չ՚անցնիր Ազըրպէյճանին եւ կը մնայ Արցախի տարածքին վրայ: Հետեւաբար, Դրմբոնը եւս պիտի մնար Արցախի մէջ:

Ասիկա՝ հայկական տարածքին վրայ:

Գալով Ազըրպէյճանի տարածք, բրիտանական Anglo Asian Mining Plc ներկայիս համաձայնագիր ունի Ազըրպէյճանի մէջ օգտագործելու ութ հանքային տարածքներ՝ Գեդաբեկ, Գոշա, Օրդուբադ, Ղըլբուլաղ, Վեյնալի, Ղարղար, Ղարադաղ եւ Տեմիրլի:

Ներկայ դրութեան համար կարեւորը Տեմիրլին եւ Ղըլբուլաղն են, որոնք 44-օրեայէն ետք մնացին հայկական Արցախի տարածքին վրայ:

Տեմիրլը ազէրիական անուանումն է Ծաղկաշէնի եւ Կաշէնի հանքի շրջանին: Տեմիրլիի (Կաշէնի) հանքին օգտագործումը Ազըրպէյճան Թղթային համաձայնութեամբ 2022 Յուլիս 5-ին կը յանձնէ Anglo Asian-ին: Փաստացիօրէն, Ազըրպէյճան համաձայնութիւն կը կնքէ ընկերութեան հետ, օգտագործելու ուրիշ պետութեան սահմաններէն ներս գտնուող տարածք մը: Ինչպէս կը շեշտէ Սարուխանեան, Կաշէնի հանքը մնալով հայկական կողմը, «դարձել է Բաքուի ռեժիմի ու նրա հետ համագործակցող բրիտանական ձեռնարկութեան աչքի փուշը»:

Գալով Ղըլբուլաղին, հանքի օգտագործումին համաձայնութիւնը Ազըրպէյճան 1997-ին թուղթով յանձնած էր ամերիկեան RV Investment Group Services-ին, որ յետագային պիտի դառնար բրիտանական Anglo Asian Mining-ը:

Ղըլբուլաղի տարածքը կը բովանդակէ Մարտակերտի շրջանի մէկ մասը (Սարսանգի ջրամբարին հարաւը) եւ հատուած մը Ասկերանի շրջանէն, մինչ իր հիմնական աղբիւրը հայկական Դրմբոնի հանքն է:

Ինչպէս դարձեալ Սարուխանեան կը հաստատէ՝ Կաշէնն ու Դրմբոնը «ընդգրկող այս պայմանագրային տարածքը համեղ պատառ է Anglo Asian-ի համար, ինչի մասին խօսում է վերջինիս կայքում առկայ ինֆորմացիան»:

Anglo Asian-ը իր պաշտօնական կայքէջին վրայ կը գրէ՝ թէ ներկայիս Ղըլբուլաղ (Դրմբոն) «տարածքին վրայ կը գտնուին ռուս խաղաղապահները, որոնք կ՚երաշխաւորեն տարածաշրջանի ապահովութիւնը», որմէ ետք կ՚աւելցնէ. «[Ազըրպէյճանի] կառավարութիւնը բոլոր ջանքերը պիտի ներդնէ, որպէսզի ընկերութեան համար մուտք ապահովէ տարածաշրջան՝ օգտակար հանածոներու հետախուզում իրականացնելու համար»:

Հանքային արդիւնաբերութեան խնդիրին մէջ է որ Սարուխանեան կը գտնէ նաեւ Զանգեզուրի միջանցք կոչուած ճանապարհի իմաստներէն մէկը:

Ութ հանքերէն մէկը՝ Օրդուբադ, կը գտնուի Նախիջեւանի մէջ: Այնտեղ Anglo Asian Mining տակաւին կը կատարէ հետախուզական աշխատանքներ: Հանքի արդիւնահանումին համար ընկերութիւնը պէտք պիտի ունենայ Նախիջեւան-Ազըրպէյճան ամենակարճ ճանապարհի: Եւ իր յայտարարութեան մէջ խեղաթիւրելով յետպատերազմեան 2020 Նոյեմբեր 9-ի յայտնի համաձայնագիրը, ընկերութիւնը կը նշէ՝ թէ Հայաստանի Սիւնիքի մարզին ընդմէջէն պիտի գործէ Ազըրպէյճան-Նախիջեւան միջանցք, որ մեծապէս պիտի դիւրացնէ հանքային ծրագիրին գործադրութիւնը: Ինչպէս Սարուխանեան կ՚եզրակացնէ՝ «տեսնում ենք, որ թուրք-ադրբէջանական տանդէմի (եւ նրանց յայտնի ու անյայտ աջակիցների) այդքան փափագած «Զանգեզուրի միջանցք» ծրագիրը ոչ միայն քաղաքական ու ռազմական, այլ նաեւ տնտեսական բաղադրիչ ունի, որի ապացոյցներից մէկն էլ Anglo Asian Mining-ի իւրատեսակ խոստովանութիւնն է»:

Anglo Asian Mining-ի գլխաւոր սեփականատէրն է պարսիկ Մոհամմատ Ռեզա Վազիրի, որ Իրանի իսլամական յեղափոխութենէն ետք փոխադրուած է արտասահման եւ պիզնէսային յարաբերութիւններ մշակած Իրանի ոչ-բարեկամ երկիրներու հետ՝ ԱՄՆ, Մեծն Բրիտանիա եւ Ազըրպէյճան: Ան հիմնադիրն ու տնօրէններու խորհուրդի համանախագահն է ԱՄՆ-Ազըրպէյճան առեւտրային պալատին, որուն խորհըրդականներու պատուաւոր խորհուրդին մաս կը կազմեն՝ ԱՄՆ նախկին պետքարտուղար, ֆինանսներու նախկին նախարար (քարտուղար), Սպիտակ Տան աշխատակազմի նախկին ղեկավար Ճէյմս Պէյքեր, Նիւ Հեմփշիրի նախկին նահանգապետ Ճոն Սունունու, ԱՄՆ նախկին պետքարտուղար, նախագահի ապահովութեան հարցերով նախկին խորհրդական Հենրի Քիսինճէր: Առեւտրային պալատը ունի նաեւ հոգաբարձուներու խորհուրդ, որուն անդամ են Իլհամ Ալիեւ, ԱՄՆ-ի մէջ Ազըրպէյճանի դեսպան Էլին Սուլէյմանով, Ազըրպէյճանի նախկին փոխ արտաքին գործոց նախարար Հաֆիզ Փաշաեւ:

Պատկերը ամբողջական է:

## ԵՐԵՒՈՒԹԱՊԷՍ՝ ԱՆԿԱՊ

1. Հանքը մէկ օղակն է Լաչինի փակումի հետ կապուած հանգամանքներուն: Փակումը, տնեսականէն անդին, ունի լայն քաղաքական յետնախորք՝ գլխաւոր խաղացողներ ունենալով Ազըրպէյճանն ու Ռուսաստանը:

2. Ի՞նչ կապ ունի Լաչինը իրմէ բաւական հեռու գտնուող Կաշէնի եւ Դրմբոնի հետ: Կապը ռուս խաղաղապահներն են: Ղըլբուլաղ-Դրմբոն «տարածքին վրայ կը գտնուին ռուս խաղաղապահները», նշեց Anglo Asian-ը իր կայքէջին վրայ (տես վերը): Լաչինի միջանցքին վրայ եւս կը գտնուին ռուս խաղաղապահներ, ինչպէս գիտենք: Մէկուն (Լաչինի) վրայ ճնշելով, արդեօ՞ք Ազըրպէյճան կ՚ուզէ միւսին (Դրմբոն) պարտադրել ճամբայ բանալ դէպի հանք: Ռուս-ազէրիական չյայտարարուած պայքա՞ր: Ռուս-ազէրիական համաձայնութի՞ւն: Ռուսական պատուէ՞ր Ազըրպէյճանին: Ամէն բան ըսուեցաւ: Իրականութիւնը գիտեն միայն ռուսերն ու ազէրիները:

3. Դեկտեմբեր 3-ին ազըրպէյճանցի «բնապահպանները» չորս ժամով կը փակեն Ռուսաստանի վերահսկողութեան տակ գտնուող Լաչինի միջանցքը: Դեկտեմբեր 3 եւ 7, անոնք երկիցս հանդիպում կ՚ունենան ռուս խաղաղապահներուն հետ: Ազըրպէյճան պաշտօնապէս կը յայտնէ իր գոհունակութիւնը հանդիպումներէն, մինչ Ռուսաստան կը պահէ քար լռութիւն: Դեկտեմբեր 12-էն Ազըրպէյճան երկարաժամկէտ դրութեամբ կը փակէ միջանցքը (տես *Ջահակիր*ի անցեալ թիւը): Երկու հանդիպումներէն ետք, կարելի՞ է հաւատալ՝ որ վերջին փակումը կայացած ըլլայ առանց ռուսերու գիտակցութեան: Հազիւ թէ ռուսերը իրազեկ չըլլային: Բայց բոլորովին անյայտ կը մնայ իրազեկութեան ետեւը գտնուող հանգամանքները: Ռուսերը ստիպուա՞ծ եղած են ընդունիլ. եթէ այդպէս է՝ ի՞նչ պայմաններու տակ: Թէ՞ ընդունած են կամովին եւ փոխհամաձայնութեամբ, որուն պատճառները եւս կը մնան անյայտ:

4. Դեկտեմբեր 23-ին Մոսկուայի մէջ նախատեսուած էր Հայաստանի, Ազըրպէյճանի եւ Ռուսաստանի արտաքին գործոց նախարարներուն եռակողմ հանդիպումը: Հայաստան կը հրաժարի մասնակցիլ: Անկախ յայտարարուած դիւանագիտական պատճառաբանութենէն (որ բնաւ կարեւոր չէ), յստակ չէ՞ արդեօք հրաժարումին բուն պատճառը: Մոսկուայի մէջ յետագայ խաղաղութեան պայմանագիր պիտի քննարկուի, մինչ կողմերէն մէկը կը շրջափակէ միւսը: Կանխապէս ձախողած եռակողմ հանդիպում: Աւելի լաւ չեղա՞ւ կանխել ձախողութիւնը:

Բայց եւ այնպէս, տարօրինակօրէն, հանդիպումը կայացաւ Ազըրպէյճանի եւ Ռուսաստանի արտաքին գործոց նախարարներ Ճէյհուն Պայրամովի եւ Սերկէյ Լաւրովի միջեւ, բացակայ կողմին համար խաղաղութեան պայմանագիրը քննարկելու: Արարատ Միրզոյեանի բացակայութիւնը, արդարեւ,

➪ 3

# ՀԱՅԿԱԿԱՆ ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ՓՈՐՁԵՐ ԵԳԻՊՏՈՍՈՒՄ

**ԱՐԾՈՒԻ ԲԱԽՉԻՆԵԱՆ**

**2. Եգիպտահայ կինոստուդիաներ**

1926-ի տուեալով՝ Կահիրէի Շարա Կալալ 2 հասցէում գործել է «Կարին ֆիլմ սինէ» կինոստուդիան, որի տնօրէնը եղել է **Տիրան Կարինը**: Ինչպէս գրել է ստուդիա այցելած հայ թղթակիցը. «Նախ կը մտնենք Projection-ի սրահը, ուր ականատես կ՚ըլլանք այդ միջոցին փորձի տակ եղող Բաբագեան Երաժշտական Տան եւ ամերիկեան Gold Dust Corporationի ծանուցում ֆիլմերու ցուցադրութեան: Անկեղծ ըլլալու համար պէտք է խոստովանիլ որ անոնք ոչ մէկ տարբերութիւն ունին եւրոպական կամ ամերիկեան ֆիլմերէ»: Նկարչութեան բաժնի վարիչն է եղել յայտնի ծաղրանկարիչ Ալեքսանդր Սարուխանը: Քիմիական աշխատանոցն այցելելուց յետոյ մտել են բեմադրութեան (միզանսցենի) սրահ, «ուր հանդիսատես կ՚ըլլանք զանազան դերասաններու դերակատարման որոնք, համաձայն պահանջուած «ֆիլմ»ին, կուգան սինէմայի գործիքին առջեւ իրենց առհասարակ քոմիք դերերը կատարել լուռ ու մունջ մեզի պատճառելով անվերջանալի ծիծաղ: ....Վերջին պահուն կը լսենք թէ Մելքոնեան Տունն ալ ծանուցման ֆիլմ մը ապսպրած է «Կարին Ֆիլմ Սինէ»ին»(3): Յօդուածագիրները նշել են, որ դրանք հայկական հաստատութիւններ են: Ասուածից կարելի է եզրակացնել, որ ստուդիան ստեղծել է կատակերգական եւ գովազդային ֆիլմեր:

Եգիպտահայ դերասան, թատերագիր **Խաչիկ Սանտալճեանը** (1899–1965) 1930-ականների սկզբին զբաղուել է նաեւ կինոյով: 1930 թուականին գրուել է, որ նա հայերէն ենթագրեր է ստեղծել մի շարք շարժանկարների համար (*Քամելիազարդ տիկինը*, *Համլետ*, *Լուսթիւնը*, *Պատ եւ Պատաշոն*, *Թշուառներ*, *Նապոլեոն Բոնապարտ* եւ այլն(4)): Հաւանաբար խրախուսուելով այս ձեռնարկից՝ նոյն թուականին նա նկարահանել է առնուազն երեք հայագիր ֆիլմ եւ ցուցադրել Կահիրէի հայութեանը: «Տ. Խ. Սանտալճեանի նախաձեռնութեամբ կազմակերպուած հայկ. սինէմայի ներկայացումը տեղի ունեցաւ երեքշաբթի երեկոյ, Սինէմա Քիւրսալի մէջ, խուռն բազմութիւն մը լեցուած էր թատրոնը: Երկու գլխաւոր ֆիլմերէն *Ամուսնական գողգոթան* տրամէն եւ *Երկու թափառաշրջիկները* քոմետիէն զատ ներկայացուեցաւ այժմէական տեսարաններ (ձայնաւոր): Գլխաւոր էքրանին վրայ ֆիլմին հետ շատ գեղեցիկ կերպով պատրաստուած էր հայերէն արձանագրութիւնները: Առանց նկատի առնելու մանր մունր թերութիւնները, որոնք անխուսափելի են ամեն նոր ձեռնարկի համար, շնորհաւորելի է Պ. Սանտալճեանի նորութիւն մը ի յայտ բերած ըլլալուն եւ արժանի քաջալերութեան, որով միայն կարելի է յուսալ ամեն յառաջդիմութիւն»(5):

Մէկ այլ յօդուածում նշուած է, որ «Ներկայացման [այսինքն՝ շարժանկարի ցուցադրութեան – Ա. Բ.] ընթացքին ներկաները հեւ ի հեւ կը հետեւէին խաղին եւ կը հպարտանային հայ տառերը տեսնելով Սինէմային գլխաւոր պաստառին վրայ, եւ նոյն իսկ շատեր ազգային զգացումներէ տարուած կը սկսէին բարձրաձայն կարդալ նախադասութիւնները»(6): Այս յօդուածագիրը եւս շնորհաւորել է Սանտալճեանին՝ յուսալով, «թէ յաճախ առիթը պիտի ունենանք ծափահարելու իր յոյժ կարեւոր ձեռնարկը, զոր կը ծառայէ սինէման հայոց մէջ ժողովրդականացնել, քաղել տալու համար անոր պարգեւած բարոյալից դասերը»(7): Սանտալճեանը երկրորդ անգամ ցուցադրելով այս երկու ֆիլմը՝ դրանց աւելացրել է նաեւ *Իզմիրի հրդեհը* խրոնիկան: Յատկանշական է, որ կինօցուցադրութիւնից բացի այդ երեկոներին հայ երգիչները հանդէս են եկել երգերով(8): Հայատառ կինօցուցադրութիւնները խիստ բազմամարդ են եղել. Կահիրէում երկրորդ ցուցադրմանը 200 հոգի չեն կարողացել ներս մտնել:

Հայատառ շարժանկարների առաջացրած խանդավառութեան մի արտայայտութիւն է Ալեքսանդրիայից Սարկաւագ ծածկանունով հանդէս եկած հեղինակի (Յարութիւն Մանավեան) չափածոյ գրութիւնը, որն աւելորդ չենք համարում մէջբերել.

***Հայկական տառով մեր նոր սինեման***
***Որ իր տեսակի մէջ է աննման***

*Արիք հայկազո՛ւնք, օ՛ն գացէ՛ք հիմա,*
*Տեսնել յետ այսու հայկական սինեմա,*
*Բուն հայ տառերով նոր շարժապատկեր,*
*Ուր պիտ երեւին հին ու նոր դէմքեր,*
*Որոնք հանած են արթիստի համբաւ,*
*Ըմբոշխնեցէ՛ք զայն հաճոյքով անբաւ:*
*Մեր այս հայկական մեծ նոր սինեման*
*Գտնուածներուն մէջ որ աննման,*
*Պատկերացնէ Ձեզ շարան շարան*
*Բուն գեղարուեստի սիրոյ ուժեր ան:*
*Հոն պիտի տեսնէք, այո, սրտագին,*
*Այն մեծ արթիստներ՝ այր, աղջիկ ու կին,*
*Օ՛ն դուք, պարոնա՛յք, օրիորդք ու տիկին,*
*Հարկ չիկայ ըսել Ձեզ կրկին, կրկին,*
*Կ՚արժէ գէթ անգամ, որ երթաք հիմա*
*Տեսնել հայկական այս նոր սինեմա:*
*Նախաձեռնարկն է Սանտալճեան Խաչիկ,*
*Ձայն քաջալերել պէտք է որ հաճիք*(9):

Մէկ այլ թղթակցութիւն վկայել է, որ Խաչիկ Սանտալճեանի նախաձեռնութեամբ նկարահանուել է Կահիրէի Ադամեան Թատերախմբի Սմբատ Բիւրատի *Վարդանանք* թատերգութեան ներկայացումը: Նկարահանումը կատարուել է «Ֆոտօ Լասավի» սրահներում, որոնք սիրայօժար տրամադրել էր լուսանկարչատան տէրը՝ Տիգրան Սրապեանը: «Մեծ զգուշութեամբ եւ կարելի ջանքերով սկսաւ եւ վերջացաւ լուսանկարումը [նկարահանումը – Ա. Բ.] Քօտաքի առաջնակարգ մեքենայով մը, որ այդ նպատակին համար գնուած էր:.... Այսօր, երբ պատրաստ է ֆիլմը, որ յաջող կերպով տէվէլօբէ եղած է Քօտաք Տան Գահիրէի գործատեղիին մէջ, Ադամեան Թատերախումբը սիրայօժար եւ անշահախնդրօրէն կը տրամադրէ զայն բեմական աշխատաւորի մը, Պ. Գարեգին Մանուկեանի, որ ամսոյս 12ին Սալ Իւնիօն Արթիսթիքի մէջ իր տալիք *Թիւ 5 խելագարը* զաւեշտէն վերջ պիտի ներկայացնէ հանրութեան»(10):

Կահիրէից բացի Սանտալճեանն իր հայատառ շարժանկարները ցուցադրել է նաեւ Ալեքսանդրիայում եւ Կիպրոսում: Գրուել է, որ նա մտադիր է եղել իր ֆիլմերը ցուցադրել նաեւ Սիրիայի եւ Լիբանանի հայաշատ կենտրոններում(11):

Յետագայում Սանտալճեանը հայրենադարձուել է, Հայաստանում 1958-ին տօնուել է նրա բեմական գործունէութեան 40-ամեակը(12):

Յիշենք նաեւ, որ 1938-ին Կահիրէում ցուցադրուել է մի վաւերագրութիւն, որտեղ ներկայացուել են Մուսա լեռան հայկական գիւղերն ու նրա բնակիչները, Սիրիայի եւ Լիբանանի հայկական բնակավայրերը՝ Նոր Մարաշ, Նոր Հաճըն, ներկայացուել է Կիլիկիոյ կաթողիկոսն Անթիլիասում՝ իր միաբաններով շրջապատուած, Երուսաղէմի Ս. Յակոբի վանքը, Թորգոմ արքեպիսկոպոս Գուշակեանը, Երուսաղէմի հայ գաղթականները: Փաստագրութիւնը տեւել է երկու ժամ: Ֆիլմի նկարահանման ծախսն ու պատրաստութիւնը ստանձնել է դոկտոր **Հատիտեանը**, որը շրջագայելով այդ վայրերում՝ նկարահանել է ֆիլմը(13):

Այսպիսով, թէեւ 1910-1930-ական թուականներին Եգիպտոսում նկարահանուած հայկական շարժանկարների փորձերը չեն պահպանուել, աներկբայ է դրանց գոյութիւնը: Ուստիեւ այսօր, Հայաստանում շարժանկարի ստուդիայի հիմնման, ասել է թէ՝ հայ շարժանկարի 100-ամեակի շեմին պէտք է յիշենք նաեւ այն գաղութահայերին, որոնք ջանք չեն խնայել ազգային շարժանկարներ ստեղծելու նաեւ արտերկրում, տուեալ դէպքում՝ Եգիպտոսում...

(Վերջ 2)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

3. «Այցելութիւն մը «Կարին Ֆիլմ Սինէ»ի սթիւտիօն», *Արեւ*, 8.12.1926:

4. «Խիստ կարեւոր ձեռնարկ մը. Հայերէն սինեմա», *Արաքս*, 12.07.1930:

5. «Հայկական սինեման», *Արաքս*, 8.11.1930:

6. Թ. Գ., «Հայկական սինեման», *Արաքս*, 4.10.1930: «1930-ական թթ., երբ Եգիպտոսը ողողուած էր արտասահմանեան ֆիլմերով, Սանդալջեանը (sic) մտադրուեց հայերէն թարգմանել եւրոպական ֆիլմերն ուղեկցող օտարալեզու տեքստերը: Տեղացի հայերի համար մի իսկական տօն էր էկրանից մեսրոպեան գրեր տեսնելը: Որպէս կինոյի դերասան՝ Սանդալջեանը 1937 թ. Աթէնքի Արքայական թատրոնի հռչակաւոր կատակերգակներ Պարասքեւասի եւ Ջինեոլիի հետ նկարահանուեց *Միլիոն* ֆիլմում: Նշենք, որ այս առիթը Սանդալջեանին ներկայացաւ ոչ միայն դերասանական տուեալների, այլեւ յունարէն լեզուի իմացութեան շնորհիւ, որին նա տիրապետում էր անթերի» (Անահիտ Զթեան, *Հայ թատրոնը Եգիպտոսում*, Երեւան, 2020, էջ 204):

7. Թ. Գ., «Հայկական սինեման», *Արաքս*, 4.10.1930:

8. «Հայկական սինեման Գահիրէի մէջ», *Արաքս*, 18.10.1930:

9. *Արաքս*, 23.08.1930:

10. Արա, «Ադամեան Թատերախումբը եւ հայկական սինեմա», *Արաքս*, 5.06.1926: Այս մասին տես Անահիտ Զթեան, «Սմբատ Բիւրատի *Վարդանանքը*՝ եգիպտահայ թատրոնում եւ կինոյում. Խաչիկ Սանդալջեան», *Արուեստագիտական հանդէս*, 2019, թ. 1, էջ 77-91: Նոյնի, *Հայ թատրոնը Եգիպտոսում*, էջ 13:

11. «Հայատառ սինէմա [sic] Կիպրոսի մէջ», *Արաքս*, 20.06.1931:

12. Տես «Երեւանի մէջ կատարուած շքեղ հանդիսութիւնը. Խաչիկ Սանտալճեանի բեմական 40ամեայ գործունէութեան յոբելեանին առիթով», *Արաքս*, 7.02.1959: Սանտալճեանի մասին մանրամասն տես նաեւ՝ Ունկնդիր մը, «Դերասան Խաչիկ Սանտալճեանի մահը», *Ջահակիր*, 25.02.1965. Անահիտ Զթեան, *Հայ թատրոնը Եգիպտոսում*, էջ 203-205:

13. Տ. Պագալեան, «Սուրիան, Լիբանանը եւ հայ Երուսաղեմը ներկայացնող ֆիլմ մը», *Արեւ*, 24.03.1938:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԲՈԼՈՐԻՍ ԷԼ ՅԱՅՏՆԻ Է, ՈՐ ԻՐԱՎԻՃԱԿԸ ԼԱՐՈՒԱԾ Է. ՍԻՒՆԻՔԻ ՄԱՐԶՊԵՏ

«Ունենք լարուածութիւն, առաջնագծի երկայնքով լարուածութիւնը պահպանւում է, մարզն ապրում է բնականոն կեանքով՝ բացառութեամբ Ներքին Հանդի» - այս մասին լրագրողների հետ զրոյցում ասաց Սիւնիքի մարզպետ Ռոբերտ Ղուկասեանը:

Նա նշել է, որ մարզն ապրում է բնականոն կեանքով, իսկ այնպէս բոլորիս էլ յայտնի է, որ իրավիճակը լարուած է:

«Ներքին Հանդում, բոլորիս էլ յայտնի է, որ կայ ադրբէջանական կողմի ներխուժում եւ ադրբէջանցիները պէտք է իրենց զօրքը յետ քաշեն տարածքից: Կոնկրէտ թուեր կը դժուարանամ նշել, բայց մարդկանց կեանքի վրայ ազդել է այդ տարածքում», -ասաց նա:

Անդրադառնալով Սիւնիքում գտնուող արցախցիներին՝ մարզպետը նշեց, որ չկայ գէթ մէկ արցախցի ում կեցութեան եւ այլ հարցերը լուծուած չեն:

Մարզպետը նշեց, որ այս պահին էլ շուրջ 25 միլիոն դրամի ծրագիր են իրականացնում Ներքին Հանդում մարդկանց վնասները փոխհատուցելու համար:

1 ԼԱՉԻՆԻ ՄԻՋԱՆՑՔ, ՀԱՆՔԱՐԴԻՒՆԱԲԵՐՈՒԹԻՒՆ, ԱՆԵՐԵՒՈՅԹ...

բացառիկ առիթ տուաւ երկուքին ազատօրէն բարձրախօսելու ինչ որ կ՚ուզեն՝ առանց սահմանի:

Պարոն Լաւրով վերաւորուած է, որ Միրզոյեան չէ ուզած մասնակցիլ խաղաղութեան բանակցութեան: Ինչպէ՞ս կարելի է հրաժարիլ խաղաղութենէն՝ ըստ Մոսկուայի յայտարարութեան: Ինչպէ՞ս կարելի է մերժել Մոսկուայի հրաւէրը՝ ըստ չյայտարարուած տրամաբանութեան: Եւ, անշուշտ, Պայրամով-Լաւրով մամուլի ասուլիս:

Լաւրով. «Մենք այդ միջոցառումին պատրաստուեր ենք, բայց, ցաւօք, վերջին պահուն մեր հայ գործընկերները հրաժարեցան գալ Մոսկուա՝ գետինի վրայ ստեղծուած իրավիճակի բացատրութեամբ: Ինչ հարցեր որ ծագին գետինի վրայ, ես համոզուած եմ, որ առաւել եւս պէտք է պարբերաբար հանդիպիլ, համաձայնիլ, ամրապնդել վստահութիւնը եւ պայմաններ ստեղծել բոլոր հարցերը լուծելու համար»:

Որմէ ետք կը կրկնէ. «Այդ միջադէպերը պիտի շարունակուին աւելի երկար եւ աւելի մեծ ըլլալ, եթէ ամէն անգամ որեւէ միջադէպէ ետք, կողմերէն մէկը հրաժարի համաձայնեցուած բանակցային փուլէն: Ասիկա ոչ մէկուն օգուտ կը բերէ»:

Հայաստան հրաժարեցաւ բանակցելէ: Ազըրպէյճանի ուզածն ալ ճիշդ այս է: Աւելի ստոյգ՝ ճիշդ այսպիսի թատերական ներկայացում է ուզածը, բանակցութիւններու իր իսկ կողմէ ծրագրուած երկարատեւ ձախողեցումներէ ետք (*Ջահակիր*, թիւ 1924):

Բացի այդ, Լաւրով «միջադէպ»-ի երկու կողմերը կը դնէ համահաւասար հարթութեան վրայ: Արցախցիին շնչահեղձ դարձնելը Լաւրով կ՚անուանէ «միջադէպ»՝ բանակցութեամբ լուծելի: Մահուան մասին ալ կարելի է բանակցիլ:

Համահաւասարութեան հարց կը բարձրացնէ նաեւ հանքերու պարագային, երբ կը յայտարարէ Մոսկուայի կողմ ըլլալը՝ որ լուծուին հանքերու օգտագործումին շուրջ ծագած տարաձայնութիւնները: Դարձեալ, Ազըրպէյճանի կողմէ միակողմանիօրէն հայկական տարածքները օգտագործելու թոյլատրութեան յանձնումը Anglo Asian-ին՝ եւ անկէ պարտադրաբար բխեցուցած խնդիրները, Լաւրով կը համարէ երկկողմանի տարաձայնութիւն:

Պայրամով կը կրկնէ Ազըրպէյճանի պաշտօնական պնդումը՝ թէ «Լաչինի միջանցքը շրջափակուած չէ», իսկ աքթիւիսթ-ցուցարարները ոչ մէկուն վնաս կը հասցնեն: Այսքան պարզ ու յստակ: Լաւրով կ՚արտայայտուի յօգուտ ճանապարհի արագ եւ լիարժէք բացումին: Բայց ո՞վ է գայն փակողը: Որո՞ւն պէտք է ուղղակիօրէն հասցէագրել այս կոչը: Վերջապէս, հարցը փակե՞լն է, թէ 120,000 բնակիչներու անօթի պահելը:

Լաւրով առաւել եւս վիրաւորուած է. «Եթէ ուեւէ մէկը կը կարծէ՝ թէ ՄԱԿ-ը, ԵԱՀԿ-ը կամ ինչ-որ Մինսքի Խումբի փաստահաւաք առաքելութիւն կրնայ փոխարինել ռուս խաղաղապահ առաքելութեան, այստեղ կը ծագին առնուազն քանի մը հարցեր. նախ պէտք է կողմերուն համաձայնութիւնը՝ Հայաստանի եւ Ազըրպէյճանի: Եթէ կայ նման հետաքրքրութիւն, ապա նախ պէտք է առաջարկ հնչէ, բանակցուի: Բայց եթէ ասիկա կը կատարուի հանրային՝ խօսափողով, ուրեմն պէտք է այդպէս ալ վերաբերիլ անոր հետ»:

Ասիկա պատասխանն է Դեկտեմբեր 22-ի կառավարութեան նիստին Փաշինեանի արտայայտած բաղձանքին. «Ակտիւօրէն պէտք է աշխատել Լեռնային Ղարաբաղ եւ Լաչինի միջանցք ՄԱԿ-ի, ԵԱՀԿ-ի կամ ԵԱՀԿ Մինսկի Խմբի փաստահաւաք առաքելութիւն ուղարկելու ուղղութեամբ»: Բաղձանքի ձեւով ներկայացուած արտայայտութիւն մը՝ ռուս խաղաղապահներուն ամբողջական ձախողումէն (դիտաւորեալ կամ ոչ-դիտաւորեալ) ետք, դպչած է Ռուսաստանի արժանապատուութեան: Հայաստան իրաւունք անգամ չունի մտածել Ռուսաստանի փակ տուփէն անդին, իրաւունք չունի այլազանել իր արտաքին քաղաքականութիւնը՝ նոյնիսկ ամբողջապէս մնալով ռուսական ուղեծիրին մէջ:

5. Կարեւոր է Ռուբէն Վարդանեանի գործօնը: Ռուսական պիզնէսի հետ կապուած հսկայ օլիկարք մը, որ այս տարուայ Նոյեմբերին անսպասելիօրէն նշանակուեցաւ Արցախի պետական նախարար: Անմիջապէս սկսաւ կատարել մեծաշուինդ յայտարարութիւններ, խօսքեր: Այլեւս գրեթէ չի լսուիր Արցախի նախագահ Արայիկ Յարութիւնեանի ձայնը, այն աստիճան՝ որ ոմանք կը նախատեսեն յետագայ իշխանափոխութիւն:

Դեկտեմբեր 23-ի մամուլի ասուլիսին, Պայրամով խստօրէն կը քննադատէ Վարդանեանը՝ իբր յանցաւոր արկածախնդրութեան ուղղութեան հետեւորդ: Բնաւ կարեւոր չէ Պայրամովի քննադատութիւնը՝ որ հաստատապէս կը հետապնդէ յատուկ նպատակներ: Կրնայ ըլլալ այս քննադատութեամբ կ՚ուզէ արդարացնել Արցախի ներկայ շրջափակումը եւ յետագայ հաւանական գործողութիւնները, պատասխանատուութեան կարեւոր մասը բարդելով Վարդանեանի վիզին:

Վարդանեանի իրապէս անհաճոյ կողմը կը գտնուի բոլորովին այլուր: Շրջափակումի ամբողջ ընթացքին ան չդադրեցաւ հայրենասիրական կոչերէ՝ մենք պիտի դիմանանք մինչեւ վերջ, մենք պատրաստ ենք մինչեւ վերջ զոհաբերելու, ես պիտի չհեռանամ Արցախէն, եւ, վերջապէս, «չէի սպասում, որ Հայաստանի ղեկավարութիւնը եւ քաղաքացիները այսքան անտարբեր կը լինէին մեր վիճակի համար, որ սգալու եւ հանրահաւաքներ կազմակերպելու փոխարէն, տօնակատարութիւններ կը կազմակերպէին՝ արդարանալով, թէ իբր կեանքը շարունակւում է»: Ղեկավարութիւն-ժողովուրդ միացան՝ Արցախին թիկունք չկանգնելու մեղադրանքով, ուրիշ հարց՝ թէ ո՛չ Արցախի ու Հայաստանը ժողովուրդները, ո՛չ անոնց ղեկավարութիւններն ու ընդդիմութիւնները՝ ներառեալ նոյն ինքը Վարդանեանը, ո՛չ Սփիւռքը, ո՛չ հայ մտաւորականութիւնը, պատրաստ էին դիմագրաւելու շրջափակումը: Հարցը հաստատապէս դուրս է Վարդանեանի ներկայացուցած Հայաստան-Արցախ կտրուկ երկուութենէն: Բաւական անպատասխանատու եւ վտանգաւոր արտայայտութիւն մը Վարդանեանի կողմէ՝ ի նպաստ Հայաստան-Արցախի բաժանումին, բաժանում՝ որ առաւել եւս ցայտուն դարձաւ, երբ Թաւշեայ Յեղափոխութենէն ետք Հայաստանի նոր իշխանութիւնները (իզուր) փորձեցին պայքարիլ 4

# ԼԷՊԼԷՊԱ ԵՒ ՏԵՍԻԼ ՄԽՏԻԿԵԱՆ՝ ԳԱՀԻՐԷԻ 44-ՐԴ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՖԻԼՄԻ ՓԱՌԱՏՕՆԻՆ

Հ. Ա.

**ՏԵՍԻԼ ՄԽՏԻԿԵԱՆ**

Ընդամէնը Փառատօնի բացումի նախօրեակին է որ պաշտօնապէս կը յայտարարուի մրցութային եւ արտամրցութային ֆիլմերու ցուցադրութեան ժամանակացոյցը, թէեւ նախապէս հրապարակուած էին ֆիլմերուն խորագիրները: Կը յայտարարուի Տեսիլ Մխտիկեանի *Սատանայի գործէն* (From the Work of the Devil) կարճամեթրաժ ֆիլմին երկու օրերը՝ Նոյեմբեր 19, երեկոյեան ժամը 9-ին, Ամերիկեան Համալսարանի Էուըրթ Մեմորիըլ սրահ, եւ Նոյեմբեր 20, կէսօրէ ետք ժամը 4 ու կէսին, Հանակէր Սինեմա: Աւելի ուշ կ՚աւելնայ օր մը եւս, որուն մասին ինծի նման շատեր կ՚իմանան ցուցադրութենէն ետք:

*Սատանայի գործէնը* մէկն էր 21 կարճամեթրաժ ֆիլմերէն՝ որոնք ընտրուած էին մասնակցելու պաշտօնական մրցոյթին:

Ֆիլմերը եկած էին Եգիպտոսէն, Թունիսէն, Լեհաստանէն, ԱՄՆէն, Սուտանէն, Գերմանիայէն, Ֆրանսայէն, Չինաստանէն, Չեխիայէն, Լիբանանէն, Հոլանտայէն,Ռումանիայէն, Պաղեստինէն, Աւստրալիայէն, Յորդանանէն, Գերմանիայէն եւ Պոլիվիայէն:

Եգիպտոս կը ներկայանար չորս կարճամեթրաժ ֆիլմերով, որոնցմէ մէկն էր *Սատանայի գործէնը*:

Ներկայ կը գտնուիմ Նոյեմբեր 20-ի ցուցադրութեան: Ոչ մէկ գրքոյկ կամ թերթիկ՝ դերասաններուն եւ արտադրիչներուն անունները ազդարարող: Ըսուեցաւ՝ որ նոյնն է պարագան բոլոր ֆիլմերուն համար: Մինչ անկարելի էր ցուցադրութեան ժամանակ որսալ արագօրէն հոսող անունները, ֆիլմին համառօտ տուեալները կարելի եղաւ հաւաքել առցանց տարածուած տեղեկութիւններէն.

Տեւողութիւն՝ 22 վայրկեան:

Հեղինակ եւ բեմադրիչ՝ Տեսիլ Մըխտիկեան:

Դերակատարներ՝ Տեսիլ Մխտիկեան, Հուրիկ Մխտիկեան, Ջուարթ Մխտիկեան, Լալա Նիկոլեան-Շամամեան, Քրիս Միքայէլեան, ՚Ալի Ալ-Սապղ, Մարիա Սապա:

Արտադրիչ ընկերութիւն՝ Մետրար Սթուտիօ:

Գլխաւոր գործադիր արտադրիչ՝ Քարիմ Մխտիկեան [Տեսիլի հայրը]:

Գործադիր արտադրիչներ՝ Տեսիլ Մխտիկեան, Այա Կա՚ֆար, Նուր Ամիրի, Ահմէտ ՚Արաֆա, Շատի ՚Ապտէլ ՚Ազիզ:

Նորամուտ մը սինեմայի աշխարհին մէջ, Տեսիլ Մխտիկեան հասակ նետած է Եգիպտոսի հայկական գաղութային միջավայրի մէջ՝ ակումբ, պասքէթպոլ, ազգագրական պար, եւ այլն: Աւարտելէ ետք Գահիրէի Լիսէ Ֆրանսէն, մեկնած է Փարիզ, ուր հինգ տարի ուսանած եւ աշխատած զգեստի ձեւաւորումի բնագաւառին մէջ: Ապա ծագած է իր սէրը բեմադրութեան նկատմամբ եւ հինգ տարի ուսանած Փարիզի L'École de la Cité-ի մէջ, միաժամանակ կատարելով առաջին փորձերը կարճամեթրաժ ֆիլմերու: Տասը տարի Փարիզ մնալէ ետք եկած է Գահիրէ, արտադրելով իր առաջին կարեւոր գործը՝ *Սատանայի գործէն*:

Ֆիլմը եգիպտահայ աղջկայ պատմութիւնն է, որ 10 տարի Փարիզ ապրելէ



Տեսիլ Մխտիկեանի *Սատանայի գործէն* ֆիլմին ազդը:

ետք կը վերադառնայ Եգիպտոս, կազմակերպելու համար Եգիպտոսի հայ ականաւոր լուսանկարիչներու ցուցահանդէսը: Մինչ կը պատրաստէ ցուցահանդէսը, անցեալի լուսանկարներուն ընդմէջէն կը փորձէ գտնել իր անցեալը, աւանդական ընտանիքը եւ Գահիրէն: Բայց նաեւ ֆիլմը կը ներկայացնէ իր հանդիպումը եգիպտահայ համայնքին հետ:

Ֆիլմը կը տատանուի լուսանկարներու, համայնքի, ընտանեկան կանոններու, անձնական պատմութիւններու միջեւ:

Ան կը հետապնդէ ինքնութեան եւ պատկանելութեան հարցեր՝ աւանդոյթ եւ նորացում, հին եւ նոր սերունդ, հայ եւ օտար ամուսնութիւն, եւ այս բոլորի մէջ կը տեսնենք հերոսուհիին ճիգը գտնելու իր տեղն ու ձայնը: Հայոց Ցեղասպանութեան տարրին եւս տրուած է ազդեցիկ դրուագ մը՝ ինքնութեան որոնումի ուղիին մէջ:

Կարելի է ինքնակենսագրական թել մը գտնել ֆիլմին ընդմէջէն, քանի որ գլխաւոր հերոսուհի Ազատը՝ Տեսիլի նման, եկած է Ֆրանսայէն եւ հետաքրքրուած եգիպտահայերու լուսանկարներով, չըսելու համար որ Ազատի տիպարը կը խաղայ նոյն ինքը Տեսիլ: Բայց այդ ինքնակենսագրութիւնը աւելի շատ Տեսիլի մարդկային փորձառութիւնն է՝ որ կրնայ կրկնուիլ ուրիշ անձերու մօտ, քան սեփական անձի անխառն պատմութիւնը:

Ֆիլմին դերասանները կ՚արտայայտուին չորս լեզուներով՝ արաբերէն, հայերէն, անգլերէն եւ ֆրանսերէն: Լեզուները կը հնչեն երբեմն առանձին, երբեմն միախառնուած, որ յատուկ է միայն սփիւռքի մը, այս պարագային՝ եգիպտահայուն եւ անոր շրջապատող միջավայրին:

Ֆիլմին գեղեցկութիւններէն մէկն է այս քառալեզու բովանդակութիւնը, որ բնականաբար կը կորսուի տողատակային անգլերէն եւ արաբերէն կրկնակի թարգմանութիւններուն մէջ: Տողատակի թարգմանութեան հետեւող դիտորդին համար անմատչելի կը մնայ ֆիլմի էական յատկանիշներէն մէկը:

Ի՞նչ կապ ունի խորագիրը ֆիլմին հետ: Թերեւս ասիկա ամենադժուար հասկնալի կողմն է դիտորդներուս համար: «Խորագիրը կը յղէ շատ հետաքրքրական պատմութեան մը՝ որ ցոյց կու տայ թէ ինչպէս որոշ ժամանակաշրջան մը լուսանկարչութիւնը կը դիտուէր Եգիպտոսի մէջ», կը 4




## ՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱԾՆԵՐ

Ամէն կլոր խնձոր չի:
Արքայութիւնը իշի տեղ չէ:
Գնաց գոմէշ, եկաւ էշ:
Գողը գողէն գողացաւ, աստուած վերէն զարմացաւ:
Խենթը խօսք մը նետեց օրթան [մէջ-տեղ], քառսուն խելացի մէկտեղան, չկրցան ճուղապ [պատասխան] մը տալու:
Մահէն վախցողին պլրածն ալ մեռածի սրա [շարք] է:
Ոսկին մանդր ա, գինը ծանդր ա:
Սոված հաց կը տեսնի երազում, ծարաւը՝ ջուր:

## ԼԷՊԼԷՊԱ ԵՒ ՏԵՍԻԼ ՄԽՏԻԿԵԱՆ՝ ԳԱՀԻՐԷԻ 44-ՐԴ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՖԻԼՄԻ ՓԱՌԱՏՕՆԻՆ

բացատրէ Տեսիլ ցուցադրութենէն առաջ ունեցած հարցազրոյցի մը մէջ (Thomas Pinn, ‘An Exclusive Look into Dessil Mekhtigian’s CIFF-Nominated Film *From the Work of the Devil,*’ https://scoopempire.com/an-exclusive-look-into-dessil-mekhtigians-ciff-nominated-film-from-the-work-of-the-devil/):

Տեղ մը կը հնչէ արաբերէն ասացուածքը՝ «Ալշայթան շաթէր» (Սատանան խելացի է): Բառային առնչութիւն մը խորագիրին հետ:

Նոյն հարցազրոյցին մէջ Տեսիլ կը համառօտագրէ ֆիլմը ծնունդ տուող հանգամանքը. «Գաղափարը սկիզբ առաւ՝ երբ կը հետազօտէի Եգիպտոսի հայ լուսանկարիչները: Ընթացքին հանդիպեցայ մեծ քանակութեամբ սեւ-ճերմակ լուսանկարներու, որոնք մեծ զարկ տուած են պատկերելու Եգիպտոսի հարուստ պատմութիւնը»: Եւ այստեղէն ծագեցաւ ֆիլմին գաղափարը (Thomas Pinn, նոյն յօդուածը):

Ֆիլմը գեղարուեստական է՝ հիմք ունենալով վաւերագրականութիւնը: Վաւերագրական տեսանկիւնէն, այնտեղ կը յիշուին եգիպտահայ լուսանկարիչներու անուններ՝ հակիրճ բացատրութեամբ. Վան Լէօ՝ որուն դիւանը կը գտնուի Գահիրէի Ամերիկեան Համալսարանը, Սթուտիօ Վարդ՝ որուն նեկաթիֆները հնավաճառի մը միջոցով հասած են եգիպտացի երիտասարդ բանահաւաքի մը ձեռքը, եւ Քերոփ՝ որուն լուսանկարները իր մահէն ետք հայերու ձեռքով յանձնուեցան աղբահաւաքի եւ չվերականգնուեցան: Այս երեք հանգամանքները յիշատակուելէ ետք, անձամբ պիտի փափաքէի արագօրէն եւ առանց ֆիլմին կուռ ու սահուն կշռոյթը խանգարելու յիշուէին Եգիպտոսի մէջ հայ առաջին լուսանկարիչներուն անունները՝ Ապուլլահ Եղբայրներ եւ Փասքալ Սեպահ, որոնք ԺԹ. դարուն երկար տարիներ գործած են Գահիրէ, ինչպէս նաեւ Գաբրիէլ Լէքէճեան՝ իբրեւ վերջնականապէս Եգիպտոս հաստատուած առաջին հայ լուսանկարիչը: Երեքին լուսանկարները եթէ չեն ամփոփուած մէկ տեղ, բայց մատչելի են առցանց՝ գնելու համար իբրեւ թուղթ կամ թուային տարբերակ: Թերեւս ասիկա անձնական ցանկութիւն մը ըլլայ, բայց քանի որ բեմադրիչը կը խօսի Եգիպտոսի պատմութեան վաւերագրութեան համար հայ լուսանկարիչներու խաղացած դերի մասին, այդ վաւերագրութեան սկիզբը միշտ կրնայ գրաւիչ եւ խօսուն ըլլալ, մանաւանդ որ սկիզբը իրապէս եղած է ազդեցիկ:

*Սատանայի գործէնը* մրցանակ չի վաստակիր Փառատօնին:

Կարճամեթրաժ ֆիլմի մրցոյթի յանձնախումբը կազմուած էր երեք անձերէ՝ եգիպտացի սենարիսթ Ահմատ ՚Ամէր, իտալացի բեմադրիչ Միքելանճելօ Ֆրամմարթիօ եւ թունիս-ֆրանսացի դերասանուհի Ռիմ Թուրքի: Լաւագոյն Կարճամեթրաժ Ֆիլմի Եուսէֆ Շահին մրցանակը կը տրուի ԱՄՆ արտադրութեան՝ *Rosemary A.D. (After Dad)*: Թրէյլըրը կայ YouTube-ի մէջ: Իրապէ՞ս առաջին մրցանակի արժանի ֆիլմ մըն է...

### ԼԷՊԼԷՊԱ ԵՒ ՄԽՏԻԿԵԱՆ

Մէկ շաբաթուայ ընթացքին երկու հայ անուններ՝ նոյն Փառատօնի հովանիին տակ, Փառատօն՝ որ Եգիպտոսի հիմնահոսանքային սինեմայի կարեւորագոյնն է, մեծապէս վերահսկուած ու սեղմ ընտրութիւններով:

Մէկ կողմ ձգենք երկու արուեստագէտներուն տարիքային տարբերութիւնը, մէկը՝ կը փայլի իբրեւ իր կենսագրութեան պսակը հանդիսացող յատուկ պարգեւատրութեամբ, միւսը՝ կը ներկայանայ իբրեւ կարողապէս սկսնակ մասնագէտ: Անոնց տարբերութիւնը աւելի խորքային է:

Լէպլէպա իր գործունէութեան ամենասկզբնական տարիներէն ի վեր մաս կազմած է ամենակալ սինեմայի հզօր արդիւնաբերական արտադրանքին՝ իր ամենէն հիմնահոսանքային նկրտումներով, միաժամանակ հռչակին մէկ կարեւոր մասը վաստակելով շօու-պիզնէսի ոլորտէն:

Մխտիկեան իր գործունէութիւնը կը սկսի կարճ ֆիլմի թելադրած բովանդակութեամբ՝ որ համահունչ է նաեւ իր համոզումներուն, խուսափելով արդիւնաբերականացնել ֆիլմը, բնականաբար առանց հերքելու հիմնահոսանքի մը հմայքը Գահիրէի Փառատօնին ընդմէջէն:

Վերոյիշեալ պատճառով, Լէպլէպա չի կրնար ուղղակիօրէն ներկայանալ իբրեւ եգիպտահայ եւ յայտարարել ինքնութեան այդ կողմը, ուրիշ հարց թէ երբեք չէ հերքած հայութիւնը եւ ուրիշներուն թողած արձանագրել կամ յայտարարել զայն:

Նոյնպէս վերոյիշեալ պատճառով, Մխտիկեան կրցած է ուղղակիօրէն ներկայանալ իբրեւ հայ՝ իր ֆիլմին գեղարուեստական ըմբռնումը կեդրոնացընելով անոր շուրջ, բայց նաեւ հայուն միջոցով փորձելով մատուցել համամարդկայինը, հասնիլ մարդկայինին:

Լէպլէպա, ինչպէս կը վկայէ Նոյեմբեր 16-ի բաց գրոյցը, իր սեփական փորձառութիւնը կրնայ հաճելիօրէն պատմել՝ զայն կապելով անեկթոտներու, դէպքերու, անցքերու հետ:

Մխտիկեան, ինչպէս կը վկայեն ցուցադրութեան յաջորդող հարց-պատասխանը եւ ֆիլմին առիթով իր տուած հարցազրոյցները, սեփական փորձառութիւնը կրնայ խորութեամբ պատմել՝ շաղկապելով գաղափարն ու կենսագրութիւնը:

Ձենք կրնար հերքել շօու-պիզնէսի ուղղակի հմայքը, թովչանքը, հրապոյրը, գրաւչութիւնը՝ եթէ չփորձենք մտածել անոր ենթիմաստի մասին իբրեւ ապրանքային արդիւնաբերութեան *արտադեղարուեստական* արտադրանք, բայց չենք կրնար յատկապէս չշարժիլ գաղափարներէ՝ ուղղակի եւ ենթիմաստային, երբ ամբողջութիւնը բխած է *ներգեղարուեստական* հենքէ:

(Վերջ 3)

## ԼԱՉԻՆԻ ՄԻՋԱՆՑՔ, ՀԱՆՔԱՐԴԻՒՆԱԲԵՐՈՒԹԻՒՆ, ԱՆԵՐԵՒՈՅԹ ԻՐԵՐԱՀԻՒՍՈՒՄՆԵՐ

օլիկարքութեան դէմ, մինչ Արցախը մնաց օլիկարքներուն ձեռքը, այլեւ ողջ ընդդիմութիւնը՝ իր սփիւռքահայ արբանեակներով, համախմբուեցաւ այնտեղ: Նախքան յեղափոխութիւնը, օլիկարքութեան եւ ղեկավարներուն զուտ անձնական շահերը ձեւականօրէն եւ առերեւութապէս «միացուցած» էին Արցախն ու Հայաստանը: Ինչպէս բիւր անգամներ գրած եմ, անջատումը՝ իբրեւ երկու ազգպետութիւններ, կրնայ տանիլ դէպի երկու ազգերու կազմութեան՝ հայ եւ արցախցի: Այդպէս չէ այսօր, բայց կրնայ վաղը այդպէս ըլլալ: Ոչ մէկ ձեւով Վարդանեանը դիւրացուց գործը:

Իսկ ո՞վ է Ռուբէն Վարդանեան: Շատ կարճ: 2019 Մարտ 4-ին, միաժամանակեայ յօդուածներով, անգլիական *The Guardian* եւ հայկական *Հետք* լրագիրները կը բացայայտեն Վարդանեանի գլխաւորութեամբ իրականացուած դրամի հսկայ լուացումի ռուսաբարոյ գործունէութեան ցանց մը՝ որ ամբողջ աշխարհի մէջ յայտնի դարձաւ *Troika Laundromat* անունով. «*Հետքը*, Կազմակերպուած Յանցաւորութեան եւ Կոռուպցիայի Լուսաբանման Նախագիծը (OCCRP) եւ 20 լրատուամիջոցներ համատեղ ուսումնասիրել են մօտ 8,8 միլիարդ դոլար շրջանառած մի ցանց, որը գործել է ռուսաստանաբնակ գործարար, յայտնի բարերար Ռուբէն Վարդանեանի ներդրումային մասնաւոր բանկի՝ Տրոյկա Դիալոգի վերահսկողութեամբ: Լրագրողների մօտ են յայտնուել լիտուական Եուկիօ բանկից (Ūkio bankas) արտահոսած աւելի քան 60 հազար ֆինանսական փաստաթղթեր: Հետաքննութիւնը ստացել է *Տրոյկա լուացքատուն* (Troika Laundromat) անուանումը»: Մնացածը իր սահմռկեցուցիչ ելքերով՝ յօդուածներուն մէջ (https://hetq.am/hy/ article/ 101451 եւ https://www.theguardian.com /world /2019/mar/04/banking-leak-exposes-russian-network-link-to-prince-charles-troika-laundromat):

Կարեւոր է աւելցնել՝ որ Վարդանեանի դրամ լուացողներուն մէջ կը գտնուէր նաեւ Վլատիմիր Փութինի ամենամտերիմ ընկերներէն մէկը՝ թաւջութակահար եւ գործարար Սերկէյ Ռոլտուկին: Հիմա Սերկէյ Լաւրով կրնայ Դեկտեմբեր 23-ի ասուլիսին յայտարարել՝ որ Վարդանեանի «քաղաքական կեանքին հետ Ռուսաստան չէ ունեցած, չունի եւ պիտի չունենայ որեւէ կապ»: Ինչո՞ւ Լաւրովին համար այսքան անհրաժեշտ էր յստակեցնել յատկապէս այս կէտը:

### ԷՈՒԹԵԱՄԲ՝ ԻՐԵՐԱՀԻՒՍՈՒԱԾ

Երեւութապէս անկապ թուացող այս կէտերը, ըստ էութեան, կը կազմեն արդի դրամատիրութեան իրերահիւսուած աներեւութականը: Լայնածաւալ ու հեռաւոր իրերահիւսումը կը կազմէ դրամատիրական տնտեսութեան եւ անկէ բխած քաղաքականութեան «յաջողութեան» հիմքը: Ներկայ պատերազմները յաճախ ունին դրամատիրութեան բաշխումի եւ վերաբաշխումի յետնախորք, առաջ նետելով ազգային պատումը իբր պատրուակ: Այս առումով, Ղարաբաղի երկրորդ պատերազմը չէ վերջացած եւ տակաւին երկար պիտի շարունակուի: Առաջին պատերազմը այլ տրամաբանութեան վրայ հիմնուած էր՝ ուր ազգայինը իրապէս առաջնայինն էր, իբրեւ ուղղակի հետեւանք ազգ-պետութիւն (nation-state) երկդարեայ ձեւաւորումին: Երկրորդը այդ նոյն ազգ-պետութիւններու թուլացումի հետեւանքներէն մէկն էր, ուր խաղացողներ մտած էին անդրազգային ընկերութիւնները՝ աւելի ուժեղ քան պետութիւնները: Վերը դեռ չնշեցի ռազմարդիւնաբերական ընկերութիւններուն մեծ դերակատարութիւնը երկրորդ պատերազմին մէջ (այս հարցին շուրջ *Ջահակիր* բազմիցս անդրադարձած է):

Վերոյիշեալ կէտերը, որոնց կարելի է աւելցնել անթիւ ուրիշներ, ցոյց կու տան 44-օրեային եւ Լաչինին իրերահիւսուած տնտեսական կապը Փութինէն (Ռուբէն Վարդանեան եւ *Troika Laundromat*) մինչեւ Հենրի Քիսինճէր (Anglo Asian Mining), անցնելով անհամար դէմքերէ, ուր իմաստային առումով կը նոյնանան Փութինն ու Քիսինճէրը՝ հակառակ անոնց միջեւ եղած քաղաքական բեւեռումին: Տնտեսականին աւելցնելով քաղաքական յարաշարժ ու յարափոփոխ խմորումները՝ յաճախ բխած տնտեսականէն, օրինակ՝ ռուս-թրքական եւ ռուս-ազրպէյճանական յստակ մերձեցումները յատկապէս ռուս-ուքրաինական պատերազմէն ի վեր, կամ Ազրպէյճան-Իսրայէլ ուժեղագոյն յարաբերութիւնները (դժբախտաբար՝ շատ քիչ խօսուող), եւ այլն, կ՚ունենանք նաեւ քաղաքական իրերահիւսումներու բարդ պատկեր մը, որուն մէջ մինչեւ խորը մխրճուած է Ղարաբաղի հարցը: Խնդիրը կ՚երկարի:

Յօդուածս ըսել կ՚ուզէ, որ լրագրողներուս եւ հետազօտողներուս համար ամենէն վտանգաւորը այն է՝ երբ կանգ առնելով մէկ կէտի շուրջ, զայն դարձնենք մեր համոզումներուն կեդրոնը հակամարտութեան պատճառներն ու հետեւանքները բացատրելու համար:

Երկրորդ պատերազմը չվերջացող պատերազմ է: Լաչինի միջանցքին փակումը անոր յաջորդական փուլերէն մէկն է լոկ:

Ա.